ՆՈՐ

# ԿՏԱԿԱՐԱՆ

ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



London

ԼՈՆԴՐԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ Կ. Մ. ՈՒԱՏՍԻ

1859

# ՑԱՆԿ
## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

# ԱՒԵՏԱՐԱՆ

## ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ

### ԳԼ. Ա

1 ԳԻՐՔ ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ Դաւ-
2 թի որդւոյ Աբրահամու։ Աբրահամ ծնաւ զԻ-
սահակ. Իսահակ ծնաւ զՅակովբ. Յակովբ ծնաւ
3 զՅուդա, և զեղբարս նորա։ Յուդա ծնաւ զՓարէս և
զԶարա ՚ի Թամարայ. Փարէս ծնաւ զԵզրովմ.
4 Եզրովմ ծնաւ զԱրամ։ Արամ ծնաւ զԱմինադաբ.
Ամինադաբ ծնաւ զՆաասոն. Նաասոն ծնաւ ըզ-
5 Սաղմոն։ Սաղմոն ծնաւ զԲոոս ՚ի Ռախաբայ.
Բոոս ծնաւ զՈվբէդ ՚ի Հռութայ. Ովբէդ ծնաւ
6 զՅեսսէ. Յեսսէ ծնաւ զԴաւիթ արքայ։ Դաւիթ
7 արքայ ծնաւ զՍողոմոն ՚ի կնոջէն Ուրիայ։ Սո-
ղոմոն ծնաւ զՌոբովամ. Ռոբովամ ծնաւ զԱբիա.
8 Աբիա ծնաւ * զԱսափ։ Ասափ" ծնաւ զՅովսափատ.
Յովսափատ ծնաւ զՅովրամ. Յովրամ ծնաւ զՈ-
9 զիա։ Ոզիա ծնաւ զՅովաթամ. Յովաթամ ծնաւ
10 զԱքազ. Աքազ ծնաւ զԵզեկիա։ Եզեկիա ծնաւ

* ՚Ի Յոյնն զԱսա ։ Ասա

զՄանասէ. Մանասէ ծնաւ զԱմովն. Ամովն ծնաւ
11 զՅովսիա: Յովսիա ծնաւ զՅեքոնիա և զեղբարս
12 նորա առ գերութեամբն Բաբելացւոց: Յետ գե-
րութեանն Բաբելացւոց ծնաւ Յեքոնիա զՍաղաթի-
13 էլ. Սաղաթիէլ ծնաւ զԶօրաբաբէլ: Զօրաբաբէլ
ծնաւ զԱբիուդ. Աբիուդ ծնաւ զԵղիակիմ. Եղիա-
14 կիմ ծնաւ զԱզովր: Ազովր ծնաւ զՍադովկ. Սա-
15 դովկ ծնաւ զԱքին. Աքին ծնաւ զԵղիուդ: Ե-
ղիուդ ծնաւ զԵղիազար. Եղիազար ծնաւ զՄատ-
16 թան. Մատթան ծնաւ զՅակոբ: Յակոբ ծնաւ
զՅովսէփ զայրն Մարեմայ՝ *որում խօսեցեալ զՄա-
րիամ կոյս." յորմէ ծնաւ Յիսուս, որ անուանեցաւ
17 Քրիստոս: Արդ ամենայն ազգք յԱբրահամէ մինչև
՚ի Դաւիթ՝ ազգք չորեքտասանք. և ՚ի Դաւթէ մինչև
՚ի գերութիւնն Բաբելացւոց՝ ազգք չորեքտասանք. և
՚ի գերութենէն Բաբելացւոց մինչև ՚ի Քրիստոս՝
ազգք չորեքտասանք:
18 Եւ Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր այսպէս: Խօ-
սեցեալ զմայր նորա Մարիամ Յովսեփու, մինչչև ե-
կեալ առ միմեանս՝ գտաւ յղացեալ ՚ի Հոգւոյն Սր-
19 բոյ: Եւ Յովսէփ այր նորա, քանզի արդար էր, և ո՛չ
կամէր առակել զնա, խորհեցաւ լռելեայն արձակել
20 զնա: Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ, ահա հր-
եշտակ Տեառն ՚ի տեսլեան երևեցաւ նմա և ասէ.
Յովսէփ որդի Դաւթի, մի՛ երկնչիր առնուլ առ քեզ
զՄարիամ կին քո. քանզի որ ՚ի նմայն ծնեալ է՝ ՚ի
21 Հոգւոյն Սրբոյ է: Ծնցի որդի, և կոչեսցես զանուն

---

* ՚Ի Յոյնն չէ

նորա Յիսուս. զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր 'ի մե-
22 ղաց իւրեանց: Այլ այս ամենայն եղեւ, զի լցցի որ ա-
սացաւն 'ի Տեառնէ 'ի ձեռն *Եսայեայ մարգարէի.
23 Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի, եւ կոչեսցեն զանուն
նորա Էմմանուէլ, որ թարգմանի՝ ընդ մեզ Աստուած:
24 Եւ զարթուցեալ Յովսէփ 'ի քնոյ անտի, արար որպէս
հրամայեաց նմա հրեշտակն Տեառն, եւ առ յինքն
25 զկին իւր: Եւ ոչ գիտէր զնա մինչեւ ծնաւ զորդին
իւր զանդրանիկ, եւ կոչեաց զանուն նորա Յիսուս:

## ԳԼ. Բ

1 Եւ 'ի ծնանելն Յիսուսի 'ի Բեթղեհէմ Հրէ-
աստանի յաւուրս Հերովդի արքայի, ահա մոգք
2 յարեւելից եկին յԵրուսաղէմ, եւ ասեն. Ո՞ւր է որ ծնաւ
արքայն Հրէից. զի տեսաք զաստղն նորա յարեւելս, եւ
3 եկաք երկիրպագանել նմա: Եւ իբրեւ լուաւ արքայ
Հերովդէս՝ խռովեցաւ, եւ ամենայն Երուսաղէմ ընդ
4 նմա: Եւ ժողովեալ զամենայն քահանայապետս եւ
զդպիրս ժողովրդեանն, հարցանէր 'ի նոցանէ՝ թէ ուր
5 ծնանիցի Քրիստոսն: Եւ նոքա ասեն ցնա. 'ի Բեթ-
ղեհէմ Հրէաստանի. զի այսպէս գրեալ է 'ի ձեռն
6 մարգարէին: Եւ դու Բեթղեհէմ երկիր Յուդայ, ոչ-
ինչ կրտսեր ես յիշխանս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ
իշխան, որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻսրայէլ:
7 Յայնժամ Հերովդէս գաղտ կոչեաց զմոգսն, եւ ըս-
տուգեաց 'ի նոցանէ զժամանակ աստեղն երեւելոյ.

---

7 * 'Ի Յոյնն, մարգարէին

8 Եւ արձակեալ զնոսա ՚ի Բեթղեհէմ, ասէ. Գնացէք
ստուգեցէք վասն մանկանն, և յորժամ գտանիցէք՝
ազդ արասջիք ինձ, զի և ես եկեալ երկիրպագից
9 նմա: Եւ նոքա իբրև լուան ՚ի թագաւորէն՝ գնա-
ցին. և ահա աստղն զոր տեսին յարևելս՝ առաջնոր-
դեաց նոցա, մինչև եկեալ եկաց ՚ի վերայ՝ ուր էր մա-
10 նուկն: Իբրև տեսին զաստղն, խնդացին յոյժ ուրա-
11 խութիւն մեծ: Եւ իբրև մտին ՚ի տունն տեսին զմանու-
կըն հանդերձ Մարեմաւ մարբն իւրով, և անկեալ
երկիրպագանէին նմա. և բացեալ զգանձս իւրեանց,
մատուցին նմա պատարագս՝ ոսկի և կնդրուկ և զը-
12 մուռս: Եւ հրաման առեալ ՚ի տեսլեան չդառնալ
անդրէն առ Հերովդէս, ընդ այլ ճանապարհ գնա-
13 ցին յաշխարհն իւրեանց: Եւ իբրև գնացին նոքա
անտի, ահա հրեշտակ Տեառն երևէր ՚ի տեսլեան
Յովսեփու և ասէր. Արի առ զմանուկդ և զմայր իւր,
և փախիր յԵգիպտոս, և անդ լինիջիր ցորժամ ասա-
ցից քեզ. քանզի ՚ի խնդիր *է Հերովդէս կորու-
14 սանել զմանուկդ: Եւ նա յարուցեալ առ զմա-
նուկն և զմայր իւր գիշերի, և գնաց յԵգիպտոս, և
15 անդ էր մինչև ցվախճան Հերովդի: Զի լցցի ա-
սացեալն ՚ի Տեառնէ ՚ի ձեռն մարգարէին որ ասէ.
16 Յեգիպտոսէ կոչեցից զորդի իմ: Յայնժամ իբրև ե-
տես Հերովդէս թէ խաբեցաւ ՚ի մոգուց անտի, բար-
կացաւ յոյժ. և առաքեաց կոտորեաց զամենայն
մանկունս որ էին ՚ի Բեթղեհէմ և յամենայն սահ-
մանս նորա՝ յերկեմենից և ՚ի խոնարհ, ըստ ժամա-

* ՚Ի Յոյնն, լինելոց

17 նակին զոր ստուգեաց ՚ի մոգուցն։ Յայնժամ կատա-
րեցաւ ասացեալն ՚ի ձեռն Երեմիայ մարգարէի որ
18 ասէ, Ձայն գուժեաց ՚ի Ռամայ, ողբումն և լալու-
մըն և աշխարումն յոյժ․ Ռաքէլ լայր զորդիս իւր,
19 և ոչ կամէր մխիթարիլ՝ զի ոչ էին։ Եւ ՚ի վախճա-
նելն Հերովդի, ահա հրեշտակ Տեառն ՚ի տեսլեան
20 երևէր Յովսեփայ յԵգիպտոս, Եւ ասէր․ Արի առ
զմանուկդ և զմայր իւր, և գնա յերկիրն Իսրայէլի․
21 զի մեռան որ խնդրէին զանձն մանկանդ։ Եւ նա
յարուցեալ առ զմանուկն և զմայր նորա, և եկն
22 յերկիրն Իսրայէլի։ Եւ իբրև լուաւ եթէ Արքեղայոս
թագաւորեաց Հրէաստանի փոխանակ Հերովդի հօրն
իւրոյ, երկեաւ երթալ անդր․ և հրաման առեալ ՚ի
23 տեսլեան, գնաց ՚ի կողմանս Գալիլեացւոց։ Եւ ե-
կեալ բնակեցաւ ՚ի քաղաքին, որ կոչէր Նազարէթ․
զի լցցի բան մարգարէիցն, թէ Նազովրեցի կոչեսցի։

## ԳԼ. Գ

1 Յաւուրսն յայնոսիկ գայ Յովհաննէս մկրտիչ
2 քարոզել յանապատին Հրէաստանի, Եւ ասել․ Ա-
պաշխարեցէք՝ զի մերձեալ է արքայութիւն երկնից։
3 Զի սա է վասն որոյ ասացաւ ՚ի ձեռն Եսայեայ մար-
գարէի, որ ասէ․ Ձայն բարբառոյ յանապատի, պատ-
րաստ արարէք զճանապարհ Տեառն, և ուղիղ ա-
4 րարէք զշաւիղս նորա։ Եւ ինքն Յովհաննէս ունէր
հանդերձ ՚ի ստեղոյ ուղտու, և գօտի մաշկեղէն ընդ
մէջ իւր․ և կերակուր նորա էր մարախ և մեղր վայրե-
5 նի։ Յայնժամ ելանէին առ նա ամենայն Երուսաղէ-

6 մացիք, և ամենայն Հրէաստան, և ամենայն կողմն Յոր-
դանանու, և մկրտէին 'ի նմանէ 'ի Յորդանան, և խոս-
7 տովան լինէին զմեղս իւրեանց: Եւ տեսեալ զբազումս
'ի սադուկեցւոցն և 'ի փարիսեցւոց եկեալս 'ի մկրտու-
թիւն նորա, ասէ ցնոսա. Ծնունդք իժից՝ ո՞ եցոյց ձեզ
8 փախչել 'ի բարկութենէն որ գալոցն է: Արարէք
այսուհետև պտուղ արժանի ապաշխարութեան:
9 Եւ մի՛ համարիցիք ասել յանձինս՝ թէ ունիմք մեք
հայր զԱբրահամ. ասեմ ձեզ, Զի կարօղ է Աստուած
'ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահա-
10 մու: Զի ահաւասիկ տապար առ արմին ծառոց դնի.
ամենայն ծառ որ ոչ առնիցէ զպտուղ բարի, հա-
11 տանի և 'ի հուր արկանի: Ես մկրտեմ զձեզ ջրով
յապաշխարութիւն. բայց որ զկնի իմ գայ՝ հզօրագոյն
է քան զիս, և ես չեմ բաւական բառնալ զկօշիկս
նորա. նա մկրտեսցէ զձեզ 'ի Հոգին Սուրբ և 'ի հուր:
12 Որոյ հեծանոցն 'ի ձեռին իւրում. և սրբեսցէ զկալ
իւր, և ժողովեսցէ զցորեանն 'ի շտեմարանս իւր,
13 և զյարդն այրեսցէ անշէջ հրով: Յայնժամ գայ
Յիսուս 'ի Գալիլեէ 'ի Յորդանան առ Յովհաննէս՝
14 մկրտել 'ի նմանէ: Եւ Յովհաննէս արգելու զնա և ա-
սէ. Ինձ պիտոյ է 'ի քէն մկրտել, և դու առ իս գաս:
15 Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. Թո՛յլ տուր
այժմ, զի այսպէս վայել է մեզ լնուլ զամենայն արդա-
16 րութիւն. և ապա թոյլ ետ նմա: Եւ իբրև մկրտե-
ցաւ Յիսուս, ել վաղվաղակի 'ի ջրոյ անտի. և ահա
բացան նմա երկինք և ետես զՀոգին Աստուծոյ՝ զի
17 իջանէր իբրև զաղաւնի, և գայր 'ի վերայ նորա: Եւ
ահա ձայն յերկնից որ ասէր. Դա՛ է Որդի իմ սի-
րելի, ընդ որ հաճեցայ:

## ԳԼ. Դ

1 Յայնժամ վարեցաւ Յիսուս յանապատ 'ի Հոգ-
2 ւոյն փորձիլ 'ի Սատանայէ։ Եւ պահեալ զքառա-
3 սուն տիւ և զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ։ Եւ
մատուցեալ փորձիչն՝ ասէ ցնա. Եթէ Որդի ես Աս-
4 տուծոյ՝ ասա՛ զի քարինքս այսոքիկ հաց լինիցին։ Նա
պատասխանի ետ և ասէ. Գրեալ է՝ թէ Ո՛չ հացիւ
միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ 'ի
5 բերանոյ Աստուծոյ։ Յայնժամ առեալ ածէ զնա Սա-
տանայ 'ի քաղաքն սուրբ, և կացուցանէ զնա 'ի վերայ
6 աշտարակի տաճարին, Եւ ասէ ցնա. Եթէ Որդի ես
Աստուծոյ՝ արկ զքեզ աստի 'ի վայր. զի գրեալ է թէ
Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, և 'ի վե-
րայ ձեռաց բարձցեն զքեզ, զի մի՛ երբէք հարցես ըզ-
7 քարի զոտն քո։ Ասէ ցնա *դարձեալ Յիսուս. գըր-
8 եալ է՝ թէ Ո՛չ փորձեսցես զՏէր Աստուած քո։ Դար-
ձեալ առնու ածէ զնա Սատանայ 'ի լեառն մի բարձր
յոյժ, և ցուցանէ նմա զամենայն թագաւորութիւնս
9 աշխարհի, և զփառս նոցա, Եւ ասէ ցնա. Զայս ամե-
նայն քեզ տաց՝ եթէ անկեալ երկիրպագանիցես
10 ինձ։ Յայնժամ ասէ ցնա Յիսուս. Ե՛րթ յետս իմ
Սատանայ. զի գրեալ է՝ Տեառն Աստուծոյ քում՝ եր-
11 կիրպագցես, և զնա միայն պաշտեսցես։ Ապա ե-
թող զնա Սատանայ, և ահա հրեշտակք մատեան
և պաշտէին զնա։

12 Եւ իբրև լուաւ Յիսուս եթէ Յովհաննէս մատնե-

* 'Ի Յոյն. Յիսուս. Դարձեալ

13 ցաւ, մեկնեցաւ գնաց ’ի Գալիլեա. Եւ թողեալ զՆա-
զարէթ, եկն բնակեցաւ ’ի Կափառնաում ’ի ծովե-
զերին, ’ի սահմանս Զաբուղոնի եւ Նեփթաղիմայ.
14 Զի լցցի բանն որ ասացաւ ’ի ձեռն Եսայեայ մարգա-
15 րէի. Երկիր Զաբուղոնի եւ երկիր Նեփթաղիմայ,
ճանապարհ ծովու յայնկոյս Յորդանանու, Գալիլեա
16 հեթանոսաց: Ժողովուրդ որ նստէր ’ի խաւարի՝
ետես լոյս մեծ. եւ որոց նստէին յաշխարհին եւ ’ի
17 ստուերս մահու՝ լոյս ծագեաց նոցա: Յայնմ հետէ
սկսաւ քարոզել Յիսուս եւ ասել. Ապաշխարեցէք զի
18 մերձեալ է արքայութիւն երկնից: Մինչդեռ զնայր
Յիսուս ընդ եզր ծովուն Գալիլեացւոց, ետես երկուս
եղբարս, զՍիմոն զկոչեցեալն Պետրոս, եւ զԱնդրէաս
եղբայր նորա՝ արկեալ ուռկան ’ի ծով, քանզի
19 ձկնորսք էին: Եւ ասէ ցնոսա. Եկա՛յք զկնի իմ,
20 եւ արարից զձեզ որսորդս մարդկան: Եւ նոցա թո-
ղեալ վաղվաղակի *զգործիսն գնացին զհետ նորա:
21 Եւ մատուցեալ անտի յառաջ՝ ետես այլ երկուս
եղբարս, զՅակոբոս Զեբեդեայ եւ զՅովհաննէս եղ-
բայր նորա ’ի նաւի՝ Զեբեդեաւ հանդերձ հարբն
իւրեանց, մինչ կազմէին զուռկանս իւրեանց, եւ
22 կոչեաց զնոսա: Նոցա թողեալ վաղվաղակի զնաւն եւ
23 զհայրն իւրեանց, գնացին զհետ նորա: Եւ շրջէր Յի-
սուս ընդ ամենայն կողմն Գալիլեացւոց. ուսուցանէր
’ի ժողովուրդս նոցա եւ քարոզէր զաւետարանն ար-
քայութեան, եւ բժշկէր զամենայն հիւանդութիւնս
24 եւ զամենայն ախտս ’ի ժողովրդեանն: Եւ ել լուր

* ’Ի Յոյնն, զուռկանսն

նորա ընդ ամենայն երկիրն Ասորւոց, և մատուցին
առ նա զամենայն հիւանդս՝ որ նեղեալ էին ՚ի պէս
պէս ցաւս և ՚ի տանջանս, և զդիւահարս և զլուսա-
25 նոտս և զանդամալոյծս, և բժշկեաց զնոսա: Եւ
երթային զհետ նորա ժողովուրդք բազումք ՚ի
Գալիլեէ և ՚ի Դեկապօլեայ և յԵրուսաղեմէ և ՚ի
Հրէաստանէ, և յայնկոյս Յորդանանու*, և բժըշ-
կեաց զնոսա":

## ԳԼ. Ե

1 Եւ տեսեալ զժողովուրդսն ել ՚ի լեառն. և իբրև
2 նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտք նորա. Եւ
բացեալ զբերան իւր ուսուցանէր զնոսա և ասէր.
3 Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն
4 երկնից: Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարես-
5 ցին: Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զեր-
6 կիր: Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն ար-
7 դարութեան, զի նոքա յագեսցին: Երանի ողոր-
8 մածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն: Երանի այ-
նոցիկ՝ որ սուրբ են սրտիւք, զի նոքա զԱստուած
9 տեսցեն: Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք
10 Աստուծոյ կոչեսցին: Երանի որ հալածեալ իցեն
վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն
11 երկնից: Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ
և հալածեսցեն, և ասիցեն զամենայն բան չար
12 զձէնջ սուտ վասն իմ: Ցնծացէ՛ք և ուրախ լերուք,

* ՚Ի Յոյնն չէ:

զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս
հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին:
13 Դուք էք աղ երկրի. ապա թէ աղն անհամի՝ ի՞ւ յա-
ղեսցի. ոչ իմիք ազդիցէ այնուհետեւ, բայց եթէ
ընկենուլ արտաքս, եւ կոխան լինել 'ի մարդկանէ:
14 Դուք էք լոյս աշխարհի. ոչ կարէ քաղաք թաքչել՝
15 որ 'ի վերայ լերին կայցէ: Եւ ոչ լուցանեն ճրագ՝ եւ
դնեն ընդ գրուանաւ, այլ 'ի վերայ աշտանակի, եւ
16 լոյս տայ ամենեցուն որ 'ի տանն իցեն: Այնպէս
լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի
տեսցեն զգործս ձեր բարիս, եւ փառաւորեսցեն
զՀայր ձեր որ յերկինս է:
17 Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս կամ
18 զմարգարէս. ոչ եկի լուծանել՝ այլ լնուլ: Ամէն ա-
սեմ ձեզ, Մինչեւ անցցեն երկինք եւ երկիր, յովտ
մի՝* որ նշանախեց մի է՝ ոչ անցցէ յօրինացն եւ 'ի
19 մարգարէից" մինչեւ ամենայն եղիցի: Որ ոք լուծցէ
մի ինչ 'ի պատուիրանացս յայսցանէ 'ի փոքունց, եւ
ուսուցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքա-
յութեան երկնից. իսկ որ արասցէ եւ ուսուսցէ, նա
20 մեծ կոչեսցի յարքայութեան երկնից: Բայց ասեմ
ձեզ, Զի եթէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր
աւելի քան զդպրացն եւ զփարիսեցւոց, ոչ մտանի-
21 ցէք յարքայութիւն երկնից: Լուարուք զի ասացաւ
առաջնոցն թէ Մի՛ սպանաներ. զի որ սպանանիցէ՝
22 պարտական լիցի դատաստանի: Այլ ես ասեմ ձեզ,
Եթէ ամենայն որ բարկանայ եղբօր իւրում տարա-

* 'Ի Յոյնն, կամ նշանախեց մի՝ ոչ անցցէ յօրինացն՝

պարտուց, պարտաւոր լիցի դատաստանի. և որ ա-
սիցէ ցեղբայր իւր յիմար, պարտաւոր լիցի ատենի.
և որ ասիցէ ցեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի
23 'ի գեհենն հրոյն: Եթէ մատուցանիցես զպատարագ քո
'ի վերայ սեղանոյ, և անդ յիշեսցես՝ եթէ եղբայր
24 քո ունի ինչ խէթ զքէն, Թող զպատարագն քո ա-
ռաջի սեղանոյն. երթ նախ հաշտեաց ընդ եղբօր
քում, և ապա եկեալ մատուսջիր զպատարագն քո:
25 Լեր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղագոյն, մինչ-
դեռ իցես ընդ նմա 'ի ճանապարհի. գուցէ մատնիցէ
զքեզ ոսոխն դատաւորի, և դատաւորն դահճի, և
26 արկանիցիս 'ի բանտ: Ամէն ասեմ քեզ. ոչ ելանի-
ցես անտի մինչև հատուցանիցես զյետին նա-
27 քարակիտն: Լուարուք զի ասացաւ, Մի՛ շնար.
28 Բայց ես ասեմ ձեզ. Թէ ամենայն որ հայի 'ի կին մարդ-
ոյ 'ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա
29 'ի սրտի իւրում: Եթէ ակն քո աջ գայթագղեցուցանէ
զքեզ, խլեա՛ զնա և ընկեա՛ 'ի քէն. զի լաւ է քեզ
եթէ մի յանդամոց քոց կորիցէ, և մի՛ ամենայն մար-
30 մինդ քո անկանիցի 'ի գեհենն: Եւ եթէ աջ ձեռն
քո գայթագղեցուցանէ զքեզ, հա՛տ զնա և ընկեա՛
'ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կո-
րիցէ, և մի՛ ամենայն մարմինդ քո արկանիցի 'ի
31 գեհենն: Ապաքէն ասացաւ, Եթէ որ արձակիցէ ըզ-
32 կին իւր՝ տացէ նմա զարձակմանն. Բայց ես ասեմ
ձեզ, Եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց
բանի պոռնկութեան՝ նա տայ նմա շնալ, և որ
33 զարձակեալն առնէ՝ շնայ: Դարձեալ լուարուք զի ա-
սացաւ առաջնոցն. Մի՛ երդնուցուս սուտ, բայց հա-

34 տուցես Տեառն զերդմունս քո։ Այլ ես ասեմ ձեզ
Ամենեւին մի երդնուլ, մի յերկինս՝ զի աթոռ է Աստու-
35 ծոյ, Եւ մի յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա,
36 և մի յԵրուսաղէմ՝ զի քաղաք է մեծի Արքայի. Եւ
մի 'ի գլուխ քո երդնուցուս, զի ոչ կարես մազ մի սպի-
37 տակ առնել կամ թուխ։ Այլ եղիցի ձեր բան՝ այոն
38 այո, և ոչն ոչ. զի աւելին քան զայն 'ի չարէն է։ Լու-
արուք զի ասացաւ. Ակն ընդ ական, և ատամն ընդ
39 ատաման։ Այլ ես ասեմ ձեզ՝ Մի կալ հակառակ
չարին. այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո,
40 դարձո նմա և զմիւսն։ Եւ որ կամիցի ոք դատել և առ-
41 նուլ զշապիկս քո, թող 'ի նա և զբաճկոն քո։ Եւ որ
տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի, երթ ընդ
42 նմա և երկուս։ Որում խնդրէ 'ի քէն՝ տուր. և որ
կամի փոխ առնուլ 'ի քէն՝ մի դարձուցաներ զերեսս։
43 Լուարուք ապաքէն զի ասացաւ. Սիրեսցես զընկեր
44 քո, և ատեսցես զթշնամին քո։ Այլ ես ասեմ ձեզ.
Սիրեցէք զթշնամիս ձեր, օրհնեցէք զանիծիչս ձեր, բա-
րի արարէք ատելեաց ձերոց, և աղօթս արարէք 'ի
45 վերայ այնոցիկ՝ որ լլկեն զձեզ և հալածեն. Զի ե-
ղիջիք որդիք Հօր ձերոյ որ յերկինսն է. զի զարե-
գակն իւր ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց, և ածէ
46 անձրև 'ի վերայ արդարոց և մեղաւորաց։ Զի եթէ
սիրիցէք զայնոսիկ որ սիրեն զձեզ՝ զի՞նչ վարձք ի-
47 ցեն. ոչ ապաքէն և մաքսաւորք զնոյն գործեն։ Եւ ե-
թէ տայցէք միայն ողջոյն* բարեկամաց ձերոց՝ զի՞նչ
աւելի առնէք. ոչ ապաքէն մաքսաւորք † և մեղաւորք

* 'Ի Յոյնն, եղբարց    † 'Ի Յոյնն չէ

48 զնոյն գործեն : Արդ եղերո՛ւք դուք կատարեալք,
որպէս և Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է :

## ԳԼ. Զ.

1 Զգո՛յշ լերուք ողորմութեան ձերում՝ մի՛ առնել
առաջի մարդկան, որպէս թէ 'ի ցոյց ինչ նոցա. գու-
ցէ և վարձս ոչ ընդունիցիք 'ի Հօրէն ձերմէ՝ որ
2 յերկինսն է : Այլ յորժամ առնիցես ողորմութիւն,
մի՛ հարկաներ փող առաջի քո, որպէս կեղծաւորքն
առնեն 'ի ժողովուրդս և 'ի հրապարակս՝ որպէս
զի փառաւորեսցին 'ի մարդկանէ. ամէն ասեմ ձեզ,
3 այն իսկ են վարձք նոցա : Այլ դու յորժամ ողոր-
մութիւն առնիցես, մի՛ գիտասցէ ձախ քո զինչ գործէ
4 աջ քո. Որպէս զի եղիցի ողորմութիւն քո 'ի ծածուկ,
և Հայրն քո որ տեսանէ 'ի ծածուկ՝ հատուսցէ
5 քեզ յայտնապէս : Եւ յորժամ յաղօթս կայցես,
մի՛ լինիցիս որպէս կեղծաւորքն. զի սիրեն 'ի ժողո-
վուրդս և յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս,
որպէս զի երևեսցին մարդկան. ամէն ասեմ ձեզ, այն
6 իսկ են վարձք նոցա : Այլ դու յորժամ կայցես յաղօ-
թըս, մո՛ւտ 'ի սենեակ քո, և փակեա՛ զդուրս քո, և
կա՛ց յաղօթս առ Հայր քո 'ի ծածուկ. և Հայրն քո
որ տեսանէ 'ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս :
7 Եւ յորժամ կայցէք յաղօթս, մի՛ շատախօսք լինիք
իբրև զհեթանոսսն. զի համարին եթէ 'ի բազում
8 խօսից իւրեանց լսելի լինիցին : Արդ մի՛ նմանիցէք
նոցա. զի գիտէ Հայրն ձեր զինչ պիտոյ է ձեզ,
9 մինչչև ձեր խնդրեալ ինչ իցէ 'ի նմանէ : Եւ արդ

այսպէս կացէք դուք յաղօթս. Հայր մեր որ յեր-
10 կինս, սուրբ եղիցի անուն քո: Եկեսցէ արքայու-
թիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և
11 յերկրի: Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր:
12 Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք
13 մերոց պարտապանաց: Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձու-
թիւն, այլ փրկեա՝ զմեզ 'ի չարէ. զի քո է արքա-
յութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս ամէն:
14 Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա,
15 թողցէ և ձեզ Հայրն ձեր երկնաւոր: Ապա թէ
ո՛չ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, և ո՛չ
16 Հայրն ձեր թողցէ ձեզ զյանցանս ձեր: Եւ յոր-
ժամ պահիցէք՝ մի՛ լինիք իբրև զկեղծաւորսն տրտ-
մեալք. որ ապականեն զերեսս իւրեանց, որպէս զի
երևեսցին մարդկան թէ պահիցեն. ամէն ասեմ
17 ձեզ, Այն իսկ են վարձք նոցա: Այլ դու յորժամ
18 պահիցես, Օ՛ծ զգլուխ քո՝ և լուա՛ զերեսս քո, Զի մի՛
երևեսցիս մարդկան իբրև զպահօղ. այլ Հօրն քում
'ի ծածուկ. և Հայրն քո որ տեսանէ 'ի ծածուկ, հա-
19 տուսցէ քեզ յայտնապէս: Մի՛ գանձէք ձեզ գանձս
յերկրի. ուր ցեց և ուտիճ ապականեն, և ուր
20 գողք ական հատանեն և գողանան: Այլ գանձե-
ցէ՛ք ձեզ գանձս յերկինս, ուր ո՛չ ցեց և ո՛չ ու-
տիճ ապականեն, և ո՛չ գողք ական հատանեն, և
21 գողանան: Զի ուր գանձք ձեր են անդ և սիրտք
ձեր եղիցին:

22 Ճրագ մարմնոյ ակն է. եթէ ակն քո առատ է,
23 ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի: Ապա եթէ ակն
քո չար է ամենայն մարմինդ խաւարին եղիցի. իսկ

արդ՝ եթէ լոյսդ որ 'ի քեզ է խաւար է, խաւարն
24 որչափ ևս։ Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել.
կամ զմին ատիցէ, և զմիւսն սիրիցէ. կամ զմին
մեծարիցէ, և զմիւսն արհամարհիցէ. ոչ կարէք Աս-
25 տուծոյ ծառայել և մամոնայի։ Վասն այդորիկ ա-
սեմ ձեզ Մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց՝ զի՞նչ ու-
տիցէք կամ զի՞նչ ըմպիցէք. և մի՛ վասն մարմնոց
ձերոց՝ թէ զի՞նչ ագանիցիք. ո՞չ ապաքէն ոգի ա-
ռաւել է քան զկերակուր՝ և մարմին քան զհանդերձ։
26 Հայեցարո՛ւք 'ի թռչունս երկնից՝ զի ո՛չ վարեն և
ո՛չ հնձեն և ո՛չ ժողովեն 'ի շտեմարանս, և Հայրն
ձեր երկնաւոր կերակրէ զնոսա. ո՞չ ապաքէն դուք
27 առաւել էք քան զնոսա։ Իսկ արդ՝ ո՞ 'ի ձէնջ առ
հոգալ իւրում՝ յաւելուլ կարիցէ 'ի հասակ իւր կան-
28 գուն մի։ Եւ վասն հանդերձի զի՞ հոգայք. հայե-
ցարո՛ւք 'ի շուշանն վայրենի՝ որպէս աճէ. ո՛չ ջա-
29 նայ և ո՛չ նիւթէ։ Ասեմ ձեզ՝ զի ո՛չ Սողոմոն յա-
մենայն 'ի փառսն իւրում զգեցաւ իբրև զմի 'ի նո-
30 ցանէ. Իսկ եթէ զխոտն 'ի վայրի, որ այսօր է և
վաղիւն 'ի հնոց արկանի, Աստուած այնպէս զգե-
ցուցանէ. որչափ ևս առաւել զձեզ թերահաւատք։
31 Մի՛ այսուհետև հոգայցէք և ասիցէք. Զի՞նչ կե-
րիցուք՝ կամ զի՞նչ արբցուք՝ կամ զի՞նչ զգեցցուք։
32 Զի զայդ ամենայն հեթանոսք խնդրեն. քանզի գի-
տէ Հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ա-
33 մենայն։ Խնդրեցէ՛ք նախ զարքայութիւնն Աստուծոյ
և զարդարութիւն նորա, և այդ ամենայն յաւելցի
34 ձեզ։ Մի՛ այսուհետև հոգայցէք վասն վաղուին՝ զի
վաղիւն վասն իւր հոգասցի. շատ է աւուրն չար իւր։

## ԳԼ. Է.

1 Մի՛ դատէք՝ զի մի՛ դատիցիք. (2) Զի որով դա-
տաստանաւ դատէք՝ դատելոց էք. և որով չափով
3 չափէք՝ չափեսցի ձեզ: Զի՞ տեսանես զշիւղ յական
եղբօր քո և 'ի քում ական զգերանդ ո՛չ տեսա-
4 նես: Կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո, Թո՛ղ հանից
զշիւղդ յականէ քումմէ. և ահաւադիկ 'ի քում ա-
5 կանդ գերան կայ: Կեղծաւոր, հա՛ն նախ զգերանդ
յականէ քումմէ, և ապա հայեսցես հանել զշիւղն
6 յականէ եղբօր քո: Մի՛ տայք զսրբութիւն շանց.
և մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց,
զի մի՛ առ ոտն կոխեսցեն զնոսա, և դարձեալ եր-
7 կիծուցանիցեն զձեզ: Խնդրեցէ՛ք և տացի ձեզ, հայ-
8 ցեցէ՛ք և գտջիք, բախեցէ՛ք և բացցի ձեզ: Զի ա-
մենայն որ խնդրէ՝ առնու, և որ հայցէ՝ գտանէ, և
9 որ բախէ՝ բացցի նմա: Ո՞ իցէ 'ի ձէնջ մարդ՝ ցոր
10 խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տայցէ նմա: Եւ
11 կամ խնդրիցէ ձուկն, միթէ օձ տայցէ նմա: Արդ՝
եթէ դուք որ չարդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ
որդւոց ձերոց, ո՞րչափ ևս առաւել Հայրն ձեր որ
յերկինս է՝ տացէ բարիս այնոցիկ որ խնդրեն զնա:
12 Զամենայն որ միանգամ կամիջիք՝ թէ արասցեն ձեզ
մարդիկ, այնպէս և դուք արարէք նոցա. զի այս
13 իսկ են օրէնքն և մարգարէքն: Մտէ՛ք ընդ նեղ դու-
ռն. քանզի ընդարձակ է դուռնն՝ և համարձակ
ճանապարհն՝ որ տանի 'ի կորուստ. և բազումք են
14 որ մտանեն ընդ նա: Քանզի անձուկ է դուռնն՝ և
նեղ ճանապարհն՝ որ տանի 'ի կեանս, և սակաւք

15 են որ գտանեն զնա։ Զգո՛յշ լերուք 'ի սուտ մար-
գարէիցն՝ որ գան առ ձեզ Հանդերձիւք ոչխարաց,
16 և 'ի ներքոյ են գայլք յափշտակողք։ 'Ի պտղոյ նո-
ցա ծանիջիք զնոսա. միթէ քաղիցե՞ն 'ի փշոց խա-
17 ղող՝ կամ 'ի տատասկէ թուզ։ Այսպէս ամենայն
ծառ բարի՝ պտուղ բարի առնէ, և ծառ չար՝ պը-
18 տուղ չար առնէ։ Ո՛չ կարէ ծառ բարի պտուղ չար
19 առնել՝ և ո՛չ ծառ չար պտուղ բարի առնել։ Ամե-
նայն ծառ՝ որ ոչ առնէ պտուղ բարի, հատանի և
20 'ի հուր արկանի։ Ապա 'ի պտղոյ նոցա ծանիջիք
21 զնոսա։ Ոչ ամենայն որ ասէ ցիս՝ Տէր Տէր, մտցէ
յարքայութիւն երկնից. այլ որ առնէ զկամս Հօր
22 իմոյ որ յերկինսն է։ Բազումք ասիցեն ցիս յաւուրն
յայնմիկ. Տէր Տէր՝ ո՞չ յանուն քո մարգարէա-
ցաք, և յանուն քո դևս հանաք, և յանուն քո
23 զօրութիւնս բազումս արարաք։ Եւ յայնժամ ա-
սացից ցնոսա՝ եթէ Ո՛չ երբէք գիտէի զձեզ. 'ի բա՛ց
կացէք յինէն* ամենեքեան՝ դուք գործէիք զանօրէնու-
24 թիւն։ Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ և առ-
նէ զսոսա, նմանեսցի առն իմաստնոյ՝ որ շինեաց
25 զտուն իւր 'ի վերայ վիմի։ Իջին անձրևք՝ և խա-
ղացին գետք, շնչեցին հողմք՝ և բախեցին զտունն,
և ո՛չ կործանեցաւ. քանզի 'ի վերայ վիմի հաստա-
26 տեալ էր։ Եւ ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝
և ո՛չ առնէ զսոսա, նմանեսցի առն յիմարի՝ որ շինեաց
27 զտուն իւր 'ի վերայ աւազոյ։ Իջին անձրևք՝ յար-
եան գետք, շնչեցին հողմք՝ հարին զտունն, և

* 'Ի Յունին չէր։

28 անկաւ. և էր կործանումն նորա մեծ յոյժ: Եւ եղև
իբրև կատարեաց Յիսուս * զամենայն զբանս զայսո-
սիկ, զարմանային ժողովուրդքն ընդ վարդապետու-
29 թիւն նորա: Զի իբրև իշխանութեամբ ուսուցա-
նէր՝ և ոչ որպէս դպիրքն:

## ԳԼ. Ը

1 Այլ ինքն էջ 'ի լեռնէ անտի, գնացին զհետ նո-
2 րա ժողովուրդք բազումք: Եւ ահա մատուցեալ բո-
րոտ մի, երկիրպագանէր նմա, և ասէր. Տէ՛ր՝ եթէ
3 կամիս՝ կարող ես զիս սրբել: Ձգեաց զձեռն իւր և
հասոյց 'ի նա Յիսուս՝ և ասէ. Կամի՛մ՝ սրբեա՛ց. և
4 վաղվաղակի սրբեցաւ 'ի նմանէ բորոտութիւնն: Եւ
ասէ ցնա Յիսուս, Զգո՛յշ լեր՝ մի՛ ումեք ասիցես. այլ
երթ ցո՛յց զանձն քո քահանային, և մատո՛ զպա-
տարագն, զոր հրամայեաց Մովսէս 'ի վկայութիւն
5 նոցա: Եւ մտեալ 'ի Կափառնաում մատեաւ առ նա
6 հարիւրապետ մի, աղաչէր զնա, Եւ ասէր. Տէ՛ր՝
մանուկ իմ անկեալ կայ 'ի տան անդամալոյծ՝ չա-
7 րաչար տանջեալ: Ասէ ցնա Յիսուս. Ես եկից՝ և
8 բժշկեցից զնա: Պատասխանի ետ հարիւրապետն՝ և
ասէ. Տէ՛ր՝ չե՛մ բաւական՝ եթէ ընդ յարկաւ իմով
մտցես. այլ ասա՛ բանիւ, և բժշկեսցի մանուկն իմ:
9 Քանզի և ես այր մի եմ ընդ իշխանութեամբ, ու-
նիմ ընդ ինև զինուորս. ասեմ սմա Ե՛րթ՝ և եր-
թայ, և այլում թէ Եկ՝ և գայ, և ծառայի

* Ի Յոյնն չէ:

10 իմում թէ Արա՛ զայս՝ և առնէ: Իբրև լուաւ Յի-
սուս՝ զարմացաւ, և ասէ ցայնոսիկ՝ որ զհետ երթա-
յին. Ամէն ասեմ ձեզ՝ և ո՛չ յԻսրայէլի այսպիսի
11 հաւատս գտի երբէք: Բայց ասեմ ձեզ, Զի բազումք
յարևելից և յարևմտից եկեսցեն՝ և բազմեսցին
ընդ Աբրահամու և ընդ Իսահակայ և ընդ Յակովբու
12 յարքայութեան երկնից: Եւ որդիքն արքայութեան
ելցեն 'ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և
13 կրճել ատամանց: Եւ ասէ Յիսուս ցհարիւրապետն.
Ե՛րթ՝ և որպէս հաւատացերդ եղիցի քեզ. և ող-
14 ջացաւ մանուկն նորա* յաւուր յայնմիկ: Եւ եկեալ
Յիսուս 'ի տուն Պետրոսի, ետես զի զզոքանչ նորա
15 անկեալ դնէր տապացեալ. Կալաւ զձեռանէ նորա՝
և եթող զնա ջերմն. յոտն եկաց՝ և պաշտէր ըզ-
16 նոսա: Իբրև եղև երեկոյ՝ մատուցին առ նա դի-
ւահարս բազումս, և եհան զայսսն բանիւ. և զա-
17 մենայն հիւանդսն բժշկեաց: Զի լցցի բանն՝ որ ա-
սացաւ 'ի ձեռն Եսայեայ մարգարէի. Նա զհիւան-
դութիւնս մեր վերացոյց, և զցաւս մեր եբարձ:
18 Տեսեալ Յիսուսի ժողովուրդս բազումս զիւրև,
19 հրամայեաց երթալ յայնկոյս: Եւ մատուցեալ դպիր
մի ասէ ցնա. Վարդապետ՝ եկից և ես զկնի քո յոր
20 վայր և երթիցես: Ասէ ցնա Յիսուս. Աղուեսուց
որջք գոն՝ և թռչնոց երկնից բոյնք, այլ Որդւոյ
21 մարդոյ ո՛չ գոյ՝ ուր դիցէ զգլուխ իւր: Եւ մի ոմն
յաշակերտացն նորա ասէ ցնա. Տէ՛ր՝ տո՛ւր ինձ
22 հրաման՝ զի երթայց նախ թաղեցից զհայր իմ: Ասէ

* 'Ի Յոյնն, 'ի ժամուն

ցնա Յիսուս. Ե՛կ զկնի իմ, եւ թո՛յլ տուր մեռելոցն
23 թաղել զմեռեալս իւրեանց։ Եւ իբրեւ եմուտ 'ի նաւն,
24 գնացին զկնի նորա աշակերտքն նորա։ Եւ ահա շար-
ժումն մեծ եղեւ 'ի ծովուն՝ մինչ նաւին ծածկել
25 յալեաց անտի, եւ ինքն ննջէր։ Եւ մատուցեալ ա-
շակերտքն յարուցին զնա եւ ասեն, Տէ՛ր՝ փրկեա՛
26 զմեզ՝ զի կորնչիմք։ Եւ ասէ ցնոսա. Ընդէ՞ր վատա-
սիրտք էք սակաւահաւատք. յայնժամ յարուցեալ
սաստեաց հողմոցն եւ ծովուն, եւ եղեւ խաղաղու-
27 թիւն մեծ։ Եւ մարդիկն զարմացան՝ եւ ասէին. Ո՞ր-
պիսի ոք իցէ սա՝ զի եւ հողմք եւ ծով հնազանդին
28 սմա։ Եւ իբրեւ անց յայնկոյս յերկիրն Գերգեսաց-
ւոց, պատահեցին նմա դիւահարք երկու՝ ելեալք 'ի
գերեզմանացն, չարաչարք յոյժ. որպէս զի չէր
29 հնար անցանել ումեք ընդ այն ճանապարհ։ Եւ ա-
հա աղաղակեցին եւ ասեն. Զի՞ կայ մեր եւ քո Յի-
սուս Որդի Աստուծոյ, եկիր տարաժամ՝ տանջել ըզ-
30 մեզ։ Եւ էր հեռագոյն 'ի նոցանէ երամակ մի խո-
31 զից արօտական։ Եւ դեւքն աղաչէին զնա եւ ասէին.
Եթէ հանես զմեզ աստի, հրաման տուր մեզ երթալ
32 յերամակ խոզիցն։ Եւ ասէ ցնոսա. Երթա՛յք. եւ
նոքա ելեալ գնացին յերամակն խոզից. եւ դիմեաց
ամենայն երամակն 'ի դարէ անտի 'ի ծով, եւ մե-
33 ռան 'ի ջուրսն։ Եւ խոզարածքն փախեան, եւ եր-
թեալ 'ի քաղաքն պատմեցին զամենայն, եւ զիրս
34 դիւահարացն։ Եւ ահա ամենայն քաղաքն ել ընդ-
առաջ Յիսուսի. իբրեւ տեսին զնա՝ աղաչեցին զի
գնասցէ 'ի սահմանաց նոցա։

## ԳԼ. Թ

1 Եւ մտեալ 'ի նաւ անց յայնկոյս և եկն 'ի քա-
2 ղաք իւր ։ Եւ ահա մատուցին առ նա անդամալոյծ
մի, որ դնէր 'ի մահիճս. և տեսեալ Յիսուսի ըզ-
հաւատս նոցա՝ ասէ ցանդամալոյծն. * Թողեալ լիցին
3 քեզ մեղք քո ։ Եւ ահա ոմանք 'ի դպրացն ասեն ընդ
4 միտս. Հայհոյէ դա ։ Եւ ծանուցեալ Յիսուսի զխոր-
հուրդս նոցա՝ ասէ ցնոսա. Ընդէ՞ր խորհիք դուք չա-
5 րիս 'ի սիրտս ձեր ։ Զի՞նչ դիւրին է. ասել՝ Թողեալ
լիցին քեզ մեղք քո, թէ ասել Արի՛ և շրջեա՛ց ։
6 Այլ զի գիտասջիք՝ եթէ իշխանութիւն ունի Որդի
մարդոյ յերկրի թողուլ զմեղս. յայնժամ ասէ ցան-
դամալոյծն. Արի՝ առ զմահիճս քո՝ և երթ 'ի
7 տուն քո ։ Եւ յարուցեալ գնաց 'ի տուն իւր ։
8 Իբրև տեսին ժողովուրդքն, զարմացան. և փա-
ռաւոր առնէին զԱստուած զտուիչն այնպիսի իշխա-
նութեան մարդկան ։

9 Եւ անցեալ ընդ այն Յիսուսի՝ ետես զայր մի,
զի նստէր 'ի մաքսաւորութեան Մատթէոս անուն,
և ասէ ցնա. Ե՛կ զկնի իմ. և յարուցեալ գնաց
10 զկնի նորա ։ Եւ եղև իբրև բազմեալ էր նա 'ի տան,
և ահա բազում մաքսաւորք և մեղաւորք եկեալ և
բազմեալ էին ընդ Յիսուսի՝ և ընդ աշակերտս նո-
11 րա ։ Իբրև տեսին փարիսեցիքն՝ ասեն ցաշակերտս
նորա. Ընդէ՞ր ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս ու-
12 տէ վարդապետն ձեր ։ Իսկ Յիսուս իբրև լուաւ՝

* 'Ի Յոյնն, Քաջալերեա՛ց որդեակ,

ասէ ցնոսա. Ո՛չ է պիտոյ բժիշկ կարողաց՝ այլ
13 հիւանդաց: Երթա՛յք՝ ուսարո՛ւք զի՞նչ է. Ողոր-
մութիւն կամիմ, և ո՛չ զզոհ. զի ո՛չ եկի կոչել
14 զարդարս՝ այլ զմեղաւորս: Յայնժամ մատեան առ
նա աշակերտքն Յովհաննու՝ և ասեն. Ընդէ՞ր մեք
և փարիսեցիքն պահեմք յաճախ, և քո աշա-
15 կերտքդ ո՛չ պահեն: Ասէ ցնոսա Յիսուս. Միթէ
մարթ է՞ ինչ իցէ մանկանց առագաստի սուգ առնուլ՝
մինչ փեսայն ընդ նոսա իցէ. այլ եկեսցեն աւուրք՝
յորժամ բարձցի 'ի նոցանէ փեսայն, և ապա պա-
16 հեսցեն: Ոչ ոք արկանէ կապերտ անթափ 'ի վե-
րայ հնացեալ ձորձոյ. զի առնու ելանէ զլրութիւնն
նորա 'ի հանդերձէն, և ևս չար պատառումն լինի:
17 Եւ ո՛չ արկանեն գինի նոր 'ի տիկս հինս. ապա
թէ ոչ՝ տիկքն պատառին՝ և գինին հեղու, և տիկ-
քըն կորնչին. այլ արկանեն զգինի նոր 'ի տիկս
նորս, և երկոքին պահին:
18 Մինչդեռ նա զայս խօսէր ընդ նոսա, ահա իշ-
խան մի մատուցեալ երկիրպագանէր նմա՝ և ասէր.
Դուստր իմ արդ ևս վախճանեցաւ. այլ եկեալ դի-
19 ցես զձեռն քո 'ի վերայ նորա՝ և կեցցէ: Յարեաւ
Յիսուս՝ և գնաց զկնի նորա աշակերտօքն հան-
20 դերձ: Եւ ահա կին մի տեռատես երկոտասան-
ամեայ՝ մատուցեալ յետոյ մերձեցաւ 'ի դրօշակ հան-
21 դերձի նորա: Քանզի ասէր 'ի միտ իւրում. Թէ
22 միայն մերձենամ 'ի հանդերձս նորա՝ փրկիմ: Իսկ
Յիսուս իբրև դարձաւ և ետես զնա՝ ասէ. Քաջա-
լերեա՛ց դուստր՝ հաւատք քո կեցուցին զքեզ. և
23 փրկեցաւ կինն 'ի ժամէն յայնմանէ: Իբրև եկն

Յիսուս 'ի տուն իշխանին, եւ ետես զփողահարսն եւ
24 ամբոխ յոյժ*, Ասէ ցնոսա. 'Ի բաց գնացէք, զի
25 ոչ եթէ մեռեալ է աղջիկն՝ այլ ննջէ: Եւ ծաղր
առնէին զնա. եւ իբրեւ ել ամբոխն 'ի բաց, եմուտ
26 կալաւ զձեռանէ նորա, եւ յարեաւ աղջիկն: Եւ
ել համբաւս այս ընդ ամենայն երկիրն ընդ այն:
27 Եւ մինչդեռ անցանէր ընդ այն Յիսուս, զհետ
եղեն նորա կոյրք երկու աղաղակէին՝ եւ ասէին.
28 Ողորմեա՛ց մեզ Որդի Դաւթի: Եւ իբրեւ եկն 'ի տուն,
մատեան առ նա կոյրքն. եւ ասէ ցնոսա Յիսուս.
Հաւատա՞յք՝ եթէ կարօղ եմ առնել ձեզ զայդ. ա-
29 սեն ցնա՝ Այո՛ Տէր: Յայնժամ մերձեցաւ յաչս նո-
30 ցա՝ եւ ասէ. Ըստ հաւատոց ձերոց եղիցի ձեզ: Եւ
բացան աչք նոցա. եւ սաստեաց նոցա Յիսուս եւ
31 ասէ. Զգո՛յշ կացէք՝ մի ոք գիտասցէ: Եւ նոքա ե-
լեալ համբաւեցին զնա ընդ ամենայն երկիրն ընդ
32 այն: Եւ յելանելն նոցա արտաքս, ահա մատու-
33 ցին առ նա այր մի՝ համր դիւահար: Եւ յելանել
դիւին՝ խօսեցաւ համրն. եւ զարմացան ժողովուրդ-
քն՝ եւ ասեն. Թէ Եւ ոչ երբէք երեւեցաւ այս-
34 պիսի ինչ յԻսրայէլի: Իսկ փարիսեցիքն ասէին, թէ
Իշխանաւն դիւաց հանէ զդեւս:
35 Եւ շրջէր Յիսուս ընդ ամենայն քաղաքս եւ ընդ
գիւղս. ուսուցանէր 'ի ժողովուրդս նոցա, եւ քարոզէր
զաւետարանն արքայութեան. եւ բժշկէր զամենայն
ախտս եւ զամենայն հիւանդութիւնս 'ի ժողովրդեանն:
36 Եւ տեսեալ զժողովուրդսն՝ գթացաւ 'ի նոսա. զի էին

* 'Ի Յոյնն, եւ զամբոխն զի լային

աշխատեալք և ցրուեալք իբրև զոչխարս, որոց ոչ
37 իցէ հովիւ։ Յայնժամ ասէ ցաշակերտսն իւր.
38 Հունձք բազում են՝ և մշակք սակաւ։ Արդ աղաչե-
ցէք զՏէր հնձոց՝ զի հանցէ մշակս ՚ի հունձս իւր։

## Գլ. Ժ

1 Եւ կոչեցեալ առ ինքն զերկոտասանեսին աշա-
կերտսն իւր, ետ նոցա իշխանութիւն այսոց պղ-
ծոց հանել զնոսա, և բժշկել զամենայն ցաւս և
2 զամենայն հիւանդութիւնս։ Եւ առաքելոցն եր-
կոտասանից էին անուանք այսոքիկ. առաջին Սի-
մովն՝ անուանեալն Պետրոս և Անդրէաս եղբայր նո-
3 րա։ Յակոբոս Զեբեդեայ, և Յովհաննէս եղ-
բայր նորա. Փիլիպպոս, և Բարթուղիմէոս. Թով-
մաս, և Մատթէոս մաքսաւոր. Յակոբոս Աղփեայ,
4 և Ղեբէոս՝ որ անուանեցաւ Թադէոս։ Սիմովն
Կանանացի. և Յուդա Իսկարիովտացի՝ որ և մատ-
5 նեացն զնա։ Զնոսա երկոտասանեսին առաքեաց
Յիսուս, պատուիրեաց նոցա՝ և ասէ. ՚Ի ճանա-
պարհ հեթանոսաց մի երթայցէք, և ՚ի քաղաք
6 Սամարացւոց մի մտանիցէք։ Այլ երթայք առա-
7 ւել առ ոչխարսն կորուսեալս տանն Իսրայէլի։ Եւ
իբրև երթայցէք քարոզեցէք և ասացէք, թէ Մեր-
8 ձեալ է արքայութիւն երկնից։ Զհիւանդս բժշ-
կեցէք, զբորոտս սրբեցէք,* զդևս հանէք, ձրի ա-
9 ռիք՝ և ձրի տուք։ Մի ստանայք ոսկի՝ և մի ար-

* ՚Ի Յոյնն, զմեռեալս յարուցէք.

10 ծաթ՝ և մի՛ պղինձ 'ի գօտիս ձեր։ Մի՛ պարկ 'ի
ճանապարհ, և մի՛ երկուս հանդերձս, մի՛ կօշիկս,
մի՛ ցուպ. զի արժանի է մշակն կերակրոյ իւրոյ։
11 Յոր քաղաք մտանիցէք կամ 'ի գեօղ, հարցանի-
ցէք՝ թէ ո՞ է 'ի նմա արժանի։ և անդ լինիջիք՝
12 մինչև ելանիցէք անտի։ Եւ իբրև մտանիցէք 'ի տու-
նըն, ողջո՛յն տայջիք նմա*՝ և ասասջի՛ք. Ողջոյն տա-
13 նըս այսմիկ"։ Եթէ իցէ տունն արժանի, եկեսցէ
ողջոյնն ձեր 'ի վերայ նորա. ապա թէ ո՛չ իցէ ար-
14 ժանի, ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի։ Եւ որ ո՛չ ըն-
կալցի զձեզ՝ և ո՛չ լուիցէ բանից ձերոց, իբրև ելա-
նիցէք 'ի տանէն կամ 'ի քաղաքէն յայնմանէ,
15 թօթափեսջի՛ք զփոշին յոտից ձերոց։ Ամէն ասեմ
ձեզ՝ Դիւրագոյն լիցի երկրին Սոդոմացւոց և Գոմորա-
ցւոց յաւուրն դատաստանի, քան քաղաքին այնմիկ։
16 Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրև զոչխարս 'ի
մէջ գայլոց. եղերո՛ւք այսուհետև խորագէտք իբրև
17 զօձս, և միամիտք իբրև զաղաւնիս։ Զգո՛յշ լինի-
ջիք 'ի մարդկանէ. զի մատնեսցեն զձեզ յատեանս.
18 և 'ի ժողովուրդս իւրեանց տանջեսցեն զձեզ։ Եւ
առաջի դատաւորաց և թագաւորաց տանիցեն զձեզ
19 վասն իմ 'ի վկայութիւն նոցա և հեթանոսաց։ Այլ
յորժամ մատնեսցեն զձեզ, մի՛ հոգայցէք՝ թէ ո՞ր-
պէս կամ զինչ խօսիցիք. զի տացի ձեզ 'ի ժամուն
20 յայնմիկ զինչ խօսիցիք։ Զի ո՛չ եթէ դուք իցէք՝
որ խօսիցիքն, այլ Հոգին Հօր ձերոյ որ խօսիցի 'ի
21 ձեզ։ Մատնեսցէ եղբայր զեղբայր 'ի մահ, և հայր

* 'Ի Յոյնն չէ։

զորդի. և յարիցեն որդիք ՚ի վերայ Հարց և սպա-
22 նանիցեն զնոսա: Եւ եղիջիք ատեցեալք յամե-
նեցունց վասն անուան իմոյ. իսկ որ համբերեսցէ
23 ՚ի սպառ, նա կեցցէ: Եւ յորժամ հալածեսցեն զձեզ
՚ի քաղաքիս յայսմիկ՝ փախիջիք յայլ. և եթէ
յայնմանէ հալածիցեն զձեզ՝ փախիջիք ՚ի միւս. ա-
մէն ասեմ ձեզ՝ Մի՛ սպառեսջիք զքաղաքս Իսրայէլի՝
24 մինչև եկեսցէ Որդի մարդոյ: Մի՛ է աշակերտ ա-
ռաւել քան զվարդապետ, և ո՛չ ծառայ քան զտէր
25 իւր: Շատ իցէ աշակերտին՝ եթէ եղիցի իբրև ըզ-
վարդապետ իւր, և ծառային՝ իբրև զտէր իւր. եթէ
զտանուտէրն Բէեղզեբուղ կոչեցին, ո՞րչափ ևս ա-
26 ռաւել զընտանիս նորա: Մի՛ այսուհետև երկնչիցիք՝
՚ի նոցանէ. զի ո՛չ ինչ է ՚ի ծածուկ՝ որ ոչ յայտ-
27 նեսցի, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի: Զոր ասեմ ձեզ
՚ի խաւարի՝ ասացէք ՚ի լոյս. և զոր լուէք յունկանէ
28 քարոզեցէք ՚ի վերայ տանեաց: Եւ մի՛ երկնչիք
յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին, և զոգի ո՛չ կա-
րեն սպանանել. այլ երկերո՛ւք դուք առաւել յայն-
մանէ՝ որ կարող է զոգի և զմարմին կորուսանել ՚ի
29 գեհենի: Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք դանկի միոջ
վաճառին, և մի ՚ի նոցանէ յերկիր ո՛չ անկցի ա-
30 ռանց Հօր ձերոյ: Այլ ձեր և ամենայն իսկ հեր
31 գլխոյ թուեալ է: Եւ արդ՝ մի՛ երկնչիցիք՝ զի լաւ
32 էք քան զբազում ճնճղուկս: Ամենայն որ խոստո-
վանեսցի յիս առաջի մարդկան, խոստովանեցից և
33 ես զնմանէ առաջի Հօր իմոյ՝ որ յերկինսն է: Եւ որ
ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց և ես ըզ-
34 նա առաջի Հօր իմոյ՝ որ յերկինսն է: Մի՛ համա-

րիք եթէ եկի արկանել խաղաղութիւն յերկիր. ոչ
35 եկի արկանել խաղաղութիւն, այլ սուր։ Բան-
զի եկի քակել զայր ՚ի հօրէ իւրմէ, եւ զդուստր ՚ի
36 մօրէ իւրմէ, եւ զհարսն ՚ի սկեսրէ իւրմէ։ Եւ թշ-
37 նամիք առն ընտանիք իւր։ Որ սիրէ զհայր կամ
զմայր առաւել քան զիս՝ ոչ է ինձ արժանի. եւ որ
սիրէ զուստր կամ զդուստր առաւել քան զիս՝ չէ
38 ինձ արժանի։ Եւ որ ոչ առնու զխաչ իւր՝ եւ գայ
39 զկնի իմ, չէ ինձ արժանի։ Որ գտանէ զանձն իւր,
կորուսցէ զնա՝ եւ որ կորոյս զանձն իւր վասն իմ,
40 գտցէ զնա։ Որ ընդունի զձեզ՝ զիս ընդունի, եւ որ զիս
41 ընդունի՝ ընդունի զառաքիչն իմ։ Որ ընդունի զմարգա-
րէ յանուն մարգարէի՝ զվարձս մարգարէի առցէ, եւ որ
ընդունի զարդար յանուն արդարոյ՝ զվարձս արդարոյ
42 առցէ։ Եւ որ արբուսցէ միում ՚ի փոքրկանցս յայս-
ցանէ բաժակ մի ջուր ցուրտ միայն՝ յանուն աշա-
կերտի, ամէն ասեմ ձեզ, Ոչ կորուսցէ զվարձս իւր։

## ԳԼ. ԺԱ.

1 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զպատուէր եր-
կոտասանից աշակերտացն իւրոց, գնաց անտի քա-
2 րոզել եւ ուսուցանել ՚ի քաղաքս նոցա։ Իսկ Յով-
հաննէս իբրեւ լուաւ ՚ի բանտին զգործսն Քրիս-
3 տոսի, առաքեաց ՚ի ձեռն աշակերտացն իւրոց, Եւ
ասէ ցնա. Դո՞ւ ես՝ որ գալոցն ես, եթէ այլում ա-
4 կնկալցուք։ Պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ ցնո-
սա. Գնացէք պատմեցէք Յովհաննու, զոր լուայք
5 եւ տեսէք։ Կոյրք տեսանեն, կաղք գնան, բորոտք

սրբին, և խուլք լսեն, և մեռեալք յառնեն, և աղ-
6 քատք աւետարանին: Եւ երանեալ է՝ որ ոչ գայ-
7 թակղեսցի յիս: Եւ իբրև նոքա գնացին, սկսաւ Յի-
սուս ասել ցժողովուրդսն զՅովհաննէ. Զի՞նչ ե-
լէք տեսանել յանապատին, եղէ՞գն շարժուն 'ի հող-
8 մոյ: Այլ զի՞նչ ելէք տեսանել, մա՞րդ 'ի հանդեր-
ձս փափկութեան զարդարեալ. ահաւանիկ որ ըզ-
փափուկսն զգեցեալ են՝ 'ի տունս թագաւորաց են:
9 Այլ զի՞նչ ելէք տեսանել. մարգարէ՞. այո՝ ասեմ
10 ձեզ, Եւ առաւել ևս քան զմարգարէ: Զի նա է
վասն որոյ գրեալն է. Ահա ես առաքեցից զհրեշ-
տակ իմ առաջի երեսաց քոց՝ որ պատրաստեսցէ
11 զճանապարհս քո առաջի քո: Ամէն ասեմ ձեզ՝
Ոչ է՛ յարուցեալ 'ի ծնունդս կանանց մեծ քան ըզ-
Յովհաննէս մկրտիչ. բայց փոքրիկն յարքայութեան
12 երկնից մեծ է քան զնա: Բայց յաւուրցն Յով-
հաննու մկրտչի մինչև ցայժմ՝ արքայութիւնն երկ-
նից բռնադատի, և բռունք յափշտակեն զնա:
13 Վասնզի ամենայն օրէնք և մարգարէք մինչև ցՅով-
14 հաննէս մարգարէացան: Եւ թէ կամիք ընդունել՝
15 նա է Եղիա՝ որ գալոցն է: Որ ունիցի ականջս լսե-
16 լոյ՝ լուիցէ: Ո՞ւմ նմանեցուցից զազգս զայս. նման
է մանկտւոյ՝ որ նստիցին 'ի հրապարակս, կարդայ-
17 ցեն զընկերս իւրեանց, Եւ ասիցեն. Փող հարաք
ձեզ՝ և ո՛չ կաքաւեցէք, ողբացաք ձեզ՝ և ո՛չ կոծե-
18 ցարուք: Եկն Յովհաննէս, ո՛չ ուտէր և ո՛չ ըմպէր,
19 և ասեն՝ Դև գոյ 'ի նմա: Եկն Որդի մարդոյ՝ ուտէ
և ըմպէ. և ասեն, Ահա այր կերող և արբեցող,
բարեկամ մաքսաւորաց և մեղաւորաց. և արդարա-

20 ցաւ իմաստութիւն յորդւոց իւրոց։ Յայնժամ սկը-
սաւ նախատել զքաղաքսն՝ յորս եղեն բազում զօ-
21 րութիւնք նորա, և ոչ ապաշխարեցին։ Վա՜յ քեզ
Քորազին, վա՜յ քեզ Բեթսայիդա. զի եթէ ՚ի
Տիւրոս և ՚ի Սիդոն եղեալ էին զօրութիւնքն՝ որ
՚ի ձեզ եղեն, վաղու ևս արդեօք խորգով և մոխրով
22 ապաշխարեալ էր։ Բայց ասեմ ձեզ. Դիւրագոյն
լիցի երկրին Տիւրոսի և Սիդոնի յաւուրն դատաստա-
23 նի՝ քան ձեզ։ Եւ դու Կափառնաում,* մի մինչև
յերկինս բարձրացիս, այլ՝ մինչև ՚ի դժոխս իջցես.
զի եթէ ՚ի Սոդոմ եղեալ էին զօրութիւնքն որ ՚ի
քեզ եղեն, ապաքէն կային ևս մինչև ցայսօր։
24 Բայց ասեմ ձեզ՝ Եթէ երկրին Սոդոմացւոց դիւ-
րագոյն լիցի յաւուրն դատաստանի՝ քան քեզ։
25 Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յիսուս՝ և
ասէ. Գոհանամ զքէն Հայր՝ Տէր երկնի և երկ-
րի. զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ՚ի գիտնոց,
26 և յայտնեցեր տղայոց։ Այո՛ Հայր. զի այսպէս
27 հաճոյ եղև առաջի քո։ Ամենայն ինչ տուաւ ինձ ՚ի
Հօրէ իմմէ. և ոչ ոք ճանաչէ զՈրդի՝ եթէ ոչ
Հայր, և ո՛չ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի, և
28 ում Որդին կամիցի յայտնել։ Եկա՛յք առ իս ամե-
նայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգու-
29 ցից զձեզ։ Առէ՛ք զլուծ իմ ՚ի ձեզ, և ուսարու՛ք յի-
նէն զի հեզ եմ և խոնարհ սրտիւ. և գտջիք հան-
30 գիստ անձանց ձերոց։ Զի լուծ իմ քաղցր է. և
բեռն իմ փոքրոգի։

* Ի Յոյնն, որ մինչև յերկինս բարձրացեալ ես,

## ԳԼ. ԺԲ

1 Յայնժամ գնաց Յիսուս ընդ արտորայսն նոցա
'ի շաբաթու. և աշակերտքն նորա քաղցեան, և
2 սկսան հասկ կորզել և ուտել: փարիսեցիքն իբրև
տեսին՝ ասեն ցնա. Ահաւասիկ աշակերտք քո
3 գործեն, զոր ոչ է արժան գործել 'ի շաբաթու: Եւ
նա ասէ ցնոսա. Ո՞չ իցէ ընթերցեալ ձեր՝ զոր ա-
րար Դաւիթ, յորժամ քաղցեաւն, և որ ընդ նը-
4 մայն էին: Զիա՞րդ եմուտ 'ի տունն Աստուծոյ՝ և
եկեր զհացն զառաջաւորութեան. զոր ոչ էր օրէն
նմա ուտել, և ոչ որոց ընդ նմայն էին, բայց միայն
5 քահանայից: Կամ թէ չիցէ՞ ընթերցեալ յօրէնս՝ զի
'ի շաբաթս քահանայքն 'ի տաճարին պղծեն զշա-
6 բաթն՝ և անմեղք են: Բայց ասեմ ձեզ՝ Զի մեծ քան
7 զտաճարն է աստ: Եւ եթէ գիտէիք զինչ է՝ Զո-
ղորմութիւն կամիմ՝ և ոչ զզոհ. ապա ոչ դատա-
8 պարտէիք դուք զանպարտսն: Զի տէր է շաբաթու՝
9 Որդին մարդոյ: Եւ գնացեալ անտի* Յիսուս եկն
10 'ի ժողովուրդն նոցա: Եւ անդ էր այր մի՝ որոյ ձեռն
իւր գօսացեալ էր. հարցին զնա՝ և ասեն, եթէ
Պա՞րտ իցէ 'ի շաբաթու բժշկել. զի չարախօսեսցեն
11 զնմանէ: Եւ նա ասէ ցնոսա. Ո՞վ է 'ի ձէնջ մարդ՝
որոյ իցէ ոչխար մի, և անկանիցի այն 'ի խորխորատ 'ի
շաբաթու. միթէ ո՞չ ունիցի և յարուցանիցէ զնա.
12 Իսկ արդ ո՞րչափ ևս առաւել է մարդ քան զոչխար.
ապա ուրեմն պարտ է 'ի շաբաթու բարիս գործել:

---

* 'Ի Յոյնն չիք:

13 Յայնժամ ասէ ցայրն. Ձգեա՛ զձեռն քո, և նա ձգեաց՝
14 և եղև ողջ իբրև զմիւսն: Իսկ փարիսեցիքն ելեալ
արտաքս խորհուրդ առին զնմանէ՝ թէ որպէ՛ս կորուս-
15 ցեն զնա: Եւ Յիսուս իբրև գիտաց, մեկնեցաւ
անտի. և գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք,
16 և բժշկեաց զամենեսեան: Եւ սաստեաց նոցա՝ զի
17 մի՛ յայտնեսցեն զնմանէ ումեք: Զի լցցի որ ասա-
18 ցաւն 'ի ձեռն Եսայեայ մարգարէի: Ահա մանուկ իմ
զոր ընտրեցի, և սիրելի իմ ընդ որ հաճեցաւ անձն
իմ. եդից զՀոգի իմ 'ի վերայ նորա, և իրաւունս
19 հեթանոսաց պատմեսցէ: Ո՛չ հակառակեսցի՝ և ո՛չ
աղաղակեսցէ, և ո՛չ ոք լուիցէ 'ի հրապարակս
20 զբարբառ նորա: Զեղէգն ջախջախեալ ո՛չ փշրեսցէ,
և զպատրոյկն առկայծեալ ո՛չ շիջուսցէ. մինչև
21 հանցէ 'ի յաղթութիւն զդատաստան: Եւ յանուն
նորա հեթանոսք յուսասցին:

22 Յայնժամ մատուցաւ առ նա դիւահար մի կոյր և
համր, և բժշկեաց զնա. որպէս զի համրն և կոյրն
23 խօսիցի և տեսանիցէ: Զարմացան ամենայն ժո-
ղովուրդքն՝ և ասէին. Միթէ սա՞ իցէ* Քրիստոսն
24 որդի Դաւթի": Բայց փարիսեցիքն իբրև լուան՝ ա-
սեն. Ո՛չ ուիք հանէ դա զդևս՝ եթէ ոչ Բէեղզե-
25 բուղաւ իշխանաւն դիւաց: Իբրև գիտաց Յիսուս
զխորհուրդս նոցա՝ ասէ ցնոսա. Ամենայն թագա-
ւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի. և ամե-
նայն քաղաք կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ո՛չ
26 կացցէ: Եւ եթէ Սատանայ զՍատանայ հանէ.

* 'Ի Յոյնն, որդին Դաւթի

յանձն իւր բաժանեցաւ· արդ զիա՞րդ կացցէ թա-
27 գաւորութիւն նորա։ Եւ եթէ ես Բէեղզեբուղաւ
հանեմ զդևս՝ որդիքն ձեր իւ հանիցեն, վասն այ-
28 նորիկ նոքա եղիցին ձեր դատաւորք։ Ապա թէ Հոգ-
ւով Աստուծոյ հանեմ ես զդևս, ուրեմն հասեալ
29 է 'ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ։ Կամ
զիա՞րդ կարէ ոք մտանել 'ի տուն հզօրի՝ և զգործին
նորա յափշտակել, եթէ ոչ նախ կապիցէ զհզօրն,
30 և ապա զտունն նորա յափշտակիցէ։ Որ ո՛չ ընդ իս
է, հակառակ իմ է· և որ ո՛չ ժողովէ ընդ իս
31 ցրուէ։ Վասն այդորիկ ասեմ ձեզ· Ամենայն մեղք
և հայհոյութիւնք թողցին մարդկան, բայց զՀոգ-
32 ւոյն հայհոյութիւն մի՛ թողցի*։ Եւ որ ոք ասիցէ
բան զՈրդւոյ մարդոյ՝ թողցի նմա· բայց որ զՀոգ-
ւոյն Սրբոյ ասիցէ՝ մի՛ թողցի նմա, մի՛ յայսմ աշ-
33 խարհի և մի՛ 'ի հանդերձելումն։ Կամ արարէք ըզ-
ծառն բարի՝ և զպտուղ նորա բարի, կամ արա-
րէք զծառն չար՝ և զպտուղ նորա չար· քանզի 'ի
34 պտղոյ անտի ծառն ճանաչի։ Ծնունդք իժից,
զիա՞րդ կարիցէք բարիս խօսել՝ որ չարքդ էք· քան-
35 զի 'ի յաւելուածոյ սրտի խօսի բերան։ Մարդ բա-
րի՝ 'ի բարի գանձուց սրտի իւրոյ հանէ զբարիս· և
մարդ չար՝ 'ի չար գանձուց † սրտի իւրոյ" հանէ
36 զչարիս։ Բայց ասեմ ձեզ, թէ ընդ ամենայն դա-
տարկ բանի զոր խօսիցին մարդիկ, տացեն համար
37 յաւուրն դատաստանի։ Զի 'ի բանից քոց ար-
դարասցիս, և 'ի բանից քոց պարտաւորեսցիս։

---

* Ի Յոյնն, մարդկան

† Ի Յոյնն չէ։

38 Յայնժամ պատասխանի ետուն նմա ոմանք 'ի
դպրացն և 'ի փարիսեցւոց՝ և ասեն. Վարդապետ՝
39 կամիմք նշան ինչ տեսանել 'ի քէն: Նա պատաս-
խանի ետ՝ և ասէ ցնոսա. Ազգ չար և շնացող
նշան խնդրէ. և նշան մի տացի նմա, բայց նշանն
40 Յովնանու մարգարէի: Զի որպէս էր Յովնան 'ի
փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս, նոյնպէս
եղիցի և Որդի մարդոյ 'ի սիրտ երկրի զերիս տիւս
41 և զերիս գիշերս: Արք Նինուէացիք յարիցեն 'ի
դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և դատապար-
տեսցեն զսա, զի զղջացան 'ի քարոզութեանն Յով-
նանու. և արդ աւասիկ մեծ քան զՅովնան է
42 աստ: Դշխոյն հարաւոյ յարիցէ 'ի դատաստանի
ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և դատապարտեսցէ զսա.
զի եկն 'ի ծագաց երկրի՝ լսել զիմաստութիւնն
Սողոմոնի՝ և ահա մեծ քան զՍողոմոն է աստ:
43 Այլ յորժամ այսն պիղծ ելանէ 'ի մարդոյ՝ շրջի ընդ
անջրդին տեղիս. խնդրէ հանգիստ՝ և ոչ գտանէ:
44 Յայնժամ ասէ. Դարձայց 'ի տուն իմ՝ ուստի ե-
լի. և եկեալ գտանէ զնա պարապորդ, մաքրեալ և
45 յարդարեալ: Յայնժամ երթայ՝ և առնու ընդ իւր
եօթն այլ այսս չարագոյնս քան զինքն, և մտեալ
բնակէ անդ. և լինի յետինն մարդոյն այնորիկ չար
քան զառաջինն. այնպէս եղիցի և ազգիս այսմիկ
46 չարի: Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր, ահա
մայր նորա և եղբարք նորա կային արտաքոյ՝ և
47 խնդրէին խօսել ընդ նմա: Եւ ասէ ոմն ցնա. Ահա
մայր քո և եղբարք քո կան արտաքոյ և խնդրեն
48 խօսել ընդ քեզ: Նա պատասխանի ետ այնմիկ՝ որ

ասացն ցնա , և ասէ . Ո՞վ է իմ մայր , կամ ո՞վ
49 են իմ եղբարք : Եւ ձգեալ զձեռն իւր յաշակերտսն՝
50 ասէ . Ահա մայր իմ և եղբարք իմ : Զի որ առ-
նիցէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է , նա է իմ
եղբայր և քոյր և մայր :

## ԳԼ. ԺԳ.

1 Յաւուր յայնմիկ ելեալ Յիսուս 'ի տանէն՝ նըս-
2 տաւ առ ծովեզերբն : Եւ ժողովեցան առ նա ժողո-
վուրդք բազումք , մինչև մտանել նմա 'ի նաւն՝ և
նստել . և ամենայն ժողովուրդն կայր առ ծովե-
3 զերբն . Եւ խօսէր ընդ նոսա բազում առակօք՝ և
4 ասէր : Ահա ել սերմանահան սերմանել . և 'ի սեր-
մանելն իւրում էր որ անկաւ առ ճանապարհաւ , և
5 եկն թռչունք* երկնից՝ և եկեր զնա : Եւ այլն անկաւ
յապառաժի , ուր ո՛չ գոյր հող բազում . և վաղվա-
6 ղակի բուսաւ առ 'ի չգոյէ հիւթոյ երկրին . 'Ի ծա-
գել արևու տապացաւ , և զի ո՛չ գոյին արմատք՝
7 չորացաւ : Եւ այլն անկաւ 'ի մէջ փշոց , և ելին
8 փուշքն և հեղձուցին զնա : Եւ այլն անկաւ յերկիր
բարի , և տայր պտուղ . էր որ հարիւրաւոր , և էր
9 որ վաթսնաւոր , և էր որ երեսնաւոր : Որ ունիցի
10 ականջս լսելոյ , լուիցէ : Եւ մատուցեալ աշակերտ-
քն ասեն ցնա . Ընդէ՞ր առակօք խօսիս ընդ նոսա :
11 Նա պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա . Քանզի ձեզ
տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեան երկ-

* 'Ի Յոյնն չէ :

12 նից, եւ նոցա չէ տուեալ: Զի ոյր գուցէ տացի
նմա եւ յաւելցի. եւ ոյր ոչն գուցէ, եւ զոր ունիցին՝
13 բարձցի 'ի նմանէ: Վասն այնորիկ առակօք խօսիմ
ընդ նոսա. զի տեսանեն՝ եւ ոչ տեսանեն, եւ լսեն՝ եւ
14 ոչ լսեն, եւ ոչ առնուն 'ի միտ: Եւ կատարի առ
նոսա մարգարէութիւնն Եսայեայ՝ որ ասէ. Լսելով
լուիջիք՝ եւ մի՛ իմասջիք, եւ տեսանելով տեսջիք՝ եւ
15 մի՛ տեսջիք: Զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս
այսորիկ, եւ ականջօք իւրեանց ծանրանս լուան, եւ
զաչս իւրեանց կափուցին. զի մի՛ երբէք տեսցեն
աչօք՝ եւ ականջօք լուիցեն՝ եւ սրտիւք իմասցին, եւ
16 դարձցին եւ բժշկեցից զնոսա: Բայց ձեր երանի է
աչացդ՝ զի տեսանեն, եւ ականջաց ձերոց՝ զի լսեն:
17 Ամէն ասեմ ձեզ. Զի բազում մարգարէք եւ ար-
դարք ցանկացան տեսանել զոր տեսանէքդ՝ եւ ոչ
18 տեսին, եւ լսել զոր լսէքդ՝ եւ ոչ լուան: Եւ արդ
19 լուարո՛ւք դուք զառակ սերմանացանին: Յամենայնէ՝
որ լսէ զբանն արքայութեան եւ ոչ առնու 'ի միտ,
գայ չարն եւ յափշտակէ զսերմանեալն 'ի սիրտ
նորա. այն է՝ որ առ ճանապարհաւն սերմանեցաւ:
20 Եւ որ յապառաժին սերմանեցաւ՝ այն է, որ իբրեւ
լսէ զբանն, եւ վաղվաղակի խնդութեամբ ընդունի
21 զնա: Բայց քանզի ոչ ունի արմատս յինքեան, այլ
առ ժամանակ մի է՝ 'ի լինել նեղութեան եւ հալա-
22 ծանաց վասն բանին՝ վաղվաղակի գայթակղի: Իսկ
որ 'ի մէջ փշոցն սերմանեցաւ՝ այն է, որ իբրեւ
լսէ զբանն, եւ հոգք աշխարհիս եւ պատրանք մեծու-
թեան հեղձուցանեն զբանն, եւ լինի անպտուղ:
23 Իսկ որ յերկիրն բարի սերմանեցաւ՝ այն է, որ

իբրեւ լսէ զբանն եւ 'ի միտ առնու, եւ տայ զպտուղ,
է որ հարիւր, եւ է որ վաթսուն, եւ է որ երեսուն:
24 Այլ առակ արկ առ նոսա՝ եւ ասէ. Նմանեցաւ
արքայութիւն երկնից առն, որ սերմանիցէ սերմն
25 բարի յագարակի իւրում: Եւ 'ի քուն լինել մարդ-
կան, եկն թշնամին նորա եւ ցանեաց 'ի վերայ
26 որոմն 'ի մէջ ցորենոյն՝ եւ գնաց: Եւ իբրեւ բուսաւ
խոտն՝ եւ արար պտուղ, ապա երեւեցաւ եւ որոմնն:
27 Մատուցեալ ծառայքն տանուտեառնն ասեն ցնա.
Տէր, ոչ սերմն բարի սերմանեցեր յագարակին
28 քում, արդ ուստի՞ ունիցի զորոմնն: Եւ նա ասէ
ցնոսա. Այր թշնամի արար զայն. ասեն ցնա ծա-
ռայքն. Կամիս զի երթիցուք քաղեսցուք զայն 'ի
29 բաց: Եւ նա ասէ ցնոսա. Ոչ, գուցէ մինչ քա-
ղիցէք զորոմնն, եւ զցորեանն ընդ նմին 'ի բաց խլի-
30 ցէք: Թո՛յլ տուք երկոցունց աճել 'ի միասին մինչեւ
'ի հունձս, եւ 'ի ժամանակի հնձոցն ասացից ցհն-
ձօղսն. Քաղեցէ՛ք նախ զորոմնդ եւ կապեցէ՛ք զայդ-
խուրձունս առ 'ի այրել, եւ զցորեանն ժողովեցէ՛ք
31 'ի շտեմարանս իմ: Այլ առակ արկ առ նոսա եւ
ասէ. Նման է արքայութիւն երկնից հատոյ մանանե-
խոյ, զոր առեալ մարդոյ՝ սերմանեաց յագարակի
32 իւրում: Որ փոքր է քան զամենայն սերմանիս. եւ
յորժամ աճիցէ, մեծ է քան զամենայն բանջարս.
եւ լինի ծառ՝ մինչեւ գալ թռչնոց երկնից եւ հանգ-
33 չել յոստս նորա: Այլ առակ խօսեցաւ ընդ նոսա
եւ ասէ. Նման է արքայութիւն երկնից խմորոյ, զոր
առեալ կնոջ թագոյց 'ի գրիւս երիս ալեր՝ մինչեւ
34 ամենայն խմորեցաւ: Զայս ամենայն խօսեցաւ

Յիսուս առակօք ընդ ժողովուրդսն. եւ առանց ա-
35 ռակի ոչինչ խօսէր ընդ նոսա: Զի լցցի ասացեալն
՚ի մարգարէէն. Բացից առակօք զբերան իմ, բղխե-
ցից զծածկեալսն ՚ի սկզբանէ աշխարհի:
36 Յայնժամ թողեալ Յիսուսի զժողովուրդսն՝ եկն
՚ի տուն. մատեան առ նա աշակերտքն նորա՝ եւ ա-
37 սեն, Մեկնեա՛ մեզ զառակ որոմանցն ագարակի: Նա
պատասխանի ետ՝ եւ ասէ ցնոսա. Որ սերմանէ ըզ-
38 սերմն բարի՝ Է Որդի մարդոյ: Եւ ագարակն աշ-
խարհս է. սերմն բարի նոքա են՝ որ որդիքն ար-
39 քայութեան են. իսկ որոմն որդիք չարին են: Եւ
թշնամին որ վարեաց զայն՝ Սատանայ է. եւ հունձ-
քըն կատարած աշխարհիս է. եւ հնձօղքն հրեշ-
40 տակք են: Որպէս ժողովի որոմն՝ եւ ՚ի հուր այ-
41 րի, այնպէս եղիցի ՚ի կատարածի աշխարհիս: Ա-
ռաքեսցէ Որդի մարդոյ զհրեշտակս իւր, եւ ժողո-
վեսցեն յարքայութենէ նորա զամենայն գայթակ-
ղութիւնս, եւ զայնոսիկ որք գործեն զանօրէնու-
42 թիւն: Եւ արկցեն զնոսա ՚ի հնոց հրոյ. անդ ե-
43 ղիցի լալ՝ եւ կրճել ատամանց: Յայնժամ արդարքն
ծագեսցեն իբրեւ զարեգակն յարքայութեան * երկ-
44 նից: Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ: Դարձեալ
նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ
յագարակի, զոր գտեալ մարդոյ՝ թագոյց. եւ ՚ի
խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ
45 զոր ունի, եւ գնէ զագարակն զայն: Դարձեալ
նման է արքայութիւն երկնից առն վաճառականի՝

* ՚Ի Յոյնն, Հօր իւրեանց:

46 որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս: Եւ գտեալ մի
պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զա-
մենայն զոր ինչ ունէր՝ և գնեաց զայն * մարգա-
47 րիտ: Դարձեալ նման է արքայութիւն երկնից ուռ-
կանի արկելոյ ՚ի ծով՝ և յամենայն ազգաց ժողովե-
48 լոյ: Զոր իբրև լցաւ, հանեալ ՚ի ցամաք՝ և նըս-
տեալ ժողովեցին զբարի բարին յամանս, և զխո-
49 տանն ՚ի բաց ընկեցին: Այնպէս եղիցի ՚ի կատա-
րածի աշխարհիս. ելցեն հրեշտակք՝ և մեկնեսցեն
50 զչարս ՚ի միջոյ արդարոց, Եւ արկցեն զնոսա ՚ի հնոց
51 հրոյն. անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Ասէ
ցնոսա Յիսուս. Իմացարո՞ւք զայս ամենայն. ասեն
52 ցնա. Այո՛ Տէր: Եւ նա ասէ ցնոսա. Վասն այ-
սորիկ ամենայն դպիր աշակերտեալ արքայութեան
երկնից՝ նման է առն տանուտեառն, որ հանէ ՚ի
գանձէ իւրմէ զնոր և զհին:

53 Եւ եղև իբրև կատարեաց Յիսուս զառակս զայ-
54 սոսիկ՝ փոխեցաւ անտի: Եւ եկեալ ՚ի գաւառ
իւր՝ ուսուցանէր զնոսա ՚ի ժողովրդեանն նոցա, մին-
չև զարմանալ նոցա և ասել. Ուստի՞ իցէ
55 այս իմաստութիւն և զօրութիւնք: Ո՞չ սա է հիւ-
սանն որդի. ո՞չ մայր սորա կոչի Մարիամ. և եղ-
բարք սորա Յակոբոս և Յովսէս և Սիմոն և Յու-
56 դա: Եւ քորք սորա ամենեքեան առ մեզ են. արդ
57 ուստի՞ է սմա այս ամենայն: Եւ գայթակղէին ՚ի
նա. և Յիսուս ասէ ցնոսա. Չի՛ք մարգարէ անարգ՝
58 եթէ ոչ յիւրում գաւառի և յիւրում տան: Եւ

* ՚Ի Յոյնն չէ:

ոչ արար անդ զօրութիւնս բազումս վասն անհաւատութեան նոցա ։

## ԳԼ. ԺԴ

1 Յայնմ ժամանակի լուաւ Հերովդէս չորրորդա-
2 պետ զլուր Յիսուսի ։ Եւ ասէ ցծառայս իւր. Նա
է Յովհաննէս մկրտիչ, նա յարեաւ 'ի մեռելոց,
3 եւ վասն այնորիկ զօրութիւնք լինին նովաւ ։ Քանզի
Հերովդէս կալեալ զՅովհաննէս, կապեաց զնա՝ եւ
եդ 'ի բանտի՝ վասն Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի
4 եղբօր նորա ։ Զի ասէր ցնա Յովհաննէս. Ոչ ար-
5 ժան քեզ ունել զդա ։ Եւ կամէր զնա սպանանել,
բայց երկնչէր 'ի ժողովրդենէ անտի. քանզի իբրեւ
6 զմարգարէ ունէին զնա ։ Եւ իբրեւ եղեն ծնունդք
Հերովդի՝ կաքաւեաց դուստրն Հերովդիայ 'ի մէջ
7 բազմականին. եւ հաճոյ թուեցաւ Հերովդի ։ Ուստի
եւ երդմամբ խոստացաւ տալ նմա զինչ եւ խնդրես-
8 ցէ ։ Եւ նա յառաջագոյն խրատեալ 'ի մօրէ իւրմէ,
Տուր ինձ, ասէ, այսր 'ի վերայ սկտեղ զգլուխն
9 Յովհաննու մկրտչի ։ Եւ տրտմեցաւ թագաւորն.
բայց վասն երդմանցն եւ բարձակցացն՝ հրամայեաց
10 տալ նմա ։ Եւ առաքեաց գլխատեաց զՅովհաննէս
11 'ի բանտի ։ Եւ բերաւ գլուխ նորա սկտեղբ՝ եւ տու-
12 աւ աղջկանն, եւ տարաւ առ մայր իւր ։ Եւ մատու-
ցեալ աշակերտքն նորա՝ բարձին զմարմինն եւ թաղե-
ցին՝ եւ եկեալ պատմեցին Յիսուսի ։

13 Եւ իբրեւ լուաւ Յիսուս, գնաց անտի նաւու յա-
նապատ տեղի առանձինն. իբրեւ լուան ժողովուրդքն,

14 գնացին զհետ նորա հետի 'ի քաղաքաց անտի: Եւ
իբրեւ ել*՝ ետես ժողովուրդ բազում, գթացաւ 'ի
15 նոսա, և բժշկեաց զհիւանդս նոցա: Իբրեւ ընդ ե-
րեկս եղեւ, մատեան առ նա աշակերտքն՝ և ասեն.
Տեղիս անապատ է, և օրս տարաժամեալ, արձա-
կեա զժողովուրդսդ, զի երթիցեն շուրջ 'ի շէնսն՝
16 գնեսցեն իւրեանց կերակուրս: Եւ ասէ Յիսուս.
Ո՛չինչ պիտոյ է դոցա երթալ. դո՛ւք տուք դոցա
17 ուտել: Եւ նոքա ասեն ցնա. Ոչինչ ունիմք աստ՝
18 բայց հինգ նկանակ և երկուս ձկունս: Եւ ասէ
19 ցնոսա. Բերէք այսր զայն: Եւ հրամայեաց բազմե-
ցուցանել զժողովուրդսն 'ի վերայ խոտոյ. և առ-
եալ զհինգ նկանակսն և զերկուս ձկունսն՝ հայե-
ցաւ յերկինս, օրհնեաց, և եբեկ՝ և ետ ցաշակերտսն
20 զնկանակսն, և աշակերտքն ժողովրդոցն: Կերան
ամենեքեան՝ և յագեցան, և բարձին զնշխարս կո-
21 տորոցն երկոտասան սակառի լի: Եւ որք կերանն՝
էին արք իբրեւ հինգ հազար. Թո՛ղ զկանայս և
22 զմանկտի: Եւ ստիպեաց վաղվաղակի զաշակերտսն
մտանել 'ի նաւ և յառաջել յայնկոյս, մինչ ինքն
զժողովուրդսն արձակեսցէ:
23 Եւ իբրեւ արձակեաց զժողովուրդսն, ել 'ի լեառն
առանձինն կալ յաղօթս. և իբրեւ ընդ երեկս եղեւ,
24 անդ էր միայն: Եւ նաւն† մեկնեալ էր 'ի ցամաքէն
բազում ասպարիսօք" ծփեալ յալեացն. քանզի ընդ-
25 դէմ էր հողմն: Եւ 'ի չորրորդում պահու գիշերոյն
26 եկն առ նոսա Յիսուս գնալով 'ի վերայ ծովուն: Իբ-

* Ոմանք Յիսուս՝ † 'Ի Յոհան, էր 'ի մէջ ծովուն՝

եւ տեսին զնա աշակերտքն զի գնայր ՚ի վերայ ծո-
վուն, խռովեցան, եւ ասեն, Թէ Առաչօք ինչ իցէ.
27 եւ առ ահին աղաղակեցին: Եւ վաղվաղակի խօսե-
ցաւ ընդ նոսա Յիսուս՝ եւ ասէ. Քաջալերեցարո՛ւք,
28 ես եմ, մի՛ երկնչիք: Պատասխանի ետ նմա Պետ-
րոս՝ եւ ասէ. Տէր եթէ դու ես, Հրամայեա՛ ինձ
29 գալ առ քեզ ՚ի վերայ ջրոցս: Եւ նա ասէ, Ե՛կ.
եւ իջեալ ՚ի նաւէն Պետրոս՝ գնաց ՚ի վերայ
30 ջրոցն,* եւ եկն առ Յիսուս: Եւ տեսեալ զհողմն
սաստիկ՝ երկեաւ. եւ իբրեւ սկսաւ ընկղմիլ՝ աղաղա-
31 կեաց՝ եւ ասէ. Տէր փրկեա՛ զիս: Եւ վաղվաղակի
Յիսուս ձգեաց զձեռն իւր՝ կալաւ զնա եւ ասէ. Թե-
32 րեհաւատ՝ ընդէ՞ր երկմտեցեր: Եւ իբրեւ ելին ՚ի նաւն՝
33 հանդարտեաց հողմն: Եւ որ ՚ի նաւին էին՝ մատ-
եան երկիրպագին նմա՝ եւ ասեն. Արդարեւ Որդի
34 Աստուծոյ ես դու: Եւ անցեալ եկին ՚ի ցամաք ՚ի
35 Գեննեսարէթ: Եւ իբրեւ ծանեան զնա արք տեղ-
ւոյն այնորիկ, առաքեցին ընդ ամենայն գաւառն՝ եւ
36 ածին առ նա զամենայն հիւանդս: Եւ աղաչէին զնա,
զի գոնէ միայն ՚ի քղանցս հանդերձի նորա մերձե-
ցին. եւ որ միանգամ մերձեցան՝ փրկեցան:

## ԳԼ. ԺԵ

1 Յայնժամ մատեան առ Յիսուս՝ որ յԵրուսաղէմէ
2 փարիսեցիքն եւ դպիրք՝ եւ ասեն: Ընդէ՞ր աշակերտքն
քո անցանեն զաւանդութեամբ ծերոցն. զի ո՛չ լուա-

* ՚Ի Յոյնն, զի եկեսցէ՝

14 գնացին զհետ նորա հետի ՚ի քաղաքաց անտի։ Եւ
իբրեւ ել*՝ ետես ժողովուրդ բազում, գթացաւ ՚ի
15 նոսա, եւ բժշկեաց զհիւանդս նոցա։ Իբրեւ ընդ ե-
րեկս եղեւ, մատեան առ նա աշակերտքն՝ եւ ասեն.
Տեղիս անապատ է, եւ օրս տարաժամեալ, արձա-
կեա՛ զժողովուրդդ, զի երթիցեն շուրջ ՚ի շէնսն՝
16 գնեսցեն իւրեանց կերակուրս։ Եւ ասէ Յիսուս.
Ո՛չինչ պիտոյ է դոցա երթալ. դո՛ւք տուք դոցա
17 ուտել։ Եւ նոքա ասեն ցնա. Ոչինչ ունիմք աստ՝
18 բայց հինգ նկանակ եւ երկու ձկունս։ Եւ ասէ
19 ցնոսա. Բերէ՛ք այսր զայն։ Եւ հրամայեաց բազմե-
ցուցանել զժողովուրդսն ՚ի վերայ խոտոյ. եւ ա-
ռեալ զհինգ նկանակսն եւ զերկու ձկունսն՝ հայե-
ցաւ յերկինս, օրհնեաց, եւ եբեկ՝ եւ ետ ցաշակերտսն
20 զնկանակսն, եւ աշակերտքն ժողովրդոցն։ Կերան
ամենեքեան՝ եւ յագեցան, եւ բարձին զնշխարս կո-
21 տորոցն երկոտասան սակառի լի։ Եւ որք կերանն՝
էին արք իբրեւ հինգ հազար. թո՛ղ զկանայս եւ
22 զմանկտի։ Եւ ստիպեաց վաղվաղակի զաշակերտսն
մտանել ՚ի նաւ եւ յառաջել յայնկոյս, մինչ ինքն
զժողովուրդսն արձակեսցէ։

23 Եւ իբրեւ արձակեաց զժողովուրդսն, ել ՚ի լեառն
առանձին կալ յաղօթս. եւ իբրեւ ընդ երեկս եղեւ,
24 անդ էր միայն։ Եւ նաւն† մեկնեալ էր ՚ի ցամաքէն
բազում ասպարիսօք" ծփեալ յալեացն. քանզի ընդ-
25 դէմ էր հողմն։ Եւ ՚ի չորրորդում պահու գիշերոյն
26 եկն առ նոսա Յիսուս գնալով ՚ի վերայ ծովուն։ Իբ-

* Ոմանք Յիսուս՝ † ՚Ի Յոյն, էր ՚ի մէջ ծովուն՝

րեւ տեսին զնա աշակերտքն զի գնայր 'ի վերայ ծո-
վուն, խռովեցան, եւ ասեն, թէ Առաչօք ինչ իցէ.
27 եւ առ ահին աղաղակեցին: Եւ վաղվաղակի խօսե-
ցաւ ընդ նոսա Յիսուս՝ եւ ասէ. Քաջալերեցարո՛ւք,
28 ես եմ, մի՛ երկնչիք: Պատասխանի ետ նմա Պետ-
րոս՝ եւ ասէ. Տէր եթէ դու ես, հրամայեա ինձ
29 գալ առ քեզ 'ի վերայ ջրոցս: Եւ նա ասէ, Ե՛կ.
եւ իջեալ 'ի նաւէն Պետրոս՝ գնաց 'ի վերայ
30 ջրոցն,* եւ եկն առ Յիսուս: Եւ տեսեալ զհողմն
սաստիկ՝ երկեաւ. եւ իբրեւ սկսաւ ընկղմել՝ աղաղա-
31 կեաց՝ եւ ասէ. Տէր փրկեա՛ զիս: Եւ վաղվաղակի
Յիսուս ձգեաց զձեռն իւր՝ կալաւ զնա եւ ասէ. Թե-
32 րահաւատ՝ ընդէ՞ր երկմտեցեր: Եւ իբրեւ ելին 'ի նաւն՝
33 հանդարտեաց հողմն: Եւ որ 'ի նաւին էին՝ մատ-
եան երկիրպագին նմա՝ եւ ասեն. Արդարեւ Որդի
34 Աստուծոյ ես դու: Եւ անցեալ եկին 'ի ցամաք 'ի
35 Գեննեսարէթ: Եւ իբրեւ ծանեան զնա արք տեղ-
ւոյն այնորիկ, առաքեցին ընդ ամենայն գաւառն՝ եւ
36 ածին առ նա զամենայն հիւանդս: Եւ աղաչէին զնա,
զի գոնէ միայն 'ի քղանցս հանդերձի նորա մերձես-
ցին. եւ որ միանգամ մերձեցան՝ փրկեցան:

## ԳԼ. ԺԵ

1 Յայնժամ մատեան առ Յիսուս՝ որ յԵրուսաղէմէ
2 փարիսեցիքն եւ դպիրք՝ եւ ասեն: Ընդէ՞ր աշակերտքն
քո անցանեն զաւանդութեամբ ծերոցն. զի ո՛չ լուա-

* 'Ի Յոյնն, զի եկեսցէ՝

3 նան զձեռս յորժամ հաց ուտեն: Նա պատասխանի
ետ՝ և ասէ ցնոսա. Իսկ դուք ընդէ՞ր անցանէք զպատ-
ուիրանաւն Աստուծոյ վասն ձերոյ աւանդութեանն
4 Զի Աստուած* ասաց. Պատուեա՛ զհայր քո և
5 զմայր: Եւ որ բամբասէ զհայր կամ զմայր՝ մահու
6 վախճանեսցի: Եւ դուք ասէք. Որ ասիցէ ցհայր
իւր կամ ցմայր իւր, Թէ պատարագ է՝ զոր յի-
նէն օգտիցիս, և ոչ պատուիցէ զհայր իւր և ըզ-
մայր իւր. և խոտէք զբանն Աստուծոյ վասն ձերոյ
7 աւանդութեանն: Կեղծաւորք՝ բարւոք մարգարէա-
8 ցաւ 'ի վերայ ձեր Եսայի՝ և ասէ: Ժողովուրդս այս
շրթամբք պատուէ զիս, և սիրտ իւրեանց հե-
9 ռացեալ մեկուսի է յինէն: Զուր պաշտեն զիս, ու-
սուցանեն վարդապետութիւնս՝ զմարդկան պատուիր-
10 եալս: Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդսն՝ ասէ
11 ցնոսա. Լուարո՛ւք և 'ի մի՛տ առէք: Ոչ որ ինչ
մտանէ ընդ բերան՝ պղծէ զմարդ, այլ որ ինչ ե-
12 լանէ 'ի բերանոյ՝ այն պղծէ զմարդ: Յայնժամ
մատուցեալ աշակերտացն նորա՝ ասեն ցնա. Գի-
տե՞ս՝ զի փարիսեցիքն իբրև լուան զբանն՝ գայթակ-
13 ղեցին: Նա պատասխանի ետ նոցա և ասէ, Ա-
մենայն տունկ՝ զոր ոչ տնկեաց Հայր իմ երկնաւոր,
14 խլեսցի: Թո՛յլ տուք զնոսա. կոյրք են կուրաց ա-
ռաջնորդք. կոյր կուրի յորժամ առաջնորդէ՝ † սը-
15 խալէ, և՛՛ երկոքին 'ի խորխորատ անկանին: Պա-
տասխանի ետ նմա Պետրոս և ասէ. Մեկնեա՛ մեզ

---

* Ի Յոյնն, պատուիրեաց՝ ասելով.

† Ի Յոյնն չէր:

16 զառակս զայս: Ասէ Յիսուս. Տակաւին և դուք
17 անմիտք էք: Եւ ո՛չ իմանայք, եթէ ամենայն որ
մտանէ 'ի բերան, յորովայն երթայ՝ և արտաքս ե-
18 լանէ: Իսկ որ ելանէ 'ի բերանոյ՝ 'ի սրտէ անտի
19 գայ. և այն պղծէ զմարդն: Զի 'ի սրտէ ելա-
նեն խորհուրդք չարք՝ սպանութիւնք, շնութիւնք,
պոռնկութիւնք, գողութիւնք, սուտ վկայութիւնք,
20 հայհոյութիւնք: Այս ամենայն է՝ որ պղծէ զմար-
դըն, այլ անլուայ ձեռօք ուտել՝ ո՛չ պղծէ զմարդ:
21 Եւ ելեալ անտի Յիսուսի գնաց 'ի կողմանս Տիւ-
22 րոսի և Սիդոնի: Եւ ահա կին մի Քանանացի 'ի
սահմանաց անտի նոցա ելեալ, աղաղակէր և ասէր.
Ողորմեա՛ց ինձ Տէր որդի Դաւթի, դուստր իմ չա-
23 րաչար այսահարի: Եւ նա ո՛չ ետ նմա պատասխանի,
և մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա և
ասէին. Արձակեա՛ զնա զի աղաղակէ զհետ մեր:
24 Նա պատասխանի ետ և ասէ. Ո՛չ ուրեք առաքե-
ցայ՝ եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրա-
25 յէլի: Եւ նա մատուցեալ երկիրպագանէր նմա և
26 ասէր. Տէր՝ օգնեա՛ ինձ: Պատասխանի ետ նմա և
ասէ. Ո՛չ է բարւոք առնուլ զհաց մանկանց՝ և ար-
27 կանել շանց: Եւ նա ասէ. Այո Տէր, քանզի և
շունք կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ
28 տեառն իւրեանց: Յայնժամ պատասխանի ետ նմա
Յիսուս և ասէ. Ո՛վ կին դու՝ մեծ են հաւատք քո,
եղիցի քեզ որպէս և կամիս. և բժշկեցաւ դուստր
նորա 'ի նմին ժամու:

29 Եւ գնացեալ անտի Յիսուսի, եկն 'ի ծովեզրն
Գալիլեացւոց, և ելեալ 'ի լեառն նստէր անդ:

30 Մատեան առ նա ժողովուրդք բազումք՝ որ ունէին
ընդ իւրեանս՝ կաղս, կոյրս, համերս, միակողմանիս,
և այլս բազումս. և ընկեցին զնոսա առ ոտս* նորա՝
31 և բժշկեաց զնոսա. Մինչև զարմանալ ժողովրդոցն
որ տեսանէին, զի համրքն խօսէին, կաղք գնային,
միակողմանիք բժշկէին, կոյրք տեսանէին, և փա-
32 ռաւոր առնէին զԱստուած Իսրայէլի։ Եւ կոչեցեալ
առ ինքն Յիսուսի զաշակերտսն՝ ասէ. Գթամ ՚ի
ժողովուրդդ, զի արդ երեք աւուրք են՝ զի կան առ
իս, և ո՛չ ունին զինչ ուտիցեն. և արձակել զդոսա
նօթիս՝ չկամիմ՝, գուցէ նկթիցին զճանապարհայն։
33 Ասեն ցնա աշակերտքն. Իսկ արդ մեզ յանապատի
աստ ուստի՞ իցէ այնչափ հաց՝ մինչև յագեցուցանել
34 զայսչափ ժողովուրդ։ Եւ ասէ ցնոսա Յիսուս,
Քանի՞ նկանակ ունիք. և նոքա ասեն Եօթն, և
35 սակաւ ձկունս։ Եւ հրամայեաց ժողովրդեանն բազ-
36 մել ՚ի վերայ գետնոյ։ Եւ առեալ զեօթն նկանակսն
և զձկունսն՝ գոհացաւ և եբեկ, և ետ ցաշակերտսն,
37 և նոքա ժողովրդեանն։ Կերան ամենեքեան և յագե-
ցան. և բարձին զնշխարս կոտորոցն՝ եօթն զամբիւղ
38 լի։ Եւ որք կերանն՝ էին արք իբրև չորք հազարք.
39 Թող զկանայս և զմանկտի։ Իբրև արձակեաց զժո-
ղովուրդսն, ել ՚ի նաւ՝ և եկն ՚ի սահմանս Մագ-
դաղեայ։

---

* ՚Ի Յոյնն, Յիսուսի

## ԳԼ. ԺԶ.

1 Եւ մատուցեալ փարիսեցիքն և սադուկեցիք ,
փորձելով խնդրէին 'ի նմանէ՝ նշան յերկնից ցուցա-
2 նել նոցա : Նա պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա , Յոր-
ժամ երեկոյ լինի՝ ասէք , Պարզ լինիցի՝ զի կարմ-
3 րացեալ է երկին : Եւ առաւօտու՝ Այսօր մրրիկ ,
զի շառագունի տրտմութեամբ երկին . Արդ զերե-
սըս երկնի կարէք քննել , իսկ զնշան ժամանակիս
4 ո՞չ կարէք գիտել : Ազգ չար և շնացող՝ նշան խնդ-
րէ . և նշան մի՛ տացի նմա , բայց նշանն Յովնա-
5 նու մարգարէի . և եթող զնոսա և գնաց : Գնացին
և աշակերտքն յայնկոյս , և մոռացան առնուլ հաց :
6 Ասէ ցնոսա Յիսուս . Տեսէք և զգոյշ լերուք 'ի խմո-
7 րոյ սադուկեցւոցն և փարիսեցւոցն : Նոքա խորհէին
8 ընդ միմեանս՝ և ասէին թէ հաց ո՛չ բարձաք : Գիտաց
Յիսուս և ասէ . Զի՞ խորհիք 'ի միտս ձեր թերահա-
9 ւատք՝ եթէ հաց ոչ ունիք : Տակաւին չիմանայք՝ և
ո՛չ յիշէք զհինգ նկանակն 'ի հինգ հազարսն , և քանի՜
10 սակառի բարձիք : Եւ ոչ զեօթն նկանակն 'ի չորս
11 հազարսն , և քանի՜ զամբիւղս բարձիք : Արդ զիա՞րդ
ոչ իմանայք՝ եթէ ո՛չ վասն հացի ասացի ձեզ՝ զգոյշ
լինել 'ի խմորոյ սադուկեցւոց և փարիսեցւոցն :
12 Յայնժամ 'ի միտ առին , թէ ո՛չ ասաց զգուշանալ
'ի* խմորոյ , այլ յաղանդոյ փարիսեցւոցն և սադուկեց-
13 ւոց : Եւ եկեալ Յիսուս 'ի կողմանս Փիլիպպեայ Կեսա-
րեայն , հարցանէր ցաշակերտսն՝ և ասէր . Զո՞ ոք

* Ի Յոյնն , հացի ,

14 ասեն ՚զինէն մարդիկն՝ թէ իցէ Որդի մարդոյ։ Եւ
նոքա ասեն. Ոմն զՅովհաննէս մկրտիչ, և այլք
՚զԵղիա, և կէսք զԵրեմիա, կամ զմի ոք ՚ի մարգարէ-
15 իցն։ Ասէ ցնոսա. Իսկ դուք զո՞ ոք ասէք զինէն թէ
16 իցեմ։ Պատասխանի ետ Սիմոն Պետրոս՝ և ասէ.
Դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ կենդանւոյ։
17 Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնա. Երանի՜ քեզ
Սիմոն որդի Յովնանու, զի մարմին և արիւն ո՛չ
յայտնեաց քեզ՝ այլ Հայր իմ որ յերկինս է։
18 Եւ ես քեզ ասեմ. Զի դու ես * վէմ, և ՚ի վերայ
այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դը-
19 ժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն։ Եւ տաց քեզ
փականս արքայութեան երկնից. և զոր միանգամ
կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս. և զոր
արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս։
20 Յայնժամ սաստեաց աշակերտացն, զի մի՛ ումեք
21 ասիցեն՝ թէ նա է Քրիստոսն։ Յայնմ հետէ սկսաւ
Յիսուս ցուցանել աշակերտացն իւրոց՝ թէ պարտ
է նմա երթալ յԵրուսաղէմ. և թէ բազում չար-
չարանս չարչարիլ ՚ի քահանայապետիցն և ՚ի դըպ-
րաց և ՚ի ծերոց ժողովրդեանն՝ և սպանանիլ, և
22 յերիր աւուր յառնել։ Եւ առեալ զնա մեկուսի
Պետրոսի, սկսաւ կագել ընդ նմա և ասել. Քա՛ւ
23 լիցի քեզ Տէր, մի՛ եղիցի քեզ այդ։ Եւ նա դար-
ձեալ ՚ի Պետրոս՝ ասէ. Ե՛րթ յետս իմ Սատանայ,
գայթակղութիւն իմ ես. զի ո՛չ խորհիս դու զԱս-
24 տուծոյսն այլ զմարդկան։ Յայնժամ Յիսուս ասէ

* ՚Ի Յոյնն, Պետրոս,

ցաշակերտսն իւր. Եթէ ոք կամի զկնի իմ գալ՝ ու-
րասցի զանձն, եւ առցէ զխաչ իւր՝ եւ եկեսցէ զկնի
25 իմ: Զի որ կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ
զնա. եւ որ կորուսցէ զանձն իւր վասն իմ՝ գացէ
26 զնա: Զինչ օգտիցի մարդ՝ թէ զաշխարհս ամենայն
շահեսցի, եւ զանձն իւր տուժեսցէ. կամ զինչ տացէ
27 մարդ փրկանս ընդ անձին իւրոյ: Զի գալոց է Որդի
մարդոյ փառօք Հօր իւրոյ՝ հանդերձ հրեշտակօք իւ-
րովք, եւ յայնժամ հատուսցէ իւրաքանչիւր ըստ
28 գործս իւր: Ամէն ասեմ ձեզ. Զի իցեն ոմանք 'ի սո-
ցանէ՝ որք աստ կան, որք ոչ ճաշակեսցեն զմահ՝
մինչեւ տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ արքայու-
թեամբ իւրով:

## ԳԼ. ԺԷ:

1 Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յիսուս ըզ-
Պետրոս եւ զՅակոբոս եւ զՅովհաննէս զեղբայր
նորա, եւ հանէ զնոսա 'ի լեառն մի բարձր առան-
2 ձինն: Եւ այլակերպեցաւ առաջի նոցա. եւ լուսա-
ւորեցան երեսք նորա իբրեւ զարեգակն, եւ հան-
3 դերձք նորա եղեն սպիտակ իբրեւ զլոյս. Եւ ահա
երեւեցան նոցա Մովսէս եւ Եղիա՝ որ խօսէին ընդ
4 նմա: Պատասխանի ետ Պետրոս եւ ասէ ցՅիսուս
Տէր՝ բարւոք է մեզ աստ լինել. եթէ կամիս՝ արաս-
ցուք երիս տաղաւարս՝ մի քեզ եւ մի Մովսիսի եւ
5 մի Եղիայի: Եւ մինչդեռ նա խօսէր, ահա ամպ
լուսաւոր հովանի եղեւ 'ի վերայ նոցա. ձայն եղեւ
յամպոյն՝ եւ ասէ. Դա է Որդի իմ սիրելի՝ ընդ որ

6 Հաճեցայ , դմա՛ լուարուք ։ Իբրեւ լուան աշա-
կերտքն , անկան 'ի վերայ երեսաց իւրեանց՝ եւ երկ-
7 եան յոյժ ։ Եւ մատուցեալ Յիսուս բուռն եհար
զնոցանէ՝ եւ ասէ․ Յոտն կացէք՝ եւ մի՛ երկնչիք ։
8 Ամբարձին զաչս իւրեանց եւ ո՛չ զոք տեսին՝ բայց
9 միայն զՅիսուս ։ Եւ մինչդեռ իջանէին 'ի լեռնէ
անտի , պատուիրեաց նոցա Յիսուս՝ եւ ասէ․ Մի՛
ումեք ասիցէք զտեսիլդ՝ մինչեւ Որդի մարդոյ 'ի
10 մեռելոց յարիցէ ։ Հարցին զնա աշակերտքն եւ ա-
սեն․ Զի՞նչ դպիրքն ասեն , Եթէ Եղիայի նախ
11 պարտ է գալ ։ Պատասխանի ետ Յիսուս՝ եւ ասէ
12 ցնոսա․ Եղիա գայ՝ եւ հաստատեսցէ զամենայն ։ Այլ
ասեմ ձեզ՝ Զի Եղիա եկեալ իսկ է․ եւ ո՛չ ծան-
եան զնա , այլ արարին ընդ նա՝ զոր ինչ կամեցան․
Նոյնպէս եւ Որդի մարդոյ չարչարելոց է 'ի նոցանէ ։
13 Յայնժամ 'ի միտ առին աշակերտքն՝ թէ վասն
Յովհաննու մկրտչի ասաց ցնոսա ։
14 Եւ իբրեւ եկին 'ի ժողովուրդն , մատեաւ այր մի՝
'ի ծունր իջանէր , եւ ասէր․ Տէ՛ր՝ ողորմեա՛ց որդւոյ
իմում , զի լուսնոտի եւ չարաչար հիւանդանայ․ բա-
զում անգամ անկանի 'ի հուր՝ եւ երբեք 'ի ջուր ։
15 Եւ մատուցի զնա աշակերտացն քոց՝ եւ ո՛չ կարա-
16 ցին բժշկել ։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ․
Ո՛վ ազգ անհաւատ եւ թիւր , մինչեւ ցե՞րբ իցեմ
ընդ ձեզ , մինչեւ յե՞րբ անսայցեմ ձեզ․ ած զնա առ
17 իս ։ Եւ սաստեաց 'ի նա Յիսուս՝ եւ ել 'ի նմանէ
դեւն , եւ բժշկեցաւ մանուկն 'ի ժամէն յայնմանէ ։
18 Յայնժամ մատեան աշակերտքն առանձինն՝ եւ ա-
սեն ցՅիսուս․ մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել

19 զնա ։ Եւ *Նա ասէ ցնոսա ։ Վասն թերահաւա-
տութեան ձերոյ․ ամէն ասեմ ձեզ՝ Եթէ ունիցիք
հաւատս քան զհատն մանանխոյ , ասասջիք լերինս
այսմիկ՝ փոխեա՛ց աստի անդր , և փոխեսցի․ և ոչ
20 ինչ անհնարին լինիցի ձեզ ։ Բայց այս ազգ ո՛չ ե-
լանէ՝ եթէ ոչ աղօթիւք և պահովք ։
21 Եւ մինչդեռ շրջէին Նոքա 'ի Գալիլեայ՝ ասէ
ցնոսա Յիսուս․ Մատնելոց է Որդի մարդոյ 'ի ձեռս
22 մարդկան , Եւ սպանցեն զնա , և յերիր աւուր յա-
23 րիցէ․ և տրտմեցան յոյժ ։ Իբրև եկին Նոքա 'ի
Կափառնաում , մատեան՝ որք զերկդրամեանն պա-
հանջէին՝ առ Պետրոս , և ասեն․ Վարդապետն ձեր
24 ո՞չ տայ զերկդրամեանն , և ասէ՝ Այո ։ Եւ իբրև ե-
մուտ 'ի տուն՝ յառաջեաց քան զնա Յիսուս և ա-
սէ․ Զիա՞րդ թուի քեզ Սի՛մոն․ թագաւորք † ազ-
գաց յումմէ՞ առնուն զհարկս կամ զհաս , յորդ-
25 ւոց իւրեանց՝ թէ յօտարաց ։ Եւ իբրև ասաց ‡՝ թէ
Յօտարաց , Ասէ ցնա Յիսուս՝ Ապա ուրեմն ա-
26 զատ են որդիքն ։ Բայց զի մի՛ գայթակղեցուս-
ցուք զնոսա , երթ 'ի ծով և ընկեա՛ կարթ , և զա-
ռաջին ձուկն որ ելանիցէ՝ ա՛ռ և բա՛ց զբերան Նորա ,
և գտանիցես սատեր , և զայն առեալ տացես Նոցա
ընդ իմ և ընդ քո ։

---

* 'Ի Յոյնն , Յիսուս    † 'Ի Յոյնն , երկրի
‡ 'Ի Յոյնն , Պետրոս

## ԳԼ. ԺԸ.

1 Յայնմ աւուր մատեան աշակերտքն առ Յիսուս
և ասեն. Ո՞վ իցէ * ՚ի մէնջ" մեծ յարքայութեան
2 երկնից: Եւ կոչեաց առ ինքն Յիսուս մանուկ մի,
3 կացոյց զնա ՚ի մէջ նոցա, Եւ ասէ. Ամէն ասեմ
ձեզ. Եթէ ոչ դարձջիք և եղիջիք իբրև զմանկտի,
4 ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից: Արդ որ խո-
նարհեցուցանէ զանձն իբրև զմանուկս զայս, նա է
5 մեծ յարքայութեան երկնից: Եւ որ ոք ընկալցի
6 մանուկ մի այսպիսի յանուն իմ, զիս ընդունի: Եւ
որ ոք գայթակղեցուսցէ զմի ՚ի փոքրկանցս յայս-
ցանէ յիս հաւատացելոց, լաւ է նմա եթէ կախի-
ցէ երկան իշոյ ընդ պարանոց նորա՝ և ընկղմեսցի
7 ՚ի խորս ծովու: Վա՜յ աշխարհի ՚ի գայթակղու-
թեանց. հարկ է գալ գայթակղութեանց. բայց վա՜յ
մարդոյն այնմիկ՝ յորոյ ձեռն գայցէ գայթակղու-
8 թիւն: Եթէ ձեռն քո կամ ոտն գայթակղեցուցանէ
զքեզ, հատ զնա՝ և ընկեա՛ ՚ի քէն. լաւ իցէ քեզ
միաձեռանի կամ կաղ մտանել ՚ի կեանս, քան թէ
երկուս ձեռս և երկուս ոտս ունել, և անկանել ՚ի
9 հուրն յաւիտենական: Եւ եթէ ակն քո գայթակ-
ղեցուցանէ զքեզ, խլեա՛ զնա և ընկեա՛ ՚ի քէն.
լաւ իցէ քեզ միականի մտանել ՚ի կեանս, քան
երկուս աչս ունել՝ և անկանել ՚ի գեհեն հրոյն:
10 Զգո՛յշ լերուք՝ մի՛ արհամարհիցէք զմի ՚ի փոքրը-
կանցս յայսցանէ. ասեմ ձեզ, Զի հրեշտակք

* ՚Ի Յոյնն չէ:

նոցա յերկինս հանապազ տեսանեն զերեսս Հօր
11 իմոյ՝ որ յերկինս է։ Զի եկն Որդի մարդոյ կեցու-
12 ցանել զկորուսեալն։ Զինչ թուի ձեզ. եթէ լի-
նիցի մարդոյ հարիւր ոչխար՝ եւ մոլորիցի մի ՚ի
նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն եւ զինն ոչխարն ՚ի
13 լերինս, եւ երթիցէ խնդրիցէ զմոլորեալն։ Եւ եթէ
լինիցի գտանել զնա, ամէն ասեմ ձեզ, զի ուրախ
լինի ՚ի վերայ նորա առաւել քան ՚ի վերայ իննսուն
14 եւ իննունցն, որ չիցեն մոլորեալ։ Այսպէս ո՛չ են
կամք առաջի Հօր *իմոյ որ յերկինս է՝ եթէ կո-
15 րիցէ մի ՚ի փոքրկանցս յայսցանէ։ Եթէ մեղիցէ
քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա՛ զնա՝ յորժամ
դու եւ նա միայն իցէք. եթէ լուիցէ քեզ, շահե-
16 ցար զեղբայր քո։ Ապա թէ ոչ լուիցէ քեզ, ա՛ռ
ընդ քեզ մի եւս կամ երկուս. զի ՚ի բերանոյ
երկուց եւ երից վկայից հաստատեսցի ամենայն բան։
17 Իսկ եթէ նոցա ո՛չ լուիցէ, ասասջի՛ր յեկեղեցւոջ.
ապա թէ եւ եկեղեցւոյն ո՛չ լուիցէ, եղիցի քեզ
18 իբրեւ զհեթանոսն եւ զմաքսաւոր։ Ամէն ասեմ ձեզ.
Զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս,
եւ զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յեր-
19 կինս։ Դարձեալ ասեմ ձեզ. Եթէ երկու ՚ի ձէնջ
միաբանիցեն յերկրի վասն ամենայն իրաց, զինչ
եւ խնդրեսցեն՝ եղիցի նոցա ՚ի Հօրէ իմմէ որ յեր-
20 կինս է։ Զի ուր իցեն երկու կամ երեք ժո-
ղովեալ յանուն իմ, անդ եմ ես ՚ի մէջ նոցա։
21 Յայնժամ մատեաւ առ նա Պետրոս՝ եւ ասէ. Տէր

---

* ՚Ի Յոյն., ձերոյ

քանի՞ցս անգամ եթէ մեղիցէ ինձ եղբայր իմ, և
22 թողից նմա. մինչև ցեօ՞թն անգամ: Ասէ ցնա Յի-
սուս. Ո՛չ ասեմ քեզ՝ թէ մինչև ցեօթն անգամ,
23 այլ մինչև յեօթանասնեկին եօթն: Վասն այսորիկ
նմանեցաւ արքայութիւն երկնից առն թագաւորի,
որ կամեցաւ համար առնուլ 'ի մէջ ծառայից իւրոց:
24 Եւ իբրև սկսաւ առնուլ, մատուցաւ առ նա պար-
25 տապան մի բիւր քանքարոյ: Իբրև ո՛չ ունէր հա-
տուցանել, հրամայեաց զնա վաճառել տէրն նորա,
և զկին նորա՝ և զորդիս՝ և զամենայն որ զինչ և ու-
26 նիցի՝ և հատուցանել: Եւ անկեալ ծառայն երկիր
պագանէր նմա՝ և ասէր.* Երկայնամիտ լեր առ
27 իս՝ և զամենայն հատուցից քեզ: Գթացեալ տէր ծա-
ռային այնորիկ՝ արձակեաց զնա, և զփոխն եթող
28 նմա: Եւ ելեալ ծառայն այն եգիտ զմի 'ի ծառա-
յակցաց իւրոց, որ պարտէր նմա հարիւր դահեկան
և կալեալ զնա խեղդէր՝ և ասէր. Հատո՛ ինձ զոր պար-
29 տիսդ: Անկեալ ծառայակցին առ ոտս նորա,
աղաչէր զնա և ասէր. Երկայնամիտ լեր առ իս՝ և
30 զամենայն հատուցից քեզ: Եւ նա ո՛չ կամէր. այլ չո-
գաւ արկ զնա 'ի բանտ մինչև հատուսցէ զպարտսն:
31 Իբրև տեսին ծառայակիցքն նորա որ ինչ եղեն՝ տրտմե-
ցան յոյժ և եկեալ ցուցին տեառն իւրեանց զամենայն
32 որ ինչ եղեն: Յայնժամ կոչեաց զնա տէրն իւր և
ասէ. Ծառա՛յ չար՝ զամենայն զպարտսն թողի քեզ՝
33 վասն զի աղաչեցեր զիս: Իսկ արդ ո՞չ էր պարտ և
քեզ ողորմել ծառայակցին քում, որպէս և ես քեզ

* Ի Յոյն, Տէր

34 ողորմեցայ: Եւ բարկացեալ տէրն նորա՝ մատնեաց
զնա դահճաց, մինչեւ հատուսցէ զամենայն պար-
35 տսն: Նոյնպէս եւ Հայր իմ որ յերկինս է՝
արասցէ ձեզ, եթէ ոչ թողուցուք իւրաքանչիւր
եղբօր իւրում ՚ի սրտից ձերոց զյանցանս նոցա:

## ԳԼ. ԺԹ

1 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զբանս զայսո-
սիկ, փոխեցաւ ՚ի Գալիլեէ՝ եւ եկն ՚ի սահմանս
2 Հրէաստանի յայնկոյս Յորդանանու: Եւ գնացին
զհետ նորա ժողովուրդք բազումք, եւ բժշկեաց զնո-
3 սա անդ: Եւ մատուցեալ առ նա փարիսեցիքն փոր-
ձէին զնա եւ ասէին, եթէ Արժա՞ն իցէ ումեք ար-
4 ձակել զկին իւր ըստ ամենայն վնասու: Պատասխանի
ետ նոցա եւ ասէ, Ոչ իցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ որ
հաստատեացն ՚ի սկզբանէ՝ արու եւ էգ արար զնոսա,
5 եւ ասէ: Վասն այսորիկ թողցէ այր զհայր եւ զմ-
այր՝ եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ, եւ եղիցին եր-
6 կոքեան ՚ի մարմին մի: Ապա ուրեմն ոչ են երկու՝
այլ մի մարմին. արդ զոր Աստուած զուգեաց՝ մարդ
7 մի՛ մեկնեսցէ: Ասեն ցնա. Իսկ Մովսէս ընդէ՞ր
պատուիրեաց մեզ տալ թուղթ մեկնելոյ եւ արձա-
8 կել: Ասէ ցնոսա. Մովսէս վասն խստասրտութեան
ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր. այլ
9 ՚ի սկզբանէ ոչ եղեւ այնպէս: Բայց ասեմ ձեզ, զի
Ամենայն որ արձակեսցէ զկին իւր՝ եւ ոչ վասն
պոռնկութեան, եւ առնիցէ այլ՝ շնայ, եւ որ զարձակ-
10 եալն առնիցէ՝ շնայ: Ասեն ցնա աշակերտքն իւր.

Եթէ այդպէս ինչ վնաս իցէ ընդ այր և ընդ կին ,
11 լաւ է չամուսնանալ։ Եւ նա ասէ ցնոսա․ Ո՛չ ա-
մենեքեան բաւական են այդմ բանի , այլ որոց
12 տուեալ է ։ Զի են ներքինիք՝ որ յորովայնէ մօր
իւրեանց ծնան այնպէս․ և են ներքինիք՝ որ 'ի
մարդկանէ եղեն ներքինիք․ և են ներքինիք՝ որ
զանձինս իւրեանց արարին ներքինիս վասն արքա-
յութեան երկնից․ որ կարողն է տանել՝ տարցի։
13 Յայնժամ մատուցան առ նա մանկտի , զի ձեռն
դիցէ 'ի վերայ նոցա՝ և աղօթս արասցէ․ և աշա-
14 կերտքն նորա սաստէին նոցա։ Ասէ Յիսուս , Թո՛յլ
տուք մանկտւոյդ՝ և մի արգելուք զդոսա գալ առ
15 իս , զի այդպիսեացդ է արքայութիւն երկնից։ Եւ
եդեալ ձեռն 'ի վերայ նոցա՝ գնաց անտի։
16 Եւ ահա մատուցեալ ոմն առ նա՝ ասէ. Վար-
դապետ բարի՝ զի՞նչ բարի գործեցից՝ զի ընդունի-
17 ցիմ զկեանս յաւիտենականս ։ Եւ նա ասէ ցնա ․
Զի՞* հարցանես զիս զբարւոյ , մի է բարի․ եթէ
կամիս 'ի կեանսն † յաւիտենականս մտանել՝ պահ-
18 եա՛ զպատուիրանսն ։ Ասէ ցնա․ Զո՞րս . ասէ ցնա
Յիսուս , զՄի՛ սպանաներն , և Մի՛ շնար , և Մի՛
19 գողանար , և Մի՛ սուտ վկայեր , Պատուեա՛ զհայր
քո և զմայր , և Սիրեսցես զընկեր քո իբրև զանձն
20 քո ։ Ասէ ցնա պատանին․ Զայդ ամենայն պա-
հեցի 'ի մանկութենէ իմմէ ։ արդ ի՞ւ իւիք պակաս
21 իցեմ։ Ասէ ցնա Յիսուս․ Եթէ կամիս կատար-

---

* 'Ի Յոյնն , ասես զիս բարի , չիք ոք բարի բայց մի Աստուած .

† 'Ի Յոյնն չէ ։

եալ լինել, երթ վաճառեա զինչս քո և տուր աղ-
քատաց, և ունիցիս գանձս յերկինս, և եկ զկնի իմ։
22 Իբրև լուաւ պատանին զբանն, գնաց տրտմեալ, զի
23 ունէր ստացուածս բազումս։ Ասէ Յիսուս ցաշա-
կերտսն. Ամէն ասեմ ձեզ. Զի դժուարաւ մտցէ
24 մեծատուն յարքայութիւն երկնից։ Դարձեալ ա-
սեմ ձեզ. Դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ
ասղան, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ
25 մտանել։ Իբրև լուան աշակերտքն՝ զարմացան յոյժ
26 և ասեն. Իսկ ո՞ կարիցէ ապրել։ Հայեցաւ ՚ի նոսա
Յիսուս՝ և ասէ. Այդ ՚ի մարդկանէ այդ անկար է,
27 այլ առ յԱստուծոյ ամենայն ինչ զօրաւոր։ Յայն-
ժամ պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. Ա-
հաւասիկ մեք թողաք զամենայն և եկաք զկնի քո,
28 արդ զի՞նչ լինիցի մեզ։ Ասէ ցնոսա Յիսուս. Ա-
մէն ասեմ ձեզ. Զի դուք որ եկիք զկնի իմ, ՚ի
միւսանգամ գալստեան՝ յորժամ նստցի Որդի մար-
դոյ յաթոռ փառաց իւրոց, նստջիք և դուք յեր-
կոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգն Իս-
29 րայելի։ Եւ ամենայն որ ոք եթող զտուն կամ զեղ-
բարս կամ զքորս կամ զհայր կամ զմայր կամ
զկին կամ զորդիս կամ զագարակս վասն անուան
իմոյ, հարիւրապատիկ առցէ՝ և զկեանսն յաւիտե-
30 նականս ժառանգեսցէ։ Բազումք եղիցին առաջինք
յետինք՝ և յետինք առաջինք։

## ԳԼ. Ի

1 Քանզի նման է արքայութիւն երկնից առն տա-
նուտեառն, որ ել ընդ առաւօտս 'ի վարձու ունել
2 մշակս յայգի իւր ։ Եւ արկ վարձս մշակացն ա-
ւուրն դահեկան, և առաքեաց զնոսա յայգի իւր ։
3 Եւ ելեալ զերրորդ ժամու՝ ետես այլս զի կային
4 դատարկ 'ի հրապարակս, Ասէ և ցնոսա․ Երթա՛յք
և դուք յայգի իմ, և որ ինչ արժան իցէ՝ տաց
5 ձեզ․ Գնացին և նոքա․ և դարձեալ ելեալ զվեց
6 ժամու և զինն ժամու՝ արար նոյնպէս ։ Եւ զմետա-
սաներորդ ժամու ելեալ եգիտ այլս՝ զի կային դա-
տարկ, ասէ և ցնոսա․ ընդէ՞ր կայք աստ զօրս ցե-
7 րեկ դատարկ ։ Ասեն ցնա․ Զի ոչ ոք կալաւ զմեզ
'ի վարձու․ ասէ ցնոսա․ Երթա՛յք և դուք յայ-
8 գին, և որ ինչ արժան է՝ առնուցուք ։ Եւ իբրև ե-
րեկոյ եղև՝ ասէ տէր այգւոյն ցգաւառապետ իւր․
Կոչեա՛ զմշակսն և տո՛ւր նոցա վարձս՝ սկսեալ 'ի
9 յետնոցն մինչև ցառաջինսն ։ Իբրև եկին որք զմե-
տասաներորդ ժամուն, առին մէն մի դահեկան ։
10 Եկեալ և առաջինքն՝ համարէին թէ աւելի առնու-
11 ցուն, և առին մէն մի դահեկան և նոքա ։ Իբրև
12 առին, տրտնջէին զտանուտեառնէն՝ և ասէին․ Թէ
Դոքա յետինքդ մի ժամ գործեցին, և հաւասարա-
կորդս մեզ արարեր զդոսա, որ զծանրութիւն ա-
13 ւուրն բարձաք և զտօթ ։ Նա պատասխանի ետ մի-
ում 'ի նոցանէ՝ և ասէ․ Ընկեր՝ չզրկեմ զքեզ,
14 ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր ընդ իս ։ Ա՛ռ զք-
քոյդ և երթ, եթէ կամիմ յետնոցս տալ՝ որպէս

15 և քեզ: Եթէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմս առ-
նել զինչ և կամիմ. կամ թէ ակն քո չար է, զի
16 ես առատ եմ: Այսպէս եղիցին յետինք առաջինք
և առաջինք յետինք. զի բազումք են կոչեցեալք, և
սակաւք են ընտրեալք:
17 Իբրև ելանէր Յիսուս յԵրուսաղէմ, ա՛ռ * զերկո-
տասանսն առանձինն, և 'ի ճանապարհին ասէ ցնոսա:
18 Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ. և Որդի մարդոյ
մատնեսցի քահանայապետիցն և դպրաց. և դատա-
19 պարտեսցեն զնա 'ի մահ. Եւ մատնեսցեն զնա հե-
թանոսաց՝ այպանել և հարկանել և 'ի խաչ հա-
20 նել, և յերիր աւուր յարիցէ: Յայնժամ մատեաւ
առ նա մայր որդւոցն Զեբեդեայ որդւովքն ի-
րովք հանդերձ. երկիրպագանէր՝ և խնդրէր ինչ
21 'ի նմանէ: Եւ նա ասէ ցնա. Զի՞նչ կամիս. ասէ
ցնա. Ասա՛ զի նստցին սոքա երկու որդիքս իմ, մի
ընդ աջմէ քումմէ՝ և մի ընդ ահեկէ յարքայու-
22 թեան քում: Պատասխանի ետ Յիսուս և ասէ. Ո՞չ
գիտէք զինչ խնդրէք. կարէ՞ք ըմպել զբաժակն զոր
ես ըմպելոցն եմ, կամ զմկրտութիւն զոր ես մկր-
23 տելոցն եմ մկրտիլ. ասեն ցնա. Կարող եմք: Ասէ
ցնոսա † Յիսուս. Զբաժակն իմ ըմպիցէք, և
զմկրտութիւն զոր ես մկրտելոց եմ մկրտիցիք,
բայց ‡ նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝
ո՛չ է իմ տալ, այլ որոց § տուեալ է 'ի Հօրէ
24 իմմէ: Եւ լուեալ տասանցն բարկացան 'ի վերայ

* 'Ի Յոյնն, զերկոտասան աշակերտսն † 'Ի Յոյնն չէ:
‡ 'Ի Յոյնն, նստիլն § 'Ի Յոյնն, պատրաստեալ

25 երկուցն եղբարց։ Յիսուս կոչեաց զնոսա առ ինքն
և ասէ. Գիտէք՝ զի իշխանք ազգաց տիրեն նոցա,
26 և մեծամեծքն իշխեն նոցա։ Ո՛չ այնպէս իցէ և 'ի
ձերում միջի. այլ որ կամիցի 'ի ձէնջ մեծ լինել՝
27 եղիցի ձեր պաշտօնեայ. Եւ որ կամիցի 'ի ձէնջ ա-
28 ռաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ։ Որպէս Որդի
մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել, և
տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց։
29 Եւ յելանելն նոցա յԵրիքովէ, գնացին զհետ
30 նորա ժողովուրդք բազումք։ Եւ ահա կոյրք երկու
նստէին առ ճանապարհաւն. իբրև լուան թէ Յի-
սուս անցանէ՝ աղաղակեցին և ասեն. Ողորմեա՛
31 մեզ* Յիսուս Որդի Դաւթի։ Եւ ամբոխն սաստեաց
նոցա զի լռեսցեն. և նոքա ևս առաւել աղաղակէին և
32 ասէին. Տէ՛ր, ողորմեա՛ մեզ Որդի Դաւթի։ Զտե-
ղի առ Յիսուս, կոչեաց զնոսա և ասէ. Զի՞նչ
33 կամիք զի արարից ձեզ. Ասեն ցնա. Տէ՛ր, զի բաց-
34 ցին աչք մեր։ Եւ գթացեալ Յիսուս մերձեցաւ
յաչս նոցա, և վաղվաղակի տեսին. և գնացին
զհետ նորա։

## ԳԼ. ԻԱ.

1 Իբրև մօտ եղեն յԵրուսաղէմ, և եկին 'ի Բեթ-
փագէ մերձ 'ի լեառն Ձիթենեաց. յայնժամ Յի-
2 սուս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց։ Եւ
ասէ ցնոսա. Երթայք 'ի գեօղ՝ որ առաջի ձեր է,

* 'Ի Յոյնն. Տէ՛ր՝

և անդէն գտանէք էշ կապեալ՝ և յաւանակ ընդ
3 նմին, լուծէք ածէք ինձ: Եւ եթէ ոք ասիցէ ինչ
ձեզ, ասասջիք, եթէ Տեառն իւրեանց պիտոյ են. և
4 վաղվաղակի առաքեսցէ զնոսա: Բայց այս ամենայն
5 եղեւ՝ զի լցցի բան մարգարէին որ ասէ: Ասացէք
դստեր Սիովնի. Ահա թագաւոր քո գայ քեզ հեզ,
6 և հեծեալ յէշ և յաւանակի իշոյ: Գնացին աշա-
կերտքն, և արարին որպէս հրամայեաց նոցա Յի-
7 սուս: Եւ ածին զէշն և զյաւանակն, և արկին
զնոքօք ձորձս իւրեանց. և նստաւ 'ի վերայ նոցա:
8 Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհանդերձս
իւրեանց 'ի ճանապարհին, և այլք հատանէին ոստս
9 'ի ծառոց՝ և տարածանէին 'ի ճանապարհին: Եւ ժո-
ղովուրդքն որ առաջին և զկնի երթային՝ աղաղակէ-
ին և ասէին. Օրհնութիւն Որդւոյ Դաւթի, օրհ-
նեալ որ գայ յանուն Տեառն:* Օրհնութիւն 'ի
10 բարձունս: Եւ 'ի մտանելն նորա յԵրուսաղէմ,
դղրդեցաւ քաղաքն ամենայն, և ասէ, Ո՞վ իցէ սա:
11 Եւ ժողովուրդքն ասեն. Սա է մարգարէն Յիսուս
12 որ 'ի Նազարեթէ Գալիլեացւոց: Եւ եմուտ Յիսուս
'ի տաճարն†՝ և եհան արտաքս զամենեսեան, որ վա-
ճառէինն և գնէին 'ի տաճարի անդ. և զսեղանս հա-
տավաճառացն կործանեաց՝ և զաթոռս աղաւնեվա-
13 ճառացն. Եւ ասէ ցնոսա. Գրեալ է՝ Տուն իմ
տուն աղօթից կոչեսցի. և դուք արարէք զդա այրս
14 աւազակաց: Եւ մատեան առ նա կոյրք և կաղք 'ի
15 տաճարին, և բժշկեաց զնոսա: Իբրև տեսին քա-

* 'Ի Յոյնն, Ովսաննա

† 'Ի Յոյնն, Աստուծոյ

հանայապետքն և դպիրք զսքանչելիսն զոր արար,
և զմանկտին որ աղաղակէին 'ի տաճարին և ասէ-
ին,* Օրհնութիւն Որդւոյ Դաւթի, բարկացան.
16 Եւ ասեն ցնա. Լսես՝ զինչ ասեն դոքա. ասէ ցնոսա
Յիսուս Այո, չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ 'ի բերա-
նոյ տղայոց և ստնդիացաց կատարեցեր զօրհնութիւն:
17 Եւ թողեալ զնոսա ել արտաքոյ քաղաքին 'ի Բե-
թանիա, և անդ ագաւ:
18 Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն 'ի քաղաքն
19 քաղցեաւ: Եւ տեսեալ թզենի մի 'ի վերայ ճանա-
պարհին եկն 'ի նա, և ոչինչ եգիտ 'ի նմա, բայց
միայն տերև. և ասէ ցնա. Մի՛ այսուհետև 'ի քէն
պտուղ եղիցի յաւիտեան. և առժամայն չորացաւ
20 թզենին: Իբրև տեսին աշակերտքն՝ զարմացան և
ասեն, թէ Զիա՞րդ վաղվաղակի ցամաքեցաւ թզե-
21 նին: Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնոսա. Ամէն
ասեմ ձեզ, Եթէ ունիցիք հաւատս և ո՛չ երկմտի-
ցէք, ո՛չ միայն թզենւոյդ առնիցէք, այլ թէպէտ
և լերինդ ասիցէք Բարձիր և անկիր 'ի ծով, եղի-
22 ցի: Եւ զամենայն ինչ զոր և խնդրիցէք յաղօթս
23 հաւատովք՝ առնուցուք: Եւ իբրև եկն 'ի տաճարն
մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր, քահանա-
յապետքն և ծերք ժողովրդեանն՝ և ասեն. Որո՞վ իշ-
խանութեամբ առնես զայդ՝ և ո՞վ ետ քեզ զիշխանու-
24 թիւնդ զայդ: Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնո-
սա. Հարցից և ես զձեզ բան մի. զոր թէ ասիցէք
ինձ, և ես ձեզ ասացից՝ որո՛վ իշխանութեամբ առ-

* 'Ի Յոյնն, Ովսաննա

25 նեմ զայս։ Մկրտութիւն Յովհաննու ուստի՞ էր՝
յերկնի՞ց, թէ 'ի մարդկանէ. և նոքա խորհէին ընդ
26 միտս՝ և ասէին։ Եթէ ասեմք Յերկնից, ասէ ցմեզ.
Իսկ ընդէ՞ր ոչ հաւատացիք նմա. և եթէ ասեմք 'Ի
մարդկանէ, երկնչիմք 'ի ժողովրդենէն. զի ամենեքին
27 զՅովհաննէս իբրև զմարգարէ ունէին։ Պատասխանի
ետուն Յիսուսի, և ասեն. Ո՛չ գիտեմք. ասէ ցնոսա
և նա. Եւ ոչ ես ասեմ ձեզ որով իշխանութեամբ
28 առնեմ զայս։ Բայց զի՞նչ թուի ձեզ. առն միոջ
էին երկու որդիք և մատուցեալ առ առաջինն ասէ.
29 Որդեակ՝ երթ այսօր գործեա՛ յայգւոջ։ Նա պա-
տասխանի ետ և ասէ. Երթամ տէր՝ և ոչ չոգաւ։
30 Մատեաւ և առ միւսն, և ասէ նոյնպէս. Նա պա-
տասխանի ետ և ասէ. Ո՛չ կամիմ. բայց յետոյ
31 զղջացաւ և չոգաւ *յայգին։ Արդ ո՞ յերկոցունց
արար զկամս հօրն. ասեն՝ Յետինն. ասէ ցնոսա
Յիսուս. Ամէն ասեմ ձեզ, Զի մաքսաւորք և պոռ-
նիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն †երկ-
32 նից։ Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարու-
թեան՝ և ոչ հաւատացիք նմա. և մաքսաւորք և պոռ-
նիկք հաւատացին նմա. և դուք տեսիք՝ և ոչ զղջա-
ցարուք յետոյ հաւատալ նմա։
33 Այլ առակ լուարո՛ւք. Այր մի էր տանուտէր որ
տնկեաց այգի, և ցանգով պատեաց զնա, և փորեաց
'ի նմա հնձան, և շինեաց աշտարակ. և ետ զնա ցմշա-
34 կս, և գնաց 'ի տար աշխարհ։ Իբրև մերձեցաւ ժա-
մանակ պտղոյ, առաքեաց զծառայս իւր առ մշակ-

* 'Ի Յոյնն չիք։ † 'Ի Յոյնն, Աստուծոյ

35 սրն՝ առնուլ զպտուղս նորա։ Եւ կալեալ մշակացն
զծառայս նորա, զոմն տանջեցին, զոմն սպանին, զոմն
36 քարկոծեցին։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս
բազում քան զառաջինսն, և արարին նոցա նոյն–
37 պէս։ Յետոյ առաքեաց առ նոսա զորդի իւր, և ասէ.
38 Թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ մը–
շակքն իբրև տեսին զորդին, ասեն ընդ միտս. Սա է
ժառանգն, եկայք սպանցուք զսա և կալցուք զժա–
39 ռանգութիւն սորա։ Եւ առեալ հանին զնա արտա–
40 քոյ քան զայգին՝ և սպանին։ Արդ յորժամ եկեսցէ
41 տէր այգւոյն, զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։ Ասեն
ցնա. Զչարսն չարաչար կորուսցէ. և զայգին տացէ
այլոց մշակաց, որք տացեն նմա զպտուղս ՚ի ժամու
42 իւրեանց։ Ասէ ցնոսա Յիսուս. Չիցէ՞ երբէք ըն–
թերցեալ ձեր ՚ի գիրս. Զվէմն զոր անարգեցին շի–
նօղքն, նա եղև գլուխ անկեան. ՚ի Տեառնէ եղև
43 այս, և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ա–
սեմ ձեզ, Զի բարձցի ՚ի ձէնջ արքայութիւն Աս–
տուծոյ, և տացի ազգի որ առնիցէ զպտուղս նորա։
44 Եւ որ անկցի ՚ի վերայ վիմիս այսորիկ՝ փշրեսցի, և
45 յոյր վերայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Իբրև լուան քա–
հանայապետքն* և դպիրք" և փարիսեցիք զառակս
46 նորա, գիտացին թէ վասն նոցա ասաց։ Եւ խնդրէին
զնա ունել, բայց երկեան ՚ի ժողովրդոցն։ քանզի
իբրև զմարգարէ ունէին զնա։

* ՚Ի Յոյնն չէ։

## ԳԼ. ԻԲ

1 Դարձեալ պատասխանի ետ Յիսուս, և ասէ
2 ցնոսա առակօք: Նմանեցաւ արքայութիւն երկնից
առն թագաւորի որ արար հարսանիս որդւոյ իւ-
3 րում: Եւ առաքեաց զծառայս իւր կոչել զհրա-
4 ւիրեալսն ՚ի հարսանիս. և ոչ կամէին գալ: Դարձ-
եալ առաքեաց այլ ծառայս՝ և ասէ. Ասացէք հրա-
ւիրելոցն. Ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի, զուա-
րակք իմ և պարարակք զենեալ են, և ամենայն
5 ինչ պատրաստ է. եկայք ՚ի հարսանիս: Եւ նոքա
յուլացեալ գնացին՝ ոմն յագարակ իւր, և ոմն ՚ի
6 վաճառ իւր. Եւ այլք կալան զծառայս նորա թշնա-
7 մանեցին և սպանին: Իսկ թագաւորն իբրև լուաւ՝
բարկացաւ, և առաքեաց զզօրս իւր և սատակեաց
զսպանօղսն զայնոսիկ, և զքաղաքն նոցա այրեաց:
8 Յայնժամ ասէ ցծառայս իւր. Հարսանիքս պատ-
9 րաստ են, և հրաւիրեալքն չէին արժանի: Արդ եր-
թայք յանցս ճանապարհաց, և զորս միանգամ
10 գտանիցէք՝ կոչեցէք ՚ի հարսանիս: Եւ ելեալ ծա-
ռայքն ՚ի ճանապարհս ժողովեցին զամենեսեան զորս
և գտին՝ զչարս և զբարիս. և լցան հարսանիքն
11 բազմականօք: Եւ մտեալ թագաւորն հայել զբազ-
մականօքն, ետես անդ այր մի՝ որ ոչ էր զգեցեալ
12 հանդերձ հարսանեաց: Եւ ասէ ցնա. Ընկեր զի-
արդ մտեր այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսան-
13 եաց. և նա պապանձեցաւ: Յայնժամ ասէ թագա-
ւորն ցսպասաւորսն. Կապեցէք զդորա զոտս և զձե-
ռըս՝ և հանէք զդա ՚ի խաւարն արտաքին, անդ եղի-

14 ցի լալ և կրճել ատամանց։ Զի բազումք են կո-
չեցեալք և սակաւք են ընտրեալք։
15 Յայնժամ գնացեալ փարիսեցիքն, առին խոր-
հուրդ* զնմանէ՝ թէ որպէս դնիցեն նմա որոգայթ
16 բանիւք։ Եւ առաքեն առ նա զաշակերտսն իւր-
եանց Հերովդիանոսօքն հանդերձ, և ասեն. Վար-
դապետ գիտեմք զի ճշմարիտ ես, և զճանապարհն
Աստուծոյ ճշմարտութեամբ ուսուցանես. և ո՛չ է
քեզ փոյթ զումեքէ, և ո՛չ հայիս յերեսս մարդոյ։
17 Արդ ասա՛ մեզ, զի՞արդ թուի քեզ, պա՞րտ է հար-
18 կըս տալ Կայսեր թէ ոչ։ Գիտաց Յիսուս զխորա-
մանկութիւն նոցա, և ասէ. Զի՞ փորձէք զիս կեղ-
19 ծաւորք. Ցուցէք ինձ† զդահեկան հարկին. և
20 նոքա մատուցին նմա դահեկան մի։ Եւ ասէ ցնոսա.
21 Ո՞յր է պատկերս այս կամ գիր։ Ասեն՝ Կայսեր.
յայնժամ ասէ ցնոսա. Երթա՛յք տո՛ւք զկայսերն
22 կայսեր, և զԱստուծոյն Աստուծոյ։ Իբրև լուան
23 զարմացան. և թողին զնա և գնացին։ Յայնմ
աւուր մատեան առ նա սադուկեցիքն, որ ասէին՝ թէ
24 Չիք յարութիւն. հարցին ցնա, Եւ ասեն. Վար-
դապետ՝ Մովսէս ասաց Եթէ ոք մեռցի անորդի՝
արասցէ զկին նորա եղբայր իւր, և յարուսցէ զա-
25 ւակ եղբօր իւրում։ Էին առ մեզ եղբարք եօթն.
առաջինն արար կին և մեռաւ. և զի ո՛չ ունէր զա-
26 ւակ, եթող զկինն իւր եղբօր իւրում։ Նոյնպէս և
27 երկրորդն՝ և երրորդն, մինչև ցեօթներորդն։ Յետ
28 ամենեցուն մեռաւ և կինն։ Արդ ի յարութեան ո՞յր

* Ի Յոյնն չէ։

† Ի Յոյնն, զդրամ

յեօթանցն եղիցի նա կին. զի ամենեքին կալան
29 զնա կին: Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ.
Մոլորեալք՝ ոչ գիտէք զգիրս և ոչ զզօրութիւն
30 Աստուծոյ: Զի ՚ի յարութեան ոչ կանայս առնեն
և ոչ արանց լինին, այլ են իբրև զհրեշտակս* յեր-
31 կինս: Բայց վասն յարութեան մեռելոց չիցէ՞ ըն-
32 թերցեալ ձեր զասացեալն ձեզ յԱստուծոյ: Ես
եմ Աստուած Աբրահամու, Աստուած Իսահակայ և
Աստուած Յակոբայ. և չէ Աստուած՝ Աստուած
33 մեռելոց այլ կենդանեաց: Իբրև լուան ժողովուրդքն՝
34 զարմանային ընդ վարդապետութիւն նորա: Իսկ
փարիսեցիքն իբրև լուան՝ եթէ պապանձեցոյց զսա-
35 դուկեցիսն, ժողովեցան ՚ի միասին. և եհարց մի ոմն
36 ՚ի նոցանէ՝† զնա փորձելով, և ասէ: Վարդապետ՝
37 ո՞ր պատուիրան է մեծ յօրէնս: Եւ Յիսուս ա-
սէ ցնա. Սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն
սրտէ քումմէ՝ և յամենայն անձնէ քումմէ՝ և յամե-
38 նայն մտաց քոց: Այս է մեծն և առաջին պատուի-
39 րան: Երկրորդն նման սմին. Սիրեսցես զընկեր քո՝
40 իբրև զանձն քո: Յայս երկուս պատուիրանս ամե-
41 նայն օրէնք և մարգարէք կախեալ կան: Եւ ՚ի ժո-
ղովել փարիսեցւոցն՝ եհարց ցնոսա Յիսուս, և ասէ:
42 Զիա՞րդ թուի ձեզ վասն Քրիստոսի, ո՞յր որդի է:
45 Ասեն ցնա. Դաւթի: Ասէ ցնոսա‡ Յիսուս. Իսկ
զիա՞րդ Դաւիթ Հոգւովն կոչէ զնա Տէր՝ և ասէ.
44 Ասաց Տէր ցՏէր իմ, ‘Նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչև

---

* ՚Ի Յոյնն, Աստուծոյ

† ՚Ի Յոյնն, օրինական մի

‡ ՚Ի Յոյնն չիք:

45 եդից զԹշնամիս քո պատուանդան ոտից քոց: Իսկ
եթէ Դաւիթ զնա Տէր կոչէ՝ զիարդ. որդի նորա ի-
46 ցէ: Եւ ոչ ոք կարէր տալ նմա պատասխանի բան մի,
և ո՛չ իշխէր ոք յայնմ օրէ հարցանել զնա և ոչ ինչ:

## ԳԼ. ԻԳ

1 Յայնժամ խօսեցաւ Յիսուս ընդ ժողովուրդսն և
2 ընդ աշակերտսն իւր, և ասէ: Յաթոռն Մովսիսի
3 նստան դպիրքն և փարիսեցիք: Զամենայն ինչ զոր
ասիցեն ձեզ արարէք և պահեցէք. բայց ըստ
գործոցն նոցա մի՛ առնէք, զի ասեն և ոչ առնեն:
4 Կապեն բեռինս ծանունս և դժուարակիրս, և դնեն
'ի վերայ ուսոց մարդկան, և մատամբ իւրեանց ո՛չ
5 կամին շարժել զնոսա: Եւ զամենայն զգործս իւր-
եանց առնեն 'ի ցոյց մարդկան. լայնեն զգրապա-
նակս իւրեանց, և երկայնեն զքղանցս հանդերձից
6 իւրեանց: Սիրեն զյառաջագահս յընթրիս, և զնա-
խաթոռս 'ի ժողովուրդս, և զողջոյնս 'ի հրապա-
7 րակս: Եւ կոչել 'ի մարդկանէ՝ Ռաբբի Ռաբբի:
8 Բայց դուք մի՛* զոք կոչէք Վարդապետ", զի մի է
9 ձեր Ուսուցիչ. և ամենեքին դուք եղբարք էք: Եւ
Հայր մի՛ կոչէք ձեզ յերկրի, զի ձեր մի է Հայր՝
10 որ յերկինսն է: Եւ մի՛ կոչիցիք ուսուցիչք, զի Ու-
11 սուցիչ ձեր † Քրիստոս է": Եւ մեծն 'ի ձէնջ ե-
12 ղիցի ձեր սպասաւոր: Որ բարձրացուցանէ զանձն

---

* Ի ՅՈՅՆՆ, կոչիցիք Ռաբբի

† Ի ՅՈՅՆՆ, մի է՝ Քրիստոս

խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն բարձ֊
13 րասցի: Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծա֊
ւորաց. զի փակէք զարքայութիւն երկնից առաջի
մարդկան. դուք ո՛չ մտանէք, և որոց մտանենն՝
14 չտայք թոյլ մտանել: Վա՜յ ձեզ դպրաց և փա֊
րիսեցւոց կեղծաւորաց. զի ուտէք զտունս այրեաց.
պատճառանօք երկարէք զաղօթս, վասնզի աւելի
15 դատաստան ընդունիցիք: Վա՜յ ձեզ դպրաց և
փարիսեցւոց կեղծաւորաց. զի յածիք ընդ ծով և
ընդ ցամաք առնել եկամուտ մի. և յորժամ լինիցի,
առնէք զնա որդի գեհենի կրկին ևս քան զձեզ:
16 Վա՜յ ձեզ առաջնորդք կոյրք, զի ասէք՝ Որ երդնու
'ի տաճարն՝ չէ՛ ինչ, բայց որ երդնու յոսկին որ
17 'ի տաճարին է՝ արժան է: Մ՛որիոք և կո՛յրք՝ զի՞նչ
18 մեծ է, ոսկի՞ն՝ եթէ տաճարն որ սրբէ զոսկին: Եւ
որ երդնու 'ի սեղանն՝ չէ՛ ինչ, բայց որ երդնու 'ի
19 պատարագն որ 'ի վերայ նորա է՝ արժան է: Յիմա՛րք
և կոյրք. զի՞նչ մեծ է, պատարագի՞ն, եթէ սեղանն՝
20 որ սրբէ զպատարագն: Իսկ արդ որ երդուաւ 'ի սե֊
ղանն, երդնու 'ի նա և յամենայն որ 'ի վերայ
21 նորա է. Եւ որ երդուաւ 'ի տաճարն, երդնու 'ի
22 նա և 'ի բնակիչն նորա. Եւ որ երդուաւ յերկինս,
երդնու յաթոռն Աստուծոյ՝ և յայն որ նստին 'ի վե֊
23 րայ նորա: Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծա֊
ւորաց. զի տասանորդէք զանանուխ և զսամիթ և
զչաման, և թողէք զծանր ծանր օրինացն՝ զդատաս֊
տան և զողորմութիւն և զհաւատս. զայս արժան էր
24 առնել՝ և զայն չթողուլ: Առաջնորդք կոյրք, որ
25 զմժղուկս քամէք՝ և զուղտս կլանէք: Վա՜յ ձեզ

դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց, զի սրբէք զար-
տաքին զբաժակին և զսկաւառակին, և 'ի ներքոյ
լի են յափշտակութեամբ և* անխառնութեամբ:
26 Փարիսեցի՛ կոյր՝ սրբեա՛ նախ զներքին բաժակին և
զսկաւառակին, զի լինիցի և արտաքինն նոցա սուրբ:
27 Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի
նմա՛ն էք գերեզմանաց բռելոց. որ արտաքոյ երևին
գեղեցիկ՝ և 'ի ներքոյ լի են ոսկերօք մեռելոց և
28 ամենայն պղծութեամբ: Նոյնպէս և դուք արտաքոյ
երևիք մարդկան արդարք, և 'ի ներքոյ լի էք կեղ-
29 ծաւորութեամբ և անօրէնութեամբ: Վա՜յ ձեզ
դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց, զի շինէք զշի-
րիմս մարգարէից՝ և զարդարէք զգերեզմանս ար-
30 դարոց: Եւ ասէք. Եթէ էաք յաւուրս հարցն
31 մերոց, ո՛չ հաղորդէաք արեան մարգարէիցն: Ապա
ուրեմն վկայէք զանձանց՝ եթէ որդիք էք այնոցիկ՝
32 որ կոտորէին զմարգարէսն: Եւ դուք լցէք զչափ
33 հարցն ձերոց: Օ՛ձք՝ ծնունդք իժից, զիա՞րդ փախ-
34 նուցուք 'ի դատաստանէ գեհենին: Վասն այդորիկ
ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս և
իմաստունս և դպիրս, և 'ի նոցանէ սպանանիցէք և
'ի խաչ հանիցէք, և 'ի նոցանէ տանջիցէք 'ի ժո-
ղովուրդս ձեր, և հալածիցէք 'ի քաղաքէ 'ի քա-
35 ղաք: Որպէս զի եկեսցէ 'ի վերայ ձեր ամենայն ար-
իւն արդար հեղեալ յերկրի. յարենէն Աբելի ար-
դարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բա-
րաքեայ՝ զոր սպանիք ընդ մէջ տաճարին և սե-

* Ոմանք, անիրաւութեամբ

36 ղանոյ: Ամէն ասեմ ձեզ. Եկեսցէ այն ամենայն 'ի
37 վերայ ազգիս այսորիկ: Երուսաղէմ, Երուսաղէմ,
որ կոտորէիր զմարգարէսն՝ և քարկոծ առնէիր զա-
ռաքեալսն առ քեզ. քանիցս անգամ կամեցայ ժո-
ղովել զմանկունս քո՝ զոր օրինակ ժողովէ հաւ
38 զձագս իւր ընդ թեւովք, և ոչ կամեցարուք: Ահա
39 թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ: Բայց
ասեմ ձեզ՝ թէ Ոչ ևս տեսանիցէք զիս յայսմ
հետէ, մինչև ասիցէք, Օրհնեալ եկեալ յանուն
Տեառն:

## ԳԼ. ԻԴ

1 Եւ ելեալ արտաքս Յիսուս 'ի տաճարէն գնայր.
և մատեան աշակերտքն ցուցանել նմա զշինուածս
2 տաճարին: Եւ* նա պատասխանի ետ և" ասէ
ցնոսա. Տեսանէ՞ք զայդ ամենայն, ամէն ասեմ
ձեզ. Ոչ մնասցէ այդր քար 'ի քարի վերայ որ ոչ
3 քակտեսցի: Եւ մինչդեռ նստէր 'ի լերինն Ձիթե-
նեաց, մատեան առ նա աշակերտքն առանձինն և
ասեն. Ասա՛ մեզ՝ Ե՞րբ լինիցի այդ, և կամ զի՞նչ
նշան իցէ քոյոյ գալստեանն, և վախճանի աշ-
4 խարհիս: Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա.
5 Զգո՛յշ լերուք գուցէ ոք զձեզ խաբիցէ: Զի բա-
զումք գայցեն յանուն իմ, և ասիցեն թէ Ես եմ
6 Քրիստոսն. և զբազումս մոլորեցուցանիցեն: Լսե-
լոց էք պատերազմունս և համբաւս պատերազմաց.

---

* 'Ի Յոյնն, Յիսուս

զգոյշ լերուք՝ մի խռովեսջիք, զի պարտ է լինել
7 այնմ ամենայնի, այլ չև՛ է կատարած: Յարիցէ
ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ՚ի թագա-
ւորութեան վերայ. և եղիցին սովք և սրածու-
8 թիւնք և սասանութիւնք ՚ի տեղիս տեղիս: Սակայն
9 և այն ամենայն սկիզբն է երկանց: Յայնժամ
մատնեսցեն զձեզ ՚ի նեղութիւնս, և սպանանիցեն
զձեզ. և եղիջիք ատեցեալք յամենայն ազգաց վասն
10 անուան իմոյ: Եւ յայնժամ գայթակղեսցին բա-
զումք, և զմիմեանս մատնեսցեն՝ և ատեսցեն զմի-
11 մեանս: Եւ բազում սուտ մարգարէք յարիցեն, և
12 զբազումս մոլորեցուսցեն: Եւ վասն բազմանալոյ ա-
13 նօրէնութեան, ցամաքեսցի սէր բազմաց: Բայց որ
14 համբերեսցէ ՚ի սպառ, նա կեցցէ: Եւ քարոզեսցի ա-
ւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս՝
՚ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, և ապա եկես-
15 ցէ կատարած: Յորժամ տեսանիցէք զպղծու-
թիւն աւերածոյն, որ ասացեալն է ՚ի ձեռն Դանի-
էլի մարգարէի, զի կայցէ ՚ի տեղւոջն սրբութեան,
16 որ ընթեռնուն ՚ի միտ առցէ: Յայնժամ որ ՚ի
17 Հրէաստանի իցեն փախիցեն ՚ի լերինս. Եւ որ ՚ի
տանիս կայցէ, մի՛ իջցէ առնուլ ինչ ՚ի տանէ իւրմէ.
18 Եւ որ յանդի իցէ, մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս
19 իւր: Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն
20 յայնոսիկ: Յաղօթս կացէք զի մի՛ լինիցի փախուս-
21 տըն ձեր ձմերանի, և մի՛ ՚ի շաբաթու: Զի եղիցի
յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ո՛չ եղև ՚ի
սկզբանէ արարածոց աշխարհի մինչև ցայժմ, և ո՛չ
22 այլ լիցի: Եւ եթէ ո՛չ կարճէին աւուրքն այնոքիկ,

ոչ ապրէր ամենայն մարմին . բայց վասն ընտրե-
23 լոցն կարճեսցին աւուրքն այնուքիկ ։ Յայնժամ թէ
ոք ասիցէ ձեզ՝ Ահաւասիկ աստ է Քրիստոսն կամ
24 անդ, մի՛ հաւատայցէք ։ Զի յարիցեն սուտ քրիս-
տոսք և սուտ մարգարէք. և տացեն նշանս մեծա-
մեծս և արուեստս, մինչև մոլորեցուցանել՝ թէ հնար
25 ինչ իցէ և զընտրեալսն ։ Ահա յառաջագոյն ասացի
26 ձեզ ։ Արդ եթէ ասիցեն ձեզ. Ահաւանիկ յանա-
պատի է, մի՛ ելանիցէք, և թէ Ահա ՚ի շտեմարանս
27 է, մի՛ հաւատայցէք ։ Զի որպէս փայլակն որ ելա-
նէ յարևելից և երևի մինչև յարևմուտս, այնպէս
28 եղիցի գալուստն Որդւոյ մարդոյ ։ Զի ուր գէշն ի-
29 ցէ, անդր ժողովեսցին արծուիք ։ Վաղվաղակի յետ
նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարես-
ցի և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկ-
ցին յերկնից, և զօրութիւնք երկնից շարժեսցին ։
30 Եւ ապա երևեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս,
և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք*. և տեսցեն
զՈրդի մարդոյ եկեալ ՚ի վերայ ամպոց երկնից զօ-
31 րութեամբ և փառօք բազմօք ։ Եւ առաքեսցէ
զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն
զընտրեալս նորա ՚ի չորից հողմոց՝ ՚ի ծագաց երկնից
32 մինչև ՚ի ծագս նոցա ։ ՚Ի թզենւոյ անտի ուսարուք
զառակն . զի յորժամ նորա ոստքն կակղասցին և
33 տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն ։ Նոյն-
պէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն,
34 գիտասջիք թէ մերձ է ՚ի դուրս ։ Ամէն ասեմ ձեզ՝

---

* ՚Ի Յոյնն, երկրի

եթէ Ո՛չ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն
35 եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛
36 անցցեն։ Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու,
ոչ ոք գիտէ՝ ոչ հրեշտակք երկնից՝* և ո՛չ Որդի՝
37 բայց միայն Հայր"։ Այլ որպէս աւուրքն Նոյի,
38 այնպէս եղիցի գալուստն Որդւոյ մարդոյ։ Զի որ-
պէս էին յաւուրսն որ յառաջ քան զջրհեղեղն,
ուտէին և ըմպէին, կանայս առնէին և արանց լինէ-
ին, մինչև յօրն՝ յորում եմուտ Նոյ ՚ի տապանն,
39 Եւ ո՛չ գիտացին մինչև եկն ջրհեղեղն և եբարձ
զամենեսին. այնպէս եղիցի և գալուստն Որդւոյ
40 մարդոյ։ Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին
41 առցի և միւսն թողցի։ Եւ եթէ երկու † աղայցեն
42 ՚ի մի երկանս, մին առցի և միւսն թողցի։ Արթո՛ւն
կացէք զի ո՛չ գիտէք յորում ժամու Տէրն ձեր գայ։
43 Զայն գիտասջի՛ք եթէ գիտէր տանուտէրն՝ յորում
պահու գող գայ, սկէր՝ և ո՛չ տայր ական հատա-
44 նել զտան իւրոյ։ Վասն այսորիկ և դուք եղերո՛ւք
պատրաստք, զի յորում ժամու ո՛չ ակն ունիցիք՝
45 գայ Որդի մարդոյ։ Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծա-
ռայ և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ՚ի վերայ
ծառայից իւրոց՝ տալ նոցա կերակուր ՚ի ժամու։
46 Երանի՜ է ծառային այնմիկ զոր եկեալ տէրն գտա-
47 նիցէ արարեալ այնպէս։ Ամէն ասեմ ձեզ, Զի ՚ի
48 վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա
թէ ասիցէ ծառայն չար ՚ի սրտի իւրում, Տէր իմ

---

* ՚Ի Յոյնն, բայց միայն Հայր իմ

† ՚Ի Յոյնն, կանայք

49 յամէ զգալ· Եւ սկսանիցի հարկանել զծառայակիցս
50 իւր, ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցողս։ Գայցէ
տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ոչ ակն
51 ունիցի, և 'ի ժամու յորում ոչ գիտիցէ· Եւ կըտ-
րեսցէ զնա ընդ մէջ, և զբաժին նորա ընդ կեղծա-
ւորս դիցէ· անդ եղիցի լալ և կրճտել ատամանց։

## ԳԼ. ԻԵ

1 Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն
կուսանաց, որոց առեալ զլապտերս իւրեանց ելին
2 ընդ առաջ փեսայի * և հարսին"։ Հինգն 'ի նոցանէ
3 յիմարք էին՝ և հինգն իմաստունք։ Յիմարքն առին
4 զլապտերսն, և ձէթ ընդ իւրեանս ո՛չ բարձին։ Իսկ
իմաստունքն առին ձէթ ամանովք ընդ լապտերս
5 իւրեանց։ Եւ 'ի յամել փեսային, նիրհեցին ամե-
6 նեքեան և 'ի քուն մտին։ Եւ 'ի մէջ գիշերի եղև
բարբառ, Ահա՛ փեսայ գայ՝ ելէ՛ք ընդ առաջ նորա։
7 Յայնժամ յարեան ամենայն կուսանքն՝ և կազմեցին
8 զլապտերս իւրեանց։ Ասեն յիմարքն ցիմաստունսն,
Տո՛ւք մեզ յիւղոյդ ձերմէ, զի ահա շիջանին լապ-
9 տերքս մեր։ Պատասխանի ետուն իմաստունքն՝ և
ասեն· Գուցէ ո՛չ իցէ մեզ և ձեզ բաւական, այլ
10 երթա՛յք 'ի վաճառականս՝ և գնեսջի՛ք ձեզ· Իբրև
նոքա գնացին գնել՝ եկն փեսայն, և պատրաստքն
մտին ընդ նմա 'ի հարսանիսն՝ և փակեցաւ դուռնն։
11 Յետոյ գան և այլ կուսանքն՝ և ասեն, Տէր Տէր բա՛ց

* 'Ի Յոյնն չէ։

12 մեզ։ Նա պատասխանի ետ եւ ասէ. Ամէն ասեմ
13 ձեզ՝ թէ Ո՛չ գիտեմ զձեզ։ Արթուն կացէք՝ զի ո՛չ
14 գիտէք զօրն եւ ո՛չ զժամն։ Որպէս այր մի գնացեալ
՚ի տար աշխարհ, կոչեաց զծառայս իւր՝ եւ ետ նոցա
15 զինչս իւր։ Ումեմն ետ հինգ քանքար՝ եւ ումեմն եր-
կուս՝ ումեմն մի, իւրաքանչիւր ըստ իւրում կարի, եւ
16 գնաց։ Վաղվաղակի որ առ զհինգն՝ գործ-
17 եաց նոքօք, եւ շահեցաւ այլ եւս հինգ։ Նոյնպէս եւ
18 որ զերկուսն, շահեցաւ այլ եւս երկուս։ Եւ որ զմին
առ՝ գնաց փորեաց զերկիր, եւ թաքոյց զարծաթ
19 տեառն իւրոյ։ Յետ բազում ժամանակի գայ տէր
ծառայիցն այնոցիկ՝ եւ առնէ համարս ՚ի մէջ նոցա։
20 Եւ մատուցեալ որ զհինգ քանքարն առ, մատոյց այլ
եւս հինգ քանքար, եւ ասէ. Տէ՛ր՝ հինգ քանքար ետուր
ցիս, արդ աւասիկ հինգ այլ եւս քանքար ՚ի վերայ
21 շահեցայ։ Ասէ ցնա տէրն իւր. *Ազնիւ ծառայ" բարի
եւ հաւատարիմ, որովհետեւ ՚ի սակաւուդ հաւատարիմ
ես, ՚ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մո՛ւտ յու-
22 րախութիւն տեառն քո։ Մատուցեալ եւ որոյ զերկուս
քանքարսն առեալ էր, եւ ասէ. Տէ՛ր՝ երկուս քան-
քարս ետուր ցիս, աւասիկ երկուս եւս այլ քանքարս՝
23 զոր ՚ի վերայ շահեցայ։ Ասէ ցնա տէրն իւր. *Ազ-
նիւ ծառայ" բարի եւ հաւատարիմ, որովհետեւ ՚ի
սակաւուդ հաւատարիմ ես, ՚ի վերայ բազմաց կա-
ցուցից զքեզ. մո՛ւտ յուրախութիւն տեառն քո։
24 Մատուցեալ եւ որոյ զմի քանքարն առեալ էր, եւ ա-
սէ. Տէ՛ր՝ գիտէի †, զի այր մի խիստ ես, հնձես զոր

* ՚Ի Յոյնն, Բարւոք է. ծառայ

† ՚Ի Յոյնն, զքեզ

ոչ սերմանեցեր, և ժողովես ուստի ոչ սփռեցեր.
25 Երկեայ, գնացի և թագուցի զքանքարն քո յերկրի.
26 արդ աւասիկ քոյդ ցքեզ։ Պատասխանի ետ տէրն,
և ասէ ցնա. Ծառայ չար և վատ. գիտէիր եթէ
հնձեմ ուստի ոչ սերմանեցի, և ժողովեմ ուստի ոչ
27 սփռեցի. Պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ 'ի
սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի
28 զիմն։ Արդ առէք 'ի դմանէ զքանքարդ՝ և տուք
29 այնմ որ ունիցի՝ զտասն քանքարն։ Զի ամենայնի
որ ունիցի՝ տացի և յաւելցի. և որ ոչն ունիցի, և
30 զոր ունիցին, բարձցի 'ի նմանէ։ Եւ զծառայդ ան-
պիտան հանէք 'ի խաւարն արտաքին. անդ եղիցի
31 լալ և կրճել ատամանց։ Եւ յորժամ եկեսցէ Որ-
դի մարդոյ փառօք իւրովք՝ և ամենայն հրեշտակք
ընդ նմա, յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց։
32 Եւ ժողովեսցին առաջի նորա ամենայն ազգք, և
մեկնեսցէ զնոսա 'ի միմեանց, որպէս հովիւ զի մեկ-
33 նեսցէ զօդիս յայծեաց։ Եւ կացուսցէ զօդիսն ընդ
34 աջմէ իւրմէ՝ և զայծիսն 'ի ձախմէ։ Յայնժամ ա-
սասցէ թագաւորն ցայնոսիկ՝ որ ընդ աջմէն իցեն.
Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատ-
րաստեալ ձեզ զարքայութիւնն 'ի սկզբանէ աշխար-
35 հի։ Զի քաղցեայ և ետուք ինձ ուտել. ծարաւե-
ցի և արբուցիք ինձ։ օտար էի և ժողովեցիք զիս.
36 Մերկ և զգեցուցիք զիս. հիւանդ էի և տեսիք զիս.
37 'ի բանտի էի և եկիք առ իս։ Յայնժամ պատաս-
խանի տացեն նմա արդարքն և ասասցեն. Տէր, ե՞րբ
տեսաք զքեզ քաղցեալ և կերակրեցաք, կամ ծա-

38 րաւի և արբուցաք ։ Ե՞րբ տեսաք զքեզ օտար և
39 ժողովեցաք, կամ մերկ և զգեցուցաք ։ Ե՞րբ տեսաք
զքեզ հիւանդ կամ 'ի բանտի, և եկաք առ քեզ ։
40 Պատասխանի տացէ Թագաւորն և ասասցէ ցնոսա․
Ամէն ասեմ ձեզ, Որովհետև արարիք միում յեղ-
41 բարցս այսոցիկ փոքրկանց՝ ինձ արարիք ։ Յայնժամ
ասասցէ և ցայնոսիկ՝ որ ընդ ահեկէն իցեն․ Եր-
թայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական,
որ պատրաստեալ է Սատանայի և հրեշտակաց նորա ։
42 Զի քաղցեայ և ոչ ետուք ինձ ուտել, ծարաւեցի
43 և ոչ արբուցիք զիս․ Օտար էի՝ և ոչ ժողովեցիք
զիս, մերկ էի՝ և ոչ զգեցուցիք զիս, հիւանդ և 'ի
44 բանտի՝ և ոչ տեսիք զիս ։ Յայնժամ պատասխանի
տացեն և նոքա, և ասասցեն․ Տէր, ե՞րբ տեսաք
զքեզ քաղցեալ կամ ծարաւի կամ օտար կամ մերկ
կամ հիւանդ կամ 'ի բանտի, և ոչ պաշտեցաք զքեզ ։
45 Յայնժամ պատասխանի տացէ նոցա, և ասասցէ․
Ամէն ասեմ ձեզ, Որովհետև ոչ արարէք միում 'ի
46 փոքրկանցս յայսցանէ՝ և ոչ ինձ արարէք ։ Եւ եր-
թիցեն նոքա 'ի տանջանս յաւիտենականս, և ար-
դարքն 'ի կեանս յաւիտենականս ։

## ԳԼ․ ԻԶ

1 Եւ եղև իբրև կատարեաց Յիսուս զամենայն
2 զբանս զայսոսիկ, ասէ ցաշակերտսն իւր ։ Գիտէ՞ք,
զի յետ երկուց աւուրց զատիկ լինի, և Որդի մար-
3 դոյ մատնի 'ի խաչ ելանել ։ Յայնժամ ժողովեցան
քահանայապետքն և դպիրքն և ծերք ժողովրդեանն

'ի սրահ քահանայապետին՝ որում անուն էր Կա-
4 յիափա · Եւ արարին խորհուրդ՝ զի նենգութեամբ
5 կալցին զՅիսուս՝ և սպանցեն ։ Բայց ասէին, թէ
Մ՛ի 'ի տօնի աստ՝ զի մի խռովութիւն լինիցի 'ի
6 ժողովրդեանն ։ Իբրև եկն Յիսուս 'ի Բեթանիա
7 'ի տուն Սիմոնի բորոտի, Մ՛ատեաւ առ Նա կին մի՝
որ ունէր շիշ իւղոյ ծանրագնի, և թափեաց 'ի
8 գլուխ Նորա 'ի բազմականին ։ Իբրև տեսին աշա-
կերտքն՝ բարկացան՝ և ասեն · Ընդէ՞ր է կորուստ
9 այդ իւղոյդ ։ Զի մարթ էր վաճառել զդա մեծագնի՝
10 և տալ աղքատաց ։ Գիտաց Յիսուս և ասէ ցնոսա ·
Զի՞ աշխատ առնէք զկինդ, գործ մի բարի գործ-
11 եաց դա յիս ։ Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ
12 ունիք, բայց զիս ո՛չ համապազ ընդ ձեզ ունիք ։ Նա-
կանխել դորա զիւղդ 'ի մարմին իմ, առ 'ի թաղելոյ
13 զիս նշանակեաց ։ Բայց ամէն ասեմ ձեզ, զի Ուր
և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշ-
խարհ՝ խօսեսցի և զոր արար դա 'ի յիշատակ դո-
14 րա ։ Յայնժամ գնաց մի յերկոտասանիցն անուան-
եալ Յուդա Սկարիովտացի՝ առ քահանայապետսն,
15 և ասէ ։ Զի՞նչ կամիք տալ ինձ, և ես մատնեցից
զնա ձեզ · և Նոքա * կշռեցին Նմա երեսուն ար-
16 ծաթի ։ Եւ յայնմ հետէ խնդրէր պարապ՝ զի մատ-
17 նեսցէ զնա Նոցա ։ Եւ յառաջնում աւուր բաղար-
ջակերացն մատեան աշակերտքն առ Յիսուս՝ և ա-
սեն · Ո՞ւր կամիս՝ զի պատրաստեսցուք քեզ ուտել
18 զզատիկն ։ Եւ Նա ասէ ցնոսա · Երթա՛յք 'ի քաղաքն

* Կամ, խոստացան

առ այս անուն, և ասացէք ցնա. Վարդապետ
ասէ, Ժամանակ իմ մերձեալ է, առ քեզ առնեմ
19 զզատիկ աշակերտօքս հանդերձ: Եւ արարին աշա-
կերտքն որպէս հրամայեաց նոցա Յիսուս, և պատ-
20 րաստեցին զզատիկն: Եւ իբրև երեկոյ եղև՝ կայր
21 բազմեալ ընդ երկոտասան աշակերտսն: Եւ մինչդեռ
ուտէին նոքա, ասէ. Ամէն ասեմ ձեզ, զի մի ոմն 'ի
22 ձէնջ մատնելոց է զիս: Եւ տրտմեցան յոյժ. սկսան
ասել ցնա իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ. Միթէ ես
23 իցեմ Տէր: Նա պատասխանի ետ և ասէ. Որ մըխ-
եաց ընդ իս զձեռն իւր 'ի սկաւառակս՝ նա մատնե-
24 լոց է զիս: Որդի մարդոյ երթայ՝ որպէս և գրեալ
է վասն նորա. բայց վա՜յ մարդոյն այնմիկ՝ յորոյ ձեռս
Որդի մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա՝ թէ չէ՛ր ծըն-
25 եալ մարդն այն: Պատասխանի ետ Յուդա՝ որ մատ-
նելոցն էր զնա՝ և ասէ. Միթէ ես իցեմ վա՛րդապետ.
26 ասէ ցնա՝ Դու ասացեր: Եւ մինչդեռ ուտէին նո-
քա՝ առ Յիսուս հաց՝ օրհնեաց և եբեկ, և ետ աշա-
կերտացն և ասէ. Առէ՛ք կերայք՝ այս է մարմին
27 իմ: Եւ առեալ բաժակ գոհացաւ՝ ետ նոցա և ա-
28 սէ. Արբէ՛ք 'ի դմանէ ամենեքին: Զի այդ է արիւն
իմ նորոյ ուխտի, որ 'ի վերայ բազմաց հեղանի 'ի
29 թողութիւն մեղաց: Բայց ասեմ ձեզ. Ո՛չ ևս ար-
բից յայսմ հետէ 'ի բերոյ որթոյ մինչև ցօրն ցայն՝
յորժամ արբից զդա ընդ ձեզ նոր յարքայութեան
30 Հօր իմոյ: Եւ օրհնեցին, և ելին 'ի լեառն Ձի-
31 թենեաց: Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս. Ամենե-
քին դուք գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի.
զի գրեալ է՝ թէ Հարից զհովիւն և ցրուեսցին ոչ-

32 խաշրքն հօտին ։ Եւ յետ յառնելոյն իմոյ , յառա-
33 ջեսցիս քան զձեզ 'ի Գալիլեա ։ Պատասխանի ետ
Պետրոս՝ և ասէ ցնա ․ Թէպէտ և ամենեքեան գայ-
թագղեսցին 'ի քէն , սակայն ես ոչ գայթագղե-
34 ցայց ։ Ասէ ցնա Յիսուս ․ Ամէն ասեմ քեզ՝ Զի
յայսմ գիշերի մինչև հաւու խօսեալ իցէ , երիցս
35 ուրասցիս զիս ։ Ասէ ցնա Պետրոս ․ Թէ և մեռա-
նել հասանիցէ ընդ քեզ , զքեզ ոչ ուրացայց ․ նոյն-
36 պէս և ամենայն աշակերտքն ասէին ։ Յայնժամ
գայ Յիսուս ընդ նոսա 'ի գիւղ մի՝ որում անուն
էր Գեթսեմանի , և ասէ ցնոսա ․ Նստարուք այդր ,
37 մինչև երթայց կացից յաղօթս * ։ Եւ առեալ ընդ
իւր զՊետրոս՝ և զերկուս որդիսն Զեբեդեայ ,
38 սկսաւ տրտմել և հոգալ ։ Յայնժամ ասէ ցնոսա ․
Տրտում է ոգի իմ մինչև 'ի մահ , կացէք աստ՝ և
39 սկեցէք ընդ իս ։ Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ
մի՝ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց , եկաց յաղօթս՝
և ասէ ․ Հայր իմ , եթէ հնար է՝ անցցէ բաժակս
այս յինէն ․ բայց ոչ որպէս ես կամիմ , այլ որպէս
40 դու ։ Գայ առ աշակերտսն , և գտանէ զնոսա 'ի
քուն , և ասէ ցՊետրոս ․ Այդպէս ոչ կարացիք մի
41 ժամ արթուն կալ ընդ իս ։ Արթուն կացէք և
աղօթս արարէք՝ զի մի՛ անկանիցիք 'ի փորձութիւն ․ †
42 հոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար ։ Դարձեալ
երկրորդ անգամ չոքաւ՝ եկաց յաղօթս Յիսուս՝ և
ասէ ․ Հայր իմ՝ եթէ հնար իցէ անցանել յինէն

* 'Ի Յոյնն , անդր

† 'Ի Յոյնն , հոգին յօժար է՝ բայց մարմինն տկար

բաժակիս այսմիկ , ապա թէ ոչ՝ արբից զսա , ե-
43 ղիցին կամք քո ։ Եւ եկեալ միւսանգամ եգիտ
զնոսա ՚ի քուն , զի էին աչք իւրեանց ծանրացեալք ։
44 Եթող զնոսա և գնաց . եկաց յաղօթս երրորդ ան-
45 գամ . և դարձեալ զնոյն բան ասաց ։ Յայնժամ գայ
առ աշակերտսն՝ և ասէ ցնոսա . Ննջեցէք այսու-
հետև՝ և հանգերուք . զի ահա հասեալ է ժամ ,
46 և Որդի մարդոյ մատնի ՚ի ձեռս մեղաւորաց ։ Արիք
երթիցուք աստի , զի ահաւասիկ եհաս՝ որ մատնե-
47 լոցն է զիս ։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր , ահա
Յուդա մի յերկոտասանիցն եկն , և ընդ նմա ամբոխ
բազում սրովք և բրօք՝ ՚ի քահանայապետէից և ՚ի
48 ծերոց ժողովրդեանն ։ Եւ որ մատնելոցն էր զնա .
ետ նոցա նշան՝ և ասէ ։ Զոր համբուրե-
49 ցից՝ նա է , զնա՛ ունիցիք ։ Եւ վաղվաղակի մատու-
ցեալ առ Յիսուս՝ ասէ . Ո՛ղջ եր վա՛րդապետ . և
50 համբուրեաց զնա ։ Եւ Յիսուս ասէ ցնա . Ըն-
կեր վասն որո՞յ եկիր . յայնժամ մատուցեալ ար-
51 կին ձեռս ՚ի Յիսուս , և կալան զնա ։ Եւ ահա՛ մի
ոմն յայնցանէ՝ որ էին ընդ Յիսուսի , ձգեաց զձեռն
և եհան զսուր իւր՝ և եհար զծառայ քահանայա-
52 պետին , և ՚ի բաց եհան զունկն նորա ։ Յայնժամ
ասէ ցնա Յիսուս . Դարձ՛ զսուր քո ՚ի տեղի իւր .
զի ամենեքեան՝ որ սուր առնուցուն՝ սրով ան-
53 կանիցին ։ Եթէ համարիցիս՝ թէ ո՛չ կարեմ* աղա-
չել զՀայր իմ . և հասուցանիցէ ինձ† այժմ այսր
54 աւելի քան զերկոտասան‡ գունդս հրեշտակաց ։ Այլ

---

* ՚Ի Յոյնն , այժմ աղաչել   † ՚Ի Յոյնն չէ ։

‡ ՚Ի Յոյնն , լէգէոնս

զիա՞րդ լնուցուն գիրք՝ թէ այսպէս պարտ է լինել:
55 Յայնժամ ասաց Յիսուս ցամբոխն. Իբրեւ ՚ի վերայ
աւազակի ելիք սուսերօք՝ եւ բրօք՝ ունել զիս. Հանա-
պազ առ ձեզ ՚ի տաճարին նստէի եւ ուսուցանէի,
56 եւ ոչ կալայք զիս: Այլ այս ամենայն եղեւ՝ զի լցցին
գիրք մարգարէիցն. Յայնժամ աշակերտքն ամե-
57 նեքին թողին զնա եւ փախեան: Իսկ նոցա կալեալ
զՅիսուս՝ ածին առ Կայիափա քահանայապետ՝ ուր
58 դպիրքն եւ ծերք ժողովեալ էին: Եւ Պետրոս զհետ
նորա երթայր բացագոյն մինչեւ ՚ի սրահ քահանա-
յապետին. եւ մտեալ ՚ի ներքս նստէր ընդ սպասա-
59 ւորսն տեսանել զկատարածն: Իսկ քահանայապետքն
եւ ամենայն ատեանն խնդրէին սուտ վկայութիւն
60 զՅիսուսէ, զի սպանցեն զնա. Եւ ոչ գտանէին ՚ի
բազմաց սուտ վկայիցն մատուցելոց. յետոյ մա-
61 տուցեալ երկու սուտ վկայք, Ասէին՝ թէ Սա ասէր՝
Կարող եմ քակել զտաճարն Աստուծոյ, եւ զերիս
62 աւուրս շինել: Եւ յարուցեալ քահանայապետն
ասէ ցնա. Ոչ ինչ պատասխանի, զինչ դոքա
63 ամբաստանեն զքէն: Եւ Յիսուս լուռ կայր. Պա-
տասխանի ետ քահանայապետն եւ ասէ ցնա. Երդ-
մնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի, զի
ասասցես մեզ՝ եթէ դու ես Քրիստոսն Որդի
64 Աստուծոյ: Ասէ ցնա Յիսուս. Դու ասացեր. բայց
ասեմ ձեզ, Յայսմ հետէ տեսանիցէք զՈրդի մար-
դոյ նստեալ ընդ աջմէ զօրութեան եւ եկեալ ընդ
65 ամպս երկնից: Յայնժամ քահանայապետն պա-
տառեաց զհանդերձս իւր, եւ ասէ. Հայհոյեաց, զի՞
եւս պիտոյ են մեզ վկայք, ահա արդ լուայք զհայ-

66 հայհոյութիւն նորա. Զի՞նչ հաճոյ է ձեզ. նոքա պա-
67 տասխանի ետուն եւ ասեն. Մահապարտ է: Յայն-
ժամ թքին ընդ երեսս նորա, եւ կափեցին զնա. եւ
68 ոմանք ապտակեցին, եւ ասեն: Մարգարեա՛ց մեզ
69 Քրիստոսդ, ո՛վ է՝ որ եհարն զքեզ: Իսկ Պետրոս
նստէր արտաքոյ 'ի գաւթին. մատեաւ առ նա աղա-
խին մի, եւ ասէ. Եւ դու ընդ Յիսուսի Գալիլ-
70 եացւոյ էիր: Նա ուրացաւ առաջի ամենեցուն՝ եւ
71 ասէ, թէ Ո՛չ գիտեմ զի՞նչ խօսիդ: Եւ իբրեւ ել
նա արտաքս քան զդրունն՝ ետես զնա այլ կին մի,
եւ ասէ ցայնոսիկ՝ որ անդն կային. Եւ սա ընդ
72 Յիսուսի Նազովրացւոյ էր: Եւ դարձեալ ուրացաւ
73 երդմամբ, թէ Ո՛չ գիտեմ զայրն: Եւ յետ սակաւ
միոյ մատուցեալ որք կայինն անդ, ասեն ցՊետրոս.
Արդարեւ եւ դու 'ի նոցանէ ես, քանզի եւ խօսք քո
74 յայտ առնեն զքեզ: Յայնժամ սկսաւ նզովել եւ
երդնուլ, թէ Ո՛չ գիտեմ զայրն. եւ իսկոյն հաւ
75 խօսեցաւ: Եւ յիշեաց Պետրոս զբանն Յիսուսի զոր
ասաց, թէ Մինչեւ հաւու խօսեալ իցէ՝ երիցս ու-
րասցիս զիս. եւ ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս:

## ԳԼ. ԻԷ.

1 Իբրեւ այգ եղեւ, խորհուրդ արարին ամենայն
քահանայապետքն եւ ծերք ժողովրդեանն վասն
2 Յիսուսի սպանանել զնա: Կապեցին զնա, եւ տարին
գնացին, եւ ետուն 'ի ձեռս Պոնտացւոյ Պիղա-
3 տոսի դատաւորի: Յայնժամ տեսեալ Յուդայի՝
որ մատնեաց զնա, թէ պարտաւորեցաւ, զղջացաւ՝

և դարձոյց * զարծաթն առ քահանայապետսն
4 և ծերս ժողովրդեանն", Եւ ասէ. Մեղայ, զի
մատնեցի զարիւն արդար. և նոքա ասեն. Մեզ չէ
5 փոյթ, դու գիտես: Եւ ընկէց զարծաթն 'ի տաճա֊
6 րին՝ և գնաց, և չոգաւ խեղդեցաւ: Իսկ քահանա֊
յապետիցն առեալ զարծաթն՝ ասեն. Ո՛չ է արժան
ընդունել զայդ 'ի կորբանն, քանզի գինք արեան
7 են: Խորհուրդ առեալ, գնեցին այնու զագարակն
8 բրտի 'ի գերեզման օտարաց: Վասն այնորիկ կո֊
չեցաւ ագարակն այն, Ագարակ արեան՝ մինչև
9 ցայսօր: Յայնժամ լցաւ՝ որ ասացաւն 'ի ձեռն
Երեմիայ մարգարէի. Եւ առին զերեսուն արծա֊
թին զգինս վաճառելոյն, զոր արկին յորդւոցն
10 Իսրայելի: Եւ ետուն զնա յագարակն բրտի. որպէս
11 հրամայեաց ինձ Տէր: Եւ Յիսուս եկաց առաջի
դատաւորին. եհարց ցնա դատաւորն՝ և ասէ. Դո՞ւ
ես թագաւորն Հրէից. Եւ Յիսուս ասէ. Դու
12 ասես: Եւ 'ի չարախօսելն նորա 'ի քահանայապե֊
13 տիցն և 'ի ծերոց, ո՛չ ինչ ետ պատասխանի: Յայն֊
ժամ ասէ ցնա Պիղատոս. Ո՞չ լսես՝ որչափ դոքա
14 հակառակ քո վկայեն: Եւ ո՛չ ետ նմա պատաս֊
խանի՝ և ո՛չ բան մի, մինչև զարմանալ դատաւորին
15 յոյժ: Բայց ըստ տօնի՝ սովոր էր դատաւորն ար֊
16 ձակել ժողովրդեանն կապեալ մի՝ զոր կամէին: Ու֊
նէին յայնժամ կապեալ մի նշանաւոր, որում անուն
17 էր † Յեսու Բարաբբա: Իբրև ժողովեցան, ասէ

---

* 'Ի Յոյնն, զերեսուն արծաթին առ քահանայա֊
պետսն և ծերս † 'Ի Յոյնն չէ:

ցնոսա Պիղատոս․ Ո՞վ կամիք *յերկուց աստի զի
արձակեցից ձեզ, զՅեսու Բարաբբա՞" եթէ զՅի-
18 սուս զանուանեալն Քրիստոս ։ Քանզի գիտէր՝ թէ
19 առ նախանձու մատնեցին զնա ։ Եւ մինչ նստէր
յատենին, առաքեաց առ նա կինն իւր՝ և ասէ․ Չկայ
ինչ քո և արդարոյն այնորիկ, զի բազում անցք ան-
20 ցին ընդ իս այսօր յանուրջս վասն նորա ։ Իսկ քա-
հանայապետքն և ծերք հաւանեցուցին զժողովուրդսն,
զի խնդրեսցեն զԲարաբբայն՝ և զՅիսուս կորուս-
21 ցեն ։ Պատասխանի ետ դատաւորն՝ և ասէ ցնոսա․
Ո՞վ կամիք զի արձակեցից ձեզ յերկուց այտի․ և
22 նոքա ասեն․ զԲարաբբա ։ Ասէ ցնոսա Պիղատոս․
Իսկ զի՞ արարից զՅիսուս զանուանեալն Քրիս-
23 տոս ։ Ասեն ամենեքեան՝ Խաչեսցի․ և նա ասէ,
Ո՞ր ինչ չար արար․ և նոքա առաւել ևս աղաղա-
24 կէին և ասէին, Խաչեսցի ։ Եւ տեսեալ Պիղա-
տոսի թէ ոչ ինչ օգնէ՝ այլ առաւել խռովութիւն
լինի, առեալ ջուր՝ լուաց զձեռս առաջի ժողո-
վրդեանն՝ և ասէ․ Քաւեալ եմ ես յարենէ ար-
25 դարոյդ այդորիկ․ դուք գիտասջիք ։ Պատասխանի
ետ ամենայն ժողովուրդն՝ և ասէ․ Արիւն դորա ՚ի վե-
26 րայ մեր և ՚ի վերայ որդւոց մերոց ։ Յայնժամ ար-
ձակեաց նոցա զԲարաբբայն, և զՅիսուս զան
27 հարեալ՝ ետ ՚ի ձեռս՝ զի խաչեսցի ։ Յայնժամ զի-
նուորք դատաւորին առին զՅիսուս յապարանս․ և
28 ժողովեցին ՚ի վերայ նորա զամենայն զգունդն․ Մեր-
կացին զնա, և արկին զնովաւ քղամիդ կարմիր ։

* ՚Ի Յոյնն, զի արձակեցից ձեզ․ զԲարաբբա՞

29 Եւ բոլորեալ պսակ 'ի փշոց՝ եդին 'ի գլուխ նորա ,
և եղէգն յաջոյ ձեռին նորա . 'ի ծունր իջեալ ա-
ռաջի նորա՝ կատակէին և ասէին . Ո՛ղջ եր Թա-
30 գաւոր Հրէից : Եւ Թքեալ 'ի նա՝ առնուին զե-
31 ղէգնն և ծեծէին զգլուխ նորա : Եւ յորժամ ձա-
ղեցին զնա , մերկացուցին 'ի նմանէ զքղամիդն՝ և
ագուցին նմա զիւր հանդերձն , և տարան զնա 'ի
32 խաչ հանել : Եւ ելեալ արտաքս՝ գտին այր մի
Կիւրենացի՝ անուն Սիմոն , զնա կալան պահակ՝ զի
33 բարձցէ զխաչն նորա : Եւ եկեալ 'ի տեղին ա-
34 նուանեալ Գողգոթա , որ է տեղի կառափելոյ : Ե-
տուն նմա ըմպել գինի ընդ լեղի խառնեալ . և իբրև
35 ճաշակեաց , ո՛չ կամէր ըմպել : Եւ հանեալ զնա
'ի խաչ՝ բաժանեցին զհանդերձս նորա վիճակաւ .
զի լցցի բանն՝ որ ասացաւ 'ի մարգարէէն . Բաժա-
նեցին զհանդերձս իմ յիւրեանս , և 'ի վերայ պատ-
36 մուճանի իմոյ վիճակս արկանէին : Եւ նստեալ պա-
37 հէին զնա : Եւ եդին 'ի վերայ գլխոյ նորա՝ գրե-
ալ զվնաս նորա՝ Թէ Այս է Յիսուս Թագաւորն
38 Հրէից : Յայնժամ հանին ընդ նմա 'ի խաչ եր-
կուս աւազակս , մի յաջմէ նորա և մի յահեկէ :
39 Եւ որ անցանէինն՝ հայհոյէին զնա , շարժէին
40 զգլուխս իւրեանց , Եւ ասէին . Ա՛հ որ քակէիր
զտաճարն , և զերիս աւուրս շինէիր զնա . ապրեցո՛
զքեզ , Թէ Որդի ես Աստուծոյ՝ էջ 'ի խաչէդ :
41 Նոյնպէս և քահանայապետքն ձաղէին հանդերձ
42 դպրօքն և ծերովք՝ և ասէին : Զայլս ապրեցոյց ,
զինքն ո՛չ կարէ ապրեցուցանել . եԹէ Թագաւոր է
Իսրայելի՝ իջցէ այժմ 'ի խաչէդ՝ և հաւատասցուք

43 ղմա. Եթէ յուսացաւ յԱստուած, փրկեսցէ այժմ
զդա՝ եթէ կամի զդա. քանզի ասաց՝ եթէ Աստու-
44 ծոյ Որդի եմ: Զնոյն և աւազակքն՝ որ խաչեալ
45 էին ընդ նմա, նախատէին զնա: Եւ 'ի վեց ժամէ
աւուրն՝ խաւար եղև 'ի վերայ ամենայն երկրի մինչև
46 ցինն ժամ: Եւ զինն ժամաւն գոչեաց Յիսուս 'ի
ձայն մեծ և ասէ. Էլի Էլի լամա սաբաքթանի.
այսինքն է. Աստուած իմ Աստուած իմ՝ ընդէ՞ր
47 թողեր զիս: Ոմանք յայնցանէ որ անդն կային,
48 իբրև լուան՝ ասէին. զԵղիա կարդայ դա: Եւ
վաղվաղակի ընթացաւ մի ոմն 'ի նոցանէ՝ առ սպունգ
լի քացախով, հարեալ յեղեգան՝ ետ ըմպել նը-
49 մա: Եւ կէսքն ասէին. Թո՛ղ տեսցուք եթէ գա՞յ
50 Եղիա փրկել զդա: Եւ Յիսուս դարձեալ աղա-
51 ղակեաց 'ի ձայն մեծ՝ և արձակեաց զոգին: Եւ ա-
հա վարագոյր տաճարին ցելաւ յերկուս՝ 'ի վերուստ
մինչև 'ի վայր. և երկիր շարժեցաւ, և վէմք պա-
52 տառեցան: Եւ գերեզմանք բացան, և բազում
53 մարմինք ննջեցելոց սրբոց յարեան: Եւ ելեալ 'ի
գերեզմանաց յետ յարութեանն նորա, մտին 'ի
54 քաղաքն սուրբ, և երևեցան բազմաց: Իսկ հա-
րիւրապետն և որ ընդ նմա պահէին զՅիսուս, իբրև
տեսին զշարժումն և զեղեալսն, երկեան յոյժ՝ և
55 ասեն. Արդարև Աստուծոյ Որդի էր սա: Էին անդ
կանայք բազումք, կային 'ի հեռաստանէ՝ և հա-
յէին, որք եկին զհետ Յիսուսի 'ի Գալիլեէ պաշ-
56 տել զնա. Յորս էր Մարիամ Մագդաղենացի և
Մարիամ Յակոբայ՝ և Յովսեայ մայր, և մայր
37 որդւոցն Զեբեդեայ: Եւ իբրև երեկոյ եղև. եկն

այր մի մեծատուն յԱրիմաթեայ՝ որում անուն էր
58 Յովսէփ. որ և աշակերտեցաւ իսկ Յիսուսի: Սա
մատուցեալ առ Պիղատոս, խնդրեաց զմարմինն Յի-
սուսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմար-
59 մինն: Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց
60 սուրբ կտաւով, Եւ եդ 'ի նոր գերեզմանի զոր
փորեաց 'ի վիմի. և թաւալեցուցեալ կափարիչ դը-
61 րան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց: Անդ էր Մա-
րիամ Մագդաղենացի՝ և միւս Մարիամն, նստէին
62 հանդէպ գերեզմանին: Եւ 'ի վաղիւ անդր՝ որ է
յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և
63 փարիսեցիքն առ Պիղատոս, Եւ ասեն. Տէր, յի-
շեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր՝ մինչ կենդանին
64 էր, թէ Յետ երից աւուրց յառնեմ: Արդ հրա-
մայեա՛ զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս ա-
ւուրս, գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայ-
ցեն զնա, և ասիցեն ժողովրդեանն, թէ Յարեաւ
'ի մեռելոց. և լինիցի յետին մոլորութիւնն չար քան
65 զառաջինն: Ասէ ցնոսա Պիղատոս. Ունիք զզօրա-
կանն, երթա՛յք զգուշացարո՛ւք որպէս և գիտէք:
66 Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կըն-
քեցին զվէմն հանդերձ զօրականօքն:

## ԳԼ. ԻԸ

1 Եւ յերեկոյի շաբաթուն՝ յորում լուսանայր միա-
շաբաթին, եկն Մարիամ Մագդաղենացի, և միւս
2 Մարիամն՝ տեսանել զգերեզմանն: Եւ ահա շար-
ժումն մեծ եղև. զի հրեշտակ Տեառն իջեալ յերկ-

նից՝ մատուցեալ 'ի բաց թաւալեցոյց զվէմն 'ի դը-
3 րաց անտի, եւ նստէր 'ի վերայ նորա. Եւ էր տեսիլ
նորա իբրեւ զփայլակն, եւ հանդերձ նորա սպիտակ
4 իբրեւ զձիւն։ Եւ յահէ անտի նորա խռովեցան պա-
5 հապանքն, եւ եղեն իբրեւ զմեռեալս։ Պատասխանի
ետ հրեշտակն՝ եւ ասէ ցկանայսն. Մի՛ երկնչիք
դուք, գիտեմ զի զՅիսուս զխաչելեալն խնդրէք.
6 Չէ՛ աստ, քանզի յարեաւ, որպէս ասացն. եկա՛յք
7 տեսէ՛ք զտեղին ուր կայր*։ Եւ վաղվաղակի եր-
թա՛յք ասացէ՛ք աշակերտացն նորա՝ թէ Յարեաւ.
եւ ահա յառաջանայ քան զձեզ 'ի Գալիլեա, անդ
8 տեսանիցէք զնա. ահա ասացի ձեզ։ Եւ ելեալ
վաղվաղակի 'ի գերեզմանէ անտի ահիւ եւ խնդու-
թեամբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակեր-
9 տացն։ Եւ ահա պատահեաց նոցա Յիսուս՝ եւ ա-
սէ. Ո՛ղջ էք. եւ նոքա մատուցեալ կալան զոտս
10 նորա՝ եւ երկիրպագին նմա։ Յայնժամ ասէ ցնո-
սա Յիսուս. Մի՛ երկնչիք, երթա՛յք ասացէ՛ք եղ-
բարցն իմոց՝ զի երթիցեն 'ի Գալիլեա, եւ անդ
11 տեսցեն զիս։ Իբրեւ նոքա գնացին, ահա ոմանք
'ի զօրականացն եկին 'ի քաղաքն՝ եւ պատմեցին
12 քահանայապետիցն զամենայն որ ինչ եղեւն։ Եւ
նոքա ժողովեալ հանդերձ ծերովքն, խորհուրդ
13 առեալ արծաթ յոյժ ետուն զօրականացն, Եւ ա-
սեն. Ասասջի՛ք՝ եթէ Աշակերտքն նորա եկեալ
14 գիշերի գողացան զնա՝ մինչ մեք 'ի քուն էաք։ Եւ
եթէ լուր լիցի այդ առ դատաւորն, մեք հաւանե-

* 'Ի Յոյն, Տէրն

15 *ցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք։ Եւ նոցա*
*առեալ զարծաթն, արարին որպէս ուսանն. և ել*
16 *համբաւս այս 'ի Հրէից մինչև ցայսօր։ Իսկ մե-*
*տասան աշակերտքն գնացին 'ի Գալիլեա 'ի լեառնն՝*
17 *ուր ժամադիր եղև նոցա Յիսուս։ Իբրև տեսին զնա,*
18 *երկիրպագին նմա, և ոմանք յերկուացան։ Եւ մա-*
*տուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ.*
*տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկ-*
*րի.* * *որպէս առաքեաց զիս Հայր, և ես առա-*
19 *քեմ զձեզ"։ Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք*
*զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր*
20 *և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։ Ուսուցէք նոցա պա-*
*հել զամենայն որ ինչ պատուիրեցի ձեզ. և ահա-*
*ւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչև*
*'ի կատարած աշխարհի։*

---

* 'Ի Յոյնն չէ։

---

# Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

## ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

### ԳԼ. Ա

1 ՍԿԻԶԲՆ աւետարանի Յիսուսի Քրիստոսի
2 Որդւոյ Աստուծոյ: Որպէս և գրեալ է 'ի մարգա-
րէս. Ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ առա-
ջի քո, որ հանդերձեսցէ զճանապարհ քո առաջի
3 քո: Ձայն բարբառոյ յանապատի, պատրաստ ա-
րարէք զճանապարհ Տեառն, և ուղիղ արարէք
4 զշաւիղս նորա: Եւ եղև զի Յովհաննէս մկրտէր
յանապատի, և քարոզէր մկրտութիւն ապաշխա-
5 րութեան 'ի թողութիւն մեղաց: Եւ երթայր առ նա
ամենայն աշխարհն Հրէաստանի, և Երուսաղէմա-
ցիք ամենեքեան. և մկրտէին 'ի նմանէ 'ի Յորդա-
6 նան գետ՝ խոստովանեալ զմեղս իւրեանց: Եւ էր
Յովհաննէս զգեցեալ ստև ուղտու, և գօտի մաշ-
կեղէն ընդ մէջ իւր. և կերակուր նորա մարախ՝ և
7 մեղր վայրենի: Քարոզէր և ասէր. Գայ զօրա-
գոյնն քան զիս զկնի իմ, որում չեմ բաւական խո-
8 նարհել լուծանել զխրացս կօշկաց նորա: Ես մկր-
տեցի զձեզ ջրով, և նա մկրտեսցէ զձեզ Հոգ-
9 ւովն Սրբով: Եւ եղև յաւուրսն յայնոսիկ եկն

Յիսուս ՚ի Նազարեթէ Գալիլեացւոց, եւ մկրտեցաւ
10 ՚ի Յովհաննէ ՚ի Յորդանան: Եւ նոյնժամայն
ընդ ելանել ՚ի ջրոյն, ետես ցելեալ զերկինս,
եւ զՀոգին * Աստուծոյ իբրեւ զաղաւնի՝ զի իջանէր
11 ՚ի վերայ նորա: Ձայն եղեւ յերկնից եւ ասէ.
Դու ես Որդի իմ սիրելի, ընդ քեզ հաճեցայ:
12 Եւ նոյնժամայն Հոգին հանէ զնա յանապատ:
13 Եւ էր նա անդ զաւուրս քառասուն փորձեալ ՚ի
Սատանայէ, եւ էր ընդ գազանս. եւ հրեշտակք
պաշտէին զնա:
14 Եւ յետ մատնելոյն Յովհաննու, եկն Յիսուս
15 ՚ի Գալիլեա. քարոզէր զաւետարանն Աստու-
ծոյ՝ եւ ասէր. Թէ կատարեալ է ժամանակ, եւ
հասեալ է արքայութիւնն Աստուծոյ. ապաշ-
16 խարեցէք եւ հաւատացէք յաւետարանն: Իբրեւ ան-
ցանէր առ ծովեզերբն Գալիլեացւոց, ետես զՍի-
մովն եւ զԱնդրէաս զեղբայր Սիմովնի, զի արկեալ
17 էր նոցա ուռկանս ՚ի ծով. քանզի ձկնորսք էին. Եւ
ասէ ցնոսա Յիսուս. Եկայք զկնի իմ եւ արարից
18 զձեզ լինել որսորդս մարդկան: Եւ վաղվաղակի
19 թողեալ զուռկանսն, գնացին զհետ նորա: Եւ մա-
տուցեալ անտի սակաւիկ մի յառաջ, ետես զՅա-
կովբոս Զեբեդեայ՝ եւ զՅովհաննէս զեղբայր նո-
րա, եւ զնոսա ՚ի նաւին մինչ կազմէին ուռկանս,
20 եւ կոչեաց զնոսա: Եւ վաղվաղակի թողեալ զհայրն
իւրեանց զԶեբեդէոս ՚ի նաւին վարձկանօքն հան-
դերձ, գնացին զհետ նորա:

---

* ՚Ի Յոյնն չէ:

21 Եւ մտանեն 'ի Կափառնաում, և իսկ և իսկ 'ի
շաբաթուն մտեալ 'ի ժողովուրդն, ուսուցանէր զնո-
22 սա: Եւ զարմանային ընդ վարդապետութիւն նո-
րա, զի ուսուցանէր զնոսա իբրև իշխանութեամբ՝ և
23 ոչ որպէս դպիրքն: Եւ էր 'ի ժողովրդեանն նոցա
այր մի, յորում այս պիղծ գոյր 'ի նմա. որ աղա-
24 ղակեաց՝ և ասէ: Թո՛յլ տուր, զի՞ կայ մեր և քո՝
Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանել զմեզ. գի-
25 տեմք զքեզ ո՛վ ես Սուրբ Աստուծոյ: Սաստեաց
'ի նա Յիսուս և ասէ. Կարկեա՛ց և ե՛լ 'ի դմանէ:
26 Եւ զարկոյց զնա այսն պիղծ. և աղաղակեաց 'ի
27 ձայն մեծ, և ել 'ի նմանէ: Եւ զարմացան ա-
մենեքին, մինչև հծծել ընդ միմեանս՝ և ասել.
Զի՞նչ է այս նոր վարդապետութիւն, զի իշխա-
նութեամբ և այսոց պղծոց սաստէ՝ և հնազանդին
28 նմա: Եւ ել լուր նորա ընդ ամենայն կողմն Գա-
29 լիլեացւոց: Եւ վաղվաղակի ելեալ 'ի ժողովրդե-
նէն, եկն 'ի տուն Սիմոնի և Անդրեայ՝ Յակոբաւ
30 և Յովհաննու հանդերձ: Եւ զոքանչ Սիմոնի դը-
նէր ջերմացեալ, և վաղվաղակի ասեն ցնա վասն
31 նորա: Եւ մատուցեալ յարոյց զնա՝ կալեալ զձե-
ռանէ նորա. և եթող զնա տենդն՝ և պաշտէր զնո-
32 սա: Եւ իբրև երեկոյ եղև 'ի մտանել արեգականն,
բերէին առ նա զամենայն հիւանդս և զդիւահարս.
33 Եւ էր ամենայն քաղաքն ժողովեալ առ դրունսն.
34 Եւ բժշկեաց բազում հիւանդս 'ի պէսպէս ախ-
տից, և դևս բազումս եհան. և ոչ տայր խօսել դի-
ւացն. զի գիտէին զնա * թէ Քրիստոս է":

---

* 'Ի Յոյնն չէ:

35 Եւ ընդ այգն ընդ առաւօտն յարուցեալ ել և
36 գնաց յանապատ տեղի, և անդ կայր յաղօթս։ Եւ
գնաց զհետ նորա Սիմոն՝ և որ ընդ նմայն էին։
37 Եւ իբրև գտին զնա ասեն ցնա, թէ Ամենեքին
38 խնդրեն զքեզ։ Եւ ասէ ցնոսա. Եկա՛յք երթիցուք
և յայլ մօտաւոր գիւղաքաղաքսն, զի և անդ քա-
39 րոզեցից. զի յայս իսկ եկեալ եմ։ Եւ քարոզէր
՚ի ժողովուրդսն նոցա ընդ ամենայն Գալիլեացիս,
40 և դևս հանէր։ Գայ առ նա բորոտ մի, աղաչէր՝
՚ի ծունր իջանէր՝ և ասէր. * Տէր եթէ կամիս կա-
41 րող ես զիս սրբել։ Իսկ Յիսուս գթացեալ ձգեաց
զձեռն, մերձեցաւ ՚ի նա՝ և ասէ ցնա, Կամիմ՝
42 սրբեա՛ց։ Եւ իբրև ասացն ցնա, վաղվաղակի գը-
43 նաց ՚ի նմանէ բորոտութիւնն՝ և սրբեցաւ։ Եւ
սաստեալ նմա՝ եհան զնա արտաքս վաղվաղակի, և
44 ասէ։ Զգո՛յշ լեր մի՛ ումեք ինչ ասիցես. այլ երթ
ցո՛յց զքեզ քահանային. և մատո՛ վասն սրբութեան
քո պատարագ՝ զոր հրամայեաց Մովսէս, ՚ի վը-
45 կայութիւն նոցա։ Եւ նա ելեալ սկսաւ քարոզել
յոյժ՝ և հռչակ հարկանել զբանն, մինչ ո՛չ ևս կա-
րող լինել նմա յայտնապէս ՚ի քաղաք մտանել,
այլ արտաքոյ յանապատ տեղիս էր. և գային առ
նա յամենայն կողմանց։

---

* ՚Ի Յոյնն չէ։

## ԳԼ. Բ

1 Եւ մտեալ դարձեալ 'ի Կափառնաում յետ ա-
2 ւուրց, Լուր եղեւ եթէ 'ի տան է. եւ ժողովեցան
բազումք՝ մինչեւ տեղի ևս ոչ լինել՝ եւ ոչ առ դը-
3 րանն. եւ խօսէր նոցա զբանն: Եւ գային առ նա՝
4 բերէին անդամալոյծ մի բարձեալ 'ի չորից: Եւ
իբրեւ ոչ կարէին մերձենալ առ նա յամբոխէ ան-
տի, քակեցին զյարկն՝ ուր էր Յիսուս, եւ բաց-
եալ զառաստաղն իջուցին զմահիճսն յորում կայր
5 անդամալոյծն: Եւ տեսեալ Յիսուսի զհաւատս նո-
ցա. ասէ ցանդամալոյծն. Որդեակ թողեալ լիցին
6 քեզ մեղք քո: Եւ էին ոմանք 'ի դպրաց անտի՝
որ անդ նստէին. եւ խորհէին 'ի սիրտս իւրեանց.
7 Զի՞նչ է այս՝ որ խօսի սա զհայհոյութիւնս. ո՞վ
8 կարէ թողուլ զմեղս, եթէ ոչ մի Աստուած: Եւ
գիտաց Յիսուս յոգի իւր՝ թէ այնպէս խորհին 'ի
սիրտս իւրեանց, եւ ասէ. Զի՞ խորհիք զայդ 'ի
9 սիրտս ձեր: Զի՞նչ դիւրին է, ասել ցանդամա-
լոյծն՝ Թողեալ լիցին քեզ մեղք քո, եթէ ասել՝
10 Արի՛ առ զմահիճս քո եւ * երթ 'ի տուն քո": Այլ
զի գիտասջիք եթէ իշխանութիւն ունի Որդի մար-
դոյ 'ի վերայ երկրի թողուլ զմեղս, ասէ ցանդամա-
11 լոյծն. Քեզ ասեմ, Արի՛ առ զմահիճս քո՝ եւ երթ
12 'ի տուն քո: Եւ յարեաւ վաղվաղակի առեալ զմա-
հիճսն, ել առաջի ամենեցուն. մինչեւ զարմանալ ա-
մենեցուն, եւ փառաւոր առնել զԱստուած՝ եւ ասել,

---

* 'Ի Յոյնն, շրջեաց

թէ այսպիսի ինչ երբեք ոչ տեսաք։
13 Եւ ել դարձեալ ՚ի ծովեզրն, և ամենայն ժողո-
14 վուրդն գայր առ նա. և ուսուցանէր զնոսա։ Եւ
մինչդեռ անցանէր, ետես զՂևի Աղփեայ՝ զի նստ-
էր ՚ի մաքսաւորութեան և ասէ ցնա. Ե՛կ զկնի
15 իմ. և յարուցեալ գնաց զկնի նորա։ Եւ եղև ՚ի
բազմելն նորա ՚ի տան նորա, և բազում մաքսա-
ւորք * բազմեալ էին ընդ Յիսուսի՝ և ընդ աշա-
կերտսն նորա. քանզի էին բազումք որ երթային
16 զհետ նորա։ Իսկ դպիրքն և փարիսեցիք իբրև տե-
սին՝ թէ ուտէ ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս,
ասեն ցաշակերտսն նորա. Զի՞ է՝ զի ընդ մեղա-
17 ւորս և ընդ մաքսաւորս † ուտէք և ըմպէք՚՚։ Իբրև
լուաւ Յիսուս՝ ասէ ցնոսա. Ոչ ինչ է պիտոյ բը-
ժիշկ ողջոց, այլ հիւանդաց, և ոչ եկի կոչել զար-
18 դարս՝ այլ զմեղաւորս։ Եւ էին աշակերտքն Յով-
հաննու՝ և ‡ փարիսեցիքն ՚ի պահս. գան և ասեն
ցնա. Ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու՝ և ‡ փարի-
19 սեցիքն պահեն, և քո աշակերտքդ ոչ պահեն։ Եւ
ասէ ցնոսա Յիսուս. Միթէ մա՞րթ ինչ իցէ որդւոց
առագաստի մինչ ընդ նոսա իցէ փեսայն՝ պահել.
ցորքան ընդ իւրեանս ունիցին զփեսայն, ոչ է մարթ
20 պահել։ Այլ եկեսցեն աւուրք՝ յորժամ վերասցի
՚ի նոցանէ փեսայն, և ապա պահեսցեն յաւուրն յայն-
21 միկ։ Ո՛չ ոք կապերտ նոր անթափ արկանէ ՚ի վե-
րայ հնացեալ ձորձոյ. ապա թէ ոչ՝ առնու լրու-

---

* ՚Ի Յոյնն, և մեղաւորք † ՚Ի Յոյնն, ուտէ և ըմպէ
‡ ՚Ի Յոյնն, փարիսեցւոցն

թեւամբն իւրով նորն ՚ի հնոյ անտի, եւ չար եւս
22 պատառումն լինի։ Եւ ո՛չ ոք արկանէ գինի նոր ՚ի
տիկս հինս. ապա թէ ո՛չ՝ պայթուցանէ գինին
զտիկսն. գինին հեղու, եւ տիկքն կորնչին, այլ գի-
նի նոր ՚ի տիկս նորս արկանելի է։
23 Եւ եղեւ նմա ՚ի շաբաթու անցանել ընդ արտո-
րայս. եւ աշակերտքն ՚ի գնալն իւրեանց՝ սկսան
24 հասկ կորզել* եւ ուտել"։ Եւ փարիսեցիքն ասեն
ցնա. Տե՛ս՝ զի՞նչ գործեն * աշակերտքն քո" ՚ի
25 շաբաթու՝ զոր չէ՛ արժան։ Եւ ասէ ցնոսա Յիսուս.
Ո՞չ երբէք իցէ ընթերցեալ ձեր՝ զոր արարն Դա-
ւիթ, յորժամ պիտոյն եղեւ՝ եւ քաղցեաւ նա եւ որ
26 ընդ նմայն էին։ Զիա՞րդ եմուտ ՚ի տունն Աստու-
ծոյ առ Աբիաթարաւ քահանայապետիւ, եւ զհաց-
սըն զառաջաւորութեան եկեր եւ ետ այնոցիկ որ
ընդ նմայն էին, զոր ո՛չ էր օրէն ուտել, բայց
27 միայն քահանայիցն։ Եւ ասէ ցնոսա. Շաբաթ վասն
28 մարդոյ եղեւ, եւ ո՛չ եթէ մարդ վասն շաբաթու։ Ա-
պա ուրեմն՝ տէր է Որդի մարդոյ եւ շաբաթու։

## ԳԼ. Գ

1 Եւ եմուտ միւսանգամ ՚ի ժողովուրդն, եւ էր անդ
2 այր մի՝ որոյ ձեռն իւր գօսացեալ էր։ Եւ սպա-
սէին նմա եթէ բժշկիցէ զնա ՚ի շաբաթուն՝ զի
3 չարախօսեսցեն զնմանէ։ Եւ ասէ ցայրն՝ որոյ ձեռն
4 գօսացեալ էր. Արի՛, անց ՚ի մէջ։ Եւ ասէ ցնո-

* ՚Ի Յոյնն չէ։

սա. Ոչինչ արժան է ՚ի շաբաթու, բարի՞ ինչ
գործել՝ եթէ չար առնել, ոգի մի ապրեցուցանել
5 եթէ կորուսանել. եւ նոքա լռեցին։ Եւ հայեցեալ
Յիսուսի զնոքօք լի ցասմամբ, տրտմեալ վասն
կուրութեան սրտից նոցա՝ ասէ ցայրն. Ձգեա՛
զձեռն քո. եւ նա ձգեաց, եւ ողջացաւ ձեռն նորա։
6 Եւ ելեալ արտաքս վաղվաղակի փարիսեցիքն
Հերովդիանոսօքն հանդերձ, խորհուրդ առնէին
7 վասն նորա՝ թէ զիա՞րդ կորուսցեն զնա։ Եւ Յի-
սուս աշակերտօքն իւրովք գնաց ՚ի ծովեզրն. եւ
բազում ժողովուրդ ՚ի Գալիլեացւոց երթային
8 զհետ նորա. եւ ՚ի Հրէաստանէ, Եւ յԵրուսա-
ղէմէ*, եւ յայնկոյս Յորդանանու, եւ որք ՚ի Տիւ-
րոսէ եւ ՚ի Սիդոնէ, բազում ժողովուրդ իբրեւ լու-
9 եալ զորչափ ինչ առնէր, գային առ նա։ Եւ ա-
սէ ցաշակերտսն իւր, զի նաւակ մի պատրաստա-
կան կայցէ նմա վասն ամբոխին՝ զի մի՛ նեղեսցեն
10 զնա։ Բազումս զի բժշկեաց. մինչ գալ
խռնել զնովաւ՝ զի մերձեսցին առ նա, որք ունէին
11 ախտս ինչ։ Եւ այսք պիղծք յորժամ տեսանէին
զնա, անկանէին առաջի նորա, աղաղակէին եւ ա-
12 սէին. Թէ Դու ես Որդին Աստուծոյ. եւ նա յոյժ
սաստէր նոցա, զի մի՛ յայտնի առնիցեն զնա։
13 Ելանէ ՚ի լեառն՝ եւ կոչէ առ ինքն զորս ինքն
14 կամեցաւ, եւ չոգան առ նա։ Եւ արար երկոտա-
սանս՝ զի իցեն զնովաւ, եւ զի առաքեսցէ զնոսա
15 քարոզել. Եւ ունել իշխանութիւն բժշկելոյ զցաւս՝

* ՚Ի Յոյնն, եւ յԵդովմայ

16 և հանելոյ զդևս։ Եւ եդ անուն Սիմոնի՝ Պետրոս.
17 Եւ Յակովբու Զեբեդեայ՝ և Յովհաննու եղբօրն
Յակովբայ, եդ նոցա անուանս Բաներեգէս, որ
18 է՝ Որդիք որոտման. Եւ զԱնդրէաս, և զՓիլիպ-
պոս, և զԲարթուղիմէոս, և զՄատթէոս զմաք-
սաւորն, և զԹովմաս, և զՅակովբոս Ալփեայ, և
19 զԹադէոս, և զՍիմովն Կանանացի. Եւ զՅուդա
Իսկարիովտացի, որ և մատնեացն զնա։
20 Գան ՚ի տուն և գայ միւսանգամ ընդ նոսա
ժողովուրդն. մինչ զի և հաց ևս ոչ ժամանել ու-
21 տել նոցա։ Եւ իբրև լուան որ իւրքն էին՝ ելին
ունել զնա. զի համարէին թէ մոլեգնեալ իցէ։
22 Եւ դպիրքն՝ որ յԵրուսաղէմէ իջեալ էին, ասէին
թէ Բէեղզեբուղ գոյ ՚ի դմա, և իշխանաւ դիւացն
23 հանէ դա զդևս։ Եւ կոչեցեալ զնոսա առ ինքն,
առակօք խօսէր ընդ նոսա. Զիարդ կարէ Սա-
24 տանայ զՍատանայ հանել։ Եւ արդ եթէ թա-
գաւորութիւն յանձն իւր բաժանեսցի, ոչ կարէ
25 կալ թագաւորութիւնն այն։ Եւ եթէ տուն յանձն
26 իւր բաժանեսցի, ոչ կարէ կալ տունն։ Եւ եթէ
Սատանայ ՚ի վերայ անձին իւրոյ յարեաւ և բա-
ժանեալ է, ոչ կարէ կալ. այլ վախճանեալ է։
27 Այլ ոչ ոք կարէ զկարասի հզօրի մտեալ ՚ի տուն
նորա՝ աւար հարկանել, եթէ ոչ նախ զհզօրն կա-
պիցէ, և ապա զտուն նորա աւար հարկանիցէ։
28 Ամէն ասեմ ձեզ. զի Ամենայն թողցի որդւոց
մարդկան մեղք և հայհոյութիւնք՝ որչափ և հայ-
29 հոյիցեն. Բայց որ հայհոյեսցէ զՀոգին Սուրբ, ոչ
ունիցի թողութիւն յաւիտեան. այլ պարտապան

30 լիցի յաւիտենից մեղաց. Զի ասէին, թէ Այս
պիղծ գոյ 'ի նմա:
31 Գան եղբարքն և մայր նորա, և արտաքոյ կա-
32 ցեալ՝ յղեցին և կոչէին զնա: Եւ անդ ժողովուրդն
շուրջ զնովաւ նստէր. և իբրև ասացին ցնա, Ա-
հաւասիկ մայր քո և եղբարք քո կան արտաքոյ, և
33 խնդրեն զքեզ, Պատասխանի ետ նոցա և ասէ. Ո՞վ
34 է իմ մայր, կամ եղբարք: Հայեցաւ շուրջ զիւրև
յաշակերտսն զի նստէին, և ասէ. Ահաւասիկ
33 մայր իմ և եղբարք իմ. Զի որ առնիցէ զկամս
Աստուծոյ, նա է իմ եղբայր և քոյր և մայր:

## ԳԼ. Դ

1 Դարձեալ սկսաւ ուսուցանել առ ծովեզերբն.
և խռնեցան զնովաւ ժողովուրդք բազումք, մինչև
'ի նաւ մտանել նմա, և նստել 'ի ծովուն. և ամե-
2 նայն ժողովուրդն զծովեզերբն զցամաքն ունէին: Եւ
ուսուցանէր զնոսա առակօք բազում ինչ. և ասէր
3 նոցա 'ի վարդապետութեան իւրում: Լուարուք.
4 ահաւասիկ ել սերմանօղ սերմանել: Եւ եղև 'ի սեր-
մանելն, ոմն անկաւ առ ճանապարհաւ և եկն թռ-
5 չունս և եկեր զնա: Եւ այլն անկաւ յապառաժի,
ուր ո՛չ գոյր հող բազում. և վաղվաղակի բու-
6 սաւ. քանզի ո՛չ գոյր հիւթ երկրին. Եւ յորժամ
ծագեաց արև՝ ջեռաւ, և զի ո՛չ գոյին արմատք՝
7 ցամաքեցաւ: Եւ այլն անկաւ 'ի մէջ փշոց. ելին
8 փուշքն և հեղձուցին զնա. և պտուղ ո՛չ ետ: Եւ
այլն անկաւ յերկիր բարւոք. և ելեալ աճեցեալ

տայր պտուղ, և բերէր ընդ միոյ երեսուն և ընդ
9 միոյ վաթսուն և ընդ միոյ հարիւր ։ Եւ ասէր ․ Որ
ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։
10 Եւ իբրև եղև առանձինն՝, հարցին ցնա որ
զնովաւն էին աշակերտօքն հանդերձ՝ զառակսն ։
11 Եւ ասէ ցնոսա ․ Ձեզ տուեալ է գիտել զխոր~
հուրդս արքայութեան Աստուծոյ, բայց նոցա
որ արտաքինքն են՝ ամենայն ինչ առակօք լի~
12 նի ․ Զի տեսանելով տեսցեն և մի տեսցեն
և լսելով լուիցեն և մի՛ իմասցին ․ զի մի եր~
13 բէք դարձցին՝ և թողցի նոցա ։ Եւ ասէ ցնոսա ․
Ո՛չ գիտէք զառակս զայս, և զիա՞րդ զամենայն ա~
14 ռակսն գիտիցէք ։ Որ սերմանէն՝ զբանն սերմանէ ։
15 Եւ նոքա են որ առ ճանապարհաւն, ուր բանն սեր~
մանի ․ և յորժամ լսեն զնա, գայ Սատանայ և
16 հանէ զբանն սերմանեալ ՚ի սիրտս նոցա ։ Եւ նո~
քա են որ յապառաժին սերմանեցան ․ որք յոր~
ժամ լսիցեն զբանն, վաղվաղակի խնդութեամբ
17 ընդունին ․ Եւ զի ո՛չ ունին արմատս յանձինս, այլ
առ ժամանակ մի են ․ ապա ՚ի հասանել նեղու~
թեան կամ հալածման վասն բանին, վաղվաղակի
18 գայթագղին ։ Իսկ որ ՚ի մէջ փշոցն սերմանեցան՝
19 նոքա են, որ իբրև զբանն լսեն, Եւ հոգք աշ~
խարհիս և պատրանք մեծութեան * մտանեն և
20 հեղձուցանեն զբանն՝ և անպտուղ լինի ։ Եւ նոքա
են որ յերկիրն բարւոք սերմանեցան, որք լսեն
զբանն՝ և ընդունին և տան պտուղ՝ ընդ միոյ երե~

* ՚Ի Յոյնն, և ցանկութիւն այլոց

սուն և ընդ միոյ վաթսուն և ընդ միոյ հարիւր :
21 Եւ ասէ ցնոսա . Միթէ գա՞յ ճրագ , զի ընդ
գրուանաւ դնիցի , կամ ընդ մահճօք . ո՞չ ապաքէն
22 'ի վերայ աշտանակի դնիցի : Զի չէ ինչ 'ի ծա-
ծուկ որ թէ ոչ յայտնեսցի . և ոչ եղև ինչ գաղտ-
23 նի , եթէ ոչ 'ի յայտ գայցէ : Եթէ ոք ունիցի
24 ականջս լսելոյ , լուիցէ : Եւ ասէ ցնոսա . Տեսէք
զինչ լսէքդ , և յաւելցի ձեզ որոց լսէքդ : Որով
25 չափով չափէք՝ նովին չափեսցի ձեզ : Որ ոք ունի-
ցի՝ տացի նմա . և որ ոչն ունիցի և զոր ունիցին՝
բարձցի 'ի նմանէ :
26 Եւ ասէր . Այսպէս է արքայութիւն Աստուծոյ .
որպէս զի այր մի արկանիցէ սերմանիս յերկիր .
27 Եւ ննջիցէ և յառնիցէ զցայգ և զցերեկ , և սեր-
մանիքն բուսանիցեն և աճիցեն . և նա ո՛չ գիտէ՝
28 Թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ . նախ զխոտն
և ապա զհասկն , ապա զցորեանն ատոք 'ի հաս-
29 կին : Այլ յորժամ տայցէ զպտուղն , վաղվաղակի
30 առաքի մանգաղ . զի հասեալ են հունձք : Եւ ա-
սէր . Ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստու-
31 ծոյ , կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա : Որ-
պէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկ-
րի , փոքրագոյն է քան զամենայն սերմանիս որ են
32 յերկրի . Եւ յորժամ սերմանիցի , բուսանի և լի-
նի մեծ քան զամենայն բանջար , և արձակէ ոստս
մեծամեծս , մինչև բաւական լինել ընդ հովանեաւ
33 նորա թռչնոց երկնից բնակել : Եւ այնպիսի առա-
կօք խօսէր ընդ նոսա զբանն , որպէս կարող լի-
34 նէին լսել . Եւ առանց առակի ոչինչ խօսէր ընդ

նոսա, ՛բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկ-
նէր զամենայն ։
35 Եւ ասէ ցնոսա յաւուրն յայնմիկ՝ իբրեւ ընդ ե-
36 րեկս լինէր. Եկա՛յք անցցուք յայն կողմն ։ Թո-
ղուն զժողովուրդն, եւ առնուն զնա նաւաւն հան-
37 դերձ,- եւ զայլ եւս նաւսն որ էին ընդ նմա ։ Եւ
լինէր մրրիկ մեծ հողմոյ, եւ զալիսն ՚ի նաւն զե-
38 ղոյր, մինչ գրեթէ լի իսկ լինել ։ Եւ ինքն ննջ-
ջէր ՚ի խելս նաւին ՚ի վերայ բարձի. զարթուցա-
նէին զնա եւ ասէին. Վարդապետ ո՛չինչ է քեզ
39 փոյթ, զի կորնչիմք աւասիկ ։ Եւ զարթուցեալ
սաստեաց հողմոյն եւ ծովուն, ասէ. Դադարեա՛
կարկեա՛ց, եւ դադարեաց հողմն, եւ եղեւ խաղա-
40 ղութիւն մեծ ։ Եւ ասէ ցնոսա. Ընդէ՞ր այդպէս
վատասիրտք էք, չեւ եւ՞ս ունիք հաւատս. եւ երկ-
եան երկիւղ մեծ, եւ ասէին ցմիմեանս. Ո՛ ոք
արդեօք իցէ սա, զի եւ հողմ եւ ծով հնազան-
դին նմա ։

# ԳԼ. Ե

1 Եւ եկն յայնկոյս ծովուն յաշխարհն Գերգե-
2 սացւոց ։ Եւ ընդ ելանելն նորա ՚ի նաւէ անտի,
պատահեաց նմա այր մի ՚ի գերեզմանացն՝ զոր ու-
3 նէր այս պիղծ. Որոյ եւ բնակութիւն իւր իսկ ՚ի
գերեզմանս էր. եւ ո՛չ շղթայիւք ոք եւս կարէր
4 կապել զնա, Վասն բազում անգամ ոտնակապօք
եւ շղթայիւք կապելոյ, եւ խզելոյ ՚ի նմանէ զշղղ-
թայսն, եւ զոտնակապսն խորտակելոյ. եւ ոչ ո՛ք

5 կարէր պարտել զնա․ Քանզի հանապազ զցայգ
և զցերեկ ՚ի գերեզմանս և ՚ի լերինս աղաղակէր,
6 և կոծէր զանձն իւր քարամբք։ Իբրև ետես զՅի-
սուս ՚ի հեռաստանէ, ընթացաւ և երկիրպագ
7 նմա։ Աղաղակեաց ՚ի ձայն մեծ՝ և ասէ, Զի՞ կայ
իմ և քո Յիսուս Որդի Աստուծոյ բարձրելոյ․
երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած, մի՛ տանջեր
8 զիս։ Քանզի ասէր ցնա․ Ե՛լ այսդ պիղծ ՚ի մար-
9 դոյ այտի։ Եւ հարցանէր ցնա՝ թէ Զի՞նչ ա-
նուն է քո․ և ասէ ցնա․ Լեգէոն անուն է իմ,
10 քանզի բազումք եմք։ Եւ աղաչէին զնա յոյժ,
զի մի՛ առաքեսցէ զնոսա արտաքս քան զաշխարհն։
11 Եւ անդ էր առ լերամբն երամակ մի խոզաց արօ-
12 տական մեծ։ Աղաչեցին զնա ամենայն դևքն և ա-
սեն, Առաքեա զմեզ ՚ի խոզսն, զի մտցուք ՚ի նո-
13 սա։ Եւ հրամայեաց նոցա․ և իբրև ելին այսքն
պիղծք՝ մտին ՚ի խոզսն, և դիմեաց երամակն ՚ի
դարէ անտի ՚ի ծովն․ էին իբրև երկու հազարք, և
14 հեղձնուին ՚ի ծովուն։ Եւ խոզարածքն փախեան․
և պատմեցին ՚ի քաղաքի և յագարակս, և ելին
15 տեսանել զինչ իցէ որ գործեցաւն։ Գան առ Յի-
սուս, և տեսանեն զդիւահարն զի նստէր զգեցեալ
և զգաստացեալ, որ ունէր զլէգէոնն և զահի հա-
16 րան։ Եւ պատմեցին նոցա որոց տեսեալն էր, թէ
17 զինչ եղև այսահարին, և զինչ վասն խոզիցն։ Եւ
18 սկսան աղաչել զնա գնալ ՚ի սահմանաց նոցա։ Եւ
իբրև եմուտ նա ՚ի նաւն, աղաչէր զնա դիւահարն՝,
19 զի ընդ նմա իցէ․ Եւ Յիսուս ո՛չ ետ նմա թոյլ,
այլ ասէ ցնա․ Ե՛րթ ՚ի տուն քո առ ընտանիս

քո, և պատմեա նոցա որ ինչ միանգամ Տէր ա-
20 րար քեզ և ողորմեցաւ քեզ։ Եւ չոքաւ՝ և սկսաւ
քարոզել 'ի Դեկապօլին, զոր ինչ արար նմա Յի-
սուս, և ամենեքին զարմանային։
21 Եւ իբրև անց Յիսուս միւսանգամ յայն կողմն՝
ժողովեցաւ առ նա ժողովուրդ բազում, և էր առ
22 ծովեզերբն։ Եւ ահա մի 'ի ժողովրդապետացն
գայր, որում անուն էր Յայրոս. և իբրև ետես
23 զնա անկաւ առ ոտս նորա. Աղաչէր զնա յոյժ և
ասէր, թէ Դուստր նորա մերձ է 'ի մահ, զի եկ-
եալ դնիցէ նմա ձեռն, որպէս զի ապրեսցի և
24 կեցցէ։ Եւ գնաց ընդ նմա. երթայր և ժողովուրդ
25 բազում զհետ նորա, և նեղէին զնա։ Եւ կին մի
էր 'ի տեռատեսութեան արեան զերկոտասան ամ.
26 Եւ յոյժ վշտացեալ 'ի բազում բժշկաց, և ծախ-
եալ զինչս իւր զամենայն և չէր ինչ օգտեալ, այլ
27 ևս առաւել զայրացեալ։ Իբրև լուաւ զՅիսուսէ՝
եկն 'ի մէջ ամբոխին յետոյ և բուռն եհար զհան-
28 դերձէ նորա. Քանզի խորհէր 'ի միտ, թէ միայն
29 մերձեցայց 'ի հանդերձս նորա՝ փրկեցայց։ Եւ
վաղվաղակի ցամաքեցաւ աղբիւր արեան նորա. և
գիտաց 'ի մարմին իւր թէ բժշկեցաւ 'ի տանջա-
30 նացն։ Եւ անդէն վաղվաղակի գիտաց Յիսուս
յանձն իւր զզօրութիւնն որ ել 'ի նմանէ, դար-
ձաւ յամբոխն և ասէ. Ո՞վ մերձեցաւ 'ի հան-
31 դերձս իմ։ Եւ ասեն ցնա աշակերտքն. Տեսանես
զի ամբոխդ նեղէ զքեզ, և ասես թէ Ո՞վ մեր-
32 ձեցաւ 'ի հանդերձս իմ։ Եւ շուրջ հայէր տեսա-
33 նել թէ ո՞վ զայն արար։ Եւ կինն զարհուրեալ և

դողացեալ* վասն որոյ գաղտն արար"։ քանզի գի-
տէր զի՞նչ եղև նմա, եկն անկաւ առաջի նորա. և
34 ասաց զամենայն իրան ստուգութեամբ։ Եւ Յիսուս
ասէ ցնա. Դուստր հաւատք քո կեցուցին զքեզ,
երթ ’ի խաղաղութիւն, և եղիջիր ողջ ’ի տանջա-
նաց քոց։
35 Մինչդեռ նա զայն խօսէր, գան ոմանք ’ի տանէ ժո-
ղովրդապետին՝ և ասեն. Թէ Դուստրն քո մեռաւ,
36 զի՞ ևս աշխատ առնես զվարդապետդ։ Իսկ Յիսուս
իբրև լուաւ զբանն ասացեալ, ասէ ցժողովրդապետն։
37 Մի՛ երկնչիր, բայց միայն հաւատա։ Եւ ոչ զո՛ք
եթող ընդ իւր երթալ, բայց միայն զՊետրոս և
զՅակոբոս և զՅովհաննէս զեղբայրն Յակոբայ։
38 Գայ ’ի տուն ժողովրդապետին, և տեսանէ ամբոխ
39 յոյժ և լալականս, և աղաղակ յոյժ։ Եւ մտեալ ’ի
ներքս՝ ասէ ցնոսա. Զի՞ խռովեալ էք և լայք, մա-
40 նուկն ո՛չ է մեռեալ, այլ ննջէ։ Եւ ծաղր առնէին
զնա. և նորա հանեալ արտաքս զամենեսեան, առ-
նու ընդ իւր զհայր մանկանն և զմայր, և զնոսա որ
41 ընդ նմայն էին, և մտանէ ուր դնէր մանուկն։ Եւ
կալեալ զձեռանէ մանկանն, ասէ ցնա. Տալիթա
կումի, որ թարգմանի, Աղջիկ դու քե՛զ ասեմ՝ արի։
42 Եւ վաղվաղակի յարեաւ աղջիկն և գնայր, քանզի
էր ամաց իբրև երկոտասանից. և զարմացան մեծաւ
43 զարմանալեօք։ Եւ պատուէր տայր նոցա յոյժ, զի
մի՛ ոք գիտասցէ զայն. և ասաց տալ նմա ուտել։

---

* ’Ի Յոյնն չէ։

# ԳԼ. Զ

1 Եւ ել անտի եկն 'ի գաւառ իւր. և երթային
2 զհետ նորա աշակերտքն իւր։ Եւ եղև 'ի շաբաթուն՝
սկսաւ ուսուցանել 'ի ժողովրդեանն. և բազումք իբրև
լսէին՝ զարմանային* ընդ վարդապետութիւն նորա,"
և ասէին. Ուստի՞ է սմա այս, կամ զի՞նչ է իմաս-
տութիւնս որ տուեալ է սմա, զի զօրութիւնք այս-
3 պիսիք 'ի ձեռաց սորա լինին։ Ո՞չ սա է† մանուկ
հիւսանն", և որդին Մարեմայ, եղբայր Յակոբայ
և Յովսեայ և Յուդայի և Սիմոնի, և չիցե՞ն քորք
4 դորա աստ առ մեզ. և գայթագղէին 'ի նա։ Եւ ա-
սէ ցնոսա. Ո՛չ է մարգարէ անարգ, բայց եթէ 'ի
գաւառի իւրում և յազգատոհմի և 'ի տան իւրում։
5 Եւ ոչ կարէր անդ և ո՛չ մի ինչ զօրութիւն առնել,
բայց սակաւ հիւանդաց ձեռն եդեալ բժշկէր զնոսա։
6 Եւ զարմանայր վասն անհաւատութեան նոցա։
7 Եւ շրջէր շուրջ զգաւառօքն, և ուսուցանէր։ Եւ
կոչեաց առ ինքն զերկոտասանսն, և սկսաւ առաքել
զնոսա երկուս երկուս, և տայր նոցա իշխանութիւն
8 'ի վերայ այսոց պղծոց։ Եւ պատուիրեաց նոցա զի
մի՛ ինչ բարձցեն 'ի ճանապարհ, բայց միայն գաւա-
9 զան. մի՛ պարկ, մի՛ հաց, մի՛ պղինձ 'ի գօտիս. Այլ
ագանել հողաթափս, և մի՛ զգենուցուք, ասէ, եր-
10 կուս պարեգօտս։ Եւ ասէր ցնոսա. Յոր տուն մտա-
նիցէք, անդէն օթևանս կալջիք մինչև ելանիցէք
11 անտի։ Եւ որ ո՛չ ընկալցին զձեզ, և ո՛չ լուիցեն

---

* Ի Յոյնն չէ։ † Ի Յոյնն, հիւսն

ել. յորժամ ելանիցէք անտի՝ թօթափեսջի՛ք զփո-
12 շի ոտից ձերոց 'ի վկայութիւն նոցա։ Եւ ելեալ քա-
13 րոզէին զի ապաշխարեսցեն։ Եւ դևս բազումս հա-
նէին. և օծանէին իւղով զբազումս հիւանդս և
բժշկէին զնոսա։
14 Եւ լուաւ արքայ Հերովդէս, քանզի յայտնի եղև
անուն նորա, և ասէր. թէ Յովհաննէս մկրտիչ
յարեաւ 'ի մեռելոց, և վասն այնորիկ զօրութիւնք
15 լինին նովաւ։ Այլք ասէին թէ Եղիա է, իսկ այլքն
թէ Մարգարէ է, կամ թէ իբրև զմի 'ի մարգա-
16 րէից։ Իբրև լուաւ Հերովդէս, ասէ. Զորոյ ես
զգլուխն հատի զՅովհաննու, սա է նա, յարեաւ
17 'ի մեռելոց։ Զի ինքն Հերովդէս առաքեաց կալաւ
զՅովհաննէս, և կապեաց զնա և եդ 'ի բանտի
վասն Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի եղբօր նորա,
18 զի նա կին արար զնա։ Քանզի ասէր Յովհաննէս
ցՀերովդէս, թէ Ո՛չ է օրէն քեզ ունել զկին եղբօր
19 քո։ Եւ Հերովդիա ոխացեալ էր ընդ նմա, և
20 կամէր սպանանել զնա, և ո՛չ կարէր։ Զի Հե-
րովդէս երկնչէր 'ի Յովհաննէ. քանզի գիտէր
զնա այր արդար և սուրբ, և պահէր զնա. և
լուեալ 'ի նմանէ բազում ինչ առնէր, և քաղցրու-
21 թեամբ լսէր նմա։ Իբրև օր մի լինէր պարապոյ,
յորժամ ընթրիս տայր Հերովդէս յաւուր ծննդոց
իւրոց՝ նախարարաց իւրոց և հազարապետաց և մե-
22 ծամեծաց Գալիլեացւոց. Եւ 'ի մտանել դստերն
Հերովդիայ և 'ի կաքաւել, հաճոյ եղև Հերովդի և
բազմականացն։ Ասէ թագաւորն ցաղջիկն. Խնդրեա
23 յինէն զոր ինչ կամիս, և տաց քեզ։ Եւ երդուաւ

նմա բազում անգամ, թէ Զոր ինչ և խնդրեսցես
դու յինէն տաց քեզ, մինչև ցկէս թագաւորութեան
24 իմոյ ։ Նա ելեալ ասէ ցմայր իւր. Զի՞նչ խնդ-
րեցից. և նա ասէ, Զգլուխն Յովհաննու մկրտչի ։
25 Եւ մտեալ անդրէն փութանակի առ թագաւորն՝
ասէ. Կամիմ զի այժմ տացես ինձ վաղվաղակի ՚ի
26 վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու մկրտչի ։ Եւ
տրտմեցաւ յոյժ թագաւորն. այլ վասն երդմանցն
27 և կոչնականացն, ո՛չ կամեցաւ անարգել զնա. Եւ
առաքեաց վաղվաղակի թագաւորն դահիճ, և հրա-
մայեաց բերել զգլուխն նորա. և չոքաւ գլխատեաց
28 զնա ՚ի բանտին, Եւ եբեր զգլուխն նորա սկտեղբ՝
և ետ ցաղջիկն, և աղջիկն տարաւ ետ մօր իւրում ։
29 Իբրև լուան աշակերտքն նորա, եկին բարձին զմար-
մինն և եդին ՚ի գերեզմանի ։
30 Ժողովեցան առաքեալքն առ Յիսուս, և պատ-
մեցին նմա զամենայն ինչ զոր արարին և զոր ու-
31 սուցին ։ Եւ ասէ ցնոսա Յիսուս. Եկա՛յք դուք
առանձինն յանապատ տեղի, և հանգիջիք սակաւ
մի. զի էին բազումք որ երթային և գային, և հաց
32 անգամ չժամանէին ուտել ։ Եւ գնացին նաւու յա-
33 նապատ տեղի առանձինն ։ Եւ տեսին զնոսա զի եր-
թային, և զգացին բազումք. և հետի յամենայն
քաղաքաց խուռն ընթանային անդր, և մերձենային
34 առ նոսա. Եւ ելեալ ետես ամբոխ բազում, և
գթացաւ ՚ի նոսա, զի էին իբրև ոչխարք՝ որոց ո՛չ
35 իցէ հովիւ. և սկսաւ ուսուցանել զնոսա յոյժ ։ Եւ
իբրև բազում ժամ եղև, մատուցեալ աշակերտքն
ասէին. Տեղիս անապատ է, մինչդեռ աւուր կայ,

36 Արձակեա՛ զժողովուրդդ, զի երթեալ շուրջ
յագարակս և 'ի գեօղս՝ գնեսցեն իւրեանց զինչ
37 ուտիցեն, զի աստ ուտել ինչ ո՛չ ունին: Նա
պատասխանի ետ և ասէ ցնոսա. Տո՛ւք տուք դո-
ցա ուտել. ասեն ցնա. Երթիցուք գնեսցուք
երկերիւր դահեկանի հաց, և տացուք դոցա ու-
38 տել: Ասէ ցնոսա. Քանի՞ նկանակ ունիք՝ երթա՛յք
տեսէ՛ք. իբրև գիտացին, ասեն ցնա. Հի՛նգ՝ և
39 երկուս ձկունս: Եւ հրամայեաց նոցա բազմել երա-
40 խանս երախանս 'ի վերայ դալար խոտոյ: Եւ բազ-
41 մեցան դասք դասք՝ ուր հարիւր և ուր յիսուն: Եւ
առեալ զհինգ նկանակն և զերկուս ձկունսն, հա-
յեցաւ յերկինս, օրհնեաց՝ մանրեաց զնկանակսն
և ետ ցաշակերտսն զի արկցեն նոցա, և զերկուս
42 ձկունսն բաշխեաց ամենեցուն: Կերան և յագե-
43 ցան. Եւ բարձին զնշխարսն երկոտասան սակառի լի,
44 և 'ի ձկանց անտի: Եւ էին որ կերանն՝ իբրև արք
հինգ հազար.

45 Եւ նոյն ժամայն ճեպեաց զաշակերտսն մտանել
'ի նաւ, և յառաջագոյն քան զնա երթալ յայնկոյս
'ի Բեթսայիդա, մինչ ինքն զժողովուրդսն արձակի-
46 ցէ: Եւ հրաժարեալ 'ի նոցանէ ել 'ի լեառն կալ
47 յաղօթս: Եւ իբրև երեկոյ եղև, էր նաւն 'ի մէջ
48 ծովուն, և ինքն 'ի ցամաքի: Եւ ետես զնոսա հող-
մակոծեալս 'ի վարելն, զի էր հողմն ընդդէմ նոցա.
և զչորրորդ պահու գիշերոյն գայ առ նոսա գնա-
լով 'ի վերայ ծովուն. և կամէր զանց առնել առ
49 նոքօք: Նոքա իբրև տեսին զի գնայր 'ի վերայ ծո-
վուն, համարեցան թէ առաչօք ինչ լինիցի, և զա-

50 ղաղակ բարձին ։ Քանզի ամենեքեան տեսին զնա՝ և
խռովեցան ․ և նա անդէն վաղվաղակի խօսեցաւ ընդ
նոսա և ասէ ․ Քաջալերացարո՛ւք , ես եմ՝ մի՛ եր֊
51 կնչիք ։ Եւ ել ՚ի նաւն առ նոսա , և դադարեաց
հողմն ։ Եւ առաւել ևս յիմարեալ էին ՚ի միտս
52 իւրեանց , և զարմանային յոյժ ։ Քանզի և ՚ի վե֊
րայ հացին ոչ իմացան , զի էր սիրտ նոցա թմբ֊
53 րեալ ։ Եւ իբրև անցին յայնկոյս , եկին յերկիրն
54 Գեննեսարէթ * ։ Եւ իբրև ելին ՚ի նաւէ անտի ,
իսկ և իսկ ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ ։
55 Եւ ընթացեալ այսր անդր ընդ ամենայն գաւառն ,
սկսան մահճօք բերել զհիւանդս , ուր լսէին թէ
56 անդ իցէ ։ Եւ ուր և մտանէր ՚ի գեօղս կամ ՚ի քա֊
ղաքս կամ յագարակս , ՚ի հրապարակս դնէին զախ֊
տաժետս , և աղաչէին զնա ․ զի գոնէ ՚ի քղանցս
հանդերձից նորա մերձենայցեն ․ և որ միանգամ
մերձեցանն՝ փրկեցան ։

## ԳԼ. Է.

1 Եւ ժողովեցան առ նա փարիսեցիքն և ոմանք ՚ի
2 դպրացն՝ որ եկեալ էին յԵրուսաղեմէ ։ Եւ տե֊
սեալ զոմանս յաշակերտացն անտի , զի խառնակ ձե֊
ռօք , այսինքն է , անլուայ ուտէին հաց , բամբա֊
3 սեցին ․ Զի փարիսեցիքն և ամենայն Հրէայք՝ եթէ
ոչ բռնալիր լուանան զձեռս , հաց ո՛չ ուտեն ․ քան֊
4 զի ունին զաւանդութիւն ծերոցն ․ Եւ ՚ի հրապա֊

* ՚Ի Յոյնն , և հանին զնաւն ՚ի ցամաք

րակէ մտեալ՝ եթէ ոչ նախ մկրտիցին, ոչ ուտեն·
և այլ ինչ բազում է՝ զոր ընկալան ունել, մկրտու-
թիւնս բաժակաց և ստամանաց և պղնձեաց և մահ-
5 ճաց։ Ապա հարցանեն զնա փարիսեցիքն և դպիրքն՝
թէ Ընդէ՞ր աշակերտքն քո ոչ գնան ըստ աւան-
դութեան ծերոցն; այլ խառնակ ձեռօք հաց ուտեն։
6 Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա· Թէ Բարւոք
մարգարէացաւ Եսայի վասն ձեր կեղծաւորաց, որ-
պէս ասաց· Ժողովուրդս այս շրթամբք մեծարէ զիս,
և սիրտք նոցա հեռացեալ ՚ի բացեայ են յինէն։
7 Զուր պաշտեն զիս· ուսուցանեն վարդապետու-
8 թիւնս զմարդկան պատուիրեալս։ Թողեալ զպատ-
ուիրանն Աստուծոյ, ունիք զմարդկան աւանդութիւն,
մկրտութիւնս ստամանաց և բաժակաց, և այլոց նը-
9 մանեաց սոցին առնէք բազումս։ Եւ ասէ ցնոսա·
Բարւոք խոտէք զպատուիրան Աստուծոյ, զի զձեր
10 աւանդութիւնն հաստատիցէք։ Զի Մովսէս ասէ·
Պատուեա՛ զհայր քո և զմայր· և որ չարախօսեսցէ
11 զհօրէ կամ զմօրէ, մահու վախճանեսցի։ Եւ դուք
ասէք· Եթէ ասիցէ ոք ցհայր կամ ցմայր կորբան,
12 որ է պատարագ, զոր յինէն օգտեսցիս· Եւ ոչ ևս
13 տայք թոյլ նմա առնել ինչ հօրն կամ մօր։ Եւ
անարգէք զբանն Աստուծոյ ձերով աւանդութեամբն,
զոր աւանդեցիք· և բազում ինչ այլ որ այսմ նը-
14 ման է առնէք։ Եւ կոչեալ առ ինքն զամենայն ժո-
ղովուրդն, ասէ ցնոսա· Լուարո՛ւք ինձ ամենեքեան
15 և ՚ի մի՛տ առէք։ Ոչինչ արտաքուստ ՚ի մարդ մըտ-
եալ՝ եթէ կարիցէ պղծել զնա, այլ որ ելանէ ՚ի
16 նմանէ այն է որ պղծէ զմարդն։ Որ ունիցի ականջս

լսելոյ՝ լուիցէ ։
17 Եւ իբրեւ եմուտ 'ի տուն յամբոխէ անտի, հար-
18 ցանէին զնա աշակերտքն վասն առակին ։ Եւ ասէ
ցնոսա ․ Այդպէս և դուք անմիտ էք ․ ո՛չ իմանայք
եթէ ամենայն որ արտաքուստ 'ի ներքս մտանէ 'ի
19 մարդ, ո՛չ կարէ զնա պղծել ․ Զի ո՛չ եթէ 'ի սիրտ
նորա մտանէ, այլ յորովայն՝ և արտաքս ելանէ ․ և
20 սրբէ զամենայն կերակուրն ։ Եւ ասէր, թէ Որ ինչ
21 'ի մարդոյն ելանէ՝ այն պղծէ զմարդ ։ Զի 'ի ներ-
քուստ 'ի սրտէ մարդկան խորհուրդք չարութեան
22 ելանեն ․ շնութիւնք, պոռնկութիւնք, Գողութիւնք,
սպանութիւնք, ագահութիւնք, չարութիւնք, նեն-
գութիւնք, գիջութիւնք, չարակնութիւն, հայհոյու-
23 թիւն, ամբարտաւանութիւն, անզգամութիւն ։ Այս
ամենայն չարիք 'ի ներքուստ ելանեն, և պղծեն
զմարդ ։

24 Եւ անտի յարուցեալ՝ եկն 'ի սահմանս Տիւրոսի
և Սիդովնի ․ և մտեալ 'ի տուն ո՛չ ումեք կամէր յայտ-
25 նել, և ո՛չ կարաց ծածկել ։ Լուաւ կին մի զնմանէ,
որոյ դուստր իւր ներեալ էր յայսոյ պղծոյ ․ եկն ան-
26 կաւ առաջի նորա ։ Եւ կինն էր հեթանոս՝ փիւնիկ
Ասորի յազգէ ․ և աղաչէր զնա՝ զի զդեւն հանցէ 'ի
27 դստերէ նորա ։ Եւ Յիսուս ասէ ցնա ․ Թո՛յլ տուր
նախ յագեսցին մանկունք, զի ո՛չ է բարւոք առնուլ
28 զհաց մանկանց և արկանել շանց ։ Նա պատասխա-
նի ետ և ասէ ․ Տէ՛ր՝ և շունք 'ի փշրանաց սեղանոյ
29 մանկանցն կերակրին ։ Եւ ասէ ցնա ․ Վասն այդր
30 բանի երթ, ել դեւն 'ի դստերէ քումմէ ։ Գնաց 'ի
տուն իւր, և եգիտ ելեալ զդեւն, և զդուստրն, զի

31 անկեալ դնէր 'ի մահիճս ։ Եւ ելեալ միւսանգամ
'ի սահմանացն Տիւրոսի և Սիդոնի, և եկն 'ի ծո-
վեզրն Գալիլեացւոց 'ի մէջ սահմանացն 'ի Դեկա-
32 պօլիս ։ Եւ բերին առաջի նորա խուլ մի և համր.
33 և աղաչէին զի ձեռն դիցէ 'ի վերայ նորա ։ Եւ առ-
եալ զնա մեկուսի յամբոխէ անտի, արկ զմատունս
իւր ընդ ականջս նորա և եթուք անդր. և կալաւ
34 զլեզուէ նորա, Հայեցաւ յերկինս յոգւոց եհան՝
35 և ասէ. Եփփաթայ՝ որ է բացիր ։ Եւ նոյն ժա-
մայն բացան լսելիք նորա, և լուծան կապանք լեզ-
36 ուի նորա, և խօսէր ուղիղ ։ Եւ պատուիրեաց նո-
ցա զի մի՛ ումեք ասիցեն. և որչափ նա պատուիրէր
37 նոցա, նքա ևս առաւել քարոզէին. Եւ ևս քան
զևս զարմանային և ասէին. Զամենայն ինչ բարւոք
գործեաց սա, զի խլից լսել տայ և համրոց խօսել ։

## ԳԼ. Ը

1 Յաւուրսն յայնոսիկ դարձեալ ժողովուրդ բազում
էր, և ինչ ո՛չ ունէին ուտել. կոչեաց զաշակերտսն
2 իւր՝ և ասէ ցնոսա ։ Գթամ ես 'ի վերայ ժողովըր-
դեանդ, զի արդ երեք աւուրք են՝ մինչ առ իս են,
3 և ո՛չ ունին զի՛նչ ուտիցեն ։ Եւ եթէ արձակեմ զդո-
սա նօթիս 'ի տունս իւրեանց՝ նքթիցեն 'ի ճանա-
պարհի. զի ոմանք 'ի դոցանէ 'ի հեռաստանէ եկ-
4 եալ են ։ Պատասխանի ետուն նմա աշակերտքն նո-
րա. Ուստի՞ կարես յագեցուցանել զդոսա հացիւ
5 յանապատի աստ ։ Եւ հարցանէր զնոսա. Քանի՞
6 նկանակ հաց ունիք. և նոքա ասեն Եօթն ։ Եւ

հրամայեաց ժողովրդեանն բազմել 'ի վերայ երկ-
րի. և առեալ զեօթն նկանակն՝ գոհացաւ՝ եբեկ և
տայր ցաշակերտսն զի արկցեն. և արկին առաջի
7 ժողովրդեանն։ Եւ ձկունս սակաւ ունէին. և զայն
8 ևս օրհնեաց, և հրամայեաց արկանել։ Կերան և
յագեցան. և բարձին զնշխարս կոտորոցն՝ եօթն
9 զամբիղ։ Եւ էին որ կերանն իբրև չորք հազարք.
և արձակեաց զնոսա։
10 Եւ նոյն ժամայն մտեալ 'ի նաւ հանդերձ աշա-
11 կերտօքն՝ եկն 'ի կողմանս Դաղմանունեայ։ Եկին
փարիսեցիքն և սկսան վիճել ընդ նմա, և խնդրէին
12 'ի նմանէ նշան յերկնից փորձելով զնա։ Եւ զայ-
րացաւ յոգի իւր՝ և ասէ. Զի՞ է զի ազգս այս նը-
շան խնդրէ. ամէն ասեմ ձեզ, թէ տացի նշան ազ-
13 գիս այսմիկ։ Եթող զնոսա. դարձեալ եմուտ 'ի
14 նաւ՝ և գնաց յայնկոյս։ Եւ մոռացան հաց բառնալ
բայց միայն մի նկանակ ունէին ընդ իւրեանս 'ի
15 նաւին։ Եւ պատուիրէր նոցա և ասէր. Զգոյշ ե-
ղերուք 'ի խմորոյ անտի փարիսեցւոց՝ և 'ի խմորոյ
16 հերովդիանոսաց։ Եւ խորհէին ընդ միմեանս և ա-
17 սէին, թէ Զի հաց ոչ ունիմք։ Գիտաց Յիսուս
և ասէ ցնոսա. Զի՞ խորհիք* 'ի սիրտս ձեր թե-
րահաւատք" թէ հաց ոչ ունիք. տակաւին ոչ իմա-
18 նայք և ոչ յիշէք. ապշութիւն ունի զսիրտս ձեր. Աչք
գոն և ոչ տեսանէք, ականջք են և ոչ լսէք, և*
19 ոչ իմանայք տակաւին", և ոչ յիշէք։ Յորժամ
զհինգ նկանակն 'ի հինգ հազարսն, և քանի՞ սակա-

---

* 'Ի Յոյնն չէ։

ռի լի բարձիք զկոտորոցն ։ և ասեն, Երկոտասան ։
20 Եւ յորժամ զեօթն նկանակն ՚ի չորս հազարսն,
քանի՞ զամբիղ լի բարձիք զկոտորոցն . և նոքա ա-
21 սեն, Եօթն ։ Եւ ասէ ցնոսա . Իսկ զիա՞րդ ոչ ի-
22 մանայք ։ Գան ՚ի Բեթսայիդա . և ածեն առաջի
նորա կոյր մի, և աղաչէին զնա՝ զի մերձեսցի ՚ի նա ։
23 Եւ առեալ զձեռանէ կուրին՝ եհան արտաքոյ շինին,
եթուք յաչս նորա, և ձեռն եդ ՚ի վերայ նորա . և
24 հարցանէր ցնա՝ թէ տեսանիցէ՞ ինչ ։ Հայեցաւ և ա-
սէր . Տեսանեմ զմարդիկ՝ զի շրջին իբրև զծառս ։
25 Դարձեալ եդ ձեռս ՚ի վերայ աչաց նորա եբաց, և
տեսանէր . ողջացաւ՝ և տեսանէր համարձակ զամե-
26 նայն ։ Արձակեաց զնա ՚ի տուն իւր՝ և ասէ . ՚Ի շէնդ
մի՛ մտանիցես,* այլ երթ ՚ի տուն քո . և յորժամ
՚ի շէնն մտանիցես՝ մի՛ ումեք ասիցես ՚ի շինին" ։
27 Եւ ել Յիսուս աշակերտօքն հանդերձ ՚ի շէնս
Կեսարեայ Փիլիպպեայ . և ՚ի ճանապարհին հարցա-
նէր ցաշակերտսն և ասէր . Զո՞ ասեն զի-
28 նէն մարդիկ թէ իցեմ ։ Նոքա ետուն պատասխանի
և ասեն . Զյովհաննէս մկրտիչ, և այլք Զեղիա,
29 և այլք Զմի ոք ՚ի մարգարէից անտի ։ Ասէ ցնոսա .
Իսկ դուք զո՞ ասեք զինէն թէ իցեմ . պա-
տասխանի ետ Պետրոս, և ասէ ցնա . Դու ես
30 Քրիստոսն ։ Եւ սաստեաց ՚ի նոսա՝ զի մի՛ ումեք ա-
31 սիցեն զնմանէ ։ Եւ սկսաւ ուսուցանել զնոսա, թէ
պարտ է Որդւոյ մարդոյ բազում չարչարանս ըն-
դունել, և անարգիլ յերիցանց և ՚ի քահանայապե-

* ՚Ի Յոյնն, և մի՛ ումեք ասիցես ՚ի շինին

տից և 'ի դպրաց, և մեռանել, և յետ երից աւուր
32 յառնել: Եւ համարձակ զբանն խօսեցաւ. և առեալ
33 զնա մեկուսի Պետրոսի՝ սկսաւ սաստել նմա: Եւ նա
դարձաւ եւես զաշակերտսն, սաստեաց Պետրոսի և
ասէ. Ե՛րթ յետս իմ Սատանայ. զի ո՛չ խորհիս
34 դու զԱստուծոյն այլ զմարդկան: Եւ կոչեցեալ
առ ինքն զժողովուրդն աշակերտօքն հանդերձ՝ ա-
սէ ցնոսա. Եթէ որ կամի գալ զկնի իմ՝ ուրասցի
զանձն իւր, և բարձցէ զխաչ իւր, և եկեսցէ զկնի
35 իմ: Զի որ կամիցի ապրեցուցանել զանձն իւր,
կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն իւր վասն ա-
36 ւետարանին, ապրեցուսցէ զնա: Զի՞նչ օգուտ է
մարդոյ եթէ զաշխարհս ամենայն շահեսցի, և զանձն
37 իւր տուժեսցէ: Կամ զի՞նչ տացէ մարդ փոխա-
38 նակ անձին իւրոյ: Զի որ ոք ամօթ համարեսցի
զիս և զբանս իմ 'ի շնացօղ և 'ի մեղաւոր ազգիս
այսմիկ, և Որդի մարդոյ յամօթ արասցէ զնա,
յորժամ եկեսցէ փառօք Հօր իւրոյ * և հրեշտա-
39 կաց սրբոց: Եւ ասէ ցնոսա. Ամէն ասեմ ձեզ.
զի են ոմանք 'ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճա-
շակեսցեն զմահ՝ մինչև տեսցեն զարքայութիւն Աս-
տուծոյ եկեալ զօրութեամբ:

## ԳԼ. Թ.

1 Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յիսուս զՊետ-
րոս և զՅակոբոս և զՅովհաննէս, և հանէ զնոսա
'ի լեառն մի բարձր առանձինն. և յայլակերպս եղև

* 'Ի Յոյն., հանդերձ հրեշտակօք սրբովք

2 առաջի նոցա ։ Եւ ձորձք նորա եղեն փայլուն սպի-
տակ յոյժ , որպէս Թափիչք երկրի ոչ կարեն այն-
3 պէս սպիտակացուցանել ։ Եւ երեւեցաւ նոցա Եղիա
4 Մովսէսիւ հանդերձ , եւ խօսէին ընդ Յիսուսի ։ Պա-
տասխանի ետ Պետրոս՝ եւ ասէ ցՅիսուս ․ Ռաբբի՝
բարւոք է մեզ աստ լինել ․ եւ արասցուք երիս տա-
5 ղաւարս՝ մի քեզ եւ մի Մովսէսի եւ մի Եղիայի ։ Քան-
զի ոչ գիտէր զի՞նչ խօսէր , զի զարհուրեալ էին ։
6 Եւ եղեւ ամպ մի հովանի ՚ի վերայ նոցա ․ ձայն ե-
ղեւ յամպոյ անտի , եւ ասէ ․ Դա՛ է Որդի իմ սիրելի ,
7 դմա լուարուք ։ Եւ յանկարծակի հայեցեալ այսր
անդր՝ ոչ եւս զոք ուրեք տեսին , բայց միայն զՅիսուս
8 ընդ իւրեանս ։ Եւ մինչդեռ իջանէին ՚ի լեռնէ անտի ,
պատուիրեաց նոցա զի մի՛ ումեք պատմեսցեն զոր
տեսինն , բայց յորժամ Որդի մարդոյ ՚ի մեռելոց
9 յարիցէ ։ Եւ նոքա զբանն ՚ի մտի ունէին , եւ խնդ-
րէին ընդ միմեանս՝ թէ զի՞նչ իցէ ՚ի մեռելոց յառ-
10 նել ։ Հարցին զնա եւ ասեն ․ Զի՞նչ է այն զոր
դպիրքն ասեն՝ եթէ ՙՆախ Եղիայի պարտ է գալ ։
11 ՙՆա պատասխանի ետ նոցա եւ ասէ ․ Եղիա նախ
եկեալ յարդարեսցէ զամենայն ․ եւ զիա՞րդ գրեալ
է զՈրդւոյ մարդոյ , զի բազում ինչ չարչարեսցի եւ
12 անգոսնեսցի ։ Այլ ես ասեմ ձեզ ․ Եթէ Եղիա եկն ,
եւ արարին ընդ նմա զի՛նչ եւ կամեցան , որպէս եւ
գրեալ է վասն նորա ։

13 Եւ եկեալ առ աշակերտսն , տեսին ամբոխ
շուրջ զնոքօք , եւ զդպիրսն՝ զի վիճէին ընդ նոսա ։
14 Եւ վաղվաղակի ամենայն ժողովուրդն իբրեւ տեսին
զնա՝ զարմացան , եւ ընդ առաջ ընթացեալ ողջոյն

15 տայրին նմա ։ Եւ եհարց զնոսա՝ թէ Զի՞նչ վիճէիք
16 ընդ նոսա ։ Պատասխանի ետ մի ոմն 'ի ժողովըր-
դենէն և ասէ․ Վարդապետ՝ ածի զորդի իմ առ
17 քեզ, զոր ունի այս համր․ Եւ ուր հասանէ՝ զար-
կուցանէ զնա․ և փրփրէ և կրճտէ զատամունս իւր
և ցամաքի․ և ասացի ցաշակերտսն քո զի հանցեն,
18 և ո՛չ կարացին հանել զնա ։ Պատասխանի ետ նո-
ցա և ասէ․ Ո՜վ ազգ անհաւատ, մինչև յե՞րբ իցեմ
առ ձեզ․ մինչև ցե՞րբ անսայցեմ ձեզ․ ածէք զնա
19 առ իս ։ Եւ ածին զնա առ նա․ իբրև ետես զնա
այսն, վաղվաղակի շարժլեաց զնա, և անկեալ յեր-
20 կիր թաւալէր և փրփրեայր ։ Եհարց ցհայր նորա
և ասէ․ Քանի՞ ժամանակք են յորմէհետէ այդ
21 եղև դմա․ և նա ասէ․ 'Ի մանկութենէ ։ Բազում
անգամ 'ի հուր արկանէ զդա և 'ի ջուր՝ զի կորուսցէ․
արդ եթէ կարող ինչ ես, օգնեա՛ մեզ Տէր՝ գթաց-
22 եալ 'ի վերայ մեր ։ Եւ Յիսուս ասէ ցնա․ *Ասա-
ցեր թէ կարող ես"․ ամենայն ինչ հնարաւոր է
23 այնմ, որ հաւատայն ։ Եւ վաղվաղակի աղաղակեաց
հայր մանկանն՝ և ասէ․ Հաւատամ, օգնեա՛ ան-
24 հաւատութեանս իմում ։ Իբրև ետես Յիսուս եթէ
կուտի ժողովուրդն 'ի վերայ, սաստեաց այսոյն պղծոյ
և ասէ․ Համր և խուլ այս՝ ես տամ քեզ հրաման,
25 ե՛լ 'ի դմանէ, և այլ ես մի՛ մտանիցես 'ի դա ։ Եւ
աղաղակեաց՝ և յոյժ լլկեաց զնա, և ել․ և եղև
պատանեակն իբրև զմեռեալ, մինչև բազմաց իսկ
26 ասել թէ Մեռաւ ։ Եւ Յիսուս կալաւ զձեռանէ

* 'Ի Յոյնն, Թէ կարող ես հաւատալ

27 Նորա՝ յարոյց զնա, և կանգնեցաւ: Եւ իբրև եմուտ
նա 'ի տուն, աշակերտքն առանձինն հարցին զնա.
28 Մե՛ք ընդէ՞ր ո՛չ կարացաք հանել զնա: Եւ ասէ
ցնոսա. Այդ ազգ ո՛չ իւիք ելանէ, եթէ ոչ պահովք
և աղօթիւք:
29 Եւ անտի ելեալ անցանէին առ Գալիլեացւովք.
30 և ո՛չ կամէր եթէ ոք գիտասցէ: Քանզի ուսուցա-
նէր զաշակերտսն իւր՝ և ասէր ցնոսա, Թէ Որդի
մարդոյ մատնելոց է 'ի ձեռս մարդկան, և սպանցեն
31 զնա. և իբրև սպանցի՝ յերիր աւուր յարիցէ: Եւ
նոքա ո՛չ գիտէին զբանն, և երկնչէին հարցանել
32 ցնա: Եկն 'ի Կափառնաում. և իբրև եմուտ 'ի
տուն, հարցանէր ցնոսա. Զի՞նչ վիճէիք զճանա-
33 պարհայն ընդ միմեանս: Եւ նոքա լուռ լինէին.
քանզի ընդ միմեանս վիճէին 'ի ճանապարհին թէ
34 ո՞վ մեծ իցէ: Եւ իբրև նստաւ՝ կոչեաց զերկոտա-
սանսն և ասէ ցնոսա. Եթէ ոք կամի առաջին լի-
նել, եղիցի ամենեցուն կրտսեր և ամենեցուն պաշ-
35 տօնեայ: Եւ առեալ մանուկ մի կացոյց 'ի մէջ նոցա.
36 և ընկալեալ զնա 'ի գիրկս իւր, ասէ ցնոսա: Որ
միանգամ յայսպիսի մանկտւոյ ընկալցի յանուն
իմ, զիս ընդունի. և որ զիս ընդունիցի, ո՛չ զիս
37 ընդունի՝ այլ զայն որ առաքեացն զիս: Պատաս-
խանի ետ նմա Յովհաննէս և ասէ. Վարդապետ՝
տեսաք զոմն զի յանուն քո դևս հանէր՝ և զմեր
38 կնի ո՛չ շրջէր, և արգելաք զնա: Եւ նա ասէ.
Մ՛ի արգելուք զնա. զի ոչ ո՛ք է որ առնէ զօրութիւնս
39 յանուն իմ, և կարիցէ հայհոյել զիս: Զի որ ո՛չն է
40 ընդ մեզ հակառակ, 'ի մեր կողմն է: Եւ որ ոք ար-

բուսցէ ձեզ ջուր բաժակաւ յանուանս յայս, թէ դուք
՝Քրիստոսի էք, ամէն ասեմ ձեզ՝ մի՛ կորուսցէ ըզ-
41 վարձս իւր։ Եւ որ ոք գայթագղեցուսցէ զմի ՚ի
փոքրկանցս՝ որ հաւատան յիս, լաւ էր նմա առա-
ւել՝ եթէ արկեալ էր ընդ պարանոց նորա երկան
42 իշոյ, և ընկեցեալ ՚ի ծով։ Եւ եթէ գայթագղե-
ցուսցէ զքեզ ձեռն քո․ հա՛տ ընկեա՛ ՚ի քէն․
զի լաւ իցէ քեզ խեղ մտանել ՚ի կեանսն յաւիտե-
նից, քան երկուս ձեռս ունել՝ և երթալ ՚ի գեհեն
43 ՚ի հուրն անշէջ։ Ուր որդն նոցա ո՛չ մեռանի և
44 հուրն ո՛չ շիջանի։ Եւ եթէ ոտն քո գայթագղե-
ցուսցէ զքեզ, հա՛տ ընկեա՛ զնա ՚ի քէն․ լաւ իցէ
քեզ կաղ մտանել ՚ի կեանսն * յաւիտենից, քան
երկուս ոտս ունել՝ և անկանել ՚ի գեհեն ՚ի հուրն
45 անշէջ։ Ուր որդն նոցա ո՛չ մեռանի և հուրն ո՛չ
46 շիջանի։ Եւ եթէ ակն քո գայթագղեցուսցէ զքեզ,
հա՛ն զնա ՚ի բաց․ լաւ իցէ քեզ միով ակամբ մտա-
նել յարքայութիւն Աստուծոյ, քան երկուս աչս
47 ունել և անկանել ՚ի գեհեն։ Ուր որդն նոցա ո՛չ
48 մեռանի և հուրն ո՛չ շիջանի։ Զի ամենայն ինչ
հրով յաղեսցի, և ամենայն ողջակէզ աղիւ յաղեսցի։
49 Բարւոք է աղ․ և եթէ աղն անհամեսցի, ի՞ւ հա-
մեմեսցի․ արդ դուք կալարո՛ւք յանձինս ձեր զաղն,
և խաղաղութիւն արարէ՛ք ընդ միմեանս։

---

* ՚Ի Յոյնն չէ։

## ԳԼ. Ժ

1 Եւ անտի յարուցեալ գայ 'ի սահմանս Հրէաս-
տանի յայնկոյս Յորդանանու. և երթայր դարձեալ
խռնեալ ժողովուրդն առ նա, և որպէս սովոր էր՝
2 միւսանգամ ուսուցանէր զնոսա: Իսկ փարիսեցիքն
մատուցեալ փորձելով հարցանէին զնա՝ և ասէին,
3 եթէ Արժա՞ն իցէ առն զկին իւր արձակել: Նա
պատասխանի ետ նոցա և ասէ. Զի՞նչ պատուիր-
4 եաց ձեզ Մովսէս: Եւ նոքա ասեն. Մովսէս հրա-
5 ման ետ գիր մեկնելոյ գրել, և արձակել: Պատաս-
խանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Վասն խստասրտ-
ութեան ձերոյ գրեաց ձեզ զպատուիրանն զայն:
6 Այլ 'ի սկզբանէ արարածոց, արու և էգ արար
7 զնոսա Աստուած, և ասէ: Վասն այսորիկ թողցէ
այր զհայր իւր և զմայր, և երթիցէ զհետ կնոջ
8 իւրոյ: Եւ եղիցին երկուքն 'ի մարմին մի. և այնու-
9 հետև ո՛չ են երկու՝ այլ մարմին մի: Արդ զոր
10 Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ: Եւ 'ի տան
11 դարձեալ աշակերտքն զնոյն հարցին զնա: Եւ ասէ
ցնոսա. Եթէ այր արձակեսցէ զկին իւր՝ և արաս-
12 ցէ այլ, շնայ: Եւ կին եթէ ելցէ յառնէ իւրմէ՝ և
եղիցի առն այլում, շնայ:

13 Եւ մատուցանէին առ նա մանկտի՝ զի ձեռն դիցէ
նոցա. իսկ աշակերտքն սաստէին այնոցիկ՝ որ մատու-
14 ցանէին: Իբրև ետես Յիսուս, բարկացեալ սաստ-
եաց նոցա և ասէ. Թո՛յլ տուք մանկտւոյդ գալ առ
իս, և մի՛ արգելուք զդոսա. զի այդպիսեացդ է ար-
15 քայութիւն Աստուծոյ: Ամէն ասեմ ձեզ. Ո՛ր ոչ

ընկալցի զարքայութիւն Աստուծոյ իբրև զմանուկ՝ ոչ
16 մտցէ 'ի նա: Եւ առեալ զնոսա 'ի գիրկս ձեռն եդ 'ի
17 վերայ՝ և օրհնեաց զնոսա: Եւ ընդ ելանելն նորա
անտի 'ի ճանապարհ, ահաւասիկ ոմն մեծատուն ըն-
թացեալ 'ի ծունր իջանէր, հարցանէր զնա՝ և ասէր.
Վարդապե՛տ բարի՝ զի՞նչ արարից զի զկեանսն յա-
18 ւիտենականս ժառանգեցից: Եւ Յիսուս ասէ ցնա.
Զի՞ ասես զիս բարի. չիք ոք բարի բայց մի Աս-
19 տուած: Զպատուիրանս գիտես. Մի՛ շնար, Մի՛
սպանաներ, Մի՛ գողանար, Մի՛ սուտ վկայեր.*
20 Պատուեա՛ զհայր քո և զմայր: Նա պատասխանի
ետ և ասէ ցնա. Վարդապետ՝ զայդ ամենայն արա-
րի 'ի մանկութենէ իմմէ, արդ զի՞նչ ևս պակաս իցեմ:
21 Եւ Յիսուս հայեցեալ 'ի նա սիրեաց զնա, և ասէ
ցնա. Մի՛ ինչ պակաս է 'ի քէն. եթէ կամիս կա-
տարեալ լինել, երթ զոր ինչ ունիս վաճառեա՝ և
տուր աղքատաց, և ունիցիս գանձս յերկինս, և առ
22 զխաչն՝ և եկ զկնի իմ: Եւ նա խոժոռեալ ընդ
բանն՝ գնաց տրտում. զի ունէր ինչս բազումս:
23 Եւ հայեցեալ յայսկոյս յայնկոյս Յիսուս, ասէ ցա-
շակերտսն. Զիա՛րդ դժուարին է որ զինչսդ ունին,
24 մտանել յարքայութիւն Աստուծոյ: Եւ աշակերտքն
զարմացեալ էին 'ի վերայ բանիցն նորա. իսկ
Յիսուս դարձեալ պատասխանի ետ նոցա և ասէ.
Որդեակք՝ որչափ դժուարին է յուսացելոց յինչս
25 մտանել յարքայութիւն Աստուծոյ: Դիւրին է մալ-
խոյ ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատան յար-

* Ի Յոյնն, Մի՛ զրկեր.

26 քայութիւն Աստուծոյ մտանել։ Եւ նոքա առաւել
ևս զարմանային՝ և ասէին ընդ միմեանս․ Իսկ ո՞
27 կարասցէ ապրել ։ Հայեցեալ ընդ նոսա Յիսուս՝
ասէ․ Առ ՚ի մարդկանէ այդ անհնարին է, այլ ո՛չ
առ ՚ի յԱստուծոյ։
28 Սկսաւ ասել ցնա Պետրոս․ Ահաւասիկ մեք թո-
29 ղաք զամենայն, և եկաք զկնի քո։ Պատասխանի ետ
Յիսուս և ասէ․ Ամէն ասեմ ձեզ՝ Ոչ ո՛ք է որ եթող
զտուն կամ զեղբարս կամ զքորս կամ զհայր կամ
զմայր կամ զորդիս՝ կամ զագարակս վասն իմ կամ
30 վասն աւետարանին․ Եթէ ոչ առնուցու հարիւրա-
պատիկ այժմ յայսմ ժամանակի՝ տունս և եղբարս
և քորս և մարս և որդիս և ագարակս հալածանօք
հանդերձ, և յաշխարհին որ գալոց է զկեանսն
31 յաւիտենականս ։ Զի բազումք եղիցին առաջինք
32 յետինք՝ և յետինք առաջինք։ Եւ էին ՚ի ճանա-
պարհի մինչդեռ ելանէին յԵրուսաղէմ․ և երթայր
Յիսուս առաջի քան զնոսա, և զարմացեալ էին որ
զհետն երթային և երկնչէին ։
Եւ առեալ միւսանգամ զերկոտասանսն առան-
ձինն, սկսաւ ասել նոցա զինչ անցք անցանելոց
33 իցեն ընդ նա ։ Թէ ահաւասիկ ելանեմք յԵրուսա-
ղէմ, և Որդի մարդոյ մատնեսցի քահանայապե-
տիցն և դպրաց, և դատեսցեն զնա ՚ի մահ, և
34 մատնեսցեն զնա հեթանոսաց․ Եւ կատակեսցեն զնո-
վաւ, և հարկանիցեն զնա, և թքանիցեն ՚ի նա,
35 և սպանցեն․ և յերիր աւուր յարիցէ ։ Եւ երթա-
յին առ նովաւ Յակովբոս և Յովհաննէս որդիքն
Զեբեդեայ, և ասեն ցնա․ Վարդապետ կամիմք զի

36 զոր ինչ խնդրեսցուք 'ի քէն՝ արասցես մեզ ։ Եւ
նա ասէ ցնոսա ․ Զի՞նչ կամիք յինէն զի արարից
37 ձեզ ։ Եւ նոքա ասեն ցնա ․ Տո՛ւր մեզ զի նստցուք
մի յաջմէ քումմէ և մի յահեկէ՝ 'ի փառսն քում ։
38 Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա ․ Ո՛չ գիտէք
զինչ խնդրէք ․ կարէ՞ք ըմպել զբաժակն՝ զոր ես
ըմպելոց եմ ․ կամ զմկրտութիւնն մկրտիլ՝ զոր ես
39 մկրտելոցն եմ ։ Եւ նոքա ասեն ցնա , Կարեմք ․ և
Յիսուս ասէ ցնոսա ․ Զբաժակն զոր ես ըմպելոց
եմ ըմպիցէք , և զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ
40 մկրտիցիք ․ Այլ նստուցանել ընդ աջմէ իմմէ և ընդ
ահեկէ՝ ո՛չ է իմ տալ , այլ որոց պատրաստեալ իցէ ։
41 Եւ լուեալ զայն տասանցն , սկսան բարկանալ Յա-
42 կովբայ և Յովհաննու ։ Եւ Յիսուս կոչեաց զնոսա
առ ինքն , և ասէ ցնոսա ․ Գիտէք զի որ յանուան
իշխանքն են հեթանոսաց , տիրեն նոցա ․ և մեծա-
43 մեծք նոցա , իշխեն նոցա ։ Ո՛չ նոյնպէս իցէ և 'ի
ձերում միջի ․ այլ որ կամիցի 'ի ձէնջ մեծ լինել՝ եղի-
44 ցի ձեր պաշտօնեայ ․ Եւ որ կամիցի 'ի ձէնջ առա-
45 ջին լինել՝ եղիցի ամենեցուն ծառայ ։ Քանզի և
Որդի մարդոյ ո՛չ եկն առնուլ պաշտօն՝ այլ պաշտել ,
և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց ։
46 Եւ գան յԵրիքով ․ և ընդ ելանելն նորա յԵ-
րիքովէ աշակերտօքն՝ և բազում ժողովրդով , որդի
Տիմէի Բարտիմէոս կոյր նստէր մուրացիկ յանցս
47 ճանապարհի ։ Իբրև լուաւ թէ Յիսուս Նազովրեցի
է , սկսաւ աղաղակել և ասել ․ Որդի՛ Դաւթի Յիսուս
48 ողորմեա՛ց ինձ ։ Եւ սաստէին նմա բազումք զի լռես-
ցէ ․ և նա առաւել ևս աղաղակէր ․ Որդի՛ Դաւթի

49 ողորմեա՛ց ինձ ։ Զտեղի առ Յիսուս՝ և հրամայեաց
կոչել զնա ․ կոչեն զկոյրն՝ և ասեն ցնա ․ Քաջա֊
50 լերեա՛ց արի՛՝ կոչէ զքեզ ։ Եւ նորա ընկեցեալ զձոր֊
51 ձըս իւր , յարեաւ և եկն առ Յիսուս ։ Պատասխա֊
նի ետ նմա Յիսուս և ասէ , Զի՞նչ կամիս թէ
արարից քեզ ․ ասէ ցնա կոյրն ․ Ռա՛բբունի՝ զի
52 բացայց ։ Եւ Յիսուս ասէ ցնա , Ե՛րթ՝ հաւատք քո
կեցուցին զքեզ ․ և վաղվաղակի բացաւ , և երթայր
զհետ նորա 'ի ճանապարհին ։

## ԳԼ․ ԺԱ

1 Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ 'ի Բեթ֊
փագէ և 'ի Բեթանիա մօտ 'ի լեառն Ձիթենեաց ,
2 առաքէ երկուս յաշակերտաց անտի , Եւ ասէ ցնոսա ․
Երթա՛յք դուք 'ի գեօղդ՝ որ ընդդէմ ձեր կայ ․ և
նոյն ժամայն իբրև մտանէք 'ի նա , գտանէք յաւա֊
նակ մի կապեալ ․ յորոյ վերայ ոչ ո՛ք 'ի մարդկանէ
3 նստաւ , լուծէ՛ք զնա և ածէ՛ք ։ Եւ եթէ ոք ասաս֊
ցէ ձեզ՝ եթէ Զի՞ լուծանէք զյաւանակդ , ա֊
սասջի՛ք եթէ Տեառն իւրում պիտոյ է ․ և վաղվա֊
4 ղակի առաքեսցէ զնա այսր ։ Չոքան և գտին զյա֊
ւանակն կապեալ առ դուրս արտաքոյ 'ի փողոցի անդ ,
5 և լուծին զնա ։ Եւ ոմանք յորոց անդն կային , ա֊
սեն ցնոսա ․ Զի՞ գործէք , զի՞ լուծանէք զյաւա֊
6 նակդ ։ Եւ նոքա ասեն ցնոսա որպէս ասացն Յիսուս ․
7 և թոյլ ետուն նոցա ։ Ածեն զյաւանակն առ Յիսուս ․
և արկանեն 'ի վերայ նորա հանդերձս , և նստաւ
8 'ի վերայ նորա ։ Եւ բազումք զհանդերձս իւրեանց

տարածանէին 'ի վերայ ճանապարհին, և այլք ոստս
'ի ծառոց հատանէին՝ և արկանէին զճանապար-
9 հաւն: Եւ որ առաջին և զկնի երթային աղաղա-
10 կէին և ասէին. Ովսաննայ բարձրելոյն: Օրհնեալ
որ գայդ յանուն Տեառն. Օրհնեալ թագաւորու-
թիւնդ եկեալ հօր մերոյ Դաւթի. խաղաղութիւն
11 յերկինս և փառք 'ի բարձունս: Եւ եմուտ Յիսուս
յԵրուսաղէմ 'ի տաճարն, և հայեցաւ շուրջ զամե-
նեքումբք. և զի էր երեկոյացեալ ժամն, ել 'ի Բե-
թանիա երկոտասանիւքն հանդերձ:
12 Եւ 'ի վաղիւ անդր մինչդեռ ելանէին 'ի Բեթա-
13 նիա, քաղցեաւ: Եւ ետես թզենի մի 'ի բացուստ
տերևալից. և եկն՝ թէ գտանիցէ ինչ 'ի նմա. և իբրև
եկն 'ի նա՝ ոչինչ եգիտ, բայց միայն տերև. զի ո՛չ
14 իսկ էր ժամանակ թզոյ: Պատասխանի ետ և ասէ
ցնա. Մ՛ի ևս ոք յաւիտեան 'ի քէն պտուղ կերի-
15 ցէ. և լսէին աշակերտքն Նորա: Գան յԵրուսա-
ղէմ. և մտեալ 'ի տաճարն՝ սկսաւ հանել զվաճա-
ռականսն և զգնօղս որ էին 'ի տաճարին. և զսե-
ղանս հատավաճառացն ցրուեաց. և զաթոռս աղաւ-
16 նեվաճառացն կործանեաց. Եւ ո՛չ թողոյր՝ եթէ ոք
17 անօթ ինչ անցուցանիցէ ընդ տաճարն. Եւ ուսու-
ցանէր և ասէր ցնոսա. Գրեալ է, Տուն իմ տուն
աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց, և դուք ա-
18 րարէք զդա այրս աւազակաց: Լուան քահանայա-
պետքն և դպիրք. և խնդրէին՝ թէ ո՛րպէս կորուս-
ցեն զնա. բայց երկնչէին 'ի նմանէ. զի ամենայն
19 ժողովուրդն զարմացեալ էր ընդ ուսմամբ Նորա: Եւ
իբրև երեկոյ լինէր՝ արտաքոյ քան զքաղաքն ելա-

20 նէին ։ Եւ մինչդեռ այգուցն առ նովաւ անցանէին ,
21 տեսին զթզենին ցամաքեալ յարմատոց ։ Յիշեաց
Պետրոս՝ և ասէ ցնա ․ Ռաբբի՝ ահաւասիկ թզենին
22 զոր անիծեր , ցամաքեցաւ ։ Պատասխանի ետ Յիսուս
և ասէ ցնոսա ․ Եթէ ունիցիք զհաւատն Աստուծոյ ,
23 Ամէն ասեմ ձեզ ․ Որ ոք ասիցէ լերինս այսմիկ՝ Բար-
ձիր և անկիր 'ի ծով , և ոչ երկմտիցէ 'ի սրտի
իւրում , այլ հաւատայցէ թէ զոր ասէն լինի , եղիցի
24 նմա զոր ինչ և ասիցէ ։ Վասն այսորիկ ասեմ ձեզ ․
Զամենայն ինչ վասն որոյ աղօթս արարեալ խնդ-
րիցէք , և հաւատայցէք թէ առնուցուք , եղիցի ձեզ ։
25 Եւ յորժամ յաղօթս կայցէք , թողուցուք , եթէ
ունիցիք ինչ զումեքէ ․ զի և Հայրն ձեր որ յերկինս
26 է , թողցէ ձեզ զյանցանս ձեր ։ Զի եթէ դուք ոչ
թողուցուք , և ոչ Հայրն ձեր որ յերկինս է՝ թողցէ
ձեզ զյանցանս ձեր ։
27 Գան միւսանգամ յԵրուսաղէմ ․ և մինչդեռ 'ի
տաճարի անդ զգնայր , գան առ նա քահանայա-
28 պետքն և դպիրք և ծերք , Եւ ասեն ցնա ․ Որո՞վ
իշխանութեամբ առնես զայդ , և ո՞վ ետ քեզ զիշ-
29 խանութիւնդ զայդ ։ Պատասխանի ետ Յիսուս
և ասէ ցնոսա ․ Հարցից և ես զձեզ բան մի , տուք
ինձ պատասխանի ․ և ես ասացից ձեզ որով իշխա-
30 նութեամբ առնեմ զայս ։ Մկրտութիւնն Յովհաննու
յերկնի՞ց էր եթէ 'ի մարդկանէ , տուք ինձ պա-
31 տասխանի ։ Խորհէին ընդ միմեանս՝ և ասէին ․ Եթէ
ասեմք եթէ Յերկնից , ասէ ցմեզ ․ Իսկ ընդէ՞ր ոչ
32 հաւատացէք նմա ։ Այլ եթէ ասեմք 'ի մարդկանէ ,
երկնչիմք 'ի ժողովրդենէն ․ զի ամենեքին գիտէին

33 զՅովհաննէս՝ թէ մարգարէ էր։ Պատասխանի ե-
տուն և ասեն ցՅիսուս. Ոչ գիտեմք։ Եւ Յիսուս
ետ նոցա պատասխանի և ասէ. Եւ ոչ ես ասեմ
ձեզ, որով իշխանութեամբ առնեմ զայս։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ սկսաւ խօսել ընդ նոսա առակօք՝ և ասել։
Այր մի տնկեաց այգի, և ած շուրջ զնովաւ ցանգ,
և գուբ հնձան փորեաց, և շինեաց աշտարակ. և
2 ետ զնա ցմշակս, և գնաց 'ի տար աշխարհ։ Եւ
առաքեաց առ մշակսն 'ի ժամանակի ծառայ մի, զի
3 'ի մշակաց անտի առցէ 'ի պտղոյ այգւոյն։ Եւ
նոցա կալեալ զնա հարին զնա, և արձակեցին ու-
4 նայն։ Դարձեալ առաքեաց առ նոսա այլ ծառայ,
և զնա կառափնատեցին և արձակեցին անարգեալ։
5 Եւ դարձեալ այլ առաքեաց, և զնա սպանին. և
զբազումս այլս՝ զոմանս հարկանէին և զոմանս սպա-
6 նանէին։ Ապա որդի մի էր իւր սիրելի, զնա ա-
ռաքեաց առ նոսա յետոյ, և ասէ. Թերևս ամա-
7 չեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ մշակքն իբրև
տեսին զնա թէ գայ՝ ասեն ցմիմեանս. Սա է ժա-
ռանգն, եկայք սպանցուք զսա. և մեր լիցի ժա-
8 ռանգութիւնն։ Եւ կալեալ զնա սպանին, և հա-
9 նին արտաքոյ այգւոյն։ Արդ զի՞նչ արասցէ տէր
այգւոյն. եկեսցէ և կորուսցէ զմշակսն, և տացէ
10 զայգին 'ի ձեռս այլոց։ Եւ ո՛չ զգիրն զայն իցէ
ընթերցեալ ձեր, թէ Վէմն զոր անարգեցին շի-
11 նողքն, նա եղև գլուխ անկեան։ 'Ի Տեառնէ եղև

12 այս, և է սքանչելի յաչս մեր։ Եւ խնդրէին զնա
ունել, և երկեան ՚ի ժողովրդենէ անտի, զի գի-
տացին թէ առ նոսա ասաց զառակն· և թողին
13 զնա և գնացին։ Եւ առաքեն առ նա զոմանս ՚ի
փարիսեցւոց անտի՝ և ՚ի Հերովդիանոսաց, զի
14 զնա որսասցեն բանիւ։ Եւ նոքա եկեալ հար-
ցանէին զնա նենգութեամբ՝ և ասէին· Վարդա-
պետ գիտեմք զի ճշմարիտ ես, և ոչ ինչ փոյթ
է քեզ զումեքէ· զի ոչ հայիս յերեսս մարդկան,
այլ ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ու-
սուցանես· արդ՝ ասա մեզ, արժա՞ն է հարկս
տալ կայսեր՝ թէ ոչ· տացո՞ւք եթէ ոչ տացուք։
15 Եւ Յիսուս գիտաց զկեղծաւորութիւն նոցա, ասէ
ցնոսա· Զի՞ փորձէք զիս կեղծաւորք· բերէք ինձ
16 դահեկան մի զի տեսից։ Եւ նոքա բերին· և ասէ
ցնոսա· Ո՞յր է պատկերս այս կամ գիր· և նոքա
17 ասեն ցնա· Կայսեր։ Պատասխանի ետ Յիսուս
և ասէ ցնոսա· Երթա՛յք տո՛ւք զկայսերն կայսեր,
և զԱստուծոյն Աստուծոյ· և զարմացան ընդ նա։
18 Գան առ նա սադուկեցիքն որ ասեն՝ թէ Չի՛ք
19 յարութիւն· հարցանէին ցնա և ասէին։ Վար-
դապետ Մովսէս գրեաց մեզ· եթէ ուրուք եղբայր
մեռանիցի և թողուցու կին՝ և որդի ոչ թողու-
ցու· զի առցէ եղբայր նորա զկին նորա, և յա-
20 րուցէ զաւակ եղբօր իւրում։ Արդ եղբարք եօթն
էին առ մեզ· առաջինն առ կին՝ և մեռաւ, և ոչ
21 եթող զաւակ։ Եւ երկրորդն առ զնոյն՝ և մե-
ռաւ, և ոչ նա եթող զաւակ· նոյնպէս և եր-
22 րորդն առ զնոյն։ Եւ եօթնեքեան իսկ· և ոչ թո-

23 զկին զաւակ․ յետ ամենեցուն մեռաւ և կինն ։ Արդ
՚ի յարութեանն յորժամ յառնիցեն, ո՞յր ՚ի նո-
ցանէ լինիցի կինն․ զի եօթնեքեան կալան զնա
24 կին ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա․
Ո՞չ վասն այդորիկ իսկ մոլորեալ էք․ զի ո՛չ գի-
25 տէք զգիրս՝ և ո՛չ զզօրութիւնն Աստուծոյ ։ Զի յոր-
ժամ ՚ի մեռելոց յարիցեն, ո՛չ արք կանայս առ-
նեն, և ո՛չ կանայք արանց լինին․ այլ իբրև զհրեշ-
26 տակս իցեն՝ որ յերկինս են ։ Այլ վասն յարու-
թեան մեռելոց զի յառնեն, ո՞չ իցէ ընթերցեալ
ձեր ՚ի գիրսն Մովսէսի ՚ի մորենւոջն․ որպէս ա-
սաց ցնա Աստուած․ Ե՛ս եմ ասէ՝ Աստուած Աբ-
րահամու, Աստուած Իսահակայ, և Աստուած Յա-
27 կոբայ ։ Եւ ո՛չ է Աստուած մեռելոց՝ այլ կեն-
28 դանեաց․ և արդ դուք յոյժ մոլորեալ էք ։ Եւ
մատուցեալ մի ոմն ՚ի դպրացն՝ լսէր նոցա մինչ վի-
ճէինն․ իբրև ետես եթէ բարւոք ետ նոցա զպա-
տասխանին, եհարց ցնա և ասէ, Ո՞ր պատուի-
29 րան է առաջին ։ Եւ Յիսուս ասէ ցնա․ Առաջին
30 քան զամենայն՝ Լուր Իսրայէլ Տէր Աստուած մեր՝
Տէր մի է․ և սիրեսցես զՏէր Աստուած քո յա-
մենայն սրտէ քումմէ, և յամենայն անձնէ քում-
մէ, և յամենայն մտաց քոց, և յամենայն զօրութենէ
31 քումմէ․ այս է առաջին պատուիրան ։ Եւ երկ-
րորդն նման սմին․ Սիրեսցես զընկեր քո՝ իբրև
զանձն քո․ մեծ քան զսոսա այլ պատուիրան ոչ
32 գոյ ։ Եւ ասէ ցնա դպիրն․ Բարւոք է Վարդա-
պետ․ ճշմարտութեամբ ասացեր՝ թէ մի է Աս-
33 տուած, և ո՛չ գոյ այլ բաց ՚ի նմանէ ։ Եւ սի-

րելն զնա յամենայն սրտէ և յամենայն զօրութենէ
և յամենայն մտաց, և սիրելն զընկերն իբրև զան-
34 ձըն, առաւել է քան զողջակէզս և զզոհս: Եւ
տեսեալ Յիսուսի թէ իմաստութեամբ ետ զպատաս-
խանին՝ ասէ ցնա. Ոչ ես հեռի յարքայութենէ Աս-
տուծոյ. և ոչ ևս ոք իշխէր ինչ հարցանել ցնա:
35 Պատասխանի ետ Յիսուս և ասէ, մինչ ուսու-
ցանէր 'ի տաճարին. Զիարդ ասեն դպիրքն, եթէ
36 Քրիստոս որդի Դաւթի է: Եւ ինքն Դաւիթ
Հոգւովն Սրբով ասէ. Ասաց Տէր ցՏէր իմ,
Նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչև եդից զթշնամիս քո
37 պատուանդան ոտից քոց: Արդ եթէ ինքն իսկ Դա-
ւիթ զնա Տէր կոչէ՝ զիարդ իցէ որդի նորա. և
38 բազում ժողովուրդ լսէր նմա քաղցրութեամբ: Եւ
ասէր ուսուցանելով 'ի վարդապետութեան իւրում.
Զգոյշ լերուք 'ի դպրաց անտի, որ կամին 'ի հան-
դերձս երևելիս շրջել, զնախողջոյնս խնդրել 'ի
39 հրապարակս, Եւ զնախաթոռս 'ի ժողովուրդս, և
40 զգահագլուխս յընթրիս: Որ ուտեն զտունս այր-
եաց, պատճառանօք յերկարեալ զաղօթս, զի ա-
41 ւելի ևս դատաստանս ընկալցին: Կայր Յիսուս
ընդդէմ գանձանակին, տեսանէր թէ զիարդ ժո-
ղովուրդն արկանէր պղինձ 'ի գանձանակն, և բա-
42 զում մեծատունք արկին բազում ինչ: Եկն այրի
մի և արկ երկուս լումայս, որ է նաքարակիտ մի.
43 Եւ կոչեցեալ առ ինքն զաշակերտսն, ասէ ցնո-
սա. Ամէն ասեմ ձեզ՝ զի այրին այն տառապ-
եալ շատ արկ քան զամենեսեան՝ որ արկին 'ի գան-
44 ձանակն: Քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց

արկին . այլ նա 'ի չքաւորութենէ իւրմէ՝ զամե-
նայն ինչ զոր ունէր արկ գոյիւ չափ զկեանս իւր :

## ԳԼ. ԺԳ

1 Եւ յելանելն նորա 'ի տաճարէ անտի , ասէ ցնա
մի յաշակերտացն նորա . Վարդապետ , տես որ-
2 պիսի են քարինքս , եւ որպիսի շինուածք : Պա-
տասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ . Տեսանե՞ս
զայդ ամենայն շինուածս , ամէն ասեմ ձեզ՝ եթէ
ո՛չ թողցի այդր քար 'ի քարի վերայ որ ոչ քակ-
3 տեսցի : Եւ մինչ նստէր նա 'ի լերինն Ձիթենեաց
յանդիման տաճարին , Հարցանէին ցնա առան-
ձինն՝ Պետրոս եւ Յակոբոս եւ Յովհաննէս եւ Անդ-
4 րէաս : Ասա՛ մեզ ե՞րբ լինիցի այդ , եւ զի՞նչ նը-
շան է՝ յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն :
5 Պատասխանի ետ Յիսուս , եւ ասէ ցնոսա . Զգո՛յշ
6 կացէք , մի՛ ոք զձեզ խաբեսցէ : Զի բազումք ե-
կեսցեն յանուն իմ , եւ ասիցեն՝ թէ Ես եմ Քրիս-
7 տոսն . եւ զբազումս մոլորեցուսցեն : Այլ յորժամ
լսիցէք պատերազմունս եւ համբաւս պատերազմաց՝
մի՛ խռովիցիք , զի պարտ է լինել . բայց չեւ է կա-
8 տարածն : Զի յարիցէ ազգ յազգի վերայ , եւ թա-
գաւորութիւն 'ի թագաւորութեան վերայ . եւ եղի-
ցին շարժմունք 'ի տեղիս տեղիս , սովք եւ սրա-
ծութիւնք եւ խռովութիւնք . այլ այն ամենայն
9 սկիզբն է երկանց : Եւ զձեզ իսկ մատնեսցեն յա-
տեանս , եւ 'ի ժողովուրդս տանջիցիք , եւ առա-
ջի դատաւորաց եւ թագաւորաց կայցէք վասն

10 իմ ՚ի վկայութիւն նոցա, Եւ ամենայն հեթանո-
սաց* . բայց՝ նախ պա՛րտ է աւետարանիս քարոզել:
11 Այլ յորժամ տանիցին զձեզ մատնել, մի՛ յառաջա-
գոյն հոգայցէք, եւ մի՛ զմտաւ ածիցէք՝ թէ զի՞նչ
խօսիցիք . այլ որ ինչ տացի ձեզ ՚ի ժամուն յայն-
միկ՝ զայն խօսիցիք . զի ո՛չ դուք էք որ խօսիցիքն՝
12 այլ Հոգին Սուրբ: Մատնեսցէ եղբայր զեղբայր
՚ի մահ՝ եւ հայր զորդի . եւ յարիցեն որդիք ՚ի վե-
13 րայ հարց, եւ սպանանիցեն զնոսա: Եւ եղիջիք
ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ . այլ
14 որ համբերեսցէ ՚ի սպառ՝ նա կեցցէ: Եւ յորժամ
տեսանիցէք զպղծութիւն աւերածին, զի կայցէ ՚ի
տեղւոջ ուր չիցէ արժան . որ ընթեռնուն ՚ի միտ
առցէ: Յայնժամ որ ՚ի Հրէաստանի իցեն՝ փա-
15 խիցեն ՚ի լերինս . Եւ որ ՚ի վերայ տանեացն իցէ՝
մի՛ իջցէ ՚ի տուն, եւ մի՛ մտցէ բառնալ ինչ ՚ի
16 տանէ իւրմէ . Եւ որ ՚յագարակին իցէ՝ մի՛ դարձցի
17 յետս առնուլ զձորձս իւր: Բայց վա՜յ իցէ յղեաց
18 եւ ստնտուաց յաւուրսն յայնոսիկ: Յաղօթս կա-
19 ցէք զի մի՛ ձմերանի լինիցի այն: Եղիցին աւուրքն
այնոքիկ նեղութեանց՝ որպիսի ո՛չ եղեն երբէք
այնպիսիք ՚ի սկզբանէ արարածոց մինչեւ ցայժմ,
20 եւ մի այլ լիցի: Եւ եթէ ոչ էր կարճեալ Աստու-
ծոյ զաւուրսն զայնոսիկ վասն ընտրելոց իւրոց, ոչ
ապրէր ամենայն մարմին . այլ վասն ընտրելոցն զորս
21 ընտրեաց՝ կարճեաց զաւուրսն զայնոսիկ: Յայն-
ժամ եթէ ոք ասիցէ ձեզ, եթէ Ահաւասիկ է

* ՚Ի Յոյնն չէ :

22 Քրիստոսն՝ կամ աւանիկ, մի՛ հաւատայցէք։ Զի
յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք, և
տացեն նշանս և արուեստս՝ առ 'ի մոլորեցուցա-
23 նելոյ եթէ հնար ինչ իցէ և զընտրեալսն։ Բայց
դուք զգո՛յշ լերուք՝ ահաւասիկ յառաջագոյն ասա-
24 ցի ձեզ զամենայն։ Այլ յաւուրսն յայնոսիկ յետ
նեղութեանն այնորիկ, արեգակն խաւարեսցի, և
25 լուսին ոչ տացէ զլոյս իւր։ Եւ աստեղք յերկնից
թօթափեսցին, և զօրութիւնք յերկինս շարժես-
26 ցին։ Եւ յայնժամ տեսցեն զՈրդի մարդոյ եկ-
27 եալ ամպովք՝ զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ
յայնժամ առաքեսցէ զհրեշտակս իւր, և ժողովես-
ցէ զընտրեալս իւր 'ի չորից հողմոց՝ 'ի ծագաց
28 երկրի մինչև 'ի ծագս երկնից։ Բայց դուք 'ի թզեն-
ւոյ անտի ուսջի՛ք զառակն. յորժամ տակաւ ոստքն
նորա կակղանայցեն և տերև արձակիցի 'ի նմա,
29 գիտէք թէ մերձ է ամառն. Նոյնպէս և դուք յոր-
ժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ, գիտաս-
30 ջի՛ք թէ մերձ է առ դուրս։ Ամէն ասեմ ձեզ, թէ
Ո՛չ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի։
31 Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցա-
32 նիցեն։ Այլ վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ
ո՛ք գիտէ՝ ո՛չ հրեշտակք յերկինս՝ և ո՛չ Որդի,
33 բայց Հայր միայն։ Զգո՛յշ եղերուք. սկեցէք և
կացէք յաղօթս. զի ո՛չ գիտէք երբ ժամանակն
34 իցէ։ Որպէս այր մի գնացեալ 'ի տար աշխարհ՝
թողուցու զտուն իւր. և տայցէ ծառայից իւրոց
իշխանութիւն, և իւրաքանչիւր զգործս իւր, և
դռնապանին պատուէր տայցէ, զի արթուն լինի-

35 ցի: Արդ արթուն կացէք. զի ոչ գիտէք երբ տէր
տանն գայցէ՝ յերեկորեայ՝ եթէ 'ի մէջ գիշերի՝
36 եթէ 'ի հաւախօսի՝ եթէ ընդ առաւօտս: Գուցէ
եկեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ 'ի քուն:
37 Բայց զոր ձեզդ ասեմ, ամենեցուն ասեմ Ար-
թուն կացէք:

## ԳԼ. ԺԴ

1 Եւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց
աւուրց. խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ ե-
թէ զիա՛րդ զնա նենգաւ կալեալ սպանանիցեն:
2 Բայց ասէին՝ թէ Մի՛ 'ի տօնի աստ, զի մի՛ խռո-
3 վութիւն լինիցի 'ի ժողովրդեանն: Եւ մինչ էր 'ի
Բեթանիայ 'ի տան Սիմովնի բորոտի բազմեալ,
եկն կին մի որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի
մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ 'ի վերայ
4 գլխոյ նորա. Եւ աշակերտքն զչարէին և ասէին.
5 Ընդէ՞ր եղև կորուստ իւղոյդ այդորիկ: Մարթ էր
զայդ իւղ վաճառել աւելի քան երեք հարիւր դա-
հեկանի, և տալ աղքատաց. և զայրանային նմա
6 յոյժ: Եւ Յիսուս ասէ ցնոսա. Թո՛յլ տուք դմա՝
զի՞ աշխատ առնէք, զի գործ մի բարի գործեաց դա
7 յիս: Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք,
և յորժամ կամիք՝ կարող էք առնել նոցա բա-
րիս. այլ զիս ոչ յամենայն ժամ ընդ ձեզ ու-
8 նիք: Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խըն-
9 կեաց զմարմին իմ 'ի նշան պատանաց: Ամէն ա-
սեմ ձեզ. Ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ

ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի վասն
10 յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի մի
յերկոտասանից անտի, գնաց առ քահանայապետսն
11 զի մատնեսցէ զնա նոցա։ Նոքա իբրև լուան՝
խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ. և
խնդրէր՝ թէ զիա՛րդ պարապով մատնեսցէ զնա։
12 Եւ յաւուրն բաղարջակերացն՝ յոր-
ժամ զզատիկն զենուին, ասեն ցնա աշակերտքն.
Ո՞ւր կամիս՝ երթիցուք պատրաստեսցուք՝ զի կերի-
13 ցես զզատիկն։ Եւ առաքէ երկուս յաշակերտաց
անտի՝ և ասէ ցնոսա. Երթայք ՚ի քաղաք, և
իբրև մտանիցէք ՚ի քաղաքն՝ պատահեսցէ ձեզ այր
մի որ սափոր ջրոյ յուս ունիցի, երթա՛յք զհետ
14 նորա։ Եւ յո՛ր տուն մտանիցէ, ասասջիք ցտա-
նուտէրն. Վարդապետ ասէ՝ Ո՞ւր են իջևանքն,
15 ուր աշակերտօքս ուտիցեմ զզատիկն. Եւ նա ցուց-
ցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ. անդ
16 պատրաստեսջի՛ք մեզ։ Եւ գնացին պատրաստել
աշակերտքն նորա. եկին ՚ի քաղաքն՝ և գտին որ-
պէս ասացն նոցա. և պատրաստեցին զզատիկն։
17 Եւ իբրև երեկոյ եղև՝ գայ երկոտասանիւքն հան-
18 դերձ։ Եւ իբրև բազմեցան և դեռ ուտէին, ասէ
Յիսուս. Ամէն ասեմ ձեզ՝ զի Մի՛ ոմն ՚ի ձէնջ
19 մատնելոց է զիս, որ ուտէ իսկ ընդ իս։ Եւ նո-
քա սկսան տրտմել՝ և ասել մի ըստ միոջէ. Մի՛-
20 թէ ես իցեմ, և միւսն՝ Մի՛թէ ես իցեմ։ Նա
պատասխանի ետ և ասէ ցնոսա. Մի՛ յերկոտա-
սանից այտի, որ մխեաց ընդ իս ՚ի սկաւառակդ։
21 Այլ Որդի մարդոյ երթայ որպէս և գրեալ է վասն

նորա. բայց վա՜յ իցէ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռս
Որդի մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա՝ թէ չէ՛ր
22 իսկ ծնեալ մարդն այն: Եւ մինչդեռ ուտէին,
առեալ Յիսուսի հաց՝ օրհնեաց և եբեկ ետ նոցա,
23 և ասէ. Առէ՛ք՝ այդ է մարմին իմ: Եւ առեալ
բաժակ՝ գոհացաւ և ետ նոցա, և արբին ՚ի նը-
24 մանէ ամենեքեան: Եւ ասէ ցնոսա. Այս է արիւն
իմ նորոյ ուխտի, որ փոխանակ բազմաց հեղա-
25 նի: Ամէն ասեմ ձեզ, թէ Ո՛չ ևս յաւելից ըմ-
պել ՚ի բերոյ որթոյ մինչև ցօրն ցայն՝ յորժամ
26 արբից զնա նոր յարքայութեան Աստուծոյ: Եւ
գոհացեալ՝ ելին ՚ի լեառն Ձիթենեաց:
27 Եւ ասէ ցնոսա Յիսուս. Ամենեքին գայթագ-
ղելոց էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է.
թէ Հարից զհովիւն՝ և ոչխարքն ցրուեսցին:
28 Այլ յետ յարութեան իմոյ՝ յառաջագոյն երթայց
29 քան զձեզ ՚ի Գալիլեա: Պատասխանի ետ Պետ-
րոս և ասէ ցնա. Թէպէտ և ամենեքին գայ-
30 թագղեսցին, այլ ես ո՛չ: Եւ ասէ ցնա Յիսուս.
Ամէն ասեմ քեզ. թէ Դու իսկ յայսմ գիշերի
մինչչև հաւու խօսեալ իցէ՝* երիցս ուրասցիս զիս:
31 Իսկ Պետրոս առաւել ևս պնդէր և ասէր. Եթէ
մեռանել ևս հասանիցէ ընդ քեզ՝ զքեզ ո՛չ ու-
32 րացայց. նոյնպէս և ամենեքեան ասէին: Գան ՚ի
գեօղն՝ որում անուն էր Գեթսեմանի. և ասէ
ցաշակերտսն. Նստարո՛ւք աստ՝ մինչև ես յաղօթս
33 կացից: Եւ առնու ընդ իւր զՊետրոս և զՅա-

* Ի Յոյնն, երկիցս

կովբոս և զՅովհաննէս, և սկսաւ տխրել և հո-
34 գալ: Յայնժամ ասէ ցնոսա. Տրտում է անձն
իմ մինչև ՚ի մահ, մնացէք աստ՝ և արթուն կա-
35 ցէք: Եւ մատուցեալ սակաւիկ մի յառաջ, ան-
կաւ ՚ի վերայ երեսաց իւրոց յերկիր. և կայր յա-
ղօթս, զի եթէ հնար իցէ՝ անցցէ ՚ի նմանէ
36 ժամն: Եւ ասէ. Աբբա՛ Հայր՝ ամենայն ինչ քեզ
հնարաւոր է, անցո՛ զբաժակս զայս յինէն.
բայց ո՛չ որպէս ես կամիմ՝ այլ որպէս դու կա-
37 միս: Եւ գայ գտանէ զնոսա զի ննջէին, և ասէ
ցՊետրոս. Սիմոն ննջես. ո՛չ կարացեր ժամ մի
38 արթուն կալ: Արթո՛ւն կացէք և յաղօ՛թս կացէք,
զի մի՛ մտջիք ՚ի փորձութիւն. *ոգիս յօժար է՝
39 բայց մարմինս տկար": Եւ դարձեալ չոքաւ եկաց
40 յաղօթս, և զնոյն բանս ասաց: Դարձաւ միւսան-
գամ անդրէն, և եգիտ զնոսա ՚ի քուն. քանզի
էին աչք նոցա ծանրացեալ, և ո՛չ գիտէին թէ
41 զի՞նչ պատասխանի տայցեն նմա: Գայ երրորդ ան-
գամ՝, և ասէ ցնոսա. Ննջեցէ՛ք այսուհետև և հան-
գերո՛ւք, զի հասեալ է վախճան. եկն ժամ՝ և
ահա մատնի Որդի մարդոյ ՚ի ձեռս մեղաւորաց:
42 Ո՛ն արիք գնասցո՛ւք. զի ահաւասիկ մերձեցաւ՝ որ
43 մատներոցն է զիս: Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝
գայ Յուդա Սկարիովտացի՝ մի յերկոտասանից
անտի, և ընդ նմա ամբոխ սուսերօք և բրօք՝
՚ի քահանայապետացն և ՚ի դպրաց և ՚ի ծերոց:
44 Տուեալ էր նշան մատնչին՝ և ասէր. Ընդ որում

---

* ՚Ի Յոյնն, հոգին յօժար է բայց մարմինն տկար

ես համբուրեցից՝ նա է. կալջի՛ք զնա և տարջի՛ք
45 զգուշութեամբ։ Եւ մատուցեալ վաղվաղակի՝ ասէ
46 ցնա. Ռաբբի՛ Ռաբբի՛. և համբուրեաց զնա։ Եւ
47 նոքա արկին ՚ի նա ձեռս՝ և կալան զնա։ Եւ մի
ոմն յայնցանէ՝ որ զնովաւն կային՝ ձգեաց սուր, և
եհար զծառայ քահանայապետին, և ՚ի բաց եհան
48 զունկն նորա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ
ցնոսա. Իբրև ՚ի վերայ աւազակի՛ ելի՛ք սուսերօք
49 և բրօք ունել զիս։ Հանապազ առ ձեզ էի՝ և ուսու-
ցանէի ՚ի տաճարին, և ո՛չ կալայք զիս. այլ զի լց-
50 ցին գիրք մարգարէիցն։ Յայնժամ թողին զնա աշա-
51 կերտքն ամենեքին՝ և փախեան։ Եւ ոմն երիտա-
սարդ զհետ երթայր նորա՝ արկեալ զիւրև կտաւ
52 մի ՚ի մերկուց. ունէին զնա երիտասարդքն։ Եւ
նորա թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ ՚ի նոցանէ։
53 Եւ տարան զՅիսուս առ քահանայապետն Կա-
յիափա. և գային ընդ նմա ամենայն քահանայա-
54 պետքն և դպիրք և ծերք։ Եւ Պետրոս երթայր
՚ի հեռաստանէ զհետ նորա մինչև ՚ի ներքս իսկ
՚ի գաւիթ քահանայապետին, և նստէր ընդ սպա-
55 սաւորսն՝ և ջեռնոյր առ լուսոյն։ Իսկ քահանայա-
պետքն և ամենայն ատեանն, խնդրէին հակա-
ռակ Յիսուսի վկայութիւն ինչ, զի սպանանիցեն
56 զնա, և ո՛չ գտանէին։ Զի բազումք սուտ վկայու-
թիւն վկայէին զնմանէ, և նման միմեանց ո՛չ էին
57 վկայութիւնքն։ Այլք յարուցեալ վկայէին սուտ
58 զնմանէ, և ասէին։ Թէ մեք լուաք ՚ի դմանէ՝ զի
ասէր. Ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ,
և զերիս աւուրս շինեցից այլ՝ առանց ձեռագոր-

59 ծի ։ Այլ և այնպէս չէր նման վկայութիւնն
60 նոցա ։ Ապա յարուցեալ քահանայապետն 'ի մէջ՝
հարցանէր զՅիսուս , և ասէր . Ոչի՞նչ տաս պա-
61 տասխանի , զինչ դոքա զքէն վկայեն ։ Եւ նա
լուռ և եթ կայր՝ և չտայր ինչ պատասխանի ։
Դարձեալ քահանայապետն հարցանէր զնա կրկին
անգամ և ասէր . Դու ես Քրիստոս Որդի Ա-
62 տուծոյ օրհնելոյն ։ Պատասխանի ետ Յիսուս և
ասէ ցնա . Դու ասացեր՝ թէ ես եմ . բայց տե-
սանիցէք զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ Զօրու-
63 թեանն , և եկեալ ընդ ամպս երկնից ։ Եւ քա-
հանայապետն պատառեաց վաղվաղակի զպատմու-
ճանս իւր՝ և ասէ . Զի՞նչ ևս պիտոյ են մեզ
64 վկայք ։ Ահա՛ լուայք ամենեքին զհայհոյութիւն 'ի
բերանոյ դորա , զիա՞րդ թուի ձեզ . և ամենեքեան
65 դատապարտեցին զնա՝ թէ մահապարտ է ։ Եւ ո-
մանք սկսան թքանել ընդ երեսս նորա , ձորձ
զգլխով արկանել՝ կուփել և ասել . Մարգարէա՛ց
մեզ Քրիստոսդ՝ ո՞վ է այն որ եհարն զքեզ . և
66 սպասաւորքն ապտակս հանէին նմա ։ Եւ Պետրոս
մինչդեռ էր 'ի խոնարհ 'ի գաւթին , գայ աղախին
մի քահանայապետին , և տեսանէ զնա՝ զի ջեռ-
67 նոյր . հայեցաւ ընդ նա՝ և ասէ . Եւ դու ընդ Յի-
68 սուսի Նազովրեցւոյ էիր ։ Նա ուրացաւ և ասէ .
Ո՛չ ճանաչեմ և ո՛չ գիտեմ զինչ դուդ ասես՝ և
իբրև ել յարտաքին գաւիթն , և հաւ խօսեցաւ ։
69 Դարձեալ ետես զնա աղախինն , և սկսաւ ասել
ցայնոսիկ որ շուրջն կային , թէ Եւ սա 'ի նո-
70 ցանէ է ։ Եւ նա դարձեալ ուրացաւ , և յետ սա-

կաւ միոյ՝ դարձեալ որ շուրջն կային, ասեն ցՊետ-
րոս. Արդարեւ եւ դու 'ի նոցանէ ես քանզի Գա-
71 լիլեացի ես՝ եւ խօսքդ իսկ քո նման են: Եւ նա
սկսաւ նզովել երդնուլ եւ ասել, Թէ Ո՛չ գիտեմ
72 զայրն՝ զորմէ դուքդ ասէք: Եւ նոյնժամայն կրկին
հաւ խօսեցաւ. եւ յիշեաց Պետրոս զբանն՝ զոր
ասաց ցնա Յիսուս, Թէ Չև՛ իցէ հաւու երիցս
խօսեալ՝ զի դու երիցս ուրասցիս զիս. եւ սկսաւ լալ:

## ԳԼ. ԺԵ

1 Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խորհուրդ արար-
եալ քահանայապետիցն հանդերձ ծերովքն եւ
դպրօք՝ եւ ամենայն ատեանն, կապեցին զՅի-
2 սուս՝ եւ տարան մատնեցին Պիղատոսի: Եհարց
զնա Պիղատոս եւ ասէ. Դո՞ւ ես Թագաւորն Հր-
էից. Նա պատասխանի ետ նմա եւ ասէ՝ Դու
3 ասես: Եւ չարախօսէին զնմանէ յոյժ քահանայա-
4 պետքն, եւ նա ոչինչ տայր պատասխանի: Իսկ
Պիղատոս դարձեալ հարցանէր զնա. Ոչի՞նչ տաս
պատասխանի, տես քանի ամբաստանեն զքէն:
5 Եւ Յիսուս այնուհետեւ ոչինչ ետ պատասխանի,
6 մինչեւ զարմանալ յոյժ Պիղատոսի: Բայց ըստ
տօնի արձակէր նոցա զմի ոք զկապեալ, զոր ինք-
7 եանք խնդրէին: Եւ էր որում անուն էր Բա-
րաբբա՝ կապեալ ընդ խռովիչսն, որոց 'ի խռո-
8 վելն՝ այր մի սպանեալ էր: 'Ի ձայն բարձր սկսաւ
աղաղակել ամբոխն եւ խնդրել՝ որպէս սովոր էր,
9 զի արձակեսցէ նոցա զԲարաբբայն: Պատասխա-

նի ետ Պիղատոս և ասէ ցնոսա. Կամի՞ք զի ար-
10 ձակեցից ձեզ զարքայն Հրէից։ Քանզի գիտէր
թէ առ նախանձու մատնեցին զնա քահանայա-
11 պետքն։ Որք և զամբոխն հաւանեցուցին՝ զի ար-
12 ձակեսցէ նոցա զԲարաբբայն։ Դարձեալ պատաս-
խանի ետ Պիղատոս և ասէ ցնոսա. Իսկ զի՞նչ
13 կամիք թէ արարից զարքայն Հրէից։ Եւ նոքա
դարձեալ աղաղակէին՝ յուզեալք 'ի քահանայա-
14 պետից, 'Ի խաչ հան զդա։ Ասէ ցնոսա Պիղա-
տոս. Զի՞նչ ինչ չար արարեալ իցէ դորա. և
նոքա առաւել ևս աղաղակէին և ասէին, 'Ի խաչ
15 հան զդա։ Իսկ Պիղատոս իբրև զմիտս կամեցաւ
հաճել զամբոխին, արձակեաց նոցա զԲարաբ-
բայն. և զՅիսուս գան հարեալ ետ 'ի ձեռս, զի
16 'ի խաչ ելանիցէ։ Եւ զինուորքն տարան զնա 'ի
ներքս 'ի գաւիթն՝ ուր հրապարակն էր. և կոչեն
17 միանգամայն զամենայն զգունդն, Եւ զգեցուցանեն
նմա քղամիդ կարմիր և ծիրանիս, և եդին 'ի գլ-
18 լուխ նորա պսակ արարեալ 'ի փշոց։ Եւ սկսան
ողջոյն տալ նմա՝ և ասել։ Ողջ եր արքայդ Հր-
19 րէից։ Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ, և թքա-
նէին ընդ երեսս, և 'ի ծունր իջեալ երկիրպա-
20 գանէին նմա։ Եւ իբրև կատակեցին զնա՝ մերկա-
ցուցին զքղամիդն և զծիրանիս, և զգեցուցին նմա
զիւր հանդերձն, և ածին արտաքս զի 'ի խաչ
21 հանցեն զնա։ Եւ ունէին պահակ զՍիմոն Կիւրե-
նացի՝ որ ընդ այն անցանէր՝ եկեալ յագարակէ,
զհայրն Աղէքսանդրի և Ռուփայ. զի բարձցէ զխա-
22 չափայտն նորա։ Եւ ածեն զնա 'ի Գողգոթա՝

23 տեղի մի, որ թարգմանի տեղի կառափելոյ։ Եւ
տային նմա գինի զմռսեալ, և նա ոչ առ. և
24 հանին զնա ’ի խաչ։ Եւ բաժանեցին զհանդերձս
նորա, արկեալ վիճակս ’ի վերայ թէ ո զինչ առ-
25 նուցու։ Էր ժամ երրորդ՝ և հանին զնա ’ի խաչ։
26 Եւ էր գիր վնասու նորա գրեալ՝ թէ Թագաւոր է
27 Հրէից։ Եւ ընդ նմա հանին ’ի խաչ երկուս ա-
ւազակս. մի ընդ աջմէ, և մի ընդ ահեկէ նորա։
28 Եւ լցաւ գիրն որ ասէ, թէ Ընդ անօրէնս հա-
29 մարեցաւ։ Եւ որք անցանէինն՝ հայհոյէին զնա
շարժեալ զգլուխս իւրեանց և ասէին. Վա՛հ որ
30 քակէիր զտաճարն և զերիս աւուրս շինէիր. Ապ-
31 րեցո՛ զանձն քո և էջ ’ի խաչէդ։ Նոյնպէս և քա-
հանայապետքն այպն արարեալ ընդ միմեանս հան-
դերձ դպրօքն՝ ասէին. Զայլս ապրեցոյց՝ զանձն ոչ
32 կարէ ապրեցուցանել։ Քրիստոսդ արքա՛յդ Իս-
րայէլի, իջցէ՛ այժմ ’ի խաչէ այտի, զի տեսցուք
և հաւատասցուք զմա. և որ ընդ նմա ’ի խաչն
33 ելեալ էին՝ նախատէին զնա։ Եւ իբրև վեց ժամ
եղև՝ խաւար կալաւ զամենայն երկիր մինչև ցինն
34 ժամ։ Եւ յիններորդ ժամուն աղաղակեաց Յի-
սուս ’ի ձայն մեծ, և ասէ. Էլի՛ Էլի՛ լամա սա-
բաքթանի. որ թարգմանի. Աստուած իմ Աս-
35 տուած իմ՝ ընդէ՞ր թողեր զիս։ Եւ ոմանք ’ի նո-
ցանէ որ շուրջն կային զնովաւ՝ իբրև լուան, ա-
36 սէին թէ զԵղիա կարդայ։ Եւ ընթացեալ մի ոմն՝
ելից սպունգ մի քացախով, և հարեալ յեղեգան՝
տայր ըմպել նմա, և ասէ. Թո՛յլ տուր տեսցուք՝
37 գայ՞ Եղիա իջուցանել զդա։ Եւ Յիսուս արձակ-

38 եաց ձայն մեծ՝ և եհան զոգի ։ Եւ վարագոյր տա-
ճարին պատառեցաւ յերկուս 'ի վերուստ մինչև 'ի
39 խոնարհ ։ Եւ տեսեալ հարիւրապետին որ կայր
անդ՝ եթէ աղաղակեաց և եհան զոգի, ասէ. Ար-
40 դարև այրս այս Որդի Աստուծոյ էր ։ Էին և կա-
նայք՝ որ հայէին 'ի հեռաստանէ. յորս էր Մա-
րիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակովբու
41 փոքրկան, և Յովսեայ մայրն, և Սողոմէ. Որք
յորժամ էին 'ի Գալիլեա՝ զհետ շրջէին Նորա և
պաշտէին զնա. և այլ բազում կանայք որ ընդ
Նմա իսկ ելեալ էին յԵրուսաղէմ ։
42 Եւ իբրև երեկոյ եղև՝ քանզի ուրբաթ էր որ 'ի
43 շաբաթն մտանէր, Եկեալ Յովսէփ որ յԱրի-
մաթեայն էր՝ այր պարկեշտ Նախարար, որ և ինքն
իսկ ակն ունէր արքայութեանն Աստուծոյ. հա-
մարձակեցաւ եմուտ առ Պիղատոս, և խնդրեաց
44 զմարմինն Յիսուսի ։ Եւ Պիղատոս զարմացաւ թէ
այնչափ վաղ մեռաւ. և կոչեցեալ առ ինքն զհա-
րիւրապետն՝ եհարց զնա և ասէ, թէ Արդարև
45 այնչափ վա՞ղ մեռաւ ։ Եւ իբրև ստուգեաց 'ի հա-
րիւրապետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսե-
46 փայ ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ՝ և իջուցեալ զնա
պատեաց կտաւովն, և եդ 'ի գերեզմանի, զոր էր
փորեալ 'ի վիմէ. և թաւալեցոյց վէմ մի 'ի դու-
47 ռըն գերեզմանին ։ Իսկ Մարիամ Մագդաղենացի
և Մարիամ Յակովբայ և Յովսեայ, տեսին զտե-
ղին ուր եդաւ ։

# ԳԼ. ԺԶ.

1 Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ Մագդաղե-
նացի՝ եւ Մարիամ Յակովբեայ՝ եւ Սողովմէ՝ չոքան
պատրաստեցին խունկս, զի եկեսցեն օծցեն զնա:
2 Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ՚ի գերեզ-
3 մանն ընդ արեւագալն: Եւ ասէին ցմիմեանս. Ո՞վ
թաւալեցուսցէ մեզ զվէմն ՚ի դրաց գերեզմանին:
4 Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն
5 ՚ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ: Եւ մտեալ
՚ի ներքս ՚ի գերեզմանն՝ տեսին երիտասարդ մի՝
զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան
6 սպիտակ, եւ զարհուրեցան: Եւ նա ասէ ցնոսա.
Մի՛ երկնչիք. զՅիսուս խնդրէք զՆազովրեցի զխա-
չելեալն. յարեաւ՝ չէ՛ աստ. ահաւասիկ տեղին
7 ուր եդին զնա: Այլ երթա՛յք ասացէք ցաշակերտս
նորա եւ ցՊետրոս, եթէ ահա յառաջագոյն եր-
թայ քան զձեզ ՚ի Գալիլեա. անդ տեսանիցէք
8 զնա՝ որպէս ասաց ձեզ: Եւ իբրեւ լուան՝ ելին եւ
փախեան ՚ի գերեզմանէն. քանզի զահի հարեալ
էին. եւ ո՛չ ումեք ինչ ասացին, զի երկնչէին:
9 Յարուցեալ Յիսուս առաւօտուն առաջին միա-
շաբաթուն՝ երեւեցաւ Մարիամու Մագդաղենացւոյ,
10 յորմէ հանեալ էր զեօթն դեւն: Եւ նա երթեալ
պատմեաց այնոցիկ որ ընդ նմայն էին, մինչդեռ
11 սգային եւ լային: Նոքա իբրեւ լուան թէ կենդանի
12 է՝ եւ երեւեցաւ նմա, ո՛չ հաւատացին: Յետոյ

երեւեցաւ այլով կերպարանաւ՝ * որք երթային
13 յանդաստան": "Նոքա չոքան պատմեցին այլոց, եւ
14 ո՛չ նոցա հաւատացին: Յետոյ մինչդեռ բազմեալ
էին մետասանքն, երեւեցաւ նոցա, եւ թշնամանեաց
զանհաւատութիւն նոցա, եւ զխստասրտութիւն.
զի որ երեւեցաւ նոցա յարուցեալ 'ի մեռելոց՝ եւ նո-
15 քա ո՛չ հաւատացին: Եւ ասէ ցնոսա. Երթա՛յք
յաշխարհ ամենայն, եւ քարոզեցէ՛ք զաւետարանն
16 ամենայն արարածոց: Որ հաւատայ եւ մկրտեսցի՝
կեցցէ, եւ որ ո՛չն հաւատայ՝ դատապարտեսցի:
17 "Նշանք այսոքիկ՝ որ հաւատանն, երթիցեն զհետ
այնոցիկ. յանուն իմ դեւս հանցեն, լեզուս խօ-
18 սեսցին: 'Ի ձեռս իւրեանց օձս բարձցեն, եւ եթէ
մահացու ինչ դեղ արբցեն՝ նոցա ինչ ո՛չ վնասեսցէ.
'ի վերայ հիւանդաց ձեռս դիցեն՝ եւ բժշկեսցին:
19 Եւ ինքն Տէր Յիսուս յետ խօսելոյն ընդ նոսա՝
համբարձաւ յերկինս, եւ նստաւ ընդ աջմէ Հօր:
20 Եւ նոքա ելեալ քարոզէին ընդ ամենայն երկիր՝
Տեառն գործակցութեամբ. եւ զբանն հաստատէին
ամենայն նշանօք՝ որ երթայր զհետ նոցա:

---

* 'Ի Յոյնն, երկուցն 'ի նոցանէ, որք գնային եւ երթային յանդաստան:

# Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

## ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ

### ԳԼ. Ա

1 ՔԱՆԶԻ բազումք յօժարեցին վերստին կար-
գել զպատմութիւնն վասն իրացն հաստատելոց 'ի
2 մեզ. Որպէս աւանդեցին մեզ՝ որ 'ի սկզբանէ ա-
3 կանատեսք և սպասաւորք եղեն բանին ։ Կամ եղև
և ինձ, որ 'ի սկզբանէ զհետ երթեալ էի ամենայնի
ճշմարտութեամբ, կարգաւ գրել քեզ՝ քաջդ Թէո-
4 փիլէ. Զի ծանիցես զբանիցն՝ որոց աշակերտեցար,
զճշմարտութիւն ։
5 Եւ եղև յաւուրս Հերովդի արքայի Հրէաստանի,
քահանայ ոմն՝ անուն Զաքարիա 'ի դասակարգէ Ա-
բիայ. և կին նորա 'ի դստերաց Ահարոնի, և անուն
6 նորա Եղիսաբեթ ։ Եւ էին արդարք երկոքին առաջի
Աստուծոյ, գնային յամենայն պատուիրանս և յիրա-
7 ւունս Տեառն անարատք ։ Եւ ոչ գոյր նոցա որդեակ,
քանզի Եղիսաբեթ ամուլ էր. և երկոքեան անցեալ
8 էին զաւուրբք իւրեանց ։ Եւ եղև 'ի քահանայանալն
նորա ըստ կարգի աւուրցն հասանելոյ առաջի Աս-
9 տուծոյ, Ըստ օրինի քահանայութեանն՝ եհաս նմա

10 խունկ արկանել՝ մտեալ 'ի տաճարն Տեառն : Եւ ա-
մենայն բազմութիւն ժողովրդեանն կային յաղօթս
11 արտաքոյ՝ 'ի ժամ խնկոցն : Եւ երեւեցաւ նմա հրեշ-
տակ Տեառն . զի կայր ընդ աջմէ սեղանոյ խնկոցն :
12 Եւ խռովեցաւ Զաքարիա՝ իբրեւ ետես , եւ անկաւ
13 ահ 'ի վերայ նորա : Ասէ ցնա հրեշտակն Տեառն .
Մի՛ երկնչիր Զաքարիա՝ զի լսելի եղեն աղօթք քո ,
եւ կին քո Եղիսաբեթ ծնցի քեզ որդի՝ եւ կոչես-
14 ցես զանուն նորա Յովհաննէս : Եւ եղիցի քեզ
ուրախութիւն եւ ցնծութիւն , եւ բազումք 'ի ծննդ-
15 եան նորա խնդասցեն . Զի եղիցի մեծ առաջի
Տեառն . եւ գինի եւ օղի մի՛ արբցէ . եւ Հոգւով Սրբով
16 լցցի անդստին յորովայնէ մօր իւրոյ : Եւ զբազումս
յորդւոցն Իսրայէլի դարձուցէ 'ի Տէր Աստուած
17 իւրեանց : Եւ ինքն եկեսցէ առաջի նորա հոգւով
զօրութեամբ Եղիայի , դարձուցանել զսիրտս հարց
յորդիս , եւ զանհաւանս յիմաստութիւն արդարոց .
18 պատրաստել Տեառն ժողովուրդ կազմեալ : Եւ ասէ
Զաքարիա ցհրեշտակն . Եւ իւ գիտացից զայդ ,
զի ես ծեր եմ , եւ կին իմ՝ անցեալ զաւուրբք
19 իւրովք : Պատասխանի ետ հրեշտակն՝ եւ ասէ ցնա .
Ես եմ Գաբրիէլ՝ որ կամ առաջի Աստուծոյ , եւ
առաքեցայ խօսել ընդ քեզ՝ եւ աւետարանել քեզ
20 զայդ : Եւ ահա եղիցիս համր , եւ մի՛ կարասցես
խօսել մինչեւ ցօրն՝ յորում այդ լինիցի . փոխանակ
զի ոչ հաւատացեր բանից իմոց՝ որք լցցին 'ի ժա-
21 մանակի իւրեանց : Եւ ժողովուրդն ակն ունէր Զա-
քարիայ , եւ զարմանային ընդ յամելն նորա 'ի տա-
22 ճարին : Եւ իբրեւ ել՝ ոչ կարէր խօսել ընդ նոսա .

և իմացան՝ թէ տեսիլ ետես ՚ի տաճարին . և նա
նշանացի խօսէր ընդ նոսա , և կայր պապանձեալ :
23 Եւ եղև իբրև լցան աւուրք պաշտաման նորա ,
24 գնաց ՚ի տուն իւր : Եւ յետ աւուրցն այնոցիկ՝ յղա-
ցաւ Եղիսաբեթ կինն նորա , և թաքուցանէր զան-
25 ձըն ամիսս հինգ , և ասէր : Զի՞նչ գործ գործեաց
ընդ իս Տէր յաւուրս՝ յորս հայեցաւ յիս բառնալ
զնախատինս իմ ՚ի մարդկանէ :
26 Եւ յամսեանն վեցերորդի՝ առաքեցաւ Գաբրիէլ
հրեշտակ յԱստուծոյ ՚ի քաղաք մի Գալիլեացւոց ,
27 որում անուն էր Նազարէթ , Առ կոյս խօսեցեալ
առն , որում անուն էր Յովսէփ՝ ՚ի տանէ Դաւթի .
28 և անուն կուսին Մարիամ : Եւ եկեալ առ նա՝ ասէ .
29 Ուրա՛խ լեր բերկրեալդ , Տէր ընդ քեզ : Եւ նա ընդ
բանսն խռովեցաւ , և խորհէր ընդ միտս՝ թէ ո՞ր-
30 պիսի ինչ իցէ ողջոյնս այս : Եւ ասէ ցնա հրեշ-
տակն . Մի՛ երկնչիր Մարիամ, զի գտեր շնորհս
31 յԱստուծոյ : Եւ ահա յղասջիր՝ և ծնցես որդի , և
32 կոչեսցես զանուն նորա Յիսուս : Նա եղիցի մեծ ,
և Որդի Բարձրելոյ կոչեսցի . և տացէ նմա Տէր
Աստուած զաթոռն Դաւթի հօր նորա . և թագա-
ւորեսցէ ՚ի վերայ տանն Յակովբայ ՚ի յաւիտեանս .
33 Եւ թագաւորութեան նորա վախճան մի՛ լիցի :
34 Եւ ասէ Մարիամ ցհրեշտակն . Զիա՞րդ լինիցի ինձ
35 այդ , քանզի զայր ո՛չ գիտեմ : Պատասխանի ետ
հրեշտակն և ասէ ցնա . Հոգի Սուրբ եկեսցէ ՚ի
քեզ , և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ՚ի
վերայ քո . քանզի և որ ծնանելոցն է ՚ի քէն՝
36 սուրբ է , և Որդի Աստուծոյ կոչեսցի : Եւ ահա

Եղիսաբեթ ազգական քո՝ և նա յղի է ՚ի ծերու-
թեան իւրում. և այս վեցերորդ ամիս է նորա՝ որ
37 ամուլն կոչեցեալ էր. Զի ոչ անկարասցի առ յԱս-
38 տուծոյ ամենայն բան: Եւ ասէ Մարիամ. Ահա-
ւասիկ՝ կամ աղախին Տեառն, եղիցի ինձ ըստ բանի
քում: Եւ գնաց ՚ի նմանէ հրեշտակն:
39 Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ, գնաց
՚ի լեռնակողմն փութապէս ՚ի քաղաքն Յուդայ:
40 Եւ եմուտ ՚ի տուն Զաքարիայ, և ետ ողջոյն
41 Եղիսաբեթի: Եւ եղև իբրև լուաւ զողջոյնն Մա-
րիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն յորովայնի
42 նորա. և լցաւ Եղիսաբեթ Հոգւովն Սրբով. Եւ
՚ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Օրհնեալ ես
դու ՚ի կանայս, և օրհնեալ է պտուղ որովայնի
43 քո: Եւ ուստի՞ է ինձ այս, զի եկեսցէ մայր Տեա-
44 ռն իմոյ առ իս: Զի ահաւասիկ՝ իբրև եղև ձայն ող-
ջունի քո յականջս իմ, խաղաց ցնծալով մանուկս
45 յորովայնի իմում: Եւ երանի որ հաւատայցէ՝ եթէ
46 եղիցի կատարումն ասացելոցս նմա ՚ի Տեառնէ: Եւ
47 ասէ Մարիամ. Մեծացուսցէ անձն իմ զՏէր: Եւ
48 ցնծացաւ հոգի իմ յԱստուած փրկիչ իմ: Զի հայե-
ցաւ ՚ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ. զի ահա յայ-
49 սըմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք: Զի ա-
րար ինձ մեծամեծս Հզօրն, և սուրբ է անուն նորա:
50 Եւ ողորմութիւն նորա ազգաց յազգս երկիւղածաց
51 իւրոց: Արար զօրութիւն բազկաւ իւրով. ցրուեաց
52 զամբարտաւանս մտօք սրտից իւրեանց: Քակեաց
զհզօրս յաթոռոց, և բարձրացոյց զխոնարհս:
53 Զքաղցեալս լցոյց բարութեամբ, և զմեծատունս

54 արձակեաց ունայնս : Պաշտպանեաց Իսրայէլի ծա-
55 ռայի իւրում՝ յիշել զողորմութիւնս : Որպէս խօ-
սեցաւ առ հարս մեր՝ Աբրահամու եւ զաւակի նորա
56 յաւիտեան : Եկաց Մարիամ առ նմա իբրեւ ամիսս
երիս , եւ դարձաւ 'ի տուն իւր :
57 Եւ Եղիսաբեթի լցան ժամանակք ծնանելոյ , եւ
58 ծնաւ որդի : Եւ լուան որ շուրջ զնովաւ էին՝ եւ
ազգատոհմ նորա , զի մեծ արար Տէր զողորմու-
59 թիւն իւր ընդ նմա . եւ խնդային ընդ նմա : Եւ
եղեւ յաւուրն ութերորդի՝ եկին թլփատել զման-
կունն , եւ կոչէին զնա յանուն հօր իւրոյ Զաքարիա :
60 Պատասխանի ետ մայր նորա՝ եւ ասէ . Ո՛չ , այլ կո-
61 չեսցի Յովհաննէս : Եւ ասեն ցնա . Չիք ոչ
ոք է յազգի քում , որոյ կոչի անուն Յովհաննէս :
62 Ակնարկէին հօրն նորա՝ թէ զի՞նչ կամիցի կոչել
63 զնա : Եւ խնդրեաց տախտակ , գրեաց եւ ասէ .
Յովհաննէս է անուն դորա . եւ զարմացան ամենե-
64 քին : Եւ բացաւ բերան նորա վաղվաղակի՝ եւ լեզու
65 նորա , եւ խօսէր՝ եւ օրհնէր զԱստուած : Եւ եղեւ ահ
'ի վերայ ամենեցուն որ լսէին զայս , եւ որ շուրջ
բնակեալ էին զնոքօք . եւ ընդ ամենայն լեռնակողմն
Հրէաստանի պատմէին ամենայն բանքս այսոքիկ :
66 Եւ եդին ամենեքեան որ լսէինն՝ 'ի սիրտս իւրեանց ,
եւ ասէին . Զի՞նչ լինիցի մանուկս այս . եւ ձեռն
67 Տեառն էր ընդ նմա : Եւ Զաքարիա հայր նորա
լցաւ Հոգւով Սրբով , մարգարէացաւ եւ ասէ .
68 Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի . զի յայց ել
մեզ , եւ արար փրկութիւն ժողովրդեան իւրում :
69 Եւ յարոյց եղջիւր փրկութեան մեզ 'ի տանէ

70 Դաւթի ծառայի իւրոյ : Որպէս խօսեցաւ բերանով
71 սրբոց՝ որ յաւիտենից մարգարէքն նորա էին : Փրր-
կութիւն 'ի թշնամեաց մերոց, և 'ի ձեռաց ամե-
72 նայն ատելեաց մերոց : Առնել ողորմութիւն ընդ
73 հարս մեր, և յիշել զուխտն իւր սուրբ : Զեր-
դումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերում՝ տալ
74 մեզ, Առանց երկիւղի, 'ի ձեռաց թշնամեաց մերոց
75 փրկեալս : Պաշտել զնա սրբութեամբ և արդարու-
թեամբ առաջի նորա՝ զամենայն աւուրս կենաց մե-
76 րոց : Եւ դու մանուկ՝ Մարգարէ Բարձրելոյ կո-
չեսցիս · զի երթիցես առաջի երեսաց Տեառն՝ պատ-
77 րաստել զճանապարհս նորա, Տալ գիտութիւն
փրկութեան ժողովրդեան նորա, 'ի թողութիւն
78 մեղաց նոցա : Վասն գթութեանց ողորմութեան
Աստուծոյ մերոյ, որովք այց արասցէ մեզ արե-
79 գակն 'ի բարձանց : Երեւել՝ որոց 'ի խաւարի և 'ի
ստուերս մահու նստէին · ուղղել զոտս մեր 'ի ճա-
80 նապարհս խաղաղութեան : Եւ մանուկն աճէր և
զօրանայր հոգւով · և էր յանապատս մինչև յօր
երևելոյ նորա Իսրայէլի :

## ԳԼ. Բ

1 Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել հրաման
յՕգոստոս կայսերէ՝ աշխարհագիր առնել ընդ ա-
2 մենայն տիեզերս : Այս առաջին աշխարհագիր ե-
3 ղև 'ի դատաւորութեան Ասորւոց Կիւրենեայ : Եւ
երթային ամենեքեան մտանել յաշխարհագիր յիւ-
4 րաքանչիւր քաղաքի : Ել և Յովսէփ 'ի Գալիլեէ 'ի

քաղաքէ Նազարեթէ՝ 'ի Հրէաստան, 'ի քաղաք
Դաւթի, որ կոչի Բեթղեհեմ. վասն լինելոյ նո-
5 րա 'ի տանէ և յազգէ Դաւթի, Մտանել յաշխար-
հագիր Մարեմաւ հանդերձ՝ զոր խօսեալն էր նմա,
6 և էր յղի: Եւ եղև 'ի հասանելն նոցա անդր, լցան
7 աւուրք ծննդեանն նորա: Եւ ծնաւ զորդին իւր
զանդրանիկ, և պատեաց 'ի խանձարուրս՝ և եդ
զնա 'ի մսուր. զի ո՛չ գոյր նոցա տեղի յիջևանին:
8 Եւ հովիւք էին 'ի տեղւոջն յայնմիկ բացօթեագք,
որ պահէին զպահպանութիւնս գիշերոյ հօտից իւր-
9 եանց: Եւ հրեշտակ Տեառն երևեցաւ նոցա, և
փառք Տեառն ծագեցին առ նոսա. և երկեան եր-
10 կիւղ մեծ: Եւ ասէ ցնոսա հրեշտակն. Մի՛ երկն-
չիք՝ զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ ուրախութիւն
11 մեծ, որ եղիցի ամենայն ժողովրդեանն. Զի ծնաւ
ձեզ այսօր փրկիչ, որ է Օծեալ Տէր, 'ի քաղաքի
12 Դաւթի: Եւ այս նշանակ ձեզ. գտանիցէք մա-
նուկ պատեալ 'ի խանձարուրս, և եդեալ 'ի մսուր:
13 Եւ յանկարծակի եղև ընդ հրեշտակին ընդ այն-
միկ բազմութիւն զօրաց երկնաւորաց, որ օրհնէին
14 զԱստուած՝ և ասէին: Փառք 'ի բարձունս Աստու-
ծոյ, և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճու-
15 թիւն: Եւ եղև իբրև վերացան 'ի նոցանէ հրեշ-
տակքն յերկինս, ասեն ցմիմեանս հովիւքն. Եկա՛յք
երթիցուք մինչև ցԲեթղեհեմ, և տեսցուք զի՞նչ
16 է բանս այս որ եղև. զոր Տէր եցոյց մեզ: Եւ ե-
կին փութանակի, և գտին զՄարիամ և զՅովսէփ,
17 և զմանուկն եդեալ 'ի մսուր: Եւ ծանեան վասն
18 բանին՝ որ ասացաւ նոցա զմանկանէն: Եւ ամենեք-

եան որ լսէին, զարմանային վասն բանիցն՝ զոր
19 խօսեցան ընդ նոսա հովիւքն։ Եւ Մարիամ զամե-
նայն զբանս զայսոսիկ պահէր, եւ խելամուտ լինէր
20 ՚ի սրտի իւրում։ Եւ դարձան հովիւքն, փառաւոր
առնէին եւ օրհնէին զԱստուած վասն ամենայնի՝
զոր լուան եւ տեսին. որպէս պատմեցաւ նոցա։
21 Եւ իբրեւ լցան աւուրք ութ թլփատել զնա, եւ
կոչեցաւ անուն նորա Յիսուս՝ որ կոչեցեալն էր ՚ի
հրեշտակէն, մինչչեւ յղացեալ էր զնա յորովայնի։
22 Եւ իբրեւ լցան աւուրք սրբութեան նորա ըստ
օրինացն Մովսէսի, ածին զնա յԵրուսաղէմ յանդի-
23 ման առնել Տեառն. Որպէս եւ գրեալ է յօրէնս
Տեառն, թէ ամենայն արու որ բանայ զարգանդ՝
24 սուրբ Տեառն կոչեսցի։ Եւ տալ պատարագ՝ ըստ
ասացելոյն յօրէնս Տեառն, զոյգ տատրակաց,
25 կամ երկուս ձագս աղաւնեաց։ Եւ ահա այր մի էր
յԵրուսաղէմ, որոյ անուն էր Սիմէովն. եւ էր այրն
այն արդար եւ երկիւղած, եւ ակն ունէր մխիթարու-
26 թեանն Իսրայէլի, եւ Հոգի Սուրբ էր ՚ի նմա։ Եւ
էր նորա հրաման առեալ ՚ի Հոգւոյն Սրբոյ՝ մի՛ տե-
27 սանել զմահ, մինչեւ տեսցէ զՕծեալն Տեառն։ Եւ
եկն Հոգւովն ՚ի տաճարն. եւ իբրեւ ածին ծնողքն
զմանուկն Յիսուս՝ առնել նոցա ըստ սովորութեան
28 օրինացն ՚ի վերայ նորա. Եւ նա առ ընկալաւ զնա ՚ի
29 գիրկս իւր, եւ օրհնեաց զԱստուած, եւ ասէ. Արդ՝
արձակես զծառայս քո Տէր ըստ բանի քում ՚ի
30 խաղաղութիւն. Զի տեսին աչք իմ զփրկութիւն
31 քո, Զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովր-
32 դոց։ Լոյս ՚ի յայտնութիւն հեթանոսաց, եւ փառս

33 ժողովրդեան քում Իսրայէլի։ Եւ էին հայրն և մայ-
րըն նորա զարմացեալ ՚ի վերայ բանիցն, որ խօսէին
34 զնմանէ։ Եւ օրհնեաց զնոսա Սիմէոն, և ասէ
ցՄարիամ մայր նորա. Ահա սա կայ ՚ի գլորումն
և ՚ի կանգնումն բազմաց ՚ի մէջ Իսրայէլի, և ՚ի
35 նշան հակառակութեան։ Եւ ընդ քո իսկ անձն
անցցէ սուր. զի յայտնեսցին ՚ի բազում սրտից
36 խորհուրդք։ Եւ անդ էր Աննա մարգարէ՝ դուստր
Փանուէլի յազգէ Ասերայ. սա ինքն անցեալ էր
զաւուրբք բազմօք՝ կեցեալ ընդ առն ամս եօթն ՚ի
37 կուսութենէ իւրմէ։ Եւ էր այրի ամաց իբրև ութ-
սուն և չորից. որ ոչ մեկնէր ՚ի տաճարէն, այլ
պահօք և աղօթիւք պաշտէր զցայգ և զցերեկ։
38 Եւ սա ՚ի նմին ժամու յարուցեալ՝ գոհանայր ըզ-
Տեառնէ, և խօսէր զնմանէ ընդ ամենեսին՝ որ
39 ակն ունէին փրկութեանն Երուսաղէմի։ Եւ իբրև
կատարեցին զամենայն ըստ օրինացն Տեառն, դար-
ձան անդրէն ՚ի Գալիլեա ՚ի քաղաքն իւրեանց
40 Նազարէթ։ Եւ մանուկն աճէր և զօրանայր լի ի-
մաստութեամբ. և շնորհք Աստուծոյ էին ՚ի վերայ
41 նորա։ Եւ երթային ծնողք նորա ամի ամի յԵ-
42 րուսաղէմ ՚ի տօն զատկին։ Եւ իբրև եղեն նորա
ամք երկոտասան, ելանել նոցա յԵրուսաղէմ
43 ըստ սովորութեան տօնին, Եւ կատարել զաւուրսն՝
և դառնալ անդրէն, մնաց Յիսուս մանուկն յԵ-
44 րուսաղէմ. և ոչ գիտացին ծնողքն նորա։ Կար-
ծէին զնմանէ՝ թէ ընդ ուղեկիցսն իցէ. եկին իբրև
աւուր միոյ ճանապարհ՝ և խնդրէին զնա ընդ դրա-
45 ցիսն և ընդ ծանօթս։ Եւ իբրև ոչ գտին, դար-

46 ձան անդրէն յԵրուսաղէմ խնդրել զնա։ Եւ եղեւ
յետ երից աւուրց՝ գտին զնա ՚ի տաճարին, զի
նստէր ընդ վարդապետսն, լսէր ՚ի նոցանէ, եւ հար-
47 ցանէր զնոսա։ Զարմանային ամենեքեան որ լսէին
՚ի նմանէ՝ ընդ իմաստութիւնն եւ ընդ պատասխա-
48 նիս նորա։ Եւ իբրեւ տեսին զնա՝ սքանչացան. եւ
ասէ ցնա մայրն իւր. Որդեակ՝ զի՞նչ գործ գոր-
ծեցեր դու ընդ մեզ. ահաւասիկ հայր քո եւ ես
49 տառապեալք՝ խնդրէաք զքեզ։ Եւ ասէ ցնոսա. Զի՞
խնդրէիք զիս, ո՞չ գիտէիք եթէ ՚ի տան Հօր իմոյ
50 պարտ է ինձ լինել։ Եւ նոքա ոչ իմացան զբանն՝
51 զոր խօսեցաւ ընդ նոսա։ Եւ էջ ընդ նոսա, եւ գը-
նաց ՚ի Նազարէթ. եւ էր նոցա հնազանդ. եւ մայր
նորա պահէր զամենայն զբանսն ՚ի սրտի իւրում։
52 Եւ Յիսուս զարգանայր իմաստութեամբ եւ հասա-
կաւ՝ եւ շնորհօք յԱստուծոյ եւ ՚ի մարդկանէ։

## ԳԼ. Գ.

1 ՚Ի հնգետասաներորդի ամի տէրութեանն Տիբե-
րեայ կայսեր, ՚ի դատաւորութեան Հրէաստանի Պի-
ղատոսի Պոնտացւոյ, եւ ՚ի չորրորդապետութեան Գա-
լիլեացւոց Հերովդի, եւ ՚ի Փիլիպպոսի եղբօր նորա
չորրորդապետութեան Իտուրացւոց եւ ՚ի Տրաքոնաց-
ւոց աշխարհին, եւ ՚ի չորրորդապետութեան Լիւսան-
2 եայ Աբիլենացւոյ, Եւ ՚ի քահանայապետութեան
Աննայի եւ Կայիափայ. եղեւ բան Աստուծոյ ՚ի վերայ
Յովհաննու որդւոյ Զաքարիայ՝ յանապատի անդ։
3 Եւ եկն յամենայն կողմն Յորդանանու՝ քարոզել

մկրտութիւն ապաշխարութեան 'ի թողութիւն մե-
4 ղաց ։ Որպէս և գրեալ է 'ի գիրս պատգամաց Եսայ-
եայ մարգարէի ․ Ձայն բարբառոյ յանապատի ․
Պատրաստ արարէք զճանապարհ Տեառն , և ուղիղ
5 արարէք զշաւիղս նորա ։ Ամենայն ձորք լցցին , և
ամենայն լերինք և բլուրք խոնարհեսցին ․ և եղի-
ցին դժուարինքն 'ի դիւրինս , և առապարքն 'ի
6 հարթ ճանապարհս ․ Եւ տեսցէ ամենայն մարմին
7 զփրկութիւն Աստուծոյ ։ Եւ ասէր ցժողովուրդսն
ելեալս մկրտել 'ի նմանէ ․ Ծնունդք իժից՝ ո՞ եցոյց
8 ձեզ փախչել 'ի բարկութենէն՝ որ գալոց է ։ Արա-
րէք այսուհետև պտուղս արժանի ապաշխարու-
թեան ․ և մի՛ սկսանիցիք ասել՝ եթէ Ունիմք հայր
զԱբրահամ ․ զայս ասեմ ձեզ , եթէ կարօղ է Աստ-
ուած 'ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս
9 Աբրահամու ։ Բայց ահաւասիկ տապար առ ար-
մին ծառոց կայ ․ ամենայն ծառ որ ո՛չ առնէ զպտ-
ուղ բարւոք , հատանի և 'ի հուր արկանի ։
10 Հարցանէին զնա ժողովուրդքն և ասէին ․ Իսկ արդ
11 զի՞նչ գործեսցուք ։ Պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա ․
Որ ունիցի երկու հանդերձս՝ տացէ զմին այնմ ոյր
ոչն գուցէ . և ոյր կայցէ կերակուր՝ նոյնպէս արաս-
12 ցէ ։ Եկին և մաքսաւորք մկրտել , և ասեն ցնա ․
13 Վարդապետ՝ զի՞նչ գործեսցուք ։ Եւ նա ասէ ցնո-
սա ․ Մի՛ ինչ աւելի քան զհրամայեալն ձեզ առ-
14 նիցէք ։ Հարցանէին զնա և զինուորքն՝ և ասէին ․
Եւ մեք զի՞նչ գործեսցուք ․ ասէ ցնոսա ․ Մի՛ զոք
խռովիցէք՝ և մի՛ զոք զրպարտիցէք , շատ լիցին ձեզ
15 թոշակքն ձեր ։ Մինչ ակն ունէր ժողովուրդն՝ և

խորհէին ամենեքեան ՚ի սիրտս իւրեանց վասն
16 Յովհաննու՝ միթէ սա իցէ Քրիստոսն. Պատաս-
խանի ետ ամենեցուն՝ և ասէ. Ես մկրտեմ զձեզ
ջրով. բայց գայ զօրագոյն քան զիս, զորոյ չեմ
բաւական բառնալ զկօշիկս. Նա մկրտեսցէ զձեզ
17 Հոգւով Սրբով և հրով: Որոյ հեծանոցն ՚ի ձեռին
իւրում սրբել զկալ իւր՝ և ժողովել զցորեանն ՚ի
շտեմարանս իւր, և զյարդն այրեսցէ անշէջ հրով:
18 Բազում և այլ ինչ մխիթարութեամբ աւետարանէր
19 ժողովրդեանն: Բայց Հերովդէս չորրորդապետ
յանդիմանեալ ՚ի Նմանէ վասն Հերովդիայ կնոջ
եղբօր իւրոյ՝ և վասն ամենայն չարեացն զոր գործ-
20 եաց Հերովդէս, Յաւել և զայն ևս ՚ի վերայ ամե-
21 նայնի, և եդ ՚ի բանտի զՅովհաննէս: Եւ եղև
՚ի մկրտել ամենայն ժողովրդեանն, և ընդ Յիսուսի
22 մկրտելն՝ և կալ յաղօթս, բանալ երկնից, Եւ իջա-
նել Հոգւոյն Սրբոյ մարմնաւոր տեսլեամբ իբրև
զաղաւնի ՚ի վերայ Նորա. և գալ ձայն յերկնից՝ որ
ասէր. Դու ես Որդի իմ սիրելի, ընդ քեզ հաճե-
23 ցայ: Եւ ինքն Յիսուս էր ամաց իբրև երեսնից
սկսեալ՝ որոց որպէս կարծէր որդի Յովսեփայ: *Որ
Յակովբայն". որ Հեղեայն. որ Մատաթեայն:
24 Որ Ղևեայն. որ Մեղքեայն. որ Յաննեայն. որ
25 Յովսեփայն: Որ Մատաթեայն. որ Ամովսայն. որ
26 Նաւումայն. որ Եսղեայն. որ Նանգեայն: Որ
Մահաթայն. որ Մատաթեայն. որ Սեմեայն.
27 որ Յովսեփեայն. որ Յովդայն: Որ Յովնանայն.

---

* ՚Ի Յոյնն չէ:

որ Ռեսայն · որ Զօրաբաբելին · որ Սաղա-
28 թիէլին · որ Ներեայն : Որ Մելքեայն · որ Ադ-
դեայն · որ Կոսամայն · որ Եղմովդադայն · որ
29 Երայն : Որ Յեսուայն · որ Եղիազարայն · որ Յով-
30 րամայն · որ Մատթայն · որ Ղեւեայն : Որ Շմե-
ոնին · որ Յուդային · որ Յովսեփայն · որ Յովնա-
31 մայն · որ Եղեկիմայն : Որ Մեղեայն · որ Մեն-
նայն · որ Մատաթայն · որ Նաթանայն · որ Դաւ-
32 թին : Որ Յեսսեայն · որ Ովբեդայն · որ Բոոսայն ·
33 որ Սաղմովնայն · որ Նաասոնին : Որ Ամինադա-
բայն · որ Արամայն · *որ Ադմեայն · որ Առնեայն ·"
34 որ Եսրովմայն · որ Փարեսին · որ Յուդային : Որ
Յակովբայն · որ Իսահակայն · որ Աբրահամու · որ
35 Թարային · որ Նաքովրայն : Որ Սերուքայն · որ
Ռագաւայն · որ Փաղեկայն · որ Եբերայն · որ Սա-
36 ղային : Որ Կայնանայն · որ Արփաքսադայն · որ
37 Սեմայն · որ Նոյին · որ Ղամեքայն : Որ Մաթու-
սաղային · որ Ենովքայն · որ Յարեդին · որ Մա-
38 ղաղէելին · որ Կայնանայն : Որ Ենովսայն · որ
Սեթայն , որ Ադամայն · որ Աստուծոյն :

## ԳԼ. Դ

1 Եւ Յիսուս լի Հոգւով Սրբով դարձաւ 'ի Յոր-
2 դանանէ · և վարէր Հոգւովն յանապատ , Յաւուրս
քառասուն փորձեալ 'ի Սատանայէ · և ոչ եկեր ,
և ոչ արբ յաւուրսն յայնոսիկ · և 'ի կատարելն

* 'Ի Յոյնն չէ :

3 նոցա քաղցեաւ։ Եւ ասէ ցնա Սատանայ. Եթէ
Որդի ես Աստուծոյ, ասա՛ քարիդ այդմիկ՝ զի հաց
4 լիցի։ Պատասխանի ետ նմա Յիսուս՝ և ասէ.
Գրեալ է, եթէ Ո՛չ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ
5 ամենայն բանիւ Աստուծոյ։ Եւ հանեալ զնա 'ի լեա-
ռըն մի բարձր՝ եցոյց նմա զամենայն թագաւորու-
6 թիւնս աշխարհի 'ի վայրկեան ժամանակի։ Եւ ա-
սէ ցնա Սատանայ. Քեզ տաց զայս ամենայն
իշխանութիւն և զփառս սոցա, զի ինձ տուեալ է,
7 և ում կամիմ՝ տամ զսա։ Արդ դու եթէ անկեալ
երկիրպագանիցես առաջի իմ, քեզ եղիցի ամենայն։
8 Պատասխանի ետ նմա Յիսուս՝ և ասէ. Գրեալ է.
Երկիրպագցես Տեառն Աստուծոյ քում, և զնա
9 միայն պաշտեսցես։ Եւ ած զնա յԵրուսաղէմ,
և կացոյց 'ի վերայ աշտարակի տաճարին, և ասէ
ցնա. Եթէ Որդի ես Աստուծոյ, ա՛րկ զքեզ աս-
10 տի 'ի վայր։ Զի գրեալ է՝ եթէ Հրեշտակաց իւ-
րոց պատուիրեալ է վասն քո՝ պահել զքեզ։
11 Զի 'ի վերայ ձեռաց բարձցեն զքեզ, մի՛ երբէք
12 հարցես զքարի զոտն քո։ Պատասխանի ետ նմա
Յիսուս՝ և ասէ. Ասացեալ է, թէ Ո՛չ փորձես-
13 ցես զՏէր Աստուած քո։ Եւ կատարեալ զամե-
նայն փորձութիւնն Սատանայի, 'ի բաց եկաց 'ի
նմանէ առ ժամանակ մի։

14 Եւ դարձաւ Յիսուս զօրութեամբ Հոգւոյն 'ի Գա-
լիլեա. և ել համբաւ զնմանէ ընդ ամենայն կող-
15 մանս գաւառին։ Եւ նա ուսուցանէր 'ի ժողովուրդս
16 նոցա փառաւորեալ յամենեցունց։ Եւ եկն 'ի Նա-
զարէթ՝ ուր սնեալն էր. և եմուտ ըստ սովորու-

թեան իւրում՝ յաւուրն շաբաթուց 'ի ժողովուր-
17 դըն: Եւ ետուն նմա գիրս զԵսայեայ մարգարէի,
և յարեաւ ընթեռնուլ. և իբրև եբաց զգիրսն՝ ե-
18 գիտ զայն տեղի յորում գրեալն էր: Հոգի Տեա-
ռըն 'ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. աւե-
տարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել ըզ-
19 բեկեալս սրտիւք. Քարոզել գերեաց զթողութիւն,
և կուրաց տեսանել. արձակել զվիրաւորս 'ի թո-
ղութիւն, քարոզել զտարեկան Տեառն ընդունելի:
20 Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն, և նըս-
տաւ. և ամենեցուն՝ որ 'ի ժողովրդեանն էին աչք
21 'ի նա հայէին: Եւ սկսաւ ասել ցնոսա. Այսօր
22 լցան գիրքս այս յականջս ձեր: Եւ ամենեքին վը-
կայէին նմա, և զարմանային ընդ բանս շնորհացն՝
որ ելանէին 'ի բերանոյ նորա, և ասէին. Ո՞չ սա է
23 որդին Յովսեփայ: Եւ ասէ ցնոսա. Ապաքէն ա-
սիցէք առ իս զառակս զայս. Բժիշկ՝ բժշկեա զան-
ձըն քո. որչափ լուաք՝ զոր արարեր 'ի Կափառ-
24 նաում, արա և աստ 'ի քում գաւառի: Եւ ասէ.
Ամէն ասեմ ձեզ՝ թէ Ոչ մարգարէ ընդունելի
25 'ի քաղաքի իւրում: Արդարև ասեմ ձեզ. զի բա-
զում այրիք էին յաւուրս Եղիայի 'ի մէջ Իսրայէ-
լի՝ յորժամ փակեցանն երկինք զերիս ամս և զվեց
26 ամիս. և եղև սով մեծ ընդ ամենայն երկիր: Եւ
ոչ առ մի 'ի նոցանէ առաքեցաւ Եղիա, բայց մի-
այն 'ի Սարեփթա Սիդոնացւոց՝ առ կին մի այրի:
27 Եւ բազում բորոտք էին յԻսրայէլի առ Եղիսէիւ
մարգարէիւ. և ոչ ոք 'ի նոցանէ սրբեցաւ, բայց մի-
28 այն Նեեման Ասորի: Եւ լցան ամենեքին բարկու-

29 թեամբ 'ի ժողովրդեանն՝ իբրև լսէին զայս: Եւ
յարուցեալ հանէին զնա արտաքոյ քաղաքին, և ա-
ծէին զնա մինչև յարտևան լերինն՝ յորոյ վերայ
քաղաքն նոցա շինեալ էր՝ գահավէժ առնել զնա:
30 Եւ նա անցեալ ընդ մէջ նոցա՝ գնայր:
31 Եւ էջ 'ի Կափառնաում 'ի քաղաքն Գալիլեաց-
32 ւոց, և ուսուցանէր զնոսա 'ի շաբաթուն: Եւ
զարմանային ընդ վարդապետութիւն նորա, զի իշ-
33 խանութեամբ էր բան նորա: Եւ էր 'ի ժողովր-
դեանն այր մի, զոր ունէր այս դիւի պղծոյ, և ա-
34 ղաղակեաց 'ի ձայն մեծ, Ասէ. Թուլացո՛ զի՞ կայ
մեր և քո՝ Յիսուս Նազովրեցի, եկիր կորուսանե՞լ
35 զմեզ. գիտեմք զքեզ ո՛վ ես՝ Սուրբդ Աստուծոյ: Սաս-
տեաց 'ի նա Յիսուս՝ և ասէ. Պապանձեա՛ց՝ և ե՛լ
'ի դմանէ. զգետնեաց զնա դևն 'ի միջի անդ՝ և ել
36 'ի նմանէ, և ինչ ոչ վնասեաց նմա: Եւ եղեն զար-
մանալիք 'ի վերայ ամենեցուն. խօսէին ընդ մի-
մեանս և ասէին. Զի՞նչ է բանս այս, զի իշխա-
նութեամբ և զօրութեամբ սաստէ այսոց պղծոց՝ և
37 ելանեն: Եւ երթայր հռչակ զնմանէ ընդ ամենայն
38 տեղիս շուրջ զգաւառաւն: Եւ յարուցեալ 'ի ժողո-
39 վըրդենէ անտի, եմուտ 'ի տուն Սիմովնի: Զոքանչ
Սիմովնի տագնապէր ջերմամբ մեծաւ. և աղաչեցին
40 զնա վասն նորա: Եկաց առ նմա՝ սաստեաց ջեր-
մանն, և եթող զնա. և վաղվաղակի յարեաւ՝ և
41 պաշտէր զնոսա: Եւ ընդ արևուն մտանել՝ ամենե-
քեան որոց էին հիւանդք 'ի պէսպէս ցաւս՝ բերէ-
ին զնոսա առ նա: Եւ նա իւրաքանչիւր ումեք 'ի
42 նոցանէ դնէր ձեռս՝ և բժշկէր զնոսա: Ելանէին

դևք 'ի բազմաց, աղաղակէին և ասէին. եթէ Դու
ես Որդի Աստուծոյ. և նա սաստէր՝ և ոչ տայր
նոցա թոյլ խօսել, զի գիտէին զնա թէ Քրիս-
տոսն է:
43 Եւ իբրև տիւ եղև՝ ել գնաց յանապատ տեղի.
և ժողովուրդքն խնդրէին զնա. եկին մինչև առ նա՝
44 և արգելուին զնա, զի մի՛ գնասցէ 'ի նոցանէ: Եւ
նա ասէ ցնոսա. Եւ այլոց քաղաքաց պարտ է ինձ
աւետարանել զարքայութիւն Աստուծոյ, զի յայն
45 իսկ առաքեցայ: Եւ քարոզէր 'ի ժողովուրդսն
Գալիլեացւոց:

## ԳԼ. Ե

1 Եւ եղև 'ի խռնել զնովաւ ժողովրդեանն՝ և լսել
զբանն Աստուծոյ, և ինքն կայր առ ծովակին Գեն-
2 նեսարեթայ: Եւ ետես երկուս նաւս՝ զի կային առ
ծովակին, և ձկնորսքն ելեալ 'ի նոցանէ՝ լուանային
3 զգործիսն: Ել նա 'ի մի նաւուցն՝ որ էր Սիմովնի,
և աղաչեաց զնա՝ սակաւիկ մի տանել 'ի ներքս 'ի
ցամաքէն. նստաւ՝ և ուսուցանէր 'ի նաւէ անտի
4 զժողովուրդսն: Եւ իբրև լռեաց 'ի խօսիցն, ասէ
ցՍիմովն. Խաղացո՛ 'ի խորն, և արկէք զգործիս ձեր
5 յորս: Պատասխանի ետ Սիմովն և ասէ ցնա. Վար-
դապետ զամենայն գիշերս աշխատ եղեաք՝ և ոչինչ
կալաք. բայց վասն քո բանիդ՝ արկցուք զգործիսս:
6 Զայս իբրև արարին՝ փակեցին 'ի ներքս բազմու-
թիւն ձկանց յոյժ, մինչև պատառէին ուռկանք
7 նոցա: Եւ ակնարկէին որսակցացն 'ի միւս նաւուն՝

գալ օգնել նոցա. և եկին, և լցին երկոքին նաւքն՝
8 մինչև մերձ ըղնկղմել նոցա: Իբրև ետես Սիմոն
Պետրոս՝ անկաւ առ ծունկս Յիսուսի՝ և ասէ. 'Ի
բա՛ց գնա յինէն Տէր, զի այր մեղաւոր եմ ես:
9 Քանզի ահ պատեաց զնա, և զամենեսեան որ ընդ
նմայն էին, վասն որսոյ ձկանցն զորս ըմբռնեցին:
10 Նոյնպէս և զՅակովբոս և զՅովհաննէս՝ զորդիսն
Զեբեդեայ, որ էին որսակիցք Սիմոնի: Եւ ասէ
ցՍիմոն Յիսուս. Մի՛ երկնչիր՝ յայսմհետէ զմար-
11 դիկ որսայցես 'ի կեանս: Եւ հանեալ զնաւսն 'ի
ցամաք, թողին զամենայն, և գնացին զհետ նորա:
12 Եւ եղև 'ի հասանելն նորա 'ի մի քաղաքացն,
ահա այր մի լի բորոտութեամբ՝ իբրև ետես զՅիսուս,
անկեալ 'ի վերայ երեսաց աղաչեաց զնա՝ և ասէ.
13 Տէ՛ր եթէ կամիս, կարող ես զիս սրբել: Ձգեաց
զձեռն իւր՝ հասոյց 'ի նա՝ և ասէ. Կամիմ՝ սրր-
բեա՛ց. և վաղվաղակի գնաց 'ի նմանէ բորոտու-
14 թիւնն: Եւ նա պատուիրեաց նմա՝ մի՛ ումեք ասել,
այլ թէ երթ ցոյց զանձն քո քահանային. և մատո՛
պատարագ վասն սրբութեան քո, որպէս և հրամայ-
15 եաց Մովսէս՝ 'ի վկայութիւն նոցա: Եւ յորդէր
առաւել բանն զնմանէ. և ժողովէին ժողովուրդք
բազումք լսել՝ և բժշկել 'ի հիւանդութեանէ իւր-
16 եանց: Եւ նա խոյս տայր յանապատ տեղիս, և
կայր յաղօթս:
17 Եւ եղև 'ի միում աւուրց՝ և ինքն ուսուցանէր, և
փարիսեցիքն և օրինացն վարդապետք նստէին. որ
ժողովեալ էին յամենայն քաղաքաց Գալիլեացւոց՝
և Հրէաստանի և Երուսաղէմի. և զօրութիւն Տեա-

18 որն էր 'ի բժշկել զնոսա ։ Եւ աՀա արք բերէին մաՀ-
ճօք զայր մի՝ որ էր անդամալոյծ , և խնդրէին զնա մու-
19 ծանել 'ի ներքս՝ և դնել առաջի նորա ։ Եւ իբրև
ոչ գտանէին թէ ընդ որ մուծանիցեն զնա 'ի ներքս՝
վասն ամբոխին , ելին 'ի տանիս , և 'ի ցուոցն կա-
խեցին զնա , և իջուցին մաՀճօքն Հանդերձ 'ի մէջ
20 առաջի Յիսուսի ։ Եւ տեսեալ զՀաւատսն նոցա՝
ասէ ցնա ․ Այր դու՝ թողեալ լիցին քեզ մեղք
21 քո ։ Սկսան խորՀել դպիրքն և փարիսեցիքն , և
ասեն ․ Ո՞ է սա՝ որ խօսի զՀայՀոյութիւնս , ո՞վ
22 կարէ թողուլ զմեղս՝ բայց միայն Աստուած ։ Իբրև
գիտաց Յիսուս զխորՀուրդսն նոցա , պատասխանի
ետ և ասէ ցնոսա ․ Զի՞ խորՀիք 'ի սիրտս ձեր ։
23 Զի՞նչ դիւրագոյն է ․ ասել՝ թողեալ լիցին քեզ
24 մեղք քո , եթէ ասել՝ Արի և գնա ։ Այլ զի գի-
տասջիք՝ եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ
յերկրի թողուլ զմեղս ․ ասէ ցանդամալոյծն ․ Քեզ
ասեմ՝ Արի առ զմաՀիճս քո՝ և երթ 'ի տուն քո ։
25 Եւ առժամայն յարուցեալ առաջի ամենեցուն՝ առ
զիւրև յորոյ վերայ անկեալ դնէր , գնաց 'ի տուն
26 իւր , և փառաւոր առնէր զԱստուած ։ Զարմանք
կալան զամենեսեան , և փառաւոր առնէին զԱստ-
ուած ․ լի եղեն աՀիւ , և ասեն , եթէ Տեսաք այ-
սօր նոր նշան ։
27 Եւ յետ այնորիկ ել անտի՝ և ետես մաք-
սաւոր մի՝ որում անուն էր Ղևի , զի նստէր 'ի
մաքսաւորութեան ․ և ասէ ցնա ․ Ե՛կ զկնի իմ ։
28 Եւ թողեալ զամենայն՝ յարեաւ գնաց զկնի նորա ։
29 Եւ արար ընդունելութիւն մեծ նմա Ղևի 'ի տան

խուռն․ և էր ժողովուրդ բազում մաքսաւորաց,
30 և այլոց՝ որ էին բազմեալ ընդ նոսա։ Եւ տրտըն-
ջէին փարիսեցիքն և դպիրքն նոցա զնմանէ առ ա-
շակերտսն նորա՝ և ասէին․ Ընդէ՞ր ընդ մաքսա-
31 ւորս և ընդ մեղաւորս ուտէք և ըմպէք։ Պատաս-
խանի ետ Յիսուս՝ և ասէ ցնոսա․ Ո՛չ ինչ են պի-
32 տոյ բժիշկք ողջոց, այլ հիւանդաց։ Եւ ո՛չ եկի կո-
չել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն։
33 Եւ նոքա ասեն ցնա․ Ընդէ՞ր աշակերտքն Յով-
հաննու պահեն ստէպ՝ և խնդրուածս առնեն, նոյն-
34 պէս և փարիսեցւոցն․ և քոյդ ուտեն և ըմպեն։ Եւ
նա ասէ ցնոսա․ Մի՞թէ կարող էք մանկանց առա-
գաստի, մինչ փեսայն ընդ նոսա իցէ, հրաման
35 տալ պահել։ Եկեսցեն աւուրք՝ յորժամ բարձցի ՚ի
նոցանէ փեսայն, ապա պահեսցեն յաւուրսն յայն-
36 նոսիկ։ Ասաց և առակ մի առ նոսա, թէ Ո՛չ ոք
արկանէ ՚ի նոր հանդերձէ ՚ի վերայ հնացեալ ձոր-
ձոյ․ ապա թէ ոչ՝ և զնորն պատառէ, և ընդ հը-
37 նոյն չմիաբանի կապերտն որ ՚ի նորոյն։ Եւ ոչ ո՛ք
արկանէ գինի նոր ՚ի տիկս հինս․ ապա թէ ոչ՝
պայթուցանէ գինին նոր զտիկսն հինս․ ինքն հեղու,
38 և տիկքն կորնչին։ Այլ գինի նոր ՚ի տիկս նորս
39 արկանելի է, և երկոքին պահին։ Եւ ոչ ո՛ք ըմպէ
զհինն՝ և կամիցի զնորն․ քանզի ասէ՝ թէ հինն
քաղցրագոյն է։

## ԳԼ․ Զ․

1 Եւ եղև ՚ի շաբաթու յերկրորդում առաջնոյն՝
անցանել նմա ընդ արտորայսն․ և աշակերտքն նորա

2 կորզէին հասկ՝ շփէին ընդ ափս, եւ ուտէին։ Եւ ո-
մանք ՚ի փարիսեցւոցն ասեն ցնոսա. Զի՞նչ գոր-
3 ծէք՝ զոր չէ՛ օրէն ՚ի շաբաթու։ Պատասխանի ետ
նոցա Յիսուս եւ ասէ. Չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ զոր
արարն Դաւիթ, յորժամ քաղցեաւն ինքն՝ եւ որ
4 ընդ նմայն էին։ Զիա՞րդ եմուտ նա ՚ի տունն Աս-
տուծոյ, եւ զհացն զառաջաւորութեան եկեր՝ եւ ետ
այնոցիկ որ ընդ նմայն էին. զոր ո՛չ էր օրէն ումեք
5 ուտել, բայց միայն քահանայապետացն։ Եւ ասէ
6 ցնոսա. Տէր է Որդի մարդոյ եւ շաբաթու։ Եւ ե-
ղեւ ՚ի միւսում շաբաթուն մտանել նմա ՚ի ժողո-
վուրդն՝ եւ ուսուցանել. եւ էր անդ այր մի՝ եւ ձեռն
7 իւր աջ գօսացեալ էր։ Եւ սպասէին նմա դպիրքն
եւ փարիսեցիք՝ թէ ՚ի շաբաթուն բժշկիցէ, զի գը-
8 տանիցեն չարախօսութիւն զնմանէ։ Եւ նա գի-
տէր զխորհուրդս նոցա. ասէ ցայրն՝ որոյ ձեռնն
գօսացեալ էր. Արի՛ անց ՚ի մէջ։ Եւ նա յարուցեալ
9 եկաց։ Ասէ ցնոսա Յիսուս. Հարցից ինչ զձեզ.
Զի՞նչ արժան է ՚ի շաբաթու, բարի՞ ինչ առնել՝
եթէ չար գործել, ոգի մի ապրեցուցանե՞լ թէ կո-
10 րուսանել։ Եւ հայեցեալ շուրջ զամենեքումբք զայ-
րագին՝ ասէ ցնա. Ձգեա՛ զձեռն քո. եւ նա ձգեաց,
11 եւ հաստատեցաւ ձեռն նորա իբրեւ զմիւսն։ Նոքա
լցան յիմարութեամբ. եւ խօսէին ընդ միմեանս՝ թէ
զինչ առնիցեն Յիսուսի։

12 Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ՝ ել ՚ի լեառն
կալ յաղօթս, եւ հանէր զգիշերն ՚ի գլուխ յա-
13 ղօթսն Աստուծոյ։ Եւ իբրեւ այգ եղեւ՝ կոչեաց զա-
շակերտսն իւր, եւ ընտրեաց ՚ի նոցանէ երկոտա-

14 սանս, զորս և առաքեալս անուանեաց։ Զսիմովն՝ զոր
և Պետրոս անուանեաց, և զԱնդրէաս զեղբայր նո-
րին, և զՅակովբոս, և զՅովհաննէս, և զՓիլիպպոս,
15 և զԲարթողիմէոս, Եւ զՄատթէոս և զԹովմաս,
և զՅակովբոս Ալփեայ, և զՍիմովն զկոչեցեալն նա-
16 խանձայոյզ, Եւ զՅուդա Յակովբայ, և զՅուդա
17 Իսկարիովտացի՝ որ եղև իսկ մատնիչ։ Եւ իջեալ
նոքօք հանդերձ 'ի տեղի մի տափարակ. և ժողով
աշակերտացն նորա՝ և բազմութիւն յոյժ ժողովր-
դեանն յամենայն Հրէաստանէ, և յԵրուսաղեմէ՝
և յայնմ կողմանէ, և 'ի ծովեզերէն Տիւրոսի և
18 Սիդովնի. Որ եկին լսել 'ի նմանէ՝ և բժշկել 'ի
հիւանդութենէ իւրեանց. և նեղեալքն յայսոց
19 պղծոց բժշկէին։ Եւ ամենայն ժողովուրդն խնդ-
րէր մերձենալ 'ի նա, զի զօրութիւն բազում ե-
20 լանէր 'ի նմանէ՝ և բժշկէր զամենեսին։ Եւ նա
ամբարձ զաչս իւր յաշակերտսն իւր՝ և ասէ։ Ե-
րանի՛ աղքատացդ հոգւով, զի ձեր է արքայու-
21 թիւնն Աստուծոյ։ Երանի որ քաղցեալ են այժմ,
զի յագեսցին։ Երանի որ լան այժմ, զի ծիծա-
22 ղեսցին։ Երանի է ձեզ յորժամ ատիցեն զձեզ
մարդիկ, և յորժամ՝ որոշիցեն զձեզ և նախատի-
ցեն, և հանիցեն անուն չար զձէնջ վասն Որդւոյ
23 մարդոյ։ Ուրախ լիջիք յաւուր յայնմիկ և ցնծա-
ջի՛ք, զի ահա վարձք ձեր բազում են յերկինս.
ըստ դմին օրինակի առնէին մարգարէիցն հարք
24 իւրեանց. Բայց վա՜յ ձեզ մեծատանցդ, զի ընկա-
25 լայք զմխիթարութիւն ձեր։ Վա՜յ ձեզ որ յա-
գեալդ էք այժմ՝ զի քաղցիջիք. վա՜յ ձեզ որ ծի-

26 ծաղրէքդ այժմ, զի սգայցէք և լայցէք: Վա՜յ ձեզ
յորժամ բարի ասիցեն զձէնջ ամենայն մարդիկ,
զի այդպէս առնէին սուտ մարգարէիցն հարք նո-
27 ցա: Այլ ձեզ ասեմ որ լսէքդ. Սիրեցէք զթշնա-
28 միս ձեր, բարի արարէք ատելեաց ձերոց: Օրհ-
նեցէք զանիծիչս ձեր. աղօթս արարէք 'ի վերայ
29 նեղչաց ձերոց: Որ հարկանէ զծնօտ քո՝ մատո՛
նմա և զմիւսն. և որ հանէ 'ի քէն զբաճկոն քո՝
30 մի՛ արգելուր 'ի նմանէ և զշապիկս: Ամենայնի որ
խնդրէ 'ի քէն՝ տո՛ւր, և զոր ինչ հանէ ոք 'ի քէն՝
31 մի՛ պահանջեր: Եւ որպէս կամիք թէ արասցեն
ձեզ մարդիկ, այնպէս արասջի՛ք և դուք նոցա:
32 Եւ եթէ սիրէք դուք զսիրելիս ձեր՝ զի՞նչ շնորհ է
ձեր. զի և մեղաւորք սիրեն զսիրելիս իւրեանց:
33 Եւ եթէ բարի առնէք բարերարաց ձերոց՝ ո՞ր շը-
34 նորհ է ձեր. զի և մեղաւորք զնոյն գործեն: Եւ
եթէ տայք փոխ այնոցիկ՝ յորոց ակն ունիցիք առ-
նուլ՝ ո՞ր շնորհ է ձեր. քանզի և մեղաւորք մեղա-
ւորաց փոխ տան, զի առցեն անդրէն զկշիռն:
35 Բայց սիրեցէք զթշնամիս ձեր, և բարի արարէք
ատելեաց ձերոց. և տո՛ւք փոխ՝ ուստի ո՛չ ակն ու-
նիցիք առնուլ. և եղիցին վարձք ձեր բազում, և
եղիջիք որդիք Բարձրելոյ. զի նա քաղցր է 'ի վե-
36 րայ չարաց և ապաշնորհաց: Եղերո՛ւք գթածք՝
37 որպէս և Հայրն ձեր գթած է: Մի՛ դատէք՝ և ո՛չ
դատիցիք. մի՛ պատժէք՝ և ո՛չ պատժիցիք, ար-
38 ձակեցէք և արձակիցիք: Տո՛ւք՝ և տացի ձեզ. չափ
բարւոք թաթաղուն շարժուն զեղուն՝ տացեն 'ի
գոգս ձեր. նովին չափով որով չափէք՝ չափեսցի

* I

39 ձեւ: Ասաց և առակ մի առ նոսա. Մի՛թէ կա-
րիցէ՞ կոյր կուրի առաջնորդել, ո՞չ ապաքէն եր-
40 կոքին ՚ի խորխորատ անկանիցին: Ո՛չ է աշակերտ
լաւ քան զվարդապետ իւր. ամենայն կատարեալն
41 եղիցի իբրև զվարդապետ իւր: Զի՞ տեսանես
զշիւղ յական եղբօր քո, և ՚ի քում ական զգե-
42 րանդ ո՛չ նշմարես: Կամ զիա՞րդ կարես ասել
ցեղբայր քո. Ե՛ղբայր՝ թո՛ղ հանից զշիւղդ յա-
կանէ քումմէ, և դու ՚ի քում ական զգերանդ
ո՛չ տեսանես. կե՛ղծաւոր՝ հան նախ զգերանդ յա-
կանէ քումմէ, և ապա հայեսջիր հանել զշիւղ
43 յականէ եղբօր քո: Զի ո՛չ է ծառ բարի՝ որ առ-
նէ պտուղ չար, և ո՛չ դարձեալ ծառ չար՝ որ առ-
44 նէ պտուղ բարի: Զի իւրաքանչիւր ծառ ՚ի պտղոյ
իւրմէ ճանաչի. զի ո՛չ եթէ ՚ի փշոց քաղեն թուզ,
45 և ո՛չ ՚ի մորենւոյ կթեն խաղող: Մա՛րդ բարի՝
՚ի բարի գանձուց սրտի իւրոյ բղխէ զբարի, և մարդ
չա՛ր՝ ՚ի չարէն բղխէ զչար. քանզի ՚ի յաւելուածոյ
46 սրտին խօսի բերան նորա: Զի՞ կոչէք զիս՝ Տէր՝
47 Տէր, և զոր ասեմն ո՛չ առնէք: Ամենայն որ գայ
առ իս, և լսէ զբանս իմ՝ և առնէ զնոսա, ցուցից
48 ձեզ ու՛մ նման է: Նման է առն, որ շինիցէ տուն.
որ փորեա՛ց և խորեաց, և եդ հիմն ՚ի վերայ վիմի.
՚ի յառնել հեղեղաց՝ բաղխեաց գետ զտունն, և ո՛չ
կարաց շարժել զնա. զի հաստատեալ էր հիմն
49 ՚ի վերայ վիմի: Իսկ որ լսէ զբանս իմ՝ և ո՛չ առ-
նէ, նման է առն՝ որ շինիցէ տուն ՚ի վերայ հողոյ ա-
ռանց հիման. զոր բաղխեաց գետ, և վաղվաղակի
անկաւ, և եղև կործանումն տանն այնորիկ մեծ:

## ԳԼ. Է.

1 Եւ իբրեւ կատարեաց զամենայն զբանս իւր 'ի
լսելիս ժողովրդեանն, եմուտ 'ի Կափառնաում:
2 Հարիւրապետի ուրումն ծառայ՝ չարաչար հիւան-
դացեալ՝ մերձ էր 'ի վախճանել, որ էր նմա պատ-
3 ուական: Իբրեւ լուաւ զՅիսուսէ, առաքեաց զծեր-
սըն 'ի Հրէից, աղաչէր զնա՝ զի եկեսցէ ապրեցու-
4 ցէ զծառայն նորա: Եւ նոքա եկեալ առ Յիսուս՝
աղաչէին զնա սաստիկ՝ եւ ասէին, Թէ Արժանի է
5 որում զշնորհս զայս առնես: Զի սիրէ զազգս
6 մեր, եւ զժողովրդանոցն նա շինեաց մեզ: Եւ Յի-
սուս գնաց ընդ նոսա. իբրեւ ոչինչ կարի հեռի էր
'ի տանէն, յղեաց առ նա հարիւրապետն բարե-
կամս, եւ ասէ ցնա. Տէ՛ր՝ մի՛ ինչ աշխատ լինիր,
զի չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտա-
7 նիցես: Վասն որոյ եւ ո՛չ զանձն համարեցայ ար-
ժանի առ քեզ գալոյ. այլ ասա՛ բանիւ՝ եւ բժըշ-
8 կեսցի մանուկս իմ: Քանզի եւ ես այր մի եմ կար-
գեալ ընդ իշխանութեամբ. ունիմ ընդ ինեւ զին-
ուորս, եւ ասեմ սմա՝ Ե՛րթ, եւ երթայ. եւ այլում
Թէ Ե՛կ, եւ գայ. եւ ծառայի իմում Թէ Արա՛
9 զայս, եւ առնէ: Եւ իբրեւ լուաւ զայս Յիսուս՝
զարմացաւ, դարձաւ առ ժողովուրդն որ երթային
զհետ նորա՝ եւ ասէ. Ամէն ասեմ ձեզ՝. Թէ եւ ո՛չ
10 յԻսրայէլի այսչափ հաւատս գտի: Եւ դարձան
անդրէն պատգամաւորքն 'ի տուն, եւ գտին զծա-
ռայն հիւանդ՝ բժշկեալ:
11 Եւ եղեւ 'ի վաղիւն երթայր 'ի քաղաք մի, ո-

րում՝ անուն էր Նային. երթային ընդ նմա և ա-
12 շակերտք նորա, և ժողովուրդք բազում: Իբրև
մերձ եղև 'ի դուռն քաղաքին, և ահա ելանէր
մեռեալ մի՝ որդի միամօր մօր իւրոյ, և նա էր այ-
րի. և ժողովուրդ բազում քաղաքին էր ընդ նմա:
13 Իբրև ետես զնա Տէր՝ գթացաւ 'ի նա՝ և ասէ. Մի՛
14 լար: Եւ մատուցեալ մերձեցաւ 'ի դագաղն. և
որք բարձեալն տանէին՝ զտեղի առին. և ասէ.
15 Պատանի՛ դու՝ քեզ ասեմ՝ արի՛: Կանգնեցաւ և
նստաւ մեռեալն, և սկսաւ խօսել. և ետ զնա
16 ցմայր իւր: Եւ ահ կալաւ զամենեսին, և փա-
ռաւոր առնէին զԱստուած՝ և ասէին, թէ Մար-
գարէ ոմն մեծ յարուցեալ է 'ի միջի մերում, և թէ
Այց արար Աստուած ժողովրդեան իւրում 'ի բա-
17 րութիւն: Եւ ել զրոյցս այս ընդ ամենայն Հրէ-
աստան վասն նորա, և ընդ ամենայն կողմանս աշ-
18 խարհին: Եւ պատմեցին Յովհաննու աշակերտքն
19 իւր վասն ամենայնի այսորիկ: Եւ կոչեաց առ ինքն
երկուս ոմանս յաշակերտացն. իւրոց Յովհաննէս,
առաքեաց առ Տէր և ասէ. Դու՞ ես որ գալոցն
20 ես, եթէ այլում ակն կալցուք: Եւ եկեալ արքն
առ նա՝ ասեն. Յովհաննէս մկրտիչ առաքեաց
զմեզ առ քեզ՝ և ասէ. Դու՞ ես որ գալոցն ես՝
21 եթէ այլում ակն կալցուք: Եւ 'ի նմին ժամու բը-
ժշկեաց զբազումս 'ի հիւանդութեանց և 'ի հար-
ուածոց և յայսոց չարաց, և կուրաց բազմաց շը-
22 նորհեաց տեսանել: Պատասխանի ետ նոցա և ա-
սէ. Երթայք պատմեցէք Յովհաննու՝ զոր տեսիքդ
և լուայք, զի կոյրք տեսանեն, և կաղք գնան, բո-

բոտք սրբին, խուլք լսեն, մեռեալք յառնեն,
23 աղքատք աւետարանին. Եւ երանի իցէ՝ որ ոչ
24 գայթագղեսցի յիս: Եւ իբրեւ գնացին հրեշտակքն
Յովհաննու, սկսաւ խօսել ընդ ժողովուրդսն վասն
Յովհաննու. Զի՞նչ ելէք յանապատն տեսանել,
25 եղէ՞գն շարժուն ՚ի հողմոյ: Այլ զի՞նչ ելէք տե-
սանել, այ՞ր ՚ի հանդերձս փափկութեան զարդար-
եալ. ահաւասիկ որք ՚ի հանդերձս երեւելիս եւ ՚ի
26 փափկութեան են՝ յարքունիս են: Այլ զի՞նչ ե-
լէք տեսանել, մարգարէ՞. այո, ասեմ ձեզ՝ առա-
27 ւել եւս քան զմարգարէ: Զի սա է՝ վասն որոյ գր-
եալ է, թէ Ահա առաքեմ զհրեշտակ իմ առա-
ջի քո՝ որ յարդարեսցէ զճանապարհս քո առաջի
28 քո: Ամէն ասեմ ձեզ. Մե՛ծ ՚ի ծնունդս կանանց
մարգարէ քան զՅովհաննէս ոչ ո՛ք է. բայց փոք-
րիկն յարքայութեան Աստուծոյ մեծ է քան զնա:
29 Եւ ամենայն ժողովուրդն իբրեւ լուաւ՝ եւ մաքսա-
ւորքն, արդարացուցին զԱստուած. զի մկրտեցան
30 ՚ի մկրտութիւնն Յովհաննու: Իսկ փարիսեցիքն եւ
օրինականքն զխորհուրդն Աստուծոյ անարգեցին
յանձինս իւրեանց, զի ո՛չ մկրտեցան ՚ի նմանէ:
31 Արդ ո՞ւմ նմանեցուցից զմարդիկ ազգիս այսորիկ,
32 եւ ո՞ւմ իցեն նմանօղք: Նման են մանկտւոյ՝ որ ՚ի
հրապարակս նստիցին, կարդայցեն զմիմեանս եւ
ասիցեն. փողս հարաք ձեզ՝ եւ ո՛չ կաքաւեցիք.
33 ողբացաք՝ եւ ո՛չ լացիք: Եկն Յովհաննէս մկրտիչ՝
ո՛չ ուտէր եւ ո՛չ ըմպէր, եւ ասէիք. Դեւ գոյ ՚ի
34 նմա: Եկն Որդի մարդոյ՝ ուտէ եւ ըմպէ, եւ ասէք.
Ահա այր կերող եւ արբեցող՝ բարեկամ մաքսա-

35 ւորաց եւ մեղաւորաց: Եւ արդարացաւ իմաստու-
թիւն յորդւոց իւրոց:
36 Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ հաց
ընդ նմա. եւ մտեալ 'ի տուն փարիսեցւոյն՝ բազմե-
37 ցաւ: Եւ կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր. իբրեւ
գիտաց թէ բազմեալ է 'ի տան փարիսեցւոյն, բե-
38 րեալ շիշ մի իւղոյ ազնուի. Կայր յետոյ առ ոտս
նորա՝ լայր, եւ արտասուօքն սկսաւ թանալ զոտս
նորա, եւ հերով գլխոյ իւրոյ ջնջէր. եւ համբուրէր
39 զոտս նորա, եւ օծանէր իւղովն: Եւ տեսեալ փա-
րիսեցւոյն՝ որ կոչեաց զնա, ասէր ընդ միտս իւր.
Սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ով եւ
40 որպիսի ոք կին մերձենայ 'ի սա. զի մեղաւոր է: Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա. Սիմովն՝ ունիմ
ինչ ասել քեզ. եւ նա ասէ. Ասա Վարդապետ.
41 եւ ասէ: Երկու պարտապանք էին ուրումն փոխա-
տուի. միոյն պարտէր հինգ հարիւր դահեկան, եւ
42 միւսն յիսուն: Եւ իբրեւ ոչ գոյր նոցա հատուցա-
նել, երկոցունց շնորհեաց. արդ ասա՝ ով առաւել
43 սիրեսցէ զնա: Ասէ Սիմովն. Ինձ այսպէս թուի՝
եթէ որում զբազումն շնորհեաց: Եւ նա ասէ ցնա.
44 Ուղիղ դատեցար: Եւ դարձեալ 'ի կինն կողմն,
ասէ ցՍիմովն. Տեսանես զայս կին, մտի 'ի տուն
քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր, իսկ սա արտասուօք
իւրովք եթաց զոտս իմ, եւ հերով իւրով ջնջեաց:
45 Համբոյր մի դու ոչ ետուր ինձ, սա աւասիկ յորմէ
հետէ մտեալ եմ՝ ոչ դադարեաց 'ի համբուրելոյ զո-
46 տըս իմ: Իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա իւղով
47 անուշիւ օծ: Վասն որոյ ասեմ քեզ. Թողեալ

լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց. զի
որում շատ թողուցու՝ շատ սիրէ, և որում սակաւ՝
48 սակաւ: Եւ ասէ ցնա. Թողեալ լիցին քեզ մեղք
49 քո: Եւ սկսան՝ որ բազմեալն էին ընդ նմա՝ ասել
ընդ միտս իւրեանց. Ո՞վ է սա՝ որ զմեղս թողու:
50 Եւ նա ասէ ցկինն. Հաւատք քո կեցուցին զքեզ՝
երթ ՚ի խաղաղութիւն:

## ԳԼ. Ը

1 Եւ եղև յետ այնորիկ՝ և ինքն շրջէր ընդ քա-
ղաքս և ընդ գեօղս, քարոզէր և աւետարանէր
զարքայութիւն Աստուծոյ, և երկոտասանքն ընդ
2 նմա. Եւ կանայք ոմանք՝ որ բժշկեալ էին յայսոց
չարաց և ՚ի հիւանդութեանց. Մարիամ՝ որ կոչէր
3 Մագդաղենացի, յորմէ եօթն դևն ելեալ էր. Եւ
Յովհաննա կին Քուզայ՝ հազարապետին Հերովդի,
և Շուշան՝ և այլք բազումք, որք պաշտէին զնա
4 յընչից իւրեանց: Եւ ՚ի ժողովել բազում ժողո-
վրդոց, և ըստ քաղաքաց քաղաքացն եկելոց առ
5 նա, ասէ առակաւ: Ել սերմանացան սերմանել
զսերմանիս իւր. և ՚ի սերմանելն իւրում՝ էր որ
անկաւ առ ճանապարհաւ՝ և եղև կոխան, և թռ-
6 չունք երկնից կերան զնա: Եւ այլն անկաւ յապա-
ռաժի. և ընդ բուսանելն՝ չորացաւ, առ ՚ի չգոյէ
7 հիւթոյ: Եւ այլն անկաւ ՚ի մէջ փշոց, և ընդ նը-
8 մին բուսեալ փշոցն՝ հեղձուցին զնա: Եւ այլն
անկաւ յերկիր բարի և պարարտ, և բուսեալ՝ ա-
րար պտուղ հարիւրապատիկ: Զայս իբրև խօսեցաւ,

9 ասէ. Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ: Հարցա-
10 նէին զնա աշակերտքն. թէ զի՞նչ իցէ առակն: Եւ
նա ասէ. Ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքա-
յութեան Աստուծոյ, բայց այլոցն առակօք. զի տես-
ցեն՝ և մի՛ տեսցեն, և լուիցեն՝ և մի՛ իմասցեն:
11 Բայց առակն այս ինչ է. սերմն բանն Աստուծոյ
12 է: Եւ որք առ ճանապարհաւն, այնոքիկ են որ
լսեն, և ապա գայ Սատանայ՝ հանէ զբանն 'ի
սրտից նոցա, զի մի՛ հաւատասցեն՝ և ապրեսցին:
13 Եւ որք յապառաժին, որք յորժամ լսիցեն, խըն-
դութեամբ ընդունին զբանն, և արմատս ո՛չ ու-
նիցին. որք առ ժամանակ մի հաւատան, և 'ի
14 ժամանակի փորձութեան հեռանան: Իսկ որ 'ի
մէջ փշոցն անկաւ՝ նոքա են, որ իբրև լսեն ըզ-
բան՝ և 'ի հոգս և 'ի մեծութիւն և 'ի ցանկու-
թիւն աշխարհիս զբաղեալ, հեղձնուն և անպը-
15 տուղ լինին: Իսկ որ յերկիրն պարարտ, որոց բար-
ւոք և զուարթագին սրտիւ լուեալ զբանն՝ ընդու-
16 նին, և տան պտուղ համբերութեամբ: Ոչ ո՛ք լու-
ցանէ ճրագ՝ և թաքուցանէ ընդ կարասեաւ՝ կամ
դնէ ընդ մահճօք. այլ 'ի վերայ աշտանակի դնէ,
17 զի որ մտանեն՝ զլոյս տեսցեն: Զի՛ք ինչ ծածուկ՝ որ
ո՛չ յայտ լիցի. և ո՛չ գաղտնի՝ որ ոչ ծանիցի, և
18 եկեսցէ 'ի յայտ: Տեսէ՛ք այսուհետև զիա՞րդ լսէք.
զի ոյր գուցէ՝ տացի նմա, և ոյր ոչն գուցէ՝ և զոր
19 կարծէն թէ ունիցի՝ բարձցի 'ի նմանէ: Եկին առ
նա մայրն և եղբարք իւր, և ո՛չ կարէին հասանել
20 'ի նա՝ վասն բազմութեանն: Ազդ եղև նմա՝ և ա-
սեն. Մայր քո և եղբարք քո կան արտաքոյ՝ և կա-

21 մին զքեզ տեսանել։ Եւ ասէ ցնոսա. Մա՛յր իմ
և եղբարք իմ սոքա են, որ զբանն Աստուծոյ լսեն
և առնեն։
22 Եւ եղև 'ի միում աւուրց, ինքն ել 'ի նաւ՝ և
աշակերտքն նորա, և ասէ ցնոսա. Եկա՛յք անցցո՛ւք
23 յայնկոյս ծովակիս. և գնացին։ Եւ մինչդեռ նաւէ-
ին՝ 'ի քուն եմուտ. և էջ մրրիկ հողմոյ 'ի ծովակն՝
24 և ուռնոյր, և տագնապէին։ Մատուցեալ զար-
թուցին զնա և ասեն. Վարդապետ վարդապետ՝
կորնչիմք աւասիկ. և նա յարուցեալ սաստեաց
հողմոյն և խռովութեան ջուրցն՝ և հանդարտեցին,
25 և եղև խաղաղութիւն։ Ասէ ցնոսա. Ո՞ւր են հա-
ւատք ձեր. և զահի հարեալ զարմացան, և ասէին
ցմիմեանս. Ո՞վ արդեօք իցէ սա՝ զի և հողմոց և
26 ջրոց հրաման տայ, և հնազանդին սմա։ Եւ նա-
ւեցին իջին յաշխարհն Գերգեսացւոց. որ է այն-
27 կոյս հանդէպ Գալիլեայ։ Եւ ընդ ելանելն նորա 'ի
ցամաք, պատահեաց այր մի 'ի քաղաքէն՝ յորում
էին դևք. և բազում ժամանակս չէր հանդերձ զգե-
ցեալ՝ և ո՛չ 'ի տան բնակեալ, այլ 'ի գերեզմանս։
28 Եւ տեսեալ զՅիսուս, աղաղակեաց և անկաւ ա-
ռաջի նորա, և ասէ մեծաձայն. Զի՞ կայ իմ և
քո՝ Յիսուս Որդի Աստուծոյ բարձրելոյ. աղաչեմ
29 զքեզ՝ մի՛ տանջեր զիս։ Քանզի հրաման տայր այ-
սոյն պղծոյ ելանել 'ի մարդոյ անտի. զի բազում
ժամանակս յափշտակեալ էր զնա, և կապէր 'ի
շղթայս, և պահէր յերկաթս, և խզէր զկապանսն,
30 և վարէր 'ի դիւէն յանապատս։ Եհարց ցնա Յի-
սուս և ասէ. Զի՞նչ անուն է քեզ։ Եւ նա ասէ,

31 Լեգէոն· զի դեւք բազումք մտեալ էին 'ի նա: Եւ
աղաչէին զնա՝ զի մի՛ հրաման տացէ նոցա երթալ
32 յանդունդս: Եւ էր անդ երամակ մի խոզից բազ-
մաց՝ արօտական 'ի լերինն, եւ աղաչեցին զնա՝ զի հր-
րաման տացէ նոցա մտանել 'ի նոսա· եւ հրամայ-
33 եաց նոցա: Եւ ելեալ դեւքն յառնէն՝ մտին 'ի խոզ-
եանն, եւ դիմեաց երամակն 'ի գահէ անտի 'ի ծո-
34 վակն՝ եւ հեղձաւ: Իբրեւ տեսին խոզարածքն զիրսն
որ եղեն՝ փախեան, եւ պատմեցին 'ի քաղաքին եւ
35 յագարակսն: Եւ իբրեւ ելին տեսանել զգործն,
եւ եկին առ Յիսուս, եւ գտին զայրն՝ ուստի դեւքն
ելեալ էին, զգեցեալ եւ զգաստացեալ նստէր առ
36 ոտսն Յիսուսի, եւ երկեան: Պատմեցին նոցա որոց
37 տեսեալն էր՝ թէ զիա՛րդ փրկեցաւ դիւահարն: Եւ
աղաչէր զնա ամենայն բազմութիւնն շուրջ զկող-
մամբքն Գերգեսացւոց՝ գնալ 'ի սահմանացն նոցա,
քանզի ահիւ մեծաւ տագնապէին· եւ նա մտեալ 'ի
38 նաւ՝ դարձաւ անդրէն: Աղաչէր զնա այրն՝ ուստի
դեւքն ելեալ էին՝ շրջել ընդ նմա· արձակեաց զնա՝
39 եւ ասէ· Դա՛րձ 'ի տուն քո, եւ պատմեա՛ զոր միան-
գամ արար քեզ Աստուած· գնաց 'ի քաղաքն՝ եւ քա-
40 րոզէր զոր ինչ արար նմա Յիսուս: Եւ իբրեւ դար-
ձաւ անդրէն Յիսուս, ընկալաւ զնա ժողովուրդն,
41 քանզի ամենեքեան ակն ունէին նմա: Եւ ահա եկն
այր մի՝ որում անուն էր Յայրոս, եւ նա էր իշխան
ժողովրդեանն· անկեալ առ ոտսն Յիսուսի՝ աղա-
42 չէր զնա մտանել 'ի տուն նորա· Զի դուստր միամօր
էր նորա՝ ամաց իբրեւ երկոտասանից, եւ էր մերձ 'ի
մահ: Եւ ընդ երթալն նորա՝ ժողովուրդքն նեղէին

43 զնա: Եւ կին մի էր 'ի տեռատեսութեան արեան
ամաց երկոտասանից, որ 'ի բժիշկս ծախեալ էր
զամենայն ինչս իւր. որում ոչ էր լեալ հնար յու-
44 մեքէ բժշկիլ: Մատուցեալ յետոյ մերձեցաւ 'ի քղ-
ղանցս հանդերձի նորա. և նոյն ժամայն՝ եկաց բղ-
45 խումն արեան նորա: Եւ ասէ Յիսուս. Ո՞վ է՝
որ մերձեցաւն յիս: Իբրև ամենեքեան ուրանային,
ասէ Պետրոս՝ և որ ընդ նմա էին. Վարդապետ՝
46 ժողովուրդք պնդեն և նեղեն զքեզ: Եւ ասէ Յի-
սուս. Ոմն մերձեցաւ յիս, քանզի գիտացի՝ եթէ
47 զօրութիւն ել յինէն: Իբրև ետես կինն՝ եթէ ոչ
ծածկեցաւ 'ի նմանէ, եկն դողալով և անկաւ ա-
ռաջի նորա, թէ վասն որոյ իրաց մերձեցաւ 'ի նա՝
պատմեաց առաջի ամենայն ժողովրդեանն. և թէ
48 որպէս բժշկեցաւ առժամայն: Եւ ասէ. Քաջա-
լերեա՛ց դուստր՝ հաւատք քո կեցուցին զքեզ, երթ
49 'ի խաղաղութիւն: Եւ մինչդեռ նա խօսէր, գայ
ոմն 'ի տանէ ժողովրդապետին՝ և ասէ ցնա. Մե-
50 ռաւ դուստրն քո, մի՛ ինչ աշխատ առներ զդա: Իսկ
Յիսուս՝ իբրև լուաւ. պատասխանի ետ նմա՝ և ա-
51 սէ. Մի՛ երկնչիր, միայն հաւատա՛ և կեցցէ: Եւ
մտեալ 'ի տունն՝ ոչ զոք եթող մտանել, բայց միայն
զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս, և զհայր
52 մանկանն և զմայր նորա: Լային ամենեքեան՝ և կո-
ծէին զնա. և նա ասէ. Մի՛ լայք՝ զի չէ՛ մեռեալ,
53 այլ ննջէ: Եւ նոքա ծաղր առնէին զնա, զի գի-
54 տէին թէ մեռաւ: Եւ նորա հանեալ զամենեսին
55 արտաքս, կալաւ զձեռանէ նորա՝ բարբառեցաւ և
56 ասէ Արի՛ կա՛ց մանո՛ւկ դու: Եւ դարձաւ ոգի նո-

րա, և կանգնեցաւ վաղվաղակի. և հրամայեաց
57 տալ նմա ուտել: Եւ զարմացան ծնողքն նորա.
և նա պատուիրէր մի՛ ումեք ասել որ ինչ եղեն:

## ԳԼ. Թ.

1 Եւ կոչեցեալ զերկոտասան առաքեալսն, ետ նո-
ցա զօրութիւն և իշխանութիւն ՚ի վերայ ամենայն
2 դիւաց, և բժշկել զհիւանդութիւնս: Եւ առա-
քեաց զնոսա քարոզել զարքայութիւնն Աստուծոյ,
3 և բժշկել զախտաժէտս: Եւ ասէ ցնոսա. Մի՛ ինչ
բառնայք ՚ի ճանապարհ. մի՛ գաւազան և մի՛ մա-
խաղ, մի՛ հաց, և մի՛ արծաթ. մի՛ երկուս հանդերձս
4 ունիցիք: Եւ յոր տուն մտանիցէք՝ անդ ագ-
5 ջիք, և անտի գնայցէք: Եւ որք ոչ ընդունիցին
զձեզ, յորժամ ելանիցէք ՚ի քաղաքէն յայնմա-
նէ, զփոշի ոտից ձերոց թօթափեսջիք ՚ի վկայու-
6 թիւն նոցա: Եւ ելեալ շրջէին ընդ քաղաքս և ընդ
գեօղս՝ աւետարանէին, և բժշկէին ընդ ամենայն
7 տեղիս: Լուաւ Հերովդէս չորրորդապետ զգործսն
ամենայն. և զարմանայր վասն ասելոյն յոմանց.
8 թէ Յովհաննէս յարեաւ ՚ի մեռելոց, և յոմանց՝
թէ Եղիա յայտնեցաւ, և յայլոց՝ թէ Մարգարէ
9 ոմն յառաջնոցն յարեաւ: Ասէ Հերովդէս. զՅով-
հաննէս ես գլխատեցի. իսկ սա ո՞վ իցէ՝ զորմէ զայս-
10 պիսի իրս լսեմ. և խնդրէր տեսանել զնա: Դար-
ձան առաքեալքն, և պատմեցին նմա զամենայն զոր
արարին: Եւ առեալ զնոսա՝ խուսեաց առանձինն
՚ի տեղի անապատ քաղաքի միոյ, որում անուն էր

11 Բեթսայիդա ։ Եւ ժողովուրդքն իբրեւ գիտացին ,
գնացին զհետ նորա ․ եւ ընկալեալ զնոսա՝ խօսէր ընդ
նոսա վասն արքայութեան Աստուծոյ , եւ որոց պէտք
12 էին բժշկութեան՝ բժշկէր ։ Եւ օրն սկսաւ տարա-
ժամել ․ մատեան երկոտասանքն եւ ասեն ցնա ․ Ար-
ձակեա՛ զժողովուրդդ , զի երթեալ շուրջ 'ի գիւղն
եւ յագարակս՝ հանգիցեն , եւ գտցեն կերակուր , զի
13 աստ յանապատ տեղւոջ եմք ։ Ասէ ցնոսա ․ Տո՛ւք
դուք դոցա ուտել ․ եւ նոքա ասեն ․ Ո՛չ գոյ մեր ա-
ւելի քան զհինգ նկանակ եւ զերկուս ձկունս , բայց
եթէ երթիցուք գնեսցուք բաւական ժողովրդեանդ
14 կերակուր ։ Քանզի էին արք իբրեւ հինգ հազար ․
ասէ ցաշակերտսն ․ Բազմեցուցէ՛ք զդոսա դասս
15 դասս՝ յիսուն յիսուն ։ Եւ արարին այնպէս , եւ
16 բազմեցուցին զամենեսեան ։ Եւ առեալ զհինգ նկա-
նակն եւ զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս , օրհ-
նեաց , եւ եբեկ՝ եւ տայր ցաշակերտսն արկանել ժո-
17 ղովրդեանն ։ Կերան եւ յագեցան ամենեքեան ․ եւ
բարձին զնշխարս կոտորոցն՝ երկոտասան սակառի ։
18 Եւ եղեւ 'ի կալն նորա յաղօթս առանձինն , էին
ընդ նմա եւ աշակերտքն նորա ․ եհարց զնոսա եւ ա-
սէ ․ Զո՞ ոք ասեն զինէն ժողովուրդքն՝ թէ իցեմ ։
19 Եւ նոցա պատասխանի տուեալ ասեն ․ զՅովհան-
նէս մկրտիչ ․ եւ այլք զԵղիա ․ իսկ այլք թէ Մար-
20 գարէ ոք յառաջնոցն յարեաւ ։ Ասէ ցնոսա ․ Դուք
զո՞վ ոք ասէք զինէն , թէ իցեմ ․ պատասխանի ետ
21 Պետրոս եւ ասէ ․ զՔրիստոսն Աստուծոյ ։ Նա սաս-
տեաց 'ի նոսա , եւ պատուիրեաց մի՛ ումեք ասել
22 զայն ։ Եւ ասէ , թէ Պարտ է Որդւոյ մարդոյ բա-

զում չարչարիլ և անարգիլ 'ի քահանայապետից
և 'ի ծերոց և 'ի դպրաց, և սպանանիլ՝ և յերիր
23 աւուր յառնել: Եւ ասէր առ ամենեսին. Եթէ որ
կամի զկնի իմ գալ, ուրասցի զանձն՝ և առցէ զխաչ
24 իւր հանապազ՝ և եկեսցէ զհետ իմ: Զի որ կա-
միցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ զնա, և
որ կորուսցէ զանձն իւր վասն իմ՝ կեցուսցէ զնա:
25 Զինչ օգուտ է մարդոյ՝ եթէ զաշխարհ շահեսցի,
26 և զանձն իւր կորուսցէ կամ տուժեսցի: Զի որ
ամօթ համարեսցի զիս և զբանս իմ, զնա և Որդի
մարդոյ յամօթ արասցէ՝ յորժամ գայցէ փառօք
27 իւրովք՝ և Հօր՝ և հրեշտակաց սրբոց: Բայց ար-
դարև ասեմ ձեզ, եթէ Են ոմանք 'ի դոցանէ որ
այդր կան՝ որք մի՛ ճաշակեսցեն զմահ, մինչև տես-
28 ցեն զարքայութիւն Աստուծոյ: Եւ եղև յետ այսց
բանից իբրև աւուրք ութ, առեալ զՊետրոս և ըզ-
Յակովբոս և զՅովհաննէս՝ ել 'ի լեառն կալ յա-
29 ղօթս: Եւ 'ի կալ նմա յաղօթս՝ եղև տեսիլ երե-
սաց նորա այլակերպ. և փոխեցաւ հանդերձ նորա՝
30 և եղև սպիտակ փայլուն: Եւ ահա արք երկու խօ-
31 սէին ընդ նմա, որ էին Մովսէս և Եղիա, Երևեալ
փառօք. և ասէին զելիցն նորա՝ զոր կատարելոց էր
32 յԵրուսաղէմ: Իսկ Պետրոս՝ և որ ընդ նմայն էին՝
ծանրացեալ 'ի քնոյ՝ զարթեան, տեսին զփառսն
33 նորա՝ և զերկուս արսն որ կային առ նմա: Եւ ե-
ղև 'ի մեկնելն նոցա 'ի նմանէ, ասէ Պետրոս ցՅի-
սուս. Վարդապետ՝ բարւոք է մեզ աստ լինել, և
արասցուք երիս տաղաւարս, մի քեզ՝ և մի Մովսէսի՝
34 և մի Եղիայի. և ոչ գիտէր զինչ խօսէր: Եւ իբ-

րև զայս ասաց, եկն ամպ և հովանի եղև 'ի վե-
րա նոցա. և երկեան 'ի մտանելն նոցա ընդ ամ-
35 պովն: Ձայն եղև յամպոյն և ասէ. Դա՛ է Որդի
36 իմ ընտրեալ, դմա լուարո՛ւք: Եւ ընդ լինել բար-
բառոյն՝ գտաւ Յիսուս միայն: Եւ նոքեանք լռեցին.
և ո՛չ ումեք պատմեցին յաւուրսն յայնոսիկ և ոչինչ
յորոց տեսինն:
37 Եւ եղև 'ի վաղիւն՝ մինչ իջանէին նոքա 'ի լեռնէ
անտի, ընդ առաջ եղև նմա ժողովուրդ բազում:
38 Եւ ահա այր մի 'ի ժողովրդենէ անտի՝ աղաղակեաց և
ասէ. Վարդապետ՝ աղաչեմ զքեզ, հայեա՛ց յորդի
39 իմ. զի միամօր է ինձ: Եւ ահա այս հարկանի 'ի
նմա, և յանկարծ գոչէ. և զարկուցանէ զնա՝ և
թաւալեցուցանէ զնա և փրփրեցուցանէ, և հազիւ
40 մեկնի 'ի նմանէ՝ խորտակեալ զնա. Եւ աղաչեցի զաշա-
41 կերտսն քո զի հանցեն զնա, և ո՛չ կարացին: Պա-
տասխանի ետ Յիսուս և ասէ. Ո՛վ ազգ անհա-
ւատ և թիւր, մինչև յե՞րբ եղէց ընդ ձեզ՝ և ան-
42 սայցեմ ձեզ. մատո՛ այսր զորդին քո: Եւ մինչդեռ
43 մատչէր, զարկոյց զնա դևն՝ և շարժլեաց: Սաս-
տեաց Յիսուս այսոյն պղծոյ, և բժշկեաց զմա-
44 նուկն. և ետ զնա ցհայր իւր: Եւ զարմանային ա-
մենեքեան 'ի վերայ մեծամեծացն Աստուծոյ. և 'ի
զարմանալն ամենեցուն 'ի վերայ ամենայնի զոր առ-
նէր, ասէ ցաշակերտսն իւր. Դի՛ք դուք 'ի լսելիս
ձեր զբանս զայսոսիկ. զի Որդի մարդոյ մատնելոց
45 է 'ի ձեռս մարդկան: Եւ նոքա ո՛չ գիտէին զբանն,
և էր ծածկեալ 'ի նոցանէ զի մի՛ գիտասցեն. և
46 երկնչէին հարցանել ցնա վասն բանին այնորիկ: Եւ-

մուտ խորհուրդ 'ի նոսա՝ թէ ո՞ արդեօք մեծ իցէ 'ի
47 նոցանէ։ Յիսուս իբրև ծանեաւ զխորհուրդս սրտից
նոցա, առ մանուկ մի՝ կացոյց 'ի մէջ նոցա առ իւր,
48 Եւ ասէ ցնոսա. Որ ոք ընկալցի զմանուկս զայս յա-
նուն իմ՝ զիս ընդունի, և որ զիս ընդունիցի՝ ըն-
դունի զառաքիչն իմ. զի որ փոքրիկն է յամենեսին
49 'ի ձեզ՝ նա եղիցի մեծ։ Պատասխանի ետ Յովհան-
նէս՝ և ասէ. Վարդապետ՝ տեսաք զոմն որ յանուն
քո դևս հանէր՝ և արգելաք զնա, զի ո՛չ շրջի ընդ
50 մեզ։ Ասէ ցնոսա Յիսուս. Մի՛ արգելուք, զի որ
ոչն է ձեր թշնամի՝ 'ի ձեր կողմն է։

51 Եւ եղև 'ի կատարել աւուրց վերանալոյ նորա՝
և ինքն զերեսս հաստատեաց երթալ յԵրուսաղէմ։
52 Եւ առաքեաց հրեշտակս առաջի երեսաց իւրոց.
և իբրև չոգան՝ մտին 'ի գիւղ մի Սամարացւոց՝
53 պատրաստել ինչ նմա։ Եւ ո՛չ ընկալան զնա, զի
54 դէմ եդեալ էր նորա երթալ յԵրուսաղէմ։ Իբրև
տեսին աշակերտքն Յակովբոս և Յովհաննէս, ա-
սեն. Տէ՛ր՝ կամի՞ս զի ասասցուք, և իջցէ հուր յերկ-
55 նից՝ և սատակեսցէ զնոսա։ Դարձաւ սաստեաց 'ի
նոսա՝ և ասէ. Ո՛չ գիտէք՝ որոյ հոգւոյ էք դուք։
56 Զի Որդի մարդոյ ո՛չ եկն զոգիս մարդկան կորու-
սանել՝ այլ կեցուցանել. և գնացին յայլ գեօղ։
57 Եւ մինչդեռ երթային նոքա 'ի ճանապարհի, ասէ
ոմն ցնա. Եկից զկնի քո՝ յոր վայր և երթիցես։
58 Ասէ ցնա Յիսուս. Աղուեսուց որջք գոն, և թռչ-
նոց երկնից դադարք. և Որդւոյ մարդոյ ո՛չ գոյ՝
59 ուր դիցէ զգլուխ։ Ասէ ցմիւս ևս. Ե՛կ զկնի իմ.
և նա ասէ. Տէ՛ր հրաման տուր ինձ՝ երթալ նախ

60 *Թաղել զհայր իմ։ Ասէ ցնա Յիսուս. Թո՛ղ զմեռ-*
*եալսն թաղել զմեռեալս իւրեանց, և դու երթ*
61 *պատմեա՛ զարքայութիւն Աստուծոյ։ Ասէ և այլ*
*ոմն. Եկից զկնի քո Տէր, բայց նախ հրաման տուր*
62 *ինձ՝ հրաժարել ՚ի տանէ իմմէ։ Ասէ ցնա Յիսուս.*
*Ոչ ո՛ք արկանէ ձեռն զմաճով՝ և հայիցի յետս,*
*եթէ յաջողեալ իցէ արքայութեանն Աստուծոյ։*

## ԳԼ. Ժ

1 *Յետ այսորիկ երևեցոյց Տէր և այլ ևս եօթանա-*
*սուն և երկուս. և առաքեաց զնոսա երկուս երկուս*
*առաջի իւր յամենայն քաղաքս և ՚ի տեղիս, ուր*
2 *ինքն երթալոց էր։ Եւ ասէ ցնոսա. Հունձք բա-*
*զում են՝ և մշակք սակաւ. արդ աղաչեցէ՛ք զՏէր*
3 *հնձոց, զի հանցէ մշակս ՚ի հունձս իւր։ Երթա՛յք,*
*ահա առաքեմ զձեզ իբրև զգառինս ՚ի մէջ գայլոց։*
4 *Մի՛ բառնայք քսակ, մի՛ մախաղ, մի՛ կօշիկս. և ՚ի*
5 *ճանապարհի ումեք ողջոյն մի՛ տայցէք։ Յոր տուն*
*մտանիցէք, նախ ասասջի՛ք թէ Ողջոյն տանս այս-*
6 *միկ. Եւ եթէ իցէ անդ որդի ողջունի, հանգիցէ ՚ի*
*վերայ նորա ողջոյնն ձեր. ապա թէ ոչ՝ ՚ի ձեզ*
7 *դարձցի։ Եւ ՚ի նմին տան ագանիջի՛ք, ուտիջի՛ք և*
*ըմպիջի՛ք ՚ի նոցանէ. զի արժանի է մշակն վարձու*
8 *իւրոյ. մի՛ փոխիցիք տանէ ՚ի տուն։ Յոր քաղաք*
*մտանիցէք՝ և ընդունիցին զձեզ, ուտիջի՛ք զինչ առաջի*
9 *դնիցեն ձեր. Եւ բժշկեսջի՛ք որ ՚ի նմա հիւանդք ի-*
*ցեն. և ասասջի՛ք նոցա, Մերձեալ է ՚ի վերայ ձեր*
10 *արքայութիւն Աստուծոյ։ Իսկ յոր քաղաք մտանի-*

ցէք՝ և ոչ՛ ընդունիցին զձեզ, իբրև ելանիցէք ՚ի
11 Հրապարակս նորա, ասասջիք: Եւ զփոշիս որ կըռ-
ուեալ է ՚ի քաղաքէ ձերմէ յոտս մեր՝ թօթափես-
ցուք ՚ի ձեզ. բայց զայս գիտասջիք զի մերձեալ է
12 արքայութիւն Աստուծոյ: Ասեմ ձեզ, Զի Սոդո-
մացւոց ընդարձակագոյն լիցի յաւուրն յայնմիկ՝
13 քան քաղաքին այնմիկ: Վայ քեզ Քորազին. վայ
քեզ Բեթսայիդա. զի եթէ ՚ի Տիւրոս և ՚ի Սիդոնի
եղեալ էին զօրութիւնքն՝ որ եղեն ՚ի ձեզ, վաղուց
ևս արդեօք ՚ի խորգ և ՚ի մոխիր նստեալ ապաշխար-
14 եալ էր: Բայց Տիւրոսի և Սիդոնի ընդարձակա-
15 գոյն լիցի ՚ի դատաստանի՝ քան ձեզ: Եւ դու Կա-
փառնաում, որ մինչև յերկինս բարձրացեալ ես,
16 մինչև ՚ի դժոխս իջցես: Որ ձեզ լսէ՝ ինձ լսէ, և որ
զձեզ անարգէ՝ զիս անարգէ. և որ զիս անարգէ՝
զառաքիչն իմ անարգէ. և որ ինձ լսէ՝ լսէ այնմիկ
17 որ զինն առաքեաց: Դարձան եօթանասունն և եր-
կուքն խնդութեամբ և ասեն. Տէր և դևք Հնա-
18 զանդին մեզ յանուն քո: Եւ ասէ ցնոսա. Տեսա-
նէի զՍատանայ անկեալ յերկնից իբրև զփայ-
19 լակն: Ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս
և զկարիճս և զամենայն զօրութիւն թշնամւոյն, և
20 ձեզ ոչինչ մեղանչիցեն: Բայց ընդ այն մի՛ խնդայք՝
եթէ այսք Հնազանդին ձեզ. այլ խնդացէք զի ան-
21 ուանք ձեր գրեալ են յերկինս: ՚Ի նմին ժամու
ցնծացաւ Յիսուս Հոգւովն Սրբով և ասէ. Գոհա-
նամ զքէն Հայր՝ Տէր երկնից և երկրի, զի ծած-
կեցեր զայս յիմաստնոց և ՚ի գիտնոց՝ և յայտնեցեր
զայս տղայոց. այո Հայր, զի այսպէս հաճոյ եղև

22 առաջի քո ։ Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ․
և ոչ ոք գիտէ թէ ո՛վ է Որդի, եթէ ոչ՝ Հայր,
և ո՛ է Հայր՝ եթէ ոչ՝ Որդի, և ում կամիցի Որդին
23 յայտնել ։ Եւ դարձեալ առանձինն առ աշակերտսն՝
ասէ․ Երանի աչաց՝ որ տեսանիցեն զոր տեսանէքդ ։
24 Ասեմ ձեզ․ զի բազում մարգարէք և թագա-
ւորք կամեցան տեսանել զոր դուքդ տեսանէք, և
ո՛չ տեսին․ և լսել զոր լսէքդ, և ո՛չ լուան ։
25 Եւ ահա յարեաւ ոմն օրինական՝ փորձէր զնա
և ասէր․ Վարդապետ՝ զի՞նչ գործեցից՝ զի զկեանսն
26 յաւիտենականս ժառանգեցից ։ Եւ նա ասէ ցնա․
27 Յօրէնս զի՞նչ գրեալ է, ո՞րպէս ընթեռնուս ։ Նա
պատասխանի ետ՝ և ասէ․ Սիրեսցես զՏէր Աս-
տուած քո յամենայն սրտէ քումմէ, և յամենայն
անձնէ քումմէ, և յամենայն զօրութենէ քումմէ,
և յամենայն մտաց քոց․ և զընկեր քո իբրև զանձն
28 քո ։ Եւ ասէ ցնա․ Ուղիղ ետուր զպատասխա-
29 նիդ, զայդ արա՛ և կեցցես ։ Նա իբրև կամեցաւ
զանձն արդարացուցանել՝ ասէ ցՅիսուս․ Եւ ո՞վ է
30 իմ ընկեր ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ․ Այր
մի իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, և անկաւ 'ի
ձեռս աւազակաց, որք մերկացուցին զնա՝ և վէրս
31 'ի վերայ եդին, թողին կիսամահ և գնացին ։ Դէպ
եղև քահանայի միոջ իջանել ընդ նոյն ճանապարհ,
32 և տեսեալ զնա՝ զանց արար ։ Նոյնպէս և Ղևտա-
ցի մի՝ եկեալ ընդ նոյն տեղի՝ ետես և զանց ա-
33 րար ։ Սամարացի ոմն ճանապարհորդեալ եկն ընդ
34 նոյն առ նովաւ, և տեսեալ զնա՝ գթացաւ ։ Եւ
մատուցեալ պատեաց զվէրս նորա, արկեալ 'ի վե-

րայ ձէթ և գինի · և եդեալ 'ի վերայ գրաստու իւ–
րոյ՝ ած զնա 'ի պանդոկի մի , և դարմանեաց զնա :
35 Եւ 'ի վաղիւ անդր՝ իբրև ելանէր անտի , հանեալ ետ
ցպանդոկապետն երկուս դահեկանս՝ և ասէ · Դար–
ման տար դմա , և զոր ինչ ծախեսցես 'ի դա՝ 'ի
միւսանգամ գալստեան իմում հատուցից քեզ :
36 Արդ՝ ո՞ յերեցունց 'ի նոցանէ թուի քեզ մերձաւոր
37 լեալ անկելոյն 'ի ձեռս աւազակացն : Եւ նա ասէ ·
Որ արար զողորմութիւնն 'ի վերայ նորա · Ասէ ցնա
38 Յիսուս · Երթ և դու՝ արա նոյնպէս : Եւ եղև 'ի
գնալն նոցա , և ինքն եմուտ 'ի գեօղ մի · և կին
ոմն անուն Մարթա ընկալաւ զնա 'ի տուն իւրում :
39 Եւ նորա էր քոյր մի , որում անուն էր Մարիամ,
որ և եկն նստաւ առ ոտն Տեառն , և լսէր զբանս
40 նորա : Եւ Մարթա զբաղեալ էր 'ի բազում սպաս–
սու · եկն եկաց առ նմա՝ և ասէ · Տէր ոչինչ է
փոյթ քեզ , զի քոյրդ իմ միայն եթող զիս 'ի
41 սպասու · արդ ասա դմա զի օգնեսցէ ինձ : Պա–
տասխանի ետ Յիսուս և ասէ · Մարթա Մարթա՝
42 դու հոգաս՝ և զբազում իւիք զբաղեալ ես · Բայց
աստ սակաւ ինչ պիտոյ է · Մարիամ մասն բարի
ընտրեաց , որ ոչ բարձցի 'ի նմանէ :

## ԳԼ. ԺԱ.

1 Եւ եղև 'ի տեղւոջ ուրեք կալ յաղօթս · և իբրև
դադարեաց՝ ասէ ցնա ոմն յաշակերտացն իւրոց ·
Տէ՛ր՝ ուսո՛ մեզ յաղօթս կալ , որպէս և Յովհան–
2 նէս ուսոյց աշակերտաց իւրոց : Ասէ ցնոսա , Յոր–

ժամ կայցէք յաղօթս , ասասջի՛ք . Հայր մեր՝ սուրբ
3 եղիցի անուն քո . եկեսցէ արքայութիւն քո ։ Զհաց
4 մեր հանապազորդ տո՛ւր մեզ զօրըստօրէն ։ Եւ թո՛ղ
մեզ զմեղս մեր . զի և մեր թողումք ամենայնի՝ որ
պարտիցի մեզ . և մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն ։
5 Եւ ասէ ցնոսա . Ո՞վ է 'ի ձէնջ՝ որոյ իցէ բարե-
կամ , և երթայցէ առ նա 'ի մէջ գիշերի , և ասիցէ
6 ցնա . Բարեկամ՝ տո՛ւր ինձ փոխ երիս նկանակս ։ Զի
բարեկամ իմ եկն առ իս յուղւոյ , և ոչինչ ունիմ
7 դնել առաջի նորա ։ Եւ նա 'ի ներքուստ տայցէ պա-
տասխանի և ասիցէ . Մի՛ աշխատ առներ զիս . զի
դուրքդ փակեալ են , և մանկունքս ընդ ինև կան
8 յանկողնի . ո՛չ կարեմ յառնել և տալ քեզ ։ Ա-
սեմ ձեզ , Եթէ ոչ յարուցեալ տայցէ նմա վասն
բարեկամութեանն , սակայն վասն ժտութեանն յա-
9 րուցեալ տայցէ նմա՝ զինչ և պիտոյ իցէ ։ Եւ ես
ասեմ ձեզ , Խնդրեցէ՛ք՝ և տացի ձեզ , հայցեցէ՛ք՝ և
10 գտջի՛ք , բախեցէ՛ք՝ և բացցի ձեզ ։ Զի ամենայն
որ խնդրէ՝ առնու , և որ հայցէ՝ գտանէ՝ , և որ բա-
11 խէ՝ բացցի նմա ։ Յո՞ ոք 'ի ձէնջ հայր՝ խնդրիցէ
որդի իւր ձուկն , միթէ փոխանակ ձկանն օձ տայցէ
12 նմա ։ Եւ կամ խնդրիցէ ձու , միթէ կարի՞ճ տայցէ
13 նմա ։ Իսկ եթէ դուք որ չարքդ էք՝ գիտէք պարգևս
բարիս տալ որդւոց ձերոց , ո՞րչափ ևս առաւել Հայր
ձեր յերկնից տացէ * բարիս այնոցիկ , որ խնդրեն
'ի նմանէ ։

14 Եւ հանէր դև մի համր . և եղև յելանել դիւին՝

* 'Ի Յոյն , զՍուրբ Հոգին

խօսեցաւ համրն, և զարմացան ամենայն ժողո-
15 վուրդքն: Եւ ոմանք 'ի նոցանէ ասեն. Բէեղզե-
16 բուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս: Եւ
այլք փորձէին՝ և նշան յերկնից խնդրէին 'ի նմանէ:
17 Իսկ նորա գիտացեալ զխորհուրդս նոցա, ասէ ցնոսա.
Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն ա-
18 ւերի, և տուն բաժանեալ յանձն կործանի: Ա-
պա եթէ և Սատանայ բաժանեցաւ յանձնէ, զիա՞րդ
կայցէ թագաւորութիւն նորա. զի ասէք զինէն ե-
թէ Բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա
19 զդևս: Եթէ ես Բէեղզեբուղաւ հանեմ զդևս, որ-
դիքն ձեր իւ հանիցեն. վասն այդորիկ նոքին ե-
20 ղիցին ձեր դատաւորք: Իսկ եթէ մատամբ Աստու-
ծոյ հանեմ զդևս, ապա հասեալ է 'ի վերայ ձեր
21 արքայութիւն Աստուծոյ: Յորժամ հզօր վառեալ՝
պահիցէ զտուն իւր, 'ի խաղաղութեան են ինչք նո-
22 րա: Բայց եթէ հզօրագոյն քան զնա 'ի վերայ ե-
կեալ յաղթեսցէ նմա, զսպառազինութիւնն հանէ՝
յոր յուսացեալ էր, և զաւար նորա բաշխեսցէ:
23 Որ ոչ է ընդ իս՝ հակառակ իմ է, և որ ոչ ժողովէ
24 ընդ իս, ցրուէ: Յորժամ այսն պիղծ ելանիցէ 'ի
մարդոյ՝ շրջի ընդ անջրդին տեղիս, խնդրէ հան-
գիստ. և իբրև ոչ գտանէ, ասէ. Դարձայց անդ-
25 րէն 'ի տուն իմ ուստի ելի: Եւ դայ գտանէ մաք-
26 րեալ և յարդարեալ: Յայնժամ երթայ և առնու
եօթն այլ այսս չար ևս քան զինքն, և մտանէ բնակէ
անդ. և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան
27 զառաջինն: Եւ եղև մինչդեռ խօսէր զայս, ձայն
եբարձ կին մի 'ի ժողովրդենէ անտի և ասէ. Երա-

նի է որովայնին՝ որ կրեաց զքեզ, և ստեանցն՝
28 որ դիեցուցին զքեզ: Եւ նա ասէ. Այո՛ երանի
այնոցիկ է, որ լսեն զբանն Աստուծոյ՝ և առնեն:
29 Եւ ՚ի դիզանել ՚ի վերայ նորա ժողովրդոցն՝ սկսաւ
ասել. Ազգս այս ազգ չար է. նշան խնդրէ, և նշան
յերկնից ո՛չ տացի սմա՝ բայց նշանն Յովնանու:
30 Զի որպէս եղև Յովնան նշան Նինուէացւոց, այն-
31 պէս եղիցի և Որդի մարդոյ ազգիս այսմիկ: Դշխոյն
Հարաւոյ յարիցէ ՚ի դատաստանի ընդ արս ազգիս
այսորիկ՝ և դատապարտեսցէ զսոսա, զի եկն ՚ի ծա-
գաց երկրի լսել զիմաստութիւնն Սողոմոնի. և ա-
32 հա աւելի քան զՍողոմոն է աստ: Արք Նինուէա-
ցիք յարիցեն ՚ի դատաստանի ընդ ազգիս ընդ այս-
միկ՝ և դատապարտեսցեն զսա, զի ապաշխարեցին
՚ի քարոզութեանն Յովնանու. և ահա աւելի
քան զՅովնան է աստ:
33 Ո՛չ ուրուք լուցեալ ճրագ՝ դնէ ՚ի թաքստեան,
և ո՛չ ընդ գրուանաւ. այլ ՚ի վերայ աշտանակի,
34 զի որ մտանեն՝ լոյս տեսանիցեն: Ճրագ մարմնոյ
ակն է. յորժամ ակնն առատ է, ամենայն մար-
մինն լուսաւոր եղիցի. և երբ ակն չար է, և մար-
35 մինն խաւարին եղիցի: Արդ զգո՛յշ լեր՝ գուցէ լոյսդ
36 որ ՚ի քեզ է՝ խաւար իցէ: Եթէ մարմինդ քո ա-
մենայն լուսաւոր է՝ և չգուցէ մասն ինչ խաւարին,
եղիցի լուսաւոր ամենայն. որպէս յորժամ ճրագն
37 նշուլիւք լուսաւորեսցէ զքեզ: Եւ մինչդեռ խօսէր
զայս, աղաչէր զնա ոմն փարիսեցի՝ զի ճաշ կերիցէ
38 առ նմա. և նա մտեալ բազմեցաւ: Իբրև տեսեալ
փարիսեցին՝ զարմացաւ, զի նախ ո՛չ մկրտեցաւ յա-

39 ռաջ քան զճաշ: Ասէ ցնա Տէր. Այժմ դուք փա-
րիսեցիք զարտաքին բաժակին և զպնակին սրբէք.
և ներքինն ձեր լի է յափշտակութեամբ և չարու-
40 թեամբ: Անմիտք՝ ոչ ապաքէն որ զարտաքինն ա-
41 րար՝ և զներքինն նոյն արար: Բայց ա՛ղէ զարժանն
իսկ՝ տուք ողորմութիւն, և ահա ամենայն սուրբ
42 է ձեր: Այլ վա՛յ ձեզ փարիսեցւոց, զի տասանոր-
դէք զանանուխ և զփեգենայ և զամենայն բանջար,
և անցանէք զիրաւամբք և զսիրովն Աստուծոյ. զայս
43 արժան էր առնել՝ և զայնու ոչ անցանել: Վա՛յ
ձեզ փարիսեցւոց, զի սիրէք զբարձրագահս 'ի ժո-
44 ղովուրդս, և զողջոյնս 'ի հրապարակս: Վա՛յ
ձեզ՝ զի էք դուք իբրև զգերեզմանս անյայտս, և
45 մարդիկ գնան 'ի վերայ՝ և ոչ գիտեն: Պատասխանի
ետ ոմն յօրինականացն՝ և ասէ ցնա. Վարդապետ
46 զայդ բանս ասելով՝ և զմեզ թշնամանես: Եւ նա
ասէ. Եւ ձեզ վա՛յ օրինականացդ, զի բառնայք
մարդկան բեռինս դժուարակիրս, և դուք մատամբ
47 միով 'ի բեռինսն ոչ մերձենայք: Վա՛յ ձեզ՝ զի
շինէք զշիրիմս մարգարէիցն և հարքն ձեր սպանին
48 զնոսա: Ապա ուրեմն վկայէք՝ եթէ կամակիցք էք
գործոց հարցն ձերոց. զի նոքա կոտորեցին զնոսա,
49 և դուք զգերեզմանս նոցա շինէք: Վասն այնորիկ
իմաստութիւնն Աստուծոյ ասաց. Առաքեցից 'ի
նոսա մարգարէս և առաքեալս, և 'ի նոցանէ սպա-
50 նանիցեն և հալածիցեն: Զի խնդրեսցի արիւն ա-
մենայն մարգարէից՝ հեղեալ 'ի սկզբանէ աշխարհի՝
51 յազգէ յայսմանէ. Յարենէն Աբելի մինչև յա-
րիւնն Զաքարիայ կորուսելոյ ընդ սեղանն և ընդ

տաճարին. այո ասեմ ձեզ՝ խնդրեսցի յազգէ յայդ-
52 մանէ։ Վայ ձեզ օրինականացդ. զի թաքուցանէք
զփականս գիտութեանն. դուք ոչ մտանէք, և որ
53 մտանելոցն էին՝ արգելուք։ Եւ ՚ի խօսելն զայս ա-
մենայն առ նոսա* առաջի ամենայն ժողովրդեանն,
զամօթի հարկանէին. և" սկսան դպիրքն և փարի-
սեցիք զչարել՝ և գրգռել ընդ նմա վասն բազում
54 իրաց. Եւ սպասել որսալ ինչ բանս ՚ի բերանոյ
նորա, զի չարախօսեսցեն զնմանէ։

## ԳԼ. ԺԲ

1 Որովք ՚ի կուտել բիւրաւորաց ժողովրդեանն՝
մինչև կոխել զմիմեանս, սկսաւ ասել ցաշակերտսն
իւր. Նախ՝ զգոյշ լերուք անձանց ՚ի խմորոյ փա-
2 րիսեցւոցն, որ է կեղծաւորութիւն։ Զի ոչինչ է
՚ի ծածուկ որ ոչ յայտնեսցի, և գաղտնի որ ոչ ծա-
3 նիցի։ Վասն զի զոր ինչ ասիցէք ՚ի խաւարի, լսելի
լիցի ՚ի լոյս. և զոր յունկանէն խօսեցարուք ՚ի շտե-
4 մարանս, քարոզեսցի ՚ի վերայ տանեաց։ Բայց ձեզ
ասեմ սիրելեաց իմոց. Մի՛ զարհուրիցիք յայնցա-
նէ՝ որ սպանանեն զմարմին, և յետ այնորիկ աւե-
5 լի ինչ ոչ ունիցին առնել։ Այլ ցուցից ձեզ յում-
մէ երկնչիցիք. Երկնչիջիք յայնմանէ՝ որ յետ սպա-
նանելոյ ունի իշխանութիւն արկանել ՚ի գեհեն.
6 այո ասեմ ձեզ՝ Յայնմանէ երկնչիջիք։ Ո՛չ ապա-
քէն հինգ ձագ երկուց դանգաց վաճառի, և մի ՚ի

* ՚Ի Յոյնն չէ։

7 Նոցանէ ոչ է մոռացեալ առաջի Աստուծոյ։ Այլ
ձեր և ամենայն խսկ հեր գլխոյ թուեալ է. մի՛ եր֊
8 կնչիք, զի քան զբազում ճագս լաւ էք դուք։ Ա֊
սեմ ձեզ. զի Ամենայն որ խոստովանեսցի յիս ա֊
ռաջի մարդկան, և Որդի մարդոյ խոստովանեսցի
9 զնմանէ առաջի Հրեշտակաց Աստուծոյ։ Եւ որ ու֊
րասցի զիս առաջի մարդկան, ուրացեալ լիցի ա֊
10 ռաջի Հրեշտակաց Աստուծոյ։ Եւ ամենայն որ ա֊
սէ բան զՈրդւոյ մարդոյ՝ թողցի նմա. բայց որ
11 զՀոգին Սուրբ հայհոյիցէ, մի՛ թողցի նմա։ Այլ
յորժամ տանիցին զձեզ 'ի ժողովուրդս և 'ի պե֊
տութիւնս և յիշխանութիւնս, մի՛ հոգայցէք՝ որպէս
թէ զի՞նչ պատասխանի տայցէք, կամ զի՞նչ ա֊
12 սիցէք։ Զի Հոգին Սուրբ ուսուսցէ ձեզ 'ի նմին
ժամու՝ զինչ պարտ իցէ խօսել։

13 Ասէ ոմն 'ի ժողովրդենէն ցնա. Վարդապետ՝ ասա
ցեղբայր իմ բաժանել ընդ իս զժառանգութիւնն։
14 Եւ նա ասէ ցնա. Այր դու՝ ո՞ կացոյց զիս դատա֊
15 ւոր կամ բաժանարար 'ի վերայ ձեր։ Եւ ասէ ցնո֊
սա. Տեսէք և զգո՛յշ լերուք յամենայն ագահութե֊
նէ, զի ոչ եթէ 'ի մթերից ընչից ուրուք իցեն կեանք
16 նորա։ Խօսեցաւ առ նոսա առակ մի՝ և ասէ. Առն
17 ուրումն մեծատան եռուն անդք տոհմականս. Եւ
խորհէր 'ի միտս իւր՝ և ասէր. Զի՞ գործեցից՝ զի
18 ոչ գոյ տեղի ուր ժողովեցից զարդիւնս իմ։ Եւ ա֊
սէ. Գիտեմ զինչ արարից. քակեցից զշտեմա֊
րանս իմ, և ևս մեծամեծս շինեցից. և անդր ժո֊
ղովեցից զցորեան և զամենայն բարութիւնս իմ։
19 Եւ ասացից ցանձն իմ. Անձն՝ ունիս բազում բա֊

բութիւնս համբարեալ ամաց բազմաց. հանգիր՝
20 կեր՝ արբ՝ և ուրախ լեր։ Ասէ ցնա Աստուած.
Անմիտ՝ յայսմ գիշերի զոգիդ ՚ի քէն ՚ի բաց պա-
հանջեսցեն, իսկ զոր պատրաստեցերն՝ ո՞ւմ լինիցի։
21 Նոյնպէս և որ գանձէ անձին, և ոչ յԱստուած
22 մեծանայցէ։ Ասէ ցաշակերտսն իւր. Վասն այդորիկ
ասեմ ձեզ. մի՛ հոգայք ընդ ոգւոյ՝ թէ զի՞նչ ուտի-
23 ցէք, և մի՛ ընդ մարմնոյ՝ թէ զի՞նչ զգենուցուք։ Զի
ոգի առաւել է քան զկերակուր՝ և մարմին քան զհան-
24 դերձ։ Հայեցարուք ընդ ագռաւս, զի ոչ սերմանեն
և ոչ հնձեն, որոց ոչ գոն շտեմարանք՝ և ոչ համ-
բարանոցք, և Աստուած կերակրէ զնոսա. որչափ
25 ևս առաւել զձեզ՝ որ լաւ էք քան զթռչունս։ Ո՞վ ՚ի
ձէնջ առ հոգալ՝ կարիցէ յաւելուլ ՚ի հասակ իւր
26 կանգուն մի։ Իսկ արդ եթէ ՚ի փոքուն չէք բաւա-
27 կան՝ վասն այլոցն զի՞ հոգայցէք։ Հայեցարուք ընդ
շուշանն՝ որպէս աճէ, ոչ ջանայ՝ և ոչ նիւթէ.
ասեմ ձեզ, Եւ ոչ Սողոմոն յամենայն ՚ի փառսն
28 իւր զգեցաւ իբրև զմի ՚ի նոցանէ։ Իսկ եթէ զխոտն՝
որ այսօր ՚ի բացի է՝ և վաղիւ ՚ի հնոց արկանելի,
Աստուած այնպէս զգեցուցանէ. որչափ ևս առա-
29 ւել զձեզ թերահաւատք։ Եւ դուք մի՛ խնդրէք՝
զի՞նչ ուտիցէք կամ զի՞նչ ըմպիցէք, և մի՛ զբաղ-
30 նուք. Զի զայն ամենայն հեթանոսք աշխարհի
խնդրեն. այլ ձեր Հայր գիտէ՝ զի պիտոյ է այն
31 ամենայն։ Բայց խնդրեցէք զարքայութիւն Աստու-
ծոյ. և այն ամենայն յաւելցի ձեզ։
32 Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. զի հաճեցաւ Հայր ձեր
33 տալ ձեզ զարքայութիւն։ Վաճառեցէք զինչս ձեր,

և տուք ողորմութիւն. և արարէք ձեզ քսակս ա-
ռանց հնանալոյ, գանձ անպակաս յերկինս. ուր
34 ոչ գող մերձենայ, և ոչ ցեց ապականէ։ Զի ուր
35 գանձն ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին։ Եղի-
ցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս՝ և ճրագունք լու-
36 ցեալք։ Եւ դուք նմանողք մարդկան՝ որ ակն ու-
նիցին տեառն իւրեանց՝ թէ երբ դառնայցէ 'ի հար-
սանեաց. զի յորժամ գայցէ և բախիցէ, վաղվա-
37 ղակի բանայցեն նմա։ Երանի իցէ ծառայիցն այ-
նոցիկ՝ զորս եկեալ տէրն գտցէ արթունս. ամէն
ասեմ ձեզ՝ զի Գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմե-
38 ցուսցէ զնոսա, և անցեալ պաշտիցէ զնոսա։ Եւ
եթէ յերկրորդ՝ կամ յերրորդ պահու եկեսցէ՝ և
գտցէ այնպէս՝ երանելի են ծառայքն այնոքիկ։
39 Զայս գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն
յորում ժամու գող գայ՝ հսկէր, և ոչ տայր թոյլ
40 ական հատանել 'ի տան իւրում։ Եւ դուք եղերուք
պատրաստք՝ զի յորում ժամու ոչ կարծիցէք, գայ
41 Որդի մարդոյ։ Ասէ Պետրոս. Տէր՝ առ մե՞զ ասա-
42 ցեր զառակդ զայդ՝ եթէ առ ամենեսեան։ Եւ ասէ
Տէր. Ո՞վ իցէ հաւատարիմ տնտես և իմաստուն,
զոր կացոյց տէր իւր 'ի վերայ գերդաստանի իւրոյ
43 տալ 'ի ժամու զկերակուրս։ Երանի իցէ ծառային
այնմիկ՝ զոր եկեալ տէր իւր գտանիցէ արարեալ
44 այնպէս։ Արդարև ասեմ ձեզ, զի 'ի վերայ ամե-
45 նայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա եթէ ասի-
ցէ ծառայն այն 'ի սրտի իւրում. Յամէ տէր իմ
'ի գալ, և սկսանիցի հարկանել զծառայսն և զա-
46 ղախնայս, ուտել և ըմպել և արբենալ։ Եկեսցէ

տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ակն ոչ
ունիցի, եւ 'ի ժամու յորում ոչ գիտիցէ. ընդ մէջ
կտրեսցէ զնա, եւ զմասն նորա ընդ անհաւատս դի-
47 ցէ: Եւ ծառայ որ գիտիցէ զկամս տեառն իւրոյ՝ եւ
ոչ պատրաստեսցէ ըստ կամաց նորա, արբցէ գան
48 բազում: Եւ որ ոչն գիտիցէ՝ եւ արժանի գանի
ինչ գործիցէ, արբցէ գան սակաւ. ամենայնի՝ ո-
րում շատ տուաւ, շատ խնդրեսցի 'ի նմանէ, եւ
որում բազում աւանդեցաւ, առաւել եւս պահան-
ջեսցեն 'ի նմանէ:

49 Հուր եկի արկանել յերկիր. եւ զի՞նչ կամիմ
50 թէ արդէն իսկ բորբոքէր: Եւ մկրտութիւն մի ու-
նիմ մկրտել, եւ զիա՞րդ փութամ մինչեւ կատարեսցի:
51 Համարիք եթէ խաղաղութիւն եկի տալ յերկիր.
52 Ո՛չ՝ ասեմ ձեզ, այլ բաժինս: Զի եղիցին յայսմ
հետէ հինգ 'ի տան միում բաժանեալք, երեքն
53 յերկուց, եւ երկուքն յերից: Բաժանեսցի հայր
յորդւոյ՝ եւ որդի 'ի հօրէ, մայր 'ի դստերէ՝ եւ դուստրն
'ի մօրէ, սկեսուր 'ի հարսնէ՝ եւ հարսն 'ի սկեսրէ
54 իւրմէ: Ասաց եւ ցժողովուրդսն. Յորժամ տեսա-
նիցէք ամպ ծագեալ յարեւմտից, իսկոյն ասէք՝ թէ
55 Անձրեւ գայ, եւ լինի այնպէս. Եւ յորժամ հարաւ
շնչեալ, ասէք թէ Խորշակ լինի, եւ լինի այնպէս:
56 Կեղծաւորք՝ զերեսս երկնի եւ երկրի գիտէք փորձել,
57 իսկ զժամանակս զայս զիա՞րդ ոչ փորձէք: Ընդէ՞ր
58 եւ յանձանց իսկ ոչ ընտրէք զարժանն: Յորժամ
երթայցես ընդ ոսոխի քում առ իշխան, 'ի ճանա-
պարհի տուր զհաշիւն զերծանել 'ի նմանէ. զի
գուցէ քարշիցէ զքեզ առ դատաւորն, եւ դատա-

ւորն մատնիցէ դաՀճի, եւ դաՀիճն արկանիցէ 'ի
59 բանտ ։ Ասեմ քեզ ։ Ո՛չ ելանիցես անտի՝ մին-
չեւ Հատուցանիցես զյետին բնիոնն ։

## ԳԼ. ԺԳ.

1 Եկին ոմանք 'ի նմին ժամանակի, եւ պատմեցին
նմա վասն Գալիլեացւոցն, որոց զարիւնն Պիղատոս
2 խառնեաց ընդ զոՀս նոցա ։ Պատասխանի ետ եւ ասէ
ցնոսա ․ Համարի՞ք եթէ այն Գալիլեացիք եղեն
մեղաւորք քան զամենայն Գալիլեացիս, զի զայնպի-
3 սի անցս կրեցին ։ Ո՛չ, ասեմ ձեզ, այլ եթէ ոչ
4 ապաշխարիցէք՝ ամենեքին նոյնպէս կորնչիջիք ։ Կամ
նոքա ութուտասանքն, յորոց վերայ աշտարակն
անկաւ 'ի Սիլովամ, եւ սպան զնոսա ․ Համարի՞ք
եթէ նոքա պարտապանք եղեն քան զամենայն մար-
5 դիկ՝ որ բնակեալ են յԵրուսաղէմ ։ Ո՛չ, ասեմ
ձեզ ․ այլ եթէ ոչ ապաշխարիցէք՝ ամենեքեան
6 նոյնպէս կորնչիջիք ։ Ասաց եւ զառակս զայս ․ Թզե-
նի մի էր ուրումն տնկեալ յայգւոջ իւրում ․ եւ եկն
7 խնդրել պտուղ 'ի նմանէ՝ եւ ոչ եգիտ ։ Ասէ ցայ-
գեգործն ․ ԱՀա երեք ամք են՝ յորմէ Հետէ գամ
խնդրել պտուղ 'ի թզենւոջդ՝ եւ ոչ գտանեմ ․ արդ՝
8 կոտրեա զդա, ընդէ՞ր եւ զերկիրդ խափանէ ։ Նա
պատասխանի ետ եւ ասէ ․ Տէ՛ր, թո՛ղ զդա յայս
ամ եւս ․ մինչեւ շուրջ զդովաւ բրեցից եւ արկից աղբ ․
9 Թերեւս արասցէ պտուղ ․ ապա թէ ոչ՝ յամէ եւս
Հատցես զդա ։

10 Եւ ուսուցանէր 'ի միում 'ի ժողովրդանոցացն 'ի

11 շաբաթս։ Եւ ահա կին մի՝ զոր ունէր այս հի-
ւանդութեան ամս ութուտասն, եւ էր կարկամեալ,
12 եւ ոչ կարէր ամենեւին ՚ի վեր հայել։ Եւ տե-
սեալ զնա Յիսուսի՝ կոչեաց առ ինքն՝ եւ ասէ ցնա.
Կին դու՝ արձակեալ ես ՚ի հիւանդութենէ քումմէ։
13 Եւ եդ ՚ի վերայ նորա ձեռն, եւ առժամայն ուղղե-
14 ցաւ, եւ փառաւոր առնէր զԱստուած։ Պատասխա-
նի ետ ժողովրդապետն՝ ցասուցեալ թէ ընդէր ՚ի
շաբաթու բժշկեաց Յիսուս, եւ ասէ ցժողովուրդն.
Վեց օր է՝ յորս արժան է գործել, յայնս եկա՛յք
15 բժշկեցարո՛ւք, եւ մի՛ յաւուր շաբաթու։ Պատաս-
խանի ետ նմա Տէր՝ եւ ասէ. Կեղծաւորք՝ իւրա-
քանչիւրոք ՚ի ձէնջ ՚ի շաբաթու ո՞չ արձակէ զեզն
16 իւր կամ զէշ ՚ի մսրոյ՝ եւ տանի տայ ջուր։ Իսկ
այս՝ դուստր Աբրահամու էր. զոր կապեաց Սատա-
նայ ահաւադիկ ութուտասն ամ, ո՞չ էր արժան ար-
17 ձակել ՚ի կապանաց անտի ՚ի շաբաթու։ Եւ զայս
իբրեւ ասէր, յամօթ լինէին ամենեքին որ հակա-
ռակն կային նմա. եւ ամենայն ժողովուրդն ուրախ
լինէր ՚ի վերայ ամենայն փառաւորութեանցն, որ
18 գործէին ՚ի նմանէ։ Եւ ասէր. Ո՞ւմ նման է ար-
քայութիւն Աստուծոյ, եւ որո՞ւմ նմանութեան
19 նմանեցուցից զնա։ Նման է հատոյ մանանխոյ, զոր
առեալ մարդոյ՝ արկ ՚ի պարտէզ իւր. աճեաց եւ ե-
ղեւ ծառ, եւ թռչունք երկնից բնակեալ էին յոստս
20 նորա։ Եւ դարձեալ ասէ. Ո՞ւմ նմանեցուցից
21 զարքայութիւն Աստուծոյ. Նման է խմորոյ՝ զոր
առեալ կնոջ թաքոյց յալեր երից գրուաց՝ մինչեւ
խմորեցաւ ամենայն։

22 Եւ շրջէր ընդ քաղաքս եւ ընդ գիւղս՝ ուսուցա-
23 նէր. եւ ճանապարհ արարեալ յԵրուսաղէմ. Ասէ
ոմն ցնա. Տէր եթէ սակաւք իցեն՝ որ ապրելոց ի-
24 ցեն. եւ Նա ասէ ցնոսա. Ջանացարուք մտանել
ընդ դուռն նեղ. ասեմ ձեզ՝ զի Բազումք խնդրես-
25 ցեն մտանել՝ եւ ոչ կարասցեն։ Յորմէ հետէ մտցէ
տանուտէրն՝ եւ փակեսցէ զդուռնն, եւ սկսանիցիք
կալ արտաքոյ՝ եւ բախել զդուռնն, եւ ասել. Տէր
Տէր՝ բաց մեզ. եւ պատասխանի տուեալ ասիցէ ձեզ.
26 Ո՛չ գիտեմ զձեզ ուստի էք։ Յայնժամ սկսանիցիք
ասել. Կերաք առաջի քո եւ արբաք, եւ ՚ի հրապարա-
27 կս մեր ուսուցեր։ Եւ ասիցէ. Ասեմ ձեզ, ո՛չ
գիտեմ զձեզ ուստի էք. ՚ի բաց կացէք յինէն ա-
28 մենայն մշակքդ անիրաւութեան։ Անդ եղիցի լալ
եւ կրճտել ատամանց. յորժամ տեսանիցէք զԱբրա-
համ եւ զԻսահակ եւ զՅակոբ՝ եւ զամենայն մար-
գարէս յարքայութեան Աստուծոյ, եւ զձեզ հան-
29 եալ արտաքս։ Եւ եկեսցեն յարեւելից եւ յարեւմտից
եւ ՚ի հիւսիսոյ եւ ՚ի հարաւոյ, եւ բազմեսցին յար-
30 քայութեան Աստուծոյ։ Եւ ահա իցեն յետինք՝
որ եղիցին առաջինք, եւ իցեն առաջինք՝ որ լինիցին
31 յետինք։ ՚Ի նմին աւուր մատեան ոմանք փարիսե-
ցիք, եւ ասեն ցնա. Ե՛լ եւ գնա՛ աստի, զի Հերով-
32 դէս կամի սպանանել զքեզ։ Եւ ասէ ցնոսա. Եր-
թա՛յք ասացէք աղուեսուն այնմիկ. Ահաւասիկ հա-
նեմ դեւս, եւ բժշկութիւնս կատարեմ այսօր եւ վա-
33 ղիւ, եւ յերիր աւուր կատարիմ։ Բայց պարտ է
այսօր եւ վաղիւ եւ ՚ի միւսում աւուր գնալ. զի ո՛չ
է մարթ մարգարէի կորնչել արտաքոյ քան զԵ-

34 րուսաղէմ: Երուսաղէմ Երուսաղէմ՝ որ կոտորէիր
զմարգարէս, և քարկոծ առնէիր զառաքեալսն առ
քեզ. քանիցս անգամ կամեցայ ժողովել զորդիս
քո, որպէս հաւ զձագս իւր ընդ թեւովք, և ո՛չ
35 կամեցարուք: Ահա թողեալ լիցի ձեզ տուն ձեր:
Բայց ասեմ ձեզ, եթէ Ո՛չ ևս տեսանիցէք զիս,
մինչև ասիցէք՝ օրհնեալ եկեալն յանուն Տեառն:

## ԳԼ. ԺԴ

1 Եւ եղև ՚ի մտանելն նորա ՚ի տուն ուրումն իշխա-
նացն փարիսեցւոց ՚ի շաբաթու ուտել հաց, և նո-
2 քա սպասէին նմա: Եւ ահա այր ոմն էր անդ ջըր-
3 գողեալ առաջի նորա: Պատասխանի ետ Յիսուս՝ և
ասէ ցօրինաւորսն և ցփարիսեցիս. եթէ Արժա՞ն
4 իցէ ՚ի շաբաթու բժշկել: Եւ նոքա լուռ եղեն. և
բուռն հարեալ զնմանէ՝ բժշկեաց զնա, և արձա-
5 կեաց: Եւ ասէ ցնոսա. Ո՞յր ուրուք ՚ի ձէնջ էշ
կամ եզն՝ անկանիցի ՚ի ջրհոր, և ոչ վաղվաղակի
6 հանիցէ զնա յաւուր շաբաթու: Եւ ո՛չ կարացին
7 տալ նմա պատասխանի առ այն: Ասաց և առ կոչ-
նականսն առակ մի, հայեցեալ թէ զիա՛րդ բարձրըն-
8 տիր լինէին, ասէ ցնոսա: Յորժամ կոչիցէ ոք
զքեզ ՚ի հարսանիս՝ կամ ՚ի կոչունս, մի՛ բազմիցիս
յառաջին բարձին. գուցէ պատուականագոյն ևս
9 քան զքեզ իցէ կոչեցեալ ՚ի նմանէ. Եւ եկեալ՝ որ
զքեզն և զնա կոչեաց՝ ասիցէ ցքեզ. Տո՛ւր սմա տե-
ղի. և ապա սկսանիցիս ամօթով զյետին տեղին
10 ունել: Այլ յորժամ կոչիցիս, երթիջիր բազմիս-

ջիր 'ի յետին տեղւոջ. զի յորժամ գայցէ որ կո-
չեացն զքեզ, ասիցէ ցքեզ. Բա՛րեկամ 'ի վեր մա-
տիր. յայնժամ եղիցին քեզ փառք առաջի բարձակ-
11 ցացն քոց: Զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն,
խոնարհեսցի. և որ խոնարհեցուցանէ զանձն, բարձ-
12 րասցի: Ասէ և ցկոչնատէրն. Յորժամ առնիցես
ճաշ կամ ընթրիս, մի՛ կոչեր զբարեկամս քո, և
մի՛ զեղբարս քո, և մի՛ զազգականս քո, և մի՛ զդը-
րացիս քո, և մի՛ զմեծամեծս. զի մի՛ և նոքա փո-
խարէն կոչեսցեն զքեզ, և լինիցի քեզ հատուցումն:
13 Այլ յորժամ առնիցես ընդունելութիւն, կոչեա՛
14 զաղքատս և զխեղս և զկաղս և զկոյրս: Եւ երա-
նելի լինիցիս. զի ոչ ունին փոխարէն հատուցանելոյ
քեզ. և հատուցի քեզ փոխարէն 'ի յարութեան
15 արդարոց: Իբրև լուաւ զայս ոմն 'ի բազմականացն՝
ասէ ցնա. Երանի՜ որ կերիցէ ճաշ յարքայութեան
16 Աստուծոյ: Եւ նա ասէ. Այր ոմն գործեաց ընթ-
17 րիս, և հրաւիրեաց զբազումս: Եւ առաքեաց զծա-
ռայ իւր 'ի ժամու ընթրեացն կոչել զհրաւիրեալսն՝
թէ Եկայք, զի ահաւասիկ պատրաստ է ամենայն
18 ինչ: Եւ սկսան մի ըստ միոջէ՝ ամենեքեան հրաժա-
րել. առաջինն ասէ. Ագարակ գնեցի, և հարկ է
ելանել տեսանել զնա, աղաչեմ զքեզ կա՛լ զիս
19 հրաժարեալ: Եւ միւսն ասէ. լուծս հինգ եզանց
գնեցի, և երթամ փորձել զնոսա, աղաչեմ զքեզ
20 կա՛լ զիս հրաժարեալ: Եւ միւսն ասէ. Կին առի,
21 և վասն այնորիկ ոչ կարեմ գալ: Եւ եկեալ ծա-
ռայն պատմեաց զայն տեառն իւրում: Յայնժամ
բարկացեալ տանուտէրն՝ ասէ ցծառայն իւր. Ե՛լ

վաղվաղակի 'ի հրապարակս և 'ի փողոցս քաղաքիդ,
և զաղքատս և զխեղս և զկաղս և զկոյրս մոյծ այսր:
22 Եւ ասէ ծառայն. Տէ՛ր՝ եղև զոր հրամայեցերն, և
23 կայ ևս տեղի: Եւ ասէ տէրն ցծառայն. Ե՛լ 'ի
ճանապարհս և 'ի ցանգս, և արա՛ այսր մտանել, զի
24 լցցի տուն իմ: Ասեմ ձեզ, զի ո՛չ ոք յայնց կո-
չեցելոց ճաշակեսցէ յընթրեաց իմոց:
25 Եւ երթային ընդ նմա ժողովուրդք բազումք.
26 դարձաւ՝ և ասէ ցնոսա: Եթէ ոք գայ առ իս՝ և ոչ
ատեայ զհայր իւր և զմայր և զկին և զորդիս և զեղ-
բարս և զքորս, նա և զանձն ևս իւր, ո՛չ կարէ իմ
27 աշակերտ լինել: Զի որ ո՛չ բառնայ զխաչ իւր՝ և
28 գայ զկնի իմ, ո՛չ կարէ իմ աշակերտ լինել: Ո՞վ
ոք 'ի ձէնջ կամիցի շինել աշտարակ, և ո՛չ նախ
նստեալ համարիցի զծախսն՝ եթէ ունիցի բաւական
29 'ի կատարումն. Զի գուցէ իբրև արկանիցէ հիմն՝
և ո՛չ կարիցէ կատարել, ամենեքին որ տեսանիցեն,
30 սկսանիցին ծաղր առնել զնա, Եւ ասել. Թէ Այս
31 այր սկսաւ շինել, և ո՛չ կարաց կատարել: Կամ
ո՞ր թագաւոր՝ երթեալ տալ պատերազմ ընդ այ-
լում թագաւորի. և ո՛չ նստեալ նախ խորհիցի,
եթէ կարող իցէ տասն հազարաւ զդէմ ունել զայ-
նորիկ՝ որ գայցէ 'ի վերայ նորա քսան հազարաւ:
32 Ապա թէ ոչ՝ մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակու-
33 թիւն առաքեալ՝ աղաչեսցէ 'ի խաղաղութիւն: Արդ՝
այսպէս ամենայն ոք 'ի ձէնջ՝ որ ո՛չ հրաժարեսցէ
յամենայն ընչից իւրոց, ո՛չ կարէ իմ աշակերտ լի-
34 նել: Բարւոք է աղ. ապա թէ աղն անհամեսցի,
35 ի՞ւ համեմեսցի: Ո՛չ յերկիր՝ և ո՛չ յաղբ է պիտա-

նացու, այլ ընկենուլ զնա արտաքս: Որ ունիցի ա-
կանջս լսելոյ լուիցէ:

## ԳԼ. ԺԵ

1 Եւ էին մերձ առ նա ամենայն մաքսաւորք և մե-
2 ղաւորք՝ լսել ՚ի նմանէ: Տրտնջէին փարիսեցիքն և
դպիրքն՝ և ասէին. Ընդէ՞ր սա զմեղաւորս ընդունի՝
3 և ուտէ ընդ նոսա: Ասաց առ նոսա զառակս զայս:
4 Ո՞վ ոք իցէ ՚ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ հարիւր ոչ-
խար, և կորուսանիցէ մի ՚ի նոցանէ. ո՞չ թողուցու
զիննսուն և զինն յանապատի, և երթայցէ զհետ
5 կորուսելոյն՝ մինչև գտանիցէ զնա: Եւ իբրև գտա-
6 նէ, դնէ զնա ՚ի վերայ ուսոց իւրոց խնդալով, Եւ
երթայ ՚ի տուն. կոչէ զբարեկամս և զդրացիս, և
ասէ ցնոսա. Ուրախ եղերուք ընդ իս, զի գտի զոչ-
7 խարս իմ զկորուսեալ: Ասեմ ձեզ. զի Այսպէս
է ուրախութիւն յերկինս վասն միոյ մեղաւորի որ
ապաշխարիցէ՝ քան վասն իննսուն և ինն անդարոց՝
8 որոց չիցէ պիտոյ ապաշխարութիւն: Կամ ո՞վ իցէ
կին, որոյ իցեն դրամք տասն. և եթէ կորուսանիցէ
դրամ մի, ո՞չ լուցանիցէ ճրագ, և ածիցէ աւել ՚ի
9 տան, և խնդրիցէ տոկաւ՝ մինչև գտանիցէ: Եւ իբ-
րև գտանէ, կոչէ զբարեկամս և զդրացիս՝ և ասէ.
Ուրախ լերուք ընդ իս, զի գտի զդրամն իմ զոր կո-
10 րուսի: Այնպէս՝ ասեմ ձեզ, Ուրախութիւն եղի-
ցի առաջի հրեշտակաց Աստուծոյ ՚ի վերայ միոյ մե-
11 ղաւորի՝ որ ապաշխարիցէ: Եւ ասէ. Առն միոջ էին
12 երկու որդիք. Ասէ կրտսերն ՚ի նոցանէ ցհայրն.

Հա՛յր՝ տո՛ւր ինձ բաժին, որ անկանի յընչիցդ. և
13 նա բաժանեաց նոցա զկեանսն: Եւ յետ ո՛չ բազում
աւուրց՝ ժողովեալ զամենայն կրտսեր որդւոյն՝ գնաց
յաշխարհ հեռի. և անդ վատնեաց զինչս իւր, զի
14 կեայր անառակութեամբ: Եւ իբրև սպառեաց զամե-
նայն, եղև սով սաստիկ յաշխարհին յայնմիկ, և սկսաւ
15 ինքն չքաւորել: Եւ գնացեալ յարեցաւ 'ի մի ումն
'ի քաղաքացւոց աշխարհին այնորիկ. և յղեաց զնա
16 յագարակ իւր՝ արածել խոզս: Եւ ցանկայր լնուլ
զորովայն իւր յեղջերեկն զոր խոզքն ուտէին, և
17 ոչ ո՛ք տայր նմա: Եւ եկեալ 'ի միտս իւր՝ ասէ. Քա-
նի՜ վարձկանք իցեն 'ի տան հօր իմոյ հացալիցք, և
18 ես աստ սովամահ կորնչիմ: Յարուցեալ գնացից
առ հայր իմ, և ասացից ցնա. Հա՛յր՝ մեղայ յեր-
19 կինս և առաջի քո, Եւ ո՛չ եւս եմ արժանի կոչիլ
որդի քո, արա՛ զիս իբրև զմի 'ի վարձկանաց քոց:
20 Եւ յարուցեալ եկն առ հայր իւր. և մինչդեռ հե-
ռագոյն էր, ետես զնա հայրն՝ և գթացաւ. յար-
եաւ և ընթացաւ ընդ առաջ. անկաւ զպարանո-
21 ցաւն նորա, և համբուրեաց զնա: Եւ ասէ ցնա
որդին. Հա՛յր՝ մեղայ յերկինս և առաջի քո, ո՛չ
22 եւս եմ արժանի կոչիլ որդի քո: Ասէ հայրն ցծա-
ռայս իւր. Վաղվաղակի հանէք զպատմուճանն ա-
ռաջին, և ագուցէք նմա, և տո՛ւք զմատանին 'ի ձեռն
23 նորա, և կօշիկս յոտս նորա. Եւ ածէք զեզն պա-
24 րարակ՝ զենէք, կերիցո՛ւք և ուրա՛խ լիցուք. Զի
այս որդի իմ մեռեալ էր՝ և եկեաց, կորուսեալ էր՝
25 և գտաւ. և սկսան ուրախ լինել: Եւ էր երէց որ-
դին նորա յագարակի. և մինչդեռ գայր և մերձ ե-

26 ղև 'ի տունն ; լուաւ զձայն երգոց և զպարուց ․ Եւ
կոչեցեալ առ ինքն զմի 'ի ծառայիցն՝ հարցանէր թէ
27 զի՞նչ իցէ այն ։ Եւ նա ասէ ցնա ․ զի Եղբայր քո
եկեալ է, և եզեն հայր քո զեզն պարարակ, զի ող-
28 ջամբ ընկալաւ զնա ։ Բարկացաւ՝ և ոչ կամէր մտա-
29 նել, և հայրն ելեալ արտաքս՝ աղաչէր զնա ։ Պա-
տասխանի ետ և ասէ ցհայրն ․ Այս քանի ամք են՝
զի ծառայեմ քեզ, և երբէք զպատուիրանաւ քով
ՐՏ ոչ անցի ․ ուլ մի երբէք ոչ ետուր ինձ՝ զի ուրախ
30 եղէց ընդ բարեկամս իմ ։ Յորժամ եկն որդիդ քո
այդ՝ որ եկեր զկեանս քո ընդ պոռնիկս, զեներ դմա
31 զեզն պարարակ ։ Եւ ասէ ցնա ․ Որդեակ՝ դու հա-
նապազ ընդ իս ես, և ամենայն որ ինչ իմ է՝ քո է ․
32 Այլ ուրախ լինել և խնդալ պարտ էր, զի եղբայր
քո այս մեռեալ էր՝ և եկեաց, կորուսեալ էր՝ և
գտաւ ։

ԳԼ․ ԺԶ․

1 Եւ ասէ առ աշակերտսն ․ Այր մի էր մեծա-
տուն, որոյ էր տնտես ․ և եղև զնմանէ ամբաստա-
2 նութիւն, որպէս թէ վատնիցէ զինչս նորա ։ Կոչեաց՝
և ասէ ցնա ․ Զի՞նչ է այս զոր լսեմս զքէն, տո՛ւր
զհամար տնտեսութեան քո ․ զի ոչ ևս կարես լի-
3 նել տնտես ։ Ասէ ընդ միտս իւր տնտեսն ․ Զի՞նչ
գործեցից, զի տէր իմ հանէ զտնտեսութիւնս ․ գոր-
4 ծել՝ ոչ կարեմ ․ մուրանալ՝ ամաչեմ ։ Գիտեմ զինչ
արարից ․ զի յորժամ 'ի բաց լինիցիմ 'ի տնտեսու-
5 թենէս՝ ընկալցին զիս 'ի տունս իւրեանց ։ Եւ կո-

չեցեալ առ ինքն մի ըստ միոջէ 'ի պարտապանաց
տեառն իւրոյ, ասէ ցառաջինն. Քանի՞ ինչ պար-
6 տիս տեառն իմում: Եւ նա ասէ. Հարիւր մար
ձիթոյ. ասէ ցնա. Կա՛լ զգիր քո, և նիստ գրեա
7 վաղվաղակի յիսուն: Դարձեալ ասէ ցմիւսն. Դու
քանի՞ ինչ պարտիս. և նա ասէ. Հարիւր քոռ ցո-
րենոյ: և ասէ ցնա. Կա՛լ զգիր քո, և նիստ գրեա
8 ութսուն: Եւ գովեաց տէրն զտնտեսն անիրաւու-
թեան, զի իմաստութեամբ արար. զի որդիք աշ-
խարհիս այսորիկ իմաստնագոյն են քան զորդիս լու-
9 սոյ յազգս իւրեանց: Եւ ես ձեզ ասեմ. Արարէք
ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան. զի
յորժամ պակասիցէ այն՝ ընկալցին զձեզ 'ի յարկսն
10 յաւիտենականս: Որ 'ի փոքուն հաւատարիմ է, և
'ի բազմին հաւատարիմ է. և որ 'ի փոքուն անիրաւ
11 է, և 'ի բազմին անիրաւ է: Իսկ արդ՝ եթէ յանի-
րաւ մամոնային չեղէք հաւատարիմք, զճշմարիտն
12 ձեզ ո՞ հաւատասցէ: Եւ եթէ յօտարին չեղէք հա-
13 ւատարիմք, զձերն ո՞ տացէ ձեզ: Ոչ ո՛ք ծառայ կա-
րէ երկուց տերանց ծառայել. զի եթէ զմին ատի-
ցէ, և զմիւսն սիրիցէ. կամ զմին մեծարիցէ, և
զմիւսն արհամարհիցէ. ո՛չ կարէք Աստուծոյ ծա-
14 ռայել և մամոնայի: Իբրև լսէին զայս ամենայն
փարիսեցիքն՝ քանզի արծաթասէրք էին, և անգոս-
15 նէին զնա: Եւ ասէ ցնոսա. Դուք էք որ արդա-
րացուցանէք զանձինս առաջի մարդկան, սակայն
Աստուած գիտէ զսիրտս ձեր. զի որ առաջի մարդկան
16 բարձր է, պիղծ է առաջի Աստուծոյ: Օրէնքն և
մարգարէք մինչև ցՅովհաննէս. յայնմ հետէ ար-

քայութիւն Աստուծոյ աւետարանի, և ամենայն որ
17 զնա բռնաբարէ: Դիւրին իցէ երկնից և երկրի ան-
ցանել, քան յօրինացն միոյ նշանախեցի անկանել:
18 Ամենայն որ արձակէ զկին իւր՝ և առնէ այլ, շնայ.
19 և որ զարձակեալն առնէ, շնայ: Այր ոմն էր մեծա-
տուն, և ագանէր բեհեզս և ծիրանիս, և ուրախ
20 լինէր հանապազ առատապէս: Եւ աղքատ ոմն ա-
նուն Ղազարոս՝ անկեալ դնէր առ դրան նորա վի-
21 րաւորեալ. Եւ ցանկայր յագել 'ի փշրանացն՝ որ
անկանէին 'ի սեղանոյ մեծատանն. այլ և շունք ես
22 գային, և լեզուին զվէրս նորա: Եւ եղև մեռանել
աղքատին, և տանել հրեշտակաց զնա 'ի գոգն Աբ-
23 րահամու. մեռաւ և մեծատունն՝ և թաղեցաւ: Եւ
'ի դժոխսն ամբարձ զաչս իւր մինչ 'ի տանջանսն էր.
ետես զԱբրահամ 'ի հեռաստանէ, և զՂազարոս
24 'ի գոգ նորա հանգուցեալ: Եւ նա աղաղակեաց և
ասէ. Հա՛յր Աբրահամ՝ ողորմեա՛ց ինձ, և առա-
քեա՛ զՂազարոս, զի թացցէ զծագ մատին իւրոյ
'ի ջուր, և զովացուսցէ զլեզու իմ, զի պապակիմ
25 'ի տապոյ աստի: Եւ ասէ ցնա Աբրահամ. Որ-
դեակ՝ յիշեա՛ զի ընկալար անդրէն զբարիս քո 'ի
կեանսն քում. և Ղազարոս նոյնպէս զչարչարանս.
արդ սա աստ մխիթարի, և դու այդր պապակիս:
26 Եւ 'ի վերայ այսր ամենայնի՝ վիհ մեծ է ընդ մեզ
և ընդ ձեզ. եթէ կամիցին աստի առ ձեզ անցա-
նել՝ ո՛չ կարեն, և ո՛չ այտի որք առ մեզ անցանել:
27 Եւ ասէ. Արդ աղաչեմ զքեզ հա՛յր, զի արձա-
28 կեսցես զդա 'ի տուն հօր իմոյ. Են իմ անդ եղբարք
հինգ, որպէս զի տացէ նոցա վկայութիւն. զի մի

29 և նոքա գայցեն յայս տեղի տանջանաց ։ Եւ ասէ
Աբրահամ. Ունին զՄովսէս և զմարգարէս, նո-
30 ցա լուիցեն ։ Եւ նա ասէ. Ո՛չ հայր Աբրահամ,
բայց եթէ ՚ի մեռելոց ոք երթիցէ առ նոսա, և ա-
31 պաշխարեսցեն ։ Եւ ասէ ցնա. Եթէ Մովսէսի և
մարգարէիցն ոչ լսեն, և ոչ թէ ՚ի մեռելոց ոք յառ-
նիցէ՝ հաւատասցեն ։

## ԳԼ. ԺԷ։

1 Ասաց և առ աշակերտսն իւր. Ո՛չ է մարթ չգալ
գայթագղութեան. բայց վա՜յ այնմիկ է՝ յորոյ ձեռն
2 գայցէ ։ Լաւ էր նմա՝ թէ վէմ երկանաքար կա-
խէր զպարանոցէ նորա՝ և անկանէր ՚ի ծով, քան
թէ գայթագղեցուցանէ զմի ոք ՚ի փոքրկանցս յայս-
3 ցանէ ։ Զգո՛յշ կացէք անձանց. եթէ մեղիցէ եղ-
բայր քո, սաստեա՛ նմա. և եթէ ապաշխարիցէ,
4 թո՛ղ նմա ։ Եւ եթէ եօթն անգամ մեղիցէ քեզ,
և եօթն անգամ դարձցի ՚ի քեզ՝ և ասիցէ, Ապաշ-
5 խարեմ, թողցես նմա ։ Եւ ասեն առաքեալքն
6 ցՏէր. Յաւե՛լ մեզ հաւատս ։ Եւ ասէ Տէր. Եթէ
ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ, և ասի-
ցէք թթենւոյս այսմիկ, Խլեա՛ց և անկեա՛ց ՚ի ծո-
7 վու, և հնազանդեսցի ձեզ ։ Իսկ ո՞վ ոք ՚ի ձէնջ, որ
ունիցի ծառայ հողագործ կամ հովիւ, որ իբրև մտա-
նիցէ յագարակէ՝ ասիցէ ցնա վաղվաղակի, Թէ Անց
8 բազմեա՛ց ։ Այլ ոչ ասիցէ ցնա, Թէ Պատրաստեա՛
զինչ ընթրելոց իցեմ, և գօտի ածեալ պաշտեա՛ զիս՝
մինչև կերայց և արբից, և ապա կերիցես և արբցես

9 գոլ։ Մի՛թէ շնորհս ինչ ունիցի ծառային այնմիկ, զի
10 արար զամենայն հրամանսն։ Նոյնպէս և դուք՝ յոր-
ժամ առնիցէք զամենայն հրամայեալսն ձեզ, ասաս-
ջի՛ք թէ Ծառայք անպիտանք եմք, զոր պարտէաքն
11 առնել, արարաք։ Եւ եղև մինչև երթայր նա
յԵրուսաղէմ, և ինքն անցանէր ընդ մէջ Սամար-
12 իայ և Գալիլեացւոց։ Եւ մինչդեռ մտանէր ՚ի
գեօղ ուրեմն, պատահեցան նմա տասն այր բորոտ՝
13 որք կացին ՚ի հեռաստանէ. Բարձին զձայնս՝ և ա-
14 սեն. Յիսուս Վարդապետ՝ ողորմեա՛ց մեզ։ Եւ իբ-
րև ետես զնոսա, ասէ ցնոսա. Երթա՛յք ցուցէ՛ք
զանձինս քահանայիցն. և եղև իբրև գնացին, առ-
15 ժամայն սրբեցան։ Մի ՚ի նոցանէ իբրև ետես՝
եթէ բժշկեցաւ, դարձաւ անդրէն՝ ՚ի ձայն մեծ փա-
16 ռաւոր առնէր զԱստուած. Անկաւ ՚ի վերայ երեսաց
իւրոց առ ոտս նորա, և գոհանայր զնմանէ. և ինքն
17 էր Սամարացի։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ.
Ո՛չ տասն սոքա սրբեցան, իսկ արդ՝ ինունքն ո՞ւր են։
18 Զի՞ ո՛չ գտան դառնալ տալ փառս Աստուծոյ, բայց
19 միայն այլազգիս այս։ Եւ ասէ ցնա։ Արի՛ գնա՛. զի
հաւատք քո կեցուցին զքեզ։
20 Իբրև հարցաւ ՚ի փարիսեցւոցն՝ թէ Ե՞րբ գայցէ
արքայութիւն Աստուծոյ. պատասխանի ետ նոցա՝
և ասէ. Ո՛չ գայ արքայութիւն Աստուծոյ խորանօք.
21 Եւ ոչ ասիցեն թէ Ահաւասիկ աստ է՝ կամ անդ. զի
ահա արքայութիւն Աստուծոյ ՚ի ներքս ՚ի ձեզ է։
22 Ասաց և առ աշակերտսն. Եկեսցեն աւուրք ցան-
կանալոյ ձեզ մի յաւուրցն Որդւոյ մարդոյ տեսա-
23 նել՝ և ոչ տեսանիցէք։ Եւ եթէ ասիցեն ձեզ՝ ե-

թէ Ահաւասիկ է՝ կամ անդ , մի՛ երթայցէք զհետ ։
24 Զի որպէս փայլակն փայլատակեալ 'ի ներքոյ երկ-
նից՝ ընդ երկնիւք ծագիցէ , նոյնպէս և Որդի մար-
25 դոյ յաւուրն իւրում։ Բայց նախ պարտ է նմա բա-
26 զում չարչարիլ՝ և խոտիլ յազգէս յայսմանէ ։ Եւ
որպէս եղև յաւուրսն Նոյի , նոյնպէս եղիցի և յա-
27 ւուրս Որդւոյ մարդոյ ։ Ուտէին , ըմպէին , կանայս
առնէին , և արանց լինէին , մինչև յօրն՝ յորում
եմուտ Նոյ 'ի տապանն , և եկն ջրհեղեղն՝ և կո-
28 րոյս զամենեսին ։ Նոյնպէս և որպէս յաւուրսն Ղով-
տայ եղև , ուտէին , ըմպէին , գնէին , վաճառէին ,
29 տնկէին , շինէին ․ Եւ յորում աւուր ել Ղովտ 'ի
Սոդոմայ , տեղաց հուր և ծծումբ յերկնից՝ և կո-
30 րոյս զամենեսին ․ Ըստ նմին օրինակի եղիցի և յա-
31 ւուրն , յորում Որդի մարդոյ յայտնելոց է ։ Յայնմ
աւուր որ կայցէ 'ի տանիս՝ և կարասի իւր 'ի տան ,
մի՛ իջցէ առնուլ զայն ․ և որ յանդի իցէ , նոյնպէս
32 մի՛ դարձցի յետս ։ Յիշեցէք զկինն Ղովտայ ։
33 Որ խնդրեսցէ զանձն իւր ապրեցուցանել , կորուսցէ
34 զնա ․ և որ կորուսցէ , ապրեցուսցէ զնա ։ Ասեմ
ձեզ ․ Յայնմ գիշերի՝ թէ եղիցին երկու 'ի մի մա-
35 հիճս , մին առցի՝ և միւսն թողցի ․ Եւ եթէ եղի-
ցին երկու *՝ աղալ 'ի միասին , մին առցի՝ և միւսն
թողցի ․ և եթէ իցեն երկու յանդի , մին առցի՝
36 և միւսն թողցի ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա ․
37 Յո՞ Տէր ։ Եւ նա ասէ ցնոսա ․ Ուր մարմին է ,
անդր և արծուիք ժողովեսցին ։

---

* Ի Յոյնն , կանայք

## ԳԼ. ԺԸ

1 Առաց և առակ մի նոցա՝ առ այն, թէ պարտ է
յամենայն ժամ կալ նոցա յաղօթս՝ և մի՛ ձանձ-
2 րանալ: Ասէ. Դատաւոր մի էր ՚ի քաղաքի ուրեմն,
յԱստուծոյ ոչ երկնչէր՝ և ՚ի մարդկանէ ոչ ամա-
3 չէր: Եւ այրի մի էր ՚ի նմին քաղաքի, ՚գայր առ
4 նա և ասէր. Դա՛տ արա ինձ յոսոխէ իմմէ: Եւ
ոչ կամէր ՚ի բազում ժամանակս. յետ այնորիկ ա-
սէ ՚ի միտ իւրում, Եթէ և յԱստուծոյ ոչ երկըն-
5 չիմ, և ՚ի մարդկանէ ոչ ամաչեմ, Գոնէ վասն
աշխատ առնելոյ զիս այրւոյն՝ արարից նմա դատ,
6 զի մի՛ իսպառ եկեալ թախանձիցէ զիս: Եւ ասէ
Տէր. Լուարո՛ւք զինչ դատաւորն անիրաւութեան
7 ասէր: Իսկ Աստուած՝ ո՞չ առնիցէ վրէժխնդրու-
թիւն ծառայից իւրոց, որ աղաղակեն առ նա ՚ի
տուէ և ՚ի գիշերի, և երկայնամիտ միայն լինիցի
8 առ նոսա: Այո՛ ասեմ ձեզ. զի Արասցէ վրէժ-
խնդրութիւն նոցա վաղվաղակի. Իսկ Որդի մարդոյ
9 եկեալ՝ գտանիցէ՞ արդեօք հաւատս յերկրի: Առաց
և առ ոմանս պանծացեալս յանձինս, թէ արդարք
10 իցեն՝ և խոտիցեն զբազումս, զառակս զայս: Արք
երկու ելին ՚ի տաճարն կալ յաղօթս, մին փարի-
11 սեցի՝ և միւսն մաքսաւոր: Փարիսեցին կայր մե-
կուսի, և զայս առանձինն աղօթս մատուցանէր.
Աստուած իմ՝ գոհանամ զքէն, զի ոչ եմ իբրև
զայլս ՚ի մարդկանէ, զյափշտակողս և զանիրաւս և
12 զշունս, կամ իբրև զայս մաքսաւոր: Այլ պահեմ
երկիցս ՚ի շաբաթու, և տամ տասանորդս յամե-

13 նայն ստացուածոց իմոց։ Եւ մաքսաւորն կայր մե-
կուսի, և ո՛չ կամէր և ո՛չ զաչսն ընդ երկինս ամ-
բառնալ. այլ կոծէր զկուրծս իւր՝ և ասէր. Աս-
14 տուած՝ քաւեա՛ զիս զմեղաւորս։ Ասեմ ձեզ. Իջ սա
արդարացեալ ՚ի տուն իւր քան զնա. զի ամենայն
որ բարձրացուցանէ զանձն իւր, խոնարհեսցի. և որ
խոնարհեցուցանէ զանձն, բարձրասցի։
15 Մատուցանէին առ նա և մանկտի՝ զի մերձենայցէ
՚ի նոսա. իբրև տեսին աշակերտքն՝ սաստէին նոցա։
16 Իսկ Յիսուս կոչեցեալ զնոսա առ ինքն՝ ասէ. Թո՛յլ
տուք մանկտւոյդ՝ գալ առ իս, և մի՛ արգելուք զդո-
սա. զի այդպիսեացդ է արքայութիւն Աստուծոյ։
17 Ամէն ասեմ ձեզ. Որ ոչ ընդունիցի զարքայութիւն
18 Աստուծոյ իբրև զմանուկ, ոչ մտցէ ՚ի նա։ Եւ ե-
հարց զնա ոմն իշխան՝ և ասէ. Վարդապետ բարի՝
զի՞նչ գործեցից, զի զկեանսն յաւիտենականս ժա-
19 ռանգեցից։ Ասէ ցնա Յիսուս. Զի՞ ասես զիս բա-
20 րի. չի՛ք որ բարի՝ բայց մի Աստուած։ Զպատուի-
րանս գիտես. Մի՛ շնար, Մի՛ սպանաներ, Մի՛ գո-
ղանար, Մի՛ սուտ վկայեր, Պատուեա՛ զհայր քո և
21 զմայր։ Եւ նա ասէ. Զայդ ամենայն պահեցի ՚ի
22 մանկութենէ իմմէ։ Իբրև լուաւ զայն Յիսուս՝ ասէ
ցնա. Մի՛ ևս պակաս է քեզ. զամենայն ինչ զոր
ունիս, վաճառեա՛ և տո՛ւր աղքատաց, և ունիցիս
23 գանձս յերկինս. և եկ զկնի իմ։ Նա իբրև լուաւ
24 զայս՝ տրտմեցաւ. քանզի էր մեծատուն յոյժ։ Իբրև
ետես զնա Յիսուս տրտմեալ, ասէ. Որպէս դժուա-
րաւ որ ինչս ունիցին՝ մտանիցեն յարքայութիւն Աս-
25 տուծոյ։ Դիւրագոյն իցէ մալխոյ ընդ ծակ ասղան

անցանել, քան մեծատան յարքայութիւն Աստուծոյ
26 մտանել: Եւ որ լուանն՝ ասէին. Եւ ո՞ կարիցէ ապ-
27 րել: Եւ նա ասէ. Անհնարինք առ ՚ի մարդկանէ,
28 հնարաւորք են յԱստուծոյ: Եւ ասէ Պետրոս. Ա-
հաւասիկ մեք թողաք զամենայն ինչ զմեր, և եկաք
29 զկնի քո: Եւ նա ասէ ցնոսա. Ամէն ասեմ ձեզ.
եթէ Ոչ ո՛ք է՝ որ եթող զտունս, կամ զծնողս, կամ
զեղբարս, կամ զկին, կամ զորդիս՝ վասն արքայու-
30 թեան Աստուծոյ, Եթէ ոչ առնուցու բազմապա-
տիկ ՚ի ժամանակի յայսմիկ. և յաշխարհին որ գա-
31 լոցն է՝ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ: Եւ
առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա.
Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և կատարեսցին
ամենայն գրեալքն մարգարէիւք վասն Որդւոյ մար-
32 դոյ: Զի մատնեսցի հեթանոսաց, և կատակեսցի.
33 Եւ հարկանիցեն, և սպանանիցեն զնա, և յերիր ա-
34 ւուր յարիցէ: Եւ նոքա ոչինչ իմացան յայնցանէ,
այլ էր բանն ծածկեալ ՚ի նոցանէ, և ոչ գիտէին
զասացեալսն:

35 Եւ եղև ՚ի մտանելն նորա յԵրիքով, կայր ոմն նըս-
36 տէր առ ճանապարհաւն մուրացիկ: Իբրև լուաւ
զանցանել ժողովրդեանն, հարցանէր՝ թէ Զի՞նչ
37 իցէ այն: Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նա-
38 զովրեցի անցանէ: Աղաղակեաց և ասէ. Յիսուս
39 որդի Դաւթի՝ ողորմեա՛ց ինձ: Եւ որ առաջին եր-
թային՝ սաստէին նմա զի լռեսցէ. և նա ևս առաւել
40 աղաղակէր, Որդի Դաւթի՝ ողորմեա՛ց ինձ: Զաե-
ղի առ Յիսուս, և հրամայեաց ածել զնա առ ինքն.
և իբրև մերձ եղև առ նա, եհարց զնա և ասէ.

41 Զի՞նչ կամիս զի արարից քեզ. և նա ասէ.
42 Տէր՝ զի բացցին աչք իմ՝ և տեսից։ Եւ Յիսուս
ասէ ցնա. Հայեաց, հաւատք քո կեցուցին զքեզ։
43 Եւ առ ժամայն ետես, և երթայր զհետ նորա՝ և փա-
ռաւոր առնէր զԱստուած. և ամենայն ժողովրդեանն
տեսեալ, տայր օրհնութիւն Աստուծոյ։

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով։ (2) Եւ ահա այր
մի անուն կոչեցեալ Զակքէոս, և նա էր մաքսա-
3 պետ, և ինքն մեծատուն. Եւ խնդրէր տեսանել՝
եթէ ո՞վ իցէ Յիսուս, և ոչ կարէր ՚ի բազմութե-
4 նէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ ընթացեալ յա-
ռաջս, ել ՚ի ժանտաթզենին՝ զի տեսանիցէ զնա.
5 քանզի ընդ այն խել անցանելոց էր։ Իբրև եկն ՚ի
տեղին՝ հայեցաւ ՚ի վեր Յիսուս՝ և ասէ ցնա. Զա՛-
քէ՝ փութա՛ էջ այտի, զի այսօր ՚ի տան քում ար-
6 ժան է ինձ ագանել։ Փութացաւ և էջ՝ և ընկա-
7 լաւ զնա ուրախութեամբ։ Իբրև տեսին ամենեքին,
տրտնջէին և ասէին՝ թէ Առ առն մեղաւորի եմուտ
8 լուծանել։ Եկն եկաց Զակքէոս՝ և ասէ ցՏէր. Տէր՝
ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց. և եթէ
9 զոք զրկեցի, հատուցից չորեքկին։ Եւ ասէ ցնա
Յիսուս. Այսօր եղև փրկութիւն տանս այսմիկ.
10 քանզի և սա որդի Աբրահամու է։ Զի եկն Որդի
11 մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալն։ Եւ
մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի՝ և ասէ,
վասն մերձենալոյ նորա յԵրուսաղէմ, և համարե-

լոյ նոցա՝ եթէ առժամայն յայտնելոց է արքայու-
12 թիւն Աստուծոյ։ Ասէ. Այր ոմն ազնուական գնաց
յաշխարհ հեռի՝ առնուլ իւր թագաւորութիւն, և
13 դառնալ։ Եւ կոչեցեալ զծառայս իւր՝ ետ նոցա
տասն մնաս, և ասէ ցնոսա. Յարգեցէք զայդ մինչև
14 եկից։ Եւ քաղաքացիքն նորա ատէին զնա, առա-
քեցին հրեշտակս զկնի նորա՝ և ասեն. Թէ ոչ
15 կամիմք թագաւորել դմա ՚ի վերայ մեր։ Եւ եղև
դառնալ նմա՝ առեալ զթագաւորութիւնն. և կոչ-
եալ զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն, զի գի-
16 տասցէ թէ ո՞ զինչ շահեցաւ։ Եկն առաջինն և ասէ.
17 Տէր՝ մնասն քո՝ տասն մնաս արար։ Եւ ասէ ցնա.
Ազնիւ ծառայ և բարի, զի ՚ի փոքուդ հաւատարիմ
եղեր, լիջիր իշխանութիւն ունել ՚ի վերայ տասն
18 քաղաքի։ Եկն երկրորդն և ասէ. Մնասն քո ա-
19 րար հինգ մնաս։ Ասէ և ցնա, Եւ դու լիջիր ՚ի վերայ
20 հինգ քաղաքաց։ Եկն միւսն և ասէ. Տէր՝ ահա
մնասն քո՝ զոր ունէի՝ ծրարեալ ՚ի վարշամակի.
21 Երկնչէի ՚ի քէն, զի այր ստամբակ ես. բառնաս՝
22 զոր ոչ եդիր, և հնձես՝ զոր ոչ սերմանեցեր։ Եւ
ասէ ցնա. ՚Ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ ծա-
ռայ անհաւատ. գիտէիր թէ ես այր մի ստամբակ
եմ, բառնամ՝ զոր ոչ եդի, և հնձեմ՝ ուր ոչ
23 սերմանեցի։ Եւ ընդէ՞ր ոչ ետուր զարծաթն իմ ՚ի
սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի։
24 Եւ ասէ ցպաստաւորսն. Առէք ՚ի դմանէ զմնասն,
25 և տարա՛յք տուք այնմ՝ որ ունիցի զտասն մնասն։ Եւ
26 ասեն ցնա. Տէր՝ ունի տասն մնաս։ Ասեմ ձեզ,
եթէ Ամենայնի որ ունիցի, տացի. և յայնմանէ

որ ոչն ունիցի, և զոր ունիցին՝ բարձցի 'ի նմանէ:
27 Բայց զթշնամիսն իմ զայնոսիկ, որ ո՛չն կամէին
զիս թագաւորել 'ի վերայ նոցա, ածէ՛ք այսր, և
28 սպանէ՛ք առաջի իմ: Եւ իբրև զայս ասաց, գնաց
յառաջ ելանել յԵրուսաղէմ:
29 Եւ եղև իբրև մերձեցաւ 'ի Բեթփագէ և 'ի Բե-
թանիա մօտ 'ի լեառնն՝ որ կոչի Ձիթենեաց, առաք-
30 եաց երկուս յաշակերտացն իւրոց՝ և ասէ: Եր-
թա՛յք դուք 'ի գեօղն՝ որ հանդէպ մեր կայ. յոր
իբրև մտանէք՝ գտանիցէք յաւանակ կապեալ, յո-
րում ոք 'ի մարդկանէ երբէք ո՛չ նստաւ. լուծէ՛ք զնա
31 և ածէ՛ք: Եւ եթէ ոք հարցանիցէ զձեզ՝ թէ Ըն-
դէ՞ր լուծանէք, այսպէս ասասջի՛ք ցնա. թէ Տեառն
32 իւրում պիտոյ է: Իբրև չոգան որ առաքեցանն,
33 գտին որպէս ասացն ցնոսա, կայր յաւանակն: Եւ
մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն տեարքն նո-
34 րա ցնոսա. Զի՞ լուծանէք զյաւանակդ: Եւ նոքա
35 ասեն. Տեառն իւրում պիտոյ է: Եւ ածին զնա
առ Յիսուս. և արկին զնովաւ հանդերձս, և հե-
36 ծուցին զՅիսուս: Եւ մինչդեռ երթայր, զհան-
37 դերձս իւրեանց տարածանէին զճանապարհաւն: Եւ
իբրև այն ինչ մերձ եղև 'ի զառ 'ի վայր լերինն Ձի-
թենեաց, սկսաւ ամենայն բազմութիւն աշակեր-
տացն ուրախութեամբ օրհնել զԱստուած 'ի ձայն
մեծ վասն ամենայն եղելոց զօրութեանցն՝ զոր տե-
38 սին. Եւ ասէին. Օրհնեալ որ գայ թագաւորդ
յանուն Տեառն. խաղաղութիւն յերկինս, և փառք
39 'ի բարձունս: Եւ ոմանք 'ի փարիսեցւոցն յամ-
բոխէ անտի՝ ասեն ցնա. Վարդապետ սաստեա՛

40 աշակերտացդ քոց ։ Պատասխանի ետ՝ և ասէ ․ Ա-
սեմ ձեզ՝ զի եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղա-
41 ղակեսցեն ։ Եւ իբրև մերձեցաւ, տեսեալ զքաղաքն՝
42 ելաց 'ի վերայ նորա, և ասէ ։ Եթէ գիտէիր դու
գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւնն քո ․ բայց
43 այժմ ծածկեցաւ յերեսաց քոց ։ Զի եկեսցեն ա-
ւուրք 'ի վերայ քո, և պատեսցեն զքև թշնամիք քո
պատնէշ, և պաշարեսցեն զքեզ, և նեղեսցեն ըզ-
44 քեզ յամենայն կողմանց ․ Եւ յատակեսցեն զքեզ,
և զորդիս քո 'ի քեզ ․ և ոչ թողուցուն քար 'ի
քարի վերայ յամենայնի 'ի քեզ ․ փոխանակ զի ոչ
45 ծանեար զժամանակ այցելութեան քո ։ Եւ մտեալ
'ի տաճարն սկսաւ հանել զվաճառականս, և ըզ-
46 գնօղս ․ և զսեղանս հատավաճառացն ցրուեաց ։ Եւ
ասէ ցնոսա ․ Գրեալ է՝ Եւ եղիցի տուն իմ տուն
աղօթից, և դուք արարէք զդա այր աւազակաց ։
47 Եւ ուսուցանէր զնոսա հանապազ 'ի տաճարին ․
իսկ քահանայապետքն և դպիրք և գլխաւորք ժողո-
48 վրդեանն խնդրէին զնա կորուսանել, Եւ ոչ գտա-
նէին՝ թէ զինչ արասցեն ․ զի ժողովուրդն ամենայն
կախեալ կային զնմանէ 'ի լսել ։

## ԳԼ․ Ի․

1 Եւ եղև 'ի միում աւուրցն յայնցանէ, մինչդեռ
ուսուցանէր զժողովուրդն 'ի տաճարի անդ՝ և աւե-
տարանէր, հասին 'ի վերայ քահանայապետքն և
2 դպիրք ծերովքն հանդերձ, Եւ ասեն ցնա ․ Ասա՛
մեզ՝ որո՞վ իշխանութեամբ գործես դու զայդ, կամ

3 ո՞վ է՝ որ ետ քեզ զայդ իշխանութիւն։ Պատաս-
խանի ետ և ասէ ցնոսա. Հարցից և ես ցձեզ բան
4 մի, և ասացէք ինձ։ Մկրտութիւնն Յովհաննու
5 յերկնի՞ց էր՝ եթէ ՚ի մարդկանէ։ Եւ նոքա խոր-
6 հեցան ՚ի միտս իւրեանց՝ և ասեն։ Եթէ ասեմք
Յերկնից, ասէ. Իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա.
և եթէ ասեմք ՚ի մարդկանէ, ամենայն ժողովուրդն
քարկոծ առնեն զմեզ. զի հաստատեալ է ՚ի միտս
7 զՅովհաննէ, թէ մարգարէ է։ Եւ պատասխանի
8 ետուն՝ չգիտել թէ ուստի իցէ։ Եւ Յիսուս ասէ
ցնոսա. Եւ ո՛չ ես ասեմ ձեզ որով իշխանու-
թեամբ առնեմ զայս։

9 Սկսաւ ասել առ ժողովուրդն՝ զառակս զայս.
Այր ոմն տնկեաց այգի, և ետ զնա մշակաց. և ինքն
10 գնաց ՚ի ճանապարհ ժամանակս բազումս։ Եւ ՚ի
ժամու՝ առաքեաց առ մշակսն ծառայ, զի ՚ի պտղոյ
այգւոյն տացեն նմա. և մշակքն զան հարին զնա,
11 և արձակեցին ունայն։ Եւ յաւել միւս ևս ծա-
ռայ յղել. նոքա և զնա ևս զան հարին՝ անար-
12 գեցին, և առաքեցին ունայն։ Եւ յաւել զերրորդն
առաքել. նոքա և զնա վիրաւորեցին, և հանին
13 արտաքս։ Ասէ տէր այգւոյն. Զի՞նչ արարից, ա-
ռաքեցից զորդի իմ սիրելի, թերևս ՚ի սմանէ պատ-
14 կառեսցեն։ Իբրև տեսին զնա մշակքն, խորհեցան
ընդ միմեանս և ասեն. Այս է ժառանգն. սպան-
15 ցուք զսա, զի մեր լիցի ժառանգութիւնն։ Եւ
հանին զնա արտաքս քան զայգին՝ և սպանին. արդ
16 զի՞նչ արասցէ ընդ նոսա տէր այգւոյն. Ապա-
քէն գայցէ և կորուսանիցէ զմշակսն զայնոսիկ և

տացէ զայգին այլոց. իբրեւ լուան՝ ասեն. Քա՛ւ մի՛
17 լիցի: Եւ նա հայեցաւ ընդ նոսա՝ ասէ. Իսկ
զի՞նչ իցէ այն որ գրեալն է. թէ Զվէմն զոր ա-
18 նարգեցին շինողքն, նա եղեւ գլուխ անկեան: Ա-
մենայն՝ որ ընդհարցի ընդ վէմն ընդ այն՝ խորտա-
19 կեսցի, եւ յորոյ վերայ անկցի՝ հոսեսցէ զնա: Եւ
խնդրէին դպիրքն եւ քահանայապետք արկանել 'ի
նա ձեռս 'ի նմին ժամու, եւ երկեան 'ի ժողովրդե-
նէն. զի գիտացին՝ թէ առ նոսա ասաց զառակն
20 զայն: Եւ ապա սպասեցին, եւ առաքեցին դաւա-
ճանս կեղծաւորեալս զանձինս առ արդարս ունել,
զի ըմբռնեսցեն զնա բանիւք, առ 'ի մատնել զնա
21 պետութեան եւ իշխանութեան դատաւորին: Հար-
ցին զնա եւ ասեն. Վարդապետ գիտեմք եթէ ու-
ղիղ խօսիս եւ ուսուցանես, եւ ո՛չ առնուս ակն՝ այլ
ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ուսուցա-
22 նես: Արժա՞ն է մեզ կայսեր հարկս տալ՝ թէ ո՛չ:
23 Եւ նայեցեալ ընդ խորամանկութիւն նոցա՝ ասէ
24 ցնոսա. Ցուցէք ինձ զդահեկանն. եւ նոքա ցուցին.
եւ ասէ. Զո՞յր պատկեր եւ զգիր ունի. պատասխանի
25 ետուն եւ ասեն՝ զԿայսեր: Եւ նա ասէ ցնոսա.
Արդ երթայք տո՛ւք զԿայսերն Կայսեր, եւ զԱստու-
26 ծոյն Աստուծոյ: Եւ ո՛չ կարացին զնա ըմբռնել
բանիւք առաջի ժողովրդեանն. եւ զարմացեալ ընդ
պատասխանին նորա՝ լռեցին:

27 Մատուցեալ ոմանք 'ի սադուկեցւոցն՝ որք հա-
28 կառակէին չլինել յարութեան, հարցին՝ ցնա Եւ
ասեն. Վարդապետ՝ Մովսէս գրեաց մեզ, Եթէ
ուրուք եղբայր մեռանիցի, որոյ իցէ կին եւ նա անորդի

իցէ , զի առնուցու եղբայր նորա զկինն , և յարուսցէ
29 զաւակ եղբօր իւրում : Արդ եօթն եղբարք էին .
30 և առաջինն առեալ կին՝ մեռաւ անորդի : Առ զնա և
31 երկրորդն , մեռաւ և նա անորդի : Առ զնա և երրորդն .
32 նոյնպէս և եօթանեքին , և ոչ թողին որդիս : Մե֊
33 ռաւ և կինն : Արդ 'ի յարութեան ում 'ի նո֊
ցանէ լինիցի կին . զի եօթանեքին կալան զնա կին :
34 Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ . Որդիք
աշխարհիս այսորիկ կանանս առնեն՝ և արանց լի֊
35 նին : Իսկ որ արժանի լինիցին այնմ աշխարհի
հասանել՝ և յարութեանն որ 'ի մեռելոց , ոչ կա֊
36 նայս առնեն , և ոչ արանց լինին : Քանզի և ոչ մե֊
ռանել ևս կարեն , զի հաւասար հրեշտակաց են՝ և
որդիք Աստուծոյ . քանզի յարութեան որդիք են :
37 Այլ զի յառնեն մեռեալք , և Մովսէս գուշակեաց
'ի մորենւոջն , որպէս ասէ զՏեառնէ Աստուծոյ Աբ֊
րահամու և զԱստուծոյ Իսահակայ և զԱստուծոյ
38 Յակովբայ : Եւ Աստուած չէ մեռելոց՝ այլ կենդան֊
39 եաց , զի ամենեքին նմա կենդանի են : Պատասխա֊
նի ետուն ոմանք 'ի դպրացն և ասեն . Վարդապետ՝
40 բարւոք ասացեր : Եւ ոչ ևս ոք իշխէր հարցանել
զնա՝ և ոչինչ :
41 Ասէ և առ նոսա . Զիա՞րդ ասեն զՔրիստոսէ՝
42 թէ որդի՛ է Դաւթի . Զի ինքն Դաւիթ ասէ 'ի
գիրս Սաղմոսաց . Ասաց Տէր ցՏէր իմ , Նիստ ընդ
43 աջմէ իմմէ , Մինչև եդից զթշնամիս քո պատուան֊
44 դան ոտից քոց : Իսկ արդ եթէ Դաւիթ զնա Տէր
45 կոչէ , զիա՞րդ որդի նորա իցէ : Եւ լուիլու ամենայն
46 ժողովրդեանն ասէ ցաշակերտսն : Զգոյշ լերուք

'ի դպրացն, որ կամին պատմուճանօք շրջել, և սի-
րեն ողջոյնս 'ի հրապարակս՝ և զնախաթոռս 'ի ժո-
47 ղովուրդս, և զբարձերէցս յընթրիս. Որ ուտեն ըզ-
տունս այրեաց, և պատճառանօք յերկարեն զա-
ղօթս. Նոքա ընկալցին աւելի դատաստանս:

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ հայեցեալ ետես զմեծատունսն՝ որ արկանէին
2 զտուրս իւրեանց 'ի գանձանակն: Ետես և զկին ոմն
3 այրի աղքատ, որ արկ անդր երկուս լումայս. Եւ
ասէ. Արդարև ասեմ ձեզ. զի այրին այն աղքատ՝
4 աւելի արկ քան զամենեսին: Ամենեքին նոքա 'ի մը-
թերից իւրեանց արկին յընծայսն Աստուծոյ. բայց
նա 'ի կարօտութենէ իւրմէ զամենայն զկեանս իւր
զոր ունէր՝ արկ:
5 Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ Գեղեցիկ
6 վիմօք և աշտարակօք զարդարեալ է, ասէ: Զայդ
ամենայն զոր տեսանէք, եկեսցեն աւուրք՝ յորս ոչ
թողցի այդր քար 'ի քարի վերայ, որ ոչ քակ-
7 տեսցի: Հարցին ցնա և ասեն. Վարդապետ՝ երբ
լինիցի այդ, և զի՞նչ նշան իցէ՝ յորժամ այդ լինե-
8 լոց իցէ: Եւ նա ասէ. Զգո՛յշ կացէք, մի՛ խաբի-
ցիք. զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝
թէ Ես եմ, և մերձեցաւ ժամանակ. մի՛ երթայցէք
9 զկնի նոցա: Եւ յորժամ լսիցէք պատերազմունս և
խռովութիւնս՝ մի՛ զարհուրիցիք. զի պարտ է նախ
10 այնմ լինել. այլ ոչ առժամայն կատարած: Յայն-
ժամ ասէ ցնոսա. Յարիցէ ազգ յազգի վերայ. և

11 թագաւորութիւն ՚ի թագաւորութեան վերայ ։ Եւ
շարժմունք մեծամեծք . և ՚ի տեղիս տեղիս սովք և
սրածութիւնք . երկիցին արհաւիրք և նշանք մեծա-
12 մեծք յերկնից ։ Բայց յառաջ քան զայս ամենայն,
մխեսցեն զձեռս իւրեանց ՚ի ձեզ՝ և հալածեսցեն .
մատնեսցեն ՚ի ժողովուրդս և ՚ի բանտս, և տանիցին
առաջի դատաւորաց և թագաւորաց վասն անուան
13 իմոյ ։ Եւ լինիցի ձեզ այն ՚ի վկայութիւն ։
14 Արդ դիք ՚ի սիրտս ձեր՝ մի յառաջագոյն կրթել
15 տալոյ պատասխանի ։ Զի ես տաց ձեզ բերան և
իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ հակառակ՝
կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն
16 ձեր ։ Մատնեսջիք և ՚ի ծնողաց և յեղբարց և յազ-
գականաց և ՚ի բարեկամաց, և սպանանիցեն ՚ի
17 ձէնջ . Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն
18 անուան իմոյ . Եւ մազ մի ՚ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ .
19 Եւ համբերութեամբ ձերով ստասջիք զոգիս ձեր ։
20 Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք
զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք թէ մերձ է ա-
21 ւեր նորա ։ Յայնժամ որ ՚ի Հրէաստանի իցեն՝ փա-
խիցեն ՚ի լերինս, և որ ՚ի միջի նորա իցեն՝ խուսես-
22 ցեն . և որ ՚ի գաւառսն իցեն՝ մի մտցեն ՚ի նա . Զի
աւուրք վրէժխնդրութեան են այնոքիկ՝ առ ՚ի կա-
23 տարելոյ ամենայն գրելոց ։ Բայց վայ իցէ յղեաց
և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ . զի եղիցի տագ-
նապ մեծ ՚ի վերայ երկրի, և բարկութիւն ժողովրդ-
24 եանն այնմիկ ։ Եւ անկցին ՚ի սուր սուսերի, և
գերեսցին յամենայն հեթանոսս . և Երուսաղէմ
եղիցի կոխան յազգաց՝ մինչև կատարեսցին ժա-

25 մանակք հեթանոսաց : Եւ եղիցին նշանք յարե-
գական և 'ի լուսին և յաստեղս. և յերկրի տագնապ
հեթանոսաց՝ յահեղ բարբառոյ իբրև ծովու և
26 խռովութեան , Յելանելոյ ոգւոց մարդկան յեր-
կիւղէ՝ և 'ի կարծեաց եկելոց 'ի վերայ տիեզերաց.
27 զի զօրութիւնք երկնից շարժեսցին : Եւ յայնժամ
տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ՝ ամպովք զօրութեամբ
28 և փառօք բազմօք : Եւ յորժամ սկսանիցի այս լի-
նել , ամբարձջիք և բարձրացուսջիք զգլուխս ձեր.
29 զի մերձ է փրկութիւն ձեր : Եւ ասաց առակ մի նո-
30 ցա . Տեսէք զթզենին և զամենայն ծառ : Յորժամ
ցուցանիցեն զպտուղ իւրեանց , տեսանէք և 'ի նո-
31 ցանէ ճանաչէք եթէ մերձ է ամառն : Նոյնպէս և
դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ՝
գիտասջիք թէ մերձ է արքայութիւնն Աստուծոյ :
32 Ամէն ասեմ ձեզ. թէ Ոչ անցցէ ազգս այս , մին-
33 չև այս ամենայն լինիցի : Երկինք և երկիր անցցեն՝
34 և բանք իմ ոչ անցանիցեն : Զգոյշ լերուք անձանց ,
գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ և
արբեցութեամբ և հոգովք աշխարհականօք , և
յանկարծակի հասանիցէ 'ի վերայ ձեր օրն այն.
35 Զի իբրև զորոգայթ հասանիցէ 'ի վերայ ամենե-
ցուն , որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի :
36 Արթուն կացէք այսուհետև , յամենայն ժամ ա-
ղօթս արարէք , զի արժանի լինիջիք զերծանել յայնմ
յամենայնէ որ լինելոց է , և կալ առաջի Որդւոյ
37 մարդոյ : Եւ 'ի տուէ 'ի տաճարին ուսուցանէր , և
զգիշերս ելեալ ագանէր 'ի լերինն՝ որ կոչէր Ձի-
38 թենեաց : Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ
առաւօտս առ նա 'ի տաճարն լսել 'ի նմանէ :

## ԳԼ. ԻԲ

1 Մերձեցաւ տօն բաղարջակերացն՝ որ կոչէր Պասե-
2 քա. Եւ խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ թէ
որպէս սպանանիցեն զնա. բայց երկնչէին ՚ի ժողո-
3 վրրդենէ անտի: Ապա եմուտ Սատանայ ՚ի Յուդա
՚ի կոչեցեալն Իսկարիովտացի, որ էր ՚ի թուոյ երկո-
4 տասանիցն: Չոգաւ եդ բանս ընդ քահանայապետսն
և ընդ դպիրս և ընդ իշխանս ժողովրդեանն, զի
5 մատնեսցէ զնա նոցա: Եւ խնդացին, և խոստա-
6 ցան տալ նմա արծաթ: Եւ յանձն առ, և խնդրէր
պարապ մատնել զնա նոցա՝ մեկուսի յամբոխէն:
7 Եկն օր բաղարջակերացն, յորում օրէն էր զենուլ
8 զպասեքն: Եւ առաքեաց զՊետրոս և զՅովհան-
նէս՝ և ասէ. Երթայք պատրաստեցէք մեզ զպասեքն՝
9 զի կերիցուք: Եւ նոքա ասեն. Ո՞ւր կամիս զի
10 պատրաստեսցուք: Եւ ասէ ցնոսա. Ահա իբրև մը-
տանիցէք ՚ի քաղաքն, պատահեսցէ ձեզ այր մի բարձ-
եալ սափոր ջրոյ. երթիջիք զհետ նորա ՚ի տունն
11 յոր մտանիցէ. Եւ ասասջիք ցտանուտէր տանն.
Վարդապետն ասէ քեզ. Ո՞ւր են վանքն իմ. յորում
12 զպասեքն ուտիցեմ աշակերտօքս հանդերձ: Եւ նա
ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ, և անդ
13 պատրաստեսջիք: Եւ գնացեալ գտին որպէս և ա-
14 սացն նոցա. և պատրաստեցին զպասեքն: Եւ իբրև
ժամ եղև՝ բազմեցաւ, և երկոտասան առաքեալքն
15 ընդ նմա: Եւ ասէ ցնոսա. Ցանկալով ցանկա-
ցայ զայս պասեք ուտել ընդ ձեզ՝ մինչչև չարչար-
16 եալ իցեմ: Բայց ասեմ ձեզ, թէ ոչ ևս կերայց

՚ի սմանէ՝ մինչեւ լցցի յարքայութեան Աստուծոյ :
17 Եւ ընկալեալ բաժակ՝ գոհացաւ եւ ասէ . Առէք
18 զայդ՝ եւ բաժանեցէք ՚ի ձեզ : Ասեմ ձեզ՝ թէ Յայ-
սըմ հետէ ոչ արբից ՚ի բերոյ որթոյ՝ մինչեւ եկեսցէ
19 արքայութիւն Աստուծոյ : Եւ առեալ հաց՝ գոհա-
ցաւ, եբեկ եւ ետ նոցա՝ եւ ասէ . Այս է մարմին իմ,
որ վասն բազմաց տուեալ . զայս արասջիք առ իմոյ
20 յիշատակի : Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն
առ՝ եւ ասէ . Այս բաժակ է նոր ուխտ իմով արեամբ
21 վասն ձեր հեղլոյ : Բայց ահաւասիկ ձեռն մատնչի ի-
22 մոյ ընդ իս ՚ի սեղանս : Եւ Որդի մարդոյ ըստ սահ-
մանելոյն երթայ, բայց վայ մարդոյն այնմիկ՝ յոյր
23 ձեռն մատնիցի : Եւ նոքա սկսան խնդրել ընդ մի-
մեանս, թէ ո՞վ է ՚ի նոցանէ՝ որ զայն գործելոց իցէ :
24 Եւ եղեւ հակառակութիւն ՚ի մէջ նոցա . թէ ո ՚ի
25 նոցանէ համարիցի մեծ : Եւ նա ասէ ցնոսա . Թա-
գաւորք ազգաց տիրեն նոցա, եւ որ իշխեն նոցա՝
26 բարերարք կոչին . Այլ դուք ոչ այնպէս . այլ որ
մեծն է ՚ի ձեզ՝ եղիցի իբրեւ զկրտսերն, եւ առաջ-
27 նորդն իբրեւ զսպասաւորն : Ո՞վ է մեծ, բազմեա՞լն՝
եթէ սպասաւորն, ո՞չ ապաքէն բազմեալն . բայց ես
28 եմ ՚ի միջի ձերում իբրեւ սպասաւոր : Եւ դուք էք՝
29 որ ցանդ կայիք ընդ իս ՚ի փորձութիւնս իմ . Եւ
ես ուխտեմ ձեզ՝ որպէս եւ Հայր իմ ուխտեաց ինձ
30 զարքայութիւն . Զի ուտիցէք եւ ըմպիցէք ՚ի սեղան
իմ յարքայութեանն իմում, եւ նստիցիք յերկո-
տասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգ Իսրայէլի :
31 Եւ ասէ Տէր . Սիմոն Սիմոն՝ ահա Սատանայ
32 խնդրեաց զքեզ խարբալել իբրեւ զցորեան . Այլ

ես աղաչեցի վասն քո՝ զի մի՛ պակասեսցեն հա-
ւատք քո. և դու երբեմն դարձցիս՝ և հաստա-
33 տեսցես զեղբարս քո։ Եւ նա ասէ ցնա. Տէր՝
ընդ քեզ պատրաստ եմ և 'ի բանտ և 'ի մահ եր-
34 թալ։ Եւ նա ասէ ցնա. Ասեմ քեզ Պետրէ,
չիցէ այսօր հաւու խօսել՝ մինչև երիցս ուրասցիս
35 զիս չգիտել։ Եւ ասէ ցնոսա. Յորժամ առաքեցի
զձեզ առանց քսակի և մախաղի և կօշկաց, միթէ
կարօտացայք ինչ։ Եւ նոքա ասեն. Ոչ ինչ։
36 Ապա ասէ. Այլ այժմ որ ունիցի քսակ՝ բարձցէ,
նոյնպէս և մախաղ. և որ ոչն ունիցի, վաճառես-
37 ցէ զձորձս իւր՝ և գնեսցէ իւր սուսեր։ Բայց ա-
սեմ ձեզ. զի այս ևս որ գրեալ է՝ պարտ է զի
կատարեսցի յիս, Եւ ընդ անօրէնս համարեցաւ.
38 զի որ վասն իմ ինչ է՝ վճարեալ է։ Եւ նոքա
ասեն. Տէր՝ ահաւասիկ են աստ երկու սուրք. և
39 նա ասէ ցնոսա. Բաւական են։ Եւ ելեալ գնաց
ըստ սովորութեանն 'ի լեառն Ձիթենեաց. գնացին
40 զհետ նորա և աշակերտքն։ Իբրև եհաս 'ի տեղին՝
ասէ ցնոսա. Յաղօթս կացէք չմտանել 'ի փորձու-
41 թիւն։ Եւ ինքն մեկնեցաւ 'ի նոցանէ իբրև քար-
42 ընկէց մի, եդ ծունր՝ կայր յաղօթս, Եւ ասէր.
Հայր եթէ կամիս՝ անցո՛ զբաժակս զայս յինէն.
43 բայց ո՛չ իմ կամք՝ այլ քոյդ լիցին։ Եւ երևե-
ցաւ նմա Հրեշտակ յերկնից և զօրացուցանէր զնա.
և էր 'ի տագնապի, և մտադիւրութեամբ ևս կայր
44 յաղօթս։ Եւ հոսէին 'ի նմանէ քրտունք իբրև
45 զկայլակս արեան՝ ոլոռն ոլոռն հեղեալ յերկիր։ Եւ
յարուցեալ յաղօթիցն՝ եկն առ աշակերտսն, եգիտ

46 զնոսա ի քուն ի տրտմութենէն. Եւ ասէ ցնոսա.
Զի՞ ննջէք, արիք կացէք յաղօթս՝ զի մի՛ մտանի-
47 ցէք ի փորձութիւն։ Եւ մինչդեռ խօսէր, ահաւա-
սիկ ամբոխ. և որ կոչէրն Յուդա՝ մի յերկոտա-
սանիցն առաջնորդէր նոցա։ Իբրև մերձեցաւ առ
Յիսուս՝ համբուրեաց զնա. *քանզի զայս նշան
տուեալ էր նոցա, թէ ընդ որում ես համբուրե-
48 ցից, նա է՝ զնա ունիցիք։ Ասէ ցնա Յիսուս. Յու-
49 դա՝ համբուրելո՞վ մատնես զՈրդի մարդոյ։ Իբրև
տեսին որ զնովաւն էին՝ զոր ինչ եղեն, ասեն ցնա.
50 Տէ՛ր՝ հարցուք զնոսա սրով։ Եւ եհար մի ոմն ի
նոցանէ զքահանայապետին ծառայ, և ի բաց եհան
51 զաջոյ ունկն նորա։ Պատասխանի ետ Յիսուս և
ասէ. Թո՛յլ տուք մինչև ցայդ վայր. և մատուցեալ
52 յունկնն՝ բժշկեաց զնա։ Եւ ասէ ցեկեալսն ի վե-
րայ նորա՝ ցքահանայապետսն և ցիշխանս տաճա-
րին և ցծերս. Իբրև ի վերայ աւազակի ելէք սու-
53 սերօք և բրօք։ Հանապազ ընդ ձեզ էի ի տաճա-
րին, և ոչ ձգեցէք ձեռս յիս. այլ այս է ձեր
54 ժամ, և իշխանութիւն խաւարի։ Եւ կալեալ զնա՝
ածին և մուծին ի տուն քահանայապետին. և
55 Պետրոս երթայր զհետ նորա հեռաստի։ Իբրև
լուցին կրակ ի մէջ գաւթին՝ և նստան շուրջ, նս-
56 տաւ և Պետրոս ի մէջ նոցա։ Եւ տեսեալ զնա աղա-
խին մի՝ զի նստէր առ լոյսն, հայեցաւ ընդ նա և
ասէ. Եւ սա ընդ նմա էր՝ որ ընդ նմին էին։
57 Իսկ Պետրոս ուրացաւ և ասէ. Ո՛չ գիտեմ զնա

* Ի Յոյնն չէ։

58 կին դու: Եւ յետ սակաւ միոյ այլ ոմն ետես զնա,
և ասէ. Եւ դու 'ի Նոցանէ ես. և Պետրոս ասէ.
59 Ա՛յր դու չեմ 'ի Նոցանէ: Եւ իբրև ժամ մի անց
'ի վերայ, այլ ոմն վկնէր և ասէր. Ստոյգ և սա
60 ընդ Նմա էր, քանզի Գալիլեացի է: Ասէ Պետրոս.
Ա՛յր դու՝ չգիտեմ զինչ խօսիս. և առ ժամայն
61 մինչդեռ նա զայն ասէր, խօսեցաւ հաւ: Դար-
ձաւ Տէր՝ և հայեցաւ 'ի Պետրոս. և յիշեաց
Պետրոս զբանն Տեառն՝ զոր ասաց ցնա. Մինչչև
հաւու խօսեալ իցէ, երիցս ուրասցիս՝ չգիտել
62 զիս: Եւ ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս:
63 Եւ արքն, որ պահէին զնա, այպն առնէին զնովաւ,
64 և հարկանէին: Ծածկէին զերեսս նորա և տան-
չէին. և հարցանէին ցնա և ասէին. Մարգարեա՛ց՝
65 ո՛վ է որ եհար զքեզ: Եւ այլ բազում ինչ հայ-
հոյութեամբ խօսէին 'ի Նա:
66 Եւ իբրև այգ եղև, ժողովեցաւ ծերակոյտ ժո-
ղովրդեանն՝ քահանայապետք և դպիրք, և հանին
ածին զՆա յատեանն իւրեանց՝ և ասեն, Եթէ դու
67 ես Քրիստոսն, ասա՛ մեզ: Ասէ ցնոսա. Եթէ ա-
68 սացից ձեզ, սակայն ո՛չ հաւատայք. Եւ եթէ հար-
ցից ինչ զձեզ, չտայք ինձ պատասխանի, կամ ար-
69 ձակիցէք. Բայց յայսմ հետէ եղիցի Որդի մար-
70 դոյ ընդ աջմէ զօրութեանն Աստուծոյ: Եւ ասեն
ամենեքեան. Արդեօք դու ես Որդին Աստուծոյ. և
71 Նա ասէ ցնոսա. Դուք ասէք, թէ ես եմ: Եւ
նոքա ասեն. Զի՞նչ եւս պիտոյ է մեզ վկայու-
թիւն, զի մեզէն իսկ լուաք 'ի բերանոյ դորա:

## ԳԼ. ԻԳ

1 Եւ յարուցեալ ամենայն ՚բազմութիւնն նոցա,
2 ածին զնա առ Պիղատոս: Եւ սկսան չարախօս լի-
նել զնմանէ և ասել. Գտաք զսա՝ զի թիւրէր
զազգս մեր, և արգելոյր ՚ի տալոյ հարկս Կայսեր,
և ասէր զանձնէ՝ եթէ Քրիստոս իցէ թագա-
3 ւոր: Իսկ Պիղատոս եհարց զնա և ասէ. Դո՞ւ ես
թագաւորն Հրէից. Նա պատասխանի ետ նմա և
4 ասէ. Դու ասացեր: Ասէ Պիղատոս ցքահանա-
յապետսն և ցժողովուրդսն. Ոչ գտանեմ ինչ վնաս
5 յառնս յայսմիկ: Եւ նոքա պնդէին և ասէին. ե-
թէ խռովէ զժողովուրդս, ուսուցանէ ընդ ամենայն
Հրէաստան՝ սկսեալ ՚ի Գալիլեէ մինչև ցայսր:
6 Իսկ Պիղատոս իբրև լուաւ զԳալիլեէ, եհարց ե-
7 թէ Գալիլեացի իցէ այրն: Եւ իբրև գիտաց թէ
յիշխանութենէ Հերովդի է, ետ տանել զնա առ
Հերովդէս. քանզի և նա յԵրուսաղէմ էր յա-
8 ւուրսն յայնոսիկ: Եւ Հերովդէս իբրև ետես զՅ-
Յիսուս, ուրախ եղև յոյժ. զի ցանկայր ՚ի բազում
ժամանակաց տեսանել զնա. քանզի լսէր բազում
անգամ զնմանէ, և ակն ունէր նշան ինչ լեալ՝
9 տեսանել ՚ի նմանէ: Հարցանէր զնա բանիւք բազ-
10 մօք. և նա ոչինչ ետ նմա պատասխանի: Կային քա-
հանայապետքն և դպիրք՝ և պնդագոյնս չարախօ-
11 սէին զնմանէ: Արհամարհեաց զնա և Հերովդէս
հանդերձ իւրովք զօրականօքն. և այպն արարեալ,
արկ զնովաւ հանդերձս սպիտակս, և ետ տանել
12 անդրէն առ Պիղատոս: Եւ եղեն բարեկամք Պի-

ղատոս և Հերովդէս յաւուր յայնմիկ. քանզի յա-
13 ռաջ թշնամիք էին միմեանց: Կոչեաց Պիղատոս
զքահանայապետսն և զիշխանս և զժողովուրդն,
14 Եւ ասէ ցնոսա. Ածիք մատուցիք ինձ զայրս զայս
իբրև զխոտորեցուցիչ ժողովրդեանն. և ահաւա-
սիկ առաջի ձեր դատեցայ, և վնաս ինչ ոչ գտի
յառնս յայսմիկ՝ զորոյ դուք չարախօսէքդ զդմանէ:
15 Այլ և ոչ Հերովդէս, քանզի ետու տանել ըզ-
դա առ նա. և արդ ոչինչ մահու արժանի է գործ-
16 եալ դորա. Խրատեցից զդա, և արձակեցից:
17 Զի հարկ էր մի մի ըստ տօնի արձակել նոցա:
18 Եւ նոքա աղաղակէին ամենայն բազմութեամբն՝ և
ասէին. Բարձ զդա՝ և արձակեա մեզ զԲարաբբա.
19 Որ էր վասն խռովութեան իրիք եղելոյ 'ի քաղաքին
20 և սպանութեան մտեալ 'ի բանտ: Դարձեալ Պիղա-
տոս սկսաւ խօսել. քանզի կամէր արձակել զՅի-
21 սուս: Եւ նոքա անդրէն աղաղակէին և ասէին. 'Ի
22 խաչ հան զդա: Եւ նա երիցս ասէ ցնոսա. Զի՞նչ
չար արար սա. ոչինչ վնաս մահու գտի 'ի սմա.
23 Խրատեցից զսա և արձակեցից: Եւ նոքա ստիպէին
մեծաձայն՝ և խնդրէին զնա 'ի խաչ հանել. և զօրա-
24 նային բարբառք նոցա և քահանայապետից: Եւ Պի-
25 ղատոս հաւանեցաւ առնել զհայցուածս նոցա: Ար-
ձակեաց նոցա զԲարաբբայն՝ զոր վասն խռովու-
թեան և սպանութեան արկեալ էր 'ի բանտ, զոր և
խնդրէինն իսկ. և զՅիսուս մատնեաց կամաց նոցա:
26 Իբրև տանէին զնա, ըմբռնեցին զոմն Սիմոն
Կիւրենացի՝ որ գայր յանդէ. եդին 'ի վերայ նորա
27 զխաչն բերել զկնի Յիսուսի: Եւ երթայր զհետ

նորա բազմութիւն ժողովրդեանն, և կանանց՝ որ
28 կոծէին և աշխարէին զնա։ Դարձաւ Յիսուս և ասէ
ցնոսա. Դստերք Երուսաղէմի՝ մի լայք ՚ի վերայ
իմ, այլ լացէք ՚ի վերայ անձանց և ՚ի վերայ որդ-
29 ւոց ձերոց։ Զի ահա եկեսցեն աւուրք, յորս ասիցեն՝
թէ Երանի ամլոց և որովայնից՝ որ ոչ ծնան, և
30 ստեանց՝ որ ոչ դիեցուցին։ Յայնժամ սկսանիցեն
ասել լերանց՝ թէ Անկերո՛ւք ՚ի վերայ մեր, և բլրոց՝
31 թէ ծածկեցէ՛ք զմեզ։ Զի եթէ ընդ փայտ դալար
32 զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի։ Ածին և
33 այլ երկուս չարագործս՝ սպանանել ընդ նմա։ Իբրև
չոգան ՚ի տեղին կոչեցեալ Գագաթն, անդ հանին
զնա ՚ի խաչ. և զչարագործսն՝ զոմն ընդ աջմէ՝ և
34 զոմն ընդ ձախմէ խաչեցին։ Եւ Յիսուս ասէ. Հա՛յր՝
թո՛ղ դոցա, զի ոչ գիտեն՝ զինչ գործեն։ Եւ ՚ի
35 բաժանել զհանդերձս նորա, արկին վիճակս։ Եւ
կայր ժողովուրդն հայեցեալ. անգոսնէին զնա իշ-
խանքն հանդերձ նոքօք՝ և ասէին. Զայլս ապրե-
ցոյց, ապրեցուսցէ և զանձն՝ եթէ դա է Քրիստոս
36 Որդի Աստուծոյ ընտրեալն։ Այպն առնէին զնա և
զինուորքն, եկեալ առաջի՝ մատուցանէին նմա քա-
37 ցախ, Եւ ասէին. Եթէ դու ես թագաւորն Հրէից
38 փրկեա՛ զանձն քո։ Եւ էր գիր գրեալ ՚ի վերայ
նորա Յունարէն և Դաղմատերէն և Եբրայեցերէն
39 գրով, եթէ Սա՛ է արքայն Հրէից։ Իսկ մի ոմն ՚ի
կախելոց չարագործացն հայհոյէր զնա, և ասէր.
Ո՞չ դու ես Քրիստոսն՝ փրկեա՛ զանձն քո և զմեզ։
40 Պատասխանի ետ ընկերն սաստելով նմա և ասէ.
Ոչ երկնչի՞ս դու յԱստուծոյ՝ զի ՚ի նմին պատժի կաս։

41 Եւ մեք յիրաւի, զի արժանի՝ որոց գործեցաքն՝
առնումք զհատուցումն. և սա ապիրատ ինչ ոչ
42 գործեաց: Եւ ասէ ցՅիսուս. Յիշեա՛ զիս Տէր՝
43 յորժամ գայցես արքայութեամբ քով: Եւ ասէ
ցնա Յիսուս. Ամէն ասեմ քեզ. Այսօր ընդ իս
44 իցես ՚ի դրախտին: Եւ էր իբրև վեցերորդ ժամ.
և խաւար եղև ՚ի վերայ ամենայն երկրի մինչև
45 ցիններորդ ժամ. խաւարեցաւ արեգակն: Եւ հեր-
46 ձաւ վարագոյր տաճարին ընդ մէջ: Եւ կարդաց
Յիսուս ՚ի ձայն մեծ՝ և ասէ. Հա՛յր՝ ՚ի ձեռս քո
աւանդեմ զհոգի իմ. զայս իբրև ասաց, եհան զո-
47 գի: Եւ տեսեալ հարիւրապետին՝ զոր ինչ եղևն,
փառաւոր արար զԱստուած՝ և ասէ. Արդարև՝ այրս
48 այս արդար էր: Եւ ամենայն ժողովուրդքն որ եկ-
եալ էին, և տեսանէին զտեսիլն զայն՝ և զգործ,
49 բախէին զկուրծս՝ և դառնային: Կային և ամենայն
ծանօթքն նորա ՚ի հեռաստանէ. և կանայք որ եկ-
եալ էին զհետ նորա ՚ի Գալիլեէ՝ տեսանէին զայն:
50 Եւ ահա այր մի՝ անուն Յովսէփ, որ էր նախա-
51 րար՝ այր բարեգործ և արդար. Սա չէր միաբանեալ
ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա. յԱրիմաթ-
եայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակն ունէր
52 արքայութեան Աստուծոյ: Սա մատուցեալ առ Պի-
53 ղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի. Եւ իջուցեալ
զնա՝ պատեաց պաստառակալաւ, և եդ ՚ի կռածոյ
54 գերեզմանին՝ ուր չէր բնաւ զոք եդեալ: Եւ օրն էր
55 ուրբաթ, և շաբաթ լուսանայր: Եւ երթային զհետ
նորա կանայք՝ որ եկեալ էին ընդ նմա ՚ի Գալիլեէ.
տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին նո-

56 րա ։ Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս ․ և
՚ի շաբաթուն հանդարտեցին վասն պատուիրանին ։

## ԳԼ․ ԻԴ

1 Բայց ՚ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ առաւօտն
եկին ՚ի գերեզմանն ․ բերին զխունկսն զոր պատրաս-
2 տեցին, և այլ կանայք ընդ նոսա ․ Եւ գտին զվէմն
3 թաւալեցուցեալ ՚ի գերեզմանէ անտի ։ Եւ մտեալ
4 ՚ի ներքս՝ ոչ գտին զմարմինն Տեառն Յիսուսի ։ Եւ
եղև ընդ հիանալն նոցա վասն այնորիկ, և ահա
արք երկու հասին առ նոսա ՚ի հանդերձս լուսաւորս ։
5 Եւ իբրև զահի հարան, և խոնարհեցուցին զերեսս
իւրեանց յերկիր, ասեն ցնոսա ․ Զի՞ խնդրէք ըզ-
6 կենդանին ընդ մեռեալս ։ Չէ աստ՝ այլ յարեաւ ․
յիշեցէք՝ որպէս խօսեցաւ ընդ ձեզ մինչ էրն ՚ի
7 Գալիլեայ, Եւ ասէր ․ Թէ Պարտ է Որդւոյ մարդոյ
մատնիլ ՚ի ձեռս մարդոց մեղաւորաց, և ՚ի խաչ ե-
8 լանել՝ և յերրորդ աւուր յառնել ։ Եւ յիշեցին
9 զբանսն նորա ։ Եւ դարձան պատմեցին զայս ամե-
10 նայն մետասանիցն, և այլոցն ամենեցուն ։ Եւ էին
Մարիամ Մագդաղենացի և Յովհաննա և Մա-
րիամ Յակովբայ, և այլք ընդ նոսա՝ որ պատմեցին
11 զայս առաքելոցն ։ Եւ երևեցան առաջի նոցա շաղ-
փաղփութիւն բանքն նոցա՝ և չհաւատային նոցա ։
12 Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ ՚ի գերեզմանն,
և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ՝ զի կային ․ և
գնաց ընդ միտս զարմացեալ, թէ զինչ եղև ։
13 Եւ ահա երկուք ՚ի նոցանէ երթային ՚ի նմին ա-

ւուր 'ի գեօղ մի, որ հեռի էր յԵրուսաղեմէ հար-
իւր և վաթսուն ասպարիսաւ, և էր անուն նորա
14 Եմմաւուս: Եւ նոքա խօսէին ընդ միմեանս վասն
15 ամենայն անցիցն անցելոց: Եւ եղև ընդ խօսելն
նոցա և ընդ վիճելն՝ և ինքն իսկ Յիսուս մերձեցաւ՝
16 և երթայր ընդ նոսա. Եւ նոցա աչք կալեալ էին
17 առ 'ի չճանաչելոյ զնա, Եւ ասէ ցնոսա. Զի՞նչ
են բանքդ՝ վասն որոց վիճիքդ ընդ միմեանս՝ մինչ-
18 դեռ գնայքդ, և տրտմեալ էք: Պատասխանի ետ
մի ոմն 'ի նոցանէ որում անուն էր Կղէովպաս, և
ասէ ցնա. Դու՞ միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ
գիտացեր զինչ գործեցաւ 'ի նմա յաւուրսս յայսո-
19 սիկ: Եւ ասէ ցնոսա. Զի՞նչ. և նոքա ասեն.
զՅիսուսէ Նազովրեցւոյ, որ եղև այր մարգարէ՝
հզօր արդեամբք և բանիւք առաջի Աստուծոյ, և
20 ամենայն ժողովրդեանն: Որպէս մատնեցին զնա
քահանայապետքն՝ և իշխանքն մեր 'ի դատաստան
21 մահու՝ և հանին զնա 'ի խաչ: Մե՛ք ակն ունէաք՝
թէ նա է որ փրկելոցն իցէ զԻսրայէլ. այլ և հան-
դերձ այսու ամենայնիւ, այս երրորդ օր է՝ յորմէ
22 հետէ այն գործեցաւ: Այլ և կանայք ոմանք 'ի մէնջ
զարմացուցին զմեզ. որք կանխեալ ընդ առաւօտս
23 չոգան 'ի գերեզմանն, Եւ ո՛չ գտին զմարմինն նո-
րա. եկին և ասեն, թէ և տեսիլ ևս հրեշտակաց
24 տեսին, որք ասէին զնմանէ՝ թէ կենդանի է: Եւ
գնացին ոմանք 'ի մէնջ 'ի գերեզմանն, և գտին նոյն-
պէս՝ որպէս և կանայքն ասացին. բայց զնա ո՛չ տե-
25 սին. Եւ նա ասէ ցնոսա. Ո՞վ անմիտք և հեղգա-
սիրտք 'ի հաւատալ յամենայնի, զոր խօսեցան մար-

26 գարէքն : Ո՞չ զնոյն պարտ էր չարչարել Քրիս-
27 տոսի, եւ մտանել ՚ի փառս իւր : Եւ սկսեալ ՚ի
Մովսիսէ՝ եւ յամենայն մարգարէիցն, մեկնէր նոցա՝
28 որ ինչ յամենայն գիրս գրեալ է զնմանէ : Իբրեւ
մերձեցան ՚ի գեօղն յոր երթային, եւ նա պատճա-
29 ռէր հեռագոյն եւս ուրեք երթալ : Եւ բռնադատե-
ցին զնա՝ եւ ասեն. Կա՛ց մեզ ագիր, զի ընդ երեկս
է՝ եւ տարաժամեալ է օրս. եւ եմուտ ագանել անդ
30 ընդ նոսա : Եւ եղեւ ՚ի բազմելն նորա ընդ նոսա,
31 առեալ զհացն՝ օրհնեաց, եբեկ եւ ետ նոցա : Եւ
նոցա բացան աչք՝ եւ ծանեան զնա. եւ նա եղեւ ՚ի
32 նոցանէ աներեւոյթ : Եւ ասեն ցմիմեանս. Ո՞չ իսկ
եւ սիրտք մեր ճմլէին ՚ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ
զճանապարհայն. եւ որպէս բանայր մեզ զգիրս :
33 Եւ յարուցեալ նոյնժամայն՝ դարձան յԵրուսա-
ղէմ, եւ գտին ժողովեալ զմետասանեսն՝ եւ զորս ընդ
34 նոսայն էին. Եւ ասեն՝ թէ Արդարեւ յարեաւ Տէր՝
35 եւ երեւեցաւ Սիմոնի : Եւ նոքա պատմէին զայն
որ զճանապարհայնն, եւ թէ զիա՛րդ եա ծանօթս
նոցա ՚ի բեկանելն հացին :

36 Մինչդեռ զայն խօսէին, ինքն իսկ Յիսուս եկաց
՚ի մէջ նոցա՝ եւ ասէ ցնոսա. Խաղաղութիւն ընդ
37 ձեզ,* ես եմ, մի՛ երկնչիք" : Եւ զահի հարեալ
38 երկնչէին. եւ համարէին ոգի ինչ տեսանել : Եւ ա-
սէ ցնոսա. Զի՞ խռովեալ էք՝ եւ ընդէ՞ր խորհուրդք
39 ելանեն ՚ի սիրտս ձեր : Տեսէք զձեռս իմ եւ զոտս,
զի ես նոյն եմ. շօշափեցէք զիս եւ տեսէք. զի ոգի՝

* ՚Ի Յոյնն չէ :

մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիս տեսանէք
40 զի ունիմ։ Եւ զայս ասացեալ եցոյց նոցա զձեռսն
և զոտս։
41 Եւ մինչդեռ տակաւին չհաւատային 'ի խնդութե-
նէն՝ և զարմացեալ էին, ասէ ցնոսա. Ունի՞ք ինչ
42 կերակուր աստ։ Եւ նոքա ետուն նմա ձկան խո-
43 րովելոյ մասն, և խորիսխ մեղու։ Եւ առ՝ եկեր ա-
44 ռաջի նոցա,* և զմնացորդսն ետ նոցա՚՚։ Եւ ասէ
ցնոսա. Այս բանք են զոր խօսեցայ ընդ ձեզ, մինչ
առ ձեզն էի, թէ Պարտ է լնուլ ամենայն գրելոցն
յօրէնսն Մովսէսի և 'ի մարգարէս և 'ի սաղմոսն
45 վասն իմ։ Յայնժամ եբաց զմիտս նոցա իմանալ
46 զգիրս։ Եւ ասէ ցնոսա, թէ Այսպէս պարտ էր
չարչարիլ Քրիստոսի, և յառնել 'ի մեռելոց յա-
47 ւուր երրորդի. Եւ քարոզել յանուն նորա ապաշ-
խարութիւն և թողութիւն մեղաց յամենայն ազգս՝
48 սկսեալ յԵրուսաղեմէ։ Եւ դուք էք վկայք այսո-
49 ցիկ։ Եւ ահա ես առաքեմ զաւետիս Հօր իմոյ
'ի ձեզ. և դուք նստարո՛ւք 'ի քաղաքիս յԵրուսա-
ղէմ, մինչև զգենուցուք զօրութիւն 'ի բարձանց։
50 Եհան զնոսա մինչև 'ի Բեթանիա, և ամբարձեալ
51 զձեռս իւր՝ օրհնեաց զնոսա։ Եւ եղև յօրհնելն
նորա զնոսա, մեկնեցաւ 'ի նոցանէ, և վերանայր
52 յերկինս։ Եւ նոցա երկիրպագեալ նմա՝ դարձան
53 յԵրուսաղէմ ուրախութեամբ մեծաւ։ Եւ էին
հանապազ 'ի տաճարին, գովէին և օրհնէին զԱստ-
ուած։

---

* 'Ի Յոյնն չէ։

# ԱՒԵՏԱՐԱՆ
## ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ

### ԳԼ. Ա

1 ԻՍԿԶԲԱՆԷ էր Բանն. եւ Բանն էր առ Աս-
2 տուած. եւ Աստուած էր Բանն։ Նա էր ՚ի
3 սկզբանէ առ Աստուած։ Ամենայն ինչ նովաւ եղեւ,
4 եւ առանց նորա եղեւ եւ ոչինչ՝ որ ինչ եղեւն։ Նո-
5 վաւ կեանք էր, եւ կեանքն էր լոյս մարդկան. Եւ
լոյսն ՚ի խաւարի անդ լուսաւորէ, եւ խաւար նմա ոչ
6 եղեւ հասու։ Եղեւ այր մի առաքեալ յԱստուծոյ,
7 անուն նմա Յովհաննէս։ Սա եկն ՚ի վկայութիւն՝
զի վկայեսցէ վասն Լուսոյն. զի ամենեքին հաւա-
8 տասցեն նովաւ։ Ոչ էր նա Լոյսն. այլ զի վկայես-
9 ցէ վասն Լուսոյն։ Էր Լոյսն ճշմարիտ, որ լուսա-
ւոր առնէ զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ։
10 Յաշխարհի էր, եւ աշխարհ նովաւ եղեւ. եւ աշխարհ
11 զնա ոչ ծանեաւ։ Յիւրսն եկն, եւ իւրքն զնա ոչ
12 ընկալան։ Իսկ որք ընկալանն զնա, ետ նոցա իշ-
խանութիւն որդիս Աստուծոյ լինել՝ որոց հաւա-
13 տասցեն յանուն նորա. Որք ոչ յարենէ՝ եւ ոչ ՚ի
կամաց մարմնոյ՝ եւ ոչ ՚ի կամաց առն, այլ յԱստու-

14 ծոյ ծնան։ Եւ Բանն մարմին եղեւ՝ եւ բնակեաց
'ի մեզ. եւ տեսաք զփառս նորա՝ զփառս իբրեւ զՄի-
ածնի առ 'ի Հօրէ, լի շնորհօք եւ ճշմարտութեամբ։
15 Յովհաննէս վկայէ վասն նորա, աղաղակեաց եւ
ասէ. Սա՛ է՝ զորմէ ասէի, Որ զկնի իմ գալոցն էր՝
16 առաջի իմ եղեւ. զի նախ քան զիս էր։ Զի 'ի
լրութենէ նորա՝ մեք ամենեքին առաք շնորհս
17 փոխանակ շնորհաց։ Զի օրէնքն 'ի ձեռն Մովսի-
սի տուան. շնորհքն եւ ճշմարտութիւն 'ի ձեռն Յի-
սուսի Քրիստոսի եղեն։
18 զԱստուած ոչ ո՛ք ետես երբեք, բայց միածինն
19 Որդի որ է 'ի ծոց Հօր, նա պատմեաց։ Եւ այս է
վկայութիւն Յովհաննու, յորժամ առաքեցին
առ նա Հրէայքն յԵրուսաղեմէ քահանայս եւ Ղե-
20 ւտացիս, զի հարցցեն ցնա՝ Թէ Դու ո՞ ես։ Եւ
խոստովան եղեւ, եւ ո՛չ ուրացաւ. խոստովան եղեւ՝
21 եթէ Ես ո՛չ եմ Քրիստոսն։ Եւ հարցին ցնա.
Իսկ ո՞վ ես դու, Եղիա՞ ես. եւ ասէ. Ո՛չ եմ։
Իսկ մարգարէ՞ն ես դու. պատասխանի ետ՝ Թէ Ո՛չ։
22 Իսկ ասեն ցնա՝ Դու ո՞վ ես, զի պատասխանի տար-
ցուք՝ որոց առաքեցին զմեզ. զի՞ ասես վասն քո։
23 Ասէ. Ես՝ ձայն բարբառոյ յանապատի, ուղիղ
արարէք զճանապարհս Տեառն, որպէս ասաց Ե-
24 սայի մարգարէ։ Եւ որք առաքեցանն՝ 'ի փարիսեց-
25 ւոց անտի էին։ Հարցին ցնա՝ եւ ասեն. Իսկ զի՞
մկրտես՝ եթէ դու չես Քրիստոսն, եւ ո՛չ Եղիա,
25 եւ ո՛չ մարգարէն։ Պատասխանի ետ նոցա Յով-
հաննէս՝ եւ ասէ. Ես մկրտեմ զձեզ ջրով. 'ի միջի
27 ձերում կայ, զորմէ դուք ո՛չ գիտէք. Որ զկնի իմ

գալոցն է, որում չեմ արժանի՝ եթէ լուծից զխը-
28 րացս կօշկաց նորա: Այս 'ի Բեթաբրայ եղև յայն-
կոյս Յորդանանու, ուր էրն Յովհաննէս՝ և մկրտէր:
29 'Ի վաղիւ անդր տեսանէ զՅիսուս՝ զի գայր առ
նա, և ասէ. Ահաւասիկ Գառն Աստուծոյ՝ որ բառ-
30 նայ զմեղս աշխարհի: Սա է՝ վասն որոյ եսն ասէի,
զկնի իմ գայ այր՝ որ առաջի իմ եղև, զի յառաջ
31 իւկ էր քան զիս: Եւ ես ոչ գիտէի զնա. այլ զի
յայտնի լինիցի Իսրայէլի, վասն այնորիկ եկի ես
32 ջրով մկրտել: Վկայեաց Յովհաննէս և ասէ, թէ
Տեսանէի զՀոգին՝ զի իջանէր իբրև զաղաւնի յերկ-
33 նից, և հանգչէր 'ի վերայ նորա: Եւ ես ոչ գիտէի
զնա. այլ որ առաքեացն զիս մկրտել ջրով՝ նա ա-
սաց ցիս. Յոր վերայ տեսանիցես զՀոգին, զի
իջանիցէ և հանգչիցի 'ի վերայ նորա, նա է՝ որ մը-
34 կրտէ Հոգւովն Սրբով: Եւ ես տեսի և վկայեցի
եթէ Սա է Որդին Աստուծոյ:
35 'Ի վաղիւ անդր կայր Յովհաննէս, և յաշակեր-
36 տաց անտի նորա երկու: Եւ նայեցեալ ընդ Յի-
սուս՝ զի գնայր, ասէ. Ահաւասիկ Քրիստոս
37 Գառն Աստուծոյ: Լուան 'ի նմանէ երկու աշա-
38 կերտքն՝ զի խօսէր, և գնացին զհետ Յիսուսի: Իբրև
դարձաւ Յիսուս. և ետես զնոսա՝ զի երթային զհետ
նորա, ասէ ցնոսա. Զի՞նչ խնդրէք. Նոքա ասեն
ցնա. Ռաբբի, որ թարգմանեալ կոչի վարդապետ,
39 ո՞ւր ես օթեվանք քո: Ասէ ցնոսա. Եկա՛յք և տեսէք.
եկին և տեսին՝ ուր էին օթեվանք նորա, և առ նմա
40 ագան այն օր, զի ժամ էր իբրև տասներորդ: Էր
Անդրէաս եղբայր Սիմովնի վիմի, մի յերկուց անտի,

որ լուանն 'ի Յովհաննէ՝ և գնացին զկնի Նորա։
41 Գտանէ սա նախ զեղբայր իւր զՍիմոն, և ասէ ցնա.
42 Գտաք զՄեսիայն՝ որ թարգմանի Քրիստոս։ Ա-
ած զնա առ Յիսուս. հայեցեալ ընդ նա Յիսուսի՝
ասէ. Դու ես Սիմոն որդի Յովնանու, դու կո-
չեսցիս Կեփաս. որ թարգմանի Պետրոս։
43 Ի վաղիւ անդր կամեցաւ ելանել 'ի Գալիլեա.
գտանէ զՓիլիպպոս, և ասէ ցնա Յիսուս. Ե՛կ ըզ-
44 կնի իմ։ Եւ էր Փիլիպպոս 'ի Բեթսայիդա, 'ի
45 քաղաքէ Անդրեայ և Պետրոսի։ Գտանէ Փիլիպ-
պոս զՆաթանայէլ, և ասէ ցնա. Զորմէ գրեաց
Մովսէս յօրէնսն՝ և մարգարէքն. գտաք զՅիսուս
46 զորդի Յովսեփայ 'ի Նազարեթէ։ Ասէ ցնա Նա-
թանայէլ. Իսկ 'ի Նազարեթէ՝ մարթ ի՞նչ իցէ
բարւոյ իմիք լինել. ասէ ցնա Փիլիպպոս. Ե՛կ և
47 և տես։ Իբրև ետես Յիսուս զՆաթանայէլ զի
գայր առ նա, ասէ վասն նորա. Ահա արդարև Իս-
48 րայելացի՝ յորում նենգութիւն ո՛չ գոյ։ Ասէ ցնա
Նաթանայէլ. Ուստի՞ ճանաչես զիս. պատասխա-
նի ետ Յիսուս և ասէ ցնա. մինչչև էր Փիլիպպոսի
կոչեցեալ զքեզ՝ զի էիր 'ի ներքոյ թզենւոյն, տե-
49 սի զքեզ։ Պատասխանի ետ Նմա Նաթանայէլ և
ասէ. Ռաբբի՝ դու ես Որդի Աստուծոյ, Դու ես
50 թագաւորն Իսրայէլի։ Պատասխանի ետ Նմա Յի-
սուս և ասէ. փոխանակ զի ասացի քեզ՝ թէ տե-
սի 'ի ներքոյ թզենւոյն, հաւատաս. մեծամեծս ևս
51 քան զայս տեսցես։ Եւ ասէ ցնա. Ամէն ամէն
ասեմ ձեզ. տեսանիցէք զերկինս բացեալ, և զհր-

րեշտակս Աստուծոյ՝ զի ելանիցեն և իջանիցեն 'ի
վերայ Որդւոյ մարդոյ :

## ԳԼ. Բ

1 Եւ յաւուրն երրորդի հարսանիք էին 'ի Կա-
նա Գալիլեացւոց . և անդ էր մայրն Յիսուսի :
2 Կոչեցաւ և Յիսուս և աշակերտքն Նորա 'ի հար-
3 սանիսն : Եւ 'ի պակասել գինւոյն , ասէ մայրն
4 ցՅիսուս . Գինի ոչ ունին : Եւ ասէ ցնա Յի-
սուս . Զի՞ կայ իմ և քո՝ կին դու , չե՛ է հասեալ
5 ժամանակ իմ : Ասէ մայրն Նորա ցսպասաւորսն .
6 Որ զինչ ասիցէ ձեզ՝ արասջիք : Անդ էին թա-
կոյկք կճեայք վեց՝ ըստ սրբութեան Հրէից . տա-
նէին մի մի 'ի նոցանէ մարս երկուս կամ երիս :
7 Ասէ ցնոսա Յիսուս . Լցէք զթակոյկսդ ջրով . և
8 լցին զնոսա մինչև 'ի վեր : Եւ ասէ ցնոսա . Արդ
առէք և բերէք տաճարապետիս . և նոքա բերին :
9 Եւ իբրև ճաշակեաց տաճարապետն զջուրն գինի
եղեալ, և ոչ գիտէր ուստի իցէ . բայց սպասաւորքն
գիտէին՝ որք արկին զջուրն . խօսի ընդ փեսային
10 տաճարապետն , Եւ ասէ . Ամենայն մարդ զանոյշ
գինին յառաջագոյն պաշտէ . և յորժամ արբե-
նան , յայնժամ զյոռին . դու պահեցեր զանոյշ
11 գինիդ մինչև ցայժմ : Զայս արար սկիզբն նշանաց
Յիսուս 'ի Կանա Գալիլեացւոց , և յայտնեաց ըզ-
փառս իւր , և հաւատացին 'ի Նա աշակերտքն Նորա :
12 Յետ այսորիկ էջ Յիսուս 'ի Կափառնաում ,

ինքն և մայր իւր և եղբարք իւր* . և անդ՝ լինէր ոչ
13 բազում ինչ աւուրս։ Եւ էր մերձ զատիկն Հրէից,
14 և ել Յիսուս յԵրուսաղէմ. Եւ եգիտ ՚ի տաճա-
րին զի վաճառէին զարջառս և զոչխարս և զա-
15 ղաւնիս, և զլումայափոխսն՝ որ նստէին։ Եւ արար
խարազան չուանեայ, և եհան զամենեսին ՚ի տա-
ճարէն, զոչխարսն և զարջառս, և զպղինձս հատա-
վաճառացն ցրուեաց, և զսեղանսն կործանեաց։
16 Եւ որ զաղաւնիսն վաճառէին՝ ասէ ցնոսա. Բարձէք
զայդ աստի, և մի՛ առնէք զտուն Հօր իմոյ՝ տուն
17 վաճառի։ Ապա յիշեցին աշակերտքն նորա, թէ
18 գրեալ է. Նախանձ տան քո կերիցէ զիս։ Պա-
տասխանի ետուն Հրէայքն և ասեն ցնա՝. Զի՞նչ
19 նշան ցուցանես դու մեզ՝ զի զայդ առնես։ Պա-
տասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնոսա. Քակեցէք
զտաճարդ զայդ, և զերիս աւուրս կանգնեցից զդա։
20 Ասեն ցնա Հրէայքն. Զքառասուն և զվեց ամ
շինեցաւ տաճարս այս, և դու զերիս աւուրս կանգնես
21 զդա։ Բայց նա ասէր վասն տաճարի մարմնոյն իւ-
22 րոյ։ Իսկ յորժամ յարեաւ ՚ի մեռելոց, յիշեցին
աշակերտքն նորա, թէ այս է՝ զոր ասացն. և հա-
ւատացին գրոյն, և բանին՝ զոր ասաց Յիսուս։
23 Եւ իբրև էր յԵրուսաղէմ ՚ի զատկին ՚ի տօնի,
բազումք հաւատացին յանուն նորա. զի տեսանէին
24 զնշանսն՝ զոր առնէր։ Բայց ինքն Յիսուս ոչ հա-
ւատայր զանձն նոցա. քանզի ինքն գիտէր զամե-
25 նայն. Եւ զի ոչ էր պիտոյ՝ եթէ ոք վկայեսցէ

* ՚Ի Յոյնն, և աշակերտքն իւր

վասն մարդոյ՝ զի ինքն իսկ գիտէր՝ զինչ կրէր ՚ի մարդն:

## ԳԼ. Գ

1 Եւ էր այր մի ՚ի փարիսեցւոց անուն՝ Նիկոդեմոս
2 անուն նորա՝ իշխան Հրէից: Սա եկն առ նա գի-
շերի՝ և ասէ ցնա. Ռաբբի՝ գիտեմք եթէ յԱստու-
ծոյ եկեալ ես վարդապետ. զի ոչ ոք կարէ զայդ
նշանսդ առնել՝ զոր դուդ առնես, եթէ ոչ Աստուած
3 իցէ ընդ նմա: Պատասխանի ետ Յիսուս և ասէ
ցնա. Ամէն ամէն ասեմ քեզ, Եթէ ոչ ոք ծնցի վե-
րստին՝ ոչ կարէ տեսանել զարքայութիւն Աստու-
4 ծոյ: Ասէ ցնա Նիկոդեմոս. Զիա՞րդ կարէ մարդ
ծնանել՝ որ ծեր իցէ. միթէ մա՞րթ ինչ իցէ անդ-
րէն յորովայն մօր իւրոյ կրկին մտանել՝ և ծնանել:
5 Պատասխանի ետ Յիսուս և ասէ. Ամէն ամէն ասեմ
քեզ, Եթէ ոչ ոք ծնցի ՚ի ջրոյ և ՚ի Հոգւոյ, ոչ
6 կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ: Զի
ծնեալն ՚ի մարմնոյ՝ մարմին է, և ծնեալն ՚ի Հոգւոյ՝
7 Հոգի է: Դու մի՛ զարմանար, թէ ասացի քեզ՝
8 Պարտ է ձեզ ծնանել վերստին: Զի Հողմ՝ ուր կա-
մի շնչէ. և զձայն նորա լսես. այլ ոչ գիտես՝ ուս-
տի՛ գայ, կամ յո՛ երթայ. սոյնպէս և ամենայն
9 ծնեալն ՚ի Հոգւոյն: Պատասխանի ետ Նիկոդեմոս
10 և ասէ ցնա. Զիա՞րդ մարթի այդմ լինել: Պա-
տասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. Դու ես վար-
11 դապետ Իսրայէլի՝ և զայդ ո՞չ գիտես: Ամէն ամէն
ասեմ քեզ. զի զոր ինչ գիտեմք՝ խօսիմք, և զոր

տեսաք՝ վկայեմք. և զվկայութիւն մեր ոչ ընդու-
12 նիք: Իսկ արդ՝ եթէ զերկրաւորս ասացի ձեզ՝ և ոչ
հաւատայք. զիա՞րդ եթէ զերկնաւորսն ասացից՝
հաւատայցէք:
13 Եւ ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ՝ որ էջն յերկնից
14 Որդին մարդոյ, որ էն յերկինս: Եւ որպէս Մով-
սէս բարձրացոյց զօձն յանապատին, նոյնպէս բարձ-
15 րանալ պարտ է Որդւոյ մարդոյ: Զի ամենայն որ
հաւատայ 'ի նա՝ մի՛ կորիցէ, այլ ընկալցի զկեանսն
16 յաւիտենականս: Զի այնպէս սիրեաց Աստուած
զաշխարհ՝ մինչև զՈրդին իւր միածին ետ. զի ա-
մենայն որ հաւատայ 'ի նա՝ մի՛ կորիցէ, այլ ըն-
17 կալցի զկեանսն յաւիտենականս: Զի ոչ առաքեաց
Աստուած զՈրդի իւր յաշխարհ՝ թէ դատեսցի զաշ-
18 խարհ, այլ զի փրկեսցի աշխարհ նովաւ. Որ հա-
ւատայ 'ի նա, ոչ դատապարտեսցի. և որ ոչ հա-
ւատայ 'ի նա՝ արդէն իսկ դատապարտեալ է. զի
ոչ հաւատաց յանուն միածնի Որդւոյն Աստուծոյ:
19 Եւ այս իսկ է դատաստան. զի լոյս եկն յաշխարհ,
և սիրեցին մարդիկ զխաւար առաւել քան զլոյս.
20 զի էին գործք իւրեանց չարութեան: Զի ամենայն
որ զչար գործէ՝ ատեայ զլոյս. և ոչ գայ առ լոյսն,
21 զի մի՛ յանդիմանեսցին գործք նորա: Իսկ որ առնէ
զճշմարտութիւն՝ գայ առ լոյսն, զի յայտնի լիցին
գործք նորա, թէ Աստուծով գործեցան:
22 Յետ այսորիկ եկն Յիսուս և աշակերտքն նորա
յերկիրն Հրէաստանի. և անդ շրջէր նոքօք հան-
23 դերձ և մկրտէր: Մկրտէր և Յովհաննէս 'ի յԱ-
յենովն մերձ առ Սաղիմ, զի ջուրք բազումք էին

24 անդ. և գային՝ և մկրտէին: Զի չև՛ ևս էր արկ-
25 եալ զՅովհաննէս 'ի բանտ: Եւ եղև խնդիր յա-
շակերտացն Յովհաննու ընդ Հրէից վասն սրբու-
26 թեան: Եկին առ Յովհաննէս՝ և ասեն ցնա.
Ռաբբի՝ որ էրն ընդ քեզ յայնկոյս Յորդանանու,
որում դուն վկայեցեր, ահաւանիկ նա մկրտէ՝ և
27 ամենեքին գան առ նա: Պատասխանի ետ Յով-
հաննէս՝ և ասէ. Ո՛չ կարէ մարդ առնուլ յանձնէ
և ոչինչ՝ եթէ ո՛չ իցէ տուեալ նմա յերկնից 'ի վե-
28 րուստ: Դուք ձեզէն վկայէք ինձ, զի ասացի ձեզ՝
թէ Չեմ ես Քրիստոսն, այլ թէ առաքեալ եմ
29 առաջի նորա: Որ ունի հարսն՝ նա է փեսայ. իսկ
բարեկամ փեսային՝ որ կայ և լսէ նմա, ուրախու-
թեամբ ուրախ լինի վասն ձայնի փեսային. արդ այս
30 ուրախութիւն որ իմն է, լցեալ է: Նմա պարտ է
31 աճել, և ինձ մեղմանալ: Որ 'ի վերուստն գայ՝ 'ի
վերոյ է քան զամենայն. որ յերկրէ աստի է, յերկ-
32 րէ է՝ և յերկրէ խօսի: Որ յերկնիցն գայ, զոր
ինչ ետես և զոր լուաւ՝ վկայէ. և զվկայութիւն
33 նորա ոչ ո՛ք ընդունի: Որ ընդունի զվկայութիւն
34 նորա՝ կնքեաց, թէ Աստուած ճշմարիտ է: Զի
զոր Աստուածն առաքեաց՝ զբանս Աստուծոյ խօսի.
35 զի ո՛չ եթէ չափով տայ Աստուած զՀոգին: Հայր
սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ետ 'ի ձեռս նո-
36 րա: Որ հաւատայ յՈրդի, ընդունի զկեանսն յա-
ւիտենականս. և որ ո՛չ հնազանդի Որդւոյ, ո՛չ
տեսցէ զկեանս, այլ բարկութիւն Աստուծոյ մնայ
'ի վերայ նորա:

## ԳԼ. Դ

1 Իբրեւ գիտաց Յիսուս՝ եթէ լուան փարիսեցիքն՝
եթէ Յիսուս բազում աշակերտս առնէ, եւ մկրտ-
2 տէ քան զՅովհաննէս. Բայց ոչ եթէ Յիսուս
3 ինքնին մկրտէր՝ այլ աշակերտքն նորա. Եթող
զՀրէաստան երկիր, եւ եկն միւսանգամ ՚ի Գա-
4 լիլեա: Եւ էր նմա անցանել ընդ Սամարիա:
5 Գայ նա ՚ի քաղաք մի Սամարացւոց՝ որում անուն
էր Սիւքար. մերձ ՚ի գեօղն զոր ետ Յակոբ որդ-
6 ւոյ իւրում Յովսեփայ: Եւ անդ էր աղբիւր մի
Յակոբայ. եւ Յիսուս վաստակեալ ՚ի ճանապար-
հէն, նստէր ՚ի վերայ աղբերն. եւ էր ժամ իբրեւ
7 վեցերորդ: Գայ կին մի ՚ի Սամարեայ հանել
8 ջուր. ասէ ցնա Յիսուս. Տո՛ւր ինձ ըմպել: Զի
աշակերտքն նորա երթեալ էին ՚ի քաղաք անդր՝
9 զի կերակուրս գնեսցեն: Ասէ ցնա կինն Սամարա-
ցի. Դու՝ որ Հրեայդ ես, զիա՞րդ յինէն ըմպել
խնդրես ՚ի կնոջէ Սամարացւոյ. զի ոչ երբէք խառ-
10 նակին Հրեայք ընդ Սամարացիս: Պատասխանի
ետ նմա Յիսուս եւ ասէ. Եթէ գիտէիր դու զպար-
գեւն Աստուծոյ, եւ ո՞վ է՝ որ ասէդ ցքեզ՝ թէ
Տուր ինձ ըմպել, դու արդեօք խնդրէիր ՚ի նմանէ՝
11 եւ տայր քեզ ջուր կենդանի: Ասէ ցնա կինն. Տէր՝
դու քանզի եւ դոյլ իսկ ոչ ունիս, եւ ջրհորս խոր
12 է. իսկ արդ՝ ուստի՞ ունիցիս զջուրն կենդանի: Մի
թէ դու մե՞ծ ինչ ոք իցես քան զհայրն մեր Յա-
կոբ՝ որ զայս ջրհոր ետ մեզ. եւ ինքն աստի արբ՝
13 եւ որդիք նորա, եւ խաշինք նորա: Պատասխանի ետ

նմա Յիսուս և ասէ. Ամենայն որ ըմպէ 'ի ջրոյ
յայդմանէ՝ միւսանգամ ծարաւէ. բայց որ ըմպէ
'ի ջրոյն՝ զոր ես տաց նմա, մի՛ ծարաւեսցէ յաւի-
14 տեան: Այլ ջուրն զոր ես տաց նմա, եղիցի նմա
աղբիւր ջրոյ բղխելոյ 'ի կեանսն յաւիտենականս:
15 Ասէ ցնա կինն. Տէր՝ տո՛ւր ինձ զջուրն զայն, զի
մի՛ ծարաւեցից, և մի՛ եկից այսր՝ հանել ջուր:
16 Ասէ ցնա Յիսուս. Ե՛րթ կոչեա՛ զայր քո՝ և ե՛կ
17 այսր: Պատասխանի ետ նմա կինն և ասէ. Չիք
իմ այր. ասէ ցնա Յիսուս. Բարւոք ասացեր՝ թէ
18 Չիք իմ այր. Զի հինգ այր փոխեալ է քո, և
զոր այժմ ունիս՝ չէ՛ քո այր. զայդ արդար ասա-
19 ցեր: Ասէ ցնա կինն. Տէր՝ թուի ինձ, թէ մար-
20 գարէ իցես դու: Հարքն մեր 'ի լերինս յայսմիկ
երկիր պագին. և դուք ասէք՝ եթէ յԵրուսաղէմ
և եթ է տեղի, ուր արժան իցէ երկիր պագանել:
21 Ասէ ցնա Յիսուս. Կին դու՝ հաւատա՛ ինձ, զի ե-
կեսցէ ժամանակ՝ յորժամ ո՛չ 'ի լերինս յայսմիկ
22 և ո՛չ յԵրուսաղէմ երկիր պագանիցեն Հօր: Դուք
երկիր պագանէք՝ որում ո՛չն գիտէք, մեք երկիր
պագանեմք որում գիտեմքն. զի փրկութիւն 'ի
23 Հրէից է: Այլ եկեսցէ ժամանակ՝ և այժմ իսկ
է, յորժամ ճշմարիտքն երկրպագուք երկիր պագա-
նիցեն Հօր հոգւով և ճշմարտութեամբ. քանզի և
Հայր այնպիսի երկրպագուս իւր խնդրէ:
24 Հոգի է Աստուած, և երկրպագուաց նորա՝ հոգ-
ւով և ճշմարտութեամբ պարտ է երկիր պագանել:
25 Ասէ ցնա կինն, Գիտեմ զի Մեսիայ գայ՝ անուան-
եալն Քրիստոս. յորժամ եկեսցէ, նա պատմեսցէ

26 մեզ զամենայն։ Ասէ ցնա Յիսուս. Ես եմ՝ որ խօ-
27 սիմս ընդ քեզ։ Եւ յայն բան եկին աշակերտքն
նորա, և զարմանային՝ զի ընդ կնոջն խօսէր. բայց
ոչ՛ոք ասաց ՚ի նոցանէ, թէ Զի՞նչ խնդրես, կամ
28 զի՞նչ խօսիս ընդ դմա։ Եթող կինն զսափորն իւր՝
29 և չոգաւ ՚ի քաղաքն, և ասէ ցմարդիկն։ Եկա՛յք
տեսէ՛ք զայր մի, որ ասաց ինձ զամենայն՝ որ ինչ
30 իմ գործեալ է. միթէ նա՞ իցէ Քրիստոսն։ Ելին
31 ՚ի քաղաքէն՝ և գային առ նա։ Եւ մինչչև եկեալ
էին նոքա, աղաչէին զնա աշակերտքն և ասէին.
32 Ռաբբի՝ հաց կեր։ Նա ասէ ցնոսա. Ես կերա-
33 կուր ունիմ ուտել, զոր դուքն ոչ գիտէք։ Ասէին
աշակերտքն ընդ միմեանս. Միթէ եբե՞ր ինչ ոք դմա
34 ուտել։ Ասէ ցնոսա Յիսուս. Իմ կերակուր այն է՝
զի արարից զկամս այնորիկ որ առաքեացն զիս, և
35 կատարեցից զգործն նորա։ Ո՞չ դուք ասէք՝ եթէ
Այլ ևս չորք ամիսք են, և հունձք գան. ահաւա-
սիկ ես ասեմ ձեզ. Ամբարձէք զաչս ձեր, և տե-
սէք զարտորայսն, զի սպիտակացեալ են՝ և ՚ի հունձս
36 հասեալ։ Եւ որ հնձէն՝ վարձս առնու, և ժողովէ
զպտուղ ՚ի կեանսն յաւիտենականս. զի որ սերմա-
37 նէն և որ հնձէ՝ հասարակ ցնծասցեն։ Յայսմ իսկ
է բանն ճշմարիտ, զի Այլ է որ սերմանէ, և այլ
38 է որ հնձէ։ Ես առաքեցի զձեզ հնձել՝ զոր ոչ դուք
վաստակեցէք. այլք վաստակեցին, և դուք ՚ի վաս-
39 տակս նոցա մտէք։ Եւ ՚ի քաղաքէն յայնմանէ
Սամարացւոց՝ բազումք հաւատացին ՚ի նա, վասն
բանի կնոջն վկայելոյ՝ եթէ ասաց ինձ զամենայն, որ
40 ինչ իմ գործեալ էր։ Իսկ իբրև եկին առ նա Սա-

մարացիքն , աղաչէին զնա լինել առ նոսա . և եղև
41 անդ աւուրս երկուս ։ Եւ ևս բազումք հաւատա-
42 ցին ՚ի նա վասն բանին նորա ։ Եւ ասէին ցկինն ,
թէ Ո՛չ այսուհետև վասն քո խօսիցդ հաւատամք ,
զի մեզէն իսկ լուաք ՚ի դմանէ . և գիտեմք եթէ դա՛
է ճշմարտիւ փրկիչ աշխարհաց ։
43 Եւ յետ երկուց աւուրց ել անտի և գնաց ՚ի
44 Գալիլեա ։ Զի ինքն իսկ Յիսուս վկայեաց՝ եթէ
45 Մարգարէ յիւրում գաւառի պատիւ ո՛չ ունի ։ Այլ
յորժամ եկն նա ՚ի Գալիլեա , ընկալան զնա Գա-
լիլեացիքն . զի տեսեալ ևս էր զամենայն նշանսն ,
զոր արար յԵրուսաղէմ . ՚ի տօնին . քանզի և նոքա
46 եկեալ էին ՚ի տօնն ։ Եկն դարձեալ ՚ի Կանա Գա-
լիլեացւոց՝ ուր արար զջուրն գինի ։ Եւ անդ էր թա-
գաւորազն մի , որոյ որդի նորա հիւանդ կայր ՚ի
47 Կափառնաում ։ Նա իբրև լուաւ , եթէ Յիսուս եկ-
եալ է ՚ի Հրէաստանէ ՚ի Գալիլեա , եկն առ նա՝
և աղաչէր զի իջցէ և բժշկեսցէ զորդի նորա . քան-
48 զի մերձ էր ՚ի մեռանել ։ Ասէ ցնա Յիսուս . Եթէ ոչ
նշանս ինչ և արուեստս տեսանէք՝ ո՛չ հաւատայք ։
49 Ասէ ցնա թագաւորազն . Տէ՛ր՝ էջ մինչչև մեռեալ
50 իցէ մանուկն իմ ։ Ասէ ցնա Յիսուս . Ե՛րթ՝ որդին
քո կենդանի է . և հաւատաց այրն բանին՝ զոր ասաց
51 նմա Յիսուս , և գնաց ։ Եւ մինչդեռ իջանէր , ընդ-
առաջ եղեն նմա ծառայքն նորա . աւետիս ետուն
52 և ասեն , թէ Մանուկն նորա կենդանի է ։ Հար-
ցանէր ցնոսա վասն ժամուն՝ յորում ապաքինեաց .
և ասեն ցնա . Երէկ յեօթներորդ ժամու եթող
53 զնա ջերմն ։ Գիտաց հայրն նորա՝ եթէ յայնմ ժա-

մու՝ յորում ասացն ցնա Յիսուս՝ թէ Որդին քո
կենդանի է. և հաւատաց ինքն և ամենայն տուն
54 իւր ։ Զայս դարձեալ երկրորդ նշան արար Յի-
սուս՝ եկեալ՚ի Հրէաստանէ ՚ի Գալիլեա ։

## ԳԼ. Ե

1 Յետ այսորիկ տօն էր Հրէից. և ել Յիսուս
2 յԵրուսաղէմ ։ Եւ էր յԵրուսաղէմ ՚ի Պրոբատի-
կէ աւազանին, որ կոչէր Եբրայեցերէն Բեթհեզ-
3 դա, հինգ սրահ ։ Յորս անկեալ դնէր բազմու-
թիւն յոյժ հիւանդաց՝ կուրաց, կաղաց, գօսացե-
4 լոց, որ ակն ունէին ջրոցն յուզելոյ ։ Եւ հրեշտակ
Տեառն իջանէր ըստ ժամանակի յաւազանն՝ և յու-
զէր զջուրսն. և որ նախ ՚ի շարժումն ջուրցն իջա-
նէր, բժշկէր՝ ո՛չ ունելով նշան հիւանդութեան ։
5 Եւ անդ էր այր մի, որոյ երեսուն և ութ ամ էր
6 ՚ի հիւանդութեան իւրում ։ Զնա իբրև ետես Յի-
սուս զի անկեալ դնէր, և գիտաց եթէ բազում
ժամանակք են այնուհետև, ասէ ցնա. Կամի՞ս
7 ողջ լինել ։ Պատասխանի ետ նմա հիւանդն. Տէր՝
ո՛չ զոք ունիմ, թէ յորժամ ջուրքն յուզիցին՝
արկցէ զիս յաւազանն. և մինչ ես դանդաղիմ,
8 այլ ոք քան զիս յառաջագոյն իջանէ ։ Ասէ ցնա
9 Յիսուս. Արի՛ ա՛ռ զմահիճս քո՝ և գնա՛ ։ Եւ ող-
ջացաւ այրն, և յարեաւ՝ ա՛ռ զմահիճս իւր՝ և
10 շրջէր. և էր շաբաթ յաւուրն յայնմիկ ։ Ասեն
Հրեայքն ցբժշկեալն. Շաբաթ է՝ և ո՛չ է ար-
11 ժան քեզ առնուլ զմահիճս քո ։ Պատասխանի

ետ նոցա և ասէ. Որ բժշկեացն զիս, նա ասաց
12 ցիս. Առ զմահիճս քո՝ և գնա՛։ Հարցին ցնա և ա-
սեն. Ո՞վ է այրն՝ որ ասաց ցքեզ, Առ զմահիճս քո՝
13 և շրջեա՛ց։ Եւ բժշկեալն ո՛չ գիտէր թէ ո՛վ իցէ.
քանզի Յիսուս խոյս ետ վասն ամբոխին ՚ի տեղւոջէ
14 անտի։ Յետ այսորիկ գտանէ զնա Յիսուս ՚ի տա-
ճարին. և ասէ ցնա. Ահաւադիկ ողջացար, մի՛ ևս
15 մեղանչեր՝ զի մի՛ չար ևս ինչ լինիցի քեզ։ Գնաց
այրն՝ և պատմեաց Հրէիցն, եթէ Յիսուս էր՝ որ
16 բժշկեացն զիս։ Եւ վասն այնորիկ հալածէին զՅի-
17 սուս Հրէայքն, զի զայն առնէր ՚ի շաբաթու։ Եւ
Յիսուս պատասխանի ետ նոցա. Հայր իմ մինչև
18 ցայժմ գործէ, և ես գործեմ։ Վասն այնորիկ առա-
ւել խնդրէին Հրէայքն սպանանել զնա. զի ո՛չ
միայն լուծանէր զշաբաթս, այլ և Հայր իւր կոչէր
զԱստուած, և հաւասար առնէր զանձն Աստուծոյ։
19 Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Ամէն
ամէն ասեմ ձեզ. ո՛չ կարէ Որդի* մարդոյ առնել
յանձնէ և ոչինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի
առնէ. զի զոր նայն առնէ, զնոյն և Որդին նմին
20 նման գործէ։ Զի Հայր սիրէ զՈրդի, և զամենայն
ինչ ցուցանէ նմա՝ զոր ինքն առնէ. և մեծամեծս
ևս քան զսոյնս ցուցանէ նմա զգործս, ընդ որ դուք
21 զարմանայք։ Զի որպէս Հայր յարուցանէ զմեռ-
եալս և կենդանի առնէ, նոյնպէս և Որդի՝ զորս կա-
22 մի կենդանի առնէ։ Եւ ո՛չ եթէ Հայր դատի զոք՝
23 այլ զամենայն դատաստան ետ Որդւոյ իւրոյ. Զի

---

* Ի Յոյնն չէ։

ամենեքեան պատուեսցեն զՈրդի՝ որպէս պատուեն
զՀայր ։ Որ ոչ պատուէ զՈրդին, ոչ պատուէ
24 զՀայր զառաքիչն նորա ։ Ամէն ամէն ասեմ ձեզ.
զի Որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ որ առաք֊
եացն զիս, ընդունի զկեանսն յաւիտենականս.
և ՚ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ՚ի մահ֊
25 ուանէ ՚ի կեանս ։ Ամէն ամէն ասեմ ձեզ. զի գայ
ժամանակ՝ և արդէն իսկ է, յորժամ մեռեալք
լսիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ. և որք լսիցենն՝
26 կեցցեն ։ Զի որպէս Հայր ունի կեանս յանձին
իւրում, նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յան֊
27 ձին իւրում. Եւ իշխանութիւն ետ նմա դատաս֊
28 տան առնել. և զի Որդի մարդոյ է՝ Ընդ այն զի՞
զարմանայք. զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամե֊
նեքին որ ՚ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի
29 նորա, Եւ ելեսցեն արտաքս. որոց զբարիս գործ֊
եալ իցէ՝ ՚ի յարութիւն կենաց. և որոց զչար ա֊
30 րարեալ՝ ՚ի յարութիւն դատաստանաց ։ Ո՛չ կա֊
րեմ ես յանձնէ առնել և ոչինչ. այլ որպէս լսեմ՝
դատեմ, և դատաստանն իմ արդար է. զի ոչ խնդ֊
րեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն
զիս ։

31 Եթէ ես վկայեմ վասն իմ, վկայութիւնն իմ չէ՛
32 ճշմարիտ ։ Այլ է՝ որ վկայէ վասն իմ. և դուք
գիտէք, եթէ ճշմարիտ է վկայութիւնն զոր վկայեաց
33 վասն իմ ։ Դուք առաքեցէք առ Յովհաննէս՝ և
34 վկայեաց ճշմարտութեանն ։ Այլ ես ոչ եթէ ՚ի
մարդկանէ առնում վկայութիւն. այլ զայս ասեմ՝ զի
35 դուք ապրեսջիք ։ Նա էր ճրագն՝ որ լուցեալ էր և

ծագէր. և դուք կամեցարուք ցնծալ առ ժամա-
36 նակ մի 'ի լոյս նորա: Այլ ես ունիմ վկայութիւն
մեծ ևս քան զՅովհաննու. զգործս՝ զորս ետ ցիս
Հայր՝ զի կատարեցից զնոսա. նոքին իսկ գործքն
զոր գործեմ, վկայեն վասն իմ, եթէ Հայր առաք-
37 եաց զիս. Եւ որ առաքեացն զիս Հայր՝ նա վը-
կայեաց վասն իմ: Դուք ո՛չ զձայն նորա երբէք
38 լուարուք. և ո՛չ զտեսիլ նորա տեսէք: Եւ ո՛չ զբան
նորա ունիք 'ի ձեզ բնակեալ. զի զոր նա առա-
39 քեաց՝ դուք նմա ո՛չ հաւատայք: Քննեցէք ըզ-
գիրս. զի դուք համարիք նոքօք ունել զկեանսն
յաւիտենականս. և նոքին իսկ են՝ որ վկայեն վասն
40 իմ*, որովք համարիք ունել կեանս". Եւ դուք ո՛չ
41 կամիք գալ առ իս՝ զի զկեանսն ունիցիք: Ես փառս
42 'ի մարդկանէ ո՛չ առնում: Այլ գիտեմ զձեզ՝ թէ
43 զսէրն Աստուծոյ ո՛չ ունիք յանձինս: Ես եկի յա-
նուն Հօր իմոյ՝ և ո՛չ ընդունիք զիս. եթէ այլ
44 ոք եկեսցէ յիւր անուն, զնա ընդունիցիք: Զի-
արդ կարէք դուք հաւատալ. զի փառս 'ի միմեանց
առնուք, և զփառս զառ 'ի միոյն Աստուծոյ ո՛չ խնդ-
45 րէք: Մի՛ համարիք՝ եթէ ես չարախօս ինչ իցեմ
զձէնջ առ Հօր. գո՛յ որ չարախօս կայ զձէնջ՝ Մով-
46 սէս, յոր դուքն յուսացեալ էք: Զի եթէ հա-
ւատայիք դուք Մովսեսի, հաւատայիք արդեօք և
47 ինձ. զի նա վասն իմ իսկ գրեաց: Զի եթէ նորա
գրոցն ո՛չ հաւատայք, զիա՛րդ իմոց բանիցս հաւա-
տայցէք:

---

* 'Ի Յոյնն չէ:

## ԳԼ. Զ

1 Յետ այսորիկ գնաց Յիսուս յայնկոյս ծովուն
2 Գալիլեացւոց Տիբերեայ. Եւ զհետ երթայր նորա
ժողովուրդ բազում. զի տեսանէին զնշանսն՝ զոր
3 առնէր ՚ի վերայ հիւանդաց: Ել ՚ի լեառն Յիսուս,
4 և անդ նստէր աշակերտօքն հանդերձ: Եւ էր մերձ
5 զատիկ տօնն հրէից: Բարձ ՚ի վեր զաչս իւր Յի-
սուս և ետես, զի ժողովուրդ բազում գայր առ նա.
ասէ ցՓիլիպպոս. Ուստի՞ գնեսցուք հաց՝ զի կերի-
6 ցեն դոքա: Զայս ասէր փորձելով զնա. այլ ինքն
7 գիտէր զինչ առնելոցն էր: Պատասխանի ետ նմա
Փիլիպպոս. Երկերիւր դահեկանի հաց չէ՛ դոցա
բաւական, թէպէտ և իւրաքանչիւրոք սակաւ ինչ
8 առնուցու: Ասէ ցնա մի յաշակերտացն նորա,
9 Անդրէաս՝ եղբայր Սիմովնի վիմի. Է՛ աստ պա-
տանեակ մի, որ ունի հինգ նկանակ գարեղէն՝ և
երկուս ձկունս. այլ այն զի՞նչ է առ այդչափ մար-
10 դիկ: Ասէ Յիսուս. Բազմեցուցէ՛ք զմարդիկդ. և
էր խոտ յոյժ ՚ի տեղւոջն. և բազմեցան մարդիկն
11 թուով իբրև հինգ հազար: Եւ առ զհացսն Յի-
սուս, և գոհացաւ՝ և բաշխեաց բազմականացն. նոյն-
12 պէս և ՚ի ձկանցն որչափ և կամեցան: Եւ իբրև
յագեցան, ասէ ցաշակերտսն. Ժողովեցէ՛ք զնշ-
13 խարեալ կոտորսդ՝ զի մի՛ ինչ կորիցէ: Ժողովե-
ցին, և լցին երկոտասան սակառի զկոտորոցն ՚ի
հինգ գարեղէն նկանակէ անտի, որ յաւելաւ ՚ի կե-
14 րողացն: Իսկ մարդիկն՝ իբրև տեսին զնշանսն զոր
արար՝ ասէին, եթէ Սա է ճշմարիտ մարգարէն,
որ գալոց էր յաշխարհ:

15 Յիսուս իբրև գիտաց եթէ գալոց են յափշտակել
զնա, զի արասցեն զնա թագաւոր, գնաց դարձեալ
16 'ի լեառն միայն: Եւ իբրև երեկոյ եղև, իջին ա-
17 շակերտքն նորա 'ի ծովեզրն: Եւ մտեալ 'ի նաւ՝
գային յայնկոյս ծովուն 'ի Կափառնաում. և իբ-
րև նսեմացաւ, և չև ևս եկեալ էր առ նոսա
18 Յիսուս: Եւ ծովն 'ի սաստիկ հողմոյ շնչելոյ յուզէր:
19 Եւ վարեալ իբրև ասպարէզս քսան և հինգ կամ
երեսուն, տեսանէին զՅիսուս՝ զի գնայր 'ի վե-
րայ ծովուն՝ և մերձ էր 'ի նաւն, զարհուրեցան
20 յոյժ: Նա ասէ ցնոսա. Ե՛ս եմ՝ մի՛ երկնչիք:
21 Եւ կամէին ընդունել զնա 'ի նաւն. և վաղվաղակի
եհաս նաւն յերկիրն՝ յոր երթային:
22 'Ի վաղիւ անդր ժողովուրդն՝ որ կայր յայնկոյս
ծովուն, տեսանէր թէ այլ նաւ ոչ գոյր անդ բայց
միայն 'ի միոջն, յոր՝ մտին աշակերտքն Յիսուսի.
և զի չէր մտեալ Յիսուս ընդ աշակերտսն իւր 'ի
23 նաւն. բայց միայն աշակերտքն նորա գնացին: Իբ-
րև այլ նաւք գային 'ի Տիբերեայ մօտ յայն տեղին՝
24 ուր զհացն կերան: Իսկ իբրև ետես ժողովուրդն ե-
թէ Յիսուս ոչ է անդ՝ և ոչ աշակերտքն նորա,
առին նոքա զնաւսն, և եկին 'ի Կափառնաում խնդ-
25 րել զՅիսուս: Եւ իբրև գտին զնա յայնկոյս ծո-
26 վուն, ասեն ցնա. Ռաբբի՝ ե՞րբ եկիր այսր: Պա-
տասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. Ամէն ամէն
ասեմ ձեզ. խնդրէք զիս, իբր ո՛չ եթէ զի նշանս
ինչ տեսէք, այլ զի կերայք 'ի հացէ անտի՝ և յա-
27 գեցարուք: Երթայք գործեցէք՝ մի՛ զկորստական
կերակուրն, այլ զկերակուրն, որ մնայ 'ի կեանս

յաւիտենականս, զոր Որդին մարդոյ տացէ ձեզ.
28 քանզի զնա Հայր կնքեաց Աստուած: Ասեն ցնա.
Զի՞նչ առնիցեմք՝ զի զգործն Աստուծոյ գործես-
29 ցուք: Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա.
Այս է գործն Աստուծոյ, զի հաւատայցէք յայն՝
30 որ առաքեացն զիս: Ասեն ցնա. Զի՞նչ նշան առ-
նիցես՝ զի տեսցուք և հաւատասցուք, զի՞նչ գոր-
31 ծիցես: Հարքն մեր կերան զմանանայն յանապատի
անդ՝ որպէս և գրեալ է. Հաց յերկնից ետ նոցա
32 ուտել: Ասէ ցնոսա Յիսուս. Ամէն ամէն ասեմ
ձեզ. եթէ ոչ Մովսէս ետ ձեզ զհացն յերկնից,
այլ Հայրն իմ տայ ձեզ զհացն յերկնից զճշմա-
33 րիտ: Զի հաց յԱստուծոյ է, որ իջանէ յերկնից՝
34 և կեանս տայ աշխարհի: Ասեն ցնա. Տէ՛ր՝ յամե-
35 նայն ժամ տո՛ւր մեզ զհացն զայն: Ասէ ցնոսա
Յիսուս. Ես եմ հացն կենաց. որ գայ առ իս ոչ
քաղցիցէ, և որ հաւատայ յիս՝ ոչ երբէք ծարա-
36 ւեսցի: Այլ ասացի ձեզ՝ թէ տեսէք զիս, և ոչ
37 հաւատայք: Զամենայն՝ զոր տայ ինձ Հայր, առ
իս եկեսցէ. և որ գայ առ իս, ոչ հանից արտաքս:
38 Զի իջի ես յերկնից, ոչ զի զկամս իմ արարից,
այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս:
39 Այս են կամք Հօր իմոյ, որ առաքեացն զիս.
զի զամենայն զոր ետ ցիս Հայր՝ ոչ կորուսից 'ի նմա-
40 նէ, այլ յարուցից զնա յաւուրն յետնում: Այս են
կամք Հօր իմոյ. զի ամենայն որ տեսանիցէ զՈրդի՝
և հաւատայցէ 'ի նա, ընկալցի զկեանսն յաւիտե-
նականս. և ես յարուցից զնա յաւուրն յետնում:
41 Տրտնջէին զնմանէ Հրէայքն, զի ասաց թէ Ես

42 եմ հացն իջեալ յերկնից, Եւ ասէին. ո՞չ սա է
Յիսուս որդին Յովսեփու, զորոյ մեք գիտեմք ըզ-
Հայրն և զմայր. իսկ արդ՝ զիա՞րդ ասէ՝ թէ Ես
43 յերկնից իջի: Պատասխանի ետ Յիսուս, և ասէ
44 ցնոսա. Մի՛ քրթմնջէք ընդ միմեանս: Ոչ ո՛ք կարէ
գալ առ իս, եթէ ոչ Հայրն՝ որ զիս առաքեաց՝
ձգեսցէ զնա. և ես յարուցից զնա յաւուրն յետ-
45 նում: Գրեալ է 'ի մարգարէս, Եւ եղիցին ամե-
նեքեան ուսեալք յԱստուծոյ. ամենայն որ լսէ 'ի
46 Հօրէ՝ և ուսանի, գայ առ իս: Իբրև ո՛չ եթէ ըզ-
Հայր ուրուք տեսեալ իցէ, եթէ ո՛չ՝ որ էն յԱս-
47 տուծոյ, նա ետես զՀայր: Ամէն ամէն ա-
սեմ ձեզ. զի Որ հաւատայ յիս՝ ընդունի ըզ-
48 կեանսն յաւիտենականս: Ես եմ հացն կենաց:
49 Հարքն ձեր կերան զմանանայն յանապատին՝ և մե-
50 ռան: Այս է հացն, որ յերկնից իջեալ է. զի որ ու-
51 տիցէ ոք 'ի սմանէ՝ մի՛ մեռանիցի. Ես եմ հացն
52 կենդանի, որ յերկնից իջեալ. Եթէ ոք ուտիցէ 'ի
հացէ յայսմանէ՝ կեցցէ 'ի յաւիտեան. և հացն զոր
ես տաց՝ մարմին իմ է, զոր ես տաց վասն կենաց
53 աշխարհի: Մարտնչէին ընդ միմեանս Հրէայքն և
ասէին. Զիա՞րդ կարէ սա տալ մեզ զմարմինն իւր
54 յուտել: Ասէ ցնոսա Յիսուս. Ամէն ամէն ասեմ
ձեզ. Եթէ ո՛չ կերիջիք զմարմին Որդւոյ մարդոյ՝
և արբջիք զարիւն Նորա, ո՛չ ունիք կեանս յան-
55 ձինս: Որ ուտէ զմարմին իմ՝ և ըմպէ զարիւն իմ,
ունի զկեանսն յաւիտենականս. և ես յարուցից
56 զնա յաւուրն յետնում: Զի մարմին իմ ճշմա-
րիտ կերակուր է, և արիւն իմ ճշմարիտ ըմպելի է:

57 Որ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, յիս
58 բնակեսցէ, և ես 'ի նմա: Որպէս առաքեաց զիս
կենդանին Հայր, և ես կենդանի եմ վասն Հօր.
59 և որ ուտէն զիս, և նա կեցցէ վասն իմ: Այս է
Հացն' որ յերկնից իջեալ. ոչ որպէս կերան Հարքն
ձեր զմանանայն' և մեռան. որ ուտէ զՀացս զայս'
60 կեցցէ յաւիտեան: Զայս ասաց 'ի ժողովրդեանն'
61 յուսուցանելն 'ի Կափառնաում: Եւ բազումք յա-
շակերտացն իբրև լուան' ասեն. Խիստ է բանդ
62 այդ, ո՞ կարէ լսել դմա: Իբրև գիտաց Յիսուս
յանձն իւր' եթէ տրտնջեն վասն այնորիկ աշա-
կերտքն նորա, ասէ ցնոսա. Այդ գայթակղեցուցանէ՞
63 զձեզ: Իսկ արդ' եթէ տեսանիցէք զՈրդի մարդոյ,
64 զի ելանիցէ ուր էր զառաջինն: Հոգին է կենդա-
նարար, մարմին' ինչ ոչ օգնէ. զբանն զոր ես խօ-
65 սեցայ ընդ ձեզ' Հոգի է և կեանք: Այլ են ոմանք
'ի ձէնջ' որ ոչ Հաւատան. քանզի գիտէր Յիսուս
'ի սկզբանէ, ով են այնոքիկ' որ ոչն Հաւատան,
66 և ով է այն' որ մատնելոցն է զնա: Եւ ասէր.
Վասն այնորիկ ասացի ձեզ' թէ ոչ ոք կարէ գալ
առ իս, եթէ ոչ իցէ տուեալ նմա 'ի Հօրէ իմմէ:
67 Յայսմանէ բազումք յաշակերտացն նորա չոգան
68 յետս, և ոչ ևս շրջէին ընդ նմա: Ասէ Յիսուս
ցերկոտասան աշակերտսն. Միթէ և դուք կամիք
69 երթալ: Պատասխանի ետ նմա Սիմոն Պետրոս.
Տէր' առ ո՞վ երթիցուք. բանս կենաց յաւիտե-
70 նականաց ունիս: Եւ մեք Հաւատացաք և ծանեաք'
71 եթէ դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ: Պա-
տասխանի ետ նոցա Յիսուս. Ո՞չ ես զձեզ զերկո-

տասանսդ ընտրեցի , և միդ 'ի ձէնջ սատանայ է :
72 Եւ ասէր զՍիմովնեան Յուդայէ Սկարիովտացւոյ .
զի նա իսկ մատնելոց էր զնա . և մի էր յերկո-
տասանիցն :

## ԳԼ. Է

1 Եւ յետ այսորիկ շրջէր Յիսուս 'ի Գալիլեա .
քանզի ո՛չ կամէր 'ի Հրէաստանի շրջել , զի խնդ-
2 րէին զնա Հրէայքն սպանանել : Եւ էր մերձ տօնն
3 Հրէից տաղաւարահարաց : Ասեն ցնա եղբարքն
նորա . Գնա՛ աստի և երթ 'ի Հրէաստան , զի և
աշակերտքն քո տեսցեն զգործսդ քո՝ զոր գործես :
4 Զի ոչոք է՝ որ 'ի ծածուկ ինչ գործէ՝ և խնդրէ
ինքն համարձակ լինել . եթէ զայդ գործես , յայտ-
5 նեա՛ զանձն քո աշխարհի : Քանզի և եղբարքն
6 իսկ չէին հաւատացեալ 'ի նա : Ասէ ցնոսա Յի-
սուս . Ժամանակ իմ չև՛ է հասեալ . բայց ձեր
7 ժամանակ յամենայն ժամու պատրաստ է : Ո՛չ
կարէ աշխարհս ատել զձեզ . բայց զիս ատեայ .
զի ես վկայեմ վասն նորա՝ եթէ գործքն իւր չա-
8 րութեան են : Դուք երթա՛յք 'ի տօնս յայսն , ես
ո՛չ երթամ 'ի տօնն յայսն . զի իմ ժամանակ չև՛ է
9 լցեալ : Զայս իբրև ասաց՝ ինքն մնաց անդէն 'ի
10 Գալիլեա : Իբրև ելին եղբարքն նորա , ապա և
ինքն ել 'ի տօնն . ո՛չ յայտնի , այլ իբրև 'ի ծա-
11 ծուկ : Եւ Հրէայքն խնդրէին զնա 'ի տօնի անդ՝
12 և ասէին , Ո՞ւր իցէ նա : Եւ քրթմնջիւն էր զնը-
մանէ 'ի ժողովուրդսն . կէսքն ասէին՝ թէ Բարւոք

է. այլքն ասէին, Ո՛չ, այլ մոլորեցուցանէ զժո-
13 ղովուրդն։ Եւ ոչ ո՛ք համարձակ խօսէր զնմանէ՝
վասն երկիւղին Հրէից։

14 Իբրև տօնն ընդմիջեցաւ, ել Յիսուս ՚ի տա-
15 ճարն՝ և ուսուցանէր։ Զարմանային Հրէայքն և
ասէին. Զիա՞րդ զգիրս գիտէ սա, զի ուսեալ բը-
16 նաւ չէ՛ք։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ.
Իմ վարդապետութիւնս չէ՛ իմ, այլ այնորիկ՝ որ
17 առաքեացն զիս։ Եթէ ոք կամի զկամս նորա առ-
նել՝ գիտասցէ վասն վարդապետութեանս, յԱս-
տուծոյ իցէ արդեօք՝ եթէ ես ինչ յանձնէ իմմէ
18 խօսիմ։ Որ յանձնէ իւրմէ խօսի՝ զփառս անձին
իւրում խնդրէ. իսկ որ խնդրէ զփառս այնորիկ որ
առաքեացն զնա՝ նա ճշմարիտ է, և անիրաւու-
19 թիւն ո՛չ գոյ ՚ի նմա։ Ո՞չ Մովսէս ետ ձեզ զօ-
20 րէնս, և ոչ ոք ՚ի ձէնջ առնէ զօրէնսն։ Զի՞ խնդ-
րէք զիս սպանանել. պատասխանի ետ ժողովուր-
դըն և ասէ. Դև գոյ ՚ի քեզ. ո՞վ խնդրէ զքեզ
21 սպանանել։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ա-
սէ. Գործ մի գործեցի, և ամենեքին զարմացեալ
22 էք։ Վասն այնորիկ Մովսէս ետ ձեզ թլփատու-
թիւն. զի ո՛չ եթէ ՚ի Մովսիսէ էր, այլ ՚ի Հարց
23 անտի. և ՚ի շաբաթու թլփատէք զմարդ։ Իսկ
արդ՝ եթէ թլփատութիւն առնու մարդ ՚ի շաբա-
թու, զի մի՛ օրէնքն Մովսիսի լուծցին. ընդ իս
ցասուցեալ էք՝ զի ողջոյն իսկ մարդ բժշկեցի ՚ի
շաբաթու։

24 Մի՛ ըստ աչս դատէք, այլ ուղիղ դատաստան
25 արարէ՛ք։ Ասէին ոմանք յԵրուսաղեմացւոց ան-

26 տի. Ո՞չ նա է սա՝ զոր խնդրէին սպանանել. Եւ
ահաւասիկ յայտնապէս խօսի, եւ չասեն ինչ ընդ դմա.
գուցէ արդեօք եւ իշխանքն գիտացին՝ թէ սա իցէ
27 Քրիստոսն։ Այլ զսա գիտեմք ուստի է. իսկ
Քրիստոսն յորժամ գայցէ, ոչոք գիտէ ուստի է։
28 Աղաղակեաց Յիսուս ՚ի տաճարին, ուսուցանէր՝
եւ ասէր. Եւ զիս գիտէք, եւ ուստի եմ գիտէք.
եւ յանձնէ իմմէ ոչ եմ եկեալ, այլ է ճշմարիտ
29 որ առաքեացն զիս՝ զոր դուքն ոչ գիտէք։ Ես
գիտեմ զնա, զի ՚ի նմանէ իսկ եմ, եւ նա առա-
30 քեաց զիս։ Խնդրէին զնա ունել՝ * եւ ել ՚ի ձեռաց
նոցա." եւ ոչ՛ոք արկ ՚ի նա ձեռն. զի չեւ՛ էր հաս-
31 եալ ժամ նորա։ Եւ բազումք ՚ի ժողովրդենէն
հաւատացին ՚ի նա, եւ ասէին. Քրիստոսն յոր-
ժամ գայցէ՝ միթէ աւելի՞ ինչ նշանս առնիցէ՝ քան
32 զոր սայս առնէ։ Եւ լուան փարիսեցիքն զտրտունջ
ժողովրդեանն զնմանէ. եւ առաքեցին քահանայա-
պետքն եւ փարիսեցիք սպասաւորս՝ զի կալցին զնա։
33 Ասէ Յիսուս. փոքր մի եւս ժամանակ ընդ ձեզ
եմ. եւ երթամ առ այն՝ որ առաքեացն զիս։
34 Խնդրիցէք զիս՝ եւ ոչ գտանիցէք. եւ ուր եսն եր-
35 թամ, դուք ոչ կարէք գալ։ Ասեն Հրեայքն
ընդ միմեանս. Իսկ յո՞ երթայցէ դա՝ զի մեք ոչ
գտանիցեմք զդա. միթէ ՚ի սփիւռս հեթանոսաց
36 երթայցէ՝ եւ ուսուցանիցէ զհեթանոսս։ Զի՞նչ է
բանն այն՝ զոր ասաց. Խնդրիցէք զիս՝ եւ ոչ գտա-
նիցէք. եւ ուր եսն երթամ, դուք ոչ կարէք գալ։

* ՚Ի Յոյնն չիք։

37 Ի վերջնում աւուր մեծի տօնին կայր Յիսուս՝
աղաղակէր և ասէր . Եթէ ոք ծարաւի իցէ՝ ե-
38 կեսցէ առ իս , և արբցէ : Որ հաւատայ յիս՝ որ-
պէս և ասեն գիրք , Գետք յորովայնէ նորա բղ-
39 խեսցեն ջրոց կենդանութեան : Զայս ասէր վասն
Հոգւոյն՝ զոր ընդունելոց էին որ հաւատային 'ի
նա . զի չև' էր Հոգի , քանզի Յիսուս չև' էր փա-
40 ռաւորեալ : Ոմանք 'ի ժողովրդենէն իբրև լուէին
զբանս զայս , ասէին . Սա՛ է ճշմարիտ մարգարէն :
41 Այլքն ասէին՝ Սա՛ է Քրիստոսն . իսկ կէսքն ասէ-
ին՝ Միթէ 'ի Գալիլեէ՞ գալոց իցէ Քրիստոսն :
42 Ո՞չ գիրք ասեն , եթէ 'ի զաւակէ Դաւթի , և 'ի
Բեթղեհեմ գեղջէ՝ ուր Դաւիթն էր , գալոց է
43 Քրիստոս : Եւ եղև հերձուած 'ի մէջ ժողովրդ-
44 եանն վասն նորա : Եւ ոմանք 'ի նոցանէ կամե-
ցան ունել զնա . այլ ոչո՛ք մխեաց 'ի նա ձեռս :
45 Եւ եկին անդրէն սպասաւորքն առ քահանայա-
պետսն և փարիսեցիս , և ասեն սոքա ցնոսա . Ըն-
46 դէ՞ր ո՛չ ածէք զնա այսր : Պատասխանի ետուն
սպասաւորքն՝ և ասեն . Ո՛չ երբէք այնպէս խօսե-
47 ցաւ մարդ՝ որպէս այրն այն : Պատասխանի ետուն
փարիսեցիքն՝ և ասեն . Միթէ և դո՞ւք մոլորեցա-
48 րուք : Միթէ ոք յիշխանացն հաւատաց 'ի նա՝
49 կամ 'ի փարիսեցւոց . Այլ այն խաժամուժ ամբոխ ,
50 որ ո՛չ գիտէ զօրէնս , և նզովեալ են : Ասէ Նի-
կոդեմոս ցնոսա՝ որ եկեալն էր առ նա գիշերի յա-
51 ռաջագոյն՝ և մի էր 'ի նոցանէ : Միթէ օրէնքն
մեր դատի՞ն զմարդ՝ եթէ ոչ լսեն ինչ նախ 'ի նմա-
52 նէ , կամ գիտեն զի՞նչ գործէ : Պատասխանի ե-

տուն նմա և ասեն . Միթէ և դու ես 'ի Գալիլեէ՞
իցես . քննեա և տես ,՝ զի մարգարէ 'ի Գալիլեէ
53 ոչ յառնէ ։ Եւ գնացին իւրաքանչիւրոք 'ի տեղի
իւր ։

## ԳԼ. Ը

1 Իսկ Յիսուս գնաց 'ի լեառն Ձիթենեաց .
2 Եւ ընդ առաւօտն դարձեալ եկն 'ի տաճարն . և
գայր առ նա ամենայն ժողովուրդն . և նստեալ ու-
3 սուցանէր զնոսա ։ Ածին առ նա դպիրքն և քահա-
նայապետքն և փարիսեցիքն՝ կին մի ըմբռնեալ 'ի
4 շնութեան . և կացուցեալ զնա առաջի , Ասեն ցնա .
Վարդապետ , կինս այս ըմբռնեալ՝ ինքն յայտնա-
5 պէս շնացեալ է ։ Եւ յօրէնս Մովսէս մեզ պատ-
ուիրեաց զայսպիսիս քարկոծել . արդ դու զի՞նչ
6 ասես վասն դորա ։ Զայս ասէին փորձելով զնա՝
զի ունիցին ամբաստանութիւն զնմանէ . իսկ Յի-
սուս 'ի խոնարհ նայելով գրէր մատամբն յերկրի ։
7 Իսկ իբրև ստիպեցին հարցանելով ցնա , հայեցեալ
'ի վեր՝ ասէ ցնոսա . Անմեղն 'ի ձէնջ՝ նախ նա ըն-
8 կեսցէ քար 'ի վերայ դորա ։ Եւ դարձեալ 'ի խո-
9 նարհ նայելով՝ գրէր յերկրի ։ Եւ լուեալ ելանէին
մի ըստ միոջէ՝ սկսեալ յառաջնոցն մինչև 'ի վեր-
ջինս . և մնաց միայն Յիսուս , և կինն կայր առա-
10 ջի նորա ։ Պատասխանի ետ Յիսուս՝ և ասէ ցնա .
Կի՛ն դու՝ ո՞ւր են , ոչ ոք զքեզ դատապարտեաց ։
11 Եւ ասէ . Ո՛չ Տէր . և ասէ Յիսուս . Եւ ոչ ես դա-
տապարտեմ զքեզ , երթ՝ յայսմ հետէ մի մեղանչեր ։

12 Դարձեալ խօսեցաւ ընդ նոսա Յիսուս, և ասէ.
Ես եմ լոյս աշխարհի. որ գայ զկնի իմ, ընդ
խաւար մի՛ գնասցէ. այլ ընկալցի զլոյսն կենաց։
13 Ասեն ցնա փարիսեցիքն. դու վասն անձին քո վը-
14 կայես՝ և վկայութիւն քո չէ՛ ճշմարիտ։ Պատասխա-
նի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Թէպէտ և ես վկայեմ
վասն անձին իմոյ՝ վկայութիւն իմ ճշմարիտ է. զի
գիտեմ ուստի՝ եկի և յո՛ երթամ. բայց դուք ո՛չ
15 գիտէք ուստի գամ՝ կամ յո՛ երթամ։ Դուք ըստ
16 մարմնոյ դատիք. ես ո՛չ դատիմ և ո՛չ զոք. Թէ-
պէտ և դատիմ ես զոք՝ դատաստանն իմ ճշմարիտ
է. զի չեմ միայն, այլ ես՝ և որ առաքեացն զիս
17 Հայր։ Եւ յօրէնսն իսկ ձեր գրեալ է՝ թէ Երկուց
18 մարդոց վկայութիւն ճշմարիտ է։ Ես եմ որ վկա-
յեմ վասն իմ, և վկայէ վասն իմ՝ որ առաքեացն
19 զիս Հայր։ Ասէին ցնա. Ո՞ւր է Հայր քո. պա-
տասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա, Ո՛չ զիս գի-
տէք՝ և ո՛չ զՀայրն իմ. եթէ զիս գիտէիք, և ըզ-
20 Հայրն իմ թերևս գիտէիք։ Զայս բանս խօսեցաւ
՚ի տան գանձին՝ յորժամ ուսուցանէր ՚ի տաճա-
րի անդ. և ոչոք կալաւ զնա, զի չև՛ ևս հասեալ
էր ժամ նորա։

21 Ասէ դարձեալ ցնոսա Յիսուս. Ես երթամ, և
խնդրիցէք զիս, և ՚ի մեղս ձեր մեռանիցիք. զի ուր
22 եսն երթամ, դուք ո՛չ կարէք գալ։ Ասէին Հը-
րէայքն. Միթէ զիւրովի՛ն երթայցէ, զի ասէ՝ թէ
23 Ուր եսն երթամ՝ դուք ո՛չ կարէք գալ։ Եւ ասէ
ցնոսա. Դուք ՚ի ներքուստ աստի էք, և ես ՚ի վե-
րուստ անտի եմ. դուք յաշխարհէ աստի էք, ես

24 չեմ յայսմ աշխարհէ։ Բայց ասացի ձեզ՝ թէ ՚ի
մեղս ձեր մեռանիցիք. զի թէ ոչ հաւատայցէք թէ
25 ես եմ, մեռանիցիք ՚ի մեղս ձեր։ Ասեն ցնա. Դու
ո՞վ ես. ասէ ցնոսա Յիսուս. Նախ զի և խօսիմս
26 իսկ ընդ ձեզ։ Բազում ինչ ունիմ վասն ձեր խօ-
սել և դատել. այլ որ առաքեացն զիս՝ ճշմարիտ
է. և ես զոր լուայ ՚ի նմանէ, զայն խօսիմ յաշ-
27 խարհի։ Եւ ոչ գիտացին՝ թէ զՀօրէ ասէր ցնո-
28 սա։ Ասէ ցնոսա Յիսուս. Յորժամ բարձրացու-
ցանիցէք զՈրդի մարդոյ՝ յայնժամ գիտասջի՛ք թէ
ես եմ. և յանձնէ իմմէ ինչ ոչ առնեմ, այլ որ-
29 պէս ուսոյց զիս Հայրն իմ, զայն խօսիմ։ Եւ որ
առաքեացն զիս՝ ընդ իս է. ոչ եթող զիս միայն,
30 զի ես զհաճոյս նորա առնեմ հանապազ։ Իբրև
զայս խօսեցաւ՝ բազումք հաւատացին ՚ի նա։
31 Եւ ասէր Յիսուս առ Հրեայսն հաւատացեալս.
Եթէ դուք կացջիք ՚ի բանի իմում, ճշմարիտ ա-
32 շակերտք իմ էք. Եւ ծանիջիք զճշմարտութիւնն,
33 և ճշմարտութիւնն ազատեսցէ զձեզ։ Պատասխա-
նի ետուն նմա և ասեն. Զաւակ Աբրահամու եմք,
և ոչ ումեք երբէք ծառայեցաք. զիա՞րդ ասես թէ
34 Ազատք լինիջիք։ Պատասխանի ետ նոցա Յիսուս.
Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ Ամենայն որ առնէ
35 զմեղս, ծառայ է մեղաց։ Եւ ծառայն ոչ յաւիտ-
եան կայ ՚ի տան, իսկ որդին յաւիտեան կայ։
36 Իսկ արդ՝ եթէ Որդին զձեզ ազատեցուսցէ, ճշմա-
37 րիտ ազատք լինիջիք։ Գիտեմ զի զաւակ Աբրա-
համու էք. այլ խնդրէք սպանանել զիս, զի բա-
38 նին իմոյ չե՛ք տեղի ՚ի ձեզ։ Ես զոր տեսի առ

դորա վնաս է, և ոչ հօր և մօր իւրոյ· այլ զի
4 յայտնի լիցին գործքն Աստուծոյ ՚ի դմա։ Եւ ինձ
պարտ է գործել զգործս այնորիկ՝ որ առաքեացն
զիս, մինչ աւուր կայ· գայ գիշեր՝ յորժամ ոչոք կա-
5 րէ գործել։ Մինչդեռ յաշխարհի եմ, լոյս եմ
6 աշխարհի։ Զայս իբրև ասաց, եթուք ՚ի գետին՝
և արար կաւ ՚ի թքոյն, և ծեփեաց զկաւն ՚ի վե-
7 րայ աչաց կուրին, Եւ ասէ ցնա· Ե՛րթ՝ լուա՛ յա-
ւազանին Սելովմայ· որ թարգմանի Առաքեալ·
8 չոգաւ լուացաւ, եկն, և տեսանէր։ Իսկ դրացիքն՝
և որոց տեսեալն էր զնա յառաջագոյն՝ թէ մուրա-
ցիկ էր, ասէին· Ո՞չ սա էր՝ որ նստէրն և մու-
9 րանայր· կէսքն ասէին· Նա է։ Այլքն ասէին·
Ո՛չ՝ այլ նման է նմա· և ինքն ասէր՝ թէ Ես
10 եմ։ Ասեն ցնա· Իսկ զիա՞րդ բացան աչք քո։
11 Նա ետ պատասխանի· Այր մի՝ որում Յիսուսն
ասեն, կաւ արար՝ և ծեփեաց զաչս իմ, և ասէ
ցիս· Ե՛րթ ՚ի Սելովամ և լուա՛· չոգայ, լուացայ՝
12 և տեսանեմ։ Ասեն ցնա· Ո՞ւր է նա· ասէ ցնո-
13 սա· Ո՛չ գիտեմ։ Ածին առ փարիսեցիսն զնա,
14 որ երբեմն կոյրն էր։ Եւ էր շաբաթ՝ յորժամ ըզ-
15 կաւն արար Յիսուս· և եբաց զաչս կուրին։ Դարձ-
եալ հարցանէին զնա փարիսեցիքն, թէ զիա՞րդ
տեսանես· և նա ասէ ցնոսա· Կաւ եդ ՚ի վերայ
16 աչաց իմոց, և լուացայ՝ և տեսանեմ։ Ասեն ո-
մանք ՚ի փարիսեցւոցն· Ո՛չ է այրն այն յԱստու-
ծոյ, զի զշաբաթս ո՛չ պահէ· կէսքն ասէին·
Իսկ զիա՞րդ կարէ մարդ մեղաւոր այսպիսի նշանս
17 առնել· և էին հերձուածք ՚ի մէջ նոցա։ Ասեն

դարձեալ ցկոյրն. Դու զի՞ ասես վասն նորա՝ զի
եբաց զաչս քո. և նա ասէ՝ թէ Մարգարէ է։
18 Եւ ո՛չ հաւատային Հրէայքն զնմանէ՝ թէ կոյր էր՝
19 և բացաւ. մինչև կոչեցին զծնօղս բացելոյն. Հար-
ցին ցնոսա և ասեն՝ Սա՞ է որդին ձեր, զորմէ դուքն
20 ասէիք, եթէ կոյր ծնաւ. արդ զիա՞րդ տեսանէ։ Պա-
տասխանի ետուն նոցա ծնօղքն նորա և ասեն. Գի-
21 տեմք զի սա է որդին մեր, և զի կոյր ծնաւ. Բայց
զիա՛րդ այժմ տեսանէ՝ ո՛չ գիտեմք. կամ թէ ո՞
եբաց զաչս դորա՝ մեք ո՛չ գիտեմք. ցդա իսկ հար-
ցէ՛ք, ինքնին 'ի չափ հասեալ է, ինքն իսկ խօսեսցի
22 վասն իւր։ Զայս ասացին ծնօղքն նորա. զի եր-
կընչէին 'ի Հրէիցն. քանզի ուխտ եդեալ էր Հրէ-
ից, եթէ ոք խոստովանեսցի զնա Քրիստոս՝ 'ի բաց
23 կացցէ 'ի ժողովրդենէն։ Վասն այնորիկ ասացին
ծնօղքն նորա, թէ Ինքնին 'ի չափ հասեալ է,
24 ցնա իսկ հարցէ՛ք։ Դարձեալ կրկին անգամ կոչե-
ցին զայրն՝ որ կոյրն էր, և ասեն ցնա. Տո՛ւր
փառս Աստուծոյ, մեք գիտեմք զի այրն այն մեղա-
25 ւոր է։ Եւ նա ասէ. Թէ մեղաւոր իցէ՝ ես ո՛չ
գիտեմ. բայց զայս գիտեմ, զի կոյր էի՝ և ա՛րդ
26 տեսանեմ։ Դարձեալ ասեն ցնա. Զի՞նչ ա-
27 րար քեզ. զիա՞րդ եբաց զաչս քո։ Պատասխանի
ետ նոցա. Այժմ ասացի ձեզ՝ և ո՛չ լուարուք. զի՞
կամիք միւսանգամ լսել. միթէ և դո՞ւք կամիք ա-
28 շակերտել նմա։ Նոքա հայհոյէին զնա՝ և ասէին.
Դո՛ւ լիջիր նորա աշակերտ. մեք Մովսէսի աշակերտք
29 եմք։ Մեք գիտեմք՝ զի ընդ Մովսէսի խօսեցաւ
30 Աստուած. զսա ո՛չ գիտեմք ուստի իցէ։ Պա-

տասխանի եւ այրն եւ ասէ ցնոսա. Այդ իսկ են
սքանչելիք. զի դուք ոչ գիտէք ուստի իցէ, և
31 զիմ զաչս եբաց: Գիտեմք զի Աստուած մեղա-
ւորաց ոչ լսէ. բայց եթէ աստուածապաշտ ոք իցէ,
32 և զկամս նորա առնիցէ, նմա լսէ: ՚Ի յաւիտե-
նից ոք ոչ լուաւ՝ եթէ եբաց ոք զաչս կուրի ՚ի
33 ծնէ կոյր ծնելոյ: Եթէ ոչ յԱստուծոյ էր այրն
34 այն՝ ոչ կարէր առնել ինչ: Պատասխանի ետուն
և ասեն ցնա. ՚Ի մեղս իսկ ծնեալ ես ամենևին,
և դու վարդապետես լինիս մեր. և հանին զնա ար-
35 տաքս: Լուաւ Յիսուս՝ եթէ հանին զնա արտաքս,
և իբրև եգիտ զնա՝ ասէ ցնա. Դու հաւատաս
36 յՈրդի Աստուծոյ: Նա պատասխանի ետ և ասէ.
37 Տէր ո՞վ է՝ զի հաւատացից ՚ի նա: Ասէ ցնա Յի-
սուս. Եւ տեսեր զնա, և որ խօսիդ ընդ քեզ՝ նա
38 է: Եւ նա ասէ. Հաւատամ Տէր, և երկիր ե-
պագ նմա:

39 Եւ ասէ Յիսուս. ՚Ի դատաստան եկի յաշ-
խարհս յայս, զի որ ոչն տեսանեն՝ տեսցեն, և որք
40 տեսանենն՝ կուրասցին: Լուան ոմանք ՚ի փարի-
սեցւոցն՝ որք ընդ նմա էին, և ասեն ցնա. Միթէ
41 և մեք կո՞յրք իցեմք: Ասէ ցնոսա Յիսուս. Եթէ
կոյրք էիք՝ ոչ էր ձեր մեղ. բայց արդ ասէք՝ եթէ
Տեսանեմք, և մեղքն ձեր ՚ի ձեզ հաստատեալ են:

## ԳԼ. Ժ

Ամէն ամէն ասեմ ձեզ. Որ ոչ մտանէ ընդ
դուռն ՚ի գաւիթ ոչխարաց, այլ ընդ այլ ելանէ՝

2 նա գող է, և աւազակ: Իսկ որ մտանէ ընդ
3 դուռն, հովիւ է ոչխարաց: Նմա դռնապանն բա-
նայ, և ոչխարքն ձայնի նորա լսեն. և զիւր ոչ-
4 խարսն կոչէ յանուանէ, և հանէ զնոսա: Եւ
յորժամ *զիւրսն զամենայն" հանիցէ, առաջի նո-
ցա երթայ՝ և ոչխարքն զհետ նորա երթան, զի
5 ճանաչեն զձայն նորա: Զօտարի զհետ ոչ երթի-
ցեն, այլ փախիցեն 'ի նմանէ, զի ոչ ճանաչեն
6 զձայն օտարաց: Զայս առակ ասաց նոցա Յիսուս,
և նոքա ոչ գիտէին եթէ զի՛նչ էր որ խօսէրն ընդ
7 նոսա: Դարձեալ ասէ ցնոսա Յիսուս. Ամէն ա-
8 մէն ասեմ ձեզ, զի Ես եմ դուռն ոչխարաց: Ամե-
նեքեան՝ որ յառաջ քան զիս եկին, գողք էին և
9 աւազակք. այլ ոչ լուան նոցա ոչխարքն: Ես եմ
դուռն. ընդ իս եթէ ոք մտանիցէ, կեցցէ. մտցէ,
10 և ելցէ, և ճարակ գտցէ: Գող ոչ գայ՝ եթէ ոչ՝
զի գողասցի և սպանցէ և կորուսցէ. ես եկի զի
զկեանս ունիցին, և առաւել ևս ունիցին:
11 Ես եմ հովիւն քաջ. հովիւ քաջ զանձն իւր դնէ
12 'ի վերայ ոչխարաց: Իսկ վարձկանն՝ որ ոչ է հո-
վիւ, որոյ ոչ իւր են ոչխարքն, իբրև տեսանէ
զգայլն զի գայ՝ թողու զոչխարսն և փախչի. և
13 գայլն յափշտակէ զնոսա և ցրուէ. *Քանզի վարձ-
14 կան է, և չէ՛ փոյթ նմա վասն ոչխարացն: Ես
եմ հովիւն քաջ, և ճանաչեմ զիմսն՝ և ճանա-
15 չիմ յիմոցն: Որպէս գիտէ զիս Հայր, գիտեմ և
ես զՀայր. և զանձն իմ դնեմ 'ի վերայ ոչխա-

* 'Ի Յոյնն, զիւր ոչխարսն

16 րաց: Նաև՝ այլ ևս ոչխարք են իմ, որ ո՛չ են
յայսմ գաւթէ. և զայն ևս պարտ է ինձ ածել
այսր, և ձայնի իմում լուիցեն, և եղիցին մի հօտ
17 և մի հովիւ. Վասն այնորիկ սիրէ զիս Հայր իմ,
զի ես դնեմ զանձն իմ. զի միւսանգամ առից զնա:
18 Ո՛չ ոք հանէ զնա յինէն. այլ ես դնեմ զնա ան-
ձամբ իմով. իշխանութիւն ունիմ դնել զնա, և իշ-
խանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա. զայս
19 պատուէր առի 'ի Հօրէ իմմէ: Դարձեալ հերձուած
20 լինէր 'ի մէջ Հրէից վասն բանիցս այսոցիկ: Եւ
ասէին բազումք 'ի նոցանէ. Դև գոյ 'ի նմա և մո-
21 լեգնի, զի՞ բնաւ լսէք նմա: Կէսքն ասէին. Այս-
պիսի բանք ո՛չ դիւահարի են. միթէ դև կարէ՞
զաչս կուրի բանալ:
22 Եղեն յայնժամ նաւակատիքն յԵրուսաղէմ,
23 և ձմեռն էր. Եւ շրջէր Յիսուս 'ի տաճարին՝ 'ի
24 սրահին Սողոմոնի: Շուրջ եղեն զնովաւ Հրէ-
այքն և ասեն. Մինչև յե՞րբ թափես զոգիս մեր,
եթէ դու ես Քրիստոսն՝ ասա՛ մեզ համարձակ:
25 Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. Ասացի
ձեզ՝ և ո՛չ հաւատայք ինձ. զգործսն զոր ես գոր-
ծեմ յանուն Հօր իմոյ՝ նոքին իսկ վկայեն վասն
26 իմ: Այլ դուք ո՛չ հաւատայք, զի չէք յոչխա-
27 րաց անտի իմոց: Ոչխարք իմ ձայնի իմում լսեն,
28 և ես ճանաչեմ զնոսա, և զկնի իմ գան. Եւ ես
տամ նոցա զկեանսն յաւիտենականս. և մի՛ կորի-
ցեն յաւիտեան, և մի՛ ոք յափշտակեսցէ զնոսա 'ի
29 ձեռաց իմոց: Հայրն իմ՝ որ ետ ինձ զնոսա, մեծ
է քան զամենայն, և ոչ ոք կարէ յափշտակել 'ի

30 ձեռաց Հօր իմոյ: Ես և Հայր իմ մի եմք:
31 Վէմս առին Հրէայքն զի քարկոծ արասցեն զնա:
32 Պատասխանի ետ Նոցա Յիսուս. Բազում գործս
բարիս ցուցի ձեզ ՚ի Հօրէ իմմէ. վասն որո՞յ գոր-
33 ծոյ ՚ի նոցանէ քարկոծ առնէք զիս: Պատասխա-
նի ետուն Նմա Հրէայքն. Վասն բարւոյ գործոյ
ոչ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյու-
թեան. և զի դու մարդ ես, և զանձն քո Աստ-
34 ուած առնես: Պատասխանի ետ Նոցա Յիսուս՝ Ո՞չ
յօրէնս ձեր գրեալ է. Ես ասացի թէ աստուածք
35 իցէք: Իսկ եթէ զնոսա աստուածս ասէ, առ որս
բանն Աստուծոյ եղև, և չէ՛ մարթ եղծանել գր-
36 րոյն. Իսկ զոր Հայր սրբեաց՝ և առաքեաց յաշ-
խարհ, դուք ասէք՝ թէ Հայհոյես. զի ասացի՝
37 թէ Որդի Աստուծոյ եմ: Եթէ ոչ գործեմ զգոր-
38 ծս Հօր իմոյ, մի՛ հաւատայք ինձ: Ապա թէ
գործեմ, թէ և ինձ ոչ հաւատայք, սակայն գոր-
ծոցն հաւատացէ՛ք. զի գիտասջիք և ծանիջիք՝ եթէ
39 Հայր յիս և ես ՚ի Հայր: Դարձեալ խնդրէին
40 զնա ունել, և ել ՚ի ձեռաց նոցա: Եւ գնաց միւ-
անգամ յայնկոյս Յորդանանու՝ ՚ի տեղին, ուր էր
Յովհաննէս զառաջինն՝ և մկրտէր, և անդ լինէր:
41 Եկին բազումք առ Նա՝ և ասեն. զի Յովհան-
42 նէս նշան ինչ ոչ արար: Բայց զամենայն, զոր
ասաց Յովհաննէս վասն Նորա, ճշմարիտ էր. և
բազումք հաւատացին ՚ի Նա անդ:

## ԳԼ. ԺԱ.

1 Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս 'ի Բեթանիա, 'ի
2 գեղջէ Մարեմայ, և Մարթայի քեռ նորա։ Այս
այն Մարիամ էր որ օծ զՏէրն իւղով՝ և ջնջեաց
զոտս նորա հերով իւրով. որոյ եղբայրն Ղազա-
3 րոս հիւանդ էր։ Առաքեցին առ նա քորքն նորա՝
և ասեն. Տէր՝ ահաւասիկ զոր դուն սիրէիր՝ հի-
4 ւանդացեալ է։ Իբրև լուաւ Յիսուս, ասէ. Այն
հիւանդութիւն չէ 'ի մահ, այլ վասն փառացն
Աստուծոյ. զի փառաւոր լիցի Որդի Աստուծոյ
5 այնուիկ։ Եւ սիրէր Յիսուս զՄարթա և զքոյր
6 նորա զՄարիամ և զՂազար։ Իբրև լուաւ թէ
հիւանդացեալ է, զտեղի կալաւ անդէն ուր էրն՝
7 աւուրս երկուս։ Ապա յետ այնորիկ ասէ ցնոսա,
8 Եկա՛յք երթիցուք միւսանգամ 'ի Հրէաստան։ Ա-
սեն ցնա աշակերտքն. Ռա՛բբի՝ այժմ ևս խնդրէ-
ին զքեզ Հրէայքն քարկոծ առնել. և դարձեա՞լ
9 երթաս անդրէն։ Պատասխանի ետ Յիսուս. Ո՞չ
երկոտասան ժամ է աւուր. եթէ ոք գնայ 'ի տու-
ընջեան՝ ո՛չ գայթակղի. զի զլոյս աշխարհիս այսո-
10 րիկ տեսանէ. Ապա թէ ոք գնայ գիշերի՝ գայթակ-
11 ղի, զի լոյս ո՛չ գոյ ընդ նմա։ Զայս իբրև ասաց,
յետ այսորիկ ասէ ցնոսա. Ղազարոս բարեկամ
մեր ննջեաց, այլ երթամ զի զարթուցից զնա։
12 Ասեն ցնա աշակերտքն, Տէր՝ եթէ ննջեաց՝ ապա
13 ապրի։ Այլ Յիսուս վասն մահուն նորա ասէր. նոցա
այսպէս թուեցաւ՝ թէ վասն ննջելոյ քնոյն ասէ։
14 Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս յայտնապէս. Ղա-

15 զարոս մեռաւ, Եւ ես ուրախ եմ վասն ձեր, զի
դուք հաւատասջիք ինձ, զի ես չէի անդ. բայց արդ
16 եկայք երթիցուք առ նա: Ասէ Թովմաս՝ անուա-
նեալն Երկուորեակ՝ ցաշակերտակիցսն. Ո՛ն՝
17 եկա՛յք և մեք՝ զի ընդ նմա մեռցուք: Եկն Յի-
18 սուս եգիտ զնա չորեքօրեայ 'ի գերեզմանի: Եւ էր
Բեթանիա մերձ յԵրուսաղէմ՝ իբրև ասպարիսօք
19 հնգետասան: Բազումք 'ի Հրէից անտի եկեալ
էին առ Մարթա և Մարիամ, զի մխիթարեսցեն
20 զնոսա վասն եղբօրն: Մարթա իբրև լուաւ՝ թէ
Յիսուս գայ, ընդ առաջ գնաց Նորա. բայց Մա-
21 րիամ նստէր անդէն 'ի տան: Ասէ Մարթա ցՅի-
սուս. Տէ՛ր՝ եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ չէր
22 մեռեալ. Այլ և արդ գիտեմ, եթէ զոր ինչ խընդ-
23 րեսցես յԱստուծոյ՝ տացէ քեզ Աստուած: Ասէ
24 ցնա Յիսուս, Յարիցէ եղբայրն քո: Ասէ ցնա
Մարթա. Գիտեմ զի յարիցէ 'ի յարութեան՝
25 յաւուրն յետնում: Ասէ ցնա Յիսուս. Ես իսկ
եմ յարութիւն և կեանք. որ հաւատայ յիս, թէ-
26 պէտ և մեռանի՝ կեցցէ. Եւ ամենայն որ կենդա-
նի է՝ և հաւատայ յիս, մի՛ մեռցի 'ի յաւիտեան.
27 հաւատա՞ս այսմիկ: Ասէ ցնա. Այո՛ Տէ՛ր՝ ես հա-
ւատացի՝ եթէ դու ես Քրիստոսն Որդի Աստու-
28 ծոյ, որ յաշխարհ գալոց էիր: Եւ զայս իբրև ա-
սաց, գնաց և կոչեաց զՄարիամ զքոյր իւր լռել-
եայն՝ և ասէ. Վարդապետ եկեալ է և կոչէ զքեզ:
29 Նա իբրև լուաւ՝ յարեաւ վաղվաղակի, և եկն առ
30 Նա: Չև ևս էր եկեալ Յիսուս 'ի գեօղն. այլ էր
անդէն 'ի տեղւոջն՝ ուր ընդ առաջ եղև նմա Մար-

31 թա ։ Իսկ Հրեայքն՝ որ էին ընդ նմա ՚ի տան
անդ՝ և մխիթարէին զնա , իբրև տեսին զՄարի-
ամ՝ թէ յարեաւ վաղվաղակի և գնաց , գնացին
և նոքա զհետ նորա , համարէին թէ ՚ի գերեզ-
32 մանն երթայ՝ զի լացցէ անդ ։ Իսկ Մարիամ իբրև
եկն ուր էրն Յիսուս՝ և ետես զնա , անկաւ առ ոտս
նորա և ասէ ․ Տէր՝ եթէ աստ էիր դիպեալ՝ ոչ
33 էր մեռեալ եղբայրն իմ ։ Յիսուս իբրև ետես զնա
զի լայր , և որ ընդ նմա էին Հրեայքն լային , խռ-
34 ովեցաւ յոգի իւր իբրև զայրացեալ , Եւ ասէ ․
35 Ո՞ւր եդիք զնա ․ ասեն ցնա ․ Տէր՝ եկ և տես ։ Եւ
36 արտասուեաց Յիսուս ։ Ասէին Հրեայքն ․ Տեսէք
37 որչափ սիրէր զնա ։ Կէսքն ՚ի նոցանէ ասէին ․ Ո՞չ
կարէր սա , որ եբաց զաչս կուրին , առնել՝ զի և
38 սա մի՛ մեռցի ։ Յիսուս դարձեալ զայրացեալ ընդ
միտս իւր , գայ ՚ի գերեզմանն ․ և էր այր մի , և
39 վէմ մի եդեալ ՚ի վերայ նորա ։ Եւ ասէ Յիսուս ․
՚Ի բաց արարէք զվէմդ ․ ասէ ցնա Մարթա՝ քոյր
մեռելոյն ․ Տէր արդ հոտեալ իցէ , քանզի չորեք-
40 օրեայ է ։ Ասէ ցնա Յիսուս ․ Ո՞չ ասացի քեզ՝ ե-
41 թէ հաւատասցես , տեսցես զփառսն Աստուծոյ ։ Եւ
իբրև ՚ի վեր առին զվէմն , Յիսուս ամբարձ զաչս
իւր ՚ի վեր , և ասէ ․ Հա՛յր՝ գոհանամ զքէն , զի
42 լուար ինձ ։ Եւ ես գիտէի զի յամենայն ժամ լսես
ինձ ․ այլ վասն ժողովրդեանս որ շուրջ կան՝ առ-
նեմ , զի հաւատասցեն՝ թէ դու առաքեցեր զիս ։
43 Զայս իբրև ասաց ․ ՚ի ձայն մեծ աղաղակեաց և
44 ասէ ․ Ղազարէ՝ արի՛ եկ արտաքս ։ Եւ ել մեռ-
եալն ոտիւք կապելովք , և ձեռօքն երիզապնդօք և

երեսօքն վարշամակապատօք · և ասէ ցնոսա Յի-
45 սուս · Լուծէք զդա՝ և թողէք երթալ ։ Բազումք
՚ի Հրէիցն՝ որ եկեալ էին առ Մարեմանս, իբրև
46 տեսին զոր արարն՝ հաւատացին ՚ի նա ։ Եւ ոմանք
՚ի նոցանէ գնացին առ փարիսեցիսն, պատմեցին
նոցա՝ զոր արարն Յիսուս ։
47 Ժողովեցին քահանայապետքն և փարիսեցիքն
ատեան, և ասեն · Զի՞նչ արասցուք, զի այրն
48 այն բազում նշանս առնէ ։ Եթէ թողումք զնա
այնպէս, ամենեքին հաւատան ՚ի նա · և գայցեն
49 Հռոմք՝ և բառնայցեն զազգս մեր՝ և զտեղի ։ Մի
ոմն ՚ի նոցանէ՝ անուն Կայիափա ; որ քահանայա-
պետ էր տարւոյն այնորիկ, ասէ ցնոսա · Դուք ոչ-
50 ինչ գիտէք, Եւ ոչ բնաւ խորհել իսկ, թէ լաւ է
մեզ՝ զի այր մի մեռանիցի ՚ի վերայ ժողովրդեանս,
51 և մի՛ ամենայն ազգս կորիցէ ։ Զայս ոչ յանձնէ
ինչ ասաց · այլ զի քահանայապետ էր տարւոյն այ-
նորիկ, մարգարէացաւ՝ եթէ մեռանելոց էր Յի-
52 սուս ՚ի վերայ ազգին · Եւ ոչ ՚ի վերայ ազգին մի-
այն, այլ զի և զորդիսն Աստուծոյ զցրուեալսն ժո-
53 ղովեսցէ ՚ի մի ։ Ապա յայնմ օրէ խորհուրդ արա-
54 րին՝ զի սպանցեն զնա ։ Եւ Յիսուս այնուհետև ոչ
եթէ համարձակ շրջէր ՚ի մէջ Հրէիցն · այլ գնաց
անտի յերկիր մի՝ որ մերձ էր յանապատ, ՚ի քա-
ղաք մի՝ որում անուն էր Եփրայիմ, և անդ լինէր
աշակերտօքն հանդերձ ։
55 Եւ էր մերձ զատիկն Հրէից · և բազումք ելին
յԵրուսաղէմ ՚ի գաւառէ անտի յառաջ քան
56 զզատիկն, զի սրբեսցեն զանձինս իւրեանց ։ Խնդրէ-

ին զՅիսուս, և ասէին ընդ միմեանս մինչ կային 'ի տաճարին. Զիա՞րդ թուի ձեզ՝ եթէ ո՞չ գայցէ 'ի տօն այսր. պատուէր տուեալ էր քահանայապե-տիցն և փարիսեցւոց, զի թէ ոք գիտասցէ թէ ուր է, գուշակեսցէ զնմանէ՝ զի կալցին զնա:

## ԳԼ. ԺԲ

1 Իսկ Յիսուս վեց աւուրբ յառաջ քան զզատիկն
եկն 'ի Բեթանիա, ուր էր Ղազար մեռեալն, զոր
2 յարոյց 'ի մեռելոց: Եւ արարին անդ նմա ընթ-
րիս՝ և 'ի սպասու կայր Մարթա, և Ղազար մի էր
3 'ի բազմելոց ընդ նմա: Իսկ Մարեմայ առեալ լիտր
մի իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, օծ զոտսն
Յիսուսի, և հերովն իւրովն մաքրէր զոտս նորա. և
4 տունն լի եղև 'ի հոտոյ իւղոյն: Ասէ մի ոմն յաշա-
կերտաց անտի՝ Յուդա Իսկարիովտացի, որ մատ-
5 նելոցն էր զնա: Ընդէ՞ր ոչ իւղդ այդ վաճառեցաւ
երեք հարիւր դենարի, և տուաւ աղքատաց:
6 Զայս ասաց՝ ո՛չ զի զաղքատաց ինչ փոյթ էր
նմա. այլ զի գող էր՝ և զարկղն ինքն ունէր. և
7 որ ինչ անկանէր՝ նա կրէր: Ասէ Յիսուս. Թո՛յլ
տուր դմա, զի յօրն պատանաց իմոց պահեսցէ
8 զայդ: Զաղքատս յամենայն ժամ ընդ ձեզ ու-
9 նիք. զիս ո՛չ հանապազ ընդ ձեզ ունիք: Իբրև
գիտաց ժողովուրդ բազում 'ի Հրէից թէ անդ է՝
եկին. ո՛չ միայն վասն Յիսուսի, այլ զի և զՂազար
10 տեսցեն, զոր յարոյց 'ի մեռելոց: Խորհուրդ արա-
րին քահանայապետքն, զի և զՂազար սպանցեն.

11 Քանզի բազումք ՚ի Հրէից երթային*՝ և հաւա-
տային ՚ի Յիսուս :
12 ՚Ի վաղիւ անդր ժողովուրդ բազում որ եկեալ
13 էր ՚ի տօնն, իբրև լուան թէ գայ Յիսուս յԵրու-
սաղէմ, առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ ա-
ռաջ նորա՝ աղաղակէին և ասէին. Ովսաննայ, օրհ-
նեալ որ գասդ յանուն Տեառն՝ թագաւորդ Իս-
14 րայէլի : Եւ գտեալ Յիսուսի էշ մի, նստաւ ՚ի վե-
15 րայ նորա, որպէս և գրեալ է : Մի երկնչիր դուս-
տրր Սիովնի՝ ահաւասիկ թագաւոր քո գայ նըս-
16 տեալ ՚ի վերայ յաւանակի իշոյ : Եւ զայն ինչ ոչ
գիտացին աշակերտքն նորա զառաջինն, այլ յոր-
ժամ փառաւորեցաւ Յիսուս, յայնժամ յիշեցին,
եթէ այն էր՝ որ գրեալն էր վասն նորա, և զայն
17 արարին նմա : Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ
նմա, թէ զՂազար կոչեաց ևեթ ՚ի գերեզմանէն.
18 և յարոյց զնա ՚ի մեռելոց : Եւ վասն այնորիկ ընդ
առաջ ելև նմա ժողովուրդն, զի լուան եթէ զայն
19 նշանս արարեալ էր նորա : Իսկ փարիսեցիքն ա-
սէին ընդ միմեանս. Տեսանէ՞ք՝ զի ոչինչ օգտիք.
ահաւասիկ աշխարհ ամենայն զկնի նորա գնաց :
20 Էին անդ ոմանք և Հեթանոսք յելելոցն անդր,
21 զի երկիրպագանիցեն ՚ի տօնին : Նոքա մատեան
առ փիլիպպոս՝ որ ՚ի Բեթսայիդա Գալիլեացւոցն
էր, աղաչէին զնա և ասէին. Տէր՝ կամիմք զՅի-
22 սուս տեսանել : Գայ փիլիպպոս և ասէ ցԱնդրէ-
23 աս. Անդրէաս և փիլիպպոս ասեն ցՅիսուս : Եւ

---

* ՚Ի Յոյնն, վասն նորա

Յիսուս պատասխանի ետ նոցա եւ ասէ. Եհաս
ժամ զի փառաւորեսցի Որդի մարդոյ:
24 Ամէն ամէն ասեմ ձեզ. Եթէ ո՛չ հատն ցորե-
25 նոյ անկեալ յերկիր մեռանիցի, Ինքն միայն կայ.
ապա եթէ մեռանիցի՝ բազում արդիւնս առնէ: Որ
սիրէ զանձն իւր՝ արձակէ զնա. եւ որ ատեայ զանձն
իւր յաշխարհիս յայսմիկ, ՚ի կեանսն յաւիտենա-
26 կանս պահեսցէ զնա: Եթէ ոք զիս պաշտիցէ, ըզ-
կնի իմ եկեսցէ. եւ ուր եսն եմ, անդ եւ պաշտօ-
նեայն իմ եղիցի. եթէ ոք զիս պաշտիցէ՝ պատուես-
ցէ զնա Հայրն իմ:
27 Բայց այժմ անձն իմ խռովեալ է. եւ զի՞նչ ա-
սացից, եթէ Հա՛յր՝ ապրեցո՛ զիս ՚ի ժամէ աստի
յայսմանէ. այլ վասն այնորիկ եկի ՚ի ժամս յայս:
28 Հա՛յր՝ փառաւորեա՛ զանուն քո. եկն բարբառ յերկ-
նից. Եւ փառաւոր արարի, եւ դարձեալ փառա-
29 ւոր արարից: Եւ ժողովուրդն որ կայր եւ լսէր՝ ա-
սէին, Որոտումն լինել. կէսքն ասէին. Հրեշտակ
30 խօսեցաւ ընդ նմա: Պատասխանի ետ Յիսուս՝ եւ
ասէ. Ո՛չ վասն իմ ինչ եկն բարբառս այս, այլ
31 վասն ձեր: Այժմիկ դատաստան է աշխարհիս այ-
սորիկ. այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի
32 արտաքս: Եւ ես յորժամ բարձրացայց յերկրէ,
33 զամենեսին ձգեցից առ իս: Զայս ասէր, նշանա-
34 կեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ: Պատաս-
խանի ետ նմա ժողովուրդն. Մեք լուաք յօրինաց՝
եթէ Քրիստոս յաւիտեան կայ, եւ դու զիա՞րդ
ասես՝ թէ պարտ է բարձրանալ Որդւոյ մարդոյ.
35 ո՞վ է այն Որդին մարդոյ: Ասէ ցնոսա Յիսուս.

փոքր միւս ևս ժամանակ լոյս ընդ ձեզ է. գնացէք
մինչդեռ զլոյսն ունիք, զի մի խաւար ձեզ հասցէ.
զի որ գնայ ՚ի խաւարի, ոչ գիտէ յո երթայ:
36 Մինչդեռ զլոյսն ընդ ձեզ ունիք՝ հաւատացէք ՚ի
լոյսն, զի որդիք լուսոյ եղիջիք. զայս խօսեցաւ Յի-
37 սուս, և չոգաւ՝ թաքեաւ ՚ի նոցանէ: Եւ այնչափ
նշանս արարեալ էր առաջի նոցա. և նոքա ոչ հա-
38 ւատային ՚ի նա. Զի լցցի բանն Եսայեայ մարգա-
րէին՝ զոր ասացն. Տէր ո հաւատաց ՚ի լուր մեր, և
39 բազուկ Տեառն ում յայտնեցաւ: Վասն այնորիկ
ոչ կարէին հաւատալ, զի միւսանգամ ասէ Եսայի.
40 Թէ կուրացոյց զաչս նոցա, և ապշեցոյց զսիրտս նո-
ցա. զի մի տեսցեն աչօք, և իմասցին սրտիւք, և
41 դարձցին՝ և բժշկեցից զնոսա: Զայս ասաց Եսայի՝
զի ետես զփառս նորա, և խօսեցաւ վասն նորա:
42 Բայց սակայն և յիշխանաց անտի բազումք հաւա-
տացին ՚ի նա. այլ վասն փարիսեցւոցն ոչ յայտ-
43 նէին, զի մի ՚ի ժողովրդենէն ելանիցեն: Քանզի
սիրեցին զփառս մարդկան՝ առաւել քան զփառսն
Աստուծոյ:

44 Եւ Յիսուս աղաղակէր և ասէր. Որ հաւատայ
յիս՝ ոչ հաւատայ յիս, այլ յայն՝ որ առաքեացն
45 զիս: Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ՝ որ ա-
46 ռաքեացն զիս: Ես լոյս յաշխարհ եկի, զի ամենայն
47 որ հաւատայ յիս՝ ՚ի խաւարի մի մնասցէ: Եւ ե-
թէ ոք լուիցէ բանից իմոց, և ոչ պահեսցէ, ես
ոչ դատիմ զնա. քանզի ոչ եկի՝ թէ դատեցայց
48 զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ: Որ անար-
գէ զիս, և ոչ ընդունի զբանս իմ, գոյ որ դա-

տի զնա. բանն զոր ես խօսեցայ, նա դատի զնա
49 յաւուրն յետնում: Զի ես յանձնէ իմմէ ոչ խօ-
սեցայ. այլ որ առաքեացն զիս Հայր, նա ետ
ինձ պատուէր զի՞նչ ասացից՝ և զի՞նչ խօսեցայց:
50 Եւ գիտեմ՝ եթէ պատուէրն այն կեանք են յա-
ւիտենականք. արդ զոր ես խօսիմ, որպէս ա-
սաց ինձ Հայրն՝ այնպէս խօսիմ:

## ԳԼ. ԺԳ.

1 Յառաջագոյն քան զտօնն զատկի՝ գիտաց Յի-
սուս, թէ հասեալ է ժամ նորա՝ զի փոխեսցի
յաշխարհէ աստի առ Հայր. *սիրեաց զիւրսն՝ որ
2 յաշխարհի աստ են. իսպառ սիրեաց զնոսա: Եւ
՚ի լինել ընթրեացն, Սատանայի իսկ արկեալ էր
՚ի սիրտ՝ զի մատնեսցէ զնա Յուդա Սիմովնի Իս-
3 կարիովտացւոյ. Գիտաց Յիսուս՝ զի զամենայն
ինչ ետ Հայր ՚ի ձեռս նորա, և թէ յԱստուծոյ
4 ել՝ և առ Աստուած երթայ. Յառնէ յընթրեաց
անտի, և դնէ զհանդերձն, և առեալ զենջակ մի՝
5 սփածաւ: Եւ ապա առեալ ջուր՝ արկ ՚ի կոնք,
և սկսաւ լուանալ զոտս աշակերտացն, և սրբէր
6 զենջակաւն՝ զոր սփածեալ էր: Գայ առ Սիմովն
Պետրոս. և նա ասէ ցնա. Տէ՛ր՝ դո՞ւ զիմ զոտս
7 լուանաս: Պատասխանի ետ նմա Յիսուս՝ և ասէ.
Զոր ինչ ես գործեմ, դու այժմ ոչ գիտես. բայց
8 ապա գիտասջիր: Ասէ ցնա Պետրոս. Ո՛չ լու-

* ՚Ի Յոյն., սիրեալ

*ասցես զոտս իմ յաւիտեան • պատասխանի ետ նմա*
*Յիսուս • Եթէ ոչ լուացից՝ զքեզ՝ ոչ ունիս ընդ*
9 *իս մասն ։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս • Տէր՝ մի մի-*
10 *այն զոտս իմ, այլ և զձեռս և զգլուխս ։ Ասէ ցնա*
*Յիսուս • լուացելոյն չէ ինչ պիտոյ՝ բայց զի զոտսն*
*լուանայցէ • քանզի ամենևին սուրբ է • և դուք*
11 *սուրբ էք , այլ ոչ ամենեքին ։ Զի գիտէր զայն՝*
*որ մատնելոցն էր զնա • վասն այնորիկ ասաց՝ թէ*
12 *Ո՛չ ամենեքին սուրբ էք ։ Եւ յորժամ լուաց զոտս*
*նոցա , առ զհանդերձն իւր՝ և դարձեալ բազմե-*
*ցաւ , և ասէ ցնոսա • Գիտէ՞ք զինչ արարի ձեզ ։*
13 *Դուք կոչէք զիս Վարդապետ և Տէր • և բարւոք*
14 *ասէք , քանզի եմ իսկ ։ Իսկ արդ՝ եթէ ես լուա-*
*ցի զոտս ձեր՝ Տէրս և Վարդապետս , և դուք պար-*
15 *տիք զմիմեանց ոտս լուանալ ։ Զի օրինակ մի ե-*
*տու ձեզ , զի որպէս ես ձեզ արարի , և դուք առ-*
*նիջիք ։*
16 *Ամէն ամէն ասեմ ձեզ • Ոչ է ծառայ մեծ քան*
*զտէր իւր • և ոչ առաքեալ՝ մեծ քան զայն որ ա-*
17 *ռաքեացն զնա ։ Եթէ զայս գիտէք , երանելի եւս*
18 *էք՝ եթէ առնիցէք զայս ։ Ո՛չ վասն ամենեցուն ձեր*
*ասեմ • զի ես գիտեմ , զորս ընտրեցի • այլ զի լցցի*
*գիրն , թէ Որ ուտէր ընդ իս հաց՝ արար ինձ խա-*
19 *բէութիւն ։ Յայսմհետէ իսկ ասեմ ձեզ մինչչև*
*եղեալ, զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք թէ ես*
20 *եմ ։ Ամէն ամէն ասեմ ձեզ • Որ ընդունի զոր ով*
*ես առաքեցից , զիս ընդունի • և որ զիս ընդունի ,*
21 *ընդունի զայն՝ որ առաքեացն զիս ։ Զայս իբրև ա-*
*սաց Յիսուս , խռովեցաւ յոգի իւր՝ վկայեաց և ա-*

Հօր իմում, խօսիմ. և դուք՝ զոր լուարուք 'ի հօ-
39 րէն ձերմէ՝ առնէք։ Պատասխանի ետուն նմա և
ասեն. Հայր մեր Աբրահամ է. ասէ ցնոսա Յի-
սուս. Եթէ որդիք Աբրահամու էիք՝ զգործսն Աբ-
40 րահամու գործէիք։ Այլ այժմիկ խնդրէք սպա-
նանել զիս՝ զայր մի, որ ձեզ զճշմարտութիւն խօ-
սեցայ՝ զոր լուայ 'ի Հօրէ իմմէ. զայդ Աբրահամ
41 ոչ արար։ Դուք առնէք զգործս հօրն ձերոյ. ա-
սեն ցնա. Մեք 'ի պոռնկութենէ չեմք ծնեալ. մի
42 է Հայր մեր Աստուած։ Ասէ ցնոսա Յիսուս. Եթէ
Աստուած էր Հայր ձեր, սիրէիք արդեօք զիս. զի
ես յԱստուծոյ ելի՝ և եկի. և ոչ եթէ յանձնէ
43 ինչ եկի, այլ նա առաքեաց զիս։ Ընդէ՞ր զխօսս
իմ ոչ գիտէք դուք. վասն զի ոչ կարէք լսել ըզ-
44 բանն իմ։ Դուք 'ի հօրէ 'ի Սատանայէ էք. և
զցանկութիւնս հօրն ձերոյ կամիք առնել. զի նա
մարդասպան էր 'ի սկզբանէ, և 'ի ճշմարտութեան
ոչ եկաց. զի ոչ գոյ ճշմարտութիւն 'ի նմա. յոր-
ժամ խօսիցի սուտ՝ յիւրոց անտի խօսի. զի սուտ
45 է և հայր նորա։ Իսկ ես՝ զի զճշմարտութիւն խօ-
46 սիմ, ոչ հաւատայք ինձ։ Ո՞ 'ի ձէնջ յանդիմա-
նէ զիս վասն մեղաց. եթէ զճշմարիտն ասեմ ձեզ՝
47 ընդէ՞ր ոչ հաւատայք ինձ։ Որ էն յԱստուծոյ՝ ըզ-
բանս Աստուծոյ լսէ. և դուք վասն այնորիկ ոչ լսէք,
48 զի չէք յԱստուծոյ։ Պատասխանի ետուն Հրէայքն՝
և ասեն ցնա. Ո՞չ բարւոք ասեմք մեք՝ եթէ Սա-
49 մարացի ես դու, և դև գոյ 'ի քեզ։ Պատասխա-
նի ետ Յիսուս և ասէ. Յիս դև ոչ գոյ՝ այլ պատ-
50 ուեմ զՀայր իմ, և դուք անարգէք զիս։ Ես ոչ

խնդրեմ զփառս իմ. է որ խնդրէն՝ և դատի։
51 Ամէն ամէն ասեմ ձեզ, Եթէ ոք զբանն իմ պա-
52 հեսցէ՝ զմահ մի տեսցէ 'ի յաւիտեան։ Ասեն ցնա
Հրեայքն. Արդ՝ գիտացաք թէ դև գոյ 'ի քեզ.
Աբրահամ մեռաւ՝ և մարգարէքն. և դու ասես՝ Ե-
թէ ոք զբանն իմ պահեսցէ, մի ճաշակեսցէ զմահ
53 'ի յաւիտեան։ Միթէ դու մեծ ինչ ոք իցես քան
զհայր մեր Աբրահամ, որ մեռաւ, և մարգարէքն մե-
54 ռան. արդ՝ դու զո՞ առնես զքեզ։ Պատասխանի ետ
Յիսուս. Եթէ ես փառաւորեմ զանձն իմ, փառք
իմ ոչինչ են. է Հայր՝ որ փառաւորէ զիս, զորմէ
55 դուքն ասէք՝ թէ Աստուած մեր է, Եւ ոչ ճանա-
չէք զնա. բայց ես գիտեմ զնա. և թէ ասեմ,
թէ ոչ գիտեմ զնա՝ ձեզ նման սուտ լինիմ. այլ
56 գիտեմ զնա, և զբան նորա պահեմ։ Աբրահամ
հայր ձեր ցանկացաւ տեսանել զօր իմ, ետես՝
57 և ուրախ եղև։ Ասեն ցնա Հրեայքն. Յիսուն ամ
58 չև՛ ևս է քո, և զԱբրահամ տեսե՞ր։ Ասէ ցնոսա
Յիսուս. Ամէն ամէն ասեմ ձեզ. յառաջ քան
59 զլինելն Աբրահամու եմ ես։ Վէմս առին զի
արկցեն 'ի վերայ նորա. և Յիսուս խոյս ետ, և ել
գնաց 'ի տաճարէ անտի։

## ԳԼ. Թ.

1 Եւ մինչդեռ անցանէր՝ ետես այր մի կոյր 'ի
2 ծնէ. Եւ հարցին ցնա աշակերտքն նորա՝ և ասեն.
Ռաբբի՝ ո՞յր վնաս է, սորա՞ թէ հօր և մօր իւրոյ,
3 զի կոյր ծնցի։ Պատասխանի ետ Յիսուս. Ո՛չ

սէ. Ամէն ամէն ասեմ ձեզ, զի մի ոմն ՚ի ձէնջ
22 մատնելոց է զիս։ Հայէին ընդ միմեանս աշակերտքն
23 տարակուսեալք, թէ զո՞ւմէ ասիցէ։ Եւ էր մի ոմն
յաշակերտացն բազմեալ առ Յիսուսիւ, զոր սիրէրն
24 Յիսուս։ Ակնարկէ նմա Սիմովն Պետրոս հարցա-
25 նել՝ ո՞վ իցէ, վասն որոյ ասէն։ Եւ նա անկեալ
6 զլանջօքն Յիսուսի, ասէ ցնա. Տէ՛ր՝ ո՞վ է։ Պա-
տասխանի ետ Յիսուս և ասէ. Այն է՝ որում ես
թացից զպատառն և տաց. և թացեալ զպատառն
7 տայ Յուդայի Սկարիովտացւոյ։ Եւ յետ պատա-
ռոյն՝ ապա եմուտ ՚ի նա Սատանայ, և ասէ ցնա
Յիսուս. Որդ՝ զոր ինչ առնելոց ես՝ արա՛ վաղ-
28 վաղակի։ Եւ զայս ոչ ո՛ք իմացաւ ՚ի բազմականաց
29 անտի, թէ առ ինչ ասաց ցնա։ Զի ոմանք հա-
մարէին, թէ զի զարկղն ունէր Յուդա, ասաց նմա
Յիսուս, Գնեա՛ ինչ որ պիտոյ իցէ մեզ ՚ի տօ-
30 նիս. և կամ՝ զի աղքատաց ինչ տացէ։ Իսկ նո-
րա առեալ զպատառն՝ ել արտաքս վաղվաղակի.
և էր գիշեր։
31 Եւ իբրև ել, ասէ Յիսուս. Այժմ փառաւորե-
ցաւ Որդի մարդոյ. և Աստուած փառաւորեցաւ ՚ի
32 նմա։ Զի եթէ Աստուած փառաւորեցաւ ՚ի նմա,
և Աստուած փառաւորեսցէ զնա յանձն իւր. և
33 վաղվաղակի փառաւորեսցէ զնա։ Որդեակք իմ՝
փոքր ինչ ժամանակ ընդ ձեզ եմ. խնդրիցէք զիս.
և որպէս ասացի ցՀրէայսն, եթէ Ուր ես եր-
թամ, դուք ո՛չ կարէք գալ. և արդ ձեզ ասեմ։
34 Պատուիրան նոր տամ ձեզ, զի սիրիցէ՛ք զմիմեանս.
որպէս սիրեցի ես զձեզ, զի և դուք սիրեսջիք զմիմ-

35 եանս ։ Յայսմ գիտասցեն ամենեքեան՝ եթէ իմ
36 աշակերտք էք , եթէ սիրիցէք զմիմեանս ։ Ասէ ցնա
Սիմովն Պետրոս ․ Տէր՝ յո՞վ երթաս ․ պատասխա-
նի ետ Յիսուս , Ուր եսն երթամ՝ դու ո՛չ կարես
այժմ գալ զկնի իմ, բայց ապա եկեսցես զկնի
37 իմ։ Ասէ ցնա Պետրոս ․ Տէր՝ ընդէ՞ր ոչ կարի-
ցեմ գալ այժմ զկնի քո ․ արդէն զանձն իմ իսկ
38 եդից 'ի վերայ քո ։ Պատասխանի ետ Յիսուս ․
Զանձն քո դիցես 'ի վերայ իմ ․ ամէն ամէն ասեմ
քեզ ․ Չէ՛ իցէ հաւու խօսեալ, մինչ դու երիցս
ուրացցիս զիս ։

## ԳԼ․ ԺԴ

1 Մի՛ խռովեսցին սիրտք ձեր ․ այլ հաւատացէք
2 յԱստուած , և յիս հաւատացէք ։ 'Ի տան Հօր ի-
մոյ օթեվանք բազում են ․ ապա թէ ո՛չ՝ ասացեալ
էր իմ ձեզ, թէ Երթամ պատրաստեմ ձեզ տե-
3 ղի ։ Եւ եթէ երթամ և պատրաստեմ ձեզ տե-
ղի , դարձեալ գամ և առնում զձեզ առ իս ․ զի
4 ուր եսն իցեմ, և դուք անդ իցէք ։ Եւ ուր ես եր-
5 թամն՝ գիտիցէք , և զճանապարհն գիտիցէք ։ Ասէ
ցնա Թովմաս ․ Տէր՝ ոչ գիտեմք յո՞ երթաս , և
6 զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել ։ Ասէ ցնա
Յիսուս ․ Ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և
7 կեանք ․ ոչո՛ք գայ առ Հայր՝ եթէ ոչ ինև ։ Եթէ
զիս գիտէիք՝ ապա և զՀայրն իմ գիտէիք , և այ-
8 սուհետև գիտասջիք զնա ։ Ասէ ցնա Փիլիպպոս ․
9 Տէր՝ ցո՛յց մեզ զՀայր՝ և շատ է մեզ ։ Ասէ ցնա

Յիսուս. Այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ, և ո՞չ
ծանեար զիս Փիլիպպէ. որ եսեսն զիս՝ ետես ըզ-
Հայրն. և դու զիա՞րդ ասես՝ եթէ ցո՛յց մեզ ըզ-
10 Հայր։ Ո՞չ հաւատաս՝ եթէ ես ՚ի Հայր, և Հայր
յիս է. զբանս զոր ես խօսիմ ընդ ձեզ, ո՛չ եթէ
յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն՝ որ յիս բնա-
11 կեալ է, նա գործէ զգործսն։ Հաւատասջի՛ք ինձ, ե-
12 թէ ես ՚ի Հայր՝ և Հայր յիս։ Ապա թէ ո՛չ՝ գոնէ
վասն գործոցն հաւատացէ՛ք ինձ. Ամէն ամէն ա-
սեմ ձեզ, թէ Որ հաւատայն յիս, զգործսն զոր
ես գործեմ՝ և նա գործեսցէ, և մեծամեծս ևս քան
13 զնոյնս գործեսցէ. զի ես առ Հայր երթամ։ Եւ
զոր ինչ խնդրիցէք յանուն իմ, արարից զայն. զի
14 փառաւորեսցի Հայր յՈրդի։ Եթէ զոր ինչ խնդրի-
ցէք *յինէն՝ արարից զայն։
15 Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջի՛ք։
16 Եւ ես աղաչեցից զՀայր, և այլ Մխիթարիչ տացէ
17 ձեզ. զի ընդ ձեզ բնակեսցէ ՚ի յաւիտեան. զՀո-
գին ճշմարտութեան, զոր աշխարհս ո՛չ կարէ ըն-
դունել. զի ո՛չ տեսանէ զնա, և ո՛չ ճանաչէ զնա.
բայց դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակե-
18 ցէ՝ և ընդ ձեզ եղիցի։ Ոչ թողից զձեզ որբս.
19 գամ առ ձեզ։ Փոքր միւս ևս՝ և աշխարհս ո՛չ ևս
տեսանէ զիս, բայց դուք տեսանիցէք զիս. զի ես
20 կենդանի եմ, և դուք կենդանի լինելոց էք։ Յայնմ
աւուր գիտասջիք դուք, զի ես ՚ի Հօր իմում՝ և
21 դուք յիս՝ և ես ՚ի ձեզ։ Որ ունի զպատուիրանս իմ

* ՚Ի Յոյն., յանուն իմ

և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս. և որ սիրէն
զիս՝ սիրեսցի 'ի Հօրէ իմմէ. և ես սիրեցից զնա,
22 և երևեցուցից նմա զիս: Ասէ ցնա Յուդա՝ ոչ
Իսկարիովտացին. Տէր՝ զի՞ եղև՝ զի մեզ յայտնելոց
23 ես զքեզ՝ և ոչ աշխարհի: Պատասխանի ետ Յի-
սուս և ասէ ցնա. Եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ
պահեսցէ, և Հայր իմ սիրեսցէ զնա. և առ նա
24 եկեսցուք, և օթևանս առ նմա արասցուք. Եւ որ
ոչն սիրէ զիս՝ զբանս իմ ոչ պահէ. և բանն իմ զոր
լուէք՝ ոչ է իմ, այլ Հօրն՝ որ առաքեացն զիս:
25 Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզս եմ:
26 Իսկ Մխիթարիչն Հոգին Սուրբ՝ զոր առաքեսցէ
Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամենայն,
և յիշեցուսցէ զամենայն՝ որ ինչ ասացի ձեզ:
27 Խաղաղութիւն թողում ձեզ, զխաղաղութիւն զիմ
տամ ձեզ. ոչ որպէս աշխարհս տայ՝ տամ ես
ձեզ. մի խռովեսցին սիրտք ձեր, և մի զանգիտես-
28 ցին: Լուայք, զի ասացի ես ձեզ՝ թէ Երթամ և
գամ առ ձեզ. եթէ սիրէիք զիս՝ ապա ուրախ
լեալ էր ձեր՝ թէ ես առ Հայր երթամ, զի Հայր
29 իմ մեծ է քան զիս: Եւ այժմ ասացի ձեզ մինչչև
30 եղեալ. զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք: Ո՛չ
ևս այլ շատ խօսեցայց ընդ ձեզ. գայ իշխան աշ-
31 խարհիս այսորիկ՝ և յիս ինչ ոչ գտանէ: Այլ
զի ծանիցէ աշխարհ՝ եթէ սիրեմ զՀայր. և որ-
պէս պատուիրեաց ինձ Հայր՝ այնպէս առնեմ. Օ՛ն
արի՛ք՝ գնասցուք աստի:

## ԳԼ. ԺԵ

1 Ես եմ որթն ճշմարիտ, և Հայր իմ մշակ է։
2 Ամենայն ուռ որ յիս է՝ և ոչ բերէ պտուղ՝ կտրէ
զնա. և ամենայն որ բերէ պտուղ՝ սրբէ զնա, զի
3 առաւել ևս պտղաբեր լիցի։ Դուք արդէն իսկ
4 սուրբ էք վասն բանին՝ զոր խօսեցայ ընդ ձեզ։ Կա-
ցէք յիս՝ և ես 'ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ պը-
տուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաս-
տատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս
5 հաստատեալ իցէք։ Ես եմ որթ՝ և դուք ուռ. որ
հաստատեալ է յիս՝ և ես 'ի նա, նա բերէ պտուղ
6 յոյժ. զի առանց իմ ոչինչ կարէք առնել։ Եթէ
ոք ոչ է հաստատեալ յիս, եւ նա արտաքս իբրև
զուռն՝ և ցամաքեցաւ, և ժողովեն զնա, և 'ի հուր
7 արկանեն՝ և այրի։ Եթէ կայցէք յիս՝ և բանք իմ
'ի ձեզ կայցեն, որ ինչ կամիցիք խնդրեսջիք՝ և լի-
8 նիցի ձեզ։ Յայսմիկ փառաւորեցաւ Հայր իմ,
զի պտուղ յոյժ բերիցէք. և եղիջիք իմ աշակերտք։
9 Որպէս սիրեաց զիս Հայր, և ես սիրեցի զձեզ.
10 հաստատուն կացէք 'ի սէր իմ։ Եթէ պահիցէք ըզ-
պատուիրանս իմ, կացջիք 'ի սէր իմ. որպէս ես
զպատուիրանս Հօր իմոյ պահեցի, և կամ 'ի սէր
11 նորա։ Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ուրախութիւնն
իմ 'ի ձեզ իցէ, և ձեր ուրախութիւն լցեալ եղի-
12 ցի։ Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք զմիմեանս,
13 որպէս և ես զձեզ սիրեցի։ Մեծ ևս քան զայս սէր
ոչ՛ոք ունի, եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկա-
14 մաց իւրոց։ Դուք բարեկամք էք իմ, եթէ առ-

15 նիցէք՝ զոր ես պատուիրեմ ձեզ։ Ո՛չ ևս կոչեմ
զձեզ ծառայս, զի ծառայն ո՛չ գիտէ զի՛նչ գործէ
տէրն նորա. այլ զձեզ կոչեցի բարեկամս, զի զա-
մենայն, զոր լուայ 'ի Հօրէ իմմէ՝ ծանուցի ձեզ։
16 Ո՛չ եթէ դուք ընտրեցէք զիս, այլ ես ընտրեցի
զձեզ, և եդի զձեզ՝ զի դուք երթայցէք և պտղա-
բերք լինիցիք. և պտուղն ձեր կացցէ. և զոր ինչ
խնդրիցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ։
17 Զայս պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս։
18 Եթէ աշխարհ զձեզ ատեայ. գիտասջի՛ք զի նախ
19 զիս ատեաց։ Եթէ յաշխարհէ աստի էիք՝ աշխարհ
զիւրն սիրէր արդեօք. բայց զի չէք յաշխարհէ.
այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ, վասն այնորիկ
20 ատեայ զձեզ աշխարհ։ Յիշեցէք զբանն զոր ասա-
ցի ձեզ. թէ Ո՛չ է ծառայ մեծ քան զտէր իւր. ե-
թէ զիս հալածեցին, ապա և զձեզ հալածեսցեն.
եթէ զբանն իմ պահեցին, ապա և զձերն պահես-
21 ցեն։ Այլ զնոյնս արասցեն ընդ ձեզ վասն անուան
իմոյ. զի ո՛չ գիտեն զայն՝ որ առաքեացն զիս։
22 Իմ եթէ չէր եկեալ՝ և խօսեցեալ ընդ նոսա, մեղ
ինչ ո՛չ գոյր նոցա. բայց արդ չի՛ք պատճառք վասն
23 մեղաց իւրեանց։ Որ զիս ատեայ, և զՀայրն իմ ատ-
24 եայ։ Եթէ զգործսն չէր գործեալ 'ի նոսա, զոր
ո՛չ այլ ոք գործեաց, մեղ ինչ ո՛չ գոյր նոցա,
բայց արդ տեսին՝ և ատեցին և զիս և զՀայր իմ։
25 Այլ զի լցցի բանն, որ յօրէնս նոցա գրեալ է,
26 թէ Ատեցին զիս տարապարտուց։ Բայց յորժամ
եկեսցէ Մխիթարիչն՝ զոր ես առաքեցից ձեզ 'ի Հօ-
րէ՝ զՀոգին ճշմարտութեան, որ 'ի Հօրէ ելանէ,

27 Նա՛ վկայեսցէ վասն իմ. Եւ դուք վկայէք՝ զի ՚ի
սկզբանէ ընդ իս էք ։

## ԳԼ. ԺԶ.

1 Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի՛ գայթակղեսջիք ։
2 ՚Ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ. այլ եկես-
ցէ ժամանակ՝ զի ամենայն որ սպանանիցէ զձեզ,
3 համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ ։ Եւ
զայն արասցեն ընդ ձեզ. քանզի ո՛չ ծանեան զՀայր՝
4 և ո՛չ զիս ։ Այլ և զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի
յորժամ եկեսցէ ժամանակն՝ յիշիցէք՝ թէ ես ա-
5 սացի ձեզ ։ Զայս ՚ի սկզբանէ ո՛չ ասացի ձեզ,
քանզի ընդ ձեզ էի ։ Բայց արդ երթամ ես առ
առաքիչն իմ. և ոչո՛ք ՚ի ձէնջ հարցանէ զիս, ՝ թէ
6 Յո՞ երթաս ։ Այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ,
7 տրտմութիւն ելից զսիրտս ձեր ։ Այլ ես զճշմա-
րիտն ասեմ ձեզ. լաւ է ձեզ եթէ ես երթամ. զի
եթէ ես ոչ երթայց՝ Մխիթարիչն ո՛չ եկեսցէ առ
ձեզ. ապա եթէ երթամ, առաքեցից զնա առ
8 ձեզ ։ Եւ նա եկեալ՝ յանդիմանեսցէ զաշխարհ
վասն մեղաց՝ և վասն արդարութեան՝ և վասն դա-
9 տաստանի ։ Վասն մեղաց՝ զի ո՛չ հաւատան յիս.
10 Վասն արդարութեան՝ զի առ Հայր իմ երթամ,
11 և ո՛չ ես տեսանէք զիս. Վասն դատաստանի՝ զի
12 իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է ։ Եւս
բազում ինչ ունիմ ասել ձեզ՝ այլ ո՛չ կարէք հան-
13 դարտել այժմիկ ։ Յորժամ եկեսցէ նա Հոգին
ճշմարտութեան, առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճըշ-

մարտութեամբ. զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսիցի,
այլ զոր լսիցէ՝ խօսիցի, եւ զգալոցն պատմեսցէ ձեզ։
14 Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի առնու-
15 ցու՝ եւ պատմեսցէ ձեզ։ Զամենայն ինչ զոր ունի
Հայր՝ իմ է. վասն այնորիկ ասացի ձեզ, թէ յիմ-
մէ անտի առնուցու՝ եւ պատմեսցէ ձեզ։
16 Փոքր մի, եւ ոչ եւս տեսանէք զիս, եւ ապա սա-
կաւիկ մի՝ եւ տեսանիցէք զիս. եւ ես երթամ առ
17 Հայր։ Ասէին ոմանք յաշակերտաց անտի ցմիմ-
եանս. Զի՞նչ է այս՝ զոր ասէ ցմեզ, թէ փոքր
մի՝ եւ ոչ տեսանէք զիս, եւ դարձեալ սակաւիկ մի՝
եւ տեսանիցէք զիս. եւ թէ ես առ Հայր երթամ։
18 Եւ ասէին, Զի՞նչ իցէ այն փոքր միւս եւս. չգի-
19 տեմք զի՞նչ խօսի։ Գիտաց Յիսուս եթէ կամէ-
ին զնա հարցանել, եւ ասէ ցնոսա. Վասն այդո-
րիկ խնդրէք ընդ միմեանս՝ զի ասացի թէ փոքր մի՝
եւ ոչ տեսանէք զիս, եւ դարձալ սակաւիկ միւս եւս,
20 եւ տեսանիցէք զիս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի
լացջիք եւ ողբասջիք դուք, եւ աշխարհ խնդասցէ.
դուք տրտմեսջիք, այլ տրտմութիւնն ձեր յուրա-
21 խութիւն եղիցի։ Կին յորժամ ծնանիցի՝ տրտմու-
թիւն է նմա, զի հասեալ է ժամ նորա. այլ յոր-
ժամ ծնցի զմանուկն, ոչ եւս յիշէ զնեղութիւնն
վասն խնդութեանն, զի ծնաւ մարդ յաշխարհ։
22 Եւ դուք այժմ տրտմութիւն ունիք. այլ դարձեալ
տեսից զձեզ, եւ ուրախ լիցին սիրտք ձեր. եւ զու-
23 րախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ ՚ի ձէնջ։ Եւ յայնմ
աւուր զիս ինչ ոչ հարցանիցէք։ Ամէն ամէն ա-
սեմ ձեզ՝ զի զոր ինչ խնդրիցէք ՚ի Հօրէ իմմէ

24 *յանուն իմ, տացէ ձեզ։ Մինչև ցայժմ ոչինչ*
*խնդրեցէք յանուն իմ. խնդրեցէք, և առնուցուք.*
25 *զի ուրախութիւնն ձեր լցեալ իցէ։ Զայս ա-*
*ռակօք խօսեցայ ընդ ձեզ. եկեսցէ ժամանակ՝ յոր-*
*ժամ ոչ ևս առակօք խօսեցայց ընդ ձեզ. այլ*
26 *յայտնապէս զՀօրէ պատմեցից ձեզ։ Յայնմ ա-*
*ւուր խնդրեսջիք յանուն իմ. և ոչ ասեմ ձեզ՝*
27 *եթէ ես աղաչեցից զՀայր վասն ձեր. Զի ինքն*
*իսկ Հայր սիրէ զձեզ՝ զի դուք զիս սիրեցիք, և հա-*
28 *ւատացիք՝ եթէ ես յԱստուծոյ ելի։ Ելի ՚ի Հօրէ՝*
*և եկի յաշխարհ. դարձեալ թողում զաշխարհ,*
29 *և երթամ առ Հայր։ Ասեն ցնա աշակերտքն.*
*Ահա արդ յայտնութեամբ խօսիս. և առակ և ոչ*
30 *մի ինչ ասես։ Այժմիկ գիտեմք՝ եթէ գիտես զա-*
*մենայն. և ոչինչ պիտոյ է՝ եթէ ոք հարցանիցէ ըզ-*
*քեզ. յայսմիկ հաւատամք՝ եթէ յԱստուծոյ ե-*
31 *լեր։ Պատասխանի ետ նոցա Յիսուս, և ասէ.*
32 *Այժմ հաւատայք։ Ահա եկեսցէ ժամ, և եկեալ*
*իսկ է, զի ցրուեսջիք յիւրաքանչիւր տեղիս, և զիս*
*միայն թողուցուք. և չեմ միայն, զի Հայր ընդ իս է։*
33 *Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ընդ իս խաղաղու-*
*թիւն ունիցիք. յաշխարհի աստ նեղութիւն ու-*
*նիցիք, այլ քաջալերացարո՛ւք, զի ես յաղթեցի*
*աշխարհի։*

## ԳԼ. ԺԷ.

1 *Զայս իբրև խօսեցաւ Յիսուս, ամբարձ զաչս*
*իւր յերկինս և ասէ. Հա՛յր՝ հասեալ է ժամ, փա-*
*ռաւորեա՛ զՈրդի քո, զի և Որդի քո փառաւորեսցէ*

2 զքեզ: Որպէս ետուր նմա իշխանութիւն ամենայն
մարմնոյ, զի ամենայնի, զոր ետուր նմա, տացէ
3 զկեանսն յաւիտենականս: Այս են յաւիտենական
կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած՝
4 և զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս: Ես զքեզ
փառաւորեցի յերկրի. զգործն կատարեցի, զոր ե-
5 տուր ցիս՝ զի արարից. Եւ այժմ փառաւորեա
զիս Հայր՝ առ ի քէն փառօքն՝ զոր ունէի յառաջ
6 քան զլինելն աշխարհի առ ի քէն: Յայտնեցի
զանուն քո մարդկանն՝ զորս ետուր ինձ յաշխարհէ.
քո էին, և ինձ ետուր զնոսա. և զբանն քո պա-
7 հեցին: Արդ գիտացին՝ եթէ զամենայն ինչ զոր
8 ետուր ինձ, առ ի քէն են. Զի զբանն՝ զոր ե-
տուր ինձ՝ ետու նոցա. և նոքա ընկալան, և ծա-
նեան ճշմարտութեամբ՝ թէ առ ի քէն ելի. և հա-
9 ւատացին՝ եթէ դու առաքեցեր զիս: Արդ ես վասն
նոցա աղաչեմ, և ոչ վասն աշխարհի աղաչեմ.
այլ վասն նոցա՝ զորս ետուրն ինձ, զի քո են:
10 Եւ որ ինչ իմ է, ամենայն քո է. և որ ինչ քո է,
11 այն իմ է. և փառաւորեալ եմ ի նոսա: Եւ ես
ոչ և'ս եմ յաշխարհի, և նոքա յաշխարհի են,
և ես առ քեզ գամ. Հայր Սուրբ՝ պահեա զնո-
սա յանուն քո, որով ետուրն ինձ, զի եղիցին մի,
12 որպէս և մեք մի եմք: Մինչ էի յաշխարհի ընդ
նոսա, ես պահէի զնոսա յանուն քո՝ * որով ետուրն
ինձ, և պահեցի. և ոչ'ք ի նոցանէ կորեաւ, բայց
որդին կորստեան, զի գիրն լցցի:

---

* Ի Յոյնն, զորս ետուրն ինձ պահեցի

13 Բայց արդ առ քեզ գամ. և զայս խօսիմ յաշխար-
հի, զի ունիցին զուրախութիւնն իմ լիով յանձինս
14 իւրեանց: Ես ետու նոցա զբանն քո. և աշխարհս
ատեաց զնոսա, զի չեն յաշխարհէ, որպէս և ես
15 չեմ յաշխարհէ: Ոչ զայս աղաչեմ, զի բարձցես
զնոսա յաշխարհէ. այլ զի պահեսցես զնոսա 'ի
16 չարէ: Յաշխարհէ աստի չեն, որպէս և ես չեմ
17 յաշխարհէ: Սուրբ արա զնոսա ճշմարտութեամբ
18 քով. զի քո բանդ ճշմարտութիւն է: Որպէս զիս
առաքեցեր յաշխարհ. և ես առաքեցի զնոսա յաշ-
19 խարհ: Եւ 'ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն
իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտու-
20 թեամբ: Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ, այլ
և վասն ամենայն հաւատացելոց բանիւն նոցա յիս.
21 Զի ամենեքին մի իցեն, որպէս դու Հայր յիս՝
և ես 'ի քեզ, զի և նոքա 'ի մեզ իցեն. զի և
աշխարհ հաւատասցէ՝ եթէ դու առաքեցեր զիս:
22 Եւ ես՝ զփառսն զոր ետուր ինձ՝ ետու նոցա, զի
23 իցեն մի՝ որպէս և մեք մի եմք: Ես 'ի նոսա և դու
յիս, զի եղիցին կատարեալք 'ի մի. և գիտասցէ
աշխարհ՝ եթէ դու առաքեցեր զիս. և սիրեցի զնո-
24 սա որպէս դու զիս սիրեցեր: Հայր՝ զորս ետուրն
ինձ, կամիմ՝ զի ուր եսն եմ, և նոքա իցեն ընդ
իս. զի տեսանիցեն զփառսն իմ, զոր ետուրն ցիս.
զի սիրեցեր զիս յառաջ քան զլինելն աշխարհի:
25 Հայր արդար՝ և աշխարհ զքեզ ոչ ծանեաւ. այլ
ես զքեզ ծանեայ. և նոքա ծանեան՝ եթէ դու ա-
26 ռաքեցեր զիս: Եւ ծանուցի նոցա զանունն քո՝ և
ծանուցից. զի սէրն՝ զոր սիրեցեր զիս 'ի նոսա իցէ,
և ես 'ի նոսա:

## ԳԼ. ԺԸ.

1 Զայս իբրեւ ասաց Յիսուս, ել աշակերտօքն հան-
դերձ յայնկոյս ձորոյն Կեդրոնի, ուր էր պարտէզ,
յոր եմուտ ինքն եւ աշակերտքն իւր։
2 Գիտէր եւ Յուդա, որ զնա մատնելոց էր՝ զտե-
ղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յի-
3 սուսի աշակերտօքն հանդերձ։ Եւ Յուդայի առեալ
ընդ իւր զգունդն, եւ 'ի քահանայապետիցն եւ 'ի
փարիսեցւոց սպասաւորս, գայ անդր ջահիւք եւ
4 լապտերօք եւ զինուք։ Իսկ Յիսուս իբրեւ ետես զայն
ամենայն եկեալ 'ի վերայ նորա, ել եւ ասէ ցնոսա.
5 Զո՞ խնդրէք։ Պատասխանի ետուն նմա. զՅիսուս
Նազովրեցի. ասէ ցնոսա Յիսուս. Ե՛ս եմ. կայր
6 ընդ նոսա եւ Յուդա՝ որ մատնէրն զնա։ Իբրեւ ա-
սաց՝ թէ Ես եմ, յետս յետս չոգան՝ եւ զարկան
7 զգետնի։ Դարձեալ եհարց զնոսա. Զո՞ խնդրէք՝
8 եւ նոքա ասեն, զՅիսուս Նազովրեցի։ Պատասխա-
նի ետ նոցա Յիսուս. Ասացի ձեզ թէ Ես եմ.
արդ՝ եթէ զիս խնդրէք՝ թո՛յլ տուք դոցա երթալ։
9 Զի լցցի բանն՝ զոր ասաց. թէ Զոր ետուրն ցիս՝
10 ոչ կորուսից 'ի նոցանէ՝ եւ ոչ զոք։ Իսկ Սիմովն
Պետրոս՝ քանզի ունէր սուր, ձգեաց զնա՝ եհար
զքահանայապետին ծառայ, եւ 'ի բաց առ զունկն
11 նորա զաջոյ. եւ էր անուն ծառային Մաղքոս։ Ասէ
Յիսուս ցՊետրոս. Արկ զսուրդ անդրէն 'ի պատ-
եանս իւր. զբաժակն զոր ետ ինձ Հայր՝ ո՞չ ըմպի-
12 ցեմ զնա։ Իսկ գունդն եւ հազարապետն եւ սպա-
13 սաւորք Հրէիցն կալան զՅիսուս՝ եւ կապեցին. Եւ

ածին զնա նախ առ Աննա՝ որ էր աներ Կայիափա–
14 յի. որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ։ Այս
այն Կայիափա էր՝ որ խրատն ետ Հրէից, եթէ լաւ
15 է առն միում մեռանել ՚ի վերայ ժողովրդեանն։ Եւ
երթային զհետ Յիսուսի Սիմոն Պետրոս՝ և միւս ա–
շակերտն։ Եւ աշակերտն այն քանզի ծանօթ էր քա–
հանայապետին՝ եմուտ ընդ Յիսուսի ՚ի գաւիթ քա–
16 հանայապետին։ Եւ Պետրոս կայր առ դրանն ար–
տաքոյ. ել միւս աշակերտն՝ որ էր ծանօթ քահա–
նայապետին՝ և ասաց դռնապանն՝ և եմոյծ ՚ի ներքս
17 զՊետրոս։ Ասէ աղջիկն որ դռնապանն էր՝ ցՊետ–
րոս. Մի՞թէ և դու յաշակերտաց առնն այնորիկ ի–
18 ցես. և նա ասէ՝ Ո՛չ եմ։ Կային անդ ծառայքն
և սպասաւորքն խարոյկ արկեալ՝ քանզի ցուրտ էր՝
և ջեռնուին. կայր ընդ նոսա և Պետրոս՝ և ջեռնոյր։
19 Եւ քահանայապետն եհարց զՅիսուս վասն աշա–
20 կերտացն՝ և վասն վարդապետութեան նորա։ Պա–
տասխանի ետ նմա Յիսուս. Ես յայտնապէս խօ–
սեցայ յաշխարհի. ես յամենայն ժամ ուսուցի ՚ի
ժողովրդեանն, և ՚ի տաճարի անդ՝ ուր ամենայն
Հրէայք ժողովեալ էին, և ՚ի ծածուկ ինչ ո՛չ խօ–
21 սեցայ։ Զի՞ հարցանես զիս. հա՛րց զայնոսիկ՝ որ
լուանն, թէ զի՛նչ խօսեցայ ընդ նոսա. ահաւանիկ
22 նոքա գիտեն զի՛նչ ասացի ես։ Իբրև նա զայն ա–
սաց, մի ոմն ՚ի սպասաւորացն որ անդ կայր, ած
ապտակ Յիսուսի՝ և ասէ. Ո՞րպէս պատասխանի
23 տաս քահանայապետին։ Եւ Յիսուս ասէ ցնա.
Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա՛ վասն չարին, իսկ
24 եթէ բարի, ընդէ՞ր հարկանես զիս։ Եւ առաքեաց

զնա Աննա կապեալ առ Կայիափա քահանայա-
25 պետ ։ Եւ Սիմովն Պետրոս կայր անդ՝ և ջեռնոյր ․
ասեն ցնա՝ Միթէ և դու յաշակերտաց նորա նո-
26 րա իցես ․ նա ուրացաւ և ասէ՝ թէ Ոչ եմ ։ Եւ ա-
սէ մի ոմն ՚ի ծառայից քահանայապետին՝ ազգական
այնորիկ , զորոյ զունկն եհատ Պետրոս ․ Ո՞չ ես իսկ
27 տեսի զքեզ ՚ի պարտիզի անդ ընդ նմա ։ Դարձ-
եալ ուրացաւ Պետրոս ․ և վաղվաղակի հաւ խօ-
սեցաւ ։
28 Եւ ածեն զՅիսուս ՚ի վանացն Կայիափայ յա-
պարանս դատաւորին ․ և էր այգուց ․ և նոքա ոչ մը-
տին յապարանն , զի մի պղծեսցին , այլ զի ու-
29 տիցեն զզատիկն ։ Ել առ նոսա Պիղատոս արտաքս՝
և ասէ ․ Զի՞նչ չարախօսութիւն մատուցանէք
30 զառնէն զայնմանէ ։ Պատասխանի ետուն և ասեն
ցնա ․ Եթէ չէր չարագործ այրն այն , ապա ոչ
31 մատնէաք զնա քեզ ։ Ասէ ցնոսա Պիղատոս ․ Ա-
ռէք զնա դուք , և ըստ ձերոց օրինացն դատեցա-
րո՛ւք ․ ասեն ցնա Հրէայքն ․ Մեզ ոչ է արժան
32 սպանանել զոք ։ Զի լցցի բանն Յիսուսի զոր ա-
սաց , նշանակեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ ։
33 Եմուտ միւսանգամ յապարանն Պիղատոս , կոչ-
եաց զՅիսուս՝ և ասէ ցնա ․ Դու ես թագաւորն
34 Հրէից ։ Պատասխանի ետ Յիսուս ․ ՚Ի քէ՞ն ասես
35 զայդ՝ եթէ այլք ասացին քեզ զինէն ։ Պատաս-
խանի ետ Պիղատոս ․ Միթէ և ես Հրեա՞յ իցեմ ․
ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ ․
36 զի՞նչ գործ գործեալ է քո ։ Պատասխանի ետ
Յիսուս , Իմ արքայութիւն չէ՛ յայսմ աշխարհէ ․

եթէ յաշխարհէ աստի էր արքայութիւնն իմ,
սպասաւորքն իմ մարտնչէին արդեօք՝ զի մի՛ մատ-
նեցայց Հրէից. բայց արդ՝ թագաւորութիւնն իմ
37 չէ՛ աստի։ Ասէ ցնա Պիղատոս. Ապա թէ այդպէս
իցէ, թագաւոր ոչ ես դու։ Պատասխանի ետ Յի-
սուս. Դու ասես՝ թէ թագաւոր իցեմ. բայց ես
յայդ իսկ ծնեալ եմ, և ՚ի դոյն իսկ եկեալ եմ
յաշխարհ, զի վկայեցից ճշմարտութեանն. ամե-
նայն որ ՚ի ճշմարտութենէ է՝ լսէ բարբառոյ իմոյ։
38 Ասէ ցնա Պիղատոս. Զի՞նչ է ճշմարտութիւն.
զայս իբրև ասաց, դարձեալ ել առ Հրէայսն՝ և
ասէ ցնոսա. Ես՝ և ո՛չ մի ինչ պատճառս գտա-
39 նեմ ՚ի նմա։ Բայց է ձեր սովորութիւն, զի զմի
ոք արձակեցից ձեզ ՚ի զատկիս. արդ կամի՞ք՝ զի
40 արձակեցից ձեզ զթագաւորն Հրէից։ Աղաղակե-
ցին ամենեքեան՝ և ասէին. Մի՛ զդա, այլ զԲա-
րաբբա. և էր Բարաբբայն այն աւազակ։

## ԳԼ. ԺԹ

1 Յայնժամ առ Պիղատոս զՅիսուս՝ և գան եհար։
2 Եւ զինուորացն արարեալ պսակ ՚ի փշոց՝ եդին ՚ի
գլուխ նորա, և զգեցուցին նմա հանդերձ ծիրանի.
3 Եւ գային առ նա, և ասէին, Ո՛ղջ եր արքայ Հրէ-
4 ից. և հանէին նմա ապտակս։ Ել դարձեալ Պի-
ղատոս արտաքս և ասէ ցնոսա. Ահա՛ ածեմ զնա
արտաքս առ ձեզ, զի գիտասջիք թէ ես վնաս ինչ
5 ՚ի նմա ո՛չ գտանեմ։ Ել Յիսուս արտաքս, և ու-
նէր պսակ ՚ի փշոց՝ և հանդերձ ծիրանի. և ասէ

6 ցնոսա․ Ահա այրդ *ցձեզ։ Իբրև տեսին զնա քա-
հանայապետքն և սպասաւորքն, զաղաղակ բարձին՝
և ասեն․ Ի խաչ հան՝ ’ի խաչ հան զդա․ ասէ
ցնոսա Պիղատոս․ Առէք զդա ’ի ձեզ, և ձեզէն հա-
նէք ’ի խաչ․ զի ես ’ի դմա վնաս ինչ ոչ գտանեմ։
7 Պատասխանի ետուն նմա Հրեայքն․ Մեք օրէնս ու-
նիմք․ և ըստ օրինաց մերոց պարտի մեռանել․ զի
8 զանձն իւր Որդի Աստուծոյ արար։ Իբրև լուաւ ըզ-
9 բանս զայս Պիղատոս, առաւել ևս երկեաւ։ Ե-
մուտ դարձեալ անդրէն յապարանսն, և ասէ ցՅի-
սուս․ Ուստի՞ ես դու․ և Յիսուս ոչ ետ նմա պա-
10 տասխանի։ Ասէ ցնա Պիղատոս․ Ընդ իս ոչ խօ-
սիս, ոչ գիտես եթէ իշխանութիւն ունիմ հա-
նել զքեզ ’ի խաչ, և իշխանութիւն ունիմ արձա-
11 կել զքեզ։ Պատասխանի ետ Յիսուս․ Ո՛չ ունէ-
իր դու իշխանութիւն ’ի վերայ իմ և ոչ մի, եթէ
ոչ էր տուեալ քեզ ’ի վերուստ․ վասն այնորիկ որ
12 մատնեացն զիս քեզ, նորա մեծ մեղք են։ Եւ
յայնմանէ Պիղատոս խնդրէր արձակել զնա․ և
Հրեայքն աղաղակէին և ասէին․ Եթէ զդա ար-
ձակես՝ չես բարեկամ Կայսեր․ ամենայն ոք որ թա-
13 գաւոր կոչէ զանձն իւր, հակառակ է Կայսեր։ Իսկ
Պիղատոս իբրև լուաւ զբանս զայսոսիկ, ած զՅի-
սուս արտաքս․ և նստաւ ’ի վերայ բեմին, ’ի տեղ-
ւոջն որ կոչէր ՙՔարայատակ, և Եբրայեցերէն
14 Կապպաթա։ Էր ուրբաթն զատկի․ և էր ժամ
իբրև վեցերորդ, և ասէ ցՀրեայսն․ Ահա թա-

* Ի Յոյնն չէ։

15 գաւորդ ձեր ցձեզ ։ Եւ նոքա աղաղակէին , Բարձ
’ի մէնջ բարձ ’ի մէնջ՝ և հան զդա ’ի խաչ . ասէ
ցնոսա Պիղատոս . Եւ զթագաւորդ ձեր ’ի խաչ
հանիցեմ . պատասխանի ետուն քահանայապետքն .
16 Չիք մեր թագաւոր՝ բայց ’ի կայսերէ ։ Յայնժամ
ետ զնա ’ի ձեռս նոցա , զի ’ի խաչ ելանիցէ ։
17 Եւ նոքա առեալ տանէին զնա . և բարձեալ էր
ինքնին զխաչափայտն . և ելանէր ’ի տեղին՝ որ ան-
ուանեալ էր Գագաթն , և կոչէր Եբրայեցերէն
18 Գողգոթա . Ուր և ’ի խաչն իսկ հանին զնա . և ընդ
նմա երկուս ևս այլս աստի և անտի , և ’ի մէջի զՅի-
19 սուս ։ Գրեաց և տախտակ մի Պիղատոս , և եդ ’ի վե-
րայ խաչին . և էր գրեալ . ՅԻՍՈՒՍ ՆԱԶՈՎՐ-
20 ԵՑԻ ԹԱԳԱՒՈՐ ՀՐԷԻՑ ։ Զայն տախտակ
ընթերցան բազումք ’ի Հրէից , զի մօտ էր ’ի քա-
ղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յիսուս . և էր
գրեալ Եբրայեցերէն , Հռովմայեցերէն և Յունա-
21 րէն ։ Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից .
Մ՛ի գրեր Թագաւոր Հրէից , այլ թէ Նա ասաց՝
22 Թագաւոր եմ Հրէից ։ Պատասխանի ետ Պիղա-
23 տոս . Զոր ինչ գրեցի՝ գրեցի ։ Իսկ զինուորքն իբ-
րև հանին ’ի խաչ զՅիսուս , առին զհանդերձս
նորա՝ և արարին չորս մասունս , իւրաքանչիւր զին-
ուորի մասն . և զպատմուճանն՝ քանզի էր առանց
24 կարանի՝ ’ի վերուստ փորանկեալ ամենևին . Ասեն
ցմիմեանս . Մ՛ի պատառեսցուք զայդ , այլ արկ-
ցուք վիճակս ’ի վերայ դորա՝ ում և ելցէ . զի
լցցի գիրն՝ որ ասէ . Բաժանեցին զհանդերձս իմ
յիւրեանս , և ’ի վերայ պատմուճանի իմոյ վի-

ճակս արկին ։ Զինուորքն զայս ինչ գործեցին ։
25 Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն Նորա , և
քոյր մօր Նորա Մարիամ Կղէովպայ , և Մարիամ
26 Մագդաղենացի ։ Յիսուս իբրև ետես զմայրն և
զաշակերտն՝ զոր սիրէր , զի կայր մօտ․ ասէ ցմայրն ,
27 Կին դու՝ ահա՛ որդի քո ։ Ապա ասէ ցաշակերտն․
Ահա՛ մայր քո․ և յայնմ ժամանակէ ա՛ռ աշա-
28 կերտն զնա առ իւր ։ Յետ այսորիկ իբրև գիտաց
Յիսուս , եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է ,
29 զի կատարեսցի գիրն , ասէ․ Ծարաւի եմ ։ Եւ
անդ կայր աման ինչ լի քացախով․ և Նոցա
սպունգ լցեալ քացախով *ընդ լեղւոյ" շուրջ եդ-
եալ զմշտկաւ զոպայի՝ մատուցին 'ի բերան Նո-
30 րա ։ Իբրև ա՛ռ Յիսուս զքացախն *հանդերձ լեղ-
ւովն" ասէ․ Ամենայն ինչ կատարեալ է․ և խո-
31 նարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին ։ Իսկ
Հրէայքն՝ քանզի ուրբաթ էր , զի մի՛ անդէն 'ի
խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն , զի
էր օր մեծ շաբաթուն այնորիկ․ աղաչեցին զՊիղա-
տոս՝ զի խորտակեսցեն զբարձս Նոցա՝ և բարձցին ։
32 Եկին զինուորքն , և զառաջնոյն խորտակեցին ըզ-
բարձս , նոյնպէս և զմիւսոյն՝ որ ընդ Նմա 'ի խաչն
33 ելեալ էր ։ Բայց իբրև եկին առ Յիսուս՝ և տե-
սին զի այն ինչ մեռեալ էր , ո՛չ խորտակեցին ըզ-
34 բարձս Նորա․ Այլ մի ոմն 'ի զինուորացն տիգաւ
խոցեաց զկողս Նորա․ և ել վաղվաղակի արիւն և
35 ջուր․ Եւ որ ետեսն՝ վկայեաց և ճշմարիտ է վկա-

---

* 'Ի Յոյնն չիք ։

յութիւն նորա. եւ նա գիտէ թէ ճշմարիտ ասէ.
36 զի եւ դուք հաւատասջիք։ Այս եղեւ՝ զի լցցի գիրն.
37 եթէ Ոսկր նորա մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս
գիր ասէ, եթէ Հայեսցին ՚ի նա՝ յոր խոցեցինն։
38 Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս Յովսէփ, որ
յԱրիմաթեայ էր՝ աշակերտ Յիսուսի ՚ի ծածուկ՝
վասն ահին Հրէից, զի բարձցէ զմարմինն Յիսու-
սի. եւ հրամայեաց Պիղատոս. եկն եւ եբարձ զնա։
39 Եկն եւ Նիկոդեմոս՝ որ եկեալն էր առ Յիսուս ՚ի
գիշերի զառաջինն. եւ եբեր զմուռս խառն ընդ հալ-
40 ուէս՝ իբրեւ լտերս հարիւր։ Առին զմարմինն Յի-
սուսի, եւ պատեցին կտաւովք՝ խնկովք հանդերձ,
41 որպէս օրէն էր Հրէից պատել։ Եւ էր ՚ի տեղ-
ւոջն յորում խաչեցաւ՝ պարտէզ. եւ ՚ի պարտիզի
անդ գերեզման նոր, յորում ոչ ոք երբէք էր եդ-
42 եալ։ Անդ վասն ուրբաթուն Հրէից՝ զի մօտ էր
գերեզմանն՝ եդին զՅիսուս։

## ԳԼ. Ի

1 Եւ ՚ի միաշաբաթւոջն Մարիամ Մագդաղենա-
ցի գայ առաւօտուն ընդ արշալոյսն ՚ի գերեզման
անդր, եւ տեսանէ զվէմն բարձեալ ՚ի դրաց գե-
2 րեզմանին։ Ապա ընթանայ՝ եւ գայ առ Սիմովն
Պետրոս եւ առ միւս աշակերտն՝ զոր սիրէր Յի-
սուս, եւ ասէ ցնոսա. Բարձին զՏէրն ՚ի գերեզ-
3 մանէ անտի, եւ ո՛չ գիտեմ՝ ո՛ւր եդին զնա։ Ել
Պետրոս եւ միւս աշակերտն՝ եւ գային ՚ի գերեզմանն.
4 Ընթանային երկոքեան ՚ի միասին. եւ միւս աշա-

կերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան ըզ–
5 Պետրոս՝ և եկն նախ ՚ի գերեզմանն ։ Եւ խոնարհ–
եալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն , բայց ՚ի
6 ներքս ոչ եմուտ ։ Եկն և Սիմովն Պետրոս՝ որ գայրն
զկնի նորա , և եմուտ ՚ի գերեզմանն , և տեսանէ
7 զկտաւսն՝ զի կային անդ ․ Եւ վարշամակն որ էր ՚ի
գլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր , այլ ու–
8 րոյն ծալեալ ՚ի մի կողմն ։ Յայնժամ եմուտ և միւս
աշակերտն , որ եկեալն էր յառաջագոյն ՚ի գերեզ–
9 մանն , ետես և հաւատաց ․ Զի չև՛ս գիտէին ըզ–
10 գիրս՝ թէ Պարտ է նմա ՚ի մեռելոց յառնել ։ Չո–
11 գան դարձեալ առ միմեանս աշակերտքն ։ Բայց
Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին՝ և լայր ․ և
12 մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ՚ի գերեզմանն , Եւ
տեսանէ երկուս հրեշտակս ՚ի սպիտակս , զի նստէ–
ին մի ՚ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն
13 Յիսուսի ։ Եւ նոքա ասեն ցնա ․ Կին դու՝ զի՞ լաս ․
ասէ ցնոսա ․ Զի բարձին զՏէրն իմ ՚ի գերեզ–
14 մանէ աստի , և ոչ գիտեմ՝ ո՛ւր եդին զնա ։ Զայս
իբրև ասաց , դարձաւ ՚ի թիկունս կոյս , և տեսա–
նէ զՅիսուս զի կայր ․ և ոչ գիտէր թէ Յիսուս
15 իցէ ։ Ասէ ցնա Յիսուս ․ Կին դու՝ զի՞ լաս , զո՞
խնդրես ․ Նմա այսպէս թուեցաւ թէ պարտիզպանն
իցէ , ասէ ցնա ․ Տէր եթէ դու բարձեր զնա՝ ասա՛
16 ինձ ուր եդիր զնա , զի ես առից զնա ։ Ասէ ցնա
Յիսուս ․ Մա՛րիամ ․ և նա դարձաւ , և ասէ ցնա
Եբրայեցերէն ․ Ռա՛բունի , որ թարգմանի՝ Վար–
17 դապետ ։ Ասէ ցնա Յիսուս ․ Մի՛ մերձենար յիս ,
զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ ․ այլ երթ դու

առ եղբարսն իմ, և ասա՛ ցնոսա. Ելանեմ ես առ
Հայրն իմ՝ և առ Հայր ձեր, և Աստուածն իմ՝
18 և Աստուած ձեր։ Գայ Մարիամ Մագդաղենացի՝
և պատմէ աշակերտացն, եթէ տեսի ես զՏէր,
19 և զայս ինչ ասաց ցնա։ Եւ էր երեկոյ 'ի միա-
շաբաթւոջ աւուրն. և դրօք փակելովք՝ ուր էին
աշակերտքն ժողովեալ վասն ահին Հրէից, եկն
Յիսուս՝ և եկաց 'ի մէջ նոցա, և ասէ ցնոսա.
20 Ողջո՛յն ընդ ձեզ։ Իբրև զայս ասաց՝ եցոյց նոցա
զձեռսն և զկողս իւր. և խնդացին աշակերտքն իբ-
21 րև տեսին զՏէր։ Ասէ ցնոսա դարձեալ. Ողջո՛յն
ընդ ձեզ, որպէս առաքեաց զիս Հայր իմ, և ես
22 առաքեմ զձեզ։ Եւ զայս իբրև ասաց՝ փչեաց 'ի
23 նոսա՝ և ասէ. Առէ՛ք Հոգի Սուրբ։ Եթէ ումեք
թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա. եթէ զու-
24 րուք ունիցիք՝ կալեալ լիցի։ Իսկ Թովմաս մի յեր-
կոտասանիցն՝ անուանեալն Երկուորեակ, ո՛չ էր
25 ընդ նոսա՝ յորժամ եկն Յիսուս։ Ասէին ցնա
այլ աշակերտքն, եթէ Տեսաք զՏէր. և նա ա-
սէ ցնոսա. Եթէ ո՛չ տեսից 'ի ձեռս նորա զնշան
բևեռացն, և արկից զմատունս իմ 'ի տեղիս բևե-
ռացն, և մխեցից զձեռս իմ 'ի կողս նորա, ո՛չ հա-
ւատամ։

26 Եւ յետ ութ աւուր դարձեալ էին 'ի ներքս ա-
շակերտքն, և Թովմաս ընդ նոսա. գայ Յիսուս
դրօքն փակելովք. և եկաց 'ի մէջ, և ասէ Ողջո՛յն
27 ընդ ձեզ։ Ապա ասէ ցԹովմաս. Բե՛ր զմատունս
քո՝ և ա՛րկ այսր, և տե՛ս զձեռս իմ, և բե՛ր զձեռն
քո՝ և մխեա՛ 'ի կողս իմ, և մի՛ լինիր անհաւատ,

28 այլ հաւատացեալ: Պատասխանի ետ Թովմաս՝
29 և ասէ ցնա. Տէ՛ր իմ՝ և Աստուած իմ: Ասէ ցնա
Յիսուս. Այդ զի տեսեր զիս՝ և հաւատացեր.
երանի՜ որոց ո՛չ իցէ տեսեալ՝ և հաւատասցեն:
30 Բազում և այլ նշանս արար Յիսուս առաջի աշա-
կերտաց իւրոց՝ որ ո՛չ է գրեալ ՚ի գիրս յայսմիկ:
31 Այլ այս այնչափ ինչ գրեցաւ՝ զի հաւատայցէք ե-
թէ Յիսուս Քրիստոս է Որդի Աստուծոյ. և զի
հաւատայցէք, և զկեանսն յաւիտենականս ընդու-
նիցիք յանուն նորա:

## ԳԼ. ԻԱ.

1 Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր
Յիսուս աշակերտացն իւրոց առ ծովեզերբն Տի-
2 բերեայ, և յայտնեաց այսպէս: Էին ՚ի միասին
Սիմովն Պետրոս, և Թովմաս անուանեալն Երկ-
ուորեակ, և Նաթանայէլ՝ որ ՚ի Կանայ Գալիլեա-
ցւոց, և որդիքն Զեբեդեայ, և այլք յաշակեր-
3 տաց անտի երկու: Ասէ ցնոսա Սիմովն Պետրոս.
Երթամ ձուկն որսալ. ասեն ցնա. Գամք և մեք
ընդ քեզ. գնացին և մտին ՚ի նաւ՝ և յայնմ գի-
4 շերի կալան և ո՛չինչ: Իբրև այգ եղև՝ կայր Յի-
սուս յեզր ծովուն, բայց ո՛չ ծանեան աշակերտքն
5 թէ Յիսուս իցէ: Ասէ ցնոսա Յիսուս. Մանկո՛ւնք՝
միթէ ունիք ինչ ուտելոյ. պատասխանի ետուն և
6 ասեն ցնա, Ո՛չ: Ասէ ցնոսա. Արկէք յաջակողմն
նաւին զուռկանդ, և գտանիցէք. արկին, և ո՛չ
7 կարէին ձգել ՚ի բազմութենէ անտի ձկանցն: Ասէ

աշակերտն այն , զոր սիրէրն Յիսուս՝ ցՊետրոս .
Տէր է այն . Սիմովն Պետրոս իբրեւ լուաւ թէ Տէր
է , արկաւ զիւրեւ զսփածանելին՝ քանզի մերկ էր ,
8 եւ ընկէց զինքն 'ի ծովն ։ Եւ այլ աշակերտքն նա-
ւաւն խաղային , քանզի չէին հեռի 'ի ցամաքէն .
այլ իբրեւ երկերիւր կանգնաւ՝ քարշէին զգործին
9 հանդերձ ձկամբն ։ Իբրեւ ելին 'ի ցամաք , տեսա-
նեն կրակետղ կայծականց , եւ ձուկն մի 'ի վերայ ,
10 եւ հաց ։ Ասէ ցնոսա Յիսուս . Բերէք 'ի ձկանց
11 այտի՝ զոր դուքդ կալարուք այժմիկ ։ Ել Սի-
մովն Պետրոս , եւ ձգէր 'զգործին 'ի ցամաք՝ լի մե-
ծամեծ ձկամբք , հարիւր յիսուն եւ երիւք . եւ այն-
12 չափ ինչ կայր , եւ ոչ պատառեցաւ գործին ։ Ա-
սէ ցնոսա Յիսուս . Եկայք ճաշակեցէք . եւ 'ոչ ոք
յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ Դու ո՞վ ես ,
13 զի գիտէին թէ Տէրն է ։ Գայ Յիսուս՝ եւ առնու
14 զհացն՝ եւ տայ նոցա , նոյնպէս եւ զձուկնն ։ Զայս
երիցս անգամ երեւեցաւ Յիսուս աշակերտացն՝ յա-
րուցեալ 'ի մեռելոց ։
15 Եւ իբրեւ ճաշեցին , ասէ ցՍիմովն Պետրոս Յի-
սուս . Սիմովն Յովնանու , սիրե՞ս զիս առաւել քան
զդոսա . ասէ ցնա . Այո՛ Տէր , եւ դու գիտես զի
սիրեմ զքեզ . ասէ ցնա՝ Արածեա՛ զգառինս իմ ։
16 Դարձեալ ասէ ցնա . Սիմովն Յովնանու , սիրե՞ս
զիս . ասէ ցնա . Այո՛ Տէր , եւ դու գիտես՝ զի սի-
17 րեմ զքեզ . ասէ ցնա՝ Արածեա՛ զոչխարս իմ ։ Ասէ
ցնա երիցս անգամ . Սիմովն Յովնանու , սիրե՞ս զիս .
տրտմեցաւ Պետրոս , զի ասաց ցնա երիցս՝ թէ Սի-
րե՞ս զիս . եւ ասէ ցնա , Տէր՝ դու զամենայն գիտես .

և դու իսկ զամենայն ճանաչես , և եթէ սիրեմ ըզ-
քեզ . ասէ ցնա Յիսուս . Արածեա զոչխարս իմ ։
18 Ամէն ամէն ասեմ քեզ՝ զի մինչ մանուկն էիր ,
անձամբ անձին գօտի ածէիր՝ և երթայիր յո՛ և կա-
մէիր . և յորժամ ծերասցիս , ձեռս 'ի վեր կալ-
ցես . և այլք ածցեն քեզ գօտի , և տարցին՝ ուր
19 ոչն կամիցիս ։ Զայս ասաց՝ նշանակելով թէ որով
մահու փառաւոր առնիցէ զԱստուած . և զայս իբ-
20 րև ասաց , ասէ ցնա . Եկ զկնի իմ ։ Դարձաւ
Պետրոս՝ և տեսանէ զաշակերտն՝ զոր սիրէր Յի-
սուս , զի երթայր զկնի , որ և անկաւ զլանջօքն նո-
րա՝ և ասէ , Տէր ո՞վ է՝ որ մատնելոցն է զքեզ ։
21 Զնա տեսեալ Պետրոսի , ասէ ցՅիսուս . Տէր՝
22 իսկ սա զի՞ ։ Ասէ ցնա Յիսուս . Եթէ կամիմ ,
զի կացցէ դա՝ մինչև ես գամ . քեզ զի՞ փոյթ է՝
23 դու եկ զկնի իմ ։ Ել բանս այս յեղբարս՝ և հա-
մարեցան թէ աշակերտն այն ոչ մեռանիցի . և ոչ
ասաց նմա Յիսուս եթէ ոչ մեռանիցի . այլ թէ
24 կամիմ ես՝ թէ կացցէ դա՝ մինչև ես գամ ։ Այս
աշակերտ է՝ որ վկայէ վասն այսորիկ . որ և գըր-
եացն իսկ զայսոսիկ . և գիտեմք , եթէ ճշմարիտ է
25 վկայութիւն նորա ։ Բայց է և այլ ինչ բազում
զոր արար Յիսուս , զոր եթէ գրեալ էր մի ըստ
միոջէ , կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր
տանել զգիրսն՝ որ թէ գրեալ էին ։

# Գ Ո Ր Ծ Ք

## ԱՌԱՔԵԼՈՑ

---

### ԳԼ. Ա

1 ԶԲԱՆՆ առաջին՝ զոր արարի վասն ամենայնի ո՛
Թէոփիլէ, զոր սկսաւ Յիսուս առնել եւ ուսու-
2 ցանել, Մ՝ինչեւ յօրն պատուիրելոյ առաքելոցն ՚ի
ձեռն Հոգւոյն Սրբոյ, զորս ընտրեացն, եւ վերա-
3 ցաւ։ Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ
չարչարանացն իւրոց ՚ի բազում արուեստս՝ յա-
ւուրս քառասուն երեւել նոցա՝ եւ ասել վասն ար-
4 քայութեանն Աստուծոյ։ Եւ ՚ի հաղորդել ընդ
նոսա հացի, պատուէր տայր նոցա՝ յԵրուսաղե-
մէ մի՛ մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր
5 լուարուքն յինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց ՚ի
ջուր. այլ դուք մկրտիցիք ՚ի Հոգին Սուրբ, ոչ
6 յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ։ Եւ նոքա
մատուցեալ հարցանէին զնա՝ եւ ասէին. Տէ՛ր՝ ե-
թէ ՚ի ժամանակի՞ աստ յայսմիկ հաստուցանելոց ի-
7 ցես զարքայութիւն Իսրայէլի։ Ասէ ցնոսա. Ո՛չ է
ձեր գիտել զժամս եւ զժամանակս, զոր Հայր եդ
8 յիւրում իշխանութեան. Այլ առջիք զօրութիւն

'ի հասանել Հոգւոյն Սրբոյ 'ի վերայ ձեր . և ե-
ղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ և յամենայն Հրէ-
աստանի և 'ի Սամարիա , և մինչև 'ի ծագս երկրի :
9 Եւ զայս իբրև ասաց՝ մինչդեռ հայէին նոքա՝ վե-
10 րացաւ . և ամպն կալաւ զնա յաչաց նոցա : Եւ
մինչդեռ պշուցեալ էին ընդ երկինս երթալոյ նորա ,
և ահաւասիկ արք երկու երևեցան նոցա 'ի հան-
11 դերձս սպիտակս , Որք և ասացին . Արք Գալիլեա-
ցիք՝ զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս : Այս Յի-
սուս՝ որ վերացաւն 'ի ձէնջ յերկինս , սոյնպէս ե-
կեսցէ զոր օրինակ տեսիք զնա երթալ յերկինս :
12 Ապա դարձան յԵրուսաղէմ յանուանեալ լեռնէն
Ձիթենեաց . որ է մերձ յԵրուսաղէմ ըստ շաբա-
13 թու ճանապարհի : Եւ իբրև մտին , ելին 'ի վերնա-
տունն՝ ուր վանքն իսկ էին . Պետրոս և Յակովբոս ,
Յովհաննէս և Անդրէաս , Փիլիպպոս և Թովմաս ,
Բարթողոմէոս և Մատթէոս , Յակովբոս Ալփեան
և Շմաւոն Նախանձայոյզ և Յուդա Յակովբեան :
14 Սոքա ամենեքեան էին հանապազորդեալ միաբան
յաղօթս հանդերձ կանամբք , և Մարեմաւ մարբն
Յիսուսի՝ և եղբարբք նորա :
15 Եւ յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Պետրոս 'ի
մէջ եղբարցն՝ ասէ . և էր անդ բազմութիւն ան-
16 ուանց իբրև հարիւր և քսանից : Արք եղբարք՝ պարտ
էր կատարել գրոյն , զոր յառաջագոյն ասաց Հո-
գին Սուրբ 'ի բերանոյ Դաւթի՝ վասն Յուդայի ,
17 որ եղև առաջնորդ ունելեացն Յիսուսի . Զի 'ի
թիւս մեր էր՝ ընդ մեզ , և հասեալ էր նմա վիճակ
18 պաշտամանս այսորիկ : Սա ստացաւ գեօղ 'ի վար-

ծուց անիրաւութեան. և ուռուցեալ հերձաւ ընդ
19 մէջ՝ և հեղաւ ամենայն փոր նորա։ Եւ յայտնի
եղև ամենեցուն՝ որ բնակեալ են յԵրուսաղէմ.
մինչև կոչել գեղջն այնմիկ բարբառովն իւրեանց
20 Ակեղդամայ. այսինքն է՝ Գեօղ արեան։ Զի գրե-
եալ է 'ի գիրս Սաղմոսաց. Եղիցի բնակութիւն
նորա աւերակ, և մի՛ ոք իցէ որ բնակիցէ 'ի նմա.
21 և զկարգ նորա առցէ այլ։ Արդ՝ պարտ է յարանցս
յայսցանէ եկելոցս ընդ մեզ յամենայն ժամանակի,
22 յորում մուտ և ել առ մեզ Տէր Յիսուս, Սկսեալ
'ի մկրտութենէն Յովհաննու մինչև ցօրն՝ յորում
վերացաւ 'ի մէնջ, վկայ յարութեան նորա ընդ մեզ
23 լինել միում 'ի սոցանէ։ Եւ կացուցին երկուս.
զՅովսէփ՝ որում Բարսաբայն կոչէին, որ անուա-
24 նեցաւ Յուստոս. և զՄատաթեա։ Եւ կացեալ
յաղօթս՝ ասեն. Դու Տէր՝ սրտագէտ ամենայնի՝
յայտնեա՛ զմի ոք՝ զոր ընտրեցեր 'ի սոցանէ յեր-
25 կոցունց, Առնուլ զվիճակ պաշտամանս այսորիկ՝ և
զառաքելութեան, յորմէ անկաւ Յուդաս՝ գնալ 'ի
26 տեղի իւր։ Եւ ետուն վիճակս նոցա, և ելանէր վի-
ճակն Մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան
առաքելոյն։

## ԳԼ. Բ

1 Եւ 'ի կատարել աւուրցն Պենտեկոստէից՝ էին
2 ամենեքեան միաբան 'ի միասին։ Եւ եղև յանկար-
ծակի հնչիւն յերկնից՝ եկեալ իբրև սաստիկ հող-
3 մոյ. և ելից զամենայն տունն յորում նստէին։ Եւ

երևեցան նոցա բաժանեալ լեզուք իբրև ՚ի հրոյ․
4 և նստաւ իւրաքանչիւր ՚ի վերայ նոցա։ Եւ լցան
ամենեքեան Հոգւով Սրբով, և սկսան խօսել յայլ
և յայլ լեզուս՝ որպէս և Հոգին տայր բարբառել
5 նոցա։ Եւ էին յԵրուսաղէմ բնակեալ Հրեայք՝
արք երկիւղածք՝ յամենայն ազգաց՝ որ ՚ի ներքոյ երկ-
6 նից։ Եւ իբրև եղև բարբառս այս՝ եկն միաբան
բազմութիւնն՝ և խռնեցաւ․ զի լսէին յիւրաքանչիւր
7 լեզուս խօսել նոցա։ Սքանչանային ամենեքեան,
և զարմանային՝ և ասէին ընդ միմեանս․ Ոչ ապա-
սիկ ամենեքին սոքա որք խօսինս՝ Գալիլեացիք են․
8 Եւ զիա՞րդ լսեմք մեք յիւրաքանչիւր բարբառս մեր՝
9 յորում ծնեալ եմք։ Պարթևք և Մարք և Իլամա-
ցիք՝ և որ բնակեալ են ՚ի Միջագետս, ՚ի Հրէաս-
10 տանի և ՚ի Գամիրս, ՚ի Պոնտոս և յԱսիա․ ՚ի
Փռիւգիայ և ՚ի Պամփիւլիայ՝ յԵգիպտոս և ՚ի
կողմանս Լիբէացւոց, որ ընդ Կիւրենացիս, և որ
11 եկք Հռովմայեցիք․ Հրեայք՝ և եկք նոցուն, Կը-
րետացիք և Արաբացիք՝ լսեմք խօսից նոցա ՚ի մեր
12 լեզուս զմեծամեծս Աստուծոյ։ Սքանչանային ամե-
նեքեան զարմացեալք, և ասէին ցմիմեանս․ Զի՞նչ
13 կամիցի այս լինել։ Եւ կիսոցն ընդ խաղ արկեալ
14 ասէին, թէ Քաղցուալից իցեն։ Յարուցեալ Պետ-
րոս Հանդերձ մետասանիւքն՝ ամբարձ զձայն իւր՝
և խօսեցաւ ընդ նոսա․ Արք Հրէաստանեայք՝ և
որ բնակեալ էք յԵրուսաղէմ ամենեքին, այս ձեզ
15 յայտնի լիցի՝ և ունկն դիք բանից իմոց։ Ո՛չ որ-
պէս դուքդ կարծէք՝ թէ սոքա արբեալ իցեն․ զի
16 դեռ երեք ժամք են աւուրս։ Այլ այս է՝ որ ասա-

17 ցաւ 'ի ձեռն մարգարէին Յովելեայ ։ Եւ եղիցի
յետ այսորիկ յաւուրս յետինս՝ ասէ Աստուած ,
հեղից յՀոգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն մարմնոյ ․ և
մարգարէասցին ուստերք ձեր , և դստերք ձեր ․ և
երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն , և ծերք ձեր ե-
18 րազովք երազեսցին ։ Եւ 'ի վերայ ծառայից իմոց՝
և 'ի վերայ աղախնանց իմոց՝ յաւուրս յայնոսիկ
19 հեղից յՀոգւոյ իմմէ , և մարգարէասցին ։ Եւ տաց
նշանս յերկինս 'ի վեր՝ և նշանս յերկիր 'ի խո-
20 նարհ , արիւն և հուր և մրրիկ ծխոյ ։ Արեգակն
դարձցի 'ի խաւար , և լուսին յարիւն՝ մինչչև ե-
21 կեալ իցէ օր Տեառն մեծ և երևելի ։ Եւ եղիցի ա-
մենայն որ կարդասցէ զանուն Տեառն՝ կեցցէ ։
22 Արք Իսրայէլացիք , լուարո՛ւք զբանս զայսոսիկ ․
զՅիսուս Նազովրեցի՝ զայր ցուցեալ յԱստուծոյ 'ի
ձեզ զօրութեամբ և նշանօք և արուեստիւք , զոր
արար նովաւ Աստուած 'ի մէջ ձերում ․ որպէս և
23 դուք իսկ գիտէք ․ Զնա նկատեալ խորհրդով և
կանխագիտութեամբն Աստուծոյ՝ մատնեալ 'ի ձեռս
24 անօրինաց՝ բևեռեալ 'ի փայտի սպանիք ․ Զոր
Աստուած յարոյց՝ լուծեալ զերկունս մահու ․ քան-
25 զի ո՛չ էր հնար ըմբռնել նմա 'ի նմանէ ։ Դաւիթ
իսկ ասէ զնմանէ ․ Յառաջագոյն տեսանէի զՏէր
առաջի իմ յամենայն ժամ , զի ընդ աջմէ իմմէ է , զի
26 մի՛ սասանեցայց ․ Վասն այսորիկ ուրախ եղև սիրտ
իմ , և ցնծացաւ լեզու իմ , ևս և մարմին իմ բնա-
27 կեսցէ յուսով ։ Զի ո՛չ թողցես զանձն իմ 'ի դը-
ժոխս՝ և ո՛չ տացես Սրբոյ քում տեսանել զապա-
28 կանութիւն ։ Ծանուցեր ինձ զճանապարհս կե-

նաց ․ լցուցեր զիս ուրախութեամբ յերեսաց քոց
29 *'ի քաղցրութենէ"։ Ա՛րք եղբարք՝ պարտ է հա-
մարձակութեամբ ասել վասն նահապետին Դաւ-
թի ․ զի մեռաւ՝ և թաղեցաւ ․ և գերեզման նորա
30 կայ 'ի միջի մերում մինչև ցայսօր ։ Զի մարգարէ
էր, և գիտէր՝ եթէ երդմամբ երդուաւ նմա Աստ-
ուած 'ի պտղոյ յորովայնէ նորա նստուցանել յա-
31 թոռ նորա ։ Յառաջագոյն ծանուցեալ խօսեցաւ
վասն յարութեանն Քրիստոսի ․ զի ոչ թողաւ ոգի
նորա 'ի դժոխս՝ և ոչ մարմին նորա ետես զապա-
32 կանութիւն ։ Զայս Յիսուս յարոյց Աստուած՝ ո-
33 րում ամենեքին մեք վկայեմք ։ Աջովն Աստուծոյ
բարձրացեալ, զաւետիս Հոգւոյն Սրբոյ ընկալեալ
'ի Հօրէ՝ սփռեաց զայս, զոր դուք իսկ տեսանէք՝
34 և լսէք ։ Զի ոչ եթէ Դաւիթ ել յերկինս ․ ասէ
իսկ ինքն՝ Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ
35 իմմէ՝ Մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ո-
36 տից քոց ։ Արդ ճշմարտիւ գիտասցէ ամենայն տունն
Իսրայէլի, զի և Տէր զնա՝ և Օծեալ Աստուած
37 արար ․ զայն Յիսուս՝ զոր դուքն խաչեցէք ։ Եւ
լուեալ զայս՝ զղջացան 'ի սիրտս իւրեանց ․ և ա-
սեն ցՊետրոս՝ և ցայլ առաքեալսն ․ Եւ զի՞նչ գոր-
38 ծեսցուք արք եղբարք ։ Ասէ ցնոսա Պետրոս ․ Ա-
պաշխարեցէք՝ և մկրտեսցի իւրաքանչիւրոք 'ի ձէնջ
յանուն Տեառն Յիսուսի Քրիստոսի 'ի թողու-
թիւն մեղաց, և ընկալջիք զաւետիս Հոգւոյն Սրբ-

* 'Ի Յոյնն չէ ։

39 բոյ ։ Զի ձեզ են աւետիքս՝ և որդւոց ձերոց, և
ամենայն հեռաւորաց՝ զորս կոչեսցէ Տէր Աստուած
40 մեր ։ Եւ այլովք բանիւք բազմօք վկայութիւն դնէր,
և մխիթարէր զնոսա՝ և ասէր ․ Ապրեցարո՛ւք յազգէ
41 աստի խոտորելոյ յայսմանէ ։ Նոքա յօժարութեամբ
ընկալեալ զբան նորա մկրտեցան ․ և յաւելան յա-
ւուր յայնմիկ ոգիք իբրև երեք հազարք ։
42 Եւ էին հանապազորդեալք վարդապետութեան
առաքելոցն, և հաղորդութեան՝ և բեկանելոյ հա-
43 ցին, և աղօթից ։ Եւ լինէր ամենայն անձին՝ ահ և
երկիւղ ․ բազում նշանք և արուեստք 'ի ձեռս ա-
44 ռաքելոցն գործէին ։ Ամենայն հաւատացեալքն էին
'ի միասին, և ունէին զամենայն ինչ հասարակաց ։
45 Եւ զստացուածս և զինչս վաճառէին, և բաշխէին
46 զայն ամենեցուն՝ ում զիարդ պիտոյ ինչ լինէր ։ Հա-
նապազօր կանխեալ միաբանութեամբ 'ի տաճարն,
և տունս բեկանէին զհացն, և առնուին կերա-
կուր ուրախութեամբ և միամտութեամբ սրտիւ ․
47 Օրհնէին զԱստուած՝ և ունէին շնորհս առ ամե-
նայն ժողովուրդն ․ և Տէր յաւելոյր 'ի փրկեալսն
հանապազօր 'ի նոյն ։

## ԳԼ. Գ.

1 Պետրոս և Յովհաննէս ելանէին 'ի տաճար անդր
2 յիններորդ ժամու աղօթիցն ։ Եւ էր այր մի կաղ
յորովայնէ մօր իւրոյ՝ զոր բարձեալ դնէին հանա-
պազ առ դրան տաճարին, որ կոչէր Գեղեցիկ ․
խնդրել ողորմութիւն յայնցանէ՝ որ մտանէին 'ի

3 տաճարն ։ Որոյ տեսեալ զՊետրոս եւ զՅովհաննէս՝
զի մտանէին ՚ի տաճարն , աղաչէր ողորմութիւն
4 առնուլ ։ Հայեցաւ ՚ի նա Պետրոս Յովհաննու
5 հանդերձ , եւ ասէ . Հայեաց ՚ի մեզ ։ Նա դարձաւ
՚ի նոսա , եւ ակն ունէր առնուլ ինչ ՚ի նոցանէ ։
6 Եւ ասէ Պետրոս . Արծաթ եւ ոսկի ոչ ունիմ .
բայց զոր ունիմն՝ զայս տաց քեզ . յանուն Յի-
7 սուսի Քրիստոսի Նազովրեցւոյ արի եւ գնա ։ Եւ
կալեալ զաջոյ ձեռանէ նորա՝ յարոյց զնա . եւ ան-
8 դէն հաստատեցան բարձք նորա՝ եւ սրունք ։ Ի վեր
վազեաց եւ սկսաւ գնալ , եւ եմուտ ընդ նոսա ՚ի
տաճարն . գնայր եւ վազվազէր՝ եւ օրհնէր զԱստ-
9 ուած ։ Եւ ետես ամենայն ժողովուրդն զնա , զի
10 գնայր՝ եւ օրհնէր զԱստուած . Եւ գիտէին զնա՝ զի
սա էր , որ նստէր վասն ողորմութեան առ Գեղե-
ցիկ դրան տաճարին , եւ լցան զարմանալեօք ՚ի վե-
11 րայ նշանին՝ որ եղեւ ։ Եւ մինչ նա ունէր զՊետ-
րոս եւ զՅովհաննէս , ընթացաւ ամենայն ժողո-
վուրդն առ նոսա ՚ի սրահն՝ որ կոչէր Սողոմոնի՝
12 զարմացեալք ։ Իբրեւ ետես Պետրոս , պատասխանի
ետ ժողովրդեանն . Արք Իսրայէլացիք՝ զի՞ զար-
մացեալ էք ՚ի վերայ այսորիկ՝ կամ ընդ մեզ զի՞
էք պշուցեալ , իբրու թէ անձին զօրութեամբ ինչ՝
կամ քաջութեամբ արարեալ իցէ գնալդ դմա ։
13 Աստուած Աբրահամու՝ եւ Աստուած Սահակայ եւ
Աստուած Յակովբայ , Աստուած հարցն մերոց փա-
ռաւորեաց զՈրդի իւր զՅիսուս , զոր դուքն մատնե-
ցիք՝ եւ ուրացայք առաջի Պիղատոսի , ՚ի դատել
14 նորա արձակել ։ Եւ դուք զՍուրբն եւ զարդարն ու-

րացայք, և խնդրեցիք այր մի *մահապարտ շնորհել
15 ձեզ ։ Եւ զառաջնորդ կենացն սպանիք, զոր Աստ-
ուած յարոյց 'ի մեռելոց․ որում մեք իսկ վկայեմք ։
16 Եւ հաւատովք անուան նորա զսա՝ զոր տեսանէք
և գիտէք, հաստատեաց անուն նորա․ և հաւատքն
որք նովաւ, ետուն դմա զառողջութիւնս զայս՝ յան-
17 դիման ձեր ամենեցուն ։ Եւ արդ եղբարք՝ գիտեմ
զի անգիտութեամբ արարիք՝ որպէս և իշխանքն
18 ձեր ։ Այլ Աստուած՝ որպէս յառաջագոյն պատ-
մեաց 'ի բերանոյ ամենայն մարգարէից զչարչարելն
19 Քրիստոսի իւրոյ՝ նոյնպէս և կատարեաց ։ Արդ՝
ապաշաւեցէք և դարձարուք 'ի ջնջել զմեղս ձեր․
20 Որպէս զի եկեսցեն ժամանակք հանգստեան յերե-
սաց Տեառն․ և առաքեսցէ զյառաջագոյն նկատ-
21 եալն ձեզ՝ զՅիսուս Քրիստոս ։ Զոր պարտ է
երկնից ընդունել մինչև 'ի ժամանակս ամենեցուն
հաստատելոյ․ զորոց խօսեցաւ Աստուած 'ի բերա-
նոյ սրբոց մարգարէից ։
22 Մովսէս ասաց ցհարսն մեր, թէ Մարգարէ յա-
րուսցէ ձեզ Տէր Աստուած ձեր յեղբարց ձերոց իբ-
րև զիս, նմա լուիջիք՝ ըստ ամենայնի որ զինչ և
23 խօսեսցի առ ձեզ ։ Եւ եղիցի ամենայն անձն՝ որ
ոչ լուիցէ մարգարէին այնմիկ՝ սատակեսցի 'ի ժողո-
24 վրդենէն ։ Եւ ամենայն մարգարէք՝ որ 'ի Սամու-
ելէ և այսր խօսեցան, և պատմեցին զաւուրս զայ-
25 սոսիկ ։ Դուք էք որդիք մարգարէիցն՝ և ուխտին,
զոր ուխտեաց Աստուած ընդ հարսն ձեր, և ասէ

* 'Ի Յոյնն, սպանող

ցԱբրահամ. ի զաւակի քում օրհնեսցին ամենայն
26 ազգք երկրի: Ձեզ նախ յարոյց Աստուած զՈրդի
իւր, և առաքեաց զնա օրհնել զձեզ՝ ի դառնալ
ձեզ իւրաքանչիւր ի չարեաց ձերոց:

## ԳԼ. Դ.

1 Եւ մինչդեռ խօսէին նոքա ընդ ժողովրդեանն,
հասին ի վերայ նոցա քահանայապետքն և իշխանք
2 տաճարին և սադուկեցիքն, Զայրագնեալք՝ վասն
ուսուցանելոյ նոցա զժողովուրդն՝ և պատմելոյ Յի-
3 սուսիւ զյարութիւն մեռելոց: Արկին ի նոսա
զձեռս իւրեանց, և եդին զնոսա ի բանտի մինչև
4 ի վաղիւն, զի էր ընդ երեկս: Իսկ բազումք ի
լսողաց բանին՝ հաւատացին. և եղև թիւ մարդկան
5 իբրև հազարաց հնգից: Եւ եղև ի վաղիւ անդր
ժողովել նոցա զիշխանսն և զերիցունս և զդպիրսն
6 յԵրուսաղէմ, Եւ զԱննա քահանայապետ և զԿա-
յիափա, և զՅովհաննէս և զԱղեքսանդրոս, և
7 որք միանգամ էին յազգէ քահանայութեանն: Եւ
կացուցեալ զնոսա ի մէջ՝ հարցանէին. Որով զօ-
րութեամբ կամ որով անուամբ արարէք դուք զայս:
8 Յայնժամ Պետրոս լցեալ Հոգւով Սրբով՝ ասէ
ցնոսա. Իշխանք ժողովրդեան՝ և երիցունք Իսրայէ-
9 լի. Եթէ արժանի ինչ իցէ դատել զմեզ այսօր
վասն երախտեաց առն միոյ տկարի, որով սա բժշ-
10 կեցաւ: Յայտնի լիցի ամենեցուն ձեզ՝ և ամենայն
ժողովրդեանդ Իսրայէլի. զի յանուն Յիսուսի Քրիս-
տոսի Նազովրեցւոյ՝ զոր դուք խաչեցէք՝ զոր Աստ-

ուած յարոյց 'ի մեռելոց, նովաւ սա կայ աւասիկ ա-
11 ռաջի ձեր ողջացեալ։ Սա է վէմն անարգեալ 'ի
12 ձէնջ շինողաց, որ եղև գլուխ անկեան. Եւ չի՛ք
այլով իւիք փրկութիւն. զի և ոչ անուն այլ գոյ 'ի
ներքոյ երկնից տուեալ 'ի մարդիկ՝ որով արժան
իցէ կեալ մեզ։
13 Հայեցեալ 'ի համարձակութիւնն Պետրոսի և
Յովհաննու, և 'ի վերայ հասեալ՝ թէ արք տգէտք
և առանց դպրութեան են, զարմանային. զի ճա-
14 նաչէին զնոսա թէ ընդ Յիսուսի էին. Եւ զայրն
ևս տեսանէին զբժշկեալն՝ զի կայր ընդ նոսա. և
15 ոչինչ կարէին տալ պատասխանի։ Եւ հրամայեալ
նոցա արտաքս քան զատեանն ելանել, խորհեցան
16 ընդ միմեանս, Եւ ասեն. Զի՞նչ արասցուք ա-
րանցս այսոցիկ՝ զի երևելի նշան եղև 'ի ձեռն սո-
ցա. ամենայն իսկ բնակչաց Երուսաղէմի յայտ է,
17 և ոչ կարեմք ուրանալ։ Այլ զի մի՛ առաւել ճարա-
կեսցի 'ի ժողովուրդն, սպառնասցուք նոցա՝ մի՛ ևս
18 խօսել յանունն յայն՝ մի՛ ումեք 'ի մարդկանէ։ Եւ
կոչեցեալ զնոսա պատուիրեցին ամենևին մի՛ խօսել՝
19 և մի՛ ուսուցանել յանուն Յիսուսի։ Իսկ Պետրոս և
Յովհաննէս պատասխանի տուեալ և ասեն ցնոսա, Ե-
թէ արժա՞ն իցէ առաջի Աստուծոյ՝ ձեզ լսել առա-
20 ւել քան Աստուծոյ, ընտրեցէք։ Այլ մեք ոչ կարեմք՝
21 զոր տեսաքն և լուաքն՝ չխօսել։ Նոքա սպառնացեալ
արձակեցին զնոսա, և ոչինչ գտեալ՝ թէ որպէս պա-
տուհասեսցեն զնոսա՝ վասն ժողովրդեանն. զի ամե-
նեքեան փառաւոր առնէին զԱստուած՝ վասն իրացն
22 եղելոց։ Զի ամաց էր այրն՝ աւելի քան զքառասուն,

23 յորոց վերայ եղև նշանս այս բժշկութեան ։ Եւ անտի
արձակեալ՝ եկին առ իւրեանսն , և պատմեցին որչափ
ինչ ասացին ցնոսա քահանայապետքն և երիցունքն ։
24 Եւ նոցա լուեալ՝ ամբարձին զձայնս իւրեանց առ
Աստուած՝ և ասեն ։ Դու Տէր Աստուած՝ որ արա-
րեր զերկինս և զերկիր և զծով և զամենայն որ 'ի
25 նոսա ․ Որ 'ի բերանոյ * Հօր մերոյ" Դաւթի ծառայի
քո՝ * 'ի ձեռն Հոգւոյն Սրբոյ" ասացեր ․ Ընդէ՞ր խռո-
վեցան հեթանոսք և ժողովուրդք խորհեցան 'ի սը-
26 նոտիս ․ Յանդիման եղեն թագաւորք երկրի և իշ-
խանք ժողովեցան 'ի միասին վասն Տեառն և վասն
27 Օծելոյ նորա ։ Ժողովեցան արդարև 'ի քաղաքիս
յայսմիկ 'ի վերայ սրբոյ Որդւոյ քո Յիսուսի՝ զոր
օծերն՝ Հերովդէս և Պոնտոս Պիղատոս՝ ազգօք և
28 ժողովրդովք Իսրայէլի , Առնել որչափ ձեռն քո
29 և կամք յառաջագոյն սահմանեցին լինել ։ Եւ արդ
Տէր՝ Հայեաց 'ի սպառնալիս նոցա , և տուր ծա-
ռայից քոց ամենայն համարձակութեամբ խօսել
30 զբանն քո ․ 'Ի ձգել զձեռն քո 'ի բժշկութիւն , և
նշանս և արուեստս՝ լինել անուամբն սրբոյ Որդւոյ
31 քո Յիսուսի ։ Եւ մինչ կային նոքա յաղօթս՝ շար-
ժեցաւ տեղին՝ յորում էին ժողովեալ , և լցան ա-
մենեքին Հոգւով Սրբով ․ և խօսէին զբանն Աս-
տուծոյ համարձակութեամբ ։

32 Եւ բազմութեան հաւատացելոցն էր սիրտ և ան-
ձըն մի ․ և ոչ ոք 'ի նոցանէ ասէր զընչից իւրոց թէ
իւր իցէ ․ այլ էր նոցա ամենայն ինչ հասարակաց ։

---

* 'Ի Յոյնն չիք ։

33 Եւ զօրութեամբ բազմաւ տային վկայութիւն առաք-
եալքն զյարութեանն Տեառն Յիսուսի Քրիս-
տոսի. և շնորհք մեծամեծք էին ՚ի վերայ ամենե-
34 ցուն նոցա: Եւ ոչ ո՛ք կարօտէր ՚ի նոսա. զի որ
միանգամ տերանց էին գեղից կամ ապարանից՝
35 վաճառէին և բերէին զգինս վաճառելոցն: Դնէին
առ ոտս առաքելոցն. և բաշխէին իւրաքանչիւր՝ որ-
36 պէս ումեք պիտոյ ինչ լինէր: Յովսէփ՝ որ կոչե-
ցաւն Բառնաբաս յառաքելոց անտի, որ թարգմա-
նի որդի մխիթարութեան, Ղևտացի՝ յազգէ Կիպ-
37 րացի. Էր նորա գիւղ, վաճառեաց և եբեր զգինսն
եդ առ ոտս առաքելոցն

## ԳԼ. Ե

1 Իսկ այր ոմն Անանիա անուն, հանդերձ կնաւ
2 իւրով Սափիրաւ՝ վաճառեաց ագարակ. Եւ խոր-
եաց ՚ի գնոց անտի՝ գիտելով և կնոջն. և եբեր
3 մասն ինչ եդ առ ոտս առաքելոցն: Ասէ Պետրոս.
Անանիա՝ ընդէ՞ր ելից Սատանայ զսիրտ քո՝ ստել
քեզ Հոգւոյն Սրբոյ, և խորել ՚ի գնոց գեղջն.
4 Ո՞չ ապաքէն մինչ կայրն՝ քո էր, և ՚ի վաճա-
ռելն՝ ընդ քո իշխանութեամբ էր. զի՞ է զի եդիր
՚ի սրտի քում զիրս զայս. ո՛չ ստեցեր մարդկան,
5 այլ Աստուծոյ: Եւ լուեալ Անանիայ զբանս զայսո-
սիկ՝ անկաւ՝ և եհան զոգի. և եղև ահ մեծ ՚ի վե-
6 րայ ամենեցուն՝ որ լուանն զայն: Յոտն կացին ե-
րիտասարդքն՝ և ամփոփեցին զնա, և տարան թա-
7 ղեցին: Եւ եղև իբրև ժամք երեք անցին, և կին

նորա ոչ գիտէր զինչ եղեալն էր, եմուտ 'ի ներքս:
8 Պատասխանի ետ նմա Պետրոս և ասէ. Ասա՛ դու
ինձ՝ թէ այնչափ գնոյ զգեօղն վաճառեցիք. և
9 նա ասէ. Այո՛ այնչափ: Եւ ասէ ցնա Պետրոս.
Զի՞ է զի միաբանեցայք դուք փորձել զՀոգին
Տեառն. ահա ոտքն՝ որ թաղեցին զայրն քո 'ի դրան,
10 հանցեն և զքեզ: Եւ անկաւ անդէն առ ոտս նորա՝
և եհան զոգի. մտին երիտասարդքն՝ գտին զնա մեռ-
11 եալ, և հանին թաղեցին առ առն իւրում: Եւ
եղև երկիւղ մեծ 'ի վերայ ամենայն եկեղեցւոյն,
և 'ի վերայ ամենեցուն՝ որ լուան զայն:
12 Եւ 'ի ձեռս առաքելոց լինէին նշանք և արու-
եստք բազումք 'ի ժողովրդեանն. և էին միաբան
13 ամենեքեան 'ի սրահին Սողոմոնի: Եւ յայլոց ան-
տի ոչ ո՛ք իշխէր մերձենալ առ նոսա. այլ յարգէր
14 զնոսա ժողովուրդն: Եւ առաւել ևս յաւելուին
հաւատացեալքն 'ի Տէր, բազմութիւն արանց և
15 կանանց. Մինչև 'ի հրապարակսն հանել զհիւանդս,
և դնել պատգարակօք և մահճօք իւրեանց. զի ընդ
անցանելն Պետրոսի՝ գոնէ հովանի նորա հասցէ ու-
16 մեք 'ի նոցանէ: Եւ ժողովէր բազմութիւն շուրջ
'ի քաղաքաց անտի յԵրուսաղէմ, բերէին զհիւանդս
և զնեղեալս յայսոց պղծոց. որք և բժշկէին ամե-
17 նեքեան: Յարուցեալ քահանայապետն, և ամենե-
քին որ ընդ նմա՝ և աղանդ սադուկեցւոց՝ լցան նա-
18 խանձու: Եւ արկին զձեռս յառաքեալսն, և եդին
19 զնոսա հրապարակաւ 'ի բանտի: Այլ հրեշտակ
Տեառն գիշերի եբաց զդուրս բանտին, և հանեալ
20 զնոսա՝ ասէ. Գնացէք՝ կացէք 'ի տաճարին, և խօ-

սեցարուք ընդ ժողովրդեանն զամենայն պատգամս
21 կենացս այսոցիկ ։ Եւ իբրև լուան, մտին ընդ ա-
ռաւօտն 'ի տաճարն՝ և ուսուցանէին ։ Եկն քահա-
նայապետն՝ և որ ընդ նմա, կոչեցին միաբան զատ-
եանն՝ և զամենայն ծերակոյտ որդւոցն Իսրայէլի,
22 և առաքեցին 'ի բանտն ածել զնոսա ։ Եւ իբրև ե-
կին սպասաւորքն՝ ոչ գտին զնոսա 'ի բանտին ․
23 դարձեալ անդրէն պատմեցին, Եւ ասեն ․ Թէ
Զբանտն գտաք փակեալ ամենայն զգուշութեամբ,
և զպահապանսն՝ զի կային առ դրանն ․ բացաք՝ և
24 'ի ներքս զոք ոչ գտաք ։ Իբրև լուան զբանս զայս
* իշխանք տաճարին՝ և քահանայապետքն՝ հիա-
նային վասն նոցա, Թէ զի՞նչ արդեօք լինիցի այն ։
25 Եւ եկն ոմն պատմեաց նոցա՝ Թէ Ահա արքն՝ զորս
եդիք 'ի բանտի՝ կան 'ի տաճարին, և ուսուցանեն
26 զժողովուրդն ։ Յայնժամ երթեալ իշխանն սպա-
սաւորօքն հանդերձ՝ ած զնոսա ոչ բռնութեամբ ․
քանզի երկնչէին 'ի ժողովրդենէն՝ զի մի՛ քարկո-
27 ծեսցին ։ Եւ ածեալ զնոսա՝ կացուցին յատենի ․
28 եհարց ցնոսա քահանայապետն, Եւ ասէ ․ Ո՞չ
պատուիրելով պատուիրեցաք ձեզ՝ մի՛ ուսուցանել
յանուննն յայն ․ և արդ՝ ահաւասիկ լցիք զԵրու-
սաղէմ ուսմամբ ձերով, և կամիք ածել 'ի վերայ
29 մեր զարիւն զառն զայնորիկ ։ Պատասխանի ետ Պետ-
րոս և այլ առաքեալքն և ասեն ․ Հնազանդել պարտ
30 է Աստուծոյ առաւել քան մարդկան ։ Աստուած
հարցն մերոց յարոյց զՅիսուս՝ զոր դուք սպանէք

* 'Ի Յոյնն, քահանայքն և

31 կալեալ զփայտէ ։ Զնա Աստուած առաջնորդ և
փրկիչ բարձրացոյց աջով իւրով տալ ապաշխարու-
32 թիւն Իսրայէլի՝ և թողութիւն մեղաց ։ Եւ մեք եմք
վկայք բանիցս այսոցիկ , և Հոգին Սուրբ՝ զոր ետ
33 Աստուած հնազանդելոց իւրոց ։ Եւ նոքա իբրև
լուան , առատանային՝ և խորհէին սպանանել զնոսա ։
34 Յարուցեալ ոմն 'ի մէջ ատենին փարիսեցի՝ ո-
րում անուն էր Գամաղիէլ , օրէնսուսոյց՝ պատուա-
կան ամենայն ժողովրդեանն . հրամայեաց սակաւիկ
35 մի զարսն արտաքս տանել ։ Եւ ասէ ցնոսա . Արք
Իսրայէլացիք՝ հայեցարո՛ւք 'ի ձեզ վասն արանցս
36 այսոցիկ՝ զինչ արժան իցէ գործել ։ Յառաջ քան
զաւուրս զայսոսիկ յարեաւ Թևդաս՝ ասել զանձնէ ,
թէ իցէ ոմն . յոր անկան արք թուով իբրև չորեք-
հարիւր . որ սպանաւ՝ և ամենեքեան որ միաբան
37 էին ընդ նմա , քակտեցան՝ և եղեն յոչինչ ։ Յետ
նորա յարեաւ Յուդա Գալիլեացի՝ յաւուրս աշ-
խարհագրին . և ապստամբեցոյց ժողովուրդ բա-
զում զկնի իւր . և նա կորեաւ՝ և ամենեքեան որ
38 նմայն հաւանեալ էին , ցրուեցան ։ Եւ զարդիս ա-
սեմ ձեզ . 'Ի բա՛ց կացէք յարանցդ յայդցանէ՝ և
թո՛յլ տուք դոցա . զի թէ 'ի մարդկանէ իցէ խոր-
39 հուրդդ այդ կամ գործդ , քակտեսցի . Ապա թէ
յԱստուծոյ է՝ ո՛չ կարէք քակտել զդոսա . գուցէ
40 և աստուածամարտք գտանիցիք ։ Հաւանեցան նո-
մա . և կոչեցեալ զառաքեալսն՝ գան հարին , և
պատուիրեցին մի՛ ևս խօսել յանուն Յիսուսի . և
41 արձակեցին զնոսա ։ Եւ նոքա գնացին խնդալով
յերեսաց ատենին , զի վասն անուան Տեառն ար-

42 ժամի եղեն անարգելոյ ։ Եւ զամենայն օր ՚ի տա-
ճարին և տունին ոչ դադարէին ուսուցանել և ա-
ւետարանել զՅիսուս Քրիստոս ։

## ԳԼ. Զ.

1 Եւ յաւուրսն յայնոսիկ ՚ի բազմանալ աշակեր-
տացն, եղև տրտունջ Յունաց առ Եբրայեցիսն.
զի արհամարհեալ լինէին ՚ի պաշտամանն հանապա-
2 զորդ այրիք նոցա ։ Կոչեցին երկոտասանքն զբազ-
մութիւն աշակերտացն՝ և ասեն. Ո՛չ է հաճոյ
մեզ թողուլ զբանն Աստուծոյ և պաշտել զսեղանս ։
3 Ընտրեցէք եղբարք վկայեալս ՚ի ձէնջ արս եօթն,
(լի Հոգւով Սրբով և իմաստութեամբ.) զորս
4 կացուսցուք ՚ի վերայ պիտոյիցս այսոցիկ. Եւ մեք
աղօթից և պաշտաման * և բանին հպատակ լիցուք ։
5 Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի ամենայն բազ-
մութեանն. և ընտրեցին զՍտեփանոս՝ այր լի հա-
ւատով և Հոգւով Սրբով, և զՓիլիպպոս և զՊրո-
քորոն և զՆիկանովրա և զՏիմոնա և զՊարմե-
6 նա, և զՆիկողայոս զեկն Անտիոքացի. Զորս կա-
ցուցին առաջի առաքելոցն. և աղօթս արարեալ՝
7 եդին ՚ի վերայ նոցա զձեռս ։ Եւ բանն Աստուծոյ
աճէր. և բազմանայր թիւ աշակերտացն յոյժ յԵ-
րուսաղէմ. և բազում ժողովք ՚ի քահանայիցն
անսային հաւատոցն ։

8 Ստեփանոս՝ այր լի շնորհօք և զօրութեամբ,

---

* ՚Ի Յոյնն չէ ։

առնէր արուեստս և նշանս մեծամեծս 'ի ժողովրդ-
9 եանն ։ Յարեան ոմանք 'ի ժողովրդենէն, որ կո-
չէր Լիբէացւոց և Կիւրենացւոց և Աղեքսանդրաց-
ւոց՝ և որ 'ի Կիւլիկեցւոց՝ և յԱսիա, վիճել ընդ
10 Ստեփանոսի. Եւ ո՛չ կարէին զդէմ ունել զիմաս-
11 տութեանն և զհոգւոյն, որով խօսէր ։ Յայնժամ
հրապուրեցին արս ոմանս ասել. Թէ Լուաք զդորա
խօսել բանս հայհոյութեան 'ի Մովսէս և յԱստ-
12 ուած ։ Եւ խռովեցին զժողովուրդն և զերիցունս
և զդպիրսն. և հասեալ 'ի վերայ՝ յափշտակեցին
13 զնա՝ և ածին յատեան ։ Եւ կացուցին վկայս սուտս՝
որ ասէին, Այրս այս ո՛չ դադարէ խօսել բանս
14 հայհոյութեան զտեղւոյն սրբոյ և զօրինացն ։ Լու-
աք 'ի դմանէ զի ասէր՝ թէ Յիսուս Նազովրեցի՝
նա քակեսցէ զտեղիս զայս, և փոխեսցէ զօրէնս՝
15 զոր ետ մեզ Մովսէս ։ Եւ հայեցեալ 'ի նա ամե-
նեցուն որ նստէին յատենին, տեսին զերեսս նորա
իբրև զերեսս հրեշտակի ։

## ԳԼ. Է

1 Ասէ քահանայապետն՝ թէ Արդարև այդ ա՞յդ-
2 պէս իցէ ։ Եւ նա ասէ. Ա՛րք եղբարք և հարք՝
լուարո՛ւք ինձ ։ Աստուած փառաց երևեցաւ հօր մե-
րում Աբրահամու մինչդեռ 'ի Միջագետս էր, մինչ-
չև բնակեցուցեալ էր զնա 'ի Խառան. և ասէ ցնա ։
3 Ե՛լ յերկրէ քումմէ և յազգէ քումմէ, և եկ յեր-
4 կիր՝ զոր ցուցից քեզ ։ Յայնժամ ելեալ յերկ-
րէն Քաղդէացւոց բնակեցաւ 'ի Խառան. և անտի.

յետ մեռանելոյ հօր նորա՝ փոխեաց, և պանդխտե-
ցոյց զնա յերկրիս յայսմիկ, յորում դուք այժմ
5 բնակեալ էք: Եւ ոչ ետ նմա ժառանգութիւն 'ի
նմա, և ոչ քայլ մի ոտին. և խոստացաւ տալ
նմա զնա 'ի բնակութիւն, և զաւակի նորա յետ նո-
6 րա, մինչ ոչ գոյր նորա որդի: Խօսեցաւ Աստ-
ուած այսպէս, թէ Եղիցի զաւակ նորա պանդուխտ
յօտար երկրի. և ծառայեցուսցեն զնա՝ և չարչա-
7 րեսցեն ամս չորեքհարիւր: Եւ զազգն որում ծա-
ռայեսցեն՝ դատեցայց ես, ասէ Աստուած. և յետ
այսորիկ ելցեն՝ և պաշտեսցեն զիս 'ի տեղւոջս յայս-
8 միկ: Եւ ետ նմա ուխտ թլփատութեան. և ապա
ծնաւ զԻսահակ, և թլփատեաց զնա յաւուր ու-
թերորդի. և Իսահակ զՅակոբ. և Յակոբ զեր-
9 կոտասան նահապետսն: Եւ նահապետքն նախանձ-
եալ ընդ Յովսեփայ՝ վաճառեցին յԵգիպտոս. և
10 էր Աստուած ընդ նմա: Եւ փրկեաց զնա յամե-
նայն նեղութեանց նորա. և ետ նմա շնորհս և ի-
մաստութիւն առաջի փարաւոնի արքային Եգիպ-
տացւոց. և կացոյց զնա իշխան Եգիպտացւոցն՝ և
11 ամենայն տան նորա: Եւ եկն սով յամենայն եր-
կիրն Եգիպտոսի, և 'ի Քանան նեղութիւն մեծ.
12 և ոչ գտանէին կերակուր հարքն մեր: Եւ լուեալ
Յակոբայ թէ գտանի կերակուր յԵգիպտոս՝ ա-
13 ռաքեաց զհարսն մեր յառաջագոյն: Եւ յերկրոր-
դումն ետ ծանօթս Յովսէփ եղբարց իւրոց. և յայտ-
14 նի եղև ազգն նորա փարաւոնի: Առաքեաց Յով-
սէփ՝ և կոչեաց զՅակոբ զհայր իւր, և զամենայն
15 ազգատոհմն՝ ոգիս եօթանասուն և հինգ: Եւ էջ

Յակովբ յԵգիպտոս՝ և վախճանեցաւ ինքն և հարքն
16 մեր ։ Եւ փոխեցան 'ի Սիւքեմ և եդան յայրին ,
զոր ստացաւ Աբրահամ գնոց արծաթոյ յորդւոցն
17 Եմովրայ՝ 'ի Սիւքեմ ։ Իբրև մերձեցաւ ժամանակ
աւետեացն՝ զոր խոստացաւ Աստուած Աբրահամու ,
աճեաց ժողովուրդն՝ և բազմացաւ յԵգիպտոս .
18 Մինչև յարեաւ այլ թագաւոր յԵգիպտոս՝ որ ոչ
19 ճանաչէր զՅովսէփ ։ Նա հնարեցաւ ազգին մերում ,
և չարչարեաց զհարսն մեր առնել ընկեցիկ զման-
20 կունս նոցա՝ զի մի ապրեսցին ։ Յորում ժամանա-
կի ծնաւ և Մովսէս՝ և էր կայտառ առաջի Աստու-
ծոյ . որ և սնաւ 'ի տան հօր իւրոյ ամիսս երիս ։
21 Եւ յընկեցիկն առնել զնա՝ եբարձ զնա դուստր
22 փարաւոնի , և սնոյց զնա իւր յորդեգիրս ։ Եւ վար-
ժեցաւ Մովսէս ամենայն իմաստութեամբ Եգիպ-
տացւոցն . և էր զօրաւոր բանիւք և գործովք իւ-
23 րովք ։ Իբրև լցաւ նորա քառասնամեայ ժամանակ ,
անկաւ 'ի սիրտ նորա շրջել զեղբարբքն իւրովք՝
24 զորդւովքն Իսրայէլի ։ Եւ տեսեալ զոմն զրկեալ՝
զչարեցաւ , և խնդրեաց զվրէժ զրկելոյն՝ սպան-
25 եալ զԵգիպտացին ։ Զմտաւ ածէր թէ իմասցին
եղբարք նորա , զի Աստուած 'ի ձեռն նորա տալոց
26 էր զփրկութիւն նոցա . և նոքա ոչ իմացան ։ Եւ 'ի
վաղիւ անդր երևեցաւ նոցա մինչդեռ մարտնչէին՝
և վարեաց զնոսա 'ի խաղաղութիւն , ասէ . Արք
27 եղբարք էք , ընդէ՞ր զրկէք զմիմեանս ։ Իսկ որ զըր-
կէր զընկերն , մերժեաց զնա՝ և ասէ . Ո՞ կացոյց
28 զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր ։ Միթէ
սպանանե՞լ կամիցիս զիս՝ զո՞րօրինակ սպաներ երէկ

29 զԵգիպտացին ։ Եւ փախեաւ Մովսէս 'ի բանիցս
յայսցանէ, և եղև պանդուխտ յերկրին Մադիա-
մու. ուր ծնաւ երկուս որդիս ։
30 Եւ 'ի կատարել ամացն քառասնից, երևեցաւ
նմա յանապատի լերինն Սինայ Հրեշտակ Տեառն
31 'ի բոց հրոյ մորենւոյն ։ Եւ Մովսէսի տեսեալ՝ զար-
մացաւ ընդ տեսիլն, և 'ի մատչելն նորա նշմարել՝
32 եղև ձայն Տեառն ։ Ես եմ Աստուած հարց քոց,
Աստուած Աբրահամու՝ և Իսահակայ՝ և Յակոբայ.
33 և զահի հարեալ Մովսէս՝ ոչ իշխէր հայել ։ Եւ
ասէ ցնա Տէր. Լոյծ զկօշիկս ոտից քոց, զի տե-
34 ղեդ յորում դուդ կացեր՝ երկիր սուրբ է ։ Տեսա-
նելով տեսի զչարչարանս ժողովրդեան իմոյ՝ որ
յԵգիպտոս, և լուայ հեծութեան նոցա՝ և իջի փրկ-
կել զնոսա. և արդ եկ առաքեցից զքեզ յԵգիպ-
35 տոս ։ Զայն Մովսէս՝ զոր ուրացանն և ասեն. Ո՞
կացոյց զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր, զնա
Աստուած իշխան և փրկիչ առաքեաց 'ի ձեռն հրե-
36 րեշտակին, որ երևեցաւ նմա 'ի մորենւոջն ։ Նա
եհան զնոսա՝ արարեալ նշանս և արուեստս յերկ-
րին Եգիպտացւոց՝ և 'ի կարմիր ծովուն, և յանա-
37 պատին՝ ամս քառասուն ։ Այս Մովսէս է, որ ասաց
ցորդիսն Իսրայէլի. Մարգարէ յարուսցէ ձեզ Տէր
Աստուած ձեր յեղբարց ձերոց իբրև զիս, նմա լուի-
38 ջիք ։ Սա է որ եղև յեկեղեցւոջն յանապատին ընդ
հրեշտակին, որ խօսեցաւ ընդ նմա 'ի լերինն Սի-
նայ՝ և ընդ հարսն մեր. որ ընկալաւ զպատգամս կեն-
39 դանիս՝ տալ մեզ ։ Որում ոչ կամեցան հնազանդ
լինել հարքն մեր. այլ մերժեցին և դարձան սր-

40 տիւք իւրեանց յԵգիպտոս ։ Եւ ասեն ցԱհարոն.
Արա՛ մեզ աստուածս, որ երթիցեն առաջի մեր.
զի Մովսէսն այն՝ որ եհան զմեզ յերկրէն Եգիպ-
41 տացւոց, ոչ գիտեմք զի՞ եղև նմա ։ Եւ արարին
յաւուրսն յայնոսիկ որթ, և մատուցին զոհս կռոց,
42 և ուրախ լինէին ՚ի գործս ձեռաց իւրեանց ։ Դար-
ձոյց Աստուած և մատնեաց զնոսա ՚ի պաշտօն զօ-
րութեան երկնից. որպէս և գրեալ է ՚ի գիրս մար-
գարէից. Միթէ զոհս և պատարագս մատուցէ՞ք
ինձ զամս քառասուն՝ յանապատին տունդ Իսրայէ-
43 լի. Եւ առիք զվրանն Մողոքայ, և զաստղն աս-
տուծոյն Հռեմփայ, զպատկերսն՝ զոր արարիք եր-
կիրպագանել նոցա. և փոխեցից զձեզ յայնկոյս
44 Բաբելացւոց ։ Խորանն վկայութեան էր ընդ հարսն
մեր յանապատին. որպէս հրաման ետ՝ որ խօսէրն
ընդ Մովսէսի, առնել զայն ըստ օրինակին՝ զոր
45 ետես ։ Զոր և ընկալեալ բերին հարքն մեր հան-
դերձ Յեսուաւ ՚ի վիճակ ազգացն, զորս մերժեաց
Աստուած յերեսաց՝ հարցն մերոց մինչև յաւուրս
46 Դաւթի, Որ եգիտ շնորհս առաջի Աստուծոյ, և
47 խնդրեաց գտանել զյարկս Աստուծոյ Յակովբայ ։ Նա
48 և Սողոմոն շինեաց նմա տուն ։ Այլ ո՛չ եթէ
Բարձրեալն ՚ի ձեռագործ տաճարս բնակէ. այլ որ-
49 պէս մարգարէն ասէ. Երկինք աթոռ իմ են. և
երկիր պատուանդան ոտից իմոց. Ո՞րպիսի տուն
շինեցիք ինձ՝ ասէ Տէր. կամ զի՞նչ տեղի հանգստ-
50 եան իմոյ. Ո՞չ ձեռն իմ արար զայս ամենայն ։
51 Խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ական-
ջօք. դուք հանապազ Հոգւոյն Սրբոյ հակառակ

52 կայք. որպէս հարքն ձեր, և դուք: Ո՞ ’ի մարգա-
րէից ոչ հալածեցին հարքն ձեր. և սպանին զայ-
նոսիկ՝ որ յառաջագոյն պատմեցին վասն գալստեան
Արդարոյն, որոյ դուք այժմ մատնիչք և սպանողք
53 եղէք. Որք առիք զօրէնս ’ի հրամանս հրեշտակաց,
54 և ոչ պահեցիք: Եւ լուեալ զայս՝ զայրանային ’ի
սիրտս իւրեանց, և կրճտէին զատամունս ’ի վերայ
55 նորա: Եւ նա էր լի Հոգւով Սրբով. հայեցաւ
յերկինս՝ և ետես զփառս Աստուծոյ և զՅիսուս,
զի կայր ընդ աջմէ Աստուծոյ, և ասէ. Ահա տե-
սանեմ զերկինս բացեալ՝ և զՈրդի մարդոյ զի կայ
56 ընդ աջմէ Աստուծոյ: Աղաղակեալ ’ի ձայն մեծ՝
խցին զականջս իւրեանց, և դիմեցին առ հասարակ
57 ’ի վերայ նորա: Եւ հանեալ արտաքոյ քաղաքին՝
քարկոծէին. և վկայքն դնէին զձորձս իւրեանց առ
58 ոտս երիտասարդի միոջ՝ որ կոչէր Սաւուղ: Եւ
քարկոծ առնէին զՍտեփանոս, որ կարդայր և ա-
59 սէր. Տէր Յիսուս՝ ընկալ զոգի իմ: Եդ ծունր՝
աղաղակեաց ’ի ձայն բարձր. Տէ՛ր՝ մի համարիր
դոցա զայս մեղս. և զայս իբրև ասաց՝ ննջեաց. և
Սաւուղ էր կամակից սպանման նորա:

## ԳԼ. Ը

1 Եւ եղև յաւուր յայնմիկ հալածումն մեծ ’ի վե-
րայ եկեղեցւոյն յԵրուսաղէմ. և ամենեքեան ցրու-
եցան ’ի գեօղս Հրէաստանի և ’ի Սամարիա բաց
2 յառաքելոցն: Եւ բարձին զՍտեփանոս արք եր-
կիւղածք՝ և արարին կոծ մեծ ’ի վերայ նորա:

3 Բայց Սաւղոս վնասակար էր եկեղեցւոյն. ի տուն
տուն մտանէր քարշէր զարս եւ զկանայս՝ մատնէր
4 ի բանտ։ Եւ սփռեալքն՝ շրջէին աւետարանէին
5 զբանն։ Իսկ Փիլիպպոս իջեալ ի քաղաքն Սամա-
6 րացւոց՝ քարոզէր նոցա զՔրիստոս։ Ունկն դնէին
ժողովուրդքն բանիցն Փիլիպպոսի միաբան՝ ի լսել
7 նոցա եւ ի տեսանել զնշանսն, զոր առնէր։ Բանզի
բազումք որ ունէին զայսս պիղծս՝ աղաղակէին ի
8 ձայն մեծ, եւ ելանէին։ Եւ բազում անդամա-
9 լոյծք եւ կաղք բժշկէին։ Եւ եղեւ ուրախութիւն
մեծ ի քաղաքին յայնմիկ։ Այր ոմն անուն Սիմոն՝
յառաջագոյն էր ի քաղաքին. մոգ էր, եւ պաշտեցու-
ցանէր զազգն Սամարացւոց. ասել զանձնէ՝ թէ
10 իցէ մեծ ոմն։ Զոր հայէին ամենեքին ի փոքուէ
մինչեւ ի մեծամեծս. եւ ասէին, Սա է զօրութիւն
11 Աստուծոյ, որ կոչի մեծ։ Հայէին ի նա վասն բա-
զում ժամանակաց մոգութեամբքն պաշտեցուցանե-
12 լոյ զնոսա։ Բայց յորժամ հաւատացին Փիլիպպո-
սի, որ աւետարանէր վասն արքայութեանն Աս-
տուծոյ, եւ անուանն Յիսուսի Քրիստոսի, մկր-
13 տէին ամենեքեան արք եւ կանայք։ Այլ եւ ինքն
Սիմոն հաւատաց, եւ մկրտեալ կանխէր առ Փի-
լիպպոս. տեսեալ զնշանսն եւ զմեծամեծ զօրութիւն-
14 սն որք լինէին, զարմանայր։ Իբրեւ լուան՝ որ յԵ-
րուսաղէմ առաքեալքն էին, թէ եւ ի Սամարիա
ընկալան զբանն Աստուծոյ, առաքեցին առ նոսա
15 զՊետրոս եւ զՅովհաննէս։ Որք իջեալ կացին յա-
ղօթս ի վերայ նոցա, որպէս զի առցեն զՀոգին
16 Սուրբ. Զի ցայնժամ չեւ եւս էր եւ ոչ ի վերայ

միոյ նոցա հասեալ. բայց միայն մկրտեալք էին յա-
17 նուն Տեառն Յիսուսի: Յայնժամ եդին զձեռս 'ի
18 վերայ նոցա՝ և առնուին Հոգի Սուրբ: Տեսեալ
Սիմոնի՝ թէ ձեռն 'ի վերայ դնելով առաքելոցն՝
տուեալ լինի Հոգին Սուրբ, մատոյց նոցա ինչս՝ և
19 ասէ. Տուք և ինձ զիշխանութիւնս զայս, զի յոյր
20 վերայ դնիցեմ զձեռս՝ առցէ Հոգի Սուրբ: Եւ
Պետրոս ասէ ցնա. Արծաթ քո ընդ քեզ լիցի 'ի
կորուստ, զի զպարգևսն Աստուծոյ համարեցար ընչ-
21 իւք ստանալ: Ո՛չ գոյ քեզ մասն և վիճակ 'ի բա-
նիդ յայդմիկ. քանզի սիրտ քո ո՛չ է ուղիղ առաջի
22 Աստուծոյ: Ապաշխարեա՛ դու 'ի չարեացդ քոց
յայդցանէ, և աղաչեա՛ զՏէր. թերևս թողութիւն
23 լիցի քեզ 'ի մեղմեխ խորհրդոց սրտի քո: Քանզի
'ի դառնութիւն մաղձի, և 'ի կնճիռն անիրաւու-
24 թեան տեսանեմ զքեզ: Պատասխանի ետ Սի-
մոն և ասէ. Աղաչեցէ՛ք դուք վասն իմ զՏէր, զի
մի՛ ինչ եկեսցէ 'ի վերայ իմ՝ յորոց դուքդ ա-
25 սացիք: Եւ նոցա եղեալ զվկայութիւն՝ խօսեցան
զբանն Աստուծոյ, և դարձան յԵրուսաղէմ. և 'ի
բազում գեօղս Սամարացւոցն աւետարանէին:
26 Հրեշտակ Տեառն խօսեցաւ ընդ Փիլիպպոս՝ և
ասէ. Արի՛ և գնա՛ դու 'ի կողմն հարաւոյ ընդ ճա-
նապարհ որ իջանէ յԵրուսաղէմէ 'ի Գազայ. զի
27 այս է անապատ: Եւ յարեաւ գնաց: Եւ ահաւա-
սիկ այր մի Եթէովպացի, ներքինի հզօր՝ Կանդա-
կայ տիկնոջ Եթէովպացւոց, որ էր 'ի վերայ ամե-
նայն գանձուց նորա. որ եկեալ էր երկիր պագա-
28 նել յԵրուսաղէմ, Եւ էր անդրէն դարձեալ. և

նստեալ 'ի կառս իւրում, ընթեռնոյր զմարգարէն
29 զԵսայի։ Ասէ Հոգին ցՓիլիպպոս. Մատի՛ր՝ և
30 յարեա՛ց 'ի կառսդ յայդոսիկ։ Եւ ընթացեալ Փի-
լիպպոս՝ լուէր զի ընթեռնոյր զԵսայի մարգարէ, և
ասէ. Գիտիցե՞ս արդեօք՝ զոր ընթեռնուցուդ։
31 Եւ նա ասէ՝ Զիա՛րդ կարիցեմ, թէ ոք ո՛չ առաջ-
նորդեսցէ ինձ. և աղաչեաց զՓիլիպպոս ելանել
32 նստել ընդ նմա։ Եւ գլուխ գրոցն՝ զոր ընթեռնոյր՝
էր այս. Իբրև զոչխար 'ի սպանդ վարեցաւ, և իբ-
րև զորոջ առաջի կտրչի իւրոյ անմռունչ, այնպէս
33 ո՛չ բանայ զբերան իւր։ 'Ի խոնարհութեան նորա
դատաստան նորա բարձաւ, և զազգատոհմն նորա
ո՛ պատմեսցէ. զի բառնան յերկրէ կեանք նորա։
34 Պատասխանի ետ ներքինին Փիլիպպոսի, և ասէ.
Աղաչեմ զքեզ՝ վասն ո՞յր ասէ մարգարէն զայս,
35 վասն ի՞ւր, եթէ վասն այլոյ ուրուք։ Եբաց Փիլիպ-
պոս զբերան իւր, և սկսեալ 'ի գրոցս յայսցանէ՝
36 աւետարանեաց նմա զՅիսուս։ Իբրև երթային
զճանապարհայն, եկին 'ի ջուր ինչ, և ասէ ներքի-
նին. Ահաւասիկ ջուր՝ զի՞նչ արգելու զիս 'ի մկր-
37 տելոյ։ Եւ ասէ ցնա. Եթէ հաւատաս բոլորով
սրտիւ քով՝ մարթ է։ Պատասխանի ետ և ասէ.
Հաւատամ՝ եթէ Յիսուս Քրիստոս է Որդի Աս-
38 տուծոյ։ Եւ հրամայեաց կացուցանել զկառսն. և
իջին երկոքեան 'ի ջուրն՝ Փիլիպպոս և ներքինին, և
39 մկրտեաց զնա։ Եւ իբրև ելին 'ի ջրոյ անտի՝ * Հո-
գին Սուրբ եկն 'ի վերայ ներքինւոյն. և հրեշտակ

* 'Ի Յոյնն, Հոգի Տեառն յափշտակեաց զՓիլիպպոս

Տեառն յափշտակեաց զՓիլիպպոս", և ոչ ևս ետես
զնա ներքինին. և գնայր զճանապարհ իւր ուրա-
40 խութեամբ։ Բայց Փիլիպպոս գտաւ յԱզովտոս.
և շրջեալ աւետարանէր ամենայն քաղաքացն, մինչև
՚ի գալ նորա ՚ի Կեսարիա։

## ԳԼ. Թ.

1 Իսկ Սաւղոս տակաւին լցեալ սպառնալեօք և
սպանմամբ աշակերտացն Տեառն, մատուցեալ առ
2 քահանայապետն՝ Խնդրեաց ՚ի նմանէ թուղթս ՚ի
Դամասկոս առ ժողովուրդսն. որպէս թէ զոք գտա-
ցէ զայնր ճանապարհի՝ արս կամ կանայս, կապ-
3 եալս ածցէ յԵրուսաղէմ։ Եւ ընդ երթալ նորա՝
եղև մերձենալ ՚ի Դամասկոս. յանկարծակի շուրջ
4 զնովաւ փայլատակեաց լոյս յերկնից։ Եւ անկեալ
յերկիր, լուաւ բարբառ որ ասէր ցնա. Սաւուղ
5 Սաւուղ՝ զի՞ հալածես զիս։ Եւ ասէ՝ Ո՞վ ես Տէր։
Եւ նա ասէ. Ես եմ Յիսուս զոր դուն հալածես.
6 խիստ է քեզ ընդդէմ խթանի աքացել։ Եւ զար-
հուրեալ՝ և անշշունչ լեալ ասաց. Տէր՝ զիս զի՞նչ
7 կամիս առնել։ Եւ ասէ ցնա Տէր. Արի՛ յոտն կաց՝ և
մուտ ՚ի քաղաքդ, և պատմեսցի քեզ՝ զի՞նչ պարտ
իցէ առնել. Իսկ արքն՝ որ ընդ նմայն երթային,
կային անշշունչ. զձայնն միայն լսէին՝ բայց տե-
8 սանէին և ոչինչ։ Յարեաւ Սաւղոս յերկրէ անտի,
և աչօք բացօք ոչ զո՛ք տեսանէր. զձեռանէ առ-
9 եալ նորա՝ մուծին ՚ի Դամասկոս։ Եւ էր անդ ա-
ւուրս երիս՝ և ոչ տեսանէր, և ոչ ուտէր և ոչ արբ։

10 Եւ էր ոմն աշակերտ 'ի Դամասկոս Անանիա անուն.
ասէ ցնա Տէր 'ի տեսլեան, Անանիա. և նա ասէ,
11 Ահաւասիկ եմ Տէր: Եւ ասէ ցնա Տէր. Յոտն կաց
և գնա ընդ փողոցն որ կոչի Ուղիղ, և խնդրեսցես
յապարանսն Յուդայ՝ Սօղոս անուն զՏարսոնացի՝
12 զի կայ դեռ յաղօթս: Եւ ետես 'ի տեսլեան այր մի
Անանիա անուն՝ մտեալ և եդեալ 'ի վերայ նորա
13 ձեռն, որպէս զի տեսցէ: Պատասխանի ետ Անա-
նիա, Տէ՛ր՝ լուայ 'ի բազմաց վասն առնն այնորիկ՝
14 որչափ արար չարիս սրբոց քոց յԵրուսաղէմ. Եւ
աստ ունի իշխանութիւն 'ի քահանայապետից կա-
15 պել զամենեսեան, որ կարդան զանուն քո: Ասէ
ցնա Տէր. Ե՛րթ դու. զի անօթ ընտրութեան է
ինձ նա, կրել զանուն իմ առաջի հեթանոսաց՝ և
16 թագաւորաց՝ և որդւոցն Իսրայէլի: Քանզի ես իսկ
ցուցից նմա՝ որչափ պարտ իցէ նմա չարչարիլ վասն
17 անուան իմոյ: Եւ գնաց Անանիա՝ և եմուտ յա-
պարանսն. և եդեալ 'ի վերայ նորա ձեռս, ասէ.
Սաւո՛ւղ եղբայր՝ 'ի վե՛ր հայեաց, Տէր առաքեաց
զիս, Յիսուս՝ որ երևեցաւն քեզ 'ի ճանապարհին՝
յորում գայիրն. որպէս զի տեսցես և լցցիս Հոգ-
18 ւով Սրբով: Եւ վաղվաղակի անկան յաչաց նո-
րա իբրև կեղևանք. ետես՝ և յարեաւ մկրտեցաւ.
19 Եւ առեալ կերակուր՝ զօրացաւ. և եղև 'ի Դա-
20 մասկոս ընդ աշակերտսն աւուրս ինչ: Եւ վաղվա-
ղակի 'ի ժողովուրդսն քարոզեաց զՅիսուս, թէ սա
21 է Որդին Աստուծոյ: Զարմացեալ էին ամենեքեան,
որ լսէինն, և ասէին. Ո՞չ սա էր՝ որ աւար հար-
կանէր յԵրուսաղէմ զայնոսիկ, որ կարդային զա-

նուն Յիսուսի. և այսր նմին իրի եկեալ է, զի
կապեալս զսոսա տարցի առ քահանայապետսն:
22 Այլ Սօղոս առաւել ևս զօրանայր՝ և յաղթահա-
րէր զՀրէայսն, որ բնակեալ էին ՚ի Դամասկոս.
23 և խելամտեցուցանէր թէ սա է Քրիստոսն: Իբրև
կատարէին աւուրք բազումք, խորհեցան Հրէայքն
24 սպանանել զնա: Յայտնեցաւ Սօղոսի նենգութիւն
նոցա. քանզի պահէին զդրունսն ՚ի տուէ և ՚ի գի-
25 շերի՝ որպէս զի սպանցեն զնա: Եւ առեալ զնա ա-
շակերտացն ՚ի գիշերի՝ ընդ պարիսպն կախեալ ի-
26 ջուցին վանդակաւ: Իբրև եկն Սօղոս յԵրուսա-
ղէմ՝ ընդելանէր յարել յաշակերտսն. և ամենեք-
եան երկնչէին ՚ի նմանէ, չհաւատային թէ իցէ
27 աշակերտ: Բայց Բառնաբայ առեալ զնա՝ ած
առ առաքեալսն. և պատմեաց նոցա՝ ո՛րպէս ՚ի ճա-
նապարհին ետես զՏէր, և զի խօսեցաւ ընդ նմա. և
զի ՚ի Դամասկոս համարձակեցաւ յանուն Յիսուսի:
28 Եւ էր ընդ նոսա՝ ՚ի մտանել և ելանել յԵրուսա-
29 ղէմ, համարձակեալ յանուն Տեառն: Խօսէր և
վիճէր ընդ Յոյնսն. և նոքա խորհէին սպանանել
30 զնա: Եւ իմացեալ եղբարց՝ իջուցին զնա ՚ի Կե-
31 սարիա, և առաքեցին զնա ՚ի Տարսոն: Բայց ե-
կեղեցին ընդ ամենայն Հրէաստան՝ և ՚ի Սամարիա
և ՚ի Գալիլեա ունէր խաղաղութիւն, շինեալ և
երթեալ զհետ երկիւղի Տեառն. և մխիթարու-
թեամբ Հոգւոյն Սրբոյ բազմանայր:
32 Եւ եղև ՚ի շրջելն Պետրոսի առ ամենեքումբք,
իջանել նմա և առ սուրբսն՝ որ բնակեալ էին ՚ի
33 Լիւդիայ: Եւ եգիտ անդ այր մի, որում անուն

էր Ենեա, ութամեան դնէր 'ի մահիճս անդամա-
34 լոյծ: Եւ ասէ ցնա Պետրոս. Ենեա՛ բժշկէ զքեզ
Տէր Յիսուս Քրիստոս, արի՛ և քեզէն թօթափեա՛
35 զանկողինս քո. և վաղվաղակի յարեաւ: Եւ տե-
սին զնա ամենեքեան, որ բնակեալ էին 'ի Լիւդի-
այ և 'ի Սարոնեայ, որք և դարձան իսկ 'ի Տէր:
36 Եւ 'ի Յոպպէ էր կին ոմն աշակերտեալ անուն Տա-
բիթա՝ որ թարգմանեալ կոչի Այծեմնիկ. սա էր
լի գործովք բարեօք և ողորմութեամբք զոր առնէր:
37 Եւ եղև յաւուրսն յայնոսիկ հիւանդանալ նմա և
մեռանել. լուացին զնա՝ և եդին 'ի դստիկոնի անդ:
38 Եւ մերձ էր Լիւդիա 'ի Յոպպէ. աշակերտացն լու-
եալ եթէ Պետրոս անդ է, առաքեցին երկուս արս
առ նա՝ աղաչել, զի մի՛ դանդաղեսցի գալ առ նո-
39 սա: Եւ յարուցեալ Պետրոս՝ եկն ընդ նոսա. զոր
իբրև եկն՝ հանին 'ի վերնատունն. և կացին շուրջ
զնովաւ այրիքն ամենայն. լային և ցուցանէին
զձորձս և զհանդերձս, որչափ առնէր նոցա Այծեմ-
40 նիկն: Եւ հանեալ արտաքս զամենեսեան Պետրոսի,
եդ ծունր՝ եկաց յաղօթս. և դարձաւ 'ի մարմինն
և ասէ. Տա՛բիթա՝ արի՛ կա՛ց յանուն Տեառն Յի-
սուսի Քրիստոսի. և նա եբաց զաչս իւր, և տե-
41 սեալ զՊետրոս նստաւ կանգուն: Ձեռն ետ նմա՝
և յարոյց զնա. կոչեաց զուրբսն և զայրիս, առաջի
42 կացոյց զնա կենդանի: Եւ յայտնի եղև ընդ ամե-
նայն Յոպպէ. և հաւատացին բազումք 'ի Տէր:
43 Եւ եղև աւուրս բազումս լինել նմա 'ի Յոպպէ առ
ումեմն Սիմոնի խաղախորդի:

## ԳԼ. Ժ

1 Այր մի էր 'ի Կեսարիա անուն Կոռնելիոս՝ հա-
2 րիւրապետ, 'ի գնդէ որ կոչէր Իտալացի. Բարեպաշ-
տօն՝ և երկիւղած յԱստուծոյ ամենայն տամբ իւրով.
առնէր ողորմութիւնս բազումս 'ի ժողովրդեանն. և
3 յաղօթս կայր առ Աստուած յամենայն ժամ: Ե-
տես 'ի տեսլեան յայտնապէս զիններորդ ժամու ա-
ւուրն զհրեշտակ Աստուծոյ, զի մտանէր առ նա՝ և
4 ասէր ցնա. Կոռնելիէ: Եւ նա հայեցեալ ընդ նա՝
զարհուրեցաւ և ասէ. Զի՞նչ է տէր. Եւ ասէ ցնա.
Աղօթք քո՝ և ողորմութիւնք քո ելին 'յիշատակս
5 առաջի Աստուծոյ: Եւ արդ յղեա՛ արս 'ի Յոպպէ՝
6 և կոչեա՛ զՍիմոն զոմն՝ որ կոչի Պետրոս. Նա մըտ-
եալ է առ Սիմոնի ումեմն խաղախորդի, որոյ է
7 տունն մերձ 'ի ծով: Եւ իբրև գնաց հրեշտակն
որ խօսէր ընդ նմա, կոչեաց երկուս 'ի ծառայից
իւրոց՝ և զինուոր մի բարեպաշտօն 'ի սպասաւորացն
8 իւրոց, Եւ պատմեալ նոցա զամենայն՝ առաքեաց
9 զնոսա 'ի Յոպպէ: Եւ 'ի վաղիւ անդր 'ի ճանա-
պարհ անկանել նոցա՝ և մօտ 'ի քաղաքն լինել, ել
Պետրոս 'ի տանիսն կալ յաղօթս զվեցերորդ ժա-
10 մուն: Քաղցեաւ՝ և կամէր ճաշակել. և 'ի պատ-
րաստելն նոցա՝ եղև 'ի վերայ նորա զարմացումն:
11 Եւ տեսանէր զերկինս բացեալ, և զչորեցունց տըտ-
նոց կապեալ անօթ ինչ իբրև զկտաւոյ մեծի, իջ-
12 եալ նստեալ 'ի վերայ երկրի. Յորում էին ամե-
նայն չորքոտանիք և սողունք երկրի՝ և թռչունք երկ-
13 նից: Եւ եղև ձայն առ նա. Արի՛ Պետրոս, զե՛ն

14 և կե՛ր ։ Եւ Պետրոս ասէ. Քա՛ւ լիցի Տէր, զի
15 ո՛չ երբէք կերայ խառնակ ինչ և անսուրբ ։ Ձայն
եղև կրկին անդամ առ նա. Զոր Աստուած սրբեաց՝
16 դու մի՛ պղծեր ։ Այս եղև երիցս, և վերացաւ ա-
17 նօթն յերկինս ։ Եւ մինչդեռ զարմացեալ էր ընդ
միտս Պետրոս՝ թէ զի՞նչ իցէ տեսիլն զոր ետես.
ահա՛ արքն առաքեալք ՚ի Կոռնելեայ՝ հարցին զա-
18 պարանիցն Սիմոնի, կացին առ դրանն. Կոչեցին
և հարցանէին, եթէ Սիմոն որ կոչի Պետրոս՝ աստ
19 մնեա՞լ իցէ ։ Եւ մինչդեռ Պետրոս զմտաւ ածէր
վասն տեսլեանն, ասէ Հոգին ցնա. Ահաւասիկ
20 արք ոմանք խնդրեն զքեզ ։ Այլ արի՛ էջ՝ և երթ
ընդ նոսա առանց իրիք խղճելոյ, զի ես առաքեցի
21 զնոսա ։ Եւ իջեալ էջ Պետրոս առ նոսա, ասէ. Ա-
հաւասիկ ես եմ՝ զոր խնդրէքդ. զի՞նչ իրք են՝
22 վասն որոյ եկիքդ ։ Եւ նոքա ասեն, Կոռնելիոս
հարիւրապետ՝ այր արդար և երկիւղած յԱստու-
ծոյ, վկայեալ յամենայն ազգէն Հրէից. հրաման
առ ՚ի հրեշտակէ սրբոյ՝ կոչել զքեզ ՚ի տուն իւր՝
23 և լսել բանս ՚ի քէն ։ Կոչեաց զնոսա ՚ի ներքս՝ և
առ իւր ագոյց. և ՚ի վաղիւ անդր յարուցեալ Պետրոս
գնաց ընդ նոսա. և ոմանք յեղբարց անտի՝ որ ՚ի
24 Յոպպէ էին՝ եկին ընդ նմա ։ Եւ ՚ի վաղիւ անդր
մտին ՚ի Կեսարիա. և Կոռնելիոս մնայր նոցա, կո-
չեցեալ զազգատոհմս իւր՝ և զկարևոր բարեկամսն ։
25 Եւ եղև ՚ի մտանելն Պետրոսի՝ ընդ առաջ եղև
նմա Կոռնելիոս, անկեալ առ ոտսն՝ երկիրպագա-
26 նէր ։ Եւ Պետրոս կանգնեաց զնա՝ և ասէ. Յո՛տն
27 կաց՝ և ես ինքն մարդ եմ ։ Եւ խօսելով ընդ նմա

եմուտ 'ի ներքս . և գտանէր անդ ժողովեալ բա-
28 զումս : Եւ ասէ ցնոսա . Դուք ինքնին գիտէք՝ որ-
պէս անմարթ է առն Հրէի հպել կամ մերձենալ
առ այլազգի . և ինձ Աստուած եցոյց մի՛ զոք խառ-
29 նակ կամ անսուրբ ասել 'ի մարդկանէ : Վասն
այսորիկ և առանց ընդ բանս ինչ ածելոյ եկի կո-
չեցեալ . բայց արդ հարցանեմ, Յի՞նչ պէտս կո-
30 չեցիք զիս : Եւ Կոռնէլիոս ասէ . Յառաջ քան
զչորս աւուրս *մինչ ցայս ժամ կայի" յաղօթս յինն
ժամու 'ի տան իմում, և ահա այր մի եկն եկաց ա-
31 ռաջի իմ 'ի հանդերձս սպիտակս , և ասէ : Կոռ-
նէլիէ՝ լուելի եղեն աղօթք քո . և ողորմութիւնք քո
32 յիշեցան առաջի Աստուծոյ : Եւ արդ յղեա՛ 'ի
Յոպպէ և կոչեա զՍիմոն՝ որ կոչեցեալն է Պետրոս .
սա մտեալ է 'ի տուն Սիմովնի ուրուանի խաղախոր-
դի մերձ 'ի ծովն . որ եկեսցէ , և խօսեսցի բանս ընդ
33 քեզ : Եւ ես իսկ և իսկ յղեցի առ քեզ . դու բարւոք
արարեր զի եկիր . Արդ ամենեքին մեք առաջի Ա-
տուծոյ կամք լսել զամենայն , զոր հրամայեալ է
34 քեզ 'ի Տեառնէ : Եբաց Պետրոս զբերան իւր՝ և
ասէ . Ճշմարտութեամբ հասեալ եմ, զի ո՛չ գոյ
35 ակնառութիւն առ 'ի յԱստուծոյ . Այլ յամենայն
ազգս՝ որ երկնչին 'ի նմանէ` և գործեն զարդարու-
36 թիւն , ընդունելի է նմա : Զբանն առաքեաց որդ-
ւոցն Իսրայէլի՝ աւետարանել զխաղաղութիւն 'ի
ձեռն Յիսուսի Քրիստոսի . սա է ամենայնի Տէր :
37 Դուք ինքնին գիտէք զբանն , որ եղև ընդ ամենայն

* 'Ի Յոյն. պահէի մինչ ցայս ժամ, և կայի

Հրէաստան սկսեալ ՚ի Գալիլեէ, յետ մկրտութեանն՝
38 զոր քարոզեաց Յովհաննէս ։ զՅիսուս որ ՚ի Նա-
զարեթէ՝ զոր օծ Աստուած Հոգւով Սրբով և զօ-
րութեամբ . որ շրջեցաւ բարի առնել՝ և բժշկել
զամենայն ըմբռնեալսն ՚ի Սատանայէ . զի Աստուած
39 էր ընդ նմա ։ Եւ մեք վկայ եմք ամենայնի՝ զոր ա-
րար յերկրին Հրէաստանի և յԵրուսաղէմ . զոր
40 և սպանին կախեալ զփայտէ ։ Զնա Աստուած յա-
րոյց յերրորդ աւուր . և ետ նմա յայտնի լինել .
41 Ոչ ամենայն ժողովրդեանն, այլ մեզ վկայիցս յա-
ռաջագոյն ընտրելոցս յԱստուծոյ . որք և կերաք և
արբաք ընդ նմա՝ յետ յարութեան նորա ՚ի մեռե-
42 լոց ։ Եւ պատուիրեաց մեզ քարոզել ժողովրդեանն՝
և վկայութիւն դնել, թէ նա է սահմանեալն յԱս-
43 տուծոյ՝ դատաւոր կենդանեաց և մեռելոց ։ Նմա
ամենայն մարգարէք վկայեն, թողութիւն մեղաց առ-
նուլ անուամբ նորա՝ ամենայն հաւատացելոց ՚ի նա ։
44 Եւ մինչդեռ խօսէր Պետրոս զբանս զայս, հանգեաւ
Հոգին Սուրբ ՚ի վերայ ամենեցուն՝ որ լսէին զբանն ։
45 Զարմացան՝ որք ՚ի թլփատութենէ անտի հաւա-
տացեալքն եկեալ էին ընդ Պետրոսի . զի և ՚ի հե-
46 թանոսս պարգևք Հոգւոյն Սրբոյ զեղուին ։ Քան-
զի լսէին ՚ի նոցանէ խօսել լեզուս՝ և մեծացուցա-
47 նել զԱստուած ։ Յայնժամ պատասխանի ետ Պետ-
րոս . Միթէ զջո՞ւր ոք արգելուլ կարէ առ ՚ի չմկրտե-
լոյ զսոսա, որք և զՀոգին Սուրբ ընկալան՝ որ-
48 պէս և մեք ։ Եւ հրամայեաց նոցա մկրտել յանուն
Յիսուսի Քրիստոսի . յայնժամ աղաչեցին զնա
լինել անդ աւուրս ինչ ։

# ԳԼ · ԺԱ

1 Լուան առաքեալքն և եղբարքն՝ որ էին ՚ի կող-
մանս Հրէաստանի, զի և ՚ի հեթանոսս ընկալան
2 զբանն Աստուծոյ։ Բայց յորժամ ել Պետրոս յԵ-
րուսաղէմ, խղճէին ՚ի նմանէ՝ որ ՚ի թլփատութե-
3 նէ անտի հաւատացեալքն. Եւ ասէին, թէ Ե-
4 մուտ առ արս անթլփատս՝ և եկեր ընդ նոսա։ Եւ
սկսաւ Պետրոս պատմել նոցա կարգաւ՝ և ասէ.
5 Ես էի ՚ի քաղաքին ՚ի Յոպպէ յաղօթս՝ և տեսա-
նէի ՚ի զարմացման տեսիլ. իջանել անօթ ինչ իբ-
րև կտաւոյ մեծի չորեցունց տանց կախեալ յերկ-
6 նից՝ և եհաս մինչև առ իս։ Յոր պշուցեալ հայէի.
և տեսի զչորքոտանիս երկրի, և զգազանս՝ և զսո-
7 ղունս, և զթռչունս երկնից։ Եւ լուայ բարբառ՝
8 որ ասէր ցիս. Արի՛ Պետրոս՝ զե՛ն և կե՛ր։ Եւ ասեմ.
Քա՛ւ լիցի Տէ՛ր, զի խառնակ ինչ և անսուրբ ո՛չ
9 երբեք եմուտ ՚ի բերան իմ։ Պատասխանի ետ
ինձ երկիցս անգամ բարբառն յերկնից. Զոր Աս-
10 տուած սրբեաց՝ դու մի՛ խառնակ համարիր։ Այս
եղև երիցս, և վերացաւ ամենայն դարձեալ յեր-
11 կինս։ Եւ ահա՛ անդրէն երեք արք եկին կացին առ
ապարանիցն՝ ուր եմն էի, առաքեալք ՚ի Կեսարիայ
12 առ իս։ Եւ ասէ ցիս Հոգին երթալ ընդ նոսա՝ և
մի՛ ինչ խղճել. եկին ընդ իս և սոքա վեցեքին եղ-
13 բարքս, և մտաք ՚ի տուն առնն այնորիկ։ Եւ պատ-
մեաց մեզ՝ որպէս ետես զհրեշտակն ՚ի տան իւրում,
զի կայր և ասէր ցնա. Առաքեա՛ ՚ի Յոպպէ, և
14 կոչեա՛ զՍիմոն զկոչեցեալն Պետրոս. Որ խօսեսցի

բանս ընդ քեզ, որովք կեցցես դու՝ և ամենայն
15 տուն քո։ Եւ իբրև սկսայ խօսել՝ եկն Հոգին Սուրբ
ի վերայ նոցա․ որպէս և ի վերայ մեր ի սկզբանն։
16 Յիշեցի զբանն Տեառն զոր ասէրն․ Յովհաննէս
մկրտեաց ի ջուր․ բայց դուք մկրտիցիք ի Հոգին
17 Սուրբ։ Իսկ արդ եթէ զհաւասարակաց պարգևն ետ
Աստուած և նոցա՝ որպէս և մեզ՝ ի հաւատալն ի
Տէր Յիսուս Քրիստոս, ես զի՞նչ կարող էի ար-
18 գելուլ զԱստուած։ Եւ լուեալ զայս լռեցին, և փա-
ռաւոր առնէին զԱստուած՝ և ասէին․ Ուրեմն և ի
հեթանոսս ետ Աստուած զապաշխարութիւն կենաց։
19 Եւ ցրուեալքն ի նեղութենէն որ եղև ի վերայ
Ստեփանոսի՝ հասին մինչև ի Փիւնիկէ և ի Կիպ-
րոս և յԱնտիոքիա․ ոչ ումեք խօսէին զբանն, բայց
20 միայն Հրէից։ Եւ էին ոմանք ի նոցանէ արք Կիպ-
րացիք և Կիւրենացիք՝ որք մտեալ յԱնտիոք՝ խօ-
սէին ընդ Յոյնս՝ աւետարանեալ զՏէր Յիսուս։
21 Եւ էր ձեռն Տեառն ընդ նոսա․ և բազմութիւն
22 հաւատացելոց դարձաւ ի Տէր։ Լու եղև բանս այս
յականջս եկեղեցւոյն, որ էր յԵրուսաղէմ վասն
նոցա․ և առաքեցին զԲառնաբաս մինչև յԱնտիոք․
23 Որ իբրև եկն՝ և ետես զշնորհսն Աստուծոյ՝ ուրախ
եղև, և մխիթարէր զամենեսին՝ յօժարութեամբ
24 սրտի կալ նոցա ի Տէր։ Զի էր այր *զուարթա-
միտ՝ և լի Հոգւով Սրբով և հաւատովք․ և յաւե-
25 լաւ ժողովուրդ բազում Տեառն։ Եւ ել ի Տար-
սոն խնդրել զՍօղոս, և գտեալ զնա ած յԱնտի-

* Ի Յոյնն, բարի

26 որ ։ Եւ եղեւ նոցա զամն ողջոյն ժողովել յեկեղե-
ցին՝ եւ ուսուցանել ժողովուրդ բազում, եւ անուա-
նել նախ յԱնտիոք զաշակերտսն Քրիստոնեայս ։
27 Ընդ աւուրսն ընդ այնոսիկ իջին յԵրուսաղէմէ
28 մարգարէք յԱնտիոք ։ Յարուցեալ մի ոմն ՚ի նո-
ցանէ անուն Ագաբոս՝ նշանակեաց Հոգւովն սով մեծ
լինել ընդ ամենայն աշխարհ՝ որ եղեւ առ Կղօդեաւ ։
29 Բայց յաշակերտաց անտի, որպէս զիարդ կարող
ոք էր՝ իւրաքանչիւրոք ՚ի նոցանէ որոշեցին առա-
քել ՚ի պէտս եղբարցն որ բնակեալ էին ՚ի Հրէ-
30 աստանի ․ Զոր եւ արարին իսկ՝ առաքեալ առ ե-
րիցունսն ՚ի ձեռն Բառնաբայ եւ Սօղոսի ։

## ԳԼ. ԺԲ

1 Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ արկ Հերովդէս
2 արքայ ձեռն՝ չարչարել զոմանս յեկեղեցւոյն ։ Եւ
սպան զՅակովբոս զեղբայրն Յովհաննու սրով ։
3 Եւ տես եթէ հաճոյ է Հրէիցն, յաւել եւս ունել
4 զՊետրոս ․ եւ էին աւուրքն բաղարջակերաց ։ Զոր
իբրեւ կալաւ՝ եդ ՚ի բանտի, եւ մատնեաց չորից չոր-
րորդաց զինուորաց պահել զնա ․ եւ կամէր յետ
5 զատկին ածել զնա ժողովրդեանն ։ Եւ Պետրոս ՚ի
պահեստի էր ՚ի բանտին ․ եւ աղօթք սաստիկ լինէին
6 յեկեղեցւոյն վասն նորա առ Աստուած ։ Իբրեւ կա-
մեցաւ զնա ածել Հերովդէս ․ ՚ի գիշերին յայնմիկ
էր Պետրոս ՚ի քուն ՚ի մէջ երկուց զինուորաց՝ կապ-
եալ կրկին շղթայիւք ․ եւ պահապանքն առաջի
7 դրանն պահէին զբանտն ։ Եւ ահա հրեշտակ Տեառն

եկն եկաց 'ի վերայ՝ և լոյս ծագեաց 'ի տանն , և
խթեաց զկողմն Պետրոսի յարոյց զնա և ասէ ․ Ա՛րի
վաղվաղակի ․ և անկան շղթայքն 'ի ձեռաց նորա ։
8 Եւ ասէ հրեշտակն ցնա ․ Ա՛ծ զգօտի քո , և ա՛րկ
զհողաթափս յոտս քո ․ և արար այնպէս ․ և ասէ
9 ցնա , Ա՛րկ զձորձս քո՝ և եկ զկնի իմ ։ Եւ ել-
եալ երթայր զհետ , և ո՛չ գիտէր թէ ճշմարիտ ի-
ցէ որ ինչ եղեւն 'ի հրեշտակէն ․ զի համարէր ե-
10 րազ տեսանել ։ Եւ իբրև անցին նոքա ըստ մի պահ
և ըստ երկուս , եկին մինչև 'ի դուռն երկաթի՝ որ
հանէր 'ի քաղաքն ․ որ ինքնին բացաւ նոցա ․ և
մտեալ անցին ընդ փողոց մի ․ և վաղվաղակի 'ի
11 բաց եկաց 'ի նմանէ հրեշտակն ։ Եւ Պետրոս իբ-
րև 'ի միտս եղև , ասէ ․ Արդ գիտեմ ճշմարիտ ե-
թէ առաքեաց Տէր զհրեշտակ իւր , և փրկեաց զիս
'ի ձեռաց Հերովդի , և յամենայն ակնկալութենէ
12 ժողովրդեանն Հրէից ։ Եւ լեալ 'ի միտ՝ եկն 'ի
տուն Մարեմու մօր Յովհաննու , որ կոչեցաւն
Մարկոս ․ ուր էին բազումք ժողովեալ՝ և աղօթս
13 առնէին ։ Եւ 'ի բաղխել զդուրս տանն , մատեաւ
աղախին մի՝ ունկն դնէր , որում անուն էր Հռովդէ ։
14 Եւ ծանուցեալ զձայնն Պետրոսի՝ 'ի խնդալոյն ո՛չ
եբաց զդուռն ․ 'ի ներքս ընթացեալ պատմեաց , թէ
15 Պետրոս առ դրանն կայ ։ Նոքա ասեն ցնա Մոլիս ․
և նա ևս պնդէր թէ այսպէս է ․ և նոքա ասէին՝
16 Հրեշտակ նորա իցէ ։ Եւ Պետրոս ստէպ բաղխէր ․
17 իբրև բացին , տեսին զնա և զարմացան ։ Եւ նա
ձեռամբ ցուցանէր նոցա լռել ․ և պատմեաց՝ որպէս
Տէր եհան զնա 'ի բանտէն ․ և ասէ՝ Պատմեցէք

Յակովբայ և եղբարց զայս. և ել գնաց յայլ տե-
18 ղի։ Եւ իբրև այգ եղև՝ էր խռովութիւն մեծ 'ի
19 մէջ զինուորացն, զի՞ արդեօք Պետրոսն եղև։ Իսկ
Հերովդէս իբրև խնդրեաց զնա՝ և ոչ եգիտ, հարց-
եալ զպահապանսն հրամայեաց սպանանել. և իջ-
եալ 'ի Հրէաստանէ 'ի Կեսարիա՝ և անդ լինէր։
20 Եւ էր Հերովդէս ցասմամբ ընդ Տիւրացիս և ընդ
Սիդոնացիս. և նոքա առ հասարակ եկին առ նա.
և 'ի բանի արարեալ զԲղաստոս սենեկապետն ար-
քայի, խնդրէին զխաղաղութիւն վասն կերակրե-
21 լոյ երկրին նոցա յարքունուստ։ Յաւուր միում
յերևելւոջ՝ Հերովդէս զգեցեալ էր զհանդերձ թա-
գաւորութեան՝ և նստէր յատենի, և խօսէր ընդ
22 նոսա հրապարակաւ։ Եւ ամբոխն աղաղակէր՝ թէ
23 Աստուծոյ բարբառ է, և ոչ մարդոյ։ Եւ անդէն
եհար զնա հրեշտակ Տեառն, փոխանակ զի ոչ
ետ փառս Աստուծոյ. և եղեալ որդնալից՝ սատա-
24 կեցաւ։ Եւ բանն Աստուծոյ աճէր և բազմանայր։
25 Բառնաբաս և Սօղոս դարձան յԵրուսաղէմէ՝
իբրև կատարեցին զպաշտօնն. առեալ էր ընդ իւր-
եանս և զՅովհաննէս՝ որ կոչեցեալն էր Մարկոս։

## ԳԼ. ԺԳ.

1 Էին ոմանք յԱնտիոք ընդ եկեղեցւոյն մարգարէք
և վարդապետք, Բառնաբաս՝ և Շմաւոն կոչեց-
եալն Նիգէր, և Ղուկիոս Կիւրենացի, և Մա-
նայէն դայեակորդի Հերովդի չորրորդապետի, և
2 Սօղոս։ Մինչդեռ 'ի պաշտաման Տեառն կային՝

և պահէին, ասէ Հոգին Սուրբ. Որոշեցէք ինձ
զԲառնաբաս և զՍօղոս ՚ի գործ՝ յոր կոչեցեալ է
3 իմ զդոսա: Յայնժամ պահեալ՝ և աղօթս արար-
4 եալ՝ եդին ձեռն ՚ի վերայ նոցա՝ և արձակեցին: Եւ
նոքա առաքեալք ՚ի Հոգւոյն Սրբոյ՝ իջին ՚ի Սելև-
5 կիա. և անտի նաւեցին ՚ի Կիպրոս: Եւ հասեալ
՚ի Սաղամինա՝ պատմէին զբանն Աստուծոյ ՚ի ժո-
ղովուրդս Հրէիցն. ունէին և զՅովհաննէս պաշ-
6 տօնեայ: Շրջեալ ընդ ամենայն կղզին մինչև ՚ի
Պափոս, գտին անդ այր ոմն մոգ սուտ մարգարէ՝
7 Հրեայ, որում անուն էր Բարյեսու: Որ էր ընդ
փոխանակի բդեշխին Սերգեայ Պօղոսի՝ առն իմաստ-
նոյ. նորա աղաչեալ զԲառնաբաս և Սօղոս՝ խնդ-
8 րէր լսել զբանն Աստուծոյ: Ընդդէմ եկաց նոցա
Եղիմաս մոգ. քանզի այսպէս թարգմանի անուն
նորա. խնդրէր շրջել զփոխանակ բդեշխին ՚ի հա-
9 ւատոց: Իսկ Սօղոս, որ և Պօղոսն՝ լցեալ Հոգւով
10 Սրբով հայեցաւ ՚ի նա, Եւ ասէ. Ո՛վ լի ամե-
նայն նենգութեամբ և խորամանկութեամբ՝ որդի
Սատանայի՝ թշնամի ամենայն արդարութեան, ո՞չ
լռես ՚ի թիւրելոյ զճանապարհս Տեառն զուղիղս:
11 Եւ արդ՝ ահա ձեռն Տեառն ՚ի վերայ քո, և եղիցիս
կոյր՝ չտեսանել զարև մինչև ՚ի ժամանակ մի. և ան-
դէն անկաւ ՚ի վերայ նորա մէգ և խաւար, և շրջ-
12 եալ խնդրէր առաջնորդս: Յայնժամ տեսեալ
փոխանակի բդեշխին զիրսն որ եղեն՝ հաւատաց,
զարմացեալ ընդ վարդապետութիւնն Տեառն:
13 Եւ ամբարձեալ ՚ի Պափեայ Պօղոսեանց՝ եկին
՚ի Պերգէ Պամփիլեայ. Յովհաննէս մեկնեալ ՚ի

14 նոցանէ՝ դարձաւ յԵրուսաղէմ: Եւ նոքա գնաց-
եալ 'ի Պերգեայ՝ եկին յԱնտիոք Պիսիդեայ. և
մտեալ 'ի ժողովուրդն յաւուր շաբաթու՝ նստան:
15 Եւ յետ ընթեռնլոյ զօրէնսն և զմարգարէս, ա-
ռաքեցին առ նոսա ժողովրդապետքն և ասեն. Արք
եղբարք՝ եթէ իցեն 'ի ձեզ բանք մխիթարութեան
16 առ ժողովուրդդ՝ խօսեցարո՛ւք: Յոտն եկաց Պօ-
ղոս՝ շարժեաց զձեռն և ասէ. Ա՛րք Իսրայէլացիք
17 և որք երկնչիք յԱստուծոյ՝ լուարո՛ւք: Աստուած
ժողովրդեանս այսորիկ Իսրայէլի ընտրեաց զհարսն
մեր. և զժողովուրդն բարձրացոյց 'ի պանդխտու-
թեան յերկրին Եգիպտացւոց. և 'ի բազուկ բարձր
18 եհան զնոսա անտի: Եւ իբրև քառասնամեայ ժա-
19 մանակ կերակրեաց զնոսա յանապատի. Եւ քակ-
եալ ազգս եօթն յերկրին Քանանու՝ ժառանգե-
20 ցոյց նոցա զերկիր նոցա. Իբրև ամս չորեքհարիւր և
յիսուն. և յետ այսորիկ ետ նոցա դատաւոր մին-
21 չև 'ի Սամուէլ մարգարէ: Եւ անտի յառաջ խընդ-
րեցին թագաւոր. և ետ նոցա Աստուած զՍա-
ւուղ որդի Կիսեայ՝ այր յազգէ Բենիամինի, ամս
22 քառասուն: Եւ իբրև փոխեաց զնա, յարոյց նոցա
զԴաւիթ թագաւոր, որում և ասաց վկայութեամբ.
Գտի զԴաւիթ որդի Յեսսեայ այր ըստ սրտի իմում,
23 որ արասցէ զամենայն զկամս իմ: 'Ի սորա զա-
ւակէ Աստուած ըստ աւետեացն յարոյց Իսրայէլի
24 զփրկիչն Յիսուս. Ըստ յառաջագոյն քարոզութեանն
Յովհաննու առաջի երեսաց մտի նորա՝ մկրտու-
թիւն ապաշխարութեան՝ ամենայն ժողովրդեանն
25 Իսրայէլի: Եւ իբրև լնոյր Յովհաննէս զընթացսն,

ասէր. Զո՞ որ կարծէք զինէն՝ թէ իցեմ. չեմ ես
այն. այլ ահա գայ զկնի իմ, որում չեմ արժանի
26 զկօշիկս ոտիցն լուծանել: Արք եղբարք՝ որդիք
Աբրահամեան տոհմին, և որ ՚ի ձեզ երկիւղածք ի-
ցեն յԱստուծոյ. ձեզ բանս այս փրկութեան առա-
27 քեցաւ: Բայց որ բնակեալ են յԵրուսաղէմ, և
իշխանք նոցա՝ անծանօթ եղեն ՚ի նմանէ. և ըստ
բարբառոյ մարգարէիցն, որ զամենայն շաբաթս
28 ընթեռնուին՝ դատեալ կատարեցին. Եւ ո՛չ մի ինչ
պատճառս մահու գտեալ՝ խնդրեցին ՚ի Պիղատոսէ
29 սպանանել զնա: Եւ իբրև կատարեցին զամենայն՝
որ վասն նորա գրեալ էր, իջուցեալ ՚ի փայտէն՝
30 եդին ՚ի գերեզմանի: Այլ Աստուած յարոյց զնա
31 ՚ի մեռելոց. Որ երևեցաւ աւուրբք բազմօք այնո-
ցիկ, որ ելեալ էին ընդ նմա ՚ի Գալիլեէ յԵրու-
սաղէմ. որք և արդ իսկ վկայք են նորա առ ժո-
32 ղովուրդն: Եւ մեք ձեզ աւետարանեմք զխոստումն՝
33 որ առ հարսն եղեալ էր: Զի զնոյն Աստուած կա-
տարեաց առ մեզ որդիս նոցա՝ յարուցեալ զՅի-
սուս. որպէս և ՚ի Սաղմոսին գրեալ է յերկրոր-
դում. Որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ:
34 Եւ զի յարոյց զնա ՚ի մեռելոց, և ո՛չ ևս դառնա-
լոց է յապականութիւն. այսպէս ասէ, եթէ Տաց
35 ձեզ զսրբութիւնս Դաւթի զհաւատարիմս: Քան-
զի և ՚ի միւսումն ասէ. Ո՛չ տացես Սրբոյ քում
36 տեսանել զապականութիւն: Այլ Դաւիթ յազգի
անդ իւրում պաշտեաց. և ՚ի կամս Աստուծոյ ննջ-
եաց, և յաւելաւ առ հարս իւր՝ և ետես զապա-
37 կանութիւն: Բայց զոր Աստուածն յարոյց՝ ո՛չ ե-

38 սոս զապականութիւն։ Յայտնի լիցի ձեզ արք
եղբարք, զի սովաւ ձեզ թողութիւն մեղաց աւե-
39 տարանի. Եւ յամենայնէ՝ յորմէ ոչ կարացիք օրի-
նօքն Մովսէսի արդարանալ, սովաւ ամենայն որ
40 հաւատայ՝ արդարանայ։ Զգոյշ կացէք գուցէ ե-
41 կեսցէ ՚ի վերայ ձեր ասացեալն ՚ի մարգարէս։ Տե-
սէք արհամարհոտք՝ և զարմացարուք և եղծարուք.
զի գործ մի գործեմ ես յաւուրս ձեր. գործ՝ որում ոչ
42 հաւատայցէք, եթէ ոք պատմեսցէ ձեզ։ Եւ իբրև
ելին անտի, աղաչէին ՚ի միւսում շաբաթու խօսել
43 նոցա զնոյն բանս։ Իբրև արձակեցաւ ժողովուրդն,
զհետ երթային բազումք ՚ի Հրէից անտի և ՚ի պաշ-
տօնէից եկամտից զՊօղոսի և զԲառնաբայ. որք
խօսէին ընդ նոսա, և հաւանեցուցանէին զնոսա
կալ մնալ ՚ի շնորհսն Աստուծոյ։
44 Եւ ՚ի գալ միւսոյ շաբաթուն, գրեթէ ամենայն
45 քաղաքն ժողովեցաւ լսել զբանն Աստուծոյ։ Իբրև
տեսին Հրէայքն զամբոխն՝ լցան նախանձու. և ընդ-
դէմ դարձեալ ասացելոցն ՚ի Պօղոսէ՝ հայհոյէին։
46 Համարձակեալ Պօղոսի և Բառնաբայ՝ ասէին.
Առ ձեզ նախ պարտ էր խօսել զբանն Աստուծոյ.
և քանզի դուք մերժեցէք զնա, և ոչ արժանի հա-
մարիք զձեզ կենացն յաւիտենականաց, ահաւա-
47 սիկ դառնամք ՚ի հեթանոսս։ Զի այսպէս պատ-
ուիրեաց մեզ Տէր. Եդի զքեզ ՚ի լոյս հեթանոսաց՝
լինել քեզ ՚ի փրկութիւն մինչև ՚ի ծագս երկրի։
48 Զայս լուեալ հեթանոսացն՝ ուրախ լինէին, և փա-
ռաւոր առնէին զբանն Տեառն. և հաւատացին՝ որք
49 էին կարգեալ ՚ի կեանսն յաւիտենականս։ Եւ

50 շրջէր բանն Տեառն ընդ ամենայն գաւառն: Բայց
Հրեայքն գրգռեցին զպաշտօնեայ կանայս զգաստս՝
և զգլխաւորս քաղաքին, և յարուցեալ հալածանս
'ի վերայ Պօղոսի և Բառնաբայ՝ հանին զնոսա 'ի
51 սահմանացն իւրեանց: Եւ նոքա թօթափեալ զփո-
52 շին յոտից 'ի վերայ նոցա, եկին յԻկոնիոն: Եւ
աշակերտքն լնուին խնդութեամբ և Հոգւովն Սրբով:

## ԳԼ. ԺԴ

1 Եւ եղև յԻկոնիոն 'ի միասին մտանել նոցա 'ի
ժողովուրդ Հրէիցն և խօսել նոյնպէս. մինչև հա-
2 ւատալ Հրէից և Յունաց բազմաց յոյժ: Բայց
անհաւան Հրեայքն յարուցին և չարացուցին զան-
3 ձինս հեթանոսացն 'ի վերայ եղբարց: Բազում
ժամանակս շրջէին համարձակեալք Տեառն վկայու-
թեամբ, բանիւ շնորհաց իւրոց. և տալ նշանս և
4 արուեստս լինելոյ 'ի ձեռս նոցա: Եւ եղեն հերձ-
ուածք 'ի բազմութեան քաղաքին. ոմանք էին 'ի
5 Հրէայսն, և ոմանք յառաքեալսն: Իբրև եղև դի-
մել հեթանոսացն և Հրէից իշխանօքն իւրեանց, 'ի
6 թշնամանել և 'ի քարկոծել զնոսա, Ազդ եղեալ
նոցա՝ փախեան 'ի քաղաքս Լիկայոնացւոց 'ի Լիւստ-
րա և 'ի Դերբէ՝ և շուրջ զգաւառաւն, և անդ ա-
ւետարանէին:

7 Եւ այր մի Լիւստրացի տկար յոտից նստէր՝ կաղ
յորովայնէ մօր իւրոյ, որոյ երբէք չէր գնացեալ:
8 Սա լուաւ զխօսսն Պօղոսի. որոյ հայեցեալ 'ի նա,
9 և տեսեալ թէ ունի հաւատս փրկութեան, Ասէ

մեծաձայն․ Քե՛զ ասեմ յանուն Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի՝ յոտն կաց 'ի վերայ ոտից քոց
10 ուղիղ․ և վազվազէր՝ և գնայր։ Եւ ժողովրդոցն
տեսեալ զոր արարն Պօղոս, բարձին զձայնս իւր-
եանց Լիկայոնարէն և ասեն․ Աստուածք նման-
11 եալք մարդկան իջին առ մեզ։ Եւ կոչէին զԲառ-
նաբաս Դիոս, և զՊօղոս Հերմէս․ քանզի նա էր
12 առաջնորդ բանին։ Իսկ քուրմն Դիայ՝ որ կայր ա-
ռաջի քաղաքին, ցուլս և պսակս հասուցեալ 'ի
դուռն՝ հանդերձ բազմութեամբքն՝ կամէր զոհել։
13 Եւ լուեալ առաքելոցն Բառնաբայ և Պօղոսի, պա-
տառեալ զհանդերձս իւրեանց՝ արտաքս վազեցին
14 յամբոխէն․ աղաղակէին, Եւ ասէին․ Արք՝ զի՞նչ
գործէք զայդ․ մեք ձեզ նմանողք կարեօք մարդիկ
եմք․ աւետարանել ձեզ յայդպիսի ունայնութեանց
դառնալ յԱստուած կենդանի․ որ արար զերկինս և
15 զերկիր և զծով՝ և զամենայն որ 'ի նոսա։ Որ յանց-
եալ ազգսն՝ թոյլ ետ ամենայն հեթանոսաց գնալ
16 'ի ճանապարհս իւրեանց։ Եւ սակայն ո՛չ եթէ ա-
ռանց վկայութեան զինքն եթող՝ բարերարութեամբն
տալ յերկնից ձեզ անձրևս՝ և ժամանակս պտղա-
բերս, լնուլ կերակրովք և ուրախութեամբ զսիրտս
17 ձեր։ Եւ զայս ասացեալ՝ հազիւ լռեցուցանէին
զժողովուրդսն 'ի չզոհելոյ նոցա․ այլ գնալ յիւ-
րաքանչիւր տեղիս։

18 Եւ 'ի շրջելն նոցա և ուսուցանել՝ եկին հասին
յԱնտիոքէ և յԻկոնիէ Հրէայք․ և 'ի վիճել նոցա
համարձակութեամբ՝ պատրեցին զժողովուրդսն՝ 'ի
բաց կալ 'ի նոցանէ, և ասէին՝ թէ Ոչինչ ճշմար-

տութիւն ասեն, այլ զամենայն ստեն․ և քարկոծ-
եալ զՊօղոս՝ քարշեցին արտաքս քան զքաղաքն,
19 և համարէին զնա մեռեալ։ Եւ ՚ի պատել զնովաւ
աշակերտացն՝ յարեաւ եմուտ ՚ի քաղաքն․ և ՚ի
վաղիւ անդր ել Բառնաբաւ հանդերձ ՚ի Դերբէ։
20 Աւետարանեալ ՚ի քաղաքին յայնմիկ՝ և աշակերտ-
եալ զբազումս, դարձան ՚ի Լիւստրա՝ և յԻկոնիոն՝
21 և յԱնտիոքիա․ Հաստատել զանձինս աշակեր-
տելոցն՝ և մխիթարել կալ հաստատուն ՚ի հաւատսն․
և թէ բազում նեղութեամբք պարտ է մեզ մտա-
22 նել յարքայութիւնն Աստուծոյ։ Ձեռնադրեցին
նոցա ըստ եկեղեցւոյ՝ երիցունս․ աղօթս արարեալ
հանդերձ պահօք, յանձն արարին զնոսա Տեառն՝
23 յոր հաւատացեալն էին։ Եւ շրջեալ ընդ Պիսիդ-
24 եայ՝ եկին ՚ի Պամփիւլեայ։ Եւ խօսեցեալ ՚ի
25 Պերգէ զբանն Տեառն, իջին յԱտալիայ։ Եւ ան-
տի նաւարկեալ՝ գնացին յԱնտիոք, ուստի էին
յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ ՚ի գործն զոր
26 կատարեցին։ Եկեալ և ժողովեալ զեկեղեցին՝
պատմեցին որչափ արար Աստուած ընդ նոսա․ և
27 զի եբաց հեթանոսաց դուռն հաւատոց։ Շրջէին
ժամանակս ոչ սակաւ ընդ աշակերտսն։

## ԳԼ․ ԺԵ

1 Եւ ոմանք իջեալ ՚ի Հրէաստանէ՝ ուսուցանէին
զեղբարս․ Եթէ ո՛չ թլփատիք ըստ օրինացն Մով-
2 սէսի՝ ո՛չ կարէք ապրել։ Եւ ՚ի լինել ոչ սակաւ հա-
կառակութեան և խնդրոյ՝ Պօղոսի և Բառնաբայ

ընդ նոսա, եդին ելանել Պօղոսի և Բառնաբայ և
ոմանց 'ի նոցանէ՝ առ առաքեալսն և երիցունս յԵ-
3 րուսաղէմ վասն խնդրոյն այնորիկ: Նոքա յու-
ղարկեալք յեկեղեցւոյն, շրջեցան ընդ փիւնիկէ և
ընդ Սամարիա՝ պատմէին զդարձն հեթանոսաց,
և առնէին ուրախութիւն մեծ ամենայն եղբարց:
4 Եւ հասեալ յԵրուսաղէմ, ընկալեալք յեկեղեց-
ւոյն և յառաքելոցն և յերիցանց՝ պատմեցին որչափ
5 ինչ արար ընդ նոսա Աստուած: Յարեան ոմանք 'ի
հերձուածոյն փարիսեցւոց հաւատացեալք, և ասեն՝
թէ պարտ է թլփատել զդոսա, և պատուիրել պա-
6 հել զօրէնսն Մովսէսի: Եւ ժողովեցան առաք-
եալքն և երիցունք տեսանել վասն բանիս այսո-
7 րիկ: Եւ յետ բազում խնդիր լինելոյ՝ յոտն եկաց
Պետրոս՝ և ասէ ցնոսա. Արք եղբարք՝ դուք ինք-
նին գիտէք, զի յաւուրցն առաջնոց 'ի միջի ձերում՝
ընտրեաց Աստուած բերանով իմով լսել հեթանո-
8 սաց բանին աւետարանի, և հաւատալ: Եւ սրտ-
ագէտն Աստուած վկայեաց նոցա, տալով նոցա
9 զհոգին Սուրբ որպէս և մեզ. Եւ ոչինչ ընտրու-
թիւն արար 'ի մէջ նոցա և մեր, հաւատովք սրբ-
10 եալ 'զսիրտս նոցա: Արդ՝ ընդէ՞ր փորձէք զԱստ-
ուած, դնել լուծ 'ի վերայ պարանոցի աշակեր-
տացն, զոր ո՛չ հարքն մեր և ո՛չ մեք կարացաք
11 բառնալ: Այլ շնորհօքն Տեառն Յիսուսի Քրիս-
տոսի հաւատամք ապրել, զորօրինակ և նոքա:
12 Լռեաց ամենայն ժողովուրդն, և լսէին Բառնա-
բայ և Պօղոսի պատմելոյն. որչափ արար Աստուած
նշանս և արուեստս 'ի հեթանոսս 'ի ձեռն նոցա:

13 Եւ յետ լռելոյն նոցա՝ պատասխանի ետ Յակով-
14 բոս՝ և ասէ․ Արք եղբարք՝ լուարո՛ւք ինձ։ Շմա-
ւոն պատմեաց որպէս յառաջագոյն Աստուած այց
արար առնուլ ժողովուրդ ՚ի հեթանոսաց՝ անուան
15 իւրոյ։ Եւ այնմ միաբանին բանք մարգարէիցն՝ որ-
16 պէս և գրեալ է։ Յետ այսորիկ դարձայց և շինե-
ցից զյարկն Դաւթի զանկեալն․ և զկործանեալն
17 նորա վերստին շինեցից՝ և կանգնեցից զնա․ Որպէս
զի խնդրեսցեն մնացորդք մարդկան զՏէր․ և ամե-
նայն հեթանոսք՝ յորոց վերայ կոչեցեալ է անուն
18 իմ, ասէ Տէր, որ առնէ զայս ամենայն՝ Յայտնի
19 է ՚ի յաւիտենից (Տեառն գործ իւր)։ Վասն որոյ
և ես իրաւունս համարիմ, մի՛ նեղել զայնոսիկ՝ ոյք
20 ՚ի հեթանոսացն դառնան առ Աստուած։ Այլ տալ
թուղթ առ նոսա, խորշել ՚ի կերակրոց կռոց,
և ՚ի պոռնկութենէ և ՚ի մեռելոտւոյ՝ և յարենէ։
21 Զի Մովսէս յազգացն առաջնոց ըստ քաղաքաց
զքարոզիչսն իւր ունի՝ ՚ի ժողովսն ըստ ամենայն շա-
22 բաթուց ընթերցեալ։ Յայնժամ հաճոյ թուեցաւ
առաքելոցն և երիցանցն ամենայն եկեղեցեաւն, արս
ընտրեալս ՚ի նոցանէ առաքել յԱնտիոք ընդ Պօ-
ղոսի և ընդ Բառնաբայ, զՅուդա՝ զկոչեցեալն
23 Բարսաբայ, և զՇիղա՝ արս գլխաւորս․ Գրեալ
առ եղբարս ՚ի ձեռն նոցա զայս ինչ։ Առաքեալք և
երիցունք և եղբարք, յԱնտիոք և ՚ի Սիւրիա և
՚ի Կիւլիկիա եղբարցդ՝ որ ՚ի հեթանոսացդ էք, ող-
24 ջոյն։ Քանզի լուաք՝ թէ ոմանք իբրև ՚ի մէնջ խռո-
վեցուցին զձեզ բանիւք, խախտել զանձինս ձեր․
ասեն թլփատել և պահել զօրէնսն․ որոց ո՛չ հրա-

25 մայեցաք։ Հաճոյ թուեցաւ մեզ միաբան ժողովե-
լոցս, արս ընտրեալս յղել առ ձեզ ընդ սիրելիս
26 մեր՝ ընդ Բառնաբայ և ընդ Պօղոսի, Արք՝ որք
մատնեցին զանձինս իւրեանց վասն անուան Տեառն
27 մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Արդ՝ առաքեցաք զՅու-
դա և զՇիղա. և նոցա 'ի բանից զնոյն պատմել։
28 Զի հաճոյ թուեցաւ Հոգւոյն Սրբոյ և մեզ, մի՛
ինչ աւելի բեռն դնել ձեզ. բայց միայն 'ի կա-
29 րեւորացս յայսցիկ. 'Ի բաց կալ, 'ի զոհելոյ կռոց՝
և յարենէ՝ և 'ի հեղձուցելոյ՝ և 'ի պոռնկութենէ.
յորոց պահեալ զանձինս բարւոք գործէք. ողջ լե-
30 րուք։ Եւ նոքա արձակեալք՝ իջին յԱնտիոք, և
31 ժողովեալ զժողովուրդն՝ ետուն զթուղթն։ Եւ ըն-
թերցեալ՝ ուրախ եղեն 'ի վերայ մխիթարութեանն։
32 Յուդա և Շիղա՝ զի և նոքա մարգարէք էին,
բանիւք բազմօք մխիթարեցին զեղբարս՝ և հաստա-
33 տեցին։ Եւ եղեալ անդ ժամանակս՝ արձակեցան
34 խաղաղութեամբ յեղբարց առ առաքեալսն։ Եւ
35 հաճոյ թուեցաւ Շիղայի մնալ անդէն։ Բայց
Պօղոս և Բառնաբաս շրջէին յԱնտիոք, ուսու-
ցանել և աւետարանել՝ և այլովք բազմօք զբանն
Տեառն։

36 Եւ յետ աւուրց ինչ ասէ Պօղոս ցԲառնաբաս.
Դարձցո՛ւք և շրջեսցո՛ւք զեղբարբք ըստ ամենայն քա-
ղաքաց՝ յորս քարոզեցաք զբանն Տեառն՝ թէ որ-
37 պէս ունիցին։ Բառնաբաս կամէր առնուլ և զՅով-
38 հաննէս զկոչեցեալն Մարկոս. Բայց Պօղոս աղա-
չէր թէ զմեկնեալն 'ի նոցանէ 'ի Պամփիւլիայ, և
զչեկեալն ընդ նոսա 'ի գործն, մի՛ առնուլ ընդ իւր-

39 նանս ։ Եւ եղեւ գժտութիւն՝ մինչեւ մեկնել նոցա
'ի միմեանց, Բառնաբայ առնուլ զՄարկոս՝ նաւել
40 'ի Կիպրոս ։ Եւ Պօղոսի ընտրեալ զՇիղա՝ ել՝
յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ յեղբարց
41 անտի ։ Եւ շրջէր 'ի կողմանս Ասորւոց եւ Կիլիկեց-
ւոց, եւ հաստատէր զեկեղեցիսն ։

## ԳԼ. ԺԶ.

1 Եկն եհաս 'ի Դերբէ եւ 'ի Լիւստրա. եւ ահա
աշակերտ ոմն էր անդ՝ անուն Տիմոթէոս, որդի
2 կնոջ Հրէի հաւատացելոյ՝ եւ հօր Հեթանոսի ։ Որ
վկայեալ էր 'ի Լիւստրացւոց եւ յԻկոնացւոց եղ-
3 բարց ։ Զսա կամեցաւ Պօղոս ընդ իւր տանել. եւ
առեալ թլփատեաց զնա վասն Հրէիցն, որ էին
'ի տեղիսն յայնոսիկ. քանզի գիտէին ամենեքին
4 զհայր նորա՝ թէ Հեթանոս էր ։ Իբրեւ անցանէին
ընդ քաղաքսն՝ աւանդէին նոցա պահել զհրամանսն
պատուիրեալս յառաքելոցն եւ յերիցանցն՝ որք յԵ-
5 րուսաղէմ ։ Եւ եկեղեցիքն հաստատէին 'ի հա-
ւատս, եւ յաւելուին 'ի թիւ հանապազօր ։
6 Եւ շրջեցան ընդ Փռիւգիա եւ ընդ կողմանս Գա-
ղատացւոց, արգելեալք 'ի Հոգւոյն Սրբոյ խօսել
7 զբանն յԱսիա ։ Բայց եկեալ առ Միւսեաւ՝ թեւա-
կոխէին երթալ 'ի Բիւթանիա, եւ ոչ համարձակ-
8 եաց նոցա Հոգին Յիսուսի ։ Եւ անցեալ ըստ
9 Միւսիա՝ իջին 'ի Տրովադայ ։ Եւ տեսիլ երեւեցաւ
'ի գիշերի Պօղոսի. այր ոմն Մակեդոնացի կայր,
աղաչէր զնա՝ եւ ասէր. Անցեալ 'ի Մակեդոնիա

10 օգնեսցես մեզ։ Եւ իբրեւ զտեսիլն ետես, վաղ-
վաղակի խնդրեցաք ելանել 'ի Մակեդոնիա. տե-
ղեկացեալք՝ թէ հրաւիրեաց զմեզ Տէր աւետարա-
11 նել նոցա։ Եւ ելեալ 'ի Տրովադայ՝ դէպ ուղիղ
գնացաք 'ի Սամոթրակէ, և 'ի վաղիւ անդր 'ի Նոր
12 քաղաքն. Եւ անտի 'ի Փիլիպպուս, որ է առաջին
վիճակ Մակեդոնացւոց՝ քաղաք Կողոնիա. և անդ
13 'ի քաղաքին դադարեալ մեր աւուրս ինչ, Յաւուրն
շաբաթու ելաք արտաքոյ քաղաքին առ գետափն՝
ուր համարէր աղօթս մատուցանել. և նստեալ խօ-
14 սէաք ընդ ժողովեալ կանայսն։ Եւ կին ոմն ա-
նուն Լիդիա ծիրանավաճառ՝ 'ի Թիւատիր քաղա-
քէ՝ երկիւղած յԱստուծոյ՝ լսէր. զորոյ Տէր իսկ
15 եբաց զսիրտն անսալ խօսիցն Պօղոսի։ Եւ իբրեւ
մկրտեցաւ ինքն և տուն իւր, աղաչէր և ասէր. Ե-
թէ համարիցիք զիս հաւատացեալ Տեառն, մտեալ
'ի տուն իմ ագերո՛ւք. և բռնադատեաց տարաւ
16 զմեզ։ Եւ եղեւ մինչ երթայաք մեք յաղօթս, պա-
տահեաց մեզ աղախին ոմն՝ զոր ունէր այս հարցուկ.
որ շահս բազումս տայր տերանց իւրոց մոլելովն։
17 Նա զհետ եղեալ Պօղոսի և մեր՝ աղաղակէր և ա-
սէր. Արքս այս՝ ծառայք Աստուծոյ Բարձրելոյ են,
18 որ պատմեն ձեզ զճանապարհս փրկութեան։ Եւ
զայս առնէր 'ի բազում աւուրս։ Ձայրացեալ Պօ-
ղոս՝ դարձաւ և ասէ ցայսն. Պատուիրեմ քեզ յա-
նուն Յիսուսի Քրիստոսի, ել 'ի դմանէ. և ել 'ի
19 նմին ժամու։ Իբրեւ տեսին տեարքն նորա՝ եթէ
հատաւ յոյս շահի նոցա, առեալ զՊօղոս և զՇի-
20 ղա՝ ձգեցին 'ի հրապարակ առ իշխանսն։ Եւ ածեալ

զնոսա առ զօրագլուխսն՝ ասէին. Արքս այս խռովե-
ցուցանեն զքաղաքս մեր. հրէայք են,
21 Եւ պատմեն մեզ օրէնս՝ զոր չէ արժան մեզ ընդու-
22 նել, եւ ոչ առնել. զի Հռովմայեցիք եմք: Եւ
կուտեցաւ ամբոխն 'ի վերայ նոցա. եւ զօրագլուխքն
պատառեցին զհանդերձս իւրեանց. հրամայեցին
23 գան հարկանել. Եւ բազում վէրս եդեալ 'ի վերայ
նոցա՝ արկին 'ի բանտ, պատուիրեցին բանտապե-
24 տին զգուշութեամբ պահել զնոսա: Որոյ առեալ
զայսպիսի պատուէր՝ արկ զնոսա 'ի ներքին բանտն.
25 եւ զոտս նոցա պնդեաց 'ի կոճեղս: Եւ 'ի մէջ գի-
շերոյն Պօղոս եւ Շիղա կային յաղօթս՝ եւ օրհնէին
զԱստուած. եւ ունկն դնէին նոցա կալանաւորքն:
26 Եւ եղեւ յանկարծակի շարժումն մեծ մինչեւ շար-
ժել հիմանց բանտին. եւ բացան անդրէն դրունքն
27 ամենայն, եւ ամենեցուն կապանք լուծան: Իբրեւ
զարթեաւ բանտապետն՝ եւ ետես բացեալ զդուրս
բանտին, ձգեաց զսուսեր՝ եւ կամէր երթալ զիւրո-
28 վին. կարծէր փախուցեալ զկապեալսն: Եւ կոչեաց
'ի ձայն մեծ Պօղոս՝ եւ ասէ. Մի՛ ինչ գործեր ընդ
29 անձն քո չար, քանզի ամենեքին աստ եմք: Խնդ-
րեաց լոյս՝ եւ դիմեաց 'ի ներքս. եւ զահի հարեալ
30 անկաւ առաջի Պօղոսի եւ Շիղայի. Եւ ածեալ զնո-
սա արտաքս՝ ասէ. Տեա՛րք՝ զի՞նչ պարտ է ինձ առ-
31 նել՝ զի ապրեցայց: Եւ նոքա ասեն. Հաւատա՛ 'ի
Տէր Յիսուս Քրիստոս, եւ ապրեսցիս դու՝ եւ ամե-
32 նայն տուն քո: Եւ խօսեցան նմա զբանն Տեառն՝
33 եւ ամենեցուն որ էին 'ի տան նորա: Եւ առեալ
զնոսա 'ի նմին ժամու գիշերոյն՝ լուաց 'ի վիրաց ան-

տի. և մկրտեցաւ ինքն և իւրքն ամենեքեան անդէն
34 վաղվաղակի: Եւ ածեալ զնոսա 'ի տուն իւր, եդ-
առաջի նոցա սեղան. և ուրախ եղև ամենայն տամբն
35 հաւատացեալ յԱստուած: Եւ իբրև այգ եղև՝ ա-
ռաքեցին զօրագլուխքն զնուիրակսն, և ասեն. Ար-
36 ձակեա՛ զարսդ զայդոսիկ: Եւ պատմեաց բան-
տապետն զբանսն Պօղոսի, եթէ առաքեցին զօ-
րագլուխքն զի արձակիցիք. արդ ելէք և երթա՛յք խա-
37 ղաղութեամբ: Իսկ Պօղոս ասէ ցնոսա. Գան հար-
եալ զմեզ հրապարակաւ՝ արս անմեղս Հռովմա-
յեցիս արկին 'ի բանտ, և արդ լռելեա՞ն հանեն
զմեզ. ո՛չ այդպէս, այլ եկեսցեն՝ ինքեանք իսկ
38 հանցեն զմեզ: Եւ պատմեցին զօրագլխացն նուի-
րակքն զբանսն. զահի հարան իբրև լուան՝ թէ
39 Հռովմայեցիք են. և եկեալ աղաչեցին զնոսա: Եւ
40 իբրև հանին, աղաչէին գնալ 'ի քաղաքէն: Եւ
ելեալ 'ի բանտէն՝ մտին առ Լիւդիա. և տեսեալ
զեղբարս՝ մխիթարեցին զնոսա, և գնացին:

## ԳԼ. ԺԷ:

1 Եւ շրջեալ ընդ Ամփիպօլիս և ընդ Ապողոնիա,
եկին 'ի Թեսաղոնիկէ, ուր էր ժողովուրդ Հրէից:
2 Եւ ըստ սովորութեանն Պօղոս եմուտ առ նոսա, և
'ի շաբաթս երիս խօսեցաւ ընդ նոսա 'ի գրոց:
3 Բանայր՝ և դնէր առաջի, եթէ պա՛րտ էր Քրիս-
տոսի չարչարիլ և յառնել 'ի մեռելոց. և թէ նա
4 է Քրիստոսն Յիսուս՝ զոր ես պատմեմ ձեզ: Եւ
ոմանք 'ի նոցանէ հաւանեցան, և վիճակեցան Պօ-

ղոսի և Շիղայի. բայց պաշտօնէիցն Հեթանոսաց
էր բազմութիւն յոյժ, և ՚ի կանանց գլխաւորաց
5 ոչ սակաւք: Եւ նախանձեցան Հրէայքն, և առ-
եալ արս ոմանս գռեհիկս անօրէնս՝ ամբոխ արար-
եալ խռովեցին զքաղաքն. և կուտեալ առ յա-
պարանն Յասոնի, խնդրեցին զնոսա ածել ՚ի
6 հրապարակ: Եւ իբրև ոչ գտին զնոսա՝ քարշէին
զՅասոն և զոմանս եղբարս առ քաղաքապետսն.
բողոք բարձեալ՝ թէ որք զաշխարհս խռովեցին՝ սո-
7 քա և այսր հասին. Զորս ընկալեալ է Յասոնի.
և սոքա ամենեքեան հակառակ հրամանացն Կայ-
8 սեր գործեն. թագաւոր զայլ ասեն զՅիսուս: Եւ
խռովեցուցին զժողովուրդն և զքաղաքապետսն,
9 որ լսէին զայս: Եւ առեալ երաշխաւորութիւն առ
10 ՚ի Յասոնայ և յայլոցն՝ արձակեցին զնոսա: Բայց
եղբարք վաղվաղակի գիշերայն յուղարկեցին զՊօ-
ղոս և զՇիղա ՚ի Բերիա. որք իբրև հասին անդր՝
11 ՚ի ժողովուրդն Հրէից գնացին: Զի սոքա էին
ազնուականագոյնք՝ քան որ ՚ի Թեսաղոնիկէն էին.
որք ընկալան զբանն ամենայն յօժարութեամբ. հա-
նապազ քննէին զգիրս, եթէ իցէ այս այսպէս:
12 Եւ բազումք ՚ի նոցանէ հաւատացին. և ՚ի Յու-
նաց կանանց զգաստից՝ և յարանց ոչ սակաւք:
13 Բայց իբրև գիտացին՝ որ ՚ի Թեսաղոնիկէ Հրէայքն
էին, եթէ և ՚ի Բերիայ պատմեցաւ ՚ի Պօղոսէ բանն
Աստուծոյ, եկին և անդր՝ շարժել և խռովեցուցա-
14 նել զժողովուրդն: Յայնժամ վաղվաղակի զՊօղոս
առաքեցին եղբարքն գնալ մինչև ՚ի ծովեզր. և մնա-
15 ցին Շիղա և Տիմոթէոս անդէն: Եւ որք առնէ-

ին զՊօղոս, ածին զնա մինչև յԱթէնս, և առեալ
պատուէր 'ի նմանէ առ Շիղա և Տիմոթէոս, զի
վաղվաղակի եկեսցեն առ նա. և գնացին:
16 Եւ յԱթէնս 'ի մնալ նոցա Պօղոսի, զայրանայր
հոգի նորա 'ի նմա. զի տեսանէր 'ի կռապաշտու-
17 թեան զքաղաքն: Եւ խօսէր 'ի ժողովրդեանն ընդ
Հրէայս և ընդ պաշտօնեայսն՝ և 'ի հրապարակին
18 զամենայն օր՝ որոց և պատահէին: Ոմանք յԵպի-
կուրեանցն և Ստոյիկեանց փիլիսոփայից հակա-
ռակէին ընդ նմա. և ոմանք ասէին, Զի՞նչ կա-
միցի սերմանաքաղս այս խօսել. իսկ այլք, Թէ օ-
տարոտի իմն դից թուի պատմիչ լինելոյ. քանզի
19 զՅիսուս և զյարութիւնն աւետարանէր: Եւ առ-
եալ զնա ածին յԱրիսպագոսն, և ասէին. Կարա-
ցո՞ւք իմանալ՝ թէ զի՞նչ է նոր վարդապետութիւնդ՝
20 որ 'ի քէն պատմի: Օտարացուցիչս իմն բերես 'ի
լսելիս մեր. կամիմք գիտել՝ թէ զի՞նչ կամիցի այս
21 լինել: Զի Աթենացիք ամենեքին՝ և եկքն օտարք
ոչ յայլ ինչ պարապէին, բայց ասել ինչ կամ
22 լսել նորագոյնս: Եկաց Պօղոս 'ի մէջ Արիսպագին՝
և ասէ. Արք Աթենացիք, ըստ ամենայնի իբրև
23 պաշտօնասէրս տեսանեմ զձեզ: Քանզի շրջեալ
և տեսեալ զպաշտամունս ձեր, գտի բագին մի՝ յո-
րում գրեալ էր Անծանօթի Աստուծոյ. զոր դուքն
յանծանօթս պաշտէք, ես զնոյն պատմեմ ձեզ:
24 Աստուած՝ որ արար զաշխարհս և զամենայն՝ որ 'ի
նմա, նա երկնից և երկրի է Տէր. ոչ 'ի ձեռագործ
25 տաճարս բնակէ, Եւ ոչ 'ի ձեռաց մարդկան պաշտի
իբրև կարօտ իմիք. նա տայ ամենայնի կեանս և

26 շունչ՝ և զամենայն ինչ ։ Արար 'ի միոջէ արենէ
զամենայն ազգս մարդկան՝ բնակել 'ի վերայ ա-
մենայն երեսաց երկրի ․ հաստատեաց կարգեալ ժա-
մանակս և սահմանադրութիւնս բնակութեան նոցա՝
27 խնդրել զԱստուած ․ Զի թերևս զննիցեն զնա՝ և
գտանիցեն ․ նաև ոչ հեռի իսկ է յիւրաքանչիւր ու-
28 մեքէ 'ի մէնջ ։ Զի նովաւ կեամք և շարժիմք և
եմք , որպէս և ոմանք 'ի ձերոց ճարտարաց ասացին ,
29 թէ նորա և ազգ իսկ եմք ։ Եւ արդ՝ որովհետև
ազգ եմք Աստուծոյ , ոչ պարտիմք համարել ոսկ-
ւոյ կամ արծաթոյ կամ քարի , որ 'ի ճարտա-
րութենէ և 'ի մտաց մարդոյ քանդակեալ իցէ ,
30 զաստուածականն լինել նմանող ։ Բայց զժամա-
նակս անգիտութեանն անտես արարեալ Աստուծոյ ,
արդ զայս պատուիրէ մարդկան՝ ամենայն ումեք ա-
31 պաշխարել ։ Վասն զի հաստատեաց օր՝ յորում
պարտ է դատել զաշխարհս արդարութեամբ , 'ի
ձեռն առն՝ որով սահմանեաց տալ հաւատս ամե-
32 նեցուն՝ յարուցեալ զնա 'ի մեռելոց ։ Իբրև լուան
յարութիւն մեռելոց , ոմանք ծաղր առնէին ․ կէսքն
ասէին՝ Լուիցուք 'ի քէն վասն այդորիկ միւսան-
33 գամ ։ Եւ ապա Պօղոս ել գնաց 'ի միջոյ նոցա ։
34 Եւ ոմանք արք անկեալք 'ի նա , հաւատացին ․ ընդ
որս էր և Դիոնէսիոս Արիսպագացի , և կին մի ա-
նուն Դամարիս՝ և այլք ընդ նոսա ։

## ԳԼ․ ԺԸ․

1 Յետ այսորիկ մեկնեալ Պօղոսի յԱթենացւոց
2 անտի՝ եկն 'ի Կորնթոս ․ Եւ եգիտ Հրեայ զոմն ա-

նուն Ակիւղաս՝ յազգէ Պոնտացի , այն ինչ եկեալ
յԻտալիայ . եւ զՊրիսկիղա կին նորա , վասն հրա-
մանին Կղօդեայ՝ որոշել զամենայն Հրեայս 'ի
3 Հռովմայ . եւ յարեցաւ 'ի նոսա ։ Եւ վասն զի
համարուեստ էր , եղեւ առ նոսա եւ գործէր . քան-
4 զի էին խորանակարք արուեստիւ ։ Եւ խօսէր 'ի ժո-
ղովրդեանն ըստ ամենայն շաբաթուց , եւ հաւանե-
5 ցուցանէր զՀրեայս եւ զՀեթանոս ։ Իբրեւ իջին 'ի
Մակեդոնիայ Շիղա եւ Տիմոթէոս , ստիպէր հոգ-
ւոյն Պօղոս դնել վկայութիւն Հրէիցն՝ թէ Յի-
6 սուս է Քրիստոսն ։ Եւ ընդդէմ դառնալ նոցա
եւ 'ի հայհոյել , թօթափեաց զհանդերձս եւ ասէ ցնո-
սա . Արիւն ձեր 'ի գլուխ ձեր , քաւեալ եմ ես .
7 յայսմ հետէ 'ի հեթանոսս երթամ ։ Եւ գնացեալ
անտի՝ եմուտ 'ի տուն ուրումն , որում անուն էր
Տիտոս Յուստոս՝ պաշտօնեայ Աստուծոյ . որոյ ա-
8 պարանքն էին մերձ 'ի ժողովրդեանն ։ Կրիսպոս ժո-
ղովրդապետ հաւատաց 'ի Տէր ամենայն տամբ իւ-
րով . եւ բազմաց 'ի Կորնթացւոցն լուեալ՝ հաւատա-
9 ցին եւ մկրտեցան ։ Եւ ասէ Տէր 'ի գիշերին տես-
լեամբ ցՊօղոս . Մի՛ երկնչիր՝ այլ խօսեա՛ց եւ մի՛
10 լռեր . Քանզի ես ընդ քեզ եմ , եւ ոչ ո՛ք ընդդէմ
դարձցի քո՝ 'ի չարչարել զքեզ . քանզի ժողովուրդ
11 է իմ բազում 'ի քաղաքիս յայսմիկ ։ Եւ նստաւ
անդ տարի մի եւ ամիս վեց՝ ուսուցանել նոցա
զբանն Աստուծոյ ։

12 Առ Գաղիոնիւ փոխանականաւ բդեշխին Աքայեց-
ւոց , յարեան միաբան Հրեայքն 'ի վերայ Պօղոսի ,
13 եւ ածին զնա յատեան . Եւ ասէին , եթէ Արտա-

քոյ օրինաց պատրէ սա զմարդիկ՝ պաշտել զԱստ-
14 ուած։ Եւ իբրև մերձ էր Պօղոս բանալ զբերան
իւր, ասէ Գաղիոն ցՀրէայսն. եթէ էր ինչ անի-
րաւութիւն կամ խարդախութիւն չարեաց՝ ով Հրէ-
15 այք, 'ի դէպ էր ինձ անսալ ձեզ։ Ապա եթէ խնդ-
դիրք ինչ են վասն բանի և անուանց և օրինաց ձե-
րոց՝ տեսէք ձեզէն. քանզի դատաւոր այդպիսի ի-
16 րաց չկամիմ լինել։ Եւ մերժեաց զնոսա յատենէ
17 անտի։ Եւ առեալ ամենեցուն Յունացն զՍոսթե-
նէս ժողովրդապետն՝ Հարկանէին առաջի ատենին.
18 և ոչինչ զայնմանէ Գաղիոնի փոյթ լինէր։ Բայց
Պօղոսի տակաւին մնացեալ աւուրս բազումս, յեղ-
բարց Հրաժարեալ՝ նաւէր յԱսորիս. և ընդ նմա
Պրիսկիղա և Ակիւղաս, փոքրել զգլուխ 'ի Կենքրեա.
19 քանզի ուխտադիր էր։ Եւ Հասեալ յԵփեսոս՝
զնոսա եթող անդ, և ինքն մտեալ 'ի ժողովուրդն
20 խօսէր ընդ Հրէայսն։ Եւ աղաչեցին զնա բազում
21 ժամանակս լինել անդ. և ոչ առ յանձն. Այլ
Հրաժարեաց 'ի նոցանէ, և ասէ. Դարձեալ շրջե-
ցայց առ ձեզ Աստուծոյ կամօք. ամբարձաւ յԵ-
22 փեսեայ, Եւ իջեալ 'ի Կեսարիա՝ ել և ետ ողջոյն
23 եկեղեցւոյն. էջ յԱնտիոք։ Եւ եղեալ անդ ժա-
մանակ ինչ, ել շրջել կարգաւ ընդ Գաղատացւոց
աշխարՀն և ընդ Փռիւգիա, Հաստատել զամենայն
24 աշակերտեալսն։ Հրէայ ոմն Ապողէս անուն՝ Ա-
ղէքսանդրացի յազգէ, այր ճարտարաբան, եկն ե-
25 Հաս յԵփեսոս. զօրաւոր էր գրովք։ Սա էր տե-
ղեկացեալ ճանապարՀին Տեառն, և եռայր Հոգւով.
խօսէր՝ և ուսուցանէր ճշմարտութեամբ վասն Յի-

սուսի . գիտէր միայն զմկրտութիւնն Յովհաննու :
26 Սա սկսաւ համարձակել 'ի ժողովրդեանն . և լու-
եալ 'ի նմանէ Ակիւղայ և Պրիսկիղայ , առին զնա
առ իւրեանս , և ճշմարտագոյնս պատմեցին նմա
27 զճանապարհն Աստուծոյ : Իբրև կամեցաւ նա գնալ
յԱքայիա , յօժարեալ եղբարք՝ գրեցին առ աշա-
կերտսն ընդունել զնա . որ իբրև եհաս անդր՝ բա-
զում նպաստ լինէր հաւատացելոցն 'ի ձեռն շնոր-
28 հացն : Քանզի պնդագոյն զՀրէայսն յանդիմանէր
հրապարակաւ . ցուցանել գրովք՝ եթէ Քրիստոսն
է Յիսուս :

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ եղև մինչդեռ Ապողոսն 'ի Կորնթոս էր , Պօ-
ղոսի շրջեալ զվերին կողմամբքն՝ և իջեալ յԵփե-
2 սոս , և գտեալ զոմանս զաշակերտս , Ասէ ցնոսա .
եթէ Հոգի Սուրբ ընկալարո՞ւք 'ի հաւատալն . նո-
քա ասեն ցնա . Այլ և ո՛չ թէ Հոգի Սուրբ գու-
3 ցէ՝ լուեալ է մեր : Եւ ասէ , իսկ յի՞նչ մկրտեցա-
րուք . նոքա ասեն . 'ի Յովհաննու մկրտութիւնն :
4 Եւ ասէ Պօղոս . Յովհաննէս մկրտեաց մկրտութիւն
ապաշխարութեան ամենայն ժողովրդեանն . և ա-
սէր , զի որ գալոցն է յետ նորա՝ 'ի նա հաւատաս-
5 ցեն . այսինքն է՝ 'ի Յիսուս Քրիստոս : Եւ իբրև
6 լուան , մկրտեցան յանուն Տեառն Յիսուսի : Եւ
'ի դնել 'ի վերայ նոցա Պօղոսի զձեռն , եկն Հոգին
Սուրբ 'ի վերայ նոցա . խօսէին լեզուս և մարգա-
7 րէանային : Եւ էին ամենեքեան արք իբրև երկո-

8 տասան ։ Եւ մտեալ 'ի ժողովուրդն՝ համարձակէր
ամիսս երիս . խօսէր՝ և հաւանեցուցանէր վասն ար-
9 քայութեանն Աստուծոյ ։ Իբրև ոմանք խստանա-
յին՝ և ընդդէմ դառնային բամբասել զճանապարհն
առաջի բազմութեանն , մեկնեալ 'ի նոցանէ՝ որոշ-
եաց զաշակերտսն . հանապազօր խօսէր 'ի դպրոցին
10 Տիւրաննեայ ուրումն ։ Եւ այս եղև զերկեամ մի ,
մինչև ամենայն բնակչացն Ասիացւոց լսել զբանն
11 Տեառն՝ Հրէից և Հեթանոսաց ։ Եւ զօրութիւնս
12 ոչ սակաւս առնէր Աստուած 'ի ձեռն Պօղոսի . Մինչ
զի և 'ի հիւանդս տանել 'ի քրտանէ նորա թաշկի-
նակս կամ վարշամակս , և մերժել 'ի նոցանէ ախ-
13 տիցն , և այսոց չարաց ելանել ։ Յանդգնեցան ո-
մանք և 'ի շրջող Հրէիցն՝ որ երդմնեցուցիչքն էին ,
անուանել 'ի վերայ այնոցիկ՝ որ ունէին այսս
չարս , զանուն Տեառն Յիսուսի , և ասէին . Երդմնե-
ցուցանեմ զձեզ 'ի Յիսուս՝ զոր Պօղոսն քարոզէ ։
14 Էին ուրումն Սկևեայ Հրէի քահանայապետի եօթն
15 որդի , որ զայս առնէին ։ Պատասխանի ետ այսն
չար՝ և ասէ ցնոսա . զՅիսուս գիտեմ և զՊօղոս
16 ճանաչեմ , բայց դուք ո՞վ էք ։ Եւ վազեաց այրն՝
յորում էր այսն չար՝ ըմբռնեալ զերկոսեան յաղ-
թահարեաց զնոսա , մինչև մերկս և վիրաւորս փախչել
17 'ի տանէ անտի ։ Եւ այս յայտնի եղև ամենայն Հը-
րէից և Հեթանոսաց՝ որ բնակեալ էին յԵփեսոս . և
անկաւ երկիւղ յամենեսեան 'ի նոսա . և մեծանայր
18 անուն Տեառն Յիսուսի ։ Եւ բազումք 'ի հաւա-
տացելոցն գային , և խոստովան լինէին՝ և պատմէին
19 զգործս իւրեանց ։ Եւ բազումք 'ի կախարդասարացն

բերէին զգիրսն, այրէին առաջի ամենեցուն. և հա-
մարեցան զգինս նոցա՝ և գտանէին արծաթոյ բիւրս
20 հինգ։ Եւ այսպէս բանն Տեառն աճէր՝ և զօրանայր։
21 Եւ իբրև կատարեցաւ այս, եդ Պօղոս ՚ի մտի
շրջել ընդ Մակեդոնիա և ընդ Աքայիա՝ և գալ
յԵրուսաղէմ. ասէ, եթէ Յետ երթալոյն իմ անդր,
22 պարտ է ինձ և զՀռովմ տեսանել։ Առաքեաց ՚ի
Մակեդոնիա երկուս ՚ի պաշտօնէիցն իւրոց, զՏիմո-
թէոս և զԵրաստոս, և ինքն մնաց ժամանակ ինչ
23 յԱսիա։ Եւ եղև ՚ի ժամանակին յայնմիկ խռո-
24 վութիւն ոչ սակաւ վասն ճանապարհին։ Իսկ Դե-
մետրիոս ոմն անուն՝ արծաթագործ, գործէր մեհ-
եանս արծաթիս Արտեմի դից. և տայր ճարտա-
25 րացն լինել ոչ սակաւ շահ. Որ ժողովեաց իսկ
զձեռագէտս արուեստին, և ասէ. Արք՝ դուք
ձեզէն իսկ գիտէք, զի յայսմ գործոյ է շահ մեզ։
26 Եւ տեսանէք և լսէք՝ եթէ ոչ միայն զԵփեսաց-
ւոց, այլ գրեթէ զամենայն իսկ Ասիացւոց՝ Պօ-
ղոս այս հաւանեցուցեալ շրջեաց բազում ժողովս՝
27 ասել, թէ Ո՛չ են աստուածք՝ ձեռագործ։ Եւ ոչ
միայն այս ճգնէ զմեր կողմնս գալ ՚ի յանդիմանու-
թիւն, այլ և զմեծին աստուծոյ Արտեմեայ զմեհեանն
յոչինչ համարել. նաև քակելոց ևս իցէ մեծութիւն
նորա, զոր ամենայն Ասիա՝ և տիեզերք պաշտեն։
28 Եւ զայս իբրև լուան, լի եղեն բարկութեամբ. ա-
ղաղակէին և ասէին, Մեծ է Արտեմիս Եփեսացւոց։
29 Եւ լցաւ քաղաքն խռովութեամբ. դիմեցին առ հա-
սարակ ՚ի Թէատրոնն. յափշտակէին զԳայիոս և
զԱրիստարքոս Մակեդոնացի՝ զուղեկիցսն Պօղոսի։

30 Բայց Պօղոս իբրև կամեցաւ մտանել յամբոխն , ոչ
31 Թողին զնա աշակերտքն ։ Ոմանք և յԱսիապետացն՝
որ էին նորա բարեկամք , յղէին առ նա՝ և աղա-
32 չէին , մի տալ զանձն 'ի Թէատրոնն ։ Այլք այլ
ինչ աղաղակէին . զի էր ժողովն նոցա խռովեալ . և
բազումք 'ի նոցանէ ոչ գիտէին , թէ վասն էր ժո-
33 ղովեալ իցեն ։ Եւ յամբոխէն բազմութիւնն յառաջ
կալան զԱղէքսանդրոս . և իբրև ածին զնա Հրէ-
այքն յառաջ , Աղէքսանդրոս շարժեաց զձեռն՝ և
34 կամէր պատասխանի տալ ամբոխին ։ Իբրև գի-
տացին՝ եթէ այրն Հրէայ է , միաբարբառ եղեալ
յամենեցունց՝ իբրև ժամս երկուս աղաղակել , եթէ
35 Մեծ է Արտեմիս Եփեսացւոց ։ Լռեցոյց դպրապետն
զամբոխն՝ և ասէ . Արք Եփեսացիք՝ իսկ ո՞ է 'ի
մարդկանէ՝ որ ոչ գիտէ զԵփեսացւոց քաղաքս մե-
հենազարդ՝ մեծին Արտեմեայ դիցն , և Դիոպետ-
36 եայ ։ Եւ զի այդ այդպէս է անշուշտ՝ ձեզ պարտ
է հանդարտել , և մի ինչ յանդգնութեամբ գոր-
37 ծել ։ Ածիք զայրս զայդոսիկ այսր , ոչ մեհենակա-
38 պուտս՝ և ոչ հայհոյիչս աստուծոյ մերոյ ։ Զի եթէ
Դեմետրիոս և որք ընդ նմա ճարտարքն՝ ունիցին ինչ
ընդ ումեք բանս , յատեան երթիցեն , և դատա-
39 ւորք գոն , և ամբաստան լիցին զմիմեանց ։ Ապա
եթէ վասն այլ իրիք խնդիր իցէ՝ յօրինաւոր ժո-
40 ղովսն վճարեսցին ։ Քանզի և մեզ միշտ վտանգի
է ընդ կռուոյս այսր աւուր՝ առանց իրիք յանցա-
նաց լինելոյ , զորմէ ոչ կարասցուք պատասխանի
տալ վասն ժողովոյս այսորիկ ։ Եւ զայս ասացեալ՝
արձակեաց զժողովսն ։

## ԳԼ. Ի

1 Եւ յետ դադարելոյ ամբոխին՝ կոչեաց Պօղոս
զաշակերտսն, եւ մխիթարեաց. ողջոյն ետ՝ եւ ել
2 գնաց ՚ի Մակեդոնիա։ Եւ շրջեալ ընդ կողմանսն
ընդ այնոսիկ, եւ մխիթարեալ զնոսա բանիւք բազ-
3 մօք, եկն յԵլլադա։ Իբրեւ արար անդ ամիսս ե-
րիս, եղեւ նմա դաւ ՚ի Հրէիցն, մինչդեռ կամէր ե-
լանել յԱսորիս. խորհուրդ կալաւ դառնալ ընդ
4 Մակեդոնիա։ Եւ երթայր ընդ նմա մինչեւ յԱսի-
ա՝ Սոսիպատրոս Պիւռա Բերիացի, եւ ՚ի Թեսաղո-
նիկեցւոց՝ Արիստարքոս եւ Սեկունդոս՝ եւ Գայիոս
Դերբեացի եւ Տիմոթէոս, եւ Ասիացիք՝ Տիւքիկոս եւ
5 Տրոփիմոս։ Սոքա յառաջ երթեալ մնային մեզ ՚ի
6 Տրովադա։ Եւ մեք նաւեցաք յետ աւուրցն բա-
ղարջակերաց ՚ի Փիլիպպեայ՝ եւ եկաք առ նոսա ՚ի
Տրովադա՝ մինչեւ յաւուրս հինգ. անդ դադարեցաք
7 աւուրս եօթն։ Եւ յաւուրն շաբաթուց՝ մինչդեռ
ժողովեալ էաք բեկանել զհացն, Պօղոս խօսէր ընդ
նոսա՝ զի գնալոց էր ՚ի վաղիւ անդր. եւ երկայնեաց
8 զբանն մինչեւ ՚ի մէջ գիշերոյն։ Էին լապտերք բա-
9 զումք ՚ի վերնատանն, ուր էաքն ժողովեալ։ Եւ
նստէր ոմն երիտասարդ՝ անուն Եւտիքոս՝ ՚ի վերայ
պատուհանին, նիրհէր ՚ի քուն թանձրութեան՝ ՚ի
խօսելն Պօղոսի յաճախ, ընկղմեալ ՚ի քնոյ անտի՝
անկաւ յերրորդ դստիկոնէն ՚ի վայր, եւ բարձաւ
10 մեռեալ։ Եւ իջեալ Պօղոսի անկանէր զնովաւ. առ-
նոյր զնա ընդ գիրկս՝ եւ ասէր. Մի՛ խռովիք, քան-
11 զի հոգի սորա ՚ի սմին է։ Եւ ել եբեկ զհացն՝ եւ

ճաշակեաց․ և բազում ևս խօսեցաւ մինչև յառա-
12 ւօտ, և ապա ել գնաց։ Եւ ածին զպատանին կեն-
13 դանի, և մխիթարեցան ոչ սակաւ։ Եւ մեք մտեալ
'ի նաւն՝ ամբարձաք յԱ՛սոն․ անտի ակն ունէաք
միաբանգամ առնուլ զՊօղոս․ զի այնպէս պատուիր-
14 եալ էր՝ մինչ ինքն զցամաքաւն երթալոց էր։ Եւ
իբրև դիպեցաւ մեզ 'ի յԱ՛սոն, առեալ զնա եկաք
15 'ի Մ՛իտիլինէ։ Եւ անտի նաւեալ՝ 'ի վաղիւ անդր
հասաք հանդէպ Քիոյ․ և 'ի միւս օրն հասաք 'ի
16 Սամոս․ և 'ի վաղիւ անդր եկաք 'ի Մ՛իլիտոն։ Զի
'ի մտի եդեալ էր Պօղոսի նաւել առ Եփեսաւ՝ որ-
պէս զի մի՛ լիցի նմա ժամանակ ինչ յամել յԱ՛սիա․
քանզի փութայր, եթէ հնար ինչ իցէ նմա՝ զօրն
Պենտեկոստէից երթալ յԵրուսաղէմ։

17 Եւ 'ի Մ՛իլիտեայ յղեալ յԵփեսոս՝ կոչեաց զե-
18 րիցունս եկեղեցւոյն։ Եւ իբրև եկին առ նա, ասէ
ցնոսա․ Դուք ձեզէն գիտէք յօրէ յառաջնմէ՝ յոր-
մէ եկի յԱ՛սիա, որպէս ընդ ձեզ զամենայն ժա-
19 մանակն եղէ․ Ծառայել Տեառն ամենայն խոնար-
հութեամբ և բազում արտասուօք և փորձութեամբք՝
20 որ դիպեցան ինձ 'ի նենգութեանց Հրէից։ Որպէս
ոչինչ զանգիտեցի յօգտակարացն չպատմել ձեզ՝
և ուսուցանել զձեզ հրապարակաւ և տանին․
21 Տալ վկայութիւն Հրէից և հեթանոսաց զապաշ-
խարութեանն՝ որ առ Ա՛ստուած, և զհաւատոցն որ
22 'ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Եւ արդ՝ ահաւա-
սիկ ես կապեալ հոգւով երթամ յԵրուսաղէմ․ և
23 որ ինչ անդ ընդ իս անցանելոց իցէ՝ չգիտեմ։ Բայց
զի Հոգին Սուրբ ըստ քաղաքաց վկայէ ինձ և ա-

24 սէ, եթէ կապանք և նեղութիւնք մնան քեզ: Այլ
և ոչ ինչ համարիմ զանձն իմ պատուական՝ որ-
պէս զկատարել զընթացս իմ ուրախութեամբ, և
զպաշտօնն զոր առի 'ի Տեառնէ Յիսուսէ՝ վկայ լի-
25 նել աւետարանի շնորհացն Աստուծոյ: Եւ արդ՝
ահաւասիկ գիտեմ ես, թէ ոչ ևս տեսանելոց էք
զերեսս իմ դուք ամենեքեան, յորս շրջեցայ քա-
26 րոզել զարքայութիւնն: Վասն որոյ վկայութիւն
դնեմ ձեզ յաւուր յայսմիկ՝ զի սուրբ եմ յարենէ
27 ամենեցուն: Վասնզի ոչ խորշեցայ 'ի պատմելոյ
28 ձեզ զամենայն կամս Աստուծոյ: Զգոյշ կացէք
անձանց և ամենայն հօտին, յորում եդ զձեզ Հո-
գին Սուրբ տեսուչս՝ հովուել զժողովուրդ Տեառն,
29 զոր ապրեցոյց արեամբ իւրով: Վասնզի գիտեմ ես՝
եթէ յետ իմոյ մեկնելոյ՝ գայցեն գայլք յափշտա-
30 կողք 'ի ձեզ, որ ոչ խնայեսցեն հօտին: Եւ 'ի
ձէնջ յարիցեն արք՝ որք խօսիցին թիւրս, ձգել
31 զաշակերտսն զկնի իւրեանց: Վասն այսորիկ ար-
թուն կացէք, և յիշեցէք զի զերկեամ *մի զցայգ և
զցերեկ՝ ոչ դադարեցի արտասուօք խրատել զմի մի
32 իւրաքանչիւր: Եւ արդ՝ յանձն առնեմ զձեզ Աս-
տուծոյ՝ և բանի շնորհաց նորա, որ կարողն է շի-
նել՝ և տալ ձեզ ժառանգութիւն ընդ սուրբսն ամե-
33 նայն: Արծաթոյ՝ կամ ոսկւոյ՝ կամ հանդերձից՝
34 ոչ ուրուք 'ի ձէնջ ցանկացայ. Դուք ինքնին գի-
տէք՝ զի զպէտս իմ և 'որոց ընդ իսն էին՝ պաշտե-
35 ցին ձեռքս այս: Եւ զամենայն ինչ ցուցի ձեզ. զի

---

* Ի Յոյնն, զերեամ

այսպէս պարտ է վաստակել, և դարմանել զհի-
ւանդս, և յիշել զբանն Տեառն Յիսուսի, զոր
ինքն իսկ ասաց. Երանելի է մանաւանդ տալ՝ քան
36 առնուլ: Եւ զայս իբրև ասաց, եդեալ ծունր ամե-
37 նեքումբք՝ եկաց յաղօթս: Բազում լալիւն եղև ա-
մենեցուն. և անկեալ զպարանոցաւն Պօղոսի՝ համ-
38 բուրէին զնա: Մորմոքէին մանաւանդ 'ի վերայ բա-
նին՝ զոր ասէր, թէ ոչ ևս տեսանելոց են զերեսս
նորա. և յուղարկեցին զնա 'ի նաւ անդր:

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ իբրև եղև ելանել մեզ և մեկնել 'ի նոցանէ,
հանդէպ գնացեալ եկաք 'ի Կով. և 'ի վաղիւ անդր
2 'ի Հռոդոն, և անտի 'ի Պատարա: Եւ գտեալ նաւ
մի՝ զի երթայր 'ի Փիւնիկէ, և ելեալ 'ի նա գնա-
3 ցաք: Եւ յայտ եղեալ Կիպրեայ՝ թողաք զնա 'ի
ձախակողմն, նաւեցաք յԱսորիս, և իջաք 'ի Տի-
4 րոս. քանզի անդ էր նաւն թափելոց զբեռինս: Եւ
գտեալ զաշակերտսն՝ կացաք անդ աւուրս եօթն.
որք ասէին ցՊօղոս 'ի ձեռն Հոգւոյն՝ մի ելանել
5 յԵրուսաղէմ: Եւ իբրև եղև մեզ կատարել զա-
ւուրսն՝ ելեալ գնացաք, յուղարկեալ զմեզ ամե-
նեցուն հանդերձ կանամբք և որդովք մինչև ար-
տաքոյ քաղաքին. և եդեալ ծունր առ ծովեզերբն՝
6 կացաք յաղօթս: Եւ հրաժարեցաք 'ի միմեանց՝
և ելաք 'ի նաւն. և նոքա դարձան յիւրեանց տե-
7 ղիս: Եւ մեր զնաւն առխեթեալ 'ի Տիւրոսէ՝ հա-
սաք 'ի Պտղոմայիդա. և ողջոյն տուեալ եղբարց՝

8 եղաք օր մի առ նոսա : Եւ 'ի վաղիւ անդր ելեալ
անտի՝ եկաք 'ի Կեսարիա. և մտեալ յապարանս
Փիլիպպոսի աւետարանչի, որ էր յեօթանց անտի,
9 ագաք առ նմա : Նորա էին դստերք չորք՝ կոյսք
10 մարգարէք : Եւ 'ի լինելն մեր անդ աւուրս բազումս,
էջ ոմն 'ի Հրէաստանէ մարգարէ՝ անուն Ագաբոս :
11 Եւ եկեալ առ մեզ, առեալ զգօտին Պօղոսի կապ-
եաց զոտս և զձեռս իւր, և ասէ. Այսպէս ասէ
Հոգին Սուրբ. զայրն որոյ գօտիս այս է՝ այսպէս
կապեսցեն յԵրուսաղէմ Հրէայք, և մատնեսցեն
12 'ի ձեռս Հեթանոսաց : Եւ իբրև լուաք զայն՝ ա-
ղաչէաք մեք և որ 'ի տեղւոջն էին՝ չելանել նմա
13 յԵրուսաղէմ : Յայնժամ պատասխանի ետ Պօղոս.
Զինչ գործէք, զի լայք և ձմլեցուցանէք զսիրտ
իմ. քանզի ես ոչ միայն կապելոյ՝ այլ և մեռա-
նելոյ յԵրուսաղէմ պատրաստ եմ վասն անուանն
14 Տեառն Յիսուսի Քրիստոսի : Եւ 'ի չանսալն նո-
րա՝ լռեցաք, ասեմք. Տեառն կամք լիցին :
15 Եւ յետ աւուրցն այնոցիկ՝ Հանդերձեալ ելանէ-
16 աք յԵրուսաղէմ : Եկին ընդ մեզ և յաշակերտաց
անտի Կեսարացւոց, և տանէին զմեզ առ որում
վանս ունելոց էաք՝ Մնասոնի ումեմն Կիպրացւոյ՝
17 առաջին աշակերտի : Եւ 'ի մտանելն մեր յԵրու-
սաղէմ, խնդութեամբ ընկալան զմեզ եղբարք :
18 'Ի վաղիւ անդր եմուտ Պօղոս ընդ մեզ առ Յակով-
19 բոս. և եկին ամենայն երիցունքն : Եւ ողջոյն տու-
եալ նոցա՝ պատմէր մի ըստ միոջէ՝ զոր արար Աստ-
ուած 'ի Հեթանոսս 'ի ձեռն պաշտաման նորա :
20 Եւ նոցա լուեալ՝ փառաւոր առնէին զԱստուած. և

ասեն ցնա․ Տեսանե՞ս եղբայր՝ քանի՛ բիւրք են հա-
ւատացելոցն Հրէից, և ամենեքեան նախանձաւոր
21 օրինացն են։ Բայց իրազեկ եղեն վասն քո՝ թէ ապ-
ստամբութիւն ուսուցանես ՚ի Մովսիսէ՝ որոց ՚ի
հեթանոսս ամենայն Հրէայք են․ ասես՝ մի՛ թլփա-
22 տել զորդիս նոցա, և մի՛ ըստ կրօնիցն գնալ։ Արդ
զի՞նչ լինիցի՝ ապաքէն լսեն, եթէ եկեալ ես։
23 Արդ զայս արա՛ զոր ասեմք քեզ․ են ՚ի մեզ արք
24 չորք ուխտադիրք յանձինս իւրեանց․ Զնոսա առ-
եալ՝ սրբեսջիր ընդ նոսա․ և ծախեա՛ ինչ ՚ի նոսա՝
զի գերծցեն զգլուխս․ և գիտասցեն ամենեքին, թէ
զորոց իրազեկն եղեն զքէն՝ ոչի՛նչ է․ այլ միաբա-
25 նիս և դու պահել զօրէնս։ Բայց վասն հաւատա-
ցելոցն հեթանոսաց, մեք առաքեցաք՝ որպէս ընտ-
րեցաք, մի՛ ինչ այնպիսի պահել նոցա․ բայց մի-
այն զգուշանալ ՚ի կռոց զոհելոյ, և յարենէ,
26 և ՚ի հեղձուցելոյ, և ՚ի պոռնկութենէ։ Յայնժամ
Պօղոսի առեալ զարսն՝ ՚ի վաղիւ անդր ընդ նոսա
սրբեալ եմուտ ՚ի տաճարն․ յայտ առնել զկատա-
րումն աւուրցն սրբութեան, մինչև մատուցաւ ՚ի վե-
րայ իւրաքանչիւր ուրուք ՚ի նոցանէ պատարագ։
27 Եւ իբրև մերձ էին եօթն աւուրքն ՚ի կատարել,
տեսեալ զնա ՚ի տաճարին Ասիացւոց Հրէիցն՝ զե-
ղուին զնովաւ զամենայն զամբոխն․ և արկեալ ՚ի նա
28 ձեռս՝ աղաղակէին․ Արք Իսրայելացիք, օգնեցէք․
այս այր է՝ որ հակառակ ժողովրդեանն և օրինաց և
տեղւոյս այսորիկ՝ ամենեցուն ամենայն ուրեք ուսու-
ցանէ․ մինչև Հեթանոսս ևս եմոյծ ՚ի տաճարն՝ և
29 պղծեաց զսուրբ տեղին։ Քանզի էր յառաջագոյն

տեսեալ զՏրոփիմոս զԵփեսացի 'ի քաղաքին ընդ
նմա. զոր կարծէին, եթէ 'ի տաճար անդր եմոյծ
30 Պօղոս: Շարժեցաւ քաղաքն ամենայն, և կուտե-
ցաւ ժողովուրդն. և առեալ զՊօղոս՝ ձգէին ար-
տաքոյ տաճարին. և վաղվաղակի փակեցան դրունքն.
31 Եւ խնդրէին զնա սպանանել. եհաս զրոյց 'ի հազա-
րապետ գնդին, եթէ խռովեալ է ամենայն Երուսա-
32 ղէմ: Որոյ անդէն առեալ զօրականս և հարիւրա-
պետս՝ դիմեաց 'ի վերայ նոցա. և նոցա տեսեալ
զհազարապետն և զզօրականսն, դադարեցին 'ի հար-
33 կանելոյ զՊօղոս: Յայնժամ մատուցեալ հազարա-
պետն կալաւ զնա, և հրամայեաց կապել կրկին
շղթայիւք՝ և հարցանէր՝ թէ ո՞ իցէ, և զի՞նչ իցէ
34 արարեալ: Այլք այլ ինչ աղաղակէին զնմանէ յամ-
բոխին. իբրև ոչ կարաց գիտել զստոյգն վասն ամ-
35 բոխին, հրամայեաց ածել զնա 'ի բանակն: Եւ իբ-
րև եհաս յաստիճանսն, դէպ եղև բառնալ բերել
զնա 'ի զօրականացն՝ վասն բռնութեան ամբոխին:
36 Գնային զհետ երթայր բազմութիւն ժողովրդեանն,
37 և ասէին՝ Բա՛րձ զդա: Մինչդեռ մտանելոց էր Պօ-
ղոս 'ի բանակն, ասէ ցհազարապետն՝ եթէ արժա՞ն
իցէ ինձ խօսել ընդ քեզ. և նա ասէ. Յունարէն
38 գիտե՞ս. Ո՞չ արդեօք դու իցես Եգիպտացին, որ
յառաջ քան զայս աւուրս ապստամբեցուցեր՝ և
հաներ յանապատ չորս հազարս արս սիկարեանս:
39 Եւ ասէ Պօղոս, Ես եմ այր Հրէայ 'ի Տարսոնէ
Կիլիկեցւոց, ոչ աննշան քաղաքի քաղաքացի. ա-
ղաչեմ զքեզ հրամայեա՛ ինձ խօսել առ ժողովուրդ:
40 Եւ 'ի հրամայելն նորա, Պօղոս կացեալ 'ի վերայ

աստիճանաց շարժեաց զձեռն ժողովրդեանն. իբրև բազում լռութիւն լինէր, սկսաւ բարբառել Եբրայեցւոց բարբառովն՝ և ասէ:

## ԳԼ. ԻԲ

1 Արք եղբարք և հարք՝ լուարո՛ւք ինձ այժմ առ
2 ձեզ պատասխանատուութեանս: Իբրև լուան՝ եթէ
Եբրայեցւոց լեզուաւն բարբառեցաւ նոցա՝ առա-
3 ւել ևս դադարեցին ՚ի լռութիւն: Եւ ասէ. Ես եմ
այր Հրէայ ծնեալ ՚ի Տարսոն Կիլիկեցւոց՝ սնեալ
՚ի քաղաքիս յայսմիկ առ ոտս Գամաղիելի, խրատ-
եալ ըստ ճշմարտութեան հայրենի օրինաց, նա-
խանձայոյզ էի Աստուծոյ՝ որպէս ամենեքին դուք
4 այսօր: Որ զայն ճանապարհ վարեցի մինչև ՚ի մահ,
5 կապել և մատնել ՚ի բանտս արս և կանայս. Որ-
պէս և քահանայապետդ վկայէ ինձ՝ և ամենայն ծե-
րակոյտդ. յորոց և թուղթս առեալ առ եղբարս
՚ի Դամասկոս երթայի, ածել և անտի կապեալս
6 յԵրուսաղէմ, զի պատժեսցին: Եւ եղև ինձ ՚ի
գնալն և ՚ի մերձենալ ՚ի Դամասկոս, զմիջաւուրբն
յանկարծակի յերկնից փայլատակեալ լոյս սաստիկ
7 զինև. Եւ անկայ յերկիր, և լուայ բարբառ՝ որ
ասէր ցիս. Սաւուղ Սաւուղ՝ զի՞ հալածես զիս:
8 Եւ ես ետու պատասխանի՝ թէ Ո՞վ ես Տէր. և ա-
սէ ցիս, Ես եմ Յիսուս Նազովրեցի՝ զոր դուն հա-
9 լածես: Բայց որ ընդ իսն էին՝ զլոյսն տեսանէին.
10 այլ զձայնն ոչ լսէին որ խօսէր ընդ իս: Եւ ասեմ,
Զի՞նչ արարից Տէր. և ասէ ցիս Տէր. Յարուցեալ

երթիցես ՚ի Դամասկոս, և անդ պատմեսցի քեզ վասն
11 ամենայնի որ Հրաման է քեզ առնել: Իբրև ոչ
տեսանէի ՚ի փառաց լուսոյն այնորիկ, զձեռանէ
ձգեալ ՚ի նոցանէ՝ որ ընդ իմն էին, մտի ՚ի Դա-
12 մասկոս: Անանիա ումն այր երկիւղած ըստ օրինաց,
վկայեալ յամենայն բնակչաց՝ որ ՚ի Դամասկոս
13 հրէայքն էին. Եկն եկաց առ իս՝ և ասէ, Սա-
14 ւուղ եղբայր՝ ՚ի վեր հայեաց: Եւ ես նոյնժամայն
՚ի վեր հայեցայ ՚ի նա. և նա ասէ ցիս. Աստուած
հարցն մերոց յառաջագոյն ընտրեաց զքեզ ճանաչել
զկամս նորա, և տեսանել զարդարն, և լսել բարբառ
15 ՚ի բերանոյ նորա. Զի եղիցիս վկայ նորա առ ա-
16 մենայն մարդիկ՝ որոց տեսերն և լուար: Եւ արդ
զի՞ հեղգաս, արի՛ մկրտեաց և լուա՛ զմեղս քո ՚ի
17 կարդալ զանուն նորա: Եւ եղև ինձ ՚ի դառնալն
յԵրուսաղէմ՝ և կալ յաղօթս ՚ի տաճարին, լինել
18 ՚ի զարմացման. Եւ տեսանել զնա՝ զի ասէր ցիս.
փութա՛ ել յԵրուսաղեմէ վաղվաղակի, քանզի չեն
19 ընդունելոց զքո վկայութիւնդ վասն իմ: Եւ ես
ասեմ. Տէ՛ր՝ ինքեանք իսկ գիտեն՝ զի ես էի որ ՚ի
բանտ տայի, և գան հարկանէի ըստ ժողովրդոց
20 զհաւատացեալս ՚ի քեզ: Եւ յորժամ հեղոյր ար-
իւնն Ստեփանոսի վկայի քո, ես ինքն էի՝ որ ՚ի
վերայ կայի, և կամակից լինէի սպանման նորա,
21 և պահէի զհանդերձս սպանողացն նորա: Եւ ա-
սէ ցիս. Գնա՛, զի ես ՚ի հեթանոս հեռաւորս ա-
22 ռաքեցից զքեզ: Եւ ունկն դնէին նմա մինչև ցայս
բան. ապա բարձին զձայնս իւրեանց՝ և ասեն.
Բա՛րձ յերկրէ զայդպիսիդ՝ զի չէ պարտ այդպիսւոյդ

23 կեալ։ Եւ յաղաղակելն նոցա՝ և ընկենուլ զհան-
24 դերձս՝ և զփոշին ցանել յօդս, հրամայեաց հա-
զարապետն մուծանել զնա 'ի բանակն. ասէր՝ գա-
նիւ հարցանել զնա, զի գիտասցէ վասն որոյ յանց-
25 ման այնպէս աղաղակէին զնմանէ։ Եւ իբրև պրկե-
ցին զնա փոկովք, ասէ Պօղոս ցհարիւրապետն որ
'ի վերայ կայր. եթէ Զայր Հռովմայեցի և անպա-
26 րտ պա՞րտ իցէ ձեզ գան հարկանել։ Իբրև լուաւ
հարիւրապետն, մատուցեալ առ հազարապետն
պատմեաց՝ և ասէ. Զի՞նչ կամիս առնել՝ քանզի
27 այրս այս Հռովմայեցի է։ Եւ մատուցեալ հազա-
րապետն, ասէ ցնա. Ասա՛ դու ցիս՝ Հռովմայեցի՞
28 ես. և նա ասէ, Այո՛։ Պատասխանի ետ հազա-
րապետն. Ես բազում գլխոց զշինուորութիւնս
զայս ստացայ. ասէ Պօղոս. Ես ծնեալ իսկ 'ի դմին
29 եմ։ Եւ վաղվաղակի 'ի բաց կացին 'ի նմանէ՝ որ
հարկանելոցն էին զնա. և հազարապետն իսկ երկ-
եաւ, իբրև գիտաց եթէ Հռովմայեցի է, և զի
կապեալն ևս էր զնա։
30 Եւ 'ի վաղիւ անդր կամէր գիտել զճշմարիտն, թէ
զի՞նչ չարախօսութիւն իցէ Հրէիցն. արձակեաց
զնա՝ և հրամայեաց կոչել զքահանայապետսն և
զամենայն ատեանն. և իջուցեալ զՊօղոս՝ կացոյց 'ի
մէջ նոցա։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ հայեցեալ Պօղոսի յատեանն՝ ասէ. Արք
եղբարք՝ ես ամենայն ուղիղ մտօք գնացեալ եմ ա-
2 ռաջի Աստուծոյ մինչև ցայսօր։ Եւ քահանայա-

պետն Անանիա հրամայեաց սպասաւորացն հարկա-
3 նել զբերան նորա ։ Յայնժամ Պօղոս ասէ ցնա .
Հարկանելոց է զքեզ Աստուած՝ որմ բռեալ . և
դու նստիս դատել զիս ըստ օրինաց , և առանց օրի-
4 նաց հրամայես զիս հարկանել ։ Եւ որ շուրջն կայ-
ին՝ ասեն . զքահանայապետն Աստուծոյ հայհոյես ։
5 Եւ ասէ Պօղոս . Ո՛չ գիտէի եղբարք՝ եթէ իցէ
քահանայապետ . գրեալ իսկ է՝ Զիշխան ժողովրդ-
6 եան քո մի՛ հայհոյեսցես ։ Իբրև գիտաց Պօղոս
եթէ մի կողմն Սադուկեցւոց է՝ և միւսն փարիսեց-
ւոց , աղաղակէր ՚ի մէջ ատենին . Ա՛րք եղբարք՝ ես
փարիսեցի եմ , որդի փարիսեցւոյ . վասն յուսոյ
7 և յարութեան մեռելոց՝ ես աւասիկ դատիմ ։ Եւ
զայս իբրև ասաց՝ եղեն հերձուածք փարիսեցւոցն
և սադուկեցւոց , և պատառեցաւ բազմութիւնն ։
8 Քանզի սադուկեցիքն ասեն , Չիք յարութիւն , և
ոչ հրեշտակ և ոչ հոգի . բայց փարիսեցիքն խոս-
9 տովանին զերկոսեան ։ Եւ եղև աղաղակ մեծ . յոտն
կացին ոմանք ՚ի դպրաց անտի ՚ի կողմանէ փարի-
սեցւոց , հակառակէին և ասէին . Ո՛չինչ չարու-
թիւն գտանեմք յառնս յայսմիկ , բայց թէ հոգի
10 խօսեցաւ ՚ի դմա կամ հրեշտակ ։ Եւ ՚ի բազմա-
նալ ամբոխին՝ երկուցեալ հազարապետն թէ գու-
ցէ ձեղքիցի Պօղոս ՚ի նոցանէ , հրամայեաց զօրա-
կանին իջանել յափշտակել զնա ՚ի միջոյ նոցա , և
11 ածել ՚ի բանակն ։ Եւ ՚ի վաղուեան գիշերին եկաց
առ նմա Տէր , և ասէ . Քաջալերեաց Պօղէ , զի
որպէս վկայեցեր վասն իմ յԵրուսաղէմ , նոյնպէս
պարտ է քեզ և ՚ի Հռոմ վկայել ։

12 Եւ իբրեւ այգ եղեւ՝ արարեալ ժողով Հրէիցն՝
նզովեցին զանձինս, ո՛չ ուտել եւ ո՛չ ըմպել՝ մինչեւ
13 սպանցեն զՊօղոս։ Եւ էին աւելի քան զքառասուն՝
որոց զայս ընդ միմեանս երդմունս արարեալ էր։
14 Որք մատեան առ քահանայապետսն եւ երիցունս՝
եւ ասեն. Նզովիւք նզովեցաք զանձինս՝ ոչինչ ճա-
15 շակել՝ մինչեւ սպանցուք զՊօղոս։ Բայց դուք զգա-
ցուցէք հազարապետին հանդերձ ատենիւ, զի իջուս-
ցէ զնա առ ձեզ, որպէս թէ կամիցիք ճշմարտա-
գոյն ինչ գիտել զնմանէ. եւ մեք յառաջ քան
զմօտել նորա՝ պատրաստ. եմք ՚ի սպանանել զնա։
16 Եւ լուեալ քեռորդւոյն Պօղոսի զդաւաճանութիւնն,
եկն եմուտ ՚ի բանակ անդր՝ պատմեաց Պօղոսի։
17 Եւ կոչեցեալ Պօղոսի առ իւր զմի ՚ի հարիւրապետաց
անտի՝ ասէ. Զպատանիս զայս տա՛ր առ հազարա-
18 պետն, զի ունի ինչ պատմել նմա։ Եւ նորա առ-
եալ զնա տարաւ առ հազարապետն՝ եւ ասէ. Կապ-
եալն Պօղոս կոչեաց զիս, եւ աղաչեաց զպատանիս
զայս ածել առ քեզ, ունի ինչ խօսել ընդ քեզ։
19 Առեալ զձեռանէ նորա հազարապետին՝ գնաց մե-
կուսի, հարցանէր թէ զի՞նչ ունիս խօսել ընդ
20 իս։ Եւ նա ասէ. Հրէայք միաբանեցին աղաչել
զքեզ, զի ՚ի վաղիւ զՊօղոս իջուսցես յատեան, իբրեւ
թէ կամիցին ինչ ճշմարտագոյնս հարցանել վասն
21 նորա. Արդ՝ դու մի՛ անսայցես նոցա. քանզի դա-
րան գործեալ է նմա ՚ի նոցանէ արանց աւելի քան
զքառասուն, որ նզովեցին զանձինս՝ ո՛չ ուտել եւ
ո՛չ ըմպել՝ մինչեւ սպանցեն զնա. արդ պատրաստ
22 են՝ եւ սպասեն քում հրամանի։ Ապա հազարա-

պետն արձակեաց զպատանին՝ պատուիրեալ մի՛ ու-
23 մեք ասել, թէ զայս զգացուցեր ինձ : Եւ կոչեաց
երկուս 'ի հարիւրապետաց՝ և ասէ . Պատրաստե-
ցէք զօրականս երկերիւր, որպէս զի երթիցեն մին-
չև 'ի Կեսարիա . և հեծեալս եօթանասուն՝ և տի-
24 գաւորս երկերիւր, 'ի յերից ժամու գիշերոյն . Եւ
գրաստս պատրաստական՝ որպէս զի իջուցեալ զՊօ-
25 ղոս ապրեցուսցեն առ Փելիքս դատաւոր . Գրեալ
26 թուղթ որ ունէր օրինակ զայս : Կղօդիոս Լիւսի-
27 աս առ քաջ դատաւորդ Փելիքս՝ ողջոյն : Զայրս զայս
կալեալ 'ի Հրէից՝ և մերձ 'ի սպանանել 'ի նոցանէ,
հասեալ 'ի վերայ զօրականաւ ապրեցուցի, իմաց-
28 եալ թէ Հռովմայեցի է : Կամեցայ գիտել ըզ-
պատճառն՝ վասն որոյ ամբաստանէինն զնմանէ, իջուցի
29 զնա յատեան նոցա : Զոր գտի ամբաստանեալ
վասն խնդրոյ իրիք իւրեանց օրինաց . և ոչ ինչ ար-
30 ժանի մահու կամ կապանաց ունէր պատճառ : Իբրև
ազդ եղև ինձ նենգութեան յարդ լինելոյ 'ի նոցանէ՝
յղեցի առ քեզ՝ հրաման տուեալ և չարախօսացն
31 խօսել զնմանէ առաջի քո . ողջ լեր : Եւ զօրակա-
նացն ըստ հրամանի նորա առեալ զՊօղոս՝ ածին
32 գիշերոյն յԱնտիպատրիս : Եւ 'ի վաղիւ անդր ար-
ձակեալ զհեծեալս ընդ նմա երթալ՝ դարձան 'ի
33 բանակն : Որք մտին 'ի Կեսարիա . և տուեալ
ցդատաւորն զթուղթն, առաջի կացուցին նորա և
34 զՊօղոս : Իբրև ընթերցաւ՝ եհարց թէ յորմէ՞ նա-
հանգէ իցէ . և ստուգեալ եթէ 'ի Կիլիկեայ է .
35 Լուայց քեզ ասէ՝ յորժամ և չարախօսքն քո եկեսցեն .
և հրամայեաց յապարանս Հերովդի պահել զնա :

## ԳԼ. ԻԴ

1 Եւ յետ հինգ աւուր էջ քահանայապետն Ա-
նանիա հանդերձ ծերովք ոմամբք, և ճարտարա-
խօսաւ Տերտիւղեաւ ոմամբ. որք և զգացուցին դա-
2 տաւորին վասն Պօղոսի: Եւ 'ի կոչելն զնա՝ սկսաւ
Տերտիւղոսն ամբաստան լինել և ասել: Բազում
խաղաղութիւն գտեալ է 'ի քէն՝ և իրաց ուղղու-
3 թիւն ազգիս այսորիկ քով խնամով. Ամենայնիւ
և ամենայն ուրեք շնորհակալ եմք՝ քաջդ փելիքս՝
4 ամենայն գոհութեամբ: Բայց զի մի աւելի ևս աշ-
խատ արարից զքեզ, աղաչեմ լսել մեզ կարճ 'ի
5 կարճոյ՝ քոյին հեզութեամբդ: Վասնզի գտաք
զայրս զայս ապականիչ և խռովիչ ամենայն Հրէից՝
որք են ընդ տիեզերս, և առաջնորդ Նազովրացւ-
6 ւոց հերձուածոյն: Որ և զտաճարն իսկ կամեցաւ
պղծել. զոր և կալաք, և ըստ մերոց օրինաց դա-
7 տել կամեցաք: Եկեալ Լիւսիաս հազարապետ՝ մե-
8 ծաւ բռնութեամբ 'ի ձեռաց մերոց եհան: Հրա-
մայեաց և չարախօսացն նորա գալ առ քեզ. յորմէ
դու իսկ բաւական լինիցիս վերստին դատել, ա-
մենայնի հասու լինել՝ զորոց մեք ամբաստանեմք
9 զդմանէ: Միաբանեցին և Հրէայքն, ասեն՝ Այդ
10 այդպէս է: Պատասխանի ետ Պօղոս, յակնարկել նմա
դատաւորին խօսել: Ի բազում ամաց լինել քեզ
դատաւոր ազգիս այսորիկ գիտեմ. յօժարութեամբ
11 վասն իմոց իրաց պատասխանի տանիմ: Վասնզի
կարող ես գիտել, զի ոչինչ աւելի է իմ քան զա-
ւուրս երկոտասան՝ յորմէ հետէ ելի երկիրպագա-

12 նել յԵրուսաղէմ։ Եւ ո՛չ ՚ի տաճարի անդ գտին
զիս ընդ ումեք խօսեցեալ, և կամ ժողովս արարեալ
13 բազմաց, ո՛չ ՚ի ժողովուրդս՝ և ո՛չ ՚ի քաղաքի. Եւ
ո՛չ յանդիման առնել կարեն քեզ՝ վասն որոյ այժմդ
14 չարախօսեն զինէն։ Բայց զայս խոստանամ քեզ, ե-
թէ ըստ ճանապարհին՝ զոր ասեն հերձուած, այնպէս
պաշտեմ զհայրենի Աստուածն. հաւատացեալ ա-
մենայնի՝ որ ինչ յօրէնս և ՚ի մարգարէս գրեալ է։
15 Ունիմ յոյս առ Աստուած, որում և դոքա իսկ
ակն ունին՝ թէ յարութիւն լինելոց է արդարոց և
16 մեղաւորաց։ Յորում և ես իսկ ճգնիմ, անխիղճ
միտս ունել առ Աստուած և առ մարդիկ յամենայն
17 ժամ։ ՚Ի բազում ամաց ողորմութիւնս եկի առ-
18 նել յազգ իմ, և եառ պատարագս. Որովք գտին
զիս սրբեալ ՚ի տաճարին՝ ո՛չ բազմօք և ո՛չ ամ-
19 բոխիւ, Ամանք յԱսիացւոց անտի Հրէայք՝ որոց
պարտ էր գալ առաջի քո՝ և ամբաստան լինել,
20 եթէ ունիցին ինչ զինէն. Եւ կամ նոքեանք սոքա
ասասցեն, զինչ գտին յիս անիրաւութիւն՝ մինչդեռ
21 կայի յատենին։ Բայց միայն վասն միոյ բարբա-
ռոյս այսորիկ՝ զոր աղաղակեցի մինչ կայի ՚ի մէջ
նոցա. եթէ Վասն յարութեան մեռելոց դատիմ ես
22 այսօր ՚ի ձէնջ։ Եւ յապաղեաց զնոսա Փելիքս, զի
ստուգագոյնս գիտէր վասն ճանապարհին, ասէ.
Յորժամ Լիւսիաս հազարապետն իջցէ այսր՝ տեղե-
23 կացայց վասն ձեր։ Հրամայեաց հարիւրապետին
պահել զնա և ունել յընդարձակի, և մի՛ զոք յիւ-
րոց անտի արգելուլ ՚ի պաշտելոյ զնա։

24 Եւ յետ աւուրց ինչ եկն Փելիքս հանդերձ Դրու-

սիղաւ կնաւ իւրով, որ էր Հրեայ. կոչեաց զՊօ-
ղոս՝ և լուաւ ՚ի նմանէ վասն որ ՚ի Յիսուս Քրիս-
25 տոս հաւատոցն: Եւ ՚ի խօսելն նորա վասն արդա-
րութեան և ժուժկալութեան և հանդերձելոյ դա-
տաստանին, զահի հարեալ Փելիքս, ետ պատաս-
խանի. Դու առ այժմ երթ՝ և յորժամ ժամ լիցի
26 կոչեցից զքեզ: Միանգամայն և ակն ունէր՝ թէ
տացի ինչ նմա ՚ի Պօղոսէ. վասն որոյ ստէպ կո-
27 չեցեալ զնա խօսէր ընդ նմա: Եւ ՚ի կատարել եր-
կուց ամաց՝ եկն փոխանակ Փելիքսի՝ Փեստոս Պոր-
կիոս. իբրև կամեցաւ շնորհս առնել Հրէիցն Փե-
լիքս, եթող զՊօղոս կապեալ:

## ԳԼ. ԻԵ

1 Փեստոս իբրև եհաս յիշխանութիւնն, յետ երից
2 աւուրց ել յԵրուսաղէմ ՚ի Կեսարիայ: Եւ զգա-
ցուցին նմա քահանայապետքն և գլխաւորք Հրէիցն
3 զՊօղոսէ, Եւ աղաչէին խնդրել շնորհս ՚ի նմանէ.
զի կոչեսցէ զնա յԵրուսաղէմ. դարան գործեալ
4 սպանանել զնա ՚ի ճանապարհի: Իսկ Փեստոս ա-
րար պատասխանի՝ պահել զնա ՚ի Կեսարիա. թէ
5 ինքն իսկ ընդ հուպ անդր երթալոց է: Եւ որ ՚ի
ձէնջ կարօղք իցեն՝ ասէ, ընդ իս իջցեն, և եթէ
իցէ ինչ յառնն յնմա՝ ամբաստան լիցին զնմանէ:
6 Եւ լեալ անդ աւուրս՝ ոչ աւելի քան զութ կամ
զտասն, եկն էջ ՚ի Կեսարիա. և ՚ի վաղիւ անդր
7 նստեալ յատենի, հրամայեաց ածել զՊօղոս: Եւ
իբրև եկն՝ կացին շուրջ զնովաւ՝ որ յԵրուսաղէմէ

իջեալ էին Հրէայք . բազում և ծանր վնասս դը-
8 նէին՝ զոր ոչ կարէին ցուցանել : Քանզի առնէր
պատասխանի Պօղոս , եթէ Ո՛չ յօրէնս Հրէից՝ և
ոչ 'ի տաճարն՝ և ոչ 'ի Կայսր ինչ վնասակար եմ:
9 Բայց Փեստոս կամեցեալ Հրէիցն շնորհս առնել՝
պատասխանի ետ Պօղոսի՝ և ասէ . Կամի՞ս յԵրու-
սաղէմ ելանել՝ և անդ վասն դոցին իրաց դատել ա-
10 ռաջի իմ: Եւ ասէ Պօղոս . յատենի Կայսեր հասեալ
կամ, ուր պարտ է ինձ դատել . Հրէից ինչ չեմ
11 վնասակար , որպէս և դու իսկ քաջ գիտես : Ապա
թէ վնասակար իցեմ՝ և արժանի մահու ինչ գոր-
ծեցի , ոչ զանգիտեմ 'ի մեռանելոյ . իսկ եթէ ոչ-
ինչ իցէ՝ զորոց սոքա ամբաստան լինին զինէն , ոչ-
ոք կարէ զիս դոցա շնորհել . 'ի Կայսր բողոքեմ:
12 Յայնժամ Փեստոս խօսեցեալ ընդ խորհրդակցին՝
արար պատասխանի , 'Ի Կայսր բողոքեցեր՝ առ
Կայսր երթիցես :
13 Իբրև անցին աւուրք ինչ՝ Ագրիպպաս արքայ և
Բերինիկէ եկին 'ի Կեսարիա՝ յողջոյն Փեստոսի:
14 Եւ իբրև աւուրս բազումս հանէին անդր , Փես-
տոս զեկոյց արքային զՊօղոսէ՝ և ասէ . Այր մի է
15 աստ մնացեալ կապեալ 'ի Փելիքսէ : Վասն որոյ
իբրև չոգայ յԵրուսաղէմ, զգացուցին ինձ քահա-
նայապետքն և գլխաւորք Հրէիցն . խնդրէին յինէն
16 առնել նմա պատուհաս : Որոց ետու պատասխա-
նի , Չէ օրէն Հռովմայեցւոց շնորհել ումեք զոք ,
մինչչև ամբաստանեալն յանդիման ունիցի զդատա-
խազսն՝ և տեղի պատասխանւոյ առնուցու վասն ամ-
17 բաստանութեանն : Եւ իբրև եկին աստ՝ ոչինչ յա-

պաղեցի, այլ 'ի վաղիւն նստեալ յատենի՝ հրա-
18 մայեցի ածել զայրն։ Վասն որոյ մատուցեալ ամ-
բաստանքն՝ և ոչ մի ինչ վնաս չարութեան 'ի մէջ
19 բերէին՝ զորոց ես կարծէի. Բայց խնդիրս ինչ՝
վասն իւրեանց պաշտաման ունէին ընդ նմա. և
վասն Յիսուսի ուրումն մեռելոյ, զորմէ ասէր Պօ-
20 ղոս թէ կենդանի է։ Իբրև յանհնարս մտի վասն
այնպիսի իրաց քննութեան, ասեմ եթէ կամիցի՞
երթալ յԵրուսաղէմ, և անդ դատել վասն նոցին
21 իրաց։ Բայց 'ի Պօղոսի բողոքելն՝ զի պահիցի 'ի
քաջի արանցն յանդիմանութիւն, հրամայեցի պա-
22 հել զնա՝ մինչև տաց տանել առ Կայսր։ Ագրիպ-
պաս ցՓեստոս ասէ. Կամէի և ես լսել առնն. և
նա ասէ՝ վաղիւ լուիցես։
23 Եւ 'ի վաղիւ անդր իբրև եկն Ագրիպպաս և Բե-
րինիկէ՝ բազում երևելի սպասուք, և մտին յատ-
եանն հանդերձ հազարապետօքն և արամբք պատ-
ուականօք քաղաքին. և հրամայեալ Փեստոսի՝ ա-
24 ծին զՊօղոս։ Եւ ասէ Փեստոս. Արքայ Ագրիպ-
պա՝ և ամենայն արք՝ որք ընդ մեզ էք. տեսանէք
զսա. վասն սորա ամենայն ժողովք Հրէից ամբաս-
տան եղեն ինձ յԵրուսաղէմ և աստ. աղաղակէին՝
25 թէ Չէ պարտ դմա կեալ։ Բայց ես 'ի վերայ հա-
սի թէ ոչինչ է դորա արժանի մահու գործեալ.
և դորա ինքնին բողոք կալեալ առ քաջ արանցն,
26 խորհեցայ յղել։ Վասն որոյ ստուգութեամբ ինչ
գրել տեառն իմում ոչ ունիմ. վասն այնորիկ
ածի զդա առաջի ձեր՝ և մանաւանդ առաջի քո ար-
քայ Ագրիպպա. որպէս վերստին քննեալ մարթա-

27 ցից ինչ գրել: Վասնզի անպատեհ իմն թուի ինձ՝
տալ տանել կապեալ մի, և ոչինչ վնաս զնմանէ
նշանակել:

## ԳԼ. ԻԶ.

1 Եւ Ագրիպպաս ասէ ցՊօղոս. հրամայեալ է
քեզ վասն քո խօսել. յայնժամ Պօղոսի ձգեալ
2 զձեռն՝ տայր պատասխանի: Վասն ամենայն ամ-
բաստանութեան հրէից զինէն՝ արքայ Ագրիպպա՝
համարիմ զանձն երանելի. զի քո առաջի այսօր
3 տալոց եմ պատասխանի: Մանաւանդ զի գիտակ
իսկ ես ամենայն կրօնից և խնդրոց հրէից. վասն
4 որոյ աղաչեմ երկայնմտութեամբ լսել ինձ: Վասն-
զի զկենաց իմոց՝ որ ՚ի մանկութենէ, ՚ի սկզբանէ
լեալ յազգի իմում յԵրուսաղէմ, տեղեակ են ա-
5 մենայն հրեայք: Յառաջագոյն գիտեն ՚ի վաղուց
հետէ, եթէ կամիցին վկայել. զի ըստ ճշմարտա-
գոյն կրօնից օրինացն մերոց կեցեալ եմ փարիսե-
6 ցի: Եւ արդ վասն յուսոյն՝ առ հարսն եղելոյ ա-
ւետեացն յԱստուծոյ՝ դատեալ կամ յատենի.
7 Յոր երկոտասան ազգատոհմս մերոյ անպակաս
զցայգ և զցերեկ պաշտեալ ակն ունին հասանել.
վասն որոյ յուսոյ ամբաստանիմ արքայ ՚ի հրէ-
8 ից: Զինչ անհաւատ թուի ձեզ՝ եթէ Աստուած
9 զմեռեալս յարուցանէ: Ես իսկ ինքնին պատշաճ
համարէի՝ զբազում ինչ հակառակ անուանն Յի-
10 սուսի Նազովրեցւոյ գործել: Զոր և արարի իսկ
յԵրուսաղէմ. և զբազումս ՚ի սրբոցն ես բանտար-
գել տանէի, ՚ի քահանայապետացն առեալ իշխա-

նութիւն . և զսպանելոցն նոցա բերէի համար :
11 Եւ ըստ ամենայն ժողովրդոցն՝ բազում անգամ
պատժեալ զնոսա՝ բռնադատէի հայհոյել . առա-
ւել ևս մոլեալ 'ի վերայ նոցա՝ հալածէի մինչև յար-
12 տաքին քաղաքսն : Որովք գնացեալ 'ի Դամասկոս՝
իշխանութեամբ և հրամանօք քահանայապետիցն ,
13 Զմիջաւուրբն 'ի ճանապարհի տեսի արքայ՝ յերկ-
նից առաւել քան զլուսաւորութիւն արեգական
ծագեալ զինև լոյս , և զնոքօք որ ընդ իմն երթա-
14 յին : Եւ յամենեցուն մեր անկանել յերկիր , լուայ
ձայն որ ասէր ցիս՝ Եբրայեցւոց բարբառով .
Սաւուղ Սաւուղ՝ զի՞ հալածես զիս . խիստ է քեզ
15 ընդդէմ խթանի աքացել : Եւ ես ասեմ , Ո՞ ես
Տէր . և Տէր ասէ . Ես եմ Յիսուս զոր դուն հա-
16 լածես : Այլ արի և կա՛ց 'ի վերայ ոտից քոց . զի
վասն այսորիկ երևեցայ քեզ՝ առնուլ զքեզ 'ի ձեռն
պաշտօնեայ և վկայ՝ որոց տեսերդ զիս , և որոց ե-
17 րևեցայց քեզ . Փրկել զքեզ 'ի ժողովրդենէդ՝ և
18 'ի հեթանոսաց , յորս ես առաքեցից զքեզ . Բա-
նալ զաչս նոցա , դարձուցանել 'ի խաւարէ 'ի լոյս ,
և յիշխանութենէ Սատանայի յԱստուած . առ-
նուլ նոցա զթողութիւն մեղաց , և վիճակ ընդ սուրբս՝
19 հաւատովքն որ յիս : Ուստի արքայ Ագրիպպա՝
20 ո՛չ եղէ անհաւան երկնաւոր տեսլեանն . Այլ նախ
որոց 'ի Դամասկոս և յԵրուսաղէմ էին , և ընդ
ամենայն գաւառս Հրէաստանի և 'ի հեթանոսս ,
պատմեցի զղջանալ՝ և դառնալ յԱստուած կենդա-
նի . արժանի ապաշխարութեան գործս գործել :
21 Վասն այսորիկ Հրէից կալեալ զիս 'ի տաճարին ,

22 կամքին սպանանել: Օգնութիւն հասեալ առ յԱս-
տուծոյ՝ մինչև ցայսօր կացի վկայեալ փոքու և մեծի.
ոչինչ արտաքոյ ասել՝ քան զոր մարգարէքն և Մով-
23 սէս խօսեցան զհանդերձելոցն լինելոյ. Եթէ չարչա-
րելոց է Քրիստոսն, եթէ առաջին ՚ի յարութենէ
մեռելոց՝ լոյս պատմելոց է ժողովրդեանն և հեթա-
24 նոսաց: Եւ նորա զայս պատասխանի տուեալ, Փես-
տոս ՚ի ձայն մեծ ասէ. Մոլիս Պօղէ, բազում դպրու-
25 թիւնքդ զքեզ ՚ի մոլութիւն դարձուցանեն: Իսկ Պօ-
ղոս ասէ, Ո՛չ մոլիմ քա՛ջդ Փեստոս, այլ զցածու-
26 թեան և զճշմարտութեան բանս բարբառիմ: Գի-
տակ իսկ է այսոցիկ արքայ, ընդ որում և համար-
ձակեալդ խօսիմ. քանզի *ծածկել ՚ի քէն ինչ ՚ի
սոցանէ՝ չհամարիմ յանձն. զի ո՛չ եթէ յանկեան
27 ուրեք գործեալ իցէ այս: Հաւատա՞ս արքայ Ագ-
28 րիպպա մարգարէից. գիտեմ զի հաւատաս: Եւ
ասէ Ագրիպպաս ցՊօղոս, փոքու իմն հաւանեցու-
29 ցանես զիս լինել քրիստոնեայ: Եւ Պօղոս ասէ.
Խնդրէի յԱստուծոյ՝ և փոքու և մեծաւ՝ ո՛չ միայն
զքեզ՝ այլ զամենեսեան որ լսեն ինձ այսօր՝ լինել
այսպիսի որպէս և ես եմ, բաց ՚ի կապանաց աս-
30 տի: Յոտն եկաց արքայն և դատաւորն և Բերի-
31 նիկէ, և որ ընդ նոսայն նստէին: Եւ իբրև գնա-
ցին, խօսէին ընդ միմեանս և ասէին. թէ Ոչինչ
արժանի մահու կամ կապանաց գործէ այրս այս:
32 Իսկ Ագրիպպաս ցՓեստոս ասէ. Արձակել մարթ
էր զայրս զայս՝ եթէ ոչ էր բողոքեալ ՚ի Կայսր:

---

* ՚Ի Յոյն, ծածկեալ գոլ.

## ԳԼ. ԻԷ.

1 Իբրև հրամայեցաւ մեզ նաւել յԻտալիա, տա-
յին զՊօղոս՝ և զայլս ոմանս կապեալս ցհարիւրա-
պետ մի, որում անուն էր Յուլիոս՝ Սեբաստական
2 գնդին։ Եւ ելեալ 'ի նաւ մի Ադրամիտտացի, որ
երթալոց էր 'ի կողմանս Ասիացւոց՝ գնացաք․ էր
ընդ մեզ և Արիստարքոս Մակեդոն Թեսաղոնիկե-
3 ցի։ Եւ 'ի վաղիւ անդր իջաք 'ի Սիդովն․ և մար-
դասիրութիւն ցուցեալ Յուլեայ առ Պօղոս, հրա-
մայեաց առ բարեկամսն երթալ՝ և դարման գտա-
4 նել։ Եւ անտի ելեալ խոնարհագոյն նաւեցաք 'ի
5 Կիպրոս՝ վասն հողմոյն ընդդէմ լինելոյ։ Յայնժամ
ընդ մէջ ծովուն Կիլիկեայ և Պամփիլեայ նաւեալ՝
6 իջաք 'ի Սմիռայ Լիկիացւոց։ Եւ անդ գտեալ հա-
րիւրապետին նաւ մի Աղէքսանդրացի որ երթայր յԻ-
7 տալիա, եմոյծ զմեզ անդր։ Եւ 'ի բազում աւուրս
ծանրանաւեալք՝ հազիւ հասաք առ Կնիդաւ․ և 'ի
չթողացուցանել մեզ հողմոյն, նաւեցաք խոնար-
8 հագոյն 'ի Կրետէ առ Սաղամոնեաւ։ Հազիւ անց-
եալ առ նովաւ՝ եկաք 'ի տեղի ինչ որ կոչէր Գե-
ղեցիկ նաւահանգիստ․ յոր հուպ էր քաղաքն Ղա-
9 սեայ։ Եւ իբրև բազում ժամանակք անցանէին, և
սխալ ևս լինէր նաւելոյն․ և վասն այն ինչ ևս
10 պահոցն անցանելոյ, տայր խրատ Պօղոս, Եւ ասէ
ցնոսա․ Արք՝ տեսանեմ զի թշնամանօք և բազում
վնասու՝ ոչ միայն բեռինդ և նաւիդ, այլ և ան-
11 ձանց մերոց լինելոց է նաւարկութիւնս։ Իսկ հա-
րիւրապետն նաւապետին և նաւավարին առաւել ան-

12 սայր՝ քան բանիցն Պօղոսի։ Իբրև դժպատեհ իմն
թուէր նաւահանգիստն առ 'ի ձմերել, բազումք խոր-
հեցան գնալ անտի. թերևս կարասցեն հասանել 'ի
Փիւնիկէ՝ ձմերել 'ի նաւահանգստին Կրետացւոց, որ
13 հայէր ընդ հարաւակողմն և ընդ աշխարհն։ Եւ 'ի
շնչել հարաւոյն, համարեցան ուր դիմեալն էին
հասանել. և արկեալ՝ մօտ անցանէին զԿրետեաւ։
14 Եւ ոչ յետ բազում ժամուց՝ անկաւ զնովաւ հողմ
15 ուռուցիկ, որ կոչի Եւրակիւղոն։ Ընդ յափշտակել
նաւին՝ և 'ի չհանդուրժել ընդդէմ հողմոյն, թոյլ
16 տուեալ երթայաք և գայաք։ 'Ի կղզի ինչ դիմեալ՝
որ կոչէր Կղօդեա, հազիւ կարացաք ըմբռնել զմա-
17 կոյկն։ Զոր առեալ՝ յօգնականութիւն կապէին
ընդ նաւն. երկուցեալ թէ գուցէ 'ի յորձանուտն
անկանիցին, իջուցեալ զառագաստն՝ այնպէս երթա-
18 յին և գային։ Եւ 'ի սաստկագոյն վշտանալոյն մերոյ՝
19 'ի վաղիւ անդր զկարասին ընկեցիկ առնէին։ Եւ
յերիր աւուր ընդ իւրեանց ձեռն զգործին նաւին
20 ընկեցին։ Իբրև ոչ արև՝ և ոչ աստեղք երևէին 'ի
բազում աւուրս, և ձմեռն ոչ սակաւ կայր 'ի վե-
րայ, ապա բառնայր ամենայն յոյս փրկութեան
21 մերոյ։ Եւ զի բազում աւուրս նօթի էին, յայն-
ժամ Պօղոս կացեալ 'ի մէջ նոցա՝ ասէ. Պարտ էր
ձեզ ով արք՝ անսալ ինձ, և ոչ ելանել 'ի Կրետ-
22 եայ՝ և շահել զվիշտս զայս և զվնաս։ Եւ արդ՝
խրատեմ զձեզ քաջալերել. զի վնաս անձին՝ և ոչ
23 միում 'ի ձէնջ լինիցի, բաց 'ի նաւէդ։ Քանզի ե-
րևեցաւ ինձ յայսմ գիշերի հրեշտակ Աստուծոյ՝
24 որոյ եմն եմ և պաշտեմ զնա, Եւ ասէ. Մի եր-

կընչիր Պօղէ, Կայսեր ևս պարտ է քեզ յանդիման
լինել. և ահա շնորհեալ է քեզ Աստուծոյ զամե-
25 նեսեան, որ են ընդ քեզ 'ի նաւիդ: Վասն այսո-
րիկ քաջալերեցարո՛ւք ա՛րք, զի հաւատամ յԱստ-
ուած՝ թէ այսպէս լինի՝ զորօրինակ խօսեցաւ ընդ
26 իս: Բայց 'ի կղզի ինչ հասանէ մեզ անկանել:
27 Իբրև չորեքտասաներորդ գիշեր լինէր՝ մինչդեռ
ծփէաք 'ի Անդրին անդունդս, 'ի մէջ գիշերին
կարծէին նաւավարքն եթէ հասեալ իցեն յաշխարհ
28 ուրեք: Եւ ընկեցեալ զգունդսն՝ գտին գիրկս քսան.
և սակաւ ինչ դադարեալ՝ դարձեալ ընկեցին՝ և գտին
29 գիրկս հնգետասան: Զահի հարեալ թէ գուցէ 'ի
խիստ ինչ տեղիս անկանիցին, յետուստ կողմանէ
ընկեցին խարիսխս չորս, ըղձանային այգուն լինե-
30 լոյ: Բայց նաւավարքն խնդրէին փախչել 'ի նաւէ
անտի. և իջուցեալ զկուրն 'ի ծով անդր՝ պատ-
ճառանօք որպէս թէ առաջոյ կողմանէ զխարիսխս
31 ձգելոց իցեն: Ասէ Պօղոս ցհարիւրապետն և ցզօ-
րականսն. Եթէ ոչ դոքա մնան 'ի նաւիս՝ դուք ապ-
32 րել ո՛չ կարէք: Յայնժամ զօրականքն հատին զլարս
33 կրին՝ և 'ի բաց ընկեցին: Եւ մինչդեռ այգն կա-
մէր լինել, աղաչէր Պօղոս զամենեսեան առնուլ կե-
րակուր, ասէ. Այս չորեքտասաներորդ օր է՝ որում
ակն ունիք նօթիս կատարել, և չէ ինչ ճաշակեալ:
34 Վասն որոյ աղաչեմ զձեզ՝ ճաշակել կերակուր,
զի այն իսկ վասն ձերոյ փրկութեան է. զի ո՛չ ու-
35 րուք 'ի ձէնջ մազ մի 'ի գլխոյ կորիցէ: Եւ իբրև
ասաց 'զայս, առեալ հաց՝ գոհացաւ զԱստուծոյ
36 առաջի ամենեցուն. եբեկ և սկսաւ ուտել: Եւ

քաջալերեցան ամենեքին, և նոքա առին կերա-
37 կուր: Եւ էաք ամենայն հոգիք 'ի նաւին՝ երկեր-
38 իւր եօթանասուն և վեց: Իբրև յագեցան կերակ-
րովն, թեթևացուցին զնաւն՝ թափելով զցորեանն
39 'ի ծովն: Եւ իբրև այգ եղև՝ զերկիրն ոչ ճանա-
չէին, բայց զգոգ մի նշմարէին՝ թէ ափն ծովուն
իցէ. յոր խորհէին թէ հնար ինչ իցէ՝ զերծուցա-
40 նել զնաւն: Եւ զխարիսխն հատեալ՝ ընկեցին 'ի
ծովն, թողացուցին զխառնելիս թևոցն, և 'ի բաց
առին զառագաստն. և ետուն հողմոյն յափն կոյս
41 ծովուն: Անկեալ 'ի տեղի մի երկծով՝ թիւրեցին
զնաւն. և առաջինն կողմն նաւին խրեալ՝ անշարժ
մնայր, և յետին կողմն քակէր 'ի բռնութենէն *:
42 Եւ զօրականացն խորհուրդ արարեալ՝ զի զկապ-
եալսն սպանցեն, և մի ոք լուղիցի և փախիցէ:
43 Եւ հարիւրապետն քանզի կամեցաւ ապրեցուցանել
զՊօղոս՝ արգել զնոսա 'ի խորհրդոյն. հրամայեաց
զի որ կարողն իցեն լուղել՝ անկանիցին նախ, և 'ի
44 ցամաք ելանիցեն. Եւ զայլսն՝ զոմն 'ի տախտակս,
և զոմն յայլ ինչ կահ 'ի նաւէ անտի. և այսպէս
եղև ամենեցուն փրծանել յերկիր:

## ԳԼ. ԻԸ

1 Եւ ապրեալք՝ յայնժամ գիտացաք թէ Մելիտի-
նէ էր անուն կղզւոյն. բայց բարբարոսքն չնորհեցին
2 ոչ սակաւ մարդասիրութիւն մեզ: Քանզի լուցին

* 'Ի Յոյնն, 'ի բռնութենէ ալեացն

խարոյկ՝ և ընկալան զամենեսին զմեզ վասն անձ-
3 րևին որ սաստկէր՝ և վասն ցրտոյն։ Եւ 'ի ժողո-
վել Պօղոսի խռիւ ինչ բազում՝ և դնել 'ի վերայ
խարուկին, իժ մի 'ի ջերմութենէն ելեալ՝ կալաւ
4 զձեռանէ նորա ։ Եւ իբրև տեսին բարբարոսքն
կախեալ զգազանն զձեռանէ նորա, ասէին ցմիմեանս․
Ուրեմն սպանող է այրս այս՝ որ թէպէտ և ապրե-
5 ցաւ 'ի ծովէն, իրաւունքն չետուն կեալ։ Եւ նորա
թօթափեալ զգազանն 'ի հուրն, եղև նմա չար և
6 ոչինչ։ Եւ նոքա ակն ունէին նմա այտնլոյ՝ կամ
անկանելոյ՝ և յանկարծակի մեռանելոյ․ իբրև շատ
ակն կալեալ՝ և տեսանէին թէ ոչինչ վնաս եղև
նմա՝ դարձեալ դարձուցեալ զբանսն՝ ասէին թէ
7 աստուած ոմն է։ Եւ շուրջ զտեղեաւն զայնուիկ
էին գիւղք գլխաւորի կղզւոյն՝ որում անուն էր
Պոպղիոս․ որ առ զմեզ յերաշխի զերիս աւուրս՝ և
8 սիրով ընկալաւ։ Եւ եղև հօրն Պոպղեայ 'ի ջերմն
և յախտ թանչից հիւանդանալ դնել․ առ որ
մտեալ Պօղոս և կացեալ յաղօթս՝ եդ զձեռն և
9 բժշկեաց զնա։ Եւ իբրև այս եղև, այլ հիւանդք
10 որ էին 'ի կղզւոջն՝ գային և բժշկէին․ Որք և բա-
զում պատուովք պատուեցին զմեզ․ և իբրև գնա-
ցաք, ետուն որ ինչ պէտք էին։
11 Եւ յետ երից ամսոց ելաք 'ի նաւ մի Աղեքսանդ-
րացի՝ որ ձմերեալ էր 'ի կղզւոջն նշանաւորաւ Դի-
12 ոսկուրացւոց։ Եւ իջեալ 'ի Սիրակուսա՝ եղաք ա-
13 ւուրս երիս։ Ուստի գնացեալ հասաք 'ի Ռեգի-
ոն․ և յետ աւուր միոյ 'ի շնչել հարաւոյն, երկօր-
14 եայք եկաք 'ի Պատիողոս։ Ուր և գտաք եղբարս՝

աղաչեցեալք 'ի նոցանէ լինել աւուրս եօթն . և
15 ապա եկաք 'ի Հռովմ։ Եւ անտի լուեալ եղբարց
զմէնջ՝ ելին ընդ առաջ մեր մինչև յորգաստայն Ապփ-
եայ՝ և Երիցն կրպակաց . զոր տեսեալ Պօղոսի՝
16 գոհացաւ զԱստուծոյ և քաջալերեցաւ ։ Եւ իբրև
մտաք 'ի Հռովմ, հրամայեցաւ Պօղոսի լինել ա-
ռանձինն հանդերձ զինուորաւն՝ պահապանաւ իւրով ։
17 Եւ եղև յետ երից աւուրց՝ կոչել նմա զՀրէիցն
գլխաւորս . և իբրև եկին , ասէ ցնոսա . Ես արք
եղբարք ոչինչ հակառակ գործեալ ժողովրդեանն՝
կամ կրօնիցն հայրենեաց , կապեալ յԵրուսաղեմէ
18 մատնեցայ 'ի ձեռս Հռովմայեցւոց ։ Որք իբրև դա-
տեցան զիս՝ կամեցան արձակել, վասն և ոչ մի ինչ
19 վնաս մահու գտանելոյ յիս ։ 'Ի հակառակել Հրէ-
իցն , հարկ եղև բողոքել 'ի Կայսր . իբր ոչ եթէ
20 զազգէն իմմէ ունէի ինչ չարախօսել ։ Վասն այսր
պատճառանաց աղաչեցի զձեզ՝ տեսանել և խօսել .
քանզի վասն յուսոյն Իսրայէլի կամ 'ի շղթայս
21 յայսոսիկ ։ Եւ նոքա ասեն ցնա . Մեք ոչ թուղթս
ինչ վասն քո ընկալաք 'ի Հրէաստանէ , և ոչ եկ-
եալ ոք յեղբարց պատմեաց՝ կամ խօսեցաւ ինչ վասն
22 քո չարութիւն ։ Բայց աղաչեմք 'ի քէն լսել՝ թէ
զինչ խորհիցիս . զի վասն հերձուածոյդ այդորիկ
յայտ իսկ է մեզ , զի ամենայն ուրեք հակառա-
23 կութիւն կրէ ։ Հրաման եղեալ նմա օր մի , եկին
'ի վանսն առ նա բազումք . որոց պատմէր վկայու-
թեամբ զարքայութիւն Աստուծոյ . և հաւանեցու-
ցանէր զնոսա վասն Յիսուսի , յօրինացն Մովսէսի
24 և 'ի մարգարէից՝ յայգուէ մինչև ցերեկոյ ։ Եւ ո-

մանք հաւանէին բանիցն, և կէսքն չհաւատային ։
25 Եւ անմիաբանք լեալ միմեանց՝ արձակէին, յա-
սելն Պօղոսի բան մի. թէ Բարւոք խօսեցաւ Հո-
գին Սուրբ ՚ի ձեռն Եսայեայ մարգարէի առ հարսն
26 մեր, Եւ ասէ. Ե՛րթ առ ժողովուրդն, և ասա-
ցես. լսելով լուիջիք՝ և մի իմասջիք. և տեսանե-
27 լով տեսջիք՝ և մի տեսջիք ։ Զի թանձրացաւ սիրտ
ժողովրդեանն այնորիկ, և ականջօք իւրեանց ծանր
լուան, և զաչս իւրեանց կափուցին, զի մի երբէք
տեսցեն աչօք, և ականջօք լուիցեն, և սրտիւք ի-
28 մասցին՝ և դարձցին, և բժշկեցից զնոսա ։ Եւ
արդ՝ յայտնի լիցի՝ ձեզ, զի հեթանոսաց առա-
քեցաւ փրկութիւն Աստուծոյ. նոքին և լուիցեն ։
29 Եւ իբրև զայս ասաց՝ արտաքս գնացին ՚ի նմանէ
Հրէայքն. որք ունէին ՚ի մէջ իւրեանց զբազում
30 խնդիրս ։ Եւ եղև զերկեամ մի՝ բովանդակ իւրով
31 վարձու. Եւ ընդունէր զամենեսեան որ մտանէին
32 առ նա ։ Քարոզէր զարքայութիւնն Աստուծոյ, և
ուսուցանէր վասն Տեառն Յիսուսի Քրիստոսի,
անխափան ամենայն համարձակութեամբ ։

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՍ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ ծառայ Յիսուսի Քրիստոսի, կոչեց-
եալ առաքեալ, որոշեալ յաւետարանն Աստու-
2 ծոյ. Որ յառաջ խոստացաւ ՚ի ձեռն մարգարէից
3 իւրոց գրովք սրբովք, Վասն Որդւոյ իւրոյ եղելոյ
4 ՚ի զաւակէ Դաւթի ըստ մարմնոյ. Սահմանելոյ
Որդւոյն Աստուծոյ զօրութեամբ ըստ Հոգւոյն սըր-
բութեան. ՚ի յարութենէ մեռելոց Յիսուսի Քրիս-
5 տոսի Տեառն մերոյ. Որով ընկալաք շնորհս եւ ա-
ռաքելութիւն՝ ՚ի հնազանդութիւն հաւատոց յա-
6 մենայն հեթանոսս վասն անուանն նորա. Յորս եւ
7 դուք էք կոչեցեալ Յիսուսի Քրիստոսի։ Ամենե-
ցուն որոց էք ՚ի Հռովմ, սիրելեաց Աստուծոյ՝ կո-
չեցելոց սրբոց, շնորհք ընդ ձեզ եւ խաղաղութիւն
յԱստուծոյ Հօրէ մերմէ՝ եւ ՚ի Տեառնէ Յիսուսէ
8 Քրիստոսէ։ Նախ գոհանամ զԱստուծոյ իմոյ ՚ի
ձեռն՝ Յիսուսի Քրիստոսի վասն ձեր ամենեցուն.
զի հաւատք ձեր պատմեալ են ընդ ամենայն աշ-
9 խարհ։ Վկայ է ինձ Աստուած, զոր պաշտեմն հոգ-

ւով իմով յաւետարանի Որդւոյ նորա, թէ որպէս
10 զյիշատակ ձեր առնեմ․ Յամենայն ժամ յաղօթս
իմ, աղաչելով զի թերեւս երբեք յաջողեսցի ինձ
11 կամօքն Աստուծոյ գալ առ ձեզ։ Քանզի անձկաց–
եալ եմ տեսանել զձեզ, զի փոխեսցից 'ի ձեզ
շնորհս ինչ հոգեւորս՝ առ 'ի հաստատել զձեզ․
12 Այսինքն է մխիթարակից լինել ձեզ վասն ընդ
13 միմեանց իմոյ եւ ձերոյ հաւատոց։ Ո՛չ կամիմ եթէ
անգիտաք իցէք եղբարք, զի բազում անգամ յօժա–
րեցի գալ առ ձեզ, եւ արգելայ մինչեւ ցայժմ․ զի
եւ 'ի ձեզ գտից պտուղ ինչ որպէս եւ յայլ հե–
14 թանոսս։ Քանզի Յունաց եւ բարբարոսաց՝ իմաստ–
15 նոց եւ անմտից պարտապան եմ․ Այնպէս՝ որչափ
իմովսանն յօժարութեամբ, եւ ձեզ որ 'ի Հռովմ
16 էք՝ աւետարանել։ Զի ո՛չ եթէ ամօթ ինչ համա–
րիմ զաւետարանն․ քանզի զօրութիւն Աստուծոյ
է 'ի փրկութիւն ամենայն հաւատացելոց․ նախ Հրէի՝
17 եւ ապա Հեթանոսի։ Զի արդարութիւնն Աստու–
ծոյ նովաւ յայտնի 'ի հաւատոց 'ի հաւատս․ որ–
պէս եւ գրեալ է, թէ Արդարն 'ի հաւատոց կեցցէ։
18 Քանզի յայտնեալ է բարկութիւնն Աստուծոյ
յերկնից 'ի վերայ ամենայն ամբարշտութեան եւ
անիրաւութեան մարդկան, որք զճշմարտութիւնն
19 անիրաւութեամբ ունին․ Վասն զի գիտութիւնն
Աստուծոյ յայտնի է 'ի նոսա․ քանզի Աստուած
20 իսկ յայտնեաց նոցա։ Զի աներեւոյթք նորա 'ի
սկզբանէ աշխարհի՝ արարածովքս իմացեալ տե–
սանին․ այսինքն է՝ մշտնջենաւորութիւն եւ զօրու–
թիւն եւ աստուածութիւն նորա․ զի ոչ գտանիցեն

21 ամենևին տալ պատասխանի ։ Զի ծանեան զԱստ-
ուած , և ոչ իբրև զԱստուած փառաւորեցին՝ կամ
գոհացան . այլ նանրացան 'ի խորհուրդս իւրեանց ,
22 և խաւարեցան անմտութեամբ սիրտք նոցա ։ Զան-
23 ձինս առ իմաստունս ունէին՝ յիմարեցան ։ Եւ փո-
խեցին զփառս անեղծին Աստուծոյ՝ 'ի նմանութիւն
պատկերի եղծանելի մարդոյ և թռչնոց և չորքոտան-
24 եաց և սողնոց ։ Վասն որոյ մատնեաց զնոսա Աստուած
'ի ցանկութիւն սրտից նոցա 'ի պղծութիւն , անարգել
25 զմարմինս իւրեանց յանձինս . Որք փոխանակեցին
զճշմարտութիւն Աստուծոյ ընդ ստութեան . Հնազան-
դեցան և պաշտեցին զարարածս , և ոչ զԱրարիչն .
26 որ է օրհնեալ յաւիտեանս . ամէն ։ Վասն այնո-
րիկ մատնեաց զնոսա Աստուած 'ի կիրս անարգու-
թեան . զի էգք նոցա փոխանակեցին զպէտս բնա-
27 կանս 'ի պէտս անբնականս ։ Նոյնպէս և արուքն
թողեալ զբնական պէտս իգութեանն , բորբոքեցան
ցանկութեամբք իւրեանց 'ի միմեանս . արուք ընդ
արուս զխայտառակութիւն գործէին , և զդարձ փո-
խարինին որ պարտ էր մոլորութեան նոցա՝ յան-
28 ձինս իւրեանց ընդունէին ։ Եւ որպէս զի ոչ ընտ-
րեցին զԱստուած ունել 'ի գիտութեան , մատնեաց
զնոսա Աստուած 'ի միտս անարգութեան՝ գործել
29 զանպարկեշտս . Զի լցեալ ամենայն անիրաւութեամբ ,
պոռնկութեամբ , անզգամութեամբ , ագահութեամբ ,
չարութեամբ , լի նախանձու , սպանութեամբ , հե-
րիւ , նենգութեամբ , չարաբարութեամբ , շողոմողք .
30 Բանսարկուք , աստուածատեացք , թշնամանողք , ամ-
բարտաւանք , ամբարհաւաճք , գտիչք չարեաց ,

31 պծնօղս անարգուք • Անմիտք , ուխտադրուժք , ա–
32 նագորոյնք , աննուէրք , անողորմք ։ Որք հասեալ
էին յԱստուծոյ իրաւանցն վերայ , եթէ որք զայս–
պիսիսն գործեն՝ արժանի են մահու • և ոչ * միայն
որ զայն առնեն , այլ և որ կամակիցն" լինին գոր–
ծելեացն ։

## ԳԼ. Բ

1 Վասն որոյ առանց պատասխանի տալոյ ես ով
մարդ՝ որ դատիդ • զի որով դատիս զընկերն ,
զանձն քո դատապարտես , զի դու զնոյն գործես՝ ո–
րով դատիսն ։
2 Գիտեմք , եթէ Աստուծոյ դատաստանն
ճշմարտութեամբ է 'ի վերայ այնոցիկ՝ որ զայնպի–
3 սիսն գործեն ։ Իսկ արդ՝ խորհիցիս զայս , ով մարդ ,
որ դատիս զայնոսիկ՝ որ զայնպիսիսն գործեն՝ և դու
զնոյնն գործես , եթէ դու ապրելոց իցես 'ի դա–
4 տաստանաց անտի Աստուծոյ ։ Եթէ զմեծութեամբ
քաղցրութեան նորա , և զներելոյն և զերկայնմտու–
թեանն արհամարհիցես • չգիտիցես զի քաղցրու–
թիւնն Աստուծոյ զքեզ յապաշխարութիւն ածէ ։
5 Այլ ըստ խստութեան քում , և ըստ անզեղջ սրտի՝
գանձես անձին քում բարկութիւն՝ յաւուր բարկու–
թեան և յայտնութեան արդար դատաւորութեանն
6 Աստուծոյ • Որ հատուցանէ իւրաքանչիւր ըստ
7 գործս իւրեանց ։ Որ համբերութեամբ են 'ի գործս

* 'Ի Օրինն , միայն զայն առնեն՝ այլ և կամակից

բարութեան՝ զփառս և զպատիւ և զանեղծութիւն
8 խնդրեն, զկեանսն յաւիտենից: Իսկ որ 'ի հակա-
ռակութենէ անտի են և ապստամբք 'ի ճշմարտու-
թենէն՝ և զհետ երթեալ զանիրաւութեան, բար-
9 կութիւն և սրտմտութիւն: Նեղութիւն և անձկու-
թիւն 'ի վերայ ամենայն մարդոյ՝ որ գործէ զչար.
10 Նախ Հրէի՝ և ապա Հեթանոսի: Փառք պատիւ և
խաղաղութիւն ամենայնի որ գործէ զբարի. Նախ
11 Հրէի՝ և ապա Հեթանոսի: Զի ոչ է ակնառու-
թիւն առաջի Աստուծոյ:
12 Որք միանգամ արտաքոյ օրինացն մեղան, ար-
տաքոյ օրինացն կորնչին. և որք ընդ օրինօքն մե-
13 ղան, օրինօքն և դատեսցին: Զի ոչ եթէ որ լսե-
լիք օրինացն են՝ արդարացեալ են առաջի Աստու-
14 ծոյ, այլ առնելիք օրինացն արդարասցին: Այլ
յորժամ հեթանոսք՝ որ զօրէնս ոչ ունին, բնու-
թեամբ զօրինացն գործիցեն, նոքա որ զօրէնս ոչ
15 ունին՝ անձանց իւրեանց իսկ են օրէնք. Որք ցուցա-
նեն զգործս օրինացն գրեալ 'ի սիրտս իւրեանց՝
վկայութեամբ մտաց իւրեանց, * և յանդիմանել
զմիմեանս 'ի խորհրդոց" իւրեանց, կամ թէ պա-
16 տասխանի իսկ տալ. Յաւուրն՝ յորում դատիցի
Աստուած զգաղտնիս մարդկան՝ ըստ աւետարանիս ի-
17 մոյ, 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի: Ապա եթէ դու
Հրեայ անուանեալ ես, և յեցեալ ես յօրէնսն՝
18 և պարծիս յԱստուած, Եւ գիտես զկամս նորա,
և ընտրես զլաւն, և խրատեալ ես յօրինացն,

* Ի Յոյնն, յանդիմանել զմիմեանս խորհրդոց

19 Աստահ ես յանձն քո առաջնորդ լինել կուրաց՝
20 լոյս խաւարելոց՝ Խրատիչ անզգամաց՝ վարդապետ
տղայոց · ունել զկերպարանս գիտութեան և ճշ-
21 մարտութեան օրինացն ։ Իսկ արդ որ ուսուցանես
զընկերն , զանձն քո ո՞չ ուսուցանես · որ քարոզես
22 չգողանալ՝ գողանաս · Որ ասես չշնալ՝ շնաս · որ
23 գարշիս 'ի մեհենաց՝ զսեղանս կողոպտես · Որ օրի-
նօքն պարծիս՝ յանցանել ընդ օրէնսն զԱստուած
24 անարգես ։ Զի անուն Աստուծոյ վասն ձեր հայ-
հոյի 'ի մէջ հեթանոսաց՝ որպէս և գրեալ է ։
25 Թլփատութիւն օգնէ եթէ զօրէնսն պահիցես ·
ապա եթէ յանցաւոր օրինացն իցես , թլփատու-
26 թիւն քո անթլփատութիւն եղև ։ Իսկ եթէ ան-
թլփատութիւնն զիրաւունս օրինացն պահիցէ · ո՞չ
ապաքէն անթլփատութիւն նորա 'ի թլփատութիւն
27 համարեսցի · Եւ դատեսցի որ 'ի բնէ անթլփատու-
թիւն է՝ զօրէնսն կատարելով , զքեզ որ գրովն և
28 թլփատութեամբն յանցաւոր օրինացն իցես ։ Զի
ո՞չ եթէ որ յայտնի հրէայն է , և ո՞չ որ յայտնի
29 մարմնով թլփատութիւն · Այլ որ 'ի ծածուկ հրէ-
այն է , և թլփատութիւն սրտի , հոգւով՝ և ո՞չ գրով ·
որոյ գովութիւնն ո՞չ 'ի մարդկանէ է , այլ յԱս-
տուծոյ ։

## ԳԼ. Գ

1 Իսկ արդ՝ զի՞նչ աւելի է հրէին , կամ զի՞նչ
2 օգուտ 'ի թլփատութենէ անտի ։ Բազում ինչ ամե-
նայն իրօք · նախ այն իսկ՝ զի հաւատարիմ եղեն

3 պատգամքն Աստուծոյ ։ Իսկ արդ՝ եթէ չէր հաւա-
տացեալ ոմանց՝ միթէ անհաւատութիւն նոցա զԱս-
4 տուծոյ հաւատոյն խափանիցէ՞ . քա՛ւ լիցի ։ Այլ ե-
ղիցի Աստուած ճշմարիտ , և ամենայն մարդ սուտ՝
որպէս և գրեալ է . Որպէս արդար եղիցիս 'ի բանս
5 քո , և յաղթեսցես 'ի դատել քեզ ։ Իսկ արդ՝ ե-
թէ ապիրատութիւն մեր զԱստուծոյ արդարութիւն
յանդիման կացուցանէ՝ զի՞նչ ասեմք . միթէ անի-
6 րաւ ինչ է Աստուած՝ որ ածէ զբարկութիւն . Ըստ
մարդկութեան ասեմ , քա՛ւ լիցի . ապա թէ ոչ՝
7 զիա՞րդ դատի Աստուած զաշխարհ ։ Զի եթէ
ճշմարտութիւնն Աստուծոյ յիմում ստութեանն
առաւելաւ 'ի փառս նորա , զի՞ ևս ես իբրև զմե-
8 ղաւոր դատիմ ։ Եւ կամ թէ՝ որպէս հայհոյիմքն ,
և որպէս ասեն զմէնջ ոմանք ասել , թէ Արասցուք
զչար՝ զի եկեսցէ բարի . որոց դատաստանքն յիրա-
9 ւի են ։ Եւ արդ՝ զի՞ւ իւիք առաւել իցեմք . ապա-
քէն և ո՛չ իւիք . քանզի յառաջագոյն իսկ մեղա-
դիր եղեաք Հրէից և հեթանոսաց՝ ամենեցուն ընդ
10 մեղօք լինելոյ ։ Որպէս և գրեալ է . թէ Ոչ՛ոք է
11 արդար՝ և ո՛չ մի . Եւ ո՛չ գոյ որ իմանայ , և ոչ՛ոք
12 է որ խնդրէ զԱստուած ։ Ամենեքեան խոտորեցան
'ի միասին և անպիտանացան . ոչ՛ոք է որ առնէ
13 զքաղցրութիւն , և ոչ՛ոք է մինչև 'ի մի ։ Գերեզման
բաց է կոկորդ նոցա , լեզուօք իւրեանց նենգաւորք
14 եղեն . Թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոցա ։ Որոց
15 բերանք անիծիւք և դառնութեամբ լի են ։ Երագ
16 են ոտք նոցա հեղուլ զարիւն ։ Բեկումն և թշուա-
17 ռութիւն 'ի ճանապարհս նոցա . Եւ զճանապարհն

18 խաղաղութեան ոչ ծանեան ։ Ո՛չ է երկիւղ Աս-
տուծոյ առաջի աչաց նոցա ։
19 Բայց գիտեմք՝ որ, ինչ միանգամ օրէնքն ասեն՝
այնոցիկ որ ընդ օրինօքն են՝ ասեն . զի ամենայն
բերան խցցի, և դատապարտ լիցի ամենայն աշխարհ
20 Աստուծոյ ։ Զի 'ի գործոց օրինաց ոչ արդարասցի
ամենայն մարմին առաջի նորա . քանզի օրինօքն է
21 գիտութիւն մեղաց ։ Բայց արդ՝ առանց օրինացն
իսկ արդարութիւնն Աստուծոյ յայտնեալ է՝ վկայ-
22 եալ յօրինաց անտի և 'ի մարգարէից ։ Քանզի ար-
դարութիւնն Աստուծոյ 'ի հաւատոց անտի Յիսուսի
Քրիստոսի յամենայն հաւատացեալս . և ոչինչ է
23 խտիր ։ Քանզի ամենեքեան մեղան . և նուազեալ
24 են 'ի փառաց անտի Աստուծոյ ։ Եւ արդարանան
ձրի նորին շնորհօք 'ի ձեռն փրկութեան որ 'ի Քրիս-
25 տոս Յիսուս . Զոր յառաջն եդ Աստուած 'ի քա-
ւութիւն 'ի ձեռն հաւատոց արեամբն նորա, 'ի
հանդէս արդարութեան նորա՝ վասն թողութեան
26 յառաջագոյն մեղացն գործելոց, 'Ի ներելն Աստու-
ծոյ, 'ի հանդէս արդարութեան նորա 'ի ժամանա-
կի յայսմիկ . զի եղիցի նա արդար, և արդարա-
27 ցուցէ զայն՝ որ 'ի հաւատոցն Յիսուսի ։ Իսկ արդ՝
ո՞ւր են պարծանքն . արգելան . յորո՞ց օրինաց, 'ի
գործո՞ց անտի . ոչ . այլ 'ի հաւատոցն օրինաց ։
28 Քանզի համարիմք հաւատովք արդարանալ մարդոյ՝
29 առանց գործոց օրինացն ։ Եթէ Հրէի՞ց միայն իցէ
Աստուած՝ և հեթանոսաց ո՞չ . այո՛ և հեթանոսաց ։
30 Զի եթէ մի է Աստուած՝ որ արդարացուցանէ
զթլփատութիւնն 'ի հաւատոց, ապա և զանթլփա-

31 տութիւնն նովին հաւատովք: Արդ՝ զօրէնսն ինչ
խափանեմք հաւատովքս. քա՛ւ լիցի. այլ զօրէնսն
հաստատեմք:

## ԳԼ. Դ

1 Իսկ արդ՝ զի՞նչ ասիցեմք զգտանելն Աբրահամու
2 նահապետին մերոյ ըստ մարմնոյ: Զի եթէ Աբրա-
համու գործովք էր արդարացեալ՝ ունել ունէր
3 պարծանս՝ այլ ոչ առ Աստուած: Իսկ զի՞նչ ասի-
ցէ գիր. Հաւատաց Աբրահամ յԱստուած՝ և հա-
4 մարեցաւ նմա յարդարութիւն: Բայց այնմ որ
գործիցէն, ոչ համարին վարձքն ըստ շնորհաց՝
5 այլ ըստ պարտեաց: Իսկ այնմ որ ոչն գործիցէ՝
բայց հաւատայցէ յայն, որ արդարացուցանէ զամ-
բարիշտն, համարին հաւատք նորա յարդարութիւն:
6 Որպէս և Դաւիթ ասէ զերանութիւն մարդոյ՝ ո-
րում Աստուած համարի արդարութիւն առանց
7 գործոց: Երանի՜ որոց թողան անօրէնութիւնք, և
8 որոց ծածկեցան մեղք իւրեանց: Երանեալ է այր՝
9 որում ոչ համարեսցի Տէր զմեղս նորա: Արդ՝ ե-
րանութիւնս այս 'ի վերայ թլփատութեա՞ն է, ե-
թէ 'ի վերայ անթլփատութեան. քանզի ասեմք՝
եթէ համարեցան Աբրահամու հաւատքն յարդարու-
10 թիւն: Արդ զիա՞րդ համարեցան. մինչդեռ 'ի թլփա-
տութեա՞ն էր՝ եթէ յանթլփատութեան. ոչ 'ի
11 թլփատութեանն, այլ յանթլփատութեան: Եւ
նշանակ առ զթլփատութիւնն, կնիք արդարութեան
հաւատոցն՝ որ յանթլփատութեանն անտի. զի ե-

ղիցի նա հայր ամենայն հաւատացելոց որ յան-
թլփատութենէ անտի իցեն, առ 'ի համարելոյ և
12 նոցա արդարութիւն. Եւ հայր թլփատութեան՝ որոց
ոչ 'ի թլփատութենէ անտի և եթ, այլ և որոց
երթայցեն ընդ հետս անթլփատութեան հաւատոց
հօր մերոյ Աբրահամու ։
13 Զի ոչ եթէ օրինօքն են աւետիքն Աբրահամու՝
և զաւակի նորա՝ ժառանգ լինել աշխարհի, այլ 'ի
14 հաւատոցն արդարութենէ ։ Զի եթէ որք յօրինացն
են, ժառանգ իցեն. ապա ընդունայն են հաւատքն՝
15 և դատարկ աւետիքն ։ Քանզի օրէնքն զբարկու-
թիւն գործեն. բայց ուր ոչ են օրէնք՝ և ոչ յանցանք
16 ինչ ։ Վասն այնորիկ 'ի հաւատոց անտի, զի ըստ
շնորհացն իցէ. առ 'ի լինելոյ հաստատուն աւետ-
եացն ամենայն զաւակին. ոչ այնմ միայն որ յօ-
րինաց անտի, այլ և այնմ որ 'ի հաւատոցն Աբրա-
17 համու, որ է հայր մեր ամենեցուն. Որպէս և գրեալ
է թէ Հայր ազգաց բազմաց արարից զքեզ առաջի
Աստուծոյ. որում հաւատաց՝ եթէ կենդանի առնէ
18 զմեռեալս, և կոչէ զչգոյն իբրև զգոյ ։ Որ յանյոյս
յուսով հաւատաց, լինել նմա հայր ազգաց բազ-
մաց. որպէս և ասացաւն, թէ Այնպէս եղիցի զա-
19 ւակ քո ։ Եւ նա ոչ երկմտեաց 'ի հաւատոցն. թէ-
պէտ և հայեցաւ 'ի մարմին իւր՝ այնուհետև իբրև
'ի մեռեալ. քանզի զհարիւրամենիւք ուրեմն էր. և
20 'ի մեռելութիւն յարգանդին Սառայի ։ Բայց յաւետ-
եացն Աստուծոյ ոչ երկմտեաց անհաւատութեամբ.
այլ զօրացաւ հաւատովք, ետ փառս Աստուծոյ.
21 Եւ հաստատեցաւ 'ի միտս իւր, եթէ որ խոստա-

22 ցանն՝ կարօղ է առնել: Վասն որոյ համարեցաւ
23 նմա յարդարութիւն : Արդ զի գրեցաւն, ոչ եթէ
24 վասն նորա միայն՝ եթէ համարեցաւ նմա . Այլ և
վասն մեր որոց համարելոց է . որք հաւատամք յայն՝
25 որ յարոյց զՅիսուս զՏէր մեր 'ի մեռելոց . Որ
մատնեցաւ վասն յանցանաց մերոց . և յարեաւ վասն
զմեզ արդարացուցանելոյ :

## ԳԼ. Ե

1 Այսուհետև արդարացեալք 'ի հաւատոց անտի,
խաղաղութիւն կալցուք առ Աստուած 'ի ձեռն
2 Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . Որով և զըն-
ծայութիւն ընկալաք հաւատովք 'ի շնորհս յայսո-
սիկ՝ յորում կամք , և պարծիմք յուսով փառացն
3 Աստուծոյ : Եւ ոչ այսչափ միայն , այլ և պար-
ծիմք ևս 'ի նեղութիւնս մեր . քանզի գիտեմք , ե-
4 թէ նեղութիւնք զհամբերութիւն գործեն , համ-
5 բերութիւն զհանդէս , հանդէս զյոյս . Յոյս ոչ եր-
բէք ամաչեցուցանէ . զի սէրն Աստուծոյ սփռեալ է
'ի սիրտս մեր , 'ի ձեռն Հոգւոյն Սրբոյ՝ որ տուաւ
6 մեզ : Զի մինչդեռ տկարքն էաք՝ Քրիստոս վասն
մեր 'ի ժամանակի 'ի վերայ ամբարշտաց մեռաւ :
7 Զի վասն արդարոյ հազիւ ոք մեռանիցի . այլ
վասն բարւոյ թերևս համարձակիցի ոք մեռանել :
8 *Յայտնեաց Աստուած զսէրն իւր 'ի մեզ , զի մինչ-
9 դեռ մեղաւորքն էաք , Քրիստոս վասն մեր մեռաւ .

* 'Ի Յոյնն , Բայց յայտնեաց

Որչափ եւս առաւել յարդարացեալս մերում այժմիկ
արեամբքն նորա՝ ապրեսցուք նովաւ ՚ի բարկութենէ
10 անտի ։ Զի եթէ մինչ թշնամիքն էաք՝ հաշտեցաք
ընդ Աստուծոյ մահուամբ որդւոյ նորա . որչափ եւս
առաւել ՚ի հաշտեալս մերում՝ ապրեսցուք կենօքն նո-
11 րա ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ եւ պարծիմք եւս
յԱստուած ՚ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի . որով եւ զհաշտութիւնն իսկ ընկալաք ։
12 Զի որպէս ՚ի միոջէ մարդոյ մեղք յաշխարհ
մտին՝ եւ ՚ի մեղաց անտի մահ . եւ այնպէս յամենայն
մարդիկ տարածեցաւ մահ՝ որով ամենեքին մեղան ։
13 Քանզի մինչեւ յօրէնսն մեղք էին յաշխարհի . բայց
14 մեղք ոչ համարէին, որ օրէնք ոչ էին ։ Այլ թա-
գաւորեաց մահ յԱդամայ մինչեւ ցՄովսէս՝ եւ ՚ի
վերայ չյանցուցելոցն, ըստ նմանութեան յանցուա-
15 ծոցն Ադամայ, որ է օրինակ հանդերձելոցն ։ Այլ
ոչ որպէս յանցանքն՝ նոյնպէս եւ շնորհքն . զի ե-
թէ միոյն յանցանօք բազումք մեռան, որչափ եւս
առաւել շնորհքն Աստուծոյ եւ պարգեւքն՝ շնորհօք
միոյն մարդոյ Յիսուսի Քրիստոսի ՚ի բազումս ա-
16 ռաւելան ։ Եւ ոչ որպէս ՚ի միոջէ յանցուցելոյն
պարգեւքն . զի դատաստանն ՚ի միոջէ յանցուածոյ
անտի ՚ի դատապարտութիւն . այլ շնորհքն ՚ի բազ-
17 մաց յանցուածոցն յարդարութիւն ։ Զի եթէ ՚ի
միոյն յանցանաց մահ թագաւորեաց միովն, որչափ
եւս առաւել՝ որք զառաւելութիւն շնորհաց եւ զպար-
գեւաց արդարութեանն առնուցուն, կենօք թագա-
18 ւորեսցեն ՚ի ձեռն միոյն Յիսուսի Քրիստոսի ։ Ա-
պա ուրեմն որպէս միոյն յանցանօք յամենայն մար-

դիկ դատապարտութիւն, նոյնպէս և միոյն արդա-
րութեամբն յամենայն մարդիկ արդարութիւն կե-
19 նաց։ Զի որպէս անհնազանդութեամբ միոյն մար-
դոյ մեղաւորք բազումք եղեն, նոյնպէս և հնազան-
20 դութեամբ միոյն, արդարք բազումք եղիցին։ Բայց
օրէնք ՚ի ներքս անկան, զի յանցանքն բազմասցին.
զի* ուր առաւել եղեն մեղքն, առաւել ևս յաւե-
21 լան շնորհքն։ Զի որպէս թագաւորեցին մեղքն ՚ի
մահու անդ, նոյնպէս և շնորհքն թագաւորեսցեն
արդարութեամբ ՚ի կեանսն յաւիտենից ՚ի ձեռն Յի-
սուսի Քրիստոսի Տեառն մերոյ։

## ԳԼ. Զ.

1 Իսկ արդ զինչ ասիցեմք, յաճախեսցուք ՚ի
2 մեղսն՝ զի շնորհքն բազմասցին։ Քա՛ւ լիցի. որք
մեռաք մեղացն, զիա՞րդ տակաւին ՚ի նմին կեցցեմք։
3 Եթէ ո՞չ գիտէք՝ զի որ միանգամ մկրտեցաք ՚ի
Քրիստոս Յիսուս՝ ՚ի մահ անդր նորա մկրտեցաք։
4 Թաղեցաք ընդ նմին մկրտութեամբն ՚ի մահ, զի
որպէս յարեաւ Քրիստոս ՚ի մեռելոց փառօքն Հօր,
5 նոյնպէս և մեք ՚ի նորոգումն կենաց շրջեսցուք։ Զի
եթէ տնկակիցք եղեաք նմանութեան մահու նորա.
6 այլ և յարութեան նորա լինիցիմք։ Զայս գիտաս-
ջիք՝ զի հին մարդն մեր խաչակից եղև նորա, զի
խափանեսցի մարմին մեղացն, մի ևս ծառայել մեզ
7 մեղացն։ Զի որ մեռանին՝ արդարացեալ է ՚ի մե-

* ՚Ի Յոյնն, բայց

8 ղաց անտի։ Իսկ եթէ մեռաք ընդ Քրիստոսի, հա-
9 ւատամք՝ թէ և կեցցուք ընդ նմա։ Գիտեմք եթէ
Քրիստոս յարուցեալ է 'ի մեռելոց. այսուհետև
10 ոչ մեռանի, և մահ նմա ոչ ևս տիրէ։ Զի որ
մեռաւն՝ մեղացն մեռաւ միանգամ, և որ կենդանին
11 է՝ կենդանի է Աստուծոյ։ Նոյնպէս և դուք համա-
րեսջիք զանձինս մեռեալս մեղացն, և կենդանիս
Աստուծոյ 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր։
12 Մի՛ այսուհետև թագաւորեսցեն մեղք 'ի մահ-
կանացու մարմինս ձեր՝ հնազանդել ցանկութեանց
13 նորա։ Եւ մի՛ պատրաստէք զանդամս ձեր զէն անի-
րաւութեան մեղացն. այլ պատրաստեցէք զանձինս
ձեր Աստուծոյ՝ որպէս 'ի մեռելոց 'ի կենդանիս. և
14 զանդամս ձեր զէն արդարութեանն Աստուծոյ։ Զի
մեղք ձեզ ոչ տիրեսցեն. քանզի ոչ էք ընդ օրի-
15 նօք՝ այլ ընդ շնորհօք։ Իսկ արդ զինչ. մեղիցո՞ւք՝
զի չե՛մք ընդ օրինօք այլ ընդ շնորհօք. քա՛ւ լիցի։
16 Ո՞չ գիտէք՝ թէ որում պատրաստէք զանձինս ձեր
ծառայս 'ի հնազանդութիւն, ծառայ էք՝ որում
հնազանդիքն, եթէ մեղաց՝ 'ի մահ, և եթէ 'ի հնա-
17 զանդութիւն արդարութեան՝ 'ի կեանս։ Այլ շը-
նորհք Աստուծոյ. զի էիք ծառայք մեղաց՝ հնազան-
դեցայք 'ի սրտէ որում աւանդեցայք յառակ վար-
18 դապետութեան։ Արդ՝ ազատեցեալք 'ի մեղաց՝ ծա-
19 ռայեցէք արդարութեան։ Մարդկօրէն ասեմ վասն
տկարութեան մարմնոյ ձերոյ. զի որպէս պատրաս-
տեցիք զանդամս ձեր ծառայս պղծութեան և անօ-
րէնութեան յանօրէնութիւն. նոյնպէս և այժմ
պատրաստեցէք զանդամս ձեր ծառայս արդարու-

20 թեան 'ի սրբութիւն : Զի մինչ ծառայքն էիք
21 մեղաց՝ ազատացեալք էիք յարդարութենէն : Իսկ
արդ՝ զի՞նչ պտուղ ունէիք յայնժամ, որովք այժմդ
զամօթի հարեալ էք · զի վախճան նոցա մահ է :
22 Բայց արդ ազատացեալք 'ի մեղացն՝ և ծառայեալք
Աստուծոյ՝ ունիք զպտուղ ձեր 'ի սրբութիւն, և
23 վախճան նորա կեանք յաւիտենից : Զի թոշակն
մեղաց մահ է · այլ շնորհքն Աստուծոյ կեանք յա-
ւիտենից 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր :

## ԳԼ. Է:

1 Եթէ ո՞չ գիտէք եղբարք, զի ընդ գիտունս օ-
րինաց խօսիմ · զի օրէնք տիրեն մարդոյ՝ որչափ
2 ժամանակս կենդանի իցէ : Քանզի կին առնանին
'ի կենդանւոջ այր իւր կապեալ կայ օրինօք · իսկ
եթէ մեռցի այրն, արձակեալ է յօրինաց առն :
3 Ապա ուրեմն մինչ կենդանի է այրն, շուն կոչի՝ ե-
թէ լինիցի առն այլում · և եթէ մեռցի այրն՝ ազատ
է յօրինացն, չհամարեալ շուն՝ եթէ լինիցի առն
4 այլում : Նոյնպէս և դուք եղբարք՝ մեռայք օրի-
նացն մարմնովն Քրիստոսի, լինել այլում որ 'ի
մեռելոցն յարուցեալ է, զի պտղաբեր լիցուք Աս-
5 տուծոյ : Քանզի մինչ էաքն մարմնով, կիրք մե-
ղաց՝ որ օրինօքն էին՝ զօրանային յանդամս մեր,
6 առ 'ի պտղաբեր առնելոյ զմեզ մահու : Բայց այժմ
դատարկեցաք յօրինաց անտի · քանզի մեռաք այն-
միկ՝ որով ըմբռնեալն էաք, առ 'ի ծառայել մեզ
նորոգութեամբ Հոգւոյն՝ և ոչ հնութեամբ գրոյն :

7 Իսկ արդ զի՞նչ ասեմք. օրէնքն մե՞ղք իցեն. քաւ
լիցի. այլ զմեղս ո՛չ գիտէի, եթէ ոչ օրինօք.
և զցանկութիւն ո՛չ ճանաչէի, եթէ ոչ օրինացն էր
8 ասացեալ՝ Մի՛ ցանկանայցես: * Պատճառս առին
մեղքն պատուիրանաւն, և գործեցին յիս զամենայն
ցանկութիւն. զի առանց օրինացն մեղքն մեռեալ
9 էին: Եւ ես առանց օրինացն երբեմն էի կենդանի.
այլ իբրև եհաս յիս պատուիրանն, մեղքն կենդա-
10 նացան. Եւ ես մեռայ. և գտաւ ինձ պատուիրանն՝
11 որ 'ի կեանս էր, նոյն 'ի մահ: Զի մեղացն պատ-
ճառս առեալ պատուիրանաւն խաբեցին զիս և նո-
վին սպանին:

12 Այսուհետև օրէնք սուրբ են՝ և պատուիրանն
13 սուրբ և արդար և բարերար: Իսկ արդ՝ ինձ բարին
մա՞հ եղև. քաւ լիցի. այլ մեղքն. զի երևեսցին
մեղքն բարեաւն գործել ինձ զմահ. զի եղիցին ըստ
առաւելութեան մեղքն մեղաւոր 'ի ձեռն պատուի-
14 րանին: Գիտեմք՝ զի օրէնքն հոգևոր են. այլ ես
15 մարմնաւոր եմ, ընդ մեղօք վաճառեալ: Զի զոր
գործեմն ո՛չ գիտեմ, ո՛չ եթէ զոր կամիմն զայն առ-
16 նեմ, այլ զոր ատեամն՝ զայն գործեմ: Ապա թէ
զոր ո՛չն կամիմ՝ զայն առնեմ, վկայեմ օրինացն՝
17 եթէ բարւոք են: Այլ արդ՝ ո՛չ եթէ ես գործեմ
18 զայն, այլ բնակեալ յիս մեղքն: Գիտեմ զի ո՛չ
բնակեալ է յիս, այսինքն է 'ի մարմնի իմում, բարի
ինչ. զի կամքն առաջի կան ինձ. և առնել զբարին
19 ո՛չ: Զի ո՛չ եթէ զոր կամիմ զբարին առնեմ,

* Ի Յոյնն, Բայց պատճառս

20 այլ զոր ո՛չն կամիմ զչարն, զայն գործեմ։ Ապա
եթէ զոր ոչն կամիմ՝ զայն առնեմ, ո՛չ ևս ես առ-
21 նեմ զայն՝ այլ բնակեալ յիս մեղքն ։ *Եւ արդ՝
գտանեմ զօրէնս այնուրիկ՝ որ կամիցին առնել յիս
22 զբարին. և ինձ՝՝ չարն առաջի կայ ։ Հաճեալ եմ
23 ընդ օրէնսն Աստուծոյ ըստ ներքին մարդոյն. Բայց
տեսանեմ այլ օրէնս յանդամս իմ, զինեալ հա-
կառակ օրինաց մտաց իմոց, և գերեալ զիս օրի-
24 նօքն մեղաց՝ որ են յանդամս իմ։ Այր մի տառապ-
եալ եմ ես՝ ո՞վ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աս-
25 տի մահու ։ Այլ շնորհքն Աստուծոյ 'ի ձեռն Յի-
սուսի Քրիստոսի Տեառն մերոյ ։

Ապա ուրեմն՝ ես ինքնին մտօք իմովք ծառայ եմ
օրինացն Աստուծոյ. և մարմնով օրինացն մեղաց ։

## ԳԼ. Ը

1 Եթէ այսպէս իցէ՝ ոչինչ դատապարտութիւն է
2 այնոցիկ որ 'ի Քրիստոս Յիսուս ։ Զի օրէնք հոգ-
ւոյն կենաց 'ի Քրիստոս Յիսուս ազատեցին զիս
3 յօրինաց մեղացն և մահու ։ Զի որ անհնարին էր
օրինացն՝ որով տկարանայր մարմնով. Աստուած
զՈրդին իւր առաքեաց 'ի նմանութիւն մարմնոյ մե-
ղաց, և վասն մեղաց, և դատապարտեաց զմեղս 'ի
4 մարմնի անդ. Զի արդարութիւն օրինացն կատա-
րեսցի 'ի մեզ, որք ո՛չ ըստ մարմնոյ գնայցեմք՝ այլ

* 'Ի Յոյնն, Եւ արդ գտանեմ զօրէնս ինչ՝ զի յորժամ կամիմ առնել զբարին, ինձ

5 ըստ հոգւոյն ։ Զի որք ըստ մարմնոյն են՝ զմարմ-
6 նոյն խորհին , և որք ըստ հոգւոյն՝ զհոգւոյն ։ Զի
խորհուրդ մարմնոյ մահ է . և խորհուրդ հոգւոյն՝
7 կեանք և խաղաղութիւն ։ Քանզի խորհուրդ մարմ-
նոյ թշնամութիւն է յԱստուած՝ զի օրինացն Աս-
8 տուծոյ ոչ հնազանդի . նաև կարէ իսկ ոչ ։ Զի որ
մարմնովն են , Աստուծոյ հաճոյ լինել ոչ կարեն ։
9 Բայց դուք ոչ էք մարմնով այլ հոգւով , եթէ
իցէ Հոգին Աստուծոյ 'ի ձեզ բնակեալ . ապա եթէ
10 որ զՀոգի Քրիստոսի ոչ ունի , նա չէ նորա ։ Իսկ
եթէ Քրիստոս 'ի ձեզ է՝ ապա մարմինն մեռեալ է
վասն մեղաց . և Հոգին կենդանի է վասն արդարու-
11 թեան ։ Եթէ Հոգի այնորիկ՝ որ յարոյց զՅիսուս
'ի մեռելոց , բնակեալ է 'ի ձեզ . ապա և որ յա-
րոյց զՅիսուս Քրիստոս 'ի մեռելոց՝ կենդանացուս-
ցէ զմահկանացու մարմինս ձեր բնակեալ Հոգւով
իւրով 'ի ձեզ ։
12 Ապա հաւասիկ եղբարք՝ պարտապան եմք ոչ մարմ-
13 նոյ՝ ըստ մարմնոյ կեալ ։ Զի թէ ըստ մարմնոյ կե-
ցէք՝ մեռանելոց էք . իսկ եթէ հոգւով զգործս
14 մարմնոյ սպանանիցէք՝ կեցջիք ։ Զի որ Հոգւովն
15 Աստուծոյ վարին , նոքա են որդիք Աստուծոյ ։ Զի
ոչ առէք զհոգին ծառայութեան միւսանգամ յեր-
կիւղ , այլ առէք զհոգին որդեգրութեան . որով ա-
16 ղաղակեմք Աբբայ Հայր ։ Նոյն ինքն Հոգին վկայէ
17 հոգւոյս մերում , եթէ եմք որդիք Աստուծոյ ։ Եւ
եթէ որդիք , ապա և ժառանգք . ժառանգք Աստու-
ծոյ՝ և ժառանգակիցք Քրիստոսի . եթէ չարչա-
րանացն կցորդ լինիմք , և փառացն հաղորդ լինելոց

18 եմք ։ Ինձ այսպէս թուի՝ եթէ ոչ են արժանի
չարչարանք ժամանակիս հանդերձելոց փառացն՝ որ
19 յայտնելոց են ՚ի մեզ ։ Զի ակնկալութիւն արարա-
20 ծոց՝ յայտնութեան Որդւոյն* Աստուծոյ սպասէ ։ Զի
ընդունայնութեան արարածք հնազանդեցան , ոչ
իւրեանց կամաւ՝ այլ վասն այնորիկ որ հնազանդե-
21 ցոյցն յուսով ․ Զի և ինքեանք իսկ արարածքն ա-
զատեսցին ՚ի ծառայութենէ ապականութեան՝ յա-
22 զատութիւն փառաց Որդւոյն* Աստուծոյ ։ Քանզի
գիտեմք , եթէ ամենայն արարածք հեծեն և երկնեն
23 մինչև ցայժմ ։ Եւ ոչ այսչափ միայն ․ այլ և մեք իսկ՝
որ զպտուղ Հոգւոյն ունիմք , անձամբ յանձինս մեր
հեծեմք՝ որդեգրութեան ակն կալեալ փրկութեան
24 մարմնոյ մերոյ ։ Զի յուսով ապրեցաք ․ այլ յոյս
տեսանելի՝ չէ՛ յոյս ․ զի զոր տեսանէ ոք՝ զի՞ եւ յու-
25 սայ ։ Ապա թէ զոր ոչն տեսանեմք յուսամք , համբե-
26 րութեամբ ակն ունիմք ։ Նոյնպէս և Հոգին ՚ի թի-
կունս հասանէ տկարութեան մերում ․ զի զոր կամքն
յաղօթս՝ որպէս արժան իցէ ոչ գիտեմք ․ այլ ինք-
նին Հոգին բարեխօս լինի ՚ի հեծութիւնս անմռունչս ։
27 Բայց որ քննէն զսիրտս՝ գիտէ զինչ խորհուրդ է
Հոգւոյն ․ զի ըստ Աստուծոյ բարեխօսէ վասն սրբոց ։
28 Բայց գիտեմք՝ եթէ որոց սիրեն զԱստուած՝ յա-
մենայնի գործակից լինի ՚ի բարիս՝ որք հրաւիրա-
29 նաւն կոչեցան ։ Զի զորս յառաջն ճանաչէր , յա-
ռաջագոյն և հրաւիրեաց կերպարանակից լինել
պատկերի Որդւոյն իւրոյ ․ զի եղիցի նա անդրանիկ ՚ի

* ՚Ի Յոյնն, որդւոցն

30 մէջ եղբարց բազմաց։ Եւ զորս յառաջագոյն հրա-
ւիրեաց՝ զնոսին և կոչեաց. և զորս կոչեացն՝ զնոսին
և արդարացոյց. և զորս արդարացոյցն՝ զնոսին և
31 փառաւորս արար։ Իսկ արդ զի՞նչ ասեմք առ այս.
եթէ Աստուած ՚ի մեր կոյս է, ո՞վ իցէ մեր հակա-
32 ռակ։ Որ յիւր Որդին ոչ խնայեաց՝ այլ վասն մեր
ամենեցուն մատնեաց զնա. զիա՞րդ ոչ նովաւ հան-
33 դերձ զամենայն շնորհիցէ մեզ։ Ո՞վ իցէ որ մեղա-
դիր լինիցի ընտրելոց Աստուծոյ. Աստուած է որ
34 արդարացուցանէ, Իսկ արդ ո՞վ է որ դատապարտ
առնիցէ։ Քրիստոս Յիսուս որ մեռաւն մանաւանդ
թէ յարուցեալ իսկ է. և է ընդ աջմէ Աստուծոյ,
35 որ և բարեխօս իսկ է վասն մեր։ Արդ ո՞վ մեկնեսցէ
զմեզ ՚ի սիրոյն Քրիստոսի, նեղութի՞ւն թէ անձ-
կութի՞ւն, թէ հալածա՞նք, թէ սո՞վ, թէ մերկու-
36 թի՞ւն, թէ վի՞շտք, թէ սո՞ւր. Որպէս և գրեալ է.
Վասն քո մեռանիմք զօրհանապազ, համարեցաք
37 իբրև զոչխար ՚ի սպանդ։ Այլ յայսմ ամենայնի,
առաւել յաղթեմք նովաւ՝ որ սիրեացն զմեզ։
38 Քանզի հաստատեալ եմ, եթէ ոչ մահ և ոչ
կեանք և ոչ հրեշտակ և ոչ իշխանութիւնք, և ոչ
որ կանն և ոչ հանդերձեալքն և ոչ զօրութիւնք,
39 Եւ ոչ բարձրութիւն և ոչ խորութիւն, և ոչ
այլ ինչ արարած՝ կարէ մեկնել զմեզ ՚ի սիրոյ ան-
տի Աստուծոյ, որ ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի Տէր
մեր։

## ԳԼ. Թ.

1 Ճշմարտութեամբ ասեմ ՚ի Քրիստոս՝ և ոչ ստեմ,
2 վկայեն ինձ միտք իմ ՚ի Հոգի Սուրբ. Զի տրտմու-
թիւն է ինձ յոյժ՝ և անպակաս ցաւք սրտի իմոյ։
3 Զի ուխտիւք խնդրէի ես իսկ ինքնին նզովս լինել ՚ի
Քրիստոսէ, վասն եղբարց իմոց և ազգականաց ըստ
4 մարմնոյ, Որ են Իսրայէլացիք. որոց որդեգրու-
թիւնն և փառքն և կտակարանքն և օրէնսդրու-
5 թիւնն և պաշտօնն և աւետիքն, Որոց հարքն, յո-
րոց և Քրիստոս ըստ մարմնոյն, որ է ՚ի վերայ ա-
մենեցուն Աստուած օրհնեալ յաւիտեանս. ամէն։
6 Ոչ ինչ է մարթ՝ եթէ անկած լինիցի բանն Աստու-
ծոյ. զի ոչ ամենեքեան՝ որ յԻսրայելէն են, նոքա
7 Իսրայէլեանք իցեն. Եւ ոչ որ զաւակն Աբրահա-
մու են՝ ամենեքեան որդիք իցեն. այլ Իսահակաւ
8 կոչեսցի քեզ զաւակ։ Այսինքն ոչ եթէ որ որդիք
մարմնոյն են, են որդիք Աստուծոյ, այլ որդիք ա-
9 ւետեացն համարին ՚ի զաւակ։ Քանզի աւետեաց
իսկ է բանս այս, եթէ ՚ի ժամանակի յայսմիկ ե-
10 կից՝ և եղիցի որդի Սառայի։ Եւ ոչ այնչափ մի-
այն՝ այլ և ՚ի Հռեբեկայ ՚ի միոջէ անկողնոյ Սա-
11 հակայ հօր մերոյ։ Զի մինչչև ծնեալ էին, և մինչ-
չև բարի ինչ կամ չար գործեալ էին. զի ըստ
ընտրութեանն առաջադրութիւնն Աստուծոյ հաս-
12 տատեսցի. Ո՛չ ՚ի գործոց՝ այլ յայնմանէ որ կոչ-
13 եացն՝ ասացաւ նմա. Թէ երէցն կրտսերոյն ծա-
ռայեսցէ, որպէս և գրեալ է. Թէ զՅակոբ սիրե-
14 ցի, և զԵսաւ ատեցի։ Իսկ արդ՝ զի՞նչ ասեմք.

մի՞թէ անիրաւութիւն իցէ Աստուծոյ · քա՛ւ լիցի :
15 Զի Մովսէսի ասէ . Ողորմեցայց՝ որում ողորմե-
16 ցայցն , և գթացայց՝ յորս գթացայցն : Ապա ոչ ըստ
այնմ ինչ է՝ որ կամիցին , և ոչ ըստ այնմ՝ որ
ընթանայցէ · այլ ըստ Աստուծոյ որ ողորմին :
17 Քանզի ասէ գիր ցփարաւոն . Եթէ վասն այնո-
րիկ զարթուցի զքեզ , զի ՚ի քեզ ցուցից զզօրու-
թիւն իմ , և պատմեսցի անուն իմ ընդ ամենայն
18 երկիր : Ապա ուրեմն՝ ում կամի ողորմի , և ում
19 կամի խստանայ : Իսկ արդ ասիցես , թէ մեղ ևս
զի՞ գնէ՝ զի կամաց նորա ո՞չ ոք կայ հակառակ :
20 Իսկ արդ դու ո՞վ ես մարդ՝ որ պատասխանի տաս
Աստուծոյ . մի՞թէ ասիցէ՞ ստեղծուածն ցՍտեղծիչն՝
21 թէ Ընդէ՞ր այդպէս արարեր զիս : Եթէ ո՞չ ունիցի
իշխանութիւն բրուտն կաւոյն , ՚ի նմին զանգուա-
ծոյ առնել անօթ՝ զոմն ՚ի պատիւ և զոմն յանար-
22 գանս : Ապա եթէ կամէր Աստուած ցուցանել
զբարկութիւն , և յայտնի առնել զզօրութիւն իւր ,
որ համբերերն բազում երկայնմտութեամբ անօթոցն
23 բարկութեան՝ պատրաստելոցն ՚ի կորուստ : Զի
յայտնի արասցէ զմեծութիւն փառաց իւրոց ՚ի վե-
րայ անօթոցն ողորմութեան , զոր պատրաստեաց ՚ի
24 փառս : Զորս և կոչեաց զմեզ , ոչ միայն ՚ի Հրէից՝
25 այլ և ՚ի հեթանոսաց : Որպէս և Ովսէէ ասէ .
Կոչեցից՝ զոր ոչ ժողովուրդ իմ , ժողովուրդ ինձ .
և զչսիրեցեալն՝ սիրեցեալ , և զչողորմեալն՝ ողոր-
26 մեալ : Եւ եղիցի ՚ի տեղւոջ յորում ասացաւ նո-
ցա՝ թէ ոչ ժողովուրդ իմ դուք , անդ կոչեսցին
27 նոքա որդիք Աստուծոյ կենդանւոյ : Եսայի աղա-

ղակէ վասն Իսրայէլի. Եթէ իցէ թիւ որդւոցն
Իսրայէլի իբրեւ զաւազ ծովու՝ ապա ինչ մնացորդք
28 մնասցեն: Զի բան մի հակիրճ եւ համառօտ ար-
դարութեամբ. զբանն հակիրճ արասցէ Տէր ՚ի վե-
29 րայ երկրի: Եւ որպէս ասէ Եսայի. Թէ ոչ Տէրն
զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրեւ զՍո-
դոմ լինէաք՝ եւ Գոմորայ նմանէաք:
30 Իսկ արդ զի՞նչ ասիցեմք. զի հեթանոսք որ ոչ
երթային զհետ արդարութեան՝ հասին արդարու-
թեան, այնմ արդարութեան՝ որ ՚ի հաւատոց ան-
31 տի: Այլ Իսրայէլ երթայր զհետ օրինացն արդա-
րութեան՝ եւ յօրէնս արդարութեան ոչ ժամա-
32 նեաց: Ընդէ՞ր. զի ոչ ՚ի հաւատոց՝ այլ իբրեւ ՚ի
գործոց օրինաց. քանզի գթեցին նոքա առ վիմին
33 գայթակղութեան. Որպէս եւ գրեալ է. ահաւա-
սիկ դնեմ ՚ի Սիոն քար գայթակղութեան եւ վէմ
գլորման. եւ ամենայն որ հաւատասցէ ՚ի նա՝ մի
ամաչեսցէ:

## ԳԼ. Ժ

1 Եղբարք՝ իմ կամք սրտի եւ աղօթք առ Աստ-
2 ուած, վասն նոցա են ՚ի փրկութիւն: Քանզի վկա-
յեմ նոցա՝ թէ զնախանձ Աստուծոյ ունին, այլ
3 ոչ գիտութեամբ: Զի տգէտ են Աստուծոյ արդա-
րութեան, եւ զիւրեանցն խնդրեն կացուցանել. զի
արդարութեան Աստուծոյ ոչ հնազանդեցան:
4 Քանզի կատարած օրինացն Քրիստոս է՝ յարդա-
րութիւն ամենայն հաւատացելոց:

5 Մովսէս գրէ զարդարութիւնն, որ յօրինաց ան-
տի է. Թէ արասցէ զայն մարդ՝ կեցցէ նովին:
6 Իսկ զհաւատոցն արդարութիւնն այսպէս ասէ. Մի՛
ասիցես 'ի սրտի քում, ո՞վ ելանիցէ յերկինս, այս-
7 ինքն է՝ զՔրիստոս իջուցանել. Կամ ո՞վ իջանիցէ
յանդունդս, այսինքն է զՔրիստոս հանել 'ի մե-
8 ռելոց: Այլ զի՞նչ ասէ գիր. Մե՛րձ է բանն 'ի բե-
րան քո՝ և 'ի սրտի քում է. այսինքն է բանն հա-
9 ւատոց զոր քարոզեմք: Զի եթէ խոստովանես-
ցես բերանով քով Տէր զՅիսուս, և հաւատաս-
ցես 'ի սրտի քում, թէ Աստուած յարոյց զնա 'ի
10 մեռելոց, կեցցես: Զի սրտիւ հաւատայք յարդա-
րութիւն, և բերանով խոստովանիք 'ի փրկութիւն:
11 Քանզի ասէ գիր. Ամենայն որ հաւատասցէ 'ի նա,
12 մի՛ ամաչեսցէ: Զի ո՛չ գոյ խտիր Հրէի և Հե-
թանոսի. քանզի նոյն Տէր է ամենեցուն, բաւա-
13 կան յամենեսին ոյք կարդան առ նա: Զի ամե-
14 նայն որ կարդասցէ զանուն Տեառն՝ կեցցէ: Իսկ
զիա՞րդ կարդասցեն՝ յոր ո՛չն հաւատացին. կամ
զիա՞րդ հաւատասցեն որում ո՛չ լուան. կամ զի-
15 ա՞րդ լուիցեն առանց ուրուք քարոզելոյ. Կամ՝ զի-
ա՞րդ քարոզեսցեն, եթէ ո՛չ առաքեսցին. որպէս
և գրեալ է. Իբրև զի գեղեցիկ են ոտք աւետա-
րանչացն խաղաղութեան և աւետարանչացն բա-
16 րութեան: Այլ ո՛չ ամենեքեան հնազանդ եղեն ա-
ւետարանին. Եսայի աղաղակէ. Տէր ո՞ հաւատաց
17 լրոյ մերում: Ապա ուրեմն հաւատք 'ի լսելոյ են,
և լուր 'ի բանէն Քրիստոսի:
18 Այլ ասեմ, միթէ ո՛չ լուան. մանաւանդ զի ընդ

ամենայն երկիր ել բարբառ նոցա, և ընդ ծագս
19 տիեզերաց խօսք նոցա։ Այլ ասեմ, միթէ Իսրայէլ
ոչ լուաւ. նախ Մովսէս ասէ, Ես նախանձեցուցից
զձեզ ոչինչ ժողովրդեամբ, և ազգաւ անմտաւ
20 զկծեցուցից զձեզ։ Բայց Եսայի համարձակի իսկ՝ և
ասէ. Գտայ այնոցիկ՝ որ զիս ոչ խնդրէին. յայտ–
21 նի եղէ այնոցիկ՝ որ զինէն ոչ հարցանէին։ Այլ
առ Իսրայէլ ասէ. Զօր ամենայն ձգեցի զձեռս իմ
առ ժողովուրդ անհաւան և հակառակող։

## ԳԼ. ԺԱ.

1 Իսկ արդ ասեմ, միթէ մերժեաց Աստուած զժո–
ղովուրդ իւր. քա՛ւ լիցի. քանզի և ես Իսրայէլա–
ցի եմ, ՚ի զաւակէ Աբրահամու յազգէ Բենիա–
2 մենի։ Ո՛չ մերժեաց Աստուած զժողովուրդ իւր,
զոր յառաջն ծանեաւ. թէ ոչ գիտէք յԵղիա զինչ
ասէ գիր. որպէս ամբաստան լինի Աստուծոյ զԻսա–
3 րայէլէ։ Տէ՛ր՝ զմարգարէս քո կոտորեցին, և զսե–
ղանս քո կործանեցին. ես մնացի միայն և խնդրեն
4 զանձն իմ։ Այլ զինչ ասէ նմա պատասխանին.
Թողի ինձ ասէ՝ եօթն հազար այր, որ ոչ կրկնեցին
5 ծունր Բահաղու։ Նոյնպէս և յայսմ ժամանակի
6 մնացորդք՝ ըստ ընտրութեան շնորհացն եղեն։ Իսկ
եթէ շնորհօք, ոչ ևս ՚ի գործոց. ապա թէ ոչ՝
7 շնորհքն ոչ ևս շնորհք լինին։ Իսկ արդ զոր խնդ–
րէրն Իսրայէլ, այնմ ոչ եհաս. բայց ընտրու–
8 թեանն* եհաս, և այլքն կուրացան. Որպէս

* ՚Ի Յոյնն, ընտրութիւնն

գրեալ է. Ետ նոցա Աստուած հոգի թմրութեան.
աչս որովք ոչ տեսանիցեն, և ականջս՝ որովք ոչ
9 լսիցեն, մինչև ցայսօր ժամանակի։ Եւ Դաւիթ
ասէ. Եղիցին սեղանք նոցա յորոգայթ և ՚ի կորուստ
և ՚ի գայթակղութիւն և ՚ի հատուցումն նոցին։
10 Խաւարեսցին աչք նոցա զի մի տեսցեն. և զթի-
11 կունս նոցա հանապազ կորացո։ Իսկ արդ ասեմ,
միթէ վասն այնորիկ յանցեան՝ զի կործանեսցին.
քաւ լիցի. այլ նոցա յանցանօքն փրկութիւն հե-
12 թանոսաց. զի նախանձ արկցէ նոցա։ Իսկ եթէ
յանցանքն նոցա մեծութիւն աշխարհի, և պար-
տութիւնն նոցա մեծութիւն հեթանոսաց, որչափ
ևս առաւել լրութիւն նոցա։
13 Այլ ձեզ ասեմ հեթանոսացդ՝ ցորչափ ժամա-
նակս իցեմ հեթանոսաց առաքեալ, զպաշտօնն իմ
14 փառաւոր առնեմ, „Օ՛ն թերևս նախանձ* արկից
նոցա մարմնով իմով" և ապրեցուցից զոմանս ՚ի
15 նոցանէ։ Զի եթէ մերժումն նոցա հաշտութիւն
աշխարհի է. իսկ ընդունելութիւնն զի՞նչ իցէ,
16 եթէ ոչ կենդանութիւն ՚ի մեռելոց։ Իսկ եթէ
ակիզբն սուրբ է՝ և զանգուածն. և եթէ արմատն՝
17 սուրբ և ոստքն։ Եթէ յոստոց անտի ոմանք փշրե-
ցան, և դու որ ձիթենիդ վայրենին էիր՝ պատուաստե-
ցար ՚ի նոսա, և բաժանորդ եղեր յարմատոյն
18 և պարարտութեան ձիթենւոյն, Մի՛ պարծիր առ
ոստովքն. ապա եթէ պարծիցիս՝ ոչ եթէ դու զար-
19 մատն ՚ի վեր ունիս, այլ արմատն զքեզ։ Իսկ

* ՚Ի Օրին., արկից մարմնոյ իմում

արդ ասիցես, ոստքն փշրեցան, զի ես պատուաս-
20 տեցայց: Բարւոք է՝ անհաւատութեամբն փշրեցան,
և դու հաւատովք հաստատեցար. մի՛ հպարտա-
21 նար՝ այլ երկիր: Զի թէ Աստուած ՚ի բուն ոստոն
ո՛չ խնայեաց, գուցէ երբէք և ՚ի քեզ ո՛չ խնայի-
22 ցէ: Արդ տե՛ս զքաղցրութիւն և զսաստկութիւնն
Աստուծոյ. ՚ի վերայ կործանելոցն սաստկութիւն,
և ՚ի վերայ քո քաղցրութիւնն Աստուծոյ, եթէ
կացցես ՚ի նմին քաղցրութեան. ապա թէ ո՛չ՝ և
23 դու կոտորեսցիս: Եւ նոքա եթէ ո՛չ ՚ի նմին ան-
հաւատութեան կայցեն, պատուաստեսցին. զի կա-
րող է Աստուած միւսանգամ պատուաստել զնոսա:
24 Զի եթէ դու ՚ի բուն ՚ի վայրենի ձիթենւոյ անտի
հատար՝ և յանբուն ՚ի բարի ձիթենւոջն պատուաս-
տեցար, ո՛րչափ ևս առաւել նոքա՝ որ բունքն իսկ
են՝ պատուաստեսցին յիւրեանց ձիթենւոջն:
25 Ո՛չ կամիմ եղբարք եթէ տգէտք իցէք խորհրդոյս
այսմիկ, զի մի՛ յանձինս ձեր իցէք իմաստունք. զի
կուրութիւն փոքր ՚ի շատէ եղև Իսրայէլի. մինչև
26 լրումն հեթանոսաց մտցէ, Եւ ապա ամենայն Իս-
րայէլ կեցցէ. որպէս և գրեալ է. Եկեսցէ ՚ի Սի-
ոնէ փրկիչ՝ և դարձուսցէ զամբարշտութիւնս ՚ի
27 Յակոբայ, Եւ այս նոցա որ յինէն ուխտ, յոր-
28 ժամ բարձից զմեղս նոցա: Ըստ աւետարանիս
թշնամիք են վասն ձեր, բայց ընտրութեանն՝ սիրե-
29 լիք վասն հարցն: Վասնզի անզեղջ են շնորհք և
30 կոչումն Աստուծոյ: Զի որպէս և դուք երբեմն ա-
պստամբք էիք յԱստուծոյ՝ և արդ ողորմութիւն
31 գտէք առ նոցա ապստամբութեամբն, Նոյնպէս և

նոքա այժմ ապստամբ *եղեն առ ձերով ողորմու-
32 Թեամբդ. զի և՛՛ նոքա ողորմութիւն գտցեն։ Վասնզի
արգել Աստուած զամենեսին յանհաւանութիւն,
33 զի ամենեցուն ողորմեսցի։ Ո՜վ խորք մեծութիւն
և իմաստութեան և գիտութեան Աստուծոյ. ո՜ր-
պէս զի առանց քննելոյ են դատաստանք նորա, և
34 առանց զննելոյ են ճանապարհք նորա։ Զի ո՞վ
գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞վ խորհրդակից ե-
35 ղև նմա. Կամ ո՞վ ետ նմա փոխ, և առնուցու
36 զփոխարէն 'ի նմանէ։ Զի 'ի նմանէ՝ և նովաւ՝ և
'ի նոյն ամենայն. նմա փառք յաւիտեանս. ամէն։

# ԳԼ. ԺԲ

1 Աղաչեմ զձեզ եղբարք՝ գթութեամբքն Աստու-
ծոյ՝ պատրաստել զմարմինս ձեր պատարագ կեն-
դանի՝ սուրբ՝ հաճոյ Աստուծոյ, զխօսուն պաշտօնդ
2 ձեր. Եւ մի՛ կերպարանիք կերպարանօք աշխար-
հիս այսորիկ. այլ նորոգեցարո՛ւք 'ի նորոգութիւն
մտաց ձերոց, առ 'ի քննել ձեզ զլաւն, և եթէ
զինչ են կամք Աստուծոյ՝ բարին և հաճոյն և կա-
3 տարեալն։ Զայս ասեմ շնորհօքն Աստուծոյ՝ որ
տուեալ են ինձ, ամենայնի որ է 'ի ձեզ, մի՛ առա-
ւել ինչ խորհել քան զարժանն խորհելոյ. այլ
խորհել 'ի զգաստանալ իւրաքանչիւր՝ որպէս և բա-
4 ժանեաց Աստուած չափ հաւատոց։ Որպէս 'ի մի-
ում մարմնի անդամս բազումս ունիմք. և անդամքն

* Ի Յոյնն, եղեն, զի առ ձերով ողորմութեամբդ և

5 ամենայն ո՛չ զնոյն գործ ունին· Նոյնպէս և բա-
զումքս մի մարմին եմք ՚ի Քրիստոս· այլ իւրա-
6 քանչիւր միմեանց անդամք եմք: Բայց ունիմք մեք
շնորհս ըստ շնորհացն, որ տուեալ են մեզ ազգս
ազգս· եթէ մարգարէութիւն՝ ըստ չափուն հաւա-
7 տոյ, Եթէ պաշտօն՝ ըստ պաշտամանն, եթէ որ
8 ուսուցանէն՝ ըստ վարդապետութեանն· Եթէ որ
մխիթարէն՝ ըստ մխիթարութեանն· որ տուողն է՝
զուարթութեամբ, որ վերակացուն է՝ փութով, որ
9 ողորմին՝ լրջմտութեամբ: Սէր առանց կեղծաւո-
րութեան, ատել զչար, զհետ երթալ բարեաց·
10 Եղբայրսիրութեան առ միմեանս գթածք· ՚ի պա-
11 տիւ զմիմեամբք եղանել. ՚Ի փոյթ՝ մի՛ վեհերոտք·
12 Հոգւով եռացէ՛ք, Տեառն ծառայեցէ՛ք, Յուսով
խնդացէ՛ք, նեղութեան համբերեցէ՛ք, աղօթից ստէպ
13 կացէ՛ք, ՚Ի պէտս սրբոց հաղորդեցարո՛ւք· զհիւրա-
14 սիրութեան զհետ երթա՛յք: Օրհնեցէ՛ք զհալածիչս
15 ձեր, օրհնեցէ՛ք և մի՛ անիծանէք: Խնդալ ընդ
16 խնդացօղս, լալ ընդ լացօղս· Զնոյն միմեանց խոր-
հիջի՛ք· մի՛ ամբարտաւանէք՝ այլ ընդ խոնարհս զի-
17 ջանիցի՛ք· մի՛ լինիք իմաստունք յանձինս ձեր· Մի՛
ումեք չարի չար հատուցանէք· խորհեցարո՛ւք զբա-
18 րիս առաջի ամենայն մարդկան: Եթէ հնար ինչ
իցէ ձեզ՝ ընդ ամենայն մարդկան զխաղաղութիւն
19 կալջի՛ք: Մի՛ զանձանց վրէժ խնդրէք սիրելիք,
այլ տո՛ւք տեղի բարկութեան· քանզի գրեալ է·
Իմ է վրէժխնդրութիւն, և ես հատուցից՝ ասէ
20 Տէր: Այլ եթէ քաղցեալ իցէ թշնամի քո՝ հա՛ց
տո՛ւր նմա, և եթէ ծարաւի՝ ջո՛ւր տուր նմա· զայս

արարեալ՝ կայծակունս հրոյ կուտեսցես ՚ի գլուխ
21 նորա։ Մի՛ յաղթիր ՚ի չարէն. այլ յաղթեա՛ բար-
եաւն չարին։

## ԳԼ. ԺԳ

1 Ամենայն անձն, որ ընդ իշխանութեամբ իցէ՝ ՚ի
հնազանդութեան կացցէ. քանզի ո՛չ ուստեք է իշ-
խանութիւն, եթէ ոչ յԱստուծոյ. և որ են,
2 յԱստուծոյ կարգեալ են։ Այսուհետև որ հակա-
ռակ կայ իշխանութեանն, Աստուծոյ հրամանին
հակառակ կայ, և որք հակառակն կան, անձանց
3 դատաստանս ընդունին. Զի իշխանքն ո՛չ են յեր-
կիւղ բարեաց գործոց՝ այլ չարաց։ Կամի՞ս չերկն-
չել յիշխանութենէ անտի. զբարիս գործեա՛, և ըն-
4 կալցիս զգովութիւն ՚ի նմանէ. Զի Աստուծոյ պաշ-
տօնեայ է քեզ ՚ի բարիս։ Ապա եթէ չար գործի-
ցես, երկի՛ր. զի ո՛չ եթէ վայրապար ածեալ է սու-
սեր ընդ մէջ. Աստուծոյ սպասաւոր է վրէժխնդիր
5 ՚ի բարկութիւն այնմ՝ որ զչարն գործիցէ։ Վասն
որոյ հարկ է հնազանդ լինել՝ ո՛չ միայն վասն բար-
6 կութեանն, այլ և վասն մտացն խղճի։ Վասն այ-
նորիկ և հարկս հարկանէք, զի Աստուծոյ սպա-
7 սաւորք են՝ ՚ի նոյն կանխեալք։ Արդ հատուցէք
իւրաքանչիւր զպարտս. որում զհարկ՝ զհարկն, ո-
րում զմաքս՝ զմաքսն, որում զերկիւղ՝ զերկիւղն,
8 որում զպատիւ՝ զպատիւն։ Եւ մի՛ ումեք պարտա-
պան գտանիցիք, բայց զմիմեանս սիրելոյ. զի որ սի-
9 րէ զընկերն, զօրէնսն կատարէ. Զի մի՛ շնայցես,

եւ մի՛ սպանանիցես, եւ մի՛ գողանայցես, եւ մի՛ սուտ
վկայիցես, եւ մի՛ ցանկանայցես. եւ եթէ այլ ինչ
պատուիրան է՝ յայն բան բովանդակի, եթէ Սի-
10 րեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո։ Սէր ընկերի
իւրում չար ո՛չ առնէ. լրումն օրինացն սէր է։
11 Եւ զայս գիտասջիք վասն ժամանակիս. զի ա՛րդ
ժամ իսկ է մեզ ՚ի քնոյ զարթնուլ. զի այժմ մերձ
է մեզ փրկութիւն՝ քան յորժամ հաւատացաքն.
12 Գիշերն մերժեցաւ՝ եւ տիւն մերձեցաւ. ՚ի բա՛ց ա-
րասցուք այսուհետեւ զգործսն խաւարի, եւ զգեցցո՛ւք
13 զզէնն լուսոյ։ Իբրեւ ՚ի տուընջեան զգաստացեալք
շրջեսցո՛ւք. մի՛ անառակութեամբք եւ արբեցու-
թեամբք, եւ մի՛ խառն անկողնովք եւ պղծութեամբք,
14 եւ մի՛ նախանձու եւ հակառակութեամբ. Այլ զգեցա-
րո՛ւք զՏէր Յիսուս Քրիստոս. եւ մարմնոյ խնամ
մի՛ տանիք ՚ի ցանկութիւնս։

## ԳԼ. ԺԴ.

1 Այլ զտկարացեալն ՚ի հաւատս ընկալարո՛ւք՝ մի՛
2 խղճիւ երկմտութեանց։ Ոմն հաւատայ ուտել զա-
3 մենայն. եւ որ հիւանդն է, բանջար կերիցէ։ Որ
ուտէն, զայն՝ որ ո՛չն ուտէ՝ մի՛ անգոսնեսցէ, եւ որ
ո՛չն ուտէ, զայն՝ որ ուտէն, մի՛ դատեսցի. քանզի
4 Աստուած զնա ընկալաւ։ Դու ո՞վ ես որ դատիս
զայլոյ ծառայ. իւրում Տեառն կայ՝ կամ անկանի.
5 բայց կացցէ՝ զի կարող է Տէր հաստատել զնա։ Ոմն
պահէ օր ըստ օրէ՝ եւ ոմն պահէ զօրհանապազ. իւ-
6 րաքանչիւրոք զիւր միտս հաճեսցէ։ Որ խորհի զօրն՝

Տեառն խորհի. և որ ոչն խորհի զօրն, Տեառն
չխորհի. և որ ուտէ, Տեառն ուտէ, և գոհանայ
զԱստուծոյ. և որ ոչն ուտէ, Տեառն չուտէ, և
7 գոհանայ զԱստուծոյ։ Զի ոչ ոք ՚ի մէնջ անձամբ
8 կեայ, և ոչ անձամբ մեռանի։ Եթէ կեամք՝ Տեառն
կեամք, և եթէ մեռանիմք՝ Տեառն մեռանիմք. և
արդ եթէ կեամք և եթէ մեռանիմք՝ Տեառն եմք։
9 Վասնզի ՚ի նոյն իսկ և Քրիստոս մեռաւ և եկեաց,
զի մեռելոց և կենդանեաց առ հասարակ տիրեսցէ։
10 Դու զի՞ դատիս զեղբայր քո. կամ ընդէ՞ր անար-
գանես զեղբայր քո։ Վասնզի ամենեքին կալոց եմք
11 առաջի ատենին Քրիստոսի։ Զի գրեալ է. Կենդա-
նի եմ ես՝ ասէ Տէր, զի ինձ կրկնեսցի ամենայն
ծունր և ամենայն լեզու խոստովան լիցի Աստուծոյ։
12 Ապա ուրեմն՝ իւրաքանչիւրոք ՚ի մէնջ ընդ անձին
13 համարս տացէ Աստուծոյ։ Այսուհետև՝ մի՛ զմիմ-
եանս դատեսցուք. այլ առաւել զայս դիք ՚ի միտ՝
14 չդնել գայթակղութիւն եղբօրն։ Զայս գիտեմ և
հաստատեալ եմ ՚ի Քրիստոս Յիսուս, զի ոչինչ է
պիղծ նովաւ. բայց այնմ, որ համարիցի ոք ինչ
15 պիղծ՝ նմա է պիղծ։ Զի եթէ վասն կերակրոյ եղ-
բայրն քո տրտմի, ո՛չ ևս սիրով գնայցես. մի՛ կե-
րակրովն քով զնա կորուսաներ, վասն որոյ Քրիս-
16 տոսն մեռաւ։ Մի՛ հայհոյեսցի բարին ձեր։
17 Զի ո՛չ է արքայութիւնն Աստուծոյ կերակուր և
ըմպելի, այլ արդարութիւն և խնդութիւն և խա-
18 ղաղութիւն ՚ի Հոգին Սուրբ։ Զի որ յայսմ ծա-
ռայէ Քրիստոսի, հաճոյ է Աստուծոյ՝ և ընտիր
19 մարդկան։ Ապա այսուհետև զհետ երթիցուք խա-

20 ղաղութեան, և զ շինութեան՝ որ առ միմեանս : Մի՛
վասն կերակրոյ քակեր զգործ Աստուծոյ. ամենայն
ինչ սուրբ է. այլ չար այնմ մարդոյ է՝ որ խղճիւն
21 ուտիցէ : Լաւ է ո՛չ ուտել միս և ո՛չ ըմպել գինի,
և ո՛չ որով եղբայրն քո գայթակղի, կամ գթէ, կամ
22 տկարանայ : Դու ապաքէն հաւատս ունիս, կա՛լ
առանձինն առաջի Աստուծոյ. երանի՜ որ *ոչ դա–
23 տիցի զանձն, որով զննելովն փորձիցէ" : Իսկ որ
խղճէն, թէպէտ և ուտիցէ՝ դատապարտեալ է՝ զի
ոչ ըստ հաւատոց. զի ամենայն ինչ որ ո՛չ 'ի հա–
24 ւատոց է՝ մեղք են : †Այլ այնմ, որ կարօղն է հաս–
տատել զձեզ ըստ աւետարանիս իմում և ըստ քա–
րոզութեանն Յիսուսի Քրիստոսի, ըստ յայտնու–
թեան խորհրդոյն՝ ժամանակօքն յաւիտենից լռե–
25 ցելոյ, Եւ յայտնելոյ այժմիկ 'ի ձեռն գրոց մարգա–
րէականաց՝ ըստ հրամանի մշտնջենաւորին Աստու–
ծոյ, 'ի հնազանդութիւն հաւատոց, յամենայն
26 հեթանոսս ծանուցելոյ՝ Միայնոյ իմաստնոյն Աս–
տուծոյ, 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի. որում փառք
յաւիտեանս. ամէն :"

---

* 'Ի Յոյնն, ոչ դատի զանձն յայնմ զոր ինքն փորձէ

† Յաղագս օրինակին Յունաց ճշմարտագոյն և Լն ընթեռ–
նուն զայսոսիկ երեք տունս, այսինքն կամ աստ՝ և կամ
'ի վախճանի Թղթոյս. Երկու օրինակս յերկոսին տեղիս
նաս զնոյն բանս Հայոց Թարգմանութեանս :

## ԳԼ. ԺԵ

1 Պարտ է մեզ որ կարողս եմք՝ զտկարութիւն տը-
կարացն բառնալ. և մի՛ անձանց և եթ հաճոյ լի-
2 նել: Այլ իւրաքանչիւրոք ՚ի մէնջ ընկերին հաճոյ
3 լիցի ՚ի բարիս՝ վասն շինութեան: Քանզի և Քրի-
ստոս ոչ եթէ անձին հաճոյ եղև, այլ որպէս և
գրեալ է. Նախատինք նախատչաց քոց անկան ՚ի
4 վերայ իմ: Բայց որ ինչ գրեցաւ՝ ՚ի մեր վար-
դապետութիւն գրեցաւ. զի համբերութեամբ և
5 մխիթարութեամբ գրոց զյոյսն ընկալցուք: Այլ
Աստուած համբերութեան և ամենայն մխիթարու-
թեան՝ տացէ ձեզ զնոյն խորհել ընդ միմեանս ըստ
6 Յիսուսի Քրիստոսի. Զի միաբանութեամբ ՚ի մի
բերան փառաւոր առնիցէք զԱստուած և զՀայր
7 Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Վասն որոյ ըն-
կալարուք զմիմեանս, որպէս և Քրիստոս ընկալաւ
8 զձեզ ՚ի փառս Աստուծոյ: Ասեմ, թէ Քրիստոսի
սպասաւոր թլփատութեանն լինել՝ վասն ճշմարտու-
թեանն Աստուծոյ էր, առ ՚ի հաստատուն առնելոյ
9 զաւետիս հարցն: Այլ հեթանոսք վասն ողորմու-
թեան փառաւոր առնեն զԱստուած, որպէս և գրեալ
է. Վասն այսորիկ գոհացայց զքէն ՚ի հեթանոսս,
10 և անուան քում սաղմոս ասացից: Եւ դարձեալ
ասէ. Ուրախ լերուք հեթանոսք ընդ ժողովրդեան
11 նորա: Եւ դարձեալ՝ թէ Օրհնեցէք ամենայն հե-
թանոսք զՏէր, և գովեցէք զնա ամենայն ժողո-
12 վուրդք: Եւ դարձեալ Եսայի ասէ. Եղիցի արմատն
Յեսսեայ, և որ կանգնելոցն է իշխան հեթանոսաց,

13 'ի նա հեթանոսք յուսասցին։ Այլ Աստուած յու-
սոյ՝ լի՛ արասցէ զձեզ ամենայն խնդութեամբ եւ
խաղաղութեամբ, առաւելուլ ձեզ յուսով՝ զօրու-
թեամբ Հոգւոյն Սրբոյ։
14 Հաստատեալ եմ եւ ես ինքնին եղբա՛րք իմ՝ վասն
ձեր, զի եւ դուք լի էք բարութեամբ, լի էք ամե-
նայն գիտութեամբ, կարօղ էք եւ զմիմեանս խրա-
15 տել։ Այլ համարձակագոյնս գրեցի առ ձեզ եղ-
բա՛րք իմ՝ փոքր 'ի շատէ, իբրեւ յիշեցուցանելով
ձեզ վասն շնորհացն՝ որ տուեալ են ինձ յԱստու-
16 ծոյ. Լինել ինձ սպասաւոր Յիսուսի Քրիստոսի
'ի հեթանոսս. ըղձակերպս առնել զաւետարանն
Աստուծոյ, զի եղիցի պատարագն հեթանոսաց ըն-
17 դունելի՝ սրբեալ Հոգւովն Սրբով։ Ունիմ այսու-
հետեւ պարծանս 'ի Քրիստոս Յիսուս առ Աստ-
18 ուած։ Քանզի ո՛չ իշխեմ խօսել ինչ՝ զոր ո՛չ գործ-
եաց Քրիստոս ինեւ 'ի հնազանդութիւն հեթանո-
19 սաց՝ բանիւք եւ արդեամբք, Զօրութեամբ նշանաց
եւ արուեստից, զօրութեամբ Հոգւոյն Սրբոյ, որ-
պէս ինձ յԵրուսաղէմէ եւ շուրջ՝ մինչեւ 'ի կողմանս
20 Իլիւրիկացւոց՝ լնուլ զաւետարանն Քրիստոսի։ Այն-
պէս առատացեալ յաւետարանել, ո՛չ ուր անուա-
նեցաւ Քրիստոս, զի մի՛ իբրեւ յայլոյ հիման վե-
21 րայ շինիցեմ, այլ որպէս եւ գրեալ է, Թէ որոց
ո՛չ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն, եւ որոց ո՛չ
22 իցէ լուեալ՝ 'ի միտ առցեն։ Վասն որոյ շատ խա-
23 փանեցայ գալ առ ձեզ։ Բայց արդ ո՛չ եւս գոյ
ինձ տեղի 'ի կողմանս յայսոսիկ, եւ անձուկ յոյժ
24 ունիմ 'ի բազում ամաց գալ առ ձեզ։ Յորժամ

անցանիցեմ 'ի Սպանիա, ակն ունիմ յանցանելն
առ նոսա՝ տեսանել զձեզ. և 'ի ձէնջ յուղարկիլ
անդր, եթէ նախ իսկ փոքր 'ի շատէ ձեօք լցայց:
25 Բայց այժմ երթամ յԵրուսաղէմ պաշտել ըզ-
26 սուրբսն: Զի հաճոյ թուեցաւ Մակեդոնացւոց
և Աքայեցւոց հաղորդութիւն ինչ առնել
27 ընդ աղքատս սրբոցն՝ որ են յԵրուսաղէմ: Հաճոյ
թուեցաւ, քանզի և պարտապան իսկ էին նոցա.
զի եթէ հոգևորացն նոցա հաղորդ եղեն հեթանոսք,
պարտին և մարմնաւորացն կցորդ լինել նոցա:
28 Արդ՝ զայս կատարեալ՝ և կնքեալ զպտուղ նոցա,
29 անցից առ ձեօք 'ի Սպանիա: Զայս գիտեմ, զի
'ի գալն առ ձեզ, լրութեամբ օրհնութեան աւե-
տարանին Քրիստոսի եկից:
30 Աղաչեմ զձեզ եղբարք 'ի ձեռն Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի և սիրով Հոգւոյն, պատե-
րազմակից լինել ինձ յաղօթս վասն իմ առ Աստ-
31 ուած. Զի ապրեցայց յապստամբացն որ 'ի
Հրէաստանի են. և պաշտօնն իմ որ յԵրուսա-
32 ղէմ, ընդունելի լիցի սրբոցն. Զի խնդութեամբ
եկեալ առ ձեզ 'ի կամս Աստուծոյ, հանգեայց ընդ
33 ձեզ: Եւ Աստուած խաղաղութեան եղիցի ընդ ձեզ
ամենեսին. ամէն:

## ԳԼ. ԺԶ.

1 Յանձն առնեմ ձեզ զՓիբէ զքոյր մեր, որ է սպա-
2 սաւոր եկեղեցւոյն Կենքրացւոց. Զի զնա ընկալջիք
'ի Տէր՝ արժանի սրբոց, և վերակացու լինիջիք նմա՝

յոր պէտս իրաց և կոչեսցէ զձեզ. քանզի և նա
վերակացու եղև բազմաց, և ինձ իսկ գլխովին։
3 Ողջոյն տաջիք Պրիսկեայ և Ակիւղայ՝ գործակցաց
4 իմոց ՚ի Քրիստոս Յիսուս. Որք ընդ անձին իմոյ
զիւրեանց պարանոցս մատուցին. զորոց ոչ ես մի-
այն գոհանամ, այլ և ամենայն եկեղեցիք հեթա-
5 նոսաց։ Եւ տանին եկեղեցւոյն նոցա։ Ողջոյն
տաջիք Եպենետեայ սիրելւոյ իմոյ՝ որ է պտուղ Ա-
6 սիացւոց ՚ի Քրիստոս։ Ողջոյն տաջիք Մարեայ՝
7 որ բազում վաստակս վաստակեաց ՚ի ձեզ։ Ող-
ջոյն տաջիք Անդրոնիկեայ և Յունեայ ազգակա-
նաց իմոց՝ և գերեկցաց, որք երևելիքն իսկ են յա-
ռաքեալս. որք և յառաջ իսկ քան զիս եղեն ՚ի
8 Քրիստոս։ Ողջոյն տաջիք Ամպղեայ սիրելւոյ իմոյ
9 ՚ի Տէր։ Ողջոյն տաջիք Ուրբանեայ գործակցի իմոյ
10 ՚ի Տէր, և Ստաքեայ սիրելւոյ իմոյ։ Ողջոյն տա-
11 ջիք Ապեղեայ՝ որ ընտիրն է ՚ի Տէր։ Ողջոյն տա-
ջիք նոցա, որ յԱրիստաբուղեայ տանէ անտի են.
ողջոյն տաջիք Հերովդիոնեայ ազգականի իմոյ. ող-
ջոյն տաջիք այնոցիկ՝ որք ՚ի Նարկիսեայ տանէն ի-
12 ցեն ՚ի Տէր։ Ողջոյն տաջիք Տրիփոնեայ և Տրի-
փոսեայ վաստակաւորաց ՚ի Տէր. ողջոյն տաջիք
Պերսիդեայ սիրելւոյ, որ բազում վաստակս վաս-
13 տակեաց ՚ի Տէր։ Ողջոյն տաջիք Ռուփեայ ընտրե-
14 լոյ ՚ի Տէր, և մօր նորա և իմոյ։ Ողջոյն տաջիք
Ասինկրիտեայ՝ Փղեգոնտեայ՝ Երմեայ՝ Պատրոբայ՝
15 Երմայ, և որ ընդ նոսա եղբարք իցեն։ Ողջոյն
տաջիք Փիղողոգեայ՝ Յուղեայ՝ Ներեայ՝ և քեռ նո-
րա. և Ողոմպեայ, և որ ընդ նոսա սուրբք ամե-

16 նկքին իցեն ։ Ողջոյն տաջիք միմեանց ՚ի համբոյր
սրբութեան. ողջոյն տան ձեզ ամենայն եկեղեցիք
Քրիստոսի ։
17 Աղաչեմ զձեզ եղբարք՝ դիտել զայնպիսիսն,
որ հերձուածս և գայթակղութիւնս առնիցեն ար-
տաքոյ վարդապետութեանն՝ զոր դուքն ուսայք. և
18 խորշեցարուք ՚ի նոցանէ ։ Զի այնպիսիքն Տեառն մե-
րում Քրիստոսի ոչ ծառայեն, այլ իւրեանց որովայ-
նի. և քաղցրաբանութեամբ և օրհնութեամբ պատ-
19 րեն զսիրտս անմեղաց ։ Զի ձեր հնազանդութիւնն առ
ամենեսեան հասեալ է. և արդ ՚ի ձեզ ուրախ եմ.
բայց կամիմ զձեզ իմաստունս լինել ՚ի բարիս՝ և
20 անմեղս ՚ի չարիս ։ Եւ Աստուած խաղաղութեան
խորտակեսցէ զՍատանայ ընդ ոտիւք ձերովք մերձ
ընդ մերձ. շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
21 տոսի ընդ ձեզ ։ Ողջոյն տայ ձեզ Տիմոթէոս եղ-
բայր և գործակից իմ, և Ղուկիոս, և Յասոն,
22 և Սոսիպատրոս ազգականք իմ ։ Ողջոյն տամ ձեզ՝
23 և ես Տերտիոս, որ զթուղթս գրեցի ՚ի Տէր ։ Ող-
ջոյն տայ ձեզ Գայիոս ասպնջական իմ, և ամենայն
եկեղեցւոյն ։ Ողջոյն տայ ձեզ Երաստոս շահապ
24 քաղաքիս, և Կուարտոս եղբայր ։ Շնորհք Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ընդ ամենեսին.
25 ամէն ։ Այլ այնմ, որ կարօղն է հաստատել զձեզ
ըստ աւետարանիս իմում, և ըստ քարոզութեանն
Յիսուսի Քրիստոսի, ըստ յայտնութեան խորհրդոյս
26 այսորիկ՝ ժամանակօք յաւիտենից լռեցելոյ, Եւ
յայտնելոյ այժմիկ ՚ի ձեռն գրոց մարգարէականաց՝
ըստ հրամանի մշտնջենաւորին Աստուծոյ, ՚ի հնա-

զանդութիւն հաւատոց. յամենայն հեթանոսս ծա-
27 նուցելոյ, Միայնոյ իմաստնոյն Աստուծոյ ՚ի ձեռն
Յիսուսի Քրիստոսի. նմա պատիւ և փառք յա-
ւիտեանս յաւիտենից. ամէն։

Առ Հռովմայեցիս գրեցաւ ՚ի Կորնթոսէ ՚ի ձեռն Փիբե-
եայ սարկաւագի։



# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ ԱՌԱՋԻՆ

---

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ կոչեցեալ առաքեալ Յիսուսի Քրիս-
տոսի կամօքն Աստուծոյ, և Սոսթենէս եղբայր.
2 Եկեղեցւոյդ Աստուծոյ որ է ՚ի Կորնթոս՝ նուիրե-
լոց ՚ի Քրիստոս Յիսուս, կոչեցելոց սրբոց՝ ամենե-
քումբք հանդերձ որք կարդան զանուն Տեառն մե-
րոյ Յիսուսի Քրիստոսի՝ յամենայն տեղիս նոցա՝ և
3 մեր: Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱս-
տուծոյ Հօրէ մերմէ՝ և ՚ի Տեառնէ Յիսուսէ Քրիս-
4 տոսէ: Գոհանամ զԱստուծոյ իմոյ յամենայն ժամ
վասն ձեր՝ ՚ի վերայ շնորհացն Աստուծոյ՝ որ տու-
5 եալ են ձեզ ՚ի Քրիստոս Յիսուս. Զի յամենայ-
նի մեծացարուք դուք նովաւ՝ ամենայն բանիւ և ա-
6 մենայն գիտութեամբ. Որպէս վկայութիւնն իսկ
7 Աստուծոյ հաստատեցաւ ՚ի ձեզ. Զի դուք մի՛
նուազիցիք՝ և մի՛ իւիք շնորհօք, ակնկալեալ յայտ-
8 նութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Որ
և հաստատեսցէ զձեզ մինչև ՚ի կատարած՝ անա-
րատս՝ յօրն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

9 Հաւատարիմ է Աստուած, որով կոչեցարուք ՚ի
հաղորդութիւն Որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի
Տեառն մերոյ ։
10 Աղաչեմ զձեզ եղբարք՝ անուամբն Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի․ զի զնոյն բան ունիցիք ամե-
նեքեան, և մի՛ իցեն ՚ի ձեզ հերձուածք․ *քանզի
էիք՝՝ հաստատեալք ՚ի նոյն միտս և ՚ի նոյն հան-
11 ճար ։ Ազդ եղև ինձ վասն ձեր եղբարք՝ ՚ի Քղուացւոց
12 անտի, թէ հակառակութիւնք են ՚ի ձեզ ։ Եւ արդ
ասեմ իսկ, եթէ իւրաքանչիւրոք ՚ի ձէնջ ասէ․ Ես
Պօղոսեան եմ, և միւսն՝ եթէ Ես Ապօղոսեան,
և միւսն՝ եթէ Ես Կեփայեան․ և միւսն՝ եթէ Ես
13 Քրիստոսեան ։ Իսկ արդ՝ բաժանեա՞լ ինչ իցէ
Քրիստոս․ միթէ Պօղո՞ս ՚ի խաչ ելեալ իցէ
վասն ձեր, կամ յանուն Պօղոսի՞ մկրտեցարուք ։
14 Գոհանամ զԱստուծոյ իմոյ՝ զի ո՛չ զոք ՚ի ձէնջ
մկրտեցի՝ բայց միայն զԿրիսպոս և զԳայիոս․
15 զի մի՛ ոք ասիցէ, թէ յիմ անուն մկրտեցա-
16 րուք ։ Տալ եւս կնիք և տանն Ստեփանեայ․
և զայլ ոք ո՛չ գիտեմ ամենևին թէ մկրտեցի ։
17 Զի ո՛չ առաքեաց զիս Քրիստոս մկրտել՝ այլ
աւետարանել․ ո՛չ ճարտարութեամբ բանից, զի մի՛
18 ընդունայն լիցի խաչն Քրիստոսի ։ Զի ճառ խա-
չին՝ կորուսելոցն յիմարութիւն է․ այլ փրկելոցս
19 մեզ՝ զօրութիւն Աստուծոյ ։ Զի գրեալ է․ Կորու-
սից զիմաստութիւն իմաստնոց․ և զխորհուրդս
20 խորհրդականաց արհամարհեցից ։ Ո՞ւր իմաստուն,

* ՚Ի Յոյնն, այլ զի իցէք

ո՞ւր դպիր . ո՞ւր քննիչ աշխարհիս այսորիկ . ո՞չ
ապաքէն յիմարեցոյց Աստուած զիմաստութիւն աշ-
21 խարհիս այսորիկ ։ Վասնզի իմաստութեամբն Աս-
տուծոյ՝ ո՛չ ծանեաւ աշխարհ իմաստութեամբն զԱս-
տուած . հաճեցաւ Աստուած յիմարութեամբ քա-
րոզութեանն՝ ապրեցուցանել զհաւատացեալս ։
22 Եւ որովհետև Հրեայք նշան հայցեն , և Հե-
23 թանոսք զիմաստութիւն խնդրեն . Մե՛ք քարոզես-
ցուք զխաչելեալն Քրիստոս , Հրէից գայթագղու-
24 թիւն , և հեթանոսաց յիմարութիւն . Այլ նոցին
իսկ կոչեցելոցն Հրէից և հեթանոսաց , զՔրիստոս՝
Աստուծոյ զօրութիւն՝ և Աստուծոյ իմաստութիւն ։
25 Զի յիմա՛րն Աստուծոյ իմաստնագոյն է քան զմար-
դիկ . և տկարն Աստուծոյ զօրագոյն է քան զմար-
26 դիկ ։ Թէպէտ և զձեր իսկ կոչումնդ տեսիք եղ-
բարք , զի ո՛չ բազում իմաստունք ըստ մարմնոյ ,
և ո՛չ բազում հզօրք , և ո՛չ բազում ազնուականք .
27 Այլ զյիմարս աշխարհիս ընտրեաց Աստուած՝ զի
յամօթ արասցէ զիմաստունս . և զտկարս աշխարհիս
ընտրեաց Աստուած՝ զի յամօթ արասցէ զհզօրս .
28 Եւ զանտոհմս աշխարհի և զարհամարհեալս ընտ-
րեաց Աստուած՝ և զոչինչսն , զի զէսն իմն խափա-
29 նեսցէ . Որպէս զի մի՛ պարծեսցի ամենայն մարմին
30 առաջի Աստուծոյ ։ Զի ՚ի նմանէ դուք էք ՚ի Քրի-
ստոս Յիսուս , որ եղև մեզ իմաստութիւն յԱս-
տուծոյ , արդարութիւն և սրբութիւն և փրկու-
31 թիւն . Զի որպէս և գրեալ է . Որ պարծին՝ ՚ի
Տէր պարծեսցի ։

## ԳԼ․ Բ

1 Եւ ես թէպէտ և եկի առ ձեզ եղբարք՝ ոչ ըստ
առաւելութեան բանից իմաստութեան պատ-
2 մել ձեզ զվկայութիւնն Աստուծոյ ։ Զի ոչ եթէ
'ի մտի եդի գիտել ինչ 'ի ձեզ՝ բայց միայն զՅի-
3 սուս Քրիստոս՝ և զնոյն 'ի խաչ ելեալ ։ Եւ ես
տկարութեամբ՝ և երկիւղիւ և դողութեամբ բազ-
4 մաւ եղէ առ ձեզ ․ Եւ բանն իմ և քարոզութիւն ,
ոչ պատիր բանիւք իմաստութեան՝ այլ արդեամբք
5 Հոգւոյն և զօրութեամբ ․ Զի հաւատք ձեր մի՛ ի-
ցեն իմաստութեամբ մարդկան , այլ զօրութեամբ
Աստուծոյ ։

6 Զիմաստութիւն խօսիմք ընդ կատարեալս ․ զի-
մաստութիւն , ոչ զաշխարհիս այսորիկ , և ոչ զիշ-
7 խանաց աշխարհիս այսորիկ զխափանելեացս ․ Այլ
խօսիմք զԱստուծոյ իմաստութիւնն ծածուկ խոր-
հրդով , զոր յառաջ քան զյաւիտեանս սահման-
8 եաց Աստուած 'ի փառս մեր ․ Զոր ոչ ոք յիշխա-
նաց աշխարհիս այսորիկ ծանեաւ ․ զի եթէ էր ծա-
նուցեալ՝ ոչ արդեօք զՏէրն փառաց 'ի խաչ հա-
9 նէին ։ Այլ որպէս և գրեալ է ․ Զոր ակն ոչ ետես ,
և ունկն ոչ լուաւ , և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ ,
պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց ։

10 Այլ մեզ յայտնեաց Աստուած Հոգւովն իւրով ․
11 զի Հոգին զամենայն քննէ՝ և զխորս Աստուծոյ ։ Զի՞
ո՛ ոք 'ի մարդկանէ գիտէ ինչ զմարդոյն , եթէ ոչ
հոգի մարդոյն՝ որ 'ի նմա ․ նոյնպէս և ոչ զԱստու-
12 ծոյն ոք գիտէ՝ եթէ ոչ Հոգին Աստուծոյ ։ Այլ

մեք ոչ եթէ զհոգի աշխարհիս առաք՝ այլ զհոգին
որ յԱստուծոյ. զի ծանիցուք զայն՝ որ յԱստուա-
13 ծոյն շնորհեցաւ մեզ: Եւ զոր խօսիմքս՝ ոչ եթէ
մարդկեղէն ուսմամբ ճարտարութեամբ բանից, այլ
վարդապետութեամբ հոգւոյն, ընդ հոգեւորս զհո-
14 գեւորսն համեմատեմք: Բանզի շնչաւոր մարդ ոչ
ընդունի զհոգւոյն Աստուծոյ՝ զի յիմարութիւն է
նմա. եւ ոչ կարէ գիտել՝ * եթէ հոգեպէս քննիցի»:
15 Իսկ հոգեւորն քննէ զամենայն, եւ ինքն յումեքէ
16 ոչ քննի: Իսկ արդ՝ ո՞վ գիտաց զմիտս Տեառն,
որ՝ եւ խրատտու լինիցի նմա. այլ մեք զմիտս Քրիս-
տոսի ունիմք:

## ԳԼ. Գ.

1 Եւ ես եղբարք՝ ոչ կարացի խօսել ընդ ձեզ իբրեւ
2 ընդ հոգեւորս՝ այլ իբրեւ ընդ մարմնաւորս: Իբրեւ
տղայոց ՚ի Քրիստոս, կաթն ջամբեցի ձեզ՝ եւ ոչ
կերակուր, զի ոչ եւս կարէիք. նաեւ արդ իսկ ոչ
3 կարէք. քանզի դեռ մարմնաւոր էք: Ուր եւ արդ
են իսկ ՚ի ձեզ հեռ եւ նախանձ, ո՞չ ապաքէն
4 մարմնաւոր էք՝ եւ ըստ մարդկան գնայք: Յորժամ
ասէ ոք ՚ի ձէնջ՝ Ես Պօղոսեան եմ, եւ միւսն՝ թէ
Ես Ապօղոսեան, ո՞չ մարդիկ էք. իսկ արդ՝ ո՞վ է
5 Պօղոս, կամ ո՞վ է Ապօղոսն. Պաշտօնեայք՝ ո-
րովք հաւատացէքն, եւ իւրաքանչիւր որպէս և Տէր
6 ետ: Ես տնկեցի, Ապօղոս ջուր ետ, այլ Աստուած

---

* ՚Ի Յոյնն, քանզի հոգեպէս քննի

7 աճեցոյց: Այսուհետեւ ոչ այն ոք ինչ է՝ որ տնկ-
եացն, եւ ոչ այն՝ որ ջրոյրն եւս. այլ որ աճեցոյցն
8 Աստուած: Որ տնկեացն եւ որ ջրոյրն եւս՝ մի են.
բայց իւրաքանչիւրոք զիւր վարձս առնուցու ըստ իւ-
9 րում վաստակոց: Զի Աստուծոյ գործակից եմք,
10 Աստուծոյ արդիւնք էք, Աստուծոյ շինուած էք: Ըստ
շնորհացն Աստուծոյ՝ որ տուեալ են ինձ, իբրեւ ի-
մաստուն ճարտարապետ հիմն եդի. բայց այլ է որ
շինէն. այլ իւրաքանչիւրոք զգոյշ լիցի՝ թէ որպէս
11 շինիցէ: Զի հիմն այլ ոք ոչ կարէ դնել քան
զեդեալն՝ որ է Յիսուս Քրիստոս:
12 Եթէ ոք շինէ ՚ի վերայ հիմանս այսորիկ՝ ոսկի՝
արծաթ՝ ականս պատուականս՝ փայտ, խոտ, ե-
13 ղէգն, Իւրաքանչիւր գործն յայտնելոց է. զի օրն
14 ընտրեսցէ, զի հրով յայտնելոց է. Եւ զիւրաքան-
15 չիւր գործն զիարդ եւ իցէ՝ հուրն փորձեսցէ: Եթէ
ուրուք գործն զոր շինեաց՝ կացցէ, վարձս առցէ.
եւ եթէ ուրուք գործն այրեսցի՝ տուժեսցի, բայց
ինքն կեցցէ. այլ այնպէս՝ որպէս թէ ՚ի հուր:
16 Ոչ գիտէք եթէ տաճար էք Աստուծոյ՝ եւ Հոգի
17 Աստուծոյ բնակեալ է ՚ի ձեզ: Եթէ ոք զտաճար
Աստուծոյ ապականէ, ապականեսցէ զնա Աստ-
ուած. զի տաճար Աստուծոյ սուրբ է, որ էք դուք:
18 Մի ոք զանձն խաբեսցէ. եթէ ոք կամեսցի ՚ի ձէնջ
իմաստուն լինել յաշխարհիս յայսմիկ, յիմար լի-
19 ցի՝ զի եղիցի իմաստուն: Զի իմաստութիւն աշ-
խարհիս այսորիկ՝ յիմարութիւն է առաջի Աստու-
ծոյ. քանզի գրեալ է՝ թէ Որ ըմբռնէ զիմաստունս
20 ՚ի խորագիտութեան իւրեանց: Եւ դարձեալ՝ թէ

Տէր ճանաչէ զխորհուրդս իմաստնոց՝ զի են ընդու-
21 նայն ։ Այսուհետեւ մի՛ ոք պարծեսցի ՚ի մարդկա-
22 նէ ։ Զի ամենայն ինչ ձեր է ․ եթէ Պօղոս , ե-
թէ Ապօղոս , եթէ Կեփաս , եթէ աշխարհ , եթէ
կեանք , եթէ մահ , եթէ որ կանս , եթէ հանդերձ-
23 եալքն ․ ամենայն ինչ ձեր է ․ Դուք Քրիստոսի ,
Քրիստոս Աստուծոյ ։

## ԳԼ․ Դ

1 Այսպէս համարեսցին զմեզ մարդիկ , իբրեւ զպաշ-
տօնեայս Քրիստոսի՝ եւ հազարապետս խորհրդոցն
2 Աստուծոյ ։ Արդ՝ խնդիր է ՚ի մէջ հազարապետաց՝
3 եթէ ոք հաւատարիմ գտցի ։ Այլ ինձ եւ այս ա-
նարգանք են , եթէ ՚ի ձէնջ դատեցայց՝ կամ բնաւ
իսկ ՚ի մարդկանէ ․ նաեւ զանձն իմ ոչ քննեմ ։
4 Զի ոչինչ գիտեմ զանձին իմոյ ․ այլ ոչ եթէ այ-
5 սու արդարանամ , զի որ քննէն զիս՝ Տէր է ։ Այ-
սուհետեւ մի՛ յառաջ քան զժամանակն դատիք , մին-
չեւ եկեսցէ Տէր , որ լուսաւոր առնիցէ զգաղտնիս
խաւարի , եւ յայտնիցէ զխորհուրդս սրտից ․ եւ ա-
պա իւրաքանչիւր գովութիւն եղիցի յԱստուծոյ ։
6 Զայս եղբարք՝ առակեցի յանձն իմ եւ յԱպօղոս
վասն ձեր ․ զի ՚ի մէնջ ուսջիք՝ մի՛ ինչ առաւել
քան զգրեալն իմանալ ․ զի մի՛ այր քան զընկեր
7 հպարտանայցէք ՚ի վերայ ընկերին ։ Իսկ արդ ո՞վ
է՝ որ քննիցէ զքեզ ․ զի՞նչ ունիս՝ զոր ոչ իցէ առ-
եալ ․ եւ եթէ առեր՝ զի՞ պարծիս իբրեւ զչառեալ ։
8 Արդէն իսկ յագեալ իցէք՝ եւ արդէն մեծացարուք ,

առանց մեր թագաւորեցէք. և երանի թէ թագա-
9 ւորէիք՝ զի և մեք ընդ ձեզ թագաւորէաք: Ինձ
այսպէս թուի՝ եթէ զմեզ զառաքեալս յետնորդս
արար Աստուած՝ իբրև զմահապարտս. զի տեսիլ
եղեաք աշխարհի, և հրեշտակաց և մարդկան:
10 Մեք յիմարք վասն Քրիստոսի, և դուք իմաստունք
՚ի Քրիստոս. մեք տկարք՝ և դուք հզօրք. դուք
11 փառաւորեալք՝ և մեք անարգք: Մինչև ցայսօր
ժամանակի՝ և քաղցեաք և ծարաւեցաք և մերկ
գնացաք և կոփահարեցաք և անհանգիստ եղեաք,
12 Եւ աշխատեցաք ձեռօք մերովք. բամբասէին զմեզ՝
13 օրհնէաք. հալածէին՝ յանձն առնուաք. հայհոյէին՝
աղաչէաք. իբրև առակ նշաւակի եղեաք ամենայն
աշխարհի. ամենեցուն փարելի լինել մինչև ցայժմ:
14 Ո՛չ եթէ յամօթ ինչ առնելով զձեզ՝ գրեմ զայս,
15 այլ իբրև զորդիս սիրելիս խրատեմ: Թէպէտ և
բիւր դաստիարակս ունիցիք ՚ի Քրիստոս՝ այլ ո՛չ
եթէ բազում հարս. զի ՚ի Քրիստոս Յիսուս ա-
16 ւետարանաւն ես ծնայ զձեզ: Արդ աղաչեմ զձեզ՝
նմանօղք ինձ եղիջիք՝ որպէս և ես Քրիստոսի:
17 Վասն այնորիկ առաքեցի առ ձեզ զՏիմոթէոս,
որ է իմ որդի սիրելի՝ և հաւատարիմ ՚ի Տէր. որ
յիշեցուսցէ ձեզ զճանապարհս իմ, որ ՚ի Քրիստոս
Յիսուս. որպէս և ամենայն ուրեք՝ յամենայն ե-
18 կեղեցիս ուսուցանեմ: Որպէս թէ ես չիցեմ գա-
19 լոց առ ձեզ՝ ոմանք հպարտացան: Այլ եկից հուպ
ընդ հուպ՝ եթէ Տէր կամեսցի. և ՚ի միտ առից ո՛չ
20 զբանս հպարտացելոցն, այլ զզօրութիւն: Զի ո՛չ
եթէ բանիւք է արքայութիւնն Աստուծոյ, այլ զօ-

21 բութեամբ ։ Արդ՝ որպէս կամիք՝ գաւազանաւն ե-
կից առ ձեզ, եթէ* սիրով հոգւոյն՝ հեզութեան և
արդարութեան և խոնարհութեան" ։

## ԳԼ. Ե

1 Բնաւ և անուանի իսկ 'ի ձեզ լսելի պոռնկու-
թիւն, և այնպիսի պոռնկութիւն՝ որ ոչ և 'ի հե-
2 թանոս, որպէս թէ զկին հօր իւրոյ ունել ։ Եւ
դուք հպարտացեալ էք . և ոչ առաւել զգացա-
րուք, զի բարձցի 'ի միջոյ ձերմէ՝ որ զգործն զայն
3 գործեաց ։ Զի ես թէպէտ մարմնով մեկուսի եմ,
սակայն հոգւով մերձ եմ . բայց արդէն իսկ իբրև
'ի մօտոյ ընտրեցի զայն՝ որ այնպէսն գործեաց .
4 Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ժո-
ղովել ձեզ 'ի միասին՝ և իմով հոգւոյս՝ զօրութեամբն
հանդերձ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,
5 Մատնել զայսպիսին Սատանայի 'ի սատակումն
մարմնոյ . զի ոգին ապրեսցի յաւուրն Տեառն մերոյ
6 Յիսուսի Քրիստոսի ։ Ոչ բարւոք են պարծանքդ
ձեր . ոչ գիտէք՝ եթէ փոքր մի խմոր զամենայն
7 զանգուածն խմորէ ։ Սրբեցէք 'ի բաց զհին զխմորն՝
զի եղիջիք նոր զանգուած, որպէս էքդ անխմորք .
8 քանզի զատիկ մեր զենաւ Քրիստոս ։ Այսուհետև
արասցուք տօնս . մի 'ի խմորն հին, և մի 'ի խմորն
չարութեան և անզգամութեան . այլ յանխմորս
ստուգութեան և ճշմարտութեան ։

* Ի Յոյնն, եթէ սիրով և հոգւով հեզութեան

9 Գրեցի ձեզ ՚ի թղթի այդր չխառնակել ընդ
10 պոռնիկս ։ Եւ ոչ եթէ ընդ պոռնիկս աշխարհիս
այսորիկ՝ կամ ընդ ագահս կամ ընդ յափշտակօղս՝
կամ ընդ կռապաշտս․ ապա թէ ոչ՝ պարտ էիք
11 և յաշխարհէ իսկ ելանել ։ Բայց արդ գրեցի ձեզ
չխառնակել․ եթէ ոք եղբայր անուանեալ, կամ
պոռնիկ իցէ, կամ կռապաշտ՝ կամ ագահ՝ կամ
բամբասօղ՝ կամ արբեցօղ՝ կամ յափշտակօղ, ընդ
12 այնպիսումն և հաց մի՛ ուտել ։ Զի՞ կայ իմ և զար-
տաքինսն դատել ․ ո՞չ ապաքէն դուք զներքինսդ
13 դատիցիք ․ Եւ զարտաքինսն Աստուած դատեսցի ․
բարձէք զչարն ՚ի միջոյ ձերմէ ։

## ԳԼ․ Զ

1 Իշխէ՞ ոք ՚ի ձէնջ՝ եթէ իրք ինչ իցեն ընդ ընկե-
րի իւրում, դատել առաջի անիրաւաց՝ և ոչ առաջի
2 սրբոց ։ Եթէ ո՞չ գիտէք՝ զի սուրբք զաշխարհ
դատին․ և եթէ ձեօք դատի աշխարհ՝ ապա ոչ էք
3 արժանի անարգ ատենից ։ Ո՞չ գիտէք եթէ զհրեշ-
4 տակս դատիմք, թո՛ղ թէ զերկրաւորս ։ Զերկրա-
ւոր ատեանս եթէ յանձն առնուցուք, զանարգան
5 եկեղեցւոյ զնոսա նստուցէք ։ Առ ամօթոյ ձե-
րոյ ասեմ․ այնչափ ոչ գոյ ոք իմաստուն ՚ի ձեզ,
որ կարիցէ իրաւունս ընտրել ՚ի մէջ եղբօր իւրոյ ։
6 Այլ եղբայր ընդ եղբօր դատի, և զայն՝ ՚ի մէջ ան-
7 հաւատից ։ Եւ արդ՝ ամենևին իսկ վատթարու-
թիւն է ՚ի ձեզ, զի դատաստանս իսկ գոն ՚ի միջի
ձերում․ ընդէ՞ր ոչ դուք զրկիք, և ոչ դուք առա-

8 ւել նեղիք ։ Այլ դուք զրկէք և նեղէք , և այդ՝
9 զեղբարս ևս ։ Եթէ ո՞չ գիտէք՝ զի անիրաւք զար-
քայութիւնն Աստուծոյ ոչ ժառանգեն ․ մի՛ խաբիք՝
10 ոչ պոռնիկք , ոչ կռապարիշտք , ոչ շունք , Ո՛չ
իգացեալք , ոչ արուագէտք , ոչ գողք , ոչ ա-
գահք , ոչ արբեցողք , ոչ բամբասողք և ոչ յա-
փշտակողք՝ զարքայութիւն Աստուծոյ ոչ ժառան-
11 գեն ։ Եւ դուք այնպիսիք ոմանք էիք ․ այլ լուա-
ցարուք՝ այլ սրբեցարուք՝ այլ արդարացարուք յա-
նուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , և ՚ի Հո-
գին Աստուծոյ մերոյ ։
12 Ամենայն ինչ ինձ մարթ է՝ այլ ո՛չ ամենայն ինչ
օգուտ է ․ ամենայն ինչ ինձ մարթ է , այլ ո՛չ ե-
13 թէ ես ընդ իշխանութեամբ ուրուք լինիցիմ ։ Կե-
րակուր որովայնի , և որովայն կերակրոյ ․ այլ Աստ-
ուած զսա և զնոսա խափանեսցէ ․ բայց մարմին ոչ
14 պոռնկութեան՝ այլ Տեառն , և Տէր մարմնոյ ։ Այլ
Աստուած՝ որ և զՏէրն յարոյց , և զձեզ յարուսցէ
15 զօրութեամբ իւրով ։ Ո՞չ գիտէք՝ եթէ մարմինք ձեր
անդամք են Քրիստոսի ․ արդ՝ առեալ զանդամս
Քրիստոսի , առնիցեմք անդամս պոռնկի՞ ․ քա՛ւ
16 լիցի ։ Եթէ ո՞չ գիտէք , զի որ մերձենայ ՚ի պոռնիկ՝
մի մարմին է ․ Եղիցին , ասէ , երկոքին ՚ի մար-
17 մին մի ։ Եւ որ մերձենայ ՚ի Տէր՝ մի հոգի է ։
18 Փախերուք ՚ի պոռնկութենէ ։ Զամենայն մեղս զոր
և գործէ մարդ՝ արտաքոյ մարմնոյ իւրոյ է ․ իսկ որ
19 պոռնկին՝ յիւր մարմինն մեղանչէ ։ Եթէ ո՞չ գի-
տէք՝ զի մարմինք ձեր տաճար են Հոգւոյն Սրբոյ՝
որ է ՚ի ձեզ՝ զոր ունիք յԱստուծոյ , և չէք ան-

20 ձանց տէր: Զի գնոց գնեցայք. փառաւոր
արարէք զԱստուած ’ի մարմինս ձեր և յոգիս, որ
է յԱստուծոյ:

## ԳԼ. Է.

1 Այլ վասն որոյ գրեցէքն առ իս, Բարւոք է մար-
2 դոյ ’ի կին մարդ չմերձանալ: Բայց վասն պոռնկու-
թեան՝ իւրաքանչիւրոք զիւր կին կալցի. և իւրա-
3 քանչիւրոք կին զիւր այր կալցի: Կնոջ՝ այր իւր
զպարտսն հատուսցէ. նոյնպէս և կինն՝ առն իւ-
4 րում: Զի կին մարմնոյ իւրում ո՛չ իշխէ՝ այլ այրն.
նոյնպէս և այրն իւրում մարմնոյ ո՛չ իշխէ՝ այլ կինն:
5 Մի՛ զրկէք զմիմեանս. բայց եթէ ինչ ’ի միաբա-
նութենէ առ ժամանակ մի, զի ուխտիցն պարա-
պիցէք. և դարձեալ ’ի նոյն դարձջիք, զի մի՛ փոր-
ձեսցէ զձեզ Սատանայ վասն անխառնութեան ձե-
6 րոյ: Զայս ասեմ ներելով՝ և ո՛չ հրամանաւ տա-
7 լով: Զի կամիմ եթէ ամենայն մարդ լինէր
իբրև զիս. այլ իւրաքանչիւրոք զիւր շնորհս ունի
8 յԱստուծոյ՝ ոմն այսպէս և ոմն այնպէս: Բայց ա-
մուրեացն և այրեացն ասեմ, Լաւ է նոցա եթէ
9 կայցեն իբրև զիս: Ապա թէ ո՛չ ունիցին ժոյժ՝ ա-
մուսնասցին. զի լաւ է ամուսնանալ՝ քան զջեռ-
10 նուլ: Այլ կանամբեացն պատուիրեմ, ո՛չ ես՝ այլ
11 Տէր. Կնոջ յառնէ մի՛ մեկնել: Ապա եթէ մեկ-
նեսցի, անայր մնասցէ՝ կամ անդրէն ընդ առն իւ-
րում հաշտեսցի, և առն՝ զկին իւր մի՛ թողուլ:
12 Բայց այլոց ես պատուիրեմ, ո՛չ եթէ Տէր. Ե-
թէ ոք եղբայր կին ունիցի անհաւատ, և նմա հա-

13 ճոյ իցէ բնակել ընդ նմա՝ մի՛ թողցէ զնա ։ Եւ կին ,
որ ունիցի զայր անհաւատ՝ և նմա կամ իցէ բնա-
14 կել ընդ նմա՝ մի՛ թողցէ զայրն · Զի սուրբ է այրն
անհաւատ կնաւն , և սուրբ է կինն անհաւատ ա-
րամբն · ապա թէ ոչ՝ որդիքն ձեր պիղծ են · բայց
15 այժմ սուրբ են ։ Ապա եթէ անհաւատն մեկնեսցի ,
մեկնեսցի · զի ոչինչ հարկ ՚ի վերայ կայ եղբօրն կամ
քեռն՝ յայնպիսի իրս · քանզի ՚ի խաղաղութիւն կոչ-
16 եաց զմեզ Աստուած ։ Զի՞ գիտես կին դու՝ եթէ
զայրն քո ապրեցուցես · կամ զի՞ գիտես այր դու՝
17 եթէ զկին քո ապրեցուցես · Եթէ ոչ՝ իւրաքանչիւր
ումեք որպէս և բաժանեաց Տէր , զիւրաքանչիւրոք
որպէս և կոչեաց Աստուած՝ այնպէս գնասցէ · և
այսպէս ընդ ամենայն եկեղեցիս պատուէր տամ ։
18 Թլփատեալ ոք կոչեցաւ՝ մի՛ ցանկասցի անթլփա-
տութեան · յանթլփատութենէ ոք կոչեցաւ՝ մի՛
19 թլփատեսցի · Զի թլփատութիւն ոչինչ է՝ և ան-
թլփատութիւն ոչինչ · այլ պահպանութիւն Աս-
20 տուծոյ պատուիրանացն ։ Բայց իւրաքանչիւրոք յոր
21 կոչումն կոչեցաւ՝ ՚ի նմին կացցէ ։ Ծառա՞յ կոչե-
ցար՝ մի՛ փոյթ լիցի քեզ · այլ թէ և կարիցես ա-
22 զատ լինել՝ քեզ այնպէս լաւ իցէ ։ Զի որ ՚ի Տէր
կոչեցեալ է ծառայն՝ ազատ Տեառն է · նոյնպէս և
23 որ ազատն կոչեցեալ է՝ ծառայ Քրիստոսի է ։ Գնոց
24 գնեցայք՝ մի՛ լինիք ծառայք մարդկան ։ Իւրաքանչ-
իւրոք՝ յոր կոչումն կոչեցաւ , եղբա՛րք , ՚ի նմին
կացցէ առաջի Աստուծոյ ։

25 Այլ վասն կուսանաց՝ հրաման ինչ ՚ի Տեառնէ
ո՛չ ունիմ · բայց խրատ տամ՝ որպէս ողորմելոյ ու-

26 բուք 'ի Տեառնէ, հաւատարիմ լինել։ *Համա-
րիմ՝ թէ այնպէս լաւ իցէ. բայց վասն վտանգին
որ 'ի վերայ կայ՝ բարւոք է մարդոյ՝ թէ այնպէս
27 իցէ"։ Կապեալ ես 'ի կին, մի՛ խնդրեր արձակել.
28 արձակեալ ես 'ի կնոջէ, մի՛ խնդրեր կին։ Զի ե-
թէ ամուսնանայցես՝ ոչ մեղար. և եթէ ամուսնա-
նայցէ կոյսն՝ ոչ մեղաւ, բայց նեղութիւն մարմնոյ
ունիցին այնպիսիքն. այլ ես խնայեցի 'ի ձեզ։
29 Բայց զայս ասեմ եղբարք՝ եթէ ժամանակս կարճ-
եալ է այսուհետև. զի որ ունիցին կանայս՝ որպէս
30 թէ չունիցին. Եւ որ լայցենն՝ որպէս թէ ոչ լայ-
ցեն. և որ խնդանն՝ որպէս թէ չխնդայցեն. և որ
31 գնենն՝ որպէս թէ չունիցին. Եւ որ վարենն զաշ-
խարհս՝ որպէս թէ չվայելիցեն. զի անցեալ է վա-
32 յելչութիւն աշխարհիս այսորիկ։ Այլ կամիմ զձեզ
անհոգս լինել. զի որ անկինն է՝ հոգայ զՏեառն, թէ
33 որպէս հաճոյ լիցի Տեառն. Եւ որ կանամբին է,
հոգայ զաշխարհիս՝ թէ որպէս հաճոյ լիցի կնոջ
34 իւրում։ Եւ ահա մեկնեցան 'ի միմեանց առնակինն
և կոյսն. զի կոյսն հոգայ զՏեառն՝ զի իցէ սուրբ
հոգւով և մարմնով, և առնակինն հոգայ զաշխար-
35 հիս՝ թէ որպէս հաճոյ լիցի առն իւրում։ Այլ
զայս վասն ձերոյ օգտի ասեմ. ոչ եթէ խեղդ ինչ
արկանեմ ձեզ, այլ վասն պարկեշտութեան և հր-
պատակութեան Տեառն առանց զբաղանաց։

---

* 'Ի Յոյնն, Վասն որոյ համարիմ՝ թէ այնպէս լաւ իցէ վասն վտանգին որ 'ի վերայ կայ. զի բարւոք է մարդոյ թէ այնպէս իցէ

36 Ապա թէ ոք ամօթ համարեսցի վասն կուսին
իւրոյ՝ եթէ իցէ ելեալ ըստ չափ, և այնպէս ինչ
պարտ իցէ լինել. զոր կամեսցի արասցէ, ոչ մե֊
37 ղանչէ՝ ամուսնասցի: Իսկ որ հաստատեալ է 'ի
սրտի իւրում, և վտանգ ինչ ոչ իցէ նմա, իշխա֊
նութիւն ունի 'ի վերայ կամաց իւրոց. և զայն
ընտրեաց 'ի սրտի իւրում՝ պահել զկոյսն իւր,
38 բարւոք առնէ: Եւ որ ամուսնացուցանէ զկոյսն իւր՝
բարւոք առնէ. և որ ոչ ամուսնացուցանէ՝ լաւ ևս
39 առնէ: Կին կապեալ է՝ ցորքան ժամանակս կեն֊
դանի է այր նորա. ապա եթէ ննջիցէ այր նորա,
ազատ է՝ ում կամիցի ամուսնանալ. այլ միայն Տե֊
40 րամբ: Բայց երանելի ևս է՝ թէ այնպէս կացցէ
ըստ իմում խրատու. ես այսպէս համարիմ, եթէ
և յիս իցէ Հոգի Աստուծոյ:

## ԳԼ. Ը

1 Այլ վասն զոհից կռոցն, գիտեմք եթէ ամենեքին
գիտութիւն ունիմք. գիտութիւն հպարտացուցանէ,
2 այլ սէր շինէ: Եթէ ոք կամիցի գիտել ինչ, չև՛ ևս
3 գիտաց՝ որպէս արժանն էր գիտել: Բայց որ սիրէ
4 զԱստուած, նա և ծանուցեալ է 'ի նմանէ: Այլ
վասն կերակրոցն զոհելոց՝ գիտեմք եթէ ոչինչ իսկ
կուռքդ են յաշխարհի. զի չիք ոք Աստուած բաց
5 'ի միոյն: Զի թէպէտ և իցեն անուանեալ՝ աստ֊
ուածք՝ եթէ յերկինս, և եթէ յերկրի. որպէս և են
6 աստուածք բազումք՝ և տեարք բազումք. Այլ մեզ
մի է Աստուած Հայր՝ յորմէ ամենայն, և մեք 'ի

նա. և մի Տէր Յիսուս Քրիստոս՝ որով ամենայն,
և մեք նովաւ։
7 Այլ ոչ յամենեսին գիտութիւն է. ոմանք առ
խղճի մտաց մինչև ցայժմ զկռոցն իբրև զզոհեալ
ուտեն. և խիղճ մտացն նոցա՝ քանզի տկար է,
8 պղծի։ Այլ կերակուր զմեզ առաջի Աստուծոյ ոչ
կացուցանէ. ոչ եթէ չուտեմք՝ պակասիմք ինչ, և
9 ոչ եթէ ուտեմք՝ առաւելումք ինչ։ Բայց զգոյշ
լերուք՝ գուցէ իշխանութիւնդ ձեր այդ՝ գայթագ-
10 ղութիւն լինիցի տկարացն։ Եթէ ոք տեսանիցէ
զքեզ՝ որ զգիտութիւնդ ունիս՝ բազմեալ ՚ի մեհենի՝
ոչ ապա խիղճ մտաց նորա, որ տկարութեամբ
11 զգածեալ է՝ անդրէն շինիցի ուտել զզոհեալսն. Եւ
կորնչիցի տկար եղբայրն ՚ի քում գիտութեանդ,
12 վասն որոյ Քրիստոսն մեռաւ։ Եւ այնպէս յան-
ցուցեալ յեղբարս, և զխիղճ մտաց տկարացն զայ-
13 րացուցեալ, ՚ի Քրիստոս մեղանչէ։ Վասն որոյ՝
եթէ կերակուր գայթագղեցուցանէ զեղբայրն իմ,
ոչ կերայց միս յաւիտեան, զի մի՛ զեղբայրն իմ
գայթագղեցուցից։

## ԳԼ. Թ.

1 Ոչ ապաքէն ազատ եմ, ոչ ապաքէն առաքեալ
եմ, ոչ ապաքէն զՏէր մեր Յիսուս Քրիստոս ա-
չօք իմովք տեսի, ոչ ապաքէն գործ իմ դուք էք ՚ի
2 Տէր։ Թէպէտ և այլոց չիցեմ առաքեալ՝ այլ գէթ
ձեզ եմ. զի կնիք իմ առաքելութեան իմոյ դուք
3 էք ՚ի Տէր։ Իմ պատասխանի՝ առ որս զիս հարցանի-

4 ցեն՝ այս է ։ Մի՞թէ ո՞չ ունիցիմք իշխանութիւն
5 ուտել և ըմպել ։ Մի՞թէ ո՞չ ունիցիմք իշխանու-
թիւն զքորս կանայս շրջեցուցանել ընդ մեզ . որ-
պէս և այլ առաքեալքն , և եղբարքն Տեառն , և
6 Կեփաս ։ Եթէ միայն ես և Բառնաբա՞ս ո՞չ ունի-
7 ցիմք իշխանութիւն չգործել ինչ ։ Ո՞ ոք երբէք
զինուորիցի իւրովք թոշակօք . ո՞ ոք տնկիցէ այգի՝
և ՚ի պտղոյ նորա ո՞չ ուտիցէ . ո՞ ոք արածիցէ խաշն՝
8 և ՚ի կաթանէ խաշինն ո՞չ ուտիցէ ։ Մի՞թէ ըստ
մարդկութեա՞ն խօսիցիմ զայս . կամ թէ և օրէնքն
9 զսոյն ո՞չ ասիցեն ։ ՚Ի Մովսէսի իսկ յօրէնսն գրեալ
է . Ո՛չ կապեսցես զցռուկ եզին կալոտւոյ . միթէ
10 զեզա՞նց ինչ փոյթ էր Աստուծոյ ։ Ո՞չ ապաքէն
վասն մեր ասէ քանզի վասն մեր գրեցաւ . զի յու-
սով պարտի որ սերմանէն՝ սերմանել . և որ կա-
11 սուն՝ յուսով վայելել ։ Եթէ մեք ՚ի ձեզ զհոգևորսն
սերմանեցաք՝ մեծ ի՞նչ է , եթէ ՚ի ձէնջ զմարմ-
12 նաւորսդ հնձիցեմք ։ Եթէ այլք ձերո՛վ իշխանու-
թեամբդ վայելեն , ո՞չ առաւել ևս մեք . այլ ո՛չ
՚ի գործ ինչ արկաք զիշխանութիւնս զայս . բայց
ամենայնի համբերեմք . զի մի՛ խափան ինչ լինի-
13 ցիմք աւետարանին Քրիստոսի ։ Ո՞չ գիտէք եթէ
որ ՚ի տաճարին գործեն , ՚ի տաճարէ անտի ու-
տեն . և որ սեղանոյն պաշտօնեայք են , ՚ի սեղա-
14 նոյ անտի վայելեն ։ Նոյնպէս և Տէր հրաման
ետ , որոց զաւետարանն աւետարանեն , յաւե-
15 տարանէ անտի կեալ ։ Բայց ես և ո՞չ զմի ինչ
յայսցանէ արկի ՚ի գործ , և ո՞չ գրեցի զայդ՝ զի
ինձ այնպէս ինչ լինիցի . լաւ է ինձ մեռանել

մեռանել, և ոչ զի զպարծանս իմ ոք ընդունայն
16 համարիցի։ Զի եթէ աւետարանեմ, ոչինչ են
ինձ պարծանք. քանզի հարկ 'ի վերայ կայ. բայց
17 վայ է ինձ, եթէ ոչ աւետարանեմ։ Եթէ կամաւ
զայն առնեմ, վարձք են ինձ. և եթէ ակամայ՝
18 տնտեսութիւն յանձն է ինձ։ Եւ արդ՝ զի՞նչ վարձք
իցեն ինձ, եթէ յաւետարանելն ձրի տաց զաւե-
տարանն՝ զի մի՛ զեղծիցիմ ինչ իշխանութեամբս ի-
19 մով յաւետարանի անդ։ Քանզի ազատ էի յա-
մենայնէ՝ և ամենեցուն զանձն 'ի ծառայութեան
20 կացուցի, զի զբազումս շահեցայց։ Եղէ ընդ Հը-
րէայսն իբրև զՀրէայ, զի զՀրէայսն շահեցայց։
21 Եղէ ընդ օրինօք իբրև զայնոսիկ՝ որ ընդ օրինօքն
էին. իբր ոչ եթէ ընդ օրինօքն էի, այլ զի որ ընդ
օրինօքն իցեն՝ և զնոսա շահեցայց. ընդ անօրէնս
եղէ իբրև զանօրէն. իբր ոչ եթէ անօրէն ինչ էի
Աստուծոյ, այլ ընդ օրինօքն Քրիստոսի. զի շա-
22 հեցայց զանօրէնսն։ Եղէ ընդ տկարս իբրև զտկար՝
զի զտկարսն շահեցայց. ընդ ամենայնի ամենայն ե-
23 ղէ, զի թերևս ապրեցուցից զոմանս։ Զայս ամե-
նայն առնեմ վասն աւետարանին, զի կցորդ եղէց
նմա։

24 Ո՞չ գիտէք՝ եթէ որ յասպարիսին ընթանան,
ընթանալ ամենեքին ընթանան. բայց մի ոք առնու
զյաղթութիւնն. այնպէս ընթացարո՛ւք զի հաս-
25 նիցէք։ Ամենայն որ պատերազմի՝ ամենայնի ժուժ-
կալ լինի. նոքա զի զեղծանելի պսակն առնուցուն՝
26 և մեք զանեղծութեան։ Արդ ես իսկ այնպէս ըն-
թանամ, ոչ որպէս յաներևոյթս. այնպէս մրցիմ,

27 որպէս ոչ թէ զհողմս հինչ կոծելով. Այլ ճնշեմ
զմարմին իմ, եւ հնազանդեցուցանեմ, զի գուցէ որ
այլոցն քարոզեցի՝ ես ինքնին անպիտան գտանիցիմ:

## ԳԼ. Ժ.

1 Ո՛չ կամիմ եթէ ագէտք իցէք եղբարք, զի հարքն
մեր ամենեքին ընդ ամպովն էին. եւ ամենեքին ընդ
2 ծովն անցին. Եւ ամենեքին ՚ի Մովսէս մկրտեցան
3 յամպն եւ ՚ի ծովն. Եւ ամենեքին զնոյն հոգեւոր
4 կերակուրն կերան. Եւ ամենեքին զնոյն հոգեւոր
ըմպելին արբին, զի ըմպէին ՚ի հոգեւոր վիմէն՝ որ
երթայր զհետ նոցա. եւ վէմն էր ինքն Քրիստոս.
5 Այլ ոչ եթէ ընդ բազումս ՚ի նոցանէ հաճեցաւ
Աստուած. քանզի տապաստ անկան յանապատի
6 անդ: Եւ այն օրինակաւ լինէր վասն մեր. զի մի՛
լիցուք ցանկացօղք չարեաց, որպէս եւ նոքայն ցան-
7 կացան: Եւ մի՛ կռապաշտք լինել՝ որպէս ոմանք
՚ի նոցանէ, որպէս եւ գրեալ է. Նստաւ ժողո-
8 վուրդն ուտել եւ ըմպել՝ եւ յարեան ՚ի խաղալ: Եւ
մի՛ պոռնկեսցուք, որպէս ոմանք ՚ի նոցանէ պոռնկե-
ցան, եւ անկան ՚ի միում աւուր քսան եւ չորք հա-
9 զարք: Եւ մի՛ փորձեսցուք զՏէր. որպէս ոմանք
՚ի նոցանէ փորձեցին, եւ յօձից անտի սատակեցան:
10 Եւ մի՛ տրտնջեսցուք. որպէս ոմանք ՚ի նոցանէ
11 տրտնջեցին, եւ կորեան ՚ի սատակչէ անտի: Այլ
այն ամենայն օրինակաւ անցանէր ընդ նոսա. բայց
գրեցաւ վասն մերոյ խրատու, յորս վախճան յա-
ւիտենիցն եհաս:

12 Այսուհետև որ համարիցի հաստատուն կալ՝
13 զգո՛յշ լիցի, գուցէ անկանիցի: փորձութիւն 'ի
ձեր վերայ՝ ո՛չ է եկեալ՝ բաց 'ի մարդկանէ: այլ
հաւատարիմ է Աստուած՝ որ ո՛չ արկցէ զձեզ 'ի
փորձութիւն առաւել քան զկար ձեր, այլ արասցէ
ընդ փորձութեանն և զելս՝ զի համբերել կարաս-
14 ջիք: Վասն որոյ սիրելիք իմ, փախերո՛ւք 'ի կռա-
15 պաշտութենէ: Իբրև ընդ իմաստնոց խօսիմ. ընտ-
16 րեցէ՛ք ձեզէն զոր ասեմս: Բաժակն օրհնութեան
զոր օրհնեմք՝ ո՞չ ապաքէն հաղորդութիւն է արեանն
Քրիստոսի. հացն զոր բեկանեմք՝ ո՞չ ապաքէն հա-
17 ղորդութիւն է մարմնոյն Քրիստոսի: Զի մի հաց՝
մի մարմին եմք բազումքս. զի ամենեքին 'ի միոջէ
18 հացէ անտի վայելեմք: Տեսէ՛ք զԻսրայէլ ըստ
մարմնոյ. ո՞չ ապաքէն՝ որ ուտեն 'ի զոհիցն՝ հաղորդք
19 են սեղանոյն: Իսկ արդ զի՞նչ ասեմ, թէ զոհեալն
20 իցէ՞ ինչ. և կամ թէ կուռքն իսկ իցե՞ն ինչ: Այլ
զոր զոհենն հեթանոսք, դիւաց՝ և ո՛չ Աստուծոյ
զոհեն. ո՛չ կամիմ զձեզ հաղորդս դիւաց լինել.
քանզի ո՛չ կարէք զբաժակն Տեառն ըմպել՝ և զբա-
21 ժակն դիւաց. Եւ ո՛չ կարէք 'ի սեղանոյ Տեառն
22 վայելել՝ և 'ի սեղանոյ դիւաց: Եթէ նախանձ ինչ
արկանիցեմք Տեառն, միթէ զօրագո՞յնք իցեմք քան
23 զնա: Ամենայն ինչ ինձ մարթ է, այլ ո՛չ ամենայն
ինչ օգուտ է. ամենայն ինչ ինձ մարթ է, այլ ո՛չ
24 ամենայն ինչ շինէ: Մի՛ ոք զանձին և եթ խնդրիցէ՝
25 այլ և զընկերին: Ամենայն ինչ որ 'ի սպանդանոցի
26 վաճառի, կերա՛յք՝ և մի՛ խարէք վասն խղճի մտաց. Զի
27 Տեառն է երկիր լրիւ իւրով: Եթէ ոք կոչէ զձեզ

յանհաւատից՝ և կամիցիք երթալ. զամենայն ինչ
որ առաջի դնիցի, կերայք՝ և մի խտրէք վասն խղճի
28 մտաց: Ապա եթէ ոք ասասցէ ձեզ՝ թէ Այդ զոհ-
եալ է, մի ուտիցէք վասն նորա՝ որ գուշակն եղև,
29 և վասն խղճի մտացն: Այլ զխիղճ մտացն ասեմ,
ոչ զիւրն, այլ զընկերին. իսկ ընդէ՞ր բնաւ ազա-
30 տութիւնս իմ դատիցի յայլոյ խղճէն մտաց: Եթէ
ես շնորհօք վայելեմ, ընդէ՞ր հայհոյիցիմ, վասն
31 որոյ ես գոհանամ: Արդ՝ եթէ ուտիցէք՝ եթէ ըմ-
պիցէք՝ եթէ զինչ և առնիցէք, զամենայն ինչ ՚ի
32 փառս Աստուծոյ արասջիք: Առանց գայթագղու-
թիւն դնելոյ՝ Հրէից և Հեթանոսաց՝ լինիջիք, և ե-
33 կեղեցւոյն Աստուծոյ: Որպէս և ես ամենևին ամե-
նեցուն հաճոյ լինիմ. ոչ խնդրեմ զանձին օգուտ,
այլ զբազմաց՝ զի ապրեսցին:

## ԳԼ. ԺԱ.

1 Նմանօղք ինձ եղերո՛ւք, որպէս և ես Քրիստոսի:
2 Գովեմ զձեզ՝ զի զամենայն ինչ զիմ յիշէք. և
որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ունիցիք:
3 Կամիմ զի գիտիցէք դուք. եթէ առն ամենայնի
գլուխ Քրիստոս է, և գլուխ կնոջ այր, և գլուխ
4 Քրիստոսի Աստուած: Ամենայն այր՝ յորժամ յա-
ղօթս կայցէ՝ կամ մարգարէանայցէ՝ և զգլուխն
5 ծածկեալ ունիցի, յամօթ առնէ զգլուխն իւր: Եւ
ամենայն կին յորժամ յաղօթս կայցէ՝ կամ մար-
գարէանայցէ բացաւ գլխով՝ յամօթ առնէ զգլուխն
6 իւր, զի այնպէս համարէ՝ թէ գերծեալ իցէ: Զի
եթէ ոչ սքողեսցի կին, փոքրեսցէ զհերս իւր. ա-

պա եթէ անպատեհ է կնոջ փոքրել կամ գերծուլ,
7 սքողեսցի ։ Այր մարդոյ չէ պարտ ծածկել զգլուխ
իւր ․ զի պատկեր և փառք Աստուծոյ է․ իսկ կին
8 փառք առն իւրոյ է ։ Զի ոչ եթէ այր 'ի կնոջէ է,
9 այլ կին յառնէ ։ Քանզի ոչ իսկ հաստատեցաւ
10 այր վասն կնոջ, այլ կին վասն առն ։ Վասն այ-
նորիկ պարտի կինն շուք դնել գլխոյն վասն հրեշ-
11 տակաց ։ Բայց ոչ կին առանց առն, և ոչ այր
12 առանց կնոջ 'ի Տէր ։ Զի որպէս կին յառնէ՝
նոյնպէս և այր 'ի կնոջէ․ բայց ամենայն յԱստուծոյ ։
13 Այլ դուք ձեզէն տուք զիրաւ․ արժա՞ն է կնոջ
մարդոյ հոլանի յաղօթս կալ առաջի Աստուծոյ ։
14 Եւ ո՞չ բնութիւնն իսկ ուսուցանէ զձեզ․ զի այր
15 եթէ գիսաւոր է՝ անարգանք են նմա․ Բայց կին
եթէ գիսաւոր է՝ փառք են նմա․ զի գէսք փոխա-
16 նակ զգեստու տուեալ են նմա ։ Ապա թէ ոք կամի
հակառակօղ լինել, մեք չունիմք այնպիսի սովո-
րութիւն, և ոչ եկեղեցիքն Աստուծոյ ։
17 Այլ զայս պատուիրեմ, ոչ որպէս թէ գովիցեմ,
զի ոչ 'ի լաւ անդր՝ այլ* 'ի վատթարն նկրտիք" ։
18 "Նախ՝ յորժամ 'ի մի վայր ժողովիցիք յեկեղեցին,
լսեմ եթէ հերձուածք գոն 'ի ձեզ․ և սակաւ ինչ
19 հաւատացի ։ Բայց և հերձուածք լինելոց են 'ի
20 ձեզ․ զի որ ընտիրքն իցեն 'ի ձեզ՝ երևեսցին ։ Եւ
արդ՝ 'ի ժողովելն ձեզ 'ի միասին՝† ոչ է տունն
21 Տեառն ձեզ տեղի հաց ուտելոյ" ։ Զի իւրաքան-

* 'Ի Յոյնն, 'ի վատթարն ժողովիք

† 'Ի Յոյնն, ոչ է զՏէրունական ընթրիս ուտել

չիւրոք զիւր ընթրիս յառաջանայ ուտել. և ոմն
22 քաղցեալ՝ և ոմն արբեալ։ Միթէ տունս ո՞չ ունի-
ցիք ուտելոյ կամ ըմպելոյ. եթէ զեկեղեցեա՞ն Աս-
տուծոյ արհամարհիցէք, և յամօթ առնէք զչքա-
ւորսն. զի՞նչ ասացից. գովեցի՞ց զձեզ. յայդմ ո՛չ
23 գովեմ։ Զի ես ընկալայ ’ի Տեառնէ՝ զոր և ձեզն ա-
ւանդեցի, եթէ Տէր Յիսուս ’ի գիշերին յորում
24 մատնէր, ա՛ռ հաց, Գոհացաւ՝ եբեկ և ասէ. Առէք՝
և կերա՛յք. այս է մարմին իմ, որ վասն ձեր բաշխի.
25 զա՛յս արարէք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս և զբա-
ժակն յետ ընթրեացն ա՛ռ և ասէ. Այս բաժակ՝ նոր
ուխտ է իմով արեամբ. զայս արարէք քանիցս անգամ
26 թէ ըմպիցէք՝ առ իմոյ յիշատակի։ Քանիցս ան-
գամ թէ ուտիցէք զհացս զայս, և զբաժակս ըմպի-
ցէք, զմահն Տեառն պատմեցէք. մինչև եկեսցէ նա։
27 Այսուհետև որ ուտիցէ զհացս, կամ ըմպիցէ զբա-
ժակս Տեառն անարժանութեամբ, պարտական ե-
28 ղիցի մարմնոյ և արեանն Տեառն։ Փորձեսցէ մարդ
զանձն իւր, և ապա ’ի հացէ անտի կերիցէ, և ’ի
29 բաժակէն արբցէ։ Զի որ ուտէ և ըմպէ անարժա-
նութեամբ՝ դատաստանս անձին իւրում ուտէ և
30 ըմպէ. զի ո՛չ խտրէ զմարմինն Տեառն։ Վասն այ-
նորիկ իսկ են ’ի ձեզ բազում հիւանդք և ախտա-
ժէտք. և շատ ևս այն են, որ և ննջեցեալք իսկ ի-
31 ցեն։ Զի եթէ զանձինս քննէաք՝ ապա ո՛չ դա-
32 տապարտէաք։ Եւ եթէ դատիմք՝ ’ի Տեառնէ խրա-
տիմք. զի մի՛ ընդ աշխարհի դատապարտեսցուք։
33 Այսուհետև եղբարք՝ յորժամ ’ի մի վայր ժողովի-
34 ցիք ուտել՝ միմեանց մնասջի՛ք։ Ապա թէ ոք քաղց-

եալ իցէ՝ ՚ի տան իւրում կերիցէ. զի մի ՚ի դատա-
պարտութիւն ժողովիցիք։ Բայց զայլ ինչ յոր-
ժամ եկից՝ յայնժամ պատուիրեցից։

## ԳԼ. ԺԲ

1 Այլ վասն հոգեւորացն եղբարք՝ ոչ կամիմ ե-
2 թէ տգէտք իցէք։ Գիտէք իսկ՝ զի մինչ հեթա-
նոսքն էիք, առ կուռսն անմռունչս՝ որպէս երթայիք
3 և գայիք։ Վասն որոյ ցուցանեմ ձեզ. զի ոչո՛ք Հոգ-
ւով Աստուծոյ խօսի՝ և ասիցէ թէ նզովեալ Յի-
սուս. և ո՛չ ոք կարէ ասել՝ Տէր զՅիսուս, եթէ
4 ոչ Հոգւովն Սրբով։ Թէպէտ և բաժինք շնորհաց
5 են՝ այլ Հոգի նոյն է։ Եթէ բաժինք պաշտամանց
6 են, այլ Տէր նոյն է։ Եթէ բաժինք յաջողութեանց
են, այլ Աստուած նոյն է. որ յաջողէ զամենայն
7 յամենայնի։ Բայց իւրաքանչիւր ումեք տուեալ է
յայտնութիւն Հոգւոյն՝ * առ իւրաքանչիւր օգուտ։
8 Ումեմն ՚ի Հոգւոյն տուեալ է բան իմաստութեան.
9 այլում բան գիտութեան ըստ նմին Հոգւոյ. Միւ-
սումն հաւատք նովին Հոգւով. այլում շնորհք բը-
10 ժշկութեանց նովին Հոգւով. Այլում յաջողու-
թիւնք զօրութեանց. այլում մարգարէութիւն.
այլում ընտրութիւն հոգւոց. այլում ազգք լեզուաց.
11 այլում թարգմանութիւն լեզուաց։ Այլ զայս ա-
մենայն յաջողէ մի և նոյն Հոգի, և բաժանէ իւ-
րաքանչիւր՝ որպէս և կամի։

* Ի Յոյնն, առ ՚ի օգուտ

12 Որպէս մարմին մի է, և անդամս բազումս ունի․
և ամենայն բազում անդամք մարմնոյն՝ մի մարմին
13 է․ նոյնպէս և Քրիստոս։ Քանզի միով Հոգւով
մեք ամենեքին 'ի մի մարմին մկրտեցաք․ եթէ Հրե-
էայք, եթէ Հեթանոսք, եթէ ծառայք, եթէ ա-
14 զատք, ամենեքին զմի Հոգի արբաք։ Քանզի մար-
15 մին ոչ մի անդամ է, այլ բազում։ Եթէ ասիցէ
ոտն, Զի չեմ ձեռն՝ չեմ 'ի մարմնոյ անտի, ոչ
16 այնու չիցէ 'ի մարմնոյ անտի։ Եւ եթէ ասիցէ
ունկն, Զի չեմ ակն՝ չեմ 'ի մարմնոյ անտի,
17 ոչ այնու չիցէ 'ի մարմնոյ անտի։ Եթէ ամենայն
մարմին ակն էր՝ ուր էր ունկն․ և եթէ ամենայն
18 լսելիք էր՝ ուր էին հոտոտելիք։ Բայց արդ՝ Աստ-
ուած եդ զանդամսն՝ զմի մի իւրաքանչիւր 'ի նոցա-
19 նէ 'ի մարմնին՝ որպէս և կամեցաւ։ Ապա թէ էր
20 ամենայն մի անդամ, ուր էր մարմին։ Բայց արդ՝
21 անդամք բազում են, և մարմին մի։ Ո՛չ կարէ
ակն ասել ձեռին, թէ Չես ինձ պիտոյ, և կամ
22 դարձեալ գլուխ ցոտս՝ թէ Չէք ինձ պիտոյ։ Այլ
առաւել որ թուին անդամք մարմնոյն՝ թէ տկարա-
23 գոյնք իցեն, կարևորք են․ Եւ որ թուինն թէ
անարգագոյնք իցեն մարմնոյն, այնց առաւելագոյն
պատիւ առնեմք․ և ամօթոյքն մեր առաւել ևս
24 պարկեշտութիւն ունին։ Եւ պարկեշտիցն մերոց
չէ ինչ պիտոյ․ քանզի Աստուած խառնեաց զմար-
25 մինն, և նուազին առաւել ևս պատիւ ետ․ Զի
մի՛ իցեն հերձուածք 'ի մարմնի անդ, այլ զի նոյնք
26 զմիմեանց հոգայցեն անդամքն։ Եւ եթէ վշտանայ ինչ
մի անդամն, վշտանան ամենայն անդամքն ընդ նմա․

և եթէ փառաւորի մի անդամն, խնդան ամենայն
27 անդամքն ընդ նմա։ Այլ դուք մարմին Քրիստոսի
էք՝* և անդամք յանդամոց նորա։
28 Եւ զորս եդ Աստուած յեկեղեցւոջ՝ այս են.
նախ զառաքեալս, երկրորդ զմարգարէս, երրորդ
զվարդապետս, ապա զօրութիւնս, ապա շնորհս
բժշկութեանց, օգնութիւնս, վարիչս, ազգս լեզ-
29 ուաց, † թարգմանութիւնս լեզուաց։ Միթէ ա-
մենեքի՞ն առաքեալք իցեն. միթէ ամենեքի՞ն մար-
գարէք իցեն. միթէ ամենեքի՞ն վարդապետք իցեն.
30 Միթէ ամենեքի՞ն զօրութիւնք իցեն. միթէ ամենե-
քի՞ն շնորհս բժշկութեան ունիցին. միթէ ամենե-
քի՞ն 'ի լեզուս խօսիցին։ միթէ ամենեքի՞ն թարգ-
31 մանիցեն։ Բայց նախանձաւո՛ր լերուք շնորհացն,
որ լաւն են։ Այլ ես առաւել ևս ճանապարհ ցու-
ցանեմ ձեզ։

## ԳԼ. ԺԳ.

1 Եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ և զհրեշտա-
կաց՝ և սէր ոչ ունիցիմ, եղէ ես իբրև զպղինձ որ
2 հնչէ, կամ իբրև զծնծղայս՝ որ ղօղանջեն։ Եւ
եթէ ունիցիմ զմարգարէութիւն, և գիտիցեմ զխոր-
հուրդս ամենայն՝ և զամենայն գիտութիւն. և եթէ
ունիցիմ զամենայն հաւատս՝ մինչև զլերինս փոփո-
3 խելոյ, և սէր ոչ ունիցիմ, ոչինչ եմ։ Եւ եթէ

* Ի Յոյնն, և անդամք 'ի մասնէ

† Ի Յոյնն չէր։

ջամբիցեմ զամենայն ինչս իմ աղքատաց, և մատ-
նիցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունի-
4 ցիմ, ոչի՛նչ օգտիմ։ Սէր երկայնամիտ է՝ քաղց-
րանայ. սէր ո՛չ նախանձի, ո՛չ ամբարհաւաճէ, ո՛չ
5 հպարտանայ. Ո՛չ յանդգնի, ո՛չ խնդրէ զիւր, ո՛չ
6 գրգռի, ո՛չ խորհի զչար. Ո՛չ խնդայ ընդ անիրա-
7 ւութիւն՝ այլ խնդայ ընդ ստուգութիւն. Զամենայնի
տանէ. ամենայնի հաւատայ. ամենեւին յուսայ. ա-
8 մենայնի համբերէ։ Սէր ո՛չ երբէք անկանի. եթէ
մարգարէութիւնք են՝ խափանեսցին. եթէ լեզուք՝
9 լռեսցեն. եթէ գիտութիւն՝ խափանեսցի։ Ք՛անզի
փոքր 'ի շատէ գիտեմք. և փոքր 'ի շատէ մարգա-
10 րէանամք ։ Զայլ յորժամ եկեսցէ կատարումն,
փոքր 'ի շատէս խափանեսցի։
11 Մ՛ինչ տղայն էի՝ իբրև զտղայ խօսէի, իբրև
զտղայ խորհէի, իբրև զտղայ համարէի. այլ յոր-
ժամ եղէ այր՝ զտղայութեանն 'ի բաց խափանեցի։
12 Զայժմ տեսանեմք իբրև ընդ հայելի օրինակաւ,
այլ յայնժամ դէմ յանդիման. այժմ խելամուտ
եմ փոքր 'ի շատէ, այլ յայնժամ գիտացից՝ որ-
13 պէս և նայն ծանեաւ զիս։ Բայց արդ՝ մնան հաւատք՝
յոյս՝ սէր, սոքա երեքեան. և մեծ քան զսոսա
սէր է։

## ԳԼ. ԺԴ

1 Զհետ երթայք սիրոյ, և նախանձաւո՛ր լերուք
հոգևորացն՝ առաւել զի և դուք մարգարէանայցէք։
2 Զի որ խօսի 'ի լեզուս՝ ո՛չ ընդ մարդկան խօսի, այլ

ընդ Աստուծոյ. զի ո՛չ ոք է՝ որ լսէ, բայց Հոգւով
3 խօսի խորհուրդս։ Իսկ որ մարգարէանայն, մարդ-
կան խօսի շինութիւն եւ մխիթարութիւն եւ սփոփու-
4 թիւն։ Որ խօսի ՚ի լեզուս՝ զանձն իւր շինէ. եւ որ
5 մարգարէանայն՝ զեկեղեցին շինէ։ Կամիմ զի ա-
մենեքին դուք ՚ի լեզուս խօսիցիք՝ առաւել զի մար-
գարէանայցէք. զի լաւ է որ մարգարէանայն՝ քան
զայն որ ՚ի լեզուս խօսիցի. բայց եթէ թարգմա-
նիցէ՝ զի եկեղեցին շինութիւն առնուցու։
6 Բայց այժմ եղբարք՝ եթէ եկից առ ձեզ ՚ի լե-
զուս խօսելով՝ զի՞նչ օգուտ լինիցիմ ձեզ՝ եթէ ոչ
խօսիցիմ, կամ յայտնութեամբ, կամ գիտու-
թեամբ, կամ մարգարէութեամբ, կամ վարդա-
7 պետութեամբ։ Այնպէս՝ որպէս անշունչքն ձայն
տայցեն, եթէ փող եւ եթէ քնար. զի եթէ ընտ-
րութիւն ինչ բարբառոյն չտանիցեն, զիա՞րդ ծա-
նիցի փողոյն հարկանել՝ կամ քնարին հնչել։
8 Քանզի եթէ խառնաձայն արձակիցի փողն, ո՞վ
9 պատրաստեսցի ՚ի պատերազմ։ Այնպէս եւ դուք՝
եթէ լեզուօք ոչ նշանակիցէք զբանն՝ զիա՞րդ ծա-
նիցիցին խօսքն. զի լինիցիք այնուհետեւ իբրեւ ընդ
10 օդս խօսեցեալք։ Ո՞չ այնչափ ազգք ձայնից են
11 յաշխարհի, եւ ոչինչ անձայն է։ Իսկ արդ՝ եթէ
ո՛չ գիտիցեմ զզօրութիւն ձայնին, լինիցիմ այնմ
որ խօսիցին ընդ իս՝ խուժ, եւ նա որ խօսիցին ընդ
12 իս՝ խուժ։ Այնպէս եւ դուք՝ քանզի նախանձորդք
էք հոգեւորացն, վասն շինուածոյ եկեղեցւոյն՝ խնդ-
13 րեցէք զի առաւել եւս իցէք։ Վասն որոյ որ խօսին
՚ի լեզուս, աղօթս արասցէ՝ զի եւ թարգմանիցէ։

14 *Եթէ կամ յաղօթս լեզուաւ՝ հոգին իմ կայ յա-*
15 *ղօթս, այլ միտք իմ անպտուղ են։ Իսկ արդ՝*
*զի՞նչ իցէ. կացից յաղօթս հոգւով, կացից յա-*
*ղօթս և մտօք. սաղմոս ասացից հոգւով, սաղմոս*
16 *ասացից և մտօք։ Ապա թէ ոչ՝ եթէ օրհնեսցես*
*հոգւով, որ կայցէ 'ի տեղւոջ տգիտին, զիա՞րդ ա-*
*սիցէ 'ի քում գոհութեանդ՝ զԱմէնն. քանզի զոր*
17 *ասեսն՝ նա ոչ գիտէ։ Զի դու բարւոք գոհանաս,*
*այլ ընկերն ոչ շինի։*

18 *Գոհանամ զԱստուծոյ* վասն ամենեցուն ձեր՝*
19 *առաւել լեզուաւ խօսիմ։ Այլ 'ի մէջ եկեղեցւոյ*
*կամիմ բանս հինգ մտօք խօսել՝ զի և զայլս խրա-*
20 *տեցեմ, քան զբազում բանս լեզուաւ։ Եղբարք մի՛*
*լինիք տղայք մտօք, այլ 'ի չարեաց տղայացարո՛ւք,*
21 *և մտօք կատարեալ լինիջի՛ք։ Քանզի և յօրէնսն*
*գրեալ է, եթէ Յօտար լեզուս՝ և 'ի շրթունս օտա-*
*րոտիս խօսեցայց ընդ ժողովրդեանդ ընդ այդմիկ,*
22 *սակայն և ոչ այնպէս լուիցեն ինձ՝ ասէ Տէր։ Ա-*
*պա ուրեմն լեզուք նշանակի վասն են՝ ոչ հաւա-*
*տացելոց՝ այլ անհաւատից. իսկ մարգարէութիւն՝*
23 *ոչ անհաւատից՝ այլ հաւատացելոց։ Ապա եթէ*
*գայցէ եկեղեցին ամենայն 'ի մի վայր, և ամենեքին*
*'ի լեզուս խօսիցին, և մտանիցեն անդր տգէտք կամ*
24 *անհաւատք. ոչ ասիցեն՝ եթէ զմի՞ մոլիք։ Իսկ ե-*
*թէ ամենեքին մարգարէանայցեն, և մտանիցէ ոք*
*անդր անհաւատ՝ կամ տգէտ, յանդիմանի յամե-*

---

* Ի Յոյնն, *քան զամենեսին զձեր առաւել լեզուօք խօսիմ*

25 նեցունց, և քննի յամենեցունց. Եւ գաղտնիք սրտի
նորա յայտնի լինին, և ապա անկեալ 'ի վերայ ե-
րեսաց՝ երկիրպագանիցէ Աստուծոյ, և խոստովան
լինիցի՝ թէ Արդարև Աստուած է 'ի ձեզ:
26 Եւ արդ զի՞նչ իցէ եղբարք. յորժամ 'ի մի վայր
ժողովիցիք, իւրաքանչիւրոք 'ի ձէնջ, եթէ սաղմոս
ունիցի, եթէ վարդապետութիւն ունիցի, եթէ
յայտնութիւն ունիցի, եթէ լեզու ունիցի, եթէ
թարգմանութիւն ունիցի, ամենայն 'ի շինած լի-
27 նիցի: Եթէ 'ի լեզու ոք խօսեսցի՝ երկուք, և ե-
թէ ևս աւելի՝ երեք, և ապա մի ըստ միոջէ. և մինն
28 թարգմանիցէ: Ապա եթէ չիցէ՞ ոք՝ որ թարգմա-
նիցէ, լո՛ւռ լիցի յեկեղեցւոջն. ընդ միտս իւր՝ և
29 ընդ Աստուծոյ խօսեսցի: Բայց մարգարէք երկու
30 կամ երեք խօսեսցին, և այլքն քննեսցեն: Ապա
եթէ այլ ումեք որ նստիցին՝ յայտնեսցի, առաջինն
31 լռեսցէ: Քանզի կարող էք ամենեքին մի ըստ միո-
ջէ մարգարէանալ. զի ամենեքեան ուսանիցին, և
32 ամենեքեան մխիթարեսցին: Քանզի և հոգիք իսկ
33 մարգարէից՝ մարգարէից հնազանդին: Զի ո՛չ ե-
թէ խռովութեան է Աստուած՝ այլ խաղաղու-
34 թեան, որպէս յամենայն եկեղեցիս սրբոց: Կա-
նայք յամենայն եկեղեցիս լո՛ւռ լիցին. զի ո՛չ հրա-
մայի նոցա խօսել՝ այլ հնազանդ լինել. որպէս և
35 օրէնքն իսկ ասեն: Ապա եթէ ուսանել ինչ կա-
միցին, 'ի տան զարս իւրեանց հարցանիցեն. քանզի
անպատեհ է կնոջ մարդոյ յեկեղեցւոջ խօսել:
36 Եթէ 'ի ձէ՞նջ բանն Աստուծոյ ել, և կամ առ
37 ձե՞զ միայն եհաս: Իսկ եթէ ոք համարիցի մարգա-

րէ լինել՝ կամ հոգեւոր, գիտասցէ զոր գրեցից առ
38 ձեզ, թէ Տեառն պատուիրանք են։ Ապա թէ ոք
39 տգիտանայցէ, տգիտասցի։ Այսուհետեւ եղբարք,
նախանձեցարո՛ւք մարգարէանալ՝ եւ զխօսելն լեզուօք
40 մի՛ արգելուք։ Եւ ամենայն ինչ ձեր պարկեշտու-
թեամբ եւ ըստ կարգի լինիցի։

## ԳԼ. ԺԵ

1 Ցուցանեմ ձեզ եղբարք՝ զաւետարանն իմ, զոր
աւետարանեցի ձեզ. զոր եւ ընկալարուք, յոր եւ
2 հաստատեալդ էք. Որով ապրեցէքն, որով բա-
նիւ աւետարանեցի ձեզ՝ թէ ունիցիք. բայց եթէ
3 ՚ի զուր ինչ հաւատայցէք։ Զի ես ձեզ զայն նախ
աւանդեցի՝ զոր եւ ես ընկալայ. թէ եւ Քրիստոս
4 մեռաւ վասն մեղաց մերոց ըստ գրոց, Եւ զի թա-
ղեցաւ, թէ եւ յարեաւ յաւուր երրորդի՝ ըստ գրոց.
5 Եւ թէ երեւեցաւ Կեփայի, եւ ապա երկոտասանիցն.
6 Ապա երեւեցաւ աւելի եւս քան զհինգ հարիւր եղ-
բարց միանգամայն. յորոց բազումք կան մինչեւ
7 ցայժմ, եւ ոմանք ննջեցին։ Եւ ապա երեւեցաւ Յա-
8 կովբայ, ապա առաքելոցն ամենեցուն։ Հուսկ յե-
տոյ քան զամենեսին՝ իբրեւ անարգի միոյ՝ երեւեցաւ
9 եւ ինձ։ Զի ես իսկ եմ տրուպն առաքելոց. որ չեմ
իսկ արժանի թէ կոչեցայց առաքեալ. զի հալածեցի
10 զեկեղեցին Աստուծոյ։ Այլ շնորհօքն Աստուծոյ եմ
զինչ եւ իցեմ. եւ շնորհք նորա որ յիս՝ ընդունայն
ինչ ո՛չ եղեն. այլ առաւել քան զնոսա ամենեսին
վաստակեցի. եւ ո՛չ եթէ ես՝ այլ շնորհքն Աստուծոյ

11 որ ընդ իս: Արդ եթէ ես, և եթէ նոքա՝ այսպէս քա-
12 րոզեցաք, և դուք այսպէս հաւատացիք: Ապա եթէ
Քրիստոս քարոզի թէ ՚ի մեռելոց յարուցեալ է,
զիա՞րդ ասեն ոմանք ՚ի ձէնջ՝ եթէ Յարութիւն մե-
13 ռելոց չիք: Եթէ յարութիւն մեռելոց չի՛ք, ապա և
14 Քրիստոս չէ՛ յարուցեալ: Եւ եթէ Քրիստոս չիցէ
յարուցեալ, ընդունայն է քարոզութիւնն մեր. ըն-
15 դունայն են և հաւատքն ձեր. Եւ գտանիցիմք սուտ
վկայք Աստուծոյ, զի վկայեցաք զԱստուծոյ՝ թէ Յա-
րոյց զՔրիստոս. զոր ո՛չն արդեօք յարոյց՝ եթէ
16 մեռեալք ո՛չ յառնիցեն: *Իսկ եթէ մեռեալք" ո՛չ
17 յառնեն՝ ապա և Քրիստոս չէ՛ յարուցեալ: Եւ
եթէ Քրիստոս չիցէ յարուցեալ, ընդունայն են
հաւատքն ձեր. և †տակաւին ՚ի մեղս կայցէք":
18 ‡Իսկ արդ որ ննջեցինն ՚ի Քրիստոս, կորեա՞ն
19 արդեօք": Եթէ այսու կենօքս միայն յուսացեալ
եմք ՚ի Քրիստոս, ողորմելի եմք քան զամենայն
մարդիկ:
20 Այլ արդ՝ Քրիստոս յարուցեալ է ՚ի մեռելոց՝
21 առաջին պտուղ ննջեցելոց. Քանզի մարդով եղև
22 մահ, և մարդով յարութիւն մեռելոց: Որպէս Ա-
դամաւն ամենեքին մեռանին, նոյնպէս և Քրիս-
23 տոսիւ ամենեքեան կենդանասցին: Իւրաքանչիւր
յիւրում կարգի. նախ Քրիստոս, և ապա Քրիս-

---

* ՚Ի Յոյնն, Զի եթէ մեռեալք

† ՚Ի Յոյնն, տակաւին ՚ի մեղս ձեր կայք

‡ ՚Ի Յոյնն, Ապան որոյ և որ ննջեցինն ՚ի Քրիս-
տոս կորեան

24 տոսեանք 'ի գալստեան նորա ։ Եւ ապա կատա-
րած ․ յորժամ տացէ 'ի ձեռս զթագաւորութիւնն
Աստուծոյ և Հօր ․ յորժամ խափանեսցէ զամե-
նայն իշխանութիւնս և զամենայն պետութիւն և
25 զզօրութիւն ։ Զի պարտ է նմա թագաւորել՝ մինչև
դիցէ զամենայն թշնամիս 'ի ներքոյ ոտից իւրոց ։
26 Յետին թշնամին խափանի մահ ․ * Եւ զամենայն
27 ինչ՛ հնազանդ արար 'ի ներքոյ ոտից նորա ։ Այլ
յորժամ ասիցէ , թէ հնազանդեալ է նմա ամե-
նայն , յայտ է՝ թէ բաց յայնմանէ՝ որ հնազան-
28 դեցոյց նմա զամենայն ։ Այլ յորժամ հնազանդեսցի
նմա ամենայն՝ յայնժամ և ինքն Որդի հնազանդե-
սցի այնմ , որ հնազանդեցոյց նմա զամենայն ․ զի ե-
29 ղիցի Աստուած ամենայն յամենայնի ։ Ապա թէ ոչ՝
զի՞նչ գործիցեն , որ մկրտիցինն վասն մեռելոց , ե-
թէ արդարև մեռեալք ոչ յառնիցեն ․ ընդէ՞ր իսկ
30 ընդ մկրտին վասն նոցա ․ Ընդէ՞ր և մեք ճգնիմք
31 յամենայն ժամ , Եւ հանապազ մեռանիմք ․ 'ի պար-
ծանս ձեր երդնում եղբարք՝ զոր ունիմ 'ի Քրիս-
32 տոս Յիսուս 'ի Տէր մեր ։ Եթէ վասն մարդոյ 'ի
գազանամարտի լեալ էի յԵփեսոս , զի՞նչ օգուտ
էր ինձ , եթէ մեռեալք ոչ յառնեն ․ կերիցո՛ւք
33 արբցո՛ւք՝ քանզի վաղիւ մեռանիմք ։ Մի՛ խաբիք ․
ապականեն զբարս քաղցունս բանք չարք ։
34 Սթափեցարո՛ւք արդարութեամբ՝ և մի՛ մեղանչէք ․
զի զգիտութիւն Աստուծոյ ոչ ունին ոմանք ․ առ ա-
35 մօթոյ ձերոյ ասեմ ։ Այլ ասիցէ ոք ․ Զիա՞րդ յառ-

* 'Ի Յոյն․, Զի զամենայն ինչ

36 նեն մեռեալք՝ կամ որո՞վ մարմնով գայցեն ։ Ան-
միտ դու՝ զոր սերմանես, ոչ կենդանանայ՝ եթէ ոչ
37 մեռանիցի ։ Եւ զոր սերմանեսն, ոչ զնոյն մարմին որ
ծնանելոցն իցէ՝ սերմանես, այլ հատ մերկ. եթէ ցո-
38 րենոյ իցէ՝ և եթէ այլոց սերմանեաց ։ Եւ Աստուած
տայ նմա մարմին՝ որպէս և կամի. և իւրաքանչիւր
39 սերմանեացն զիւր մարմին ։ Ո՛չ ամենայն մարմին
նոյն մարմին է, այլ՝ այլ մարմին է մարդկան, և
այլ մարմին անասնոց, այլ մարմին թռչնոց՝ և այլ
40 մարմին ձկանց ։ Եւ մարմինք երկնաւորք՝ և մար-
մինք երկրաւորք. այլ՝ այլ փառք երկնաւորաց՝ և
41 այլ փառք երկրաւորաց ։ Այլ փառք արեգական,
և այլ փառք լուսնի, և այլ փառք աստեղաց. և
42 աստղ քան զաստղ առաւել է փառօք ։ Նոյնպէս և
յարութիւն մեռելոց. սերմանի ապականութեամբ՝
43 և յառնէ առանց ապականութեան. Սերմանի ա-
նարգութեամբ՝ և յառնէ փառօք. սերմանի տկա-
44 րութեամբ՝ և յառնէ զօրութեամբ. Սերմանի մար-
մին շնչաւոր՝ և յառնէ մարմին հոգևոր. եթէ գոյ
45 մարմին շնչաւոր, գոյ և հոգևոր ։ Որպէս և գրեալ
է, Եղև մարդն առաջին Ադամ 'ի շունչ կենդա-
46 նի. երկրորդ Ադամ 'ի հոգի կենդանարար ։ Բայց
ոչ նախ հոգևորն. այլ շնչաւորն, և ապա հոգե-
47 ւորն ։ Առաջին մարդն յերկրէ հողեղէն. իսկ երկ-
48 րորդ մարդն՝ Տէր յերկնից ։ Որպէս հողեղէնն,
նոյնպէս և հողեղէնքս, և որպէս երկնաւորն՝ նոյն-
49 պէս և երկնաւորքն ։ Եւ որպէս զգեցաք զպատկեր
հողեղինին, զգեցցո՛ւք և զպատկեր երկնաւորին ։
50 Բայց զայս ասեմ եղբարք՝ եթէ մարմին և արիւն

զարքայութիւնն Աստուծոյ ժառանգել ոչ կարեն ։
եւ ոչ ապականութիւն զանապականութիւն ժառան-
51 գէ ։ Ահա խորհուրդ մի ասեմ ձեզ ․ * Ամենեքեան
ննջեսցուք , այլ ոչ ամենեքեան նորոգեսցուք" ․
52 Յանկարծակի յական թօթափել ՚ի փող յետին ․
քանզի փող հարկանի , եւ մեռեալք յարիցեն ա-
53 ռանց ապականութեան , եւ մեք նորոգեսցուք ։ Զի
պարտ է ապականութեանս այսմիկ զգենուլ զանա-
պականութիւն , եւ մահկանացուիս այսմիկ զգենուլ
54 զանմահութիւն ։ Այլ յորժամ մահկանացուս այս
զգեցցի զանմահութիւն , եւ ապականութիւնս զա-
նապականութիւն , յայնժամ եղիցի բանն՝ որ գրե-
55 ցաւ ․ եթէ Ընկլաւ մահ ՚ի յաղթութիւն ։ † Ո՞ւր
է մահ յաղթութիւն քո ․ ո՞ւր է դժոխք խայթոց
56 քո" ։ Խայթոց մահու մեղք են , եւ զօրութիւն մե-
57 ղաց օրէնք ։ Այլ շնորհք Աստուծոյ՝ որ ետ մեզ
զյաղթութիւն ՚ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քը-
րիստոսի ։

58 Այսուհետեւ եղբարք իմ սիրելիք , հաստատո՛ւն
եղերուք , անշարժ կացէք , առաւե՛լ լերուք ՚ի
գործս Տեառն յամենայն ժամ ․ գիտասջի՛ք՝ զի վաս-
տակքն ձեր ոչ են ընդունայն առաջի Տեառն ։

---

* Ընտրելագոյն օրինակք Յունաց ընթեռնուն , Ո՛չ ամենեքեան ննջեսցուք ․ այլ ամենեքեան նորոգեսցուք

† ՚Ի Յոյնն , Ո՞ւր է մա՛հ խայթոց քո , ո՞ւր դժոխք յաղթութիւն քո

## ԳԼ · ԺԶ

1 Այլ վասն հաշուին որ 'ի սուրբսն է , որպէս
պատուէր տուի եկեղեցեացն Գաղատացւոց , նոյն-
2 պէս և դուք առնիջիք : Ըստ իւրաքանչիւր միաշա-
բաթուցն իւրաքանչիւրոք 'ի ձէնջ անձին իւրում
3 գանձեսցէ՝ որ ինչ և յաջողեսցի : Զի մի՛ յորժամ
գայցեմ , յայնժամ հաշիւք լինիցին · այլ յորժամ
եկից՝ զոր միանգամ ընտրեսջիք թղթովք , զնոսա
առաքեցից տանել զշնորհսն ձեր յԵրուսաղէմ :
4 Ապա թէ արժան իցէ և ինձ երթալ՝ ընդ իս երթի-
5 ցեն : Այլ եկից առ ձեզ՝ յորժամ 'ի Մակեդովնիա
անցանիցեմ · *բայց իբրև շրջեցայց 'ի Մակեդով-
6 նիա" , Թէ դէպ լիցի , առ ձեզ մնացից՝ և կամ
ձմերեցից · զի և դուք յուղարկիցէք զիս՝ ուր և
7 երթալոցն եմ : Զի ոչ կամիմ զձեզ այժմ 'ի հա-
րևանցի տեսանել · այլ ունիմ ժամանակ ինչ առ-
8 նել առ ձեզ , եթէ Տէր հրամայեսցէ : Բայց այժմ
9 լինիմ յԵփեսոս մինչև ցՊենտեկոստէ · Զի դուռն
բացեալ է ինձ մեծ և կարևոր , և հակառակորդք
10 բազում են : Արդ՝ եթէ եկեսցէ Տիմոթէոս՝ տես-
ջիք զիարդ աներկիւղ լինիցի առ ձեզ · զի զգործ
11 Տեառն գործէ՝ որպէս և ես · Մի՛ ոք զնա անգոս-
նեսցէ · և յուղարկեսջիք զնա խաղաղութեամբ՝ զի
եկեսցէ առ իս · քանզի ակն ունիմ նմա եղբարբք
հանդերձ :

---

* 'Ի Յոյնն , քանզի ընդ Մակեդովնիա շրջեցայց

12 Այլ վասն Ապօղոսի եղբօր՝ յոյժ աղաչեցի զնա՝
զի եկեսցէ առ ձեզ եղբարբք հանդերձ. և արդեօք
ոչ էին կամք՝ զի այժմ եկեսցէ. այլ եկեսցէ յոր-
13 ժամ և պարապեսցէ: Հսկեցէք՝ հաստատուն կա-
14 ցէք ՚ի հաւատս, ժրացարուք, զօրացարուք: Ամե-
15 նայն ինչ ձեր սիրով լինիցի: Աղաչեմ զձեզ եղ-
բարք՝ գիտէք զտունն* Ստեփանեայ և փորտու-
նատեայ՝ որ են պտուղ Աքայեցւոց". և ՚ի պաշտօն
16 սրբոցն կարգեցին զանձինս. Զի և դուք հնազանդ
լինիցիք այնպիսեացն. և ամենայնի՝ որ գործակից
17 իցէ և վաստակակից: Ուրախ եղէ ՚ի գալ Ստե-
փանեայ և փորտունատեայ և Աքայիկոսի, զի զձեր
18 պակասութիւնդ նոքա լցին. Քանզի հանգուցին
19 զոգի իմ և զձեր. արդ ծանիջիք զայնպիսիսն: Ող-
ջոյն տան ձեզ եկեղեցիքն Ասիացւոց. ողջոյն շատ
տան ձեզ ՚ի Տէր՝ Ակուիղաս և Պրիսկիղա՝ հան-
20 դերձ առտնին եկեղեցեաւն իւրեանց: Ողջոյն տան
ձեզ եղբարք ամենեքեան: Ողջոյն տուք միմեանց
21 ՚ի համբոյր սրբութեան: Ողջոյնդ այդ՝ իմոյ ձեռին
22 Պօղոսի է: Եթէ ոք ոչ սիրէ զՏէր Յիսուս, եղիցի
23 նզովեալ՝ մարանաթայ: Շնորհք Տեառն մերոյ
24 Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ: Եւ սէրն իմ ընդ
ամենեսին ձեզ ՚ի Քրիստոս Յիսուս. ամէն:

---

* ՚Ի Յոյնն, Ստեփանեայ որ է առաջին պտուղ Աքայիոյ

Առ Կորնթացիս առաջին թուղթն՝ գրեցաւ ՚ի փիլիպեայ, ՚ի ձեռն Ստեփանեայ և փորտունատեայ և Աքայիկոսի:

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍՆ · ԵՐԿՐՈՐԴ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն
Աստուծոյ , և Տիմոթէոս եղբայր · եկեղեցւոյդ
Աստուծոյ՝ որ է 'ի Կորնթոս՝ սրբովքդ ամենեքումբք՝
2 որ են յամենայն կողմանս Աքայեցւոց ։ Շնորհք
ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
3 և 'ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ ։ Օրհնեալ է
Աստուած և Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի · Հայր գթութեանց , և Աստուած ամենայն
4 մխիթարութեան · Որ մխիթարէն զմեզ յամենայն
նեղութիւնս մեր · առ 'ի կարօղ լինելոյ մեզ մխի-
թարել զայնոսիկ՝ որ յամենայն նեղութիւնս իցեն ,
մխիթարութեամբն՝ որով մեք մխիթարիմք յԱս-
5 տուծոյ ։ Զի որպէս առաւելան չարչարանքն Քը-
րիստոսի 'ի մեզ , նոյնպէս և 'ի ձեռն Քրիստոսի
6 առաւել լիցի և մխիթարութիւնն մեր ։ Զի եթէ
նեղիմք , վասն ձերոյ մխիթարութեան և փրկութեան ,
և եթէ մխիթարիմք , վասն ձերոյ մխիթարութեան
և փրկութեան , որ յաջողեալն է համբերութեամբ

7 Նոցին չարչարանաց, զոր և մեքն չարչարիմք․ Եւ
յոյսն մեր հաստատուն է վասն ձեր․ քանզի գի-
տեմք՝ եթէ որպէս կցորդ եմք չարչարանացն՝ նոյն-
8 պէս և մխիթարութեանն։ Քանզի ոչ կամիմ տը-
գէտ լինել ձեզ եղբարք՝ վասն նեղութեանն մերոյ
եղելոյ յԱսիա․ զի առաւել քան զկար մեր ծան-
րացաք, մինչև անյոյս լինելոյ մեզ և 'ի կենաց։
9 Այլ անձամբ յանձինս զվճիռ մահու ընկալաք․ զի
մի՛ յանձինս ապաստանիցիմք՝ այլ յԱստուած՝ որ
10 յարուցանէ զմեռեալս․ Որ յայնպիսի մահուանէ
11 փրկեաց զմեզ՝ և փրկեսցէ․ * Քանզի յուսացեալ
եմք, եթէ տակաւին փրկեսցէ օգնականութեամբ
աղօթից ձերոց վասն մեր։ Զի 'ի բազմադէմ շը-
նորհացն՝ որ 'ի մեզ, բազմօք յաճախեսցեն գոհու-
թիւնքն վասն մեր։
12 Քանզի պարծանք մեր այս են․ վկայութիւն մը-
տաց մերոց․ զի սրբութեամբ և ստուգութեամբ
Աստուծոյ, և ոչ մարմնեղէն իմաստութեամբ, այլ
շնորհօքն Աստուծոյ շրջեցաք յաշխարհի․ բայց ա-
13 ռաւել ևս առ ձեզ։ Քանզի ոչ եթէ այլ ազգ ինչ
գրեմք առ ձեզ, այլ զոր ընթեռնուցուքն՝ և գիտակ
լինիցիք․ քանզի յուսամ եթէ մինչև 'ի վախճան
14 գիտիցէք․ Որպէս և խելամուտ եղէք մեզ փոքր 'ի
շատէ․ զի պարծանք ձեր եմք, որպէս և դուք մեր,
15 յաւուրն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Եւ
յայս ապաստան՝ կամէի նախ առ ձեզ գալ, զի դուք
16 կրկին շնորհս ընդունիջիք․ Եւ 'ի ձէնջ երթալ

* 'Ի Յոյնն, Յոր

՚ի Մակեդովնիա . և դառնալ ՚ի Մակեդովնիայ
դալ առ ձեզ . և ՚ի ձէնջ յուղարկել ՚ի Հրէաս-
17 տան ։ Արդ եթէ զայս խորհեցայ՝ միթէ թեթեւու-
թեամբ ինչ գնացի . և կամ զոր խորհիմն՝ ըստ
մարմնոյ ինչ խորհիցիմ, այլ զի եղիցի յինէն կող-
18 մանէ, այոն՝ այո, և ոչն՝ ոչ ։ Հաւատարիմ է
Աստուած՝ զի բանն մեր որ առ ձեզ եհաս՝ ոչ է
19 այո, և ոչ ։ Քանզի Որդին Աստուծոյ Յիսուս
Քրիստոս, որ ՚ի ձեզ մեօք քարոզեցաւ, ինև և Սի-
ղուանոսիւ և Տիմոթէիւ՝ ոչ եղև այո և ոչ . այլ
20 այոն ՚ի նմին եղև ։ Զի որչափ աւետիքն Աստու-
ծոյ են՝ ՚ի նմա այոն . վասն որոյ և նովին ամէնն
21 մեօք ՚ի փառս Աստուծոյ ։ Այլ որ հաստատեացն
զմեզ ձեօք հանդերձ ՚ի Քրիստոս, և որ օծ զմեզ,
22 Աստուած է . Որ և կնքեաց զմեզ, և ետ զառհա-
ւատչեայ Հոգւոյն ՚ի սիրտս մեր ։
23 Այլ ես վկայ զԱստուած կոչեմ անձին իմոյ .
զի վասն խնայելոյ ՚ի ձեզ՝ ոչ ևս եկի ՚ի Կորնթոս .
զի ո՛չ եթէ տիրեմք ձեզ հաւատովքն՝ այլ գործա-
կից եմք շնորհացդ ձերոց . քանզի հաւատովք հաս-
տատեալ կայք ։

## ԳԼ. Բ

1 Բայց զայս և եթ ընտրեցի, զի մի՛ միւսանգամ
2 տրտմութեամբ եկից առ ձեզ . Զի եթէ ես տրտ-
մեցուցանեմ զձեզ, և ո՞վ է որ ուրախ առնիցէ զիս,
3 եթէ ոչ որ տրտմիցին յինէն ։ Եւ զայս զի գրեցի՝
զի մի՛ յորժամ գայցեմ տրտմութիւն ինչ կրիցեմ,

ուստի արժանդ իցէ ինձ ուրախ լինել․ յուսացեալ
եմ 'ի ձեզ ամենեսին, զի իմ ուրախութիւնս ձեր
4 ամենեցուն է, Զի 'ի բազում վշտաց՝ և 'ի նե-
ղութենէ սրտի գրեցի առ ձեզ բազում արտասուօք․
ոչ զի տրտմիջիք, այլ զի զսէրն իմ գիտասջիք,
5 զոր ունիմ առաւելապէս առ ձեզ։ Ապա եթէ ոք
տրտմեցոյց, ոչ եթէ զիս տրտմեցոյց՝ այլ փոքր 'ի
6 շատէ, զի մի՛ ծանրացայց ամենեցուն ձեզ։ Շատ
է այնպիսւոյն պատուհասն այն՝ որ 'ի բազմաց ան-
7 տի է։ Այսուհետև նմին հակառակ՝ մանաւանդ
շնորհել ձեզ նմա՝ և մխիթարել․ զի մի՛ յառաւել
8 տրտմութենէն ընկղմեսցի այնպիսին։ Վասն որոյ
9 աղաչեմ զձեզ՝ հաստատել 'ի նա զսէրն։ Վասն
այնորիկ իսկ և գրեցի․ զի զչափ առից զձեր՝ եթէ
10 յամենայնի հպատակ իցէք։ Զի եթէ ումեք շնոր-
հիցէք՝ և ես․ քանզի և ես եթէ շնորհիցեմ, զոր
ինչ շնորհիցեմն՝ վասն ձեր 'ի դէմս Քրիստոսի․
11 Զի մի՛ զրկիցիմք 'ի Սատանայէ․ քանզի չեմք ինչ
անտեղեակ խորհրդոցն նորա։

12 Այլ իբրև հասի ես 'ի Տրովադա յաւետարանն
13 Քրիստոսի, և դուռն բաց էր ինձ 'ի Տէր, Ոչ
եառ հանգիստ հոգւոյ իմում․ քանզի ոչ գտի ես
անդ զՏիտոս զեղբայր իմ․ այլ հրաժարեալ 'ի
14 նոցանէ՝ գնացի 'ի Մակեդոնիա։ Այլ Աստուծոյ
շնորհքն որ յամենայնի հուչակ հարկանէ զմեզ 'ի
Քրիստոս Յիսուս, և զհոտ գիտութեանն իւրոյ
15 յայտնի առնէ մեօք յամենայն տեղիս․ Զի հոտ
անոյշ եմք Քրիստոսի առ Աստուած՝ 'ի մէջ փր-
16 կելոցն՝ և 'ի մէջ կորուսելոցն․ Ոմանց հոտ մահ-

ումանց 'ի մահ, և ոմանց հոտ կենդանութենէ 'ի
17 կեանս. և առ այս ո՞ բաւական իցէ: Քանզի ոչ
եմք իբրև զայլսն, որ վաճառական լինին բանին
Աստուծոյ. այլ իբրև 'ի հաստատութենէ, այլ իբ-
րև յԱստուծոյ՝ առաջի Աստուծոյ, 'ի Քրիստոս
խօսիմք:

## ԳԼ. Գ.

1 Սկսանիմք այսուհետև վերստին զանձինս ընծա-
յեցուցանել. Թէպէտ և ոչ պիտոյ իցեն մեզ, որ-
պէս ոմանց՝ թուղթք ընծայութեան առ ձեզ, կամ
2 'ի ձէնջ: Այլ թուղթք մեր դուք էք՝ գրեալ 'ի
սիրտս մեր, ծանուցեալ և ընթերցեալ յամենայն
3 մարդկանէ. Յայտնեալք՝ զի էք թուղթք Քրիս-
տոսի, պաշտեցեալ 'ի մէնջ. և գրեալ՝ ոչ մրով,
այլ Հոգւովն Աստուծոյ կենդանւոյ. ոչ 'ի տախ-
տակս քարեղէնս, այլ 'ի տախտակս սրտի մարմ-
նեղէնս:
4 Յոյս մի այսպիսի ունիմք 'ի ձեռն Քրիստոսի առ
5 Աստուած. Ոչ եթէ անձամբ բաւական եմք
խորհել ինչ իբրև 'ի մէնջ. այլ բաւականութիւնն
6 մեր յԱստուծոյ է. Որ և բաւականս արար զմեզ՝
պաշտօնեայս Նորոց Կտակարանաց՝ ոչ գրով, այլ
Հոգւով. զի գիրն սպանանէ, այլ Հոգին կեցու-
7 ցանէ: Զի եթէ պաշտօնն մահու գրով դրոշմեալ
'ի տախտակն քարեղէնս՝ եղև փառօք, զի մի կա-
րասցեն հայել որդիքն Իսրայէլի յերեսն Մովսէսի՝
վասն փառաց երեսաց նորա, որ խափանելոցն էր,

8 Որչափ եւս առաւել պաշտօն Հոգւոյն եղիցի փա-
9 ռօք ։ Զի եթէ պաշտօն դատապարտութեանն փա-
ռօք էր , որչափ եւս առաւել պաշտօն արդարու-
10 թեանն փառօք ։ Քանզի ոչ եթէ փառաւորի փա-
ռաւորեալն յայսմ մասին՝ վասն առաւելութեան
11 փառացն ։ Զի եթէ որ խափանելոցն էր՝ այն փա-
ռօք էր , որչափ եւս առաւել որ մնալոցն է՝ փառօք
12 իցէ ։ Եւ արդ՝ զի ունիմք այսպիսի յոյս , բազում
13 համարձակութեամբ վարեսցուք ․ Եւ ոչ որպէս
Մովսէս արկանէր քող ՚ի վերայ երեսաց իւրոց ,
վասն չհայելոյ որդւոցն Իսրայէլի ՚ի վախճան խա-
14 փանելոցն ։ Այլ կուրացան միտք նոցա ․ քանզի
մինչեւ ցայսօր ժամանակի՝ նոյն քող ձգեալ կայ ՚ի
վերայ ընթերցուածոց Հին Կտակարանացն ․ եւ ոչ
15 վերանայ , զի Քրիստոսիւ խափանելոց է ։ Այլ
մինչեւ ցայսօր՝ յորժամ ընթեռնուն զՄովսէս՝ նոյն
16 առագաստ կայ ՚ի վերայ սրտից նոցա ։ Այլ յոր-
ժամ դարձցին առ Տէր , ապա վերացի առագաստն ։
17 Զի Տէր Հոգին է ․ ուր Հոգի Տեառն է , անդ
18 ազատութիւն է ։ Այլ մեք ամենեքեան բացեալ ե-
րեսօք զփառսն Տեառն իբրեւ ընդ հայելի տեսեալ՝
՚ի նոյն պատկեր նորոգիմք փառաց ՚ի փառս ․ որպէս
եւ ՚ի Տեառն Հոգւոյ ։

## ԳԼ․ Դ

1 Վասն այսորիկ ունիմք զպաշտօնս զայս՝ որպէս
2 եւ գտաք զողորմութիւն , եւ ոչ ձանձրանամք ․ Այլ
հրաժարեցաք ՚ի գաղտնեաց ամօթոյ , զի մի՛ գն-

նասցուք խորամանկութեամբ, և մի՛ նենգեսցուք
զբանն Աստուծոյ. այլ յայտնութեամբ ճշմարտու-
թեանն ընծայեցուսցուք զանձինս մեր առ ամենայն
3 միտս մարդկան առաջի Աստուծոյ: Ապա թէ իցէ
և ծածկեալ աւետարանն մեր, 'ի մէջ կորուսելոցն
4 է ծածկեալ. Որոց աստուած աշխարհիս այսորիկ
կուրացոյց զմիտս անհաւատիցն, զի մի՛ ծագեսցէ
'ի նոսա լուսաւորութիւն աւետարանի փառացն
Քրիստոսի. որ է պատկեր աներևութին Աստու-
5 ծոյ: Զի ոչ եթէ զանձինս քարոզեմք, այլ զՅի-
սուս Քրիստոս զՏէր. և զմեզ ծառայս ձեզ վասն
6 Քրիստոսի: Զի Աստուած որ ասաց 'ի խաւարէ
լոյս ծագել. որ և ծագեաց իսկ 'ի սիրտս մեր 'ի
լուսաւորութիւն գիտութեան փառացն Աստուծոյ 'ի
7 դէմս Յիսուսի Քրիստոսի: Այսուհետև ունիմք
զգանձս զայս յամանս խեցեղէնս. զի առաւելութիւն
8 զօրութեանն իցէ յԱստուծոյ, և ոչ 'ի մէնջ: Յամե-
նայնի նեղեալք՝ այլ ոչ նուաղեալք. կարօտեալք՝ այլ
9 ոչ տարակուսեալք. Հալածեալք՝ այլ ոչ լքեալք.
10 չարչարեալք՝ այլ ոչ սատակեալք. Յամենայն ժամ
զմահն Յիսուսի 'ի մարմինս մեր կրեսցուք՝ զի և
կեանքն Յիսուսի 'ի մարմինս մեր յայտնեսցին:
11 Քանզի միշտ մեք՝ որ կենդանիքս եմք, 'ի մահ
մատնիմք վասն Յիսուսի. զի և կեանքն Յիսուսի
12 յայտնի լիցին 'ի մահկանացու մարմինս մեր: Այ-
սուհետև մահ 'ի մեզ զօրանայ, և կեանք 'ի ձեզ:
13 Արդ՝ ունիմք զնոյն հոգի հաւատոյ, որպէս և գր-
եալ է. Հաւատացի՝ վասն որոյ և խօսեցայ. և մեք
14 հաւատամք՝ վասն որոյ և խօսիմք իսկ: Զայս գի-

տեմք՝ եթէ որ յարոյց զՅիսուս, և զմեզ ընդ
Յիսուսի յարուսցէ՝ և յանդիման կացուսցէ ձեօք
15 համերձ. Վասն զի ամենայն ինչ վասն ձեր է. զի
շնորհքն յաճախեալք ՚ի բազմաց ՚ի գոհութենէ
16 անտի՝ առաւելեսցին ՚ի փառս Աստուծոյ : Վասն
որոյ և ոչ ձանձրանամք. այլ թէպէտ և արտաքին
մարդս մեր ապականի, այլ ներքին մարդն մեր նորո-
17 գի օրըստօրէ : Զի առժամայն յաճախութիւն թե-
թև նեղութեանս մերում՝ ՚ի յաւիտենականն առա-
ւելութիւն, զմեծութիւն փառացն գործէ ՚ի մեզ :
18 Վասն զի ոչ գիտեմք զերևելիս՝ այլ զաներևոյթն.
զի երևելիքս առ ժամանակ մի են, և աներևոյթքն
յաւիտենականք :

## ԳԼ. Ե

1 Վասն զի գիտեմք՝ եթէ երկրաւոր տաճար շինուա-
ծոյս մերոյ քակտեսցի, շինած յԱստուծոյ ունիմք՝
տաճար առանց ձեռագործի, յաւիտենական յեր-
2 կինս : Եւ ընդ այս տաղտկամք, քանզի զբնակու-
3 թիւնն երկնից փափագեմք զգենուլ. Միայն թէ
4 յորժամ զգենուցումքն՝ ոչ մերկ գտանիցիմք : Վասն
զի որ եմք ընդ յարկաւս ընդ այսուիկ՝ տաղտկամք
ծանրացեալք. զի ոչ կամիմք մերկանալ, այլ զայն
՚ի վերայ այսր զգենուլ. զի ընկղմեսցի մահկանա-
5 ցուս ՚ի կենաց անտի : Այլ որ յաջողէն մեզ ՚ի
սոյն՝ Աստուած է. որ ետ մեզ զառհաւատչեայ Հոգ-
ւոյն :
6 Արդ՝ համարձակիմք յամենայն ժամ, և գիտեմք՝

եթէ որչափ յամեմք 'ի մարմնի աստ՝ օտարանամք
7 'ի Տեառնէ: Զի հաւատով գնամք՝ և ոչ կարծ-
8 եօք: Այլ համարձակիմք՝ և առաւել ևս հաճեալ
եմք ելանել 'ի մարմնոյ աստի՝ և մտանել առ Աստ-
9 ուած: Վասն որոյ և առատանամք. զի եթէ յա-
միցեմք՝ և եթէ ելանիցեմք՝ հաճոյ Նմա իցեմք Նո-
10 մա: Քանզի ամենեցուն մեզ յանդիման լինել կայ
առաջի ատենին Քրիստոսի. զի ընկալցի * իւրա-
քանչիւր իւրով մարմնով՝ " զոր ինչ գործեաց յա-
11 ռաջ՝ եթէ բարի, և եթէ չար: Իսկ արդ՝ զահն
Տեառն գիտելով չափ, † զմարդկան ինչ միտս հա-
ճեմք. սակայն առաջի Աստուծոյ յայտնեալ եմք ".
բայց ես յուսամ և 'ի ձեր միտս յայտնի լինել:
12 Իբր ոչ եթէ միւսանգամ զանձինս ինչ ընծայեցու-
ցանեմք ձեզ, այլ պատճառս տամք ձեզ պարծա-
նաց վասն մեր. զի ունիցիք առ այնոսիկ՝ որ առ աչսն
13 պարծիցին, և ոչ սրտիւք: Զի եթէ առանցաք
ինչ՝ այն Աստուծոյ է. և եթէ զգաստանամք՝ այն
14 ձեր է: Զի սէրն Քրիստոսի ստիպէ զմեզ քննել
զայս. զի եթէ մին փոխանակ ամենեցուն մեռաւ,
15 ապա ուրեմն ամենեքեան մեռեալ էին. Եւ 'ի վե-
րայ ամենեցուն մեռաւ, զի որ կենդանիքն իցեն՝ մի
անձանց իցեն կենդանիք, այլ այնմ՝ որ 'ի վերայ
16 նոցայն մեռաւ և յարեաւ: Այսուհետև մեք ոչ զոք
գիտեմք մարմնով. զի թէպէտ և գիտէաք մարմնով

---

* 'Ի Օրին., իւրաքանչիւր զայնս 'ի մարմնի

† 'Ի Օրին., զմարդիկ հաւանեցուցանեմք. սա-
կայն Աստուծոյ յայտնի եմք

17 զՔրիստոս՝ այլ արդ ո՛չ ևս նոյնպէս գիտեմք ։ Բայց
եթէ ինչ 'ի Քրիստոս նոր արարած իցէ . զի հինն
18 անց , և արդ նոր եղև ամենայն ։ Այլ ամենայն
ինչ յԱստուծոյ՝ որ հաշտեցոյց զմեզ ընդ իւր 'ի
ձեռն Քրիստոսի . և ետ մեզ զպաշտօնն հաշտու-
թեան ։
19 Եւ քանզի Աստուած էր՝ Քրիստոսիւ զաշխարհս
հաշտեցուցանել ընդ իւր , և չհամարել նոցա զմեղս
20 իւրեանց , և եդ 'ի մեզ զբանն հաշտութեան ։ Արդ՝
վասն Քրիստոսի պատգամաւորիմք՝ որպէս և Աս-
տուծոյ բարեխօսութեամբ մեօք . աղաչեմք վասն
21 Քրիստոսի՝ հաշտեցարո՛ւք ընդ Աստուծոյ ։ Զի
զայն՝ որ ո՛չն գիտէր զմեղս , վասն մեր մեղս արար .
զի մեք եղիցուք նովաւ արդարութիւն Աստուծոյ ։

## ԳԼ. Զ

1 Գործակից եմք ձեր՝ և աղաչեմք , մի՛ ընդունայն
2 զշնորհսն Աստուծոյ ընդունել ձեզ ։ Զի 'ի ժամա-
նակի ընդունելութեան՝ ասէ , լուայ քեզ , և յա-
ւուր փրկութեան օգնեցի քեզ ։ Ահաւասիկ ժամա-
3 նակ ընդունելի . ահա օր փրկութեան ։ Մի՛ և մի՛
իւիք * տայցէք պատճառս" , զի մի՛ արատեսցի պաշ-
4 տօնն . Այլ † յամենայնի ընծայեցուցէք զանձինս
ձեր իբրև" զպաշտօնեայս Աստուծոյ՝ համբերու-

---

* Ի Յոյնն , տալով պատճառս

† Ի Յոյնն , յամենայնի ընծայեցուցանեմք զանձի-
նըս իբրև

թեամբ բազմաւ՝ 'ի նեղութիւնս, 'ի վիշտս, 'ի չար-
5 չարանս, 'Ի գանս, 'ի բանտս, 'ի խռովութիւնս
6 յաշխատութիւնս, 'ի հսկմունս, 'ի պահս, 'Ի սրբ-
բութեան, 'ի գիտութեան, յերկայնմտութեան,
'ի քաղցրութեան, 'ի Հոգի Սուրբ, 'ի սէր՝ առանց
7 կեղծաւորութեան, 'Ի բանս ճշմարտութեան, 'ի
զօրութեան Աստուծոյ. * վասն զինուն արդարու-
8 թեան" որ ընդ աջմէն և ընդ ահեկէն է. փառօք
և անարգութեամբ, գովութեամբ և պարսաւանօք,
9 իբրև մոլարք՝ և ճշմարիտք, Իբրև անծանօթք՝ և
ծանուցեալք. իբրև մահկանացուք՝ և ահաւասիկ
կենդանի եմք. իբրև խրատեալք՝ և ոչ մահապարտ-
10 եալք. Իբրև տրտմեալք, և հանապազ ուրախ եմք.
իբրև տնանկք՝ և զբազումս մեծացուցանեմք. իբրև
11 ոչինչ ունիցիմք, և զամենայն ինչ ունիմք: Բերանք
մեր բացեալ են առ ձեզ՝ Կորնթացիք, և սիրտք
12 մեր ընդարձակեալք: Ոչինչ նեղիք 'ի մէնջ՝ բայց
13 եթէ 'ի գութս ձեր նեղիցիք. † Արդ՝ զնոյն հատու-
ցումն իբրև ընդ որդեակս ունիմ". ընդարձակեցա-
14 րուք և դուք: Եւ մի՛ լինիք լծակիցք անհաւատից.
քանզի զի՞նչ հաղորդութիւն է արդարութեան ընդ
անօրէնութեան. և կամ զի՞նչ հաւասարութիւն է
15 լուսոյ ընդ խաւարի. Եւ կամ զի՞նչ միաբանու-
16 թիւն է Քրիստոսի ընդ Բելիարայ. Կամ զի՞նչ
բաժին կայ հաւատացելոյն ընդ անհաւատին. կամ

* 'Ի Յոյնն, 'ի ձեռն զինուցն արդարութեան

† 'Ի Յոյնն, Արդ զնոյն հատուցումն՝ իբրև ընդ որդեակս ասեմ.

զի՞նչ նմանութիւն է տաճարի Աստուծոյ մեհենաց ։
Ապաքէն դուք տաճար Աստուծոյ կենդանւոյ էք ․
որպէս և ասաց Աստուած, թէ Բնակեցայց 'ի նո-
սա, և գնացից 'ի նոսա ․ և եղէց նոցա Աստուած,
17 և նոքա եղիցին իմ ժողովուրդ ։ Վասն որոյ ելէք
'ի միջոյ նոցա և մեկնեցարո՛ւք, ասէ Տէր, և 'ի
18 պիղծս մի՛ մերձենայք ․ Եւ ես ընկալայց զձեզ ․ և
ես եղէց ձեզ 'ի Հայր, և դուք եղիջիք ինձ յուս-
տերս և 'ի դստերս, ասէ Տէր ամենակալ ։

## ԳԼ․ Է

1 Արդ որովհետև զայս աւետիս ունիմք սիրելիք՝
սրբեսցո՛ւք զանձինս մեր յամենայն պղծութենէ մարմ-
նոյ և հոգւոյ, կատարեսցո՛ւք զսրբութիւն ահիւն
2 Աստուծոյ ։ Տարա՛յք մեզ, զի ո՛չ ումեք մեղաք, և
3 ո՛չ զոք եղծաք, և ո՛չ զոք զրկեցաք ։ Ո՛չ եթէ 'ի
դատապարտութիւն ինչ ասեմ ․ քանզի յառաջ իսկ
ասացի, եթէ 'Ի սրտի մերում կայք՝ 'ի կեալ և
'ի մեռանել ընդ ձեզ ։
4 Բազում համարձակութիւն է ինձ առ ձեզ ․ բա-
զում պարծանք են ինձ վասն ձեր ․ լի եմ մխիթա-
րութեամբ ․ առաւելեալ եմ ուրախութեամբ յա-
5 մենայն նեղութիւնս մեր ։ Քանզի յորժամ հասաք
մեք 'ի Մակեդոնիա, և ո՛չ միով իւիք հանգիստ
գտաւ մարմնոյ մերում, այլ յամենայնի նեղեալք ․
քանզի արտաքոյ մարտք՝ և 'ի ներքոյ արհաւիրք ։
6 Այլ որ մխիթարէն զխոնարհս, մխիթարեաց զմեզ
7 Աստուած 'ի գալստեանն Տիտոսի ։ Ո՛չ միայն 'ի

գալստեան նորա, այլ և 'ի մխիթարութեանն՝ զոր
մխիթարեցաւ նա 'ի ձեզ, 'ի պատմել մեզ զանձուկն
ձեր՝ զողբումն ձեր՝ զնախանձն ձեր վասն իմ, մինչ
8 առաւել ուրախ լինել ինձ: Զի թէ և տրտմեցուցի
զձեզ թղթովն՝ ոչ զղջանամ, թէպէտ և զղջացեալ
էի. քանզի տեսանեմ՝ զի թուղթն այն թէ և առ
9 ժամանակ մի տրտմեցոյց զձեզ. Արդ ուրախ եմ,
ոչ զի տրտմիցիք՝ այլ զի յապաշխարութիւն տրտ-
մեցարուք. քանզի տրտմեցայք դուք ըստ Աստու-
10 ծոյ. զի մի՛ իւիք զրկիցիք 'ի մէնջ: Զի որ ըստ
Աստուծոյն տրտմութիւն է, ապաշխարութիւն 'ի
փրկութիւն առանց զղջանալոյ գործէ. իսկ աշխար-
11 հի տրտմութիւն՝ մահ գործէ: Արդ՝ նոյն իսկ որ
ըստ Աստուծոյն տրտմեցարուք, որչափ ինչ փոյթ
գործեաց 'ի ձեզ, կամ աղերս, կամ սաստ, կամ եր-
կիւղ, կամ անձուկ, կամ նախանձ, կամ վրէժխնդ-
րութիւն. քանզի յամենայնի ընծայեցուցիք զանձինս
12 ձեր՝ սուրբս լինել յիրիդ յայդմիկ: Ապա ուրեմն՝
թէ և գրեցի ես առ ձեզ, ոչ վասն այնորիկ որ
զրկեացն, և ոչ վասն այնորիկ՝ որ զրկեցաւն. այլ
վասն յայտնի լինելոյ փութոյն ձերոյ՝ որ վասն մեր՝
13 առ ձեզ առաջի Աստուծոյ: Վասն այնորիկ մխի-
թարեալ եմք 'ի վերայ *մխիթարութեանն մերոյ".
առաւել ևս խնդացաք 'ի վերայ խնդութեանն Տի-
տոսի. քանզի հանգուցեալ էր հոգի նորա 'ի ձէնջ
14 ամենեցունց: Զի զի՛նչ և պարծեցայ առ նմա վասն
ձեր՝ ո՛չ ամաչեցի. այլ որպէս զամենայն ճշմար-

* Ի Յոյնն, մխիթարութեանն ձերոյ

տութեամբ խօսեցաք ընդ ձեզ, նոյնպէս և պար-
15 ծանքն մեր առ Տիտոս ճշմարիտ եղեն: Նաև
գութք նորա առաւել ևս են 'ի ձեզ. քանզի յի-
շեցուցանէր մեզ զամենեցուն զձեր հնազանդութիւն.
թէ որպէս ահիւ և դողութեամբ ընկալարուք զնա:
16 Եւ արդ ուրախ եմ, զի յամենայնի համարձակ եմ
առ ձեզ:

## ԳԼ. Ը

1 Յուցանեմ ձեզ եղբարք զշնորհսն Աստուծոյ՝ որ
2 տուեալ են եկեղեցեացն Մակեդոնացւոց. Զի մե-
ծաւ հանդիսիւ նեղութեան՝ առաւելութիւն խնդու-
թեանն նոցա, և ծանր աղքատութիւնն նոցա առա-
3 ւել եղև 'ի մեծութիւն առատութեան նոցա. Զի
ըստ կարի նոցա վկայեմ, և աւելի քան զկար.
4 Ինքնակամ բազում աղաչանօք աղաչէին զշնորհսն,
և զհաղորդութիւն պաշտամանն որ 'ի սուրբսն՝ տալ
5 ցմեզ: Ո՛չ որչափ ակն ունէաք, այլ և զանձինս ևս
ետուն, նախ Տեառն՝ և ապա մեզ կամօքն Աստու-
6 ծոյ, *Աղաչել զՏիտոս" զի որպէս սկսաւ յա-
ռաջագոյն, նոյնպէս և կատարեսցէ 'ի ձեզ և զայդ
7 ևս շնորհ: Այլ որպէս յամենայնի առաւել էք
հաւատովք՝ և բանիւ՝ և գիտութեամբ՝ և ամենայն
փութով, և որ 'ի մէնջ 'ի ձեզ սէրն է, զի և յայդմ
8 ևս շնորհի առաւել լինիցիք: Ո՛չ որպէս հրամանս
տալով ասեմ. այլ վասն այլոց փութոյ, և վասն ձե-

---

* Ի Յոյնն, Յաղաչելն մեր զՏիտոս

9 որոյ սիրոյ՝ զմտերմութիւնդ փորձեմ։ Քանզի գիտէք
զշնորհսն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի
վասն ձեր աղքատացաւ՝ որ մեծատունն էր, զի դուք
10 նորա աղքատութեամբն մեծասջիք։ Եւ խրատ մի
յայսմիկ տամ, զի այն իսկ օգուտ ձեզ է. որք ո՛չ միայն
զառնելն՝ այլ և զկամելն յառաջագոյն սկսայք ՚ի
11 հերուն հետէ։ Բայց արդ և զառնելն իսկ կատա-
րեցէ՛ք. զի որպէս յօժարութիւնն ՚ի կամաց է,
12 նոյնպէս և առնելն ըստ գոյին։ Զի եթէ յօժա-
րութիւնն առաջի կայ, ըստ գոյին ընդունելի է՝ և ո՛չ
13 եթէ ըստ չգոյին։ Զի ո՛չ եթէ այլոց հանգիստ կա-
14 միցիմ, և ձեզ նեղութիւն։ Այլ հաւասարութեամբ՝
յայժմու ժամանակիս, ձեր առաւելութիւնդ ՚ի նո-
ցա պակասութեանն. զի և նոցա առաւելութիւնն
եղիցի ՚ի ձերում պակասութեանդ, զի եղիցի հա-
15 ւասարութիւն՝ որպէս և գրեալ է. Թէ որ բազումն
ա՛ռ՝ ո՛չ առաւելաւ. և որ սակաւն՝ ո՛չ նուազեցաւ։
16 Բայց շնորհք Աստուծոյ՝ որ արկ զնոյն փոյթ
17 վասն ձեր ՚ի սիրտ Տիտոսի. Զի զաղաչանսն ընկա-
լաւ՝ և փութացաւ յօժարագոյնս դիմեաց գալ առ
18 ձեզ։ Եւ առաքեցաք ընդ նմա զեղբայրն՝ որոյ գո-
վութիւնն յաւետարանի անդ է՝ ընդ ամենայն եկե-
19 ղեցիս։ Եւ ո՛չ այսչափ միայն, այլ և ձեռնադրեալ
յեկեղեցեաց անտի, նշդեհակից մեր եղև ՚ի շնորհս
յայսոսիկ՝ որ պաշտին ՚ի մէնջ ՚ի փառս Տեառն՝ և
20 ՚ի մեր յօժարութիւն։ Բայց զայս խղձէաք իսկ՝
թէ գուցէ արատ ոք ինչ գտցէ ՚ի հաստատութեա-
21 նս յայսմիկ՝ որ պաշտեցաւս ՚ի մէնջ։ Քանզի խոր-
հիմք զբարիս՝ ո՛չ միայն առաջի Տեառն, այլ և ա-

22 ռաջի մարդկան ։ Եւ առաքեցաք ընդ նոսա զեղ–
բայրն մեր՝ զոր ընտրեցաք ՚ի բազում իրս բազում
անգամ պինդ գոլ. և առաւել ևս այժմ պնդա–
23 գոյն՝ յուսով մեծաւ ՚ի ձեզ ։ Բայց եթէ վասն Տի–
տոսի ինչ բանք են, իմ հաւասար է՝ և ձեր գոր–
ծակից. և եթէ եղբարք մեր, առաքեալքն եկեղե–
24 ցւոյ՝ և փառք Քրիստոսի ։ Եւ արդ՝ զհանդէս սի–
րոյ ձերոյ՝ և զմերոյ պարծանացն վասն ձեր, ՚ի դո–
սա ցուցջիք յանդիման ամենայն եկեղեցեաց ։

## ԳԼ. Թ

1 Այլ վասն պաշտամանն՝ որ ՚ի սուրբսն է, աւելի
2 է ինձ և գրել առ ձեզ ։ Զի գիտեմ զյօժարու–
թիւն ձեր, զոր վասն ձեր պարծեցեալ եմ ՚ի մէջ
Մակեդոնացւոց. թէ Աքայեցիքն ՚ի հերուն հե–
տէ պատրաստ են. և ձեր նախանձն զբազումս յոր–
3 դորեաց ։ Եւ առաքեցաք զեղբարսն՝ զի մի պար–
ծանքն մեր որ վասն ձեր՝ ընդունայն լինիցին ՚ի մա–
սինդ յայդմիկ. այլ որպէս ասէի իսկ, պատրաս–
4 տագոյնք գտանիջիք. Գուցէ յորժամ գայցեն ընդ
մեզ Մակեդոնացիքն՝ և գտանիցեն զձեզ անպատ–
րաստս, և ամաչեսցուք մեք. զի մի ասասցուք թէ
5 դուք, ՚ի մասինդ յայդմիկ պարծանաց ։ Արդ կա–
րևոր համարեցայ աղաչել զեղբարս, զի յառաջա–
գոյն իսկ եկեսցեն առ ձեզ, և յառաջագոյն պատ–
րաստեսցեն զյառաջագոյն խոստացեալ օրհնութիւնն
ձեր ՚ի պատրաստի ունել. այնպէս իբրև զօրհնու–
6 թիւն, և մի իբրև զագահութիւն ։ Բանզի որ սեր–

մանէ ճշգելով՝ ճշդելով և հնձեսցէ, և որ սերմանէ
7 առատութեամբ՝ առատութեամբ և հնձեսցէ: Իւ-
րաքանչիւր որպէս և յօժարեսցի ըստ սրտի, մի՛ առ
հարկի և տրտմութեան. քանզի զտուրս զուարթա-
8 ռատս սիրէ Աստուած: Այլ կարող է Աստուած
զամենայն շնորհս առաւելուլ 'ի ձեզ. զի յամենայնի
յամենայն ժամ զամենայն բաւականութիւն ընկալ-
եալ՝ առաւելուցուք յամենայն գործս բարութեան,
9 Որպէս և գրեալ է. Սփռեաց և ետ տնանկաց,
արդարութիւն նորա մնայ յաւիտեան:
10 Այլ այն որ պարգևէ սերմն սերմանահանաց՝ և
հաց 'ի կերակուր, պարգևեսցէ և բազմացուսցէ
զսերմանիս ձեր, և աճեցուսցէ զարդիւնս արդարու-
11 թեան ձերոյ. Յամենայնի մեծացեալք ամենայն ա-
ռատութեամբ՝ որ յօրինէն մեզ գոհութիւն Աս-
12 տուծոյ: Զի պաշտօն հարկիս այսորիկ՝ ոչ միայն
առ 'ի լնուլ զպակասութիւն սրբոց է, այլ և ա-
13 ռաւելուլ բազմօք գոհութիւնս Աստուծոյ. Ճան-
դիսիւ պաշտամանս այսորիկ փառաւորել զԱստուած
'ի վերայ հնազանդութեան խոստովանութեան ձե-
րոյ յաւետարանն Քրիստոսի. և առատութեամբ
14 հաղորդութեանն 'ի նոսա՝ և յամենեսին. Եւ նոցա
աղօթք վասն ձեր, քանզի անձկացեալ են առ ձեզ
վասն առաւել շնորհացն Աստուծոյ՝ որ 'ի ձեզ:
15 Այլ շնորհք Աստուծոյ 'ի վերայ անպատում պար-
գևացն նորա:

## ԳԼ. Ժ

1 Այլ ես ինքն Պօղոս աղաչեմ զձեզ հեզութեամբն
և հանդարտութեամբն Քրիստոսի, որ յանդիման
ձեզ իբրև տառապեալ մի եմ ՚ի միջի ձերում.
2 բայց ՚ի հեռուստ համարձակիմ առ ձեզ: Աղաչեմ
զի մի ՚ի մօտոյ ևեթ համարձակիցիմ վստահու-
թեամբ. * կամ համարիցիմ" յանդգնել ՚ի վերայ
ոմանց՝ որ կարծեն զմէնջ եթէ ըստ մարմնոյ գնայ-
3 ցեմք: Զի թէպէտ և մարմնով գնամք՝ այլ ոչ
4 եթէ ըստ մարմնոյ զինուորիմք: Զի զէն զինուո-
րութեան մերոյ ոչ է մարմնաւոր, այլ զօրաւոր
յԱստուծոյ, առ ՚ի քակելոյ զամուրս. զխորհուրդս
5 քակեմք, Եւ զամենայն բարձրութիւն հպարտաց-
եալ ՚ի վերայ գիտութեանն Աստուծոյ. և գերեմք
զամենայն միտս ՚ի հնազանդութիւնն Քրիստոսի'
6 Եւ ՚ի պատրաստի ունիմք խնդրել զվրէժ ամենայն
անհնազանդութեան՝ յորժամ ձեր ես հնազանդու-
թիւնդ կատարեսցի:
7 † Ըստ ուրաքանչիւր երեսաց դիտեջի՞ք". եթէ
ոք վստահ յանձն իցէ Քրիստոսի լինել, զայս խոր-
հեսցի՛ դարձեալ ՚ի միտս իւր. թէ որպէս նայն
8 Քրիստոսի է՝ նոյնպէս և մեք: Զի թէ առաւել
ևս պարծեցայց վասն իշխանութեանս մերոյ՝ զոր ետ
մեզ Տէր ՚ի շինել՝ և ոչ ՚ի քակել զձեզ, ոչինչ ա-
9 մաչեցից: Զի մի թուեցայց իբրև ահ ինչ արկա-

---

* ՚Ի Յոյնն, որով համարիցիմ

† ՚Ի Յոյնն, Ըստ երեսաց դիտէք

10 նել ձեզ թղթովքս ։ Ասիցէք, Թուղթքս ծանունք
են և սաստիկք․ բայց տեսիլ մարմնոյ տկար՝ և
11 բանն արհամարհեալ․ Զայս խորհեսցի այնպիսին,
զի որպիսիք եմք բանիւք թղթոցդ ՚ի հեռուստ,
12 նոյնպիսիք և ՚ի մօտոյ արդեամբք ։ Քանզի ոչ իշ-
խեմք կշռել և հաւասարել զանձինս մեր ումանց, որ
զանձինս իւրեանց ձեզ ընծայեցուցանեն․ այլ ան-
ձամբ յանձինս՝ զանձինս չափեն, և ՚ի կշռել ան-
13 ձամբ յանձինս՝ ոչ առնուն ՚ի միտ ։ Այլ մեք ոչ
եթէ յանչափս ինչ պարծեսցուք․ այլ ըստ չափոյ
կանոնին, զոր բաժանեաց մեզ Աստուած չափով՝
14 հասանել մինչև առ ձեզ ։ Իբր ոչ եթէ հասու ինչ
չիցեմք ՚ի ձեզ, և ձկտեցուցանիցեմք զանձինս․
քանզի մինչև առ ձեզ հասաք աւետարանաւն Քրի-
15 ստոսի ։ Եւ ոչ յանչափս ինչ պարծիմք օտար
վաստակօք ։ Բայց յոյս մի ունիմք զաճմանն հա-
ւատոց ձերոց՝ այդրէն ՚ի ձեզ մեծանալոյ՝ ըստ կա-
16 նոնիս մերոյ յառաւելութիւն․ ՚Ի վեր ևս քան զձեզ
աւետարանել՝ ոչ օտար կանոնաւ ՚ի պատրաստա-
17 կանս ինչ պարծել ։ Զի որ պարծին՝ ՚ի Տէր պար-
ծեսցի ։
18 Զի ոչ եթէ որ զանձն իւր ընծայեցուցանէ՝ նա
է ընտրեալ․ այլ զոր Տէրն ընծայեցուցանէ ։

## ԳԼ․ ԺԱ

1 Լաւ էր եթէ ներէիք փոքր մի և իմում անզգա-
2 մութեանս․ այլ և անսացէք իսկ ։ Նախանձեցուցա-
նեմ զձեզ ՚ի նախանձն Աստուծոյ․ զի խօսեցայ

զձեզ առն միում, իբրև զկոյս մի սուրբ յանդիման
3 կացուցանել Քրիստոսի ։ Բայց երկնչիմ՝ գուցէ որ-
պէս օձն խաբեաց զԵւայ խորամանկութեամբ իւ-
րով՝ ապականեսցին միտք ձեր 'ի միամտութենէն
4 որ 'ի Քրիստոս ։ Զի եթէ որ գալոցն իցէ՝ այլ
Քրիստոս քարոզիցէ զոր մեքն ոչ քարոզեցաք,
կամ ոգի օտար առնուցուք՝ զոր ոչ առէք, կամ
աւետարան օտար՝ զոր ոչ ընկալարուք, բարւոք ան-
5 սայիք նոցա ։ Բայց ես այսպէս համարիմ, թէ ո-
չինչ իւիք պակաս իցեմ քան ՟զլաւ առաքեալսն ։
6 Թէպէտ և տգէտ ևս իցեմ բանիւ, այլ ոչ եթէ
գիտութեամբ ․ սակայն յամենայնի յայտնեցաք
7 զանձինս ամենևին առ ձեզ ։ Եւ եթէ վնաս ինչ
գործեցի՝ զի զանձն խոնարհեցուցի ․ և այն՝ զի դուք
բարձրասջիք ․ զի ձրի զաւետարանն Աստուծոյ աւե-
8 տարանեցի ձեզ ։ Զայլ եկեղեցիս կողոպտեցի, առ-
9 եալ թոշակ 'ի ձեր սպասաւորութիւն ։ Եւ յոր-
ժամ եկի առ ձեզ ․ թէպէտ և պակասեաց ինչ, ոչ
զոք 'ի ձէնջ ձանձրացուցի, զի զպակասութիւնն իմ
լցին եղբարքն եկեալք 'ի Մակեդոնացւոց ․ և յա-
մենայնի առանց ծանրանալոյ ձեզ զանձն իմ պա-
10 հեցի՝ և պահեցից ։ Քանզի գոյ յիս ճշմարտու-
թիւնն Քրիստոսի ։

Զի պարծանքս այս ոչ արգելցին յինէն 'ի կող-
11 մանս Աքայեցւոց ։ Ընդէ՞ր ․ իբրու թէ ո՞չ սիրի-
12 ցեմ զձեզ ․ զայն Աստուած գիտէ ․ Զոր առնեմ՝
և արարից ․ զի հատից զպատճառս այնոցիկ՝ որ
զպատճառսն կամիցին, զի որով պարծիցինն, և
13 նոքա իբրև զմեզ գտանիցին ։ Զի այնպիսիքն սուտ

առաքեալք, մշակք նենգաւորք, կերպարանեն 'ի
14 կերպարանս առաքելոց Քրիստոսի։ Եւ չէ՛ն ինչ
զարմանք. քանզի և ինքն Սատանայ կերպարանի
15 'ի հրեշտակ լուսոյ։ Եւ ոչի՛նչ է մեծ՝ թէ և պաշ-
տօնեայք նորա կերպարանին իբրև զպաշտօնեայք ար-
դարութեան. որոց կատարածն եղիցի ըստ գործոց
16 իւրեանց։ Դարձեալ ասեմ. Մի՛ ոք համարեսցի
զիս անզգամ. ապա թէ ո՛չ՝ գոնէ իբրև զանզգամ
ընկալարո՛ւք զիս, զի և ես փոքր մի ինչ պարծե-
17 ցայց։ Եւ զոր խօսիմս ո՛չ եթէ ըստ Տեառն խօսիմ,
այլ իբրև անզգամութեամբ՝ ըստ կարգի այդց պար-
18 ծանաց։ Եւ քանզի բազումք պարծին ըստ մարմնոյ՝
19 և ես պարծեցայց։ Ա՛տագիւր իմն անսայիք անմտացն
20 ձերովդ իմաստութեամբ։ Քանզի անսայք եթէ ոք
խածէ զձեզ, եթէ ոք ծառայեցուցանէ, եթէ ոք ու-
տէ զձեր, եթէ ոք առնու ինչ, եթէ ոք հպարտա-
21 նայ, եթէ ոք զձեզ յանդիման հարկանէ։ Ըստ ա-
նարգանացդ ասեմ, իբրև թէ մեք տկարացաք արդ-
եօք. յոր ինչ ոք համարձակիցի, անզգամութեամբ
22 ասեմ, համարձակիմ և ես։ Եբրայեցի՞ք իցեն, և
ես. Իսրայէլացի՞ք իցեն. և ես. զաւակ Աբրահամու
23 իցեն, և ես. Պաշտօնեայ՞ք Քրիստոսի իցեն, յան-
դըգնագոյնս ասացից՝ թէ առաւել ևս ես. եթէ վաս-
տակօք՝ առաւել, եթէ գանիւք՝ ևս առաւել. եթէ
բանտիւ՝ աւելի քան զնոսա, եթէ մահուամբք՝ բա-
24 զում անգամ. 'Ի Հրէից՝ հնգիցս քառասուն միով
25 պակաս առի. Երիցս ձաղկեցայ. միանգամ քարկոծ
եղէ. երիցս նաւակոծ եղէ. զտիւ և զգիշեր յան-
26 դունդս տառապեցայ. 'Ի ճանապարհս բազում ան-

գամ, վիշտս 'ի գետոց, վիշտս յաւազակաց, վիշտս
յազգէ, վիշտս 'ի հեթանոսաց, վիշտս 'ի քաղաքի,
վիշտս յանապատի, վիշտս 'ի ծովու, վիշտս 'ի սուտ
27 եղբարց. 'Ի ջանս՝ և 'ի վաստակս. 'ի տքնութիւնս
բազում անգամ, 'ի քաղց և 'ի ծարաւ. 'ի պահս
բազում անգամ. 'ի ցուրտ և 'ի մերկութեան:
28 Թող զայլ նեղութիւնն. և զի հանապազ խռո-
ժումն 'ի վերայ իմ կուտէր՝ և հոգք ամենայն եկե-
29 ղեցեացն: Ո՞ հիւանդանայ՝ և ոչ ես հիւանդանամ.
Ո՞ գայթագղի և ոչ ես տապանամ:
30 Եթէ պարծել ինչ պարտ իցէ, զտկարութեանն
31 պարծեցայց: Աստուած և Հայր Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի գիտէ՝ որ է օրհնեալ յաւիտեանս,
32 զի ոչ ստեմ: 'Ի Դամասկոս ազգապետն Արետայ
արքայի պահէր զքաղաքն Դամասկացւոց ունել
33 զիս. Եւ ընդ պատուհանն վանդակաւ կախեցայ ընդ
պարիսպն, և փախեայ 'ի ձեռաց նորա:

## ԳԼ. ԺԲ

1 Արդ պարծել ինչ պարտ իցէ. այլ օգնէ ինչ ոչ:
Բայց եկից 'ի տեսիլս և 'ի յայտնութիւնս Տեառն:
2 Գիտեմ այր մի 'ի Քրիստոս յառաջ քան զչորեք-
տասան ամ, եթէ մարմնով՝ ոչ գիտեմ, և եթէ
առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ, Աստուած գիտէ. յա-
փշտակեալ զայնպիսին մինչև յերրորդ երկինս:
3 Եւ գիտեմ զայնպիսի այր. եթէ մարմնով՝ և եթէ
4 առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ. Աստուած գիտէ, Զի
յափշտակեցաւ 'ի դրախտն, և լուաւ բանս անճա-

5 ուրս, զոր ոչ է պարտ մարդոյ խօսել։ Վասն այն-
պիսւոյն պարծեցայց. այլ վասն անձին ինչ ոչ
6 պարծեցայց, բայց եթէ 'ի տկարութիւնս։ Զի
եթէ և կամիցիմ պարծել՝ ոչ եղէց անզգամ. քան-
զի զարդարն ասեմ. այլ անխայեմ, գուցէ ոք հա-
մարիցի ինչ յիս աւելի՝ քան զոր տեսանիցէ յիս՝ կամ
7 լսիցէ յինէն։ Եւ զի մի՛ առաւելութեամբ յայտ-
նութեանցն հպարտացայց, տուաւ ինձ խայթ մարմ-
նոյ, հրեշտակ Սատանայ՝ կոփել զիս. զի մի՛ հպարտա-
8 ցայց։ Եւ վասն այնորիկ երիցս անգամ՝ աղաչեցի
9 զՏէր՝ զի 'ի բաց արասցէ յինէն. Եւ ասէ ցիս.
Շատ են քեզ շնորհք իմ, զի զօրութիւն իմ 'ի
տկարութեան կատարի. և արդ՝ լաւ ևս լիցի ինձ
պարծել 'ի տկարութիւնս. զի բնակեսցէ յիս զօ-
րութիւնն Քրիստոսի։
10 Վասն որոյ հաճեալ եմ ընդ տկարութիւնս,
ընդ թշնամանս, ընդ վիշտս, ընդ հալածանս, և
ընդ նեղութիւնս վասն Քրիստոսի. զի յորժամ
11 տկարանամ, յայնժամ զօրանամ։ Եղէ անզգամ,
քանզի դուք ստիպեցիք զիս. զի ինձ պարտ էր 'ի
ձէնջ վկայութիւն առնուլ՝ թէ ոչինչ պակաս գտայ
քան զլաւ առաքեալսն. զի թէպէտ և ես ոչինչ եմ.
12 Սակայն նշանք առաքելոյ գործեցան 'ի ձեզ՝ ամե-
նայն համբերութեամբ, նշանօք և արուեստիւք և
13 զօրութեամբք։ Եւ արդ զի՞նչ իցէ, որո՞վ պակաս
գտայք քան զայլ եկեղեցիս. բայց եթէ այնու՝ զի
ես զձեզ ոչ ձանձրացուցի. շնորհեցէ՛ք ինձ զվնասդ
14 զայդ։ Ահաւասիկ այս երիցս անգամ պատրաստ-
եալ եմ գալ առ ձեզ. և ձեզ բեռն ինչ ոչ եղէց.

զի ո՛չ խնդրեմ ինչ զձեր՝ այլ զձեզ. քանզի ո՛չ
պարտին որդիք հարց գանձել՝ այլ հարք որդւոց:
15 Բայց ես մտադիւրութեամբ ծախեցից, և ծախեցայց
վասն անձանց ձերոց. զի թէպէտ և յառաւել սի-
16 րոյն զձեզ սակաւ սիրիցեմ: Այլ դրեթէ ես ոչինչ
ծանրացայ ձեզ. այլ քանզի խորագէտ էի, խեղօք
17 կալայ զձեզ: Միթէ որովք առաքեցին առ ձեզ՝
18 նոքօք ինչ ագահեցի՞ ՚ի ձէնջ: Աղաչեցի զՏիտոս՝
և առաքեցի ընդ նմա զեղբայրն, միթէ ագահեա՞ց
ինչ զձեր Տիտոս. ո՞չ նովին ոգւով գնացաք. ո՞չ
նովին շաւղօք շրջեցաք:
19 Դարձեալ համարիցիք՝ եթէ յողոք անկեալ ինչ
ձեզ աղերսիցեմք. առաջի Աստուծոյ ՚ի Քրիստոս
խօսիմք, զի ամենայն ինչ սիրելիք վասն ձերոյ շի-
20 նութեան է: Այլ երկնչիմ, գուցէ եկեալ՝ ոչ որ-
պէս ես կամիմ գտանիցեմ զձեզ. և ես գտանի-
ցիմ ձեզ՝ որպէս և դուք ո՛չ կամիցիք. գուցէ դարձ-
եալ հեռ, նախանձ, սրտմտութիւնք, գրգռու-
թիւնք, չարախօսութիւնք, քսութիւնք, հպար-
տութիւնք, ամբարտաւանութիւնք, խռովութիւնք:
21 Գուցէ դարձեալ յորժամ գայցեմ՝ նկուն ինչ առ-
նիցէ զիս Աստուած իմ առ ձեզ. և սուգ առնու-
ցում վասն բազմաց յառաջագոյն մեղուցելոց և ո՛չ
ապաշխարելոց՝ ՚ի վերայ պղծութեան և պոռնկու-
թեան և գիջութեան զոր գործեցին:

## ԳԼ. ԺԳ

1 Այս երիցս անգամ գամ առ ձեզ. զի ՚ի բերա-
նոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամենայն

2 բան։ Յառաջ ասացի, և դարձեալ կանխաւ ասեմ՝
յանդիման երկիցս անգամ. և այժմ 'ի բացուստ
գրեմ յառաջագոյն յանցուցելոցն և այլոցն ամենե-
3 ցուն. զի եթէ եկից դարձեալ՝ ոչ խնայեցից։ Ե-
թէ զփորձ ինչ խնդրէք զՔրիստոսի, որ ինևս ընդ
ձեզ խօսի. որ հզօրացեալն է 'ի ձեզ, և ոչ տկա-
4 րացեալ։ Զի թէպէտ և խաչեցաւ 'ի մերմէ տը-
կարութենէ, այլ կենդանի է զօրութեամբն Ա-
ստուծոյ. և մեք թէպէտ և տկարանայցեմք վասն
նորա, այլ կենդանի լիցուք ընդ նմա զօրութեամբն
Աստուծոյ։
5 Փորձեցէ՛ք զանձինս ձեր, եթէ կայք 'ի նոյն հա-
ւատս. քննեցէ՛ք զանձինս, եթէ ոչ գիտէք զան-
ձինս՝ զի Քրիստոս Յիսուս 'ի ձեզ է. բայց եթէ
6 անպիտանք ինչ իցէք։ Այլ ակն ունիմ թէ գիտի-
7 ցէք. զի մեք ոչ եմք անպիտանք։ Այլ խնդրեմք
յԱստուծոյ՝ զի* մի՛ ինչ արասցէ ձեզ չար". ոչ
զի մեք ընտիրք երևեսցուք, այլ զի դուք զբարիս
8 գործիցէք՝ և մեք† անպիտանք իցեմք։ Զի ոչ կա-
րեմք ինչ հակառակ կալ ճշմարտութեանն. այլ
9 վերակացու եմք ճշմարտութեանն։ Խրախ եմք՝ յոր-
ժամ մեք տկարանայցեմք, և դուք զօրաւոր իցէք.
զդոյն իսկ և աղօթս առնեմք զձեր հաստատութիւ-
10 նըդ։ Վասն այնորիկ զայս 'ի հեռուստ գրեմ. զի
մի՛ յորժամ եկից՝ սաստկութեամբ վարեցայց ըստ
իշխանութեանս, զոր ետ ինձ Տէր 'ի շինել՝ և ոչ

* 'Ի Յոյնն, մի՛ չար ինչ առնիցէք դուք

† 'Ի Յոյնն յաւելու, իբրև

11 'ի քակել։ Այսուհետեւ եղբարք, ողջ լերուք, հաս-
տատո՛ւն կացէք՝ մխիթարեցարո՛ւք՝ միաբա՛ն լերուք՝
խաղաղութի՛ւն արարէ՛ք. եւ Աստուած խաղաղութեան
12 եւ սիրոյ եղիցի ընդ ձեզ։ Ողջո՛յն տուք միմեանց 'ի
համբոյր սրբութեան. ողջոյն տան ձեզ սուրբք ա-
13 մենայն։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի, եւ սէրն Աստուծոյ, եւ հաղորդութիւն Հոգ-
ւոյն Սրբոյ ընդ ձեզ ամենեսին. ամէն։

Առ Կորնթացիս երկրորդ՝ գրեցաւ 'ի Փիլիպեայ, 'ի ձեռն Տիտոսի եւ Ղուկայ։

---

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ առաքեալ ոչ 'ի մարդկանէ եւ ոչ 'ի ձեռն
մարդոյ, այլ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի եւ
2 Աստուծոյ Հօր՝ որ յարոյց զնա 'ի մեռելոց. Եւ
որ ընդ իս են եղբարք ամենեքին, եկեղեցեացդ
3 Գաղատացւոց: Շնորհք ընդ ձեզ եւ խաղաղու-
թիւն յԱստուծոյ 'ի Հօրէ եւ 'ի Տեառնէ մերմէ Յի-
4 սուսէ Քրիստոսէ. Որ ետ զանձն իւր վասն մեղաց
մերոց, զի զմեզ փրկեսցէ յաշխարհէ աստի չարէ՝ ըստ
5 կամացն Աստուծոյ եւ Հօր մերոյ. Որում փառք
6 յաւիտեանս յաւիտենից՝ ամէն: Զարմանամ՝ զի
այդպէս վաղվաղակի փոփոխիք յայնմանէ որ կոչ-
եացն զձեզ 'ի շնորհսն Քրիստոսի՝ յայլ աւետա-
7 րան. Որ ոչ գոյ այլ. բայց եթէ իցեն ոմանք որ
խռովեցուցանիցեն զձեզ, եւ կամիցին շրջել զաւե-
8 տարանն Քրիստոսի: Այլ թէ մեք, կամ հրեշ-
տակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր
9 աւետարանեցաքն ձեզ, նզովեալ լիցի: Որպէս
յառաջագոյնն ասացաք՝ եւ արդ դարձեալ ասեմ,

Եթէ ոք աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր ա-
10 ռիքն, նզովեալ լիցի: Արդ՝ մարդկա՞ն հաճոյ լի-
նիցիմ, թէ Աստուծոյ. կամ խնդրիցեմ մարդկա՛ն
հաճոյ լինել. եթէ տակաւին մարդկան հաճոյ լի-
նէի, ապա Քրիստոսի ծառայ ո՛չ էի:
11 Յուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն, որ ա-
12 ւետարանեցաւ յինէն. զի ո՛չ է ըստ մարդոյ. Քան-
զի և ո՛չ ես 'ի մարդոյ առի, և ո՛չ ուսայ յումեքէ.
13 այլ 'ի յայտնութենէն Յիսուսի Քրիստոսի: Քանզի
լուեալ իսկ է ձեր զիմ գնացսն որ երբեմն 'ի Հր-
րէութեան անդ. զի անչափ հալածէի զեկեղեցին
14 Աստուծոյ, և աւար հարկանէի զնա: Եւ յառա-
ջադէմ էի 'ի Հրէութեանն՝ քան զբազումս հասա-
կակիցս իմ, որ յազգին իմում էին. առաւել նա-
խանձախնդիր էի իմոյ հայրենի աւանդութեանցն:
15 Այլ յորժամ կամեցաւ Աստուած՝ որոշեաց զիս
յորովայնէ մօր իմոյ, և կոչեաց 'ի ձեռն շնորհաց
16 իւրոց, Յայտնել զՈրդին իւր ինև. զի աւետարա-
նեցից զնա 'ի հեթանոսս. անդէն վաղվաղակի ոչինչ
17 զգացուցի մարմնոյ և արեան, Եւ ո՛չ ելի յԵրու-
սաղէմ առ որ յառաջագոյն քան զիս առաքեալքն
էին. այլ չոգայ յԱրաբիա, և դարձեալ դարձայ
18 'ի Դամասկոս: Ապա յետ երից ամաց ելի յԵրու-
սաղէմ տեսանել զՊետրոս, և եղէ առ նմա աւուրս
19 հնգետասան: Զայլ ոք յառաքելոց անտի ո՛չ տե-
սի, բայց միայն զՅակովբոս զեղբայրն Տեառն:
20 Այլ զոր գրեմս առ ձեզ, ահաւասիկ առաջի Աս-
21 տուծոյ՝ զի ո՛չ ստեմ: Ապա եկի 'ի կողմանս Աս-

22 րուոց և Կիլիկեցւոց: Եւ յանծանօթս էի երեսօք*
եկեղեցեացն՝ որ ՚ի Թլփատութենէ անտի էին ՚ի
23 Քրիստոս: Բայց զի լսելով լսեալ էր, թէ Որ
հալածէրն զմեզ յայնժամ, արդ աւետարանէ զհա-
24 ւատսն զոր երբեմն խախտէր. Եւ փառաւոր առ-
նէին ինև զԱստուած:

## ԳԼ. Բ

1 Ապա յետ ամաց չորեքտասանից՝ միւսանգամ ելի
յԵրուսաղէմ ընդ Բառնաբայ. առեալ ընդ իս և
2 զՏիտոս: Եւ ելի ըստ յայտնութեանն. և զգացուցի
նոցա զաւետարանն՝ զոր քարոզէի ՚ի հեթանոսս, ա-
ռանձինն այնոցիկ՝ որ կարծեալքն էին, գուցէ ընդու-
նայն ինչ ընթացեալ իցեմ, կամ ընթանայցեմ:
3 Այլ և ոչ Տիտոս որ ընդ իս ՚ի հեթանոսաց էր,
4 բռնադատեցաւ թլփատիլ. Այլ վասն սպրդողաց
սուտ եղբարցն, որք սպրդեցին մտանել դիտել զա-
զատութիւնն մեր՝ զոր ունիմք ՚ի Քրիստոս Յիսուս.
5 զի զմեզ ծառայեցուսցեն: Որոց և ոչ առժամանակ
մի անսացաք հնազանդութեանն. զի ճշմարտութիւն
6 աւետարանին հաստատեսցի առ ձեզ: Բայց զկար-
ծեցելոցն եթէ իցեն ինչ, որպիսի ոք երբեմն էին,
չէ ինչ ինձ փոյթ. քանզի Աստուած ակն մարդկան
ոչ առնու. զի ինձ կարծեալքն այնպիսի ինչ ոչ
7 զգացուցին. Այլ զնորին հակառակն. իբրև տեսին
թէ հաւատացեալ է ինձ աւետարանն անթլփատու-

* Ի Յոյնն, եկեղեցեացն Հրէաստանի

8 թեան, որպէս Պետրոսի թլփատութեան. Զի որ
յաջողեացն Պետրոսի յառաքելութիւն թլփատու-
9 թեանն, յաջողեաց և ինձ 'ի հեթանոսս. Իբրև
գիտացին զշնորհսն որ տուեալ էին ինձ, Յակովբոս
և Կեփաս և Յովհաննէս, որ կարծեալ սիւնքն էին,
ձեռն ետուն հաւանութեան ինձ և Բառնաբայ. զի
մեք 'ի հեթանոսս, և նոքա 'ի թլփատութեանն.
10 Բայց միայն զի զաղքատսն յիշեսցուք. զոր և ես
փութացայ զնոյն առնել:
11 Այլ յորժամ եկն Կեփաս յԱնտիոք, ընդդէմ
դարձայ նորա. քանզի գոգ իբրև ստգտեալ իմն էր:
12 Քանզի մինչչև եկեալ էին ոմանք առ 'ի Յակով-
բայ, ընդ հեթանոսս ուտէր անխտիր. իսկ իբրև
եկին, զատանէր և որոշէր զանձն, երկուցեալ
13 յայնցանէ որ 'ի թլփատութենէ անտի էին: Եւ
կեղծաւորեցան ընդ նմա և այլ Հրէայքն, մինչև
Բառնաբաս անգամ խոնարհեցաւ 'ի նոցա կեղծա-
14 ւորութիւնն: Այլ իբրև տեսի թէ ոչ ուղիղ գնան
'ի ճշմարտութիւն աւետարանին, ասեմ ցԿեփաս ա-
ռաջի ամենեցուն. Եթէ դու որ Հրէայդ ես՝ հեթա-
նոսաբար և ոչ Հրէաբար կեաս, զիա՞րդ ստիպես հե-
15 թանոսաց լինել Հրէաբարէն: Զի մեք բուն Հրէայք
16 եմք, և ոչ 'ի հեթանոսաց մեղաւորք: Զայս գիտեմք՝
եթէ ոչ արդարանայ մարդ 'ի գործոց օրինաց, եթէ
ոչ 'ի հաւատոցն Յիսուսի Քրիստոսի. և մեք 'ի
Քրիստոս Յիսուս հաւատացաք, զի արդարասցուք
'ի հաւատոցն Քրիստոսի, և ոչ 'ի գործոց օրինաց.
զի 'ի գործոց օրինաց ոչ արդարասցի ամենայն մար-
17 մին: Իսկ եթէ մինչ խնդրիցեմք արդարանալ 'ի

Քրիստոս , և գտանիցիմք մեղաւորք • ապա ու-
րեմն՝ Քրիստոս մեղաց պաշտօնեայ եղև • քա՛ւ լի-
18 ցի ։ Զի եթէ զոր քակեցին՝ զնոյն միւսանգամ
շինիցեմ • ապա յանցաւոր զանձն իմ ես ինձէն ե-
19 րևեցուցանեմ ։ Զի ես օրինօք՝ օրինացն մեռայ ,
զի Աստուծոյ կեցից , և ընդ Քրիստոսի 'ի խաչ ե-
20 լից ։ Եւ կենդանի եմ այսուհետև , ոչ ես՝ այլ
կենդանի է յիս Քրիստոս ։

Այլ որ այժմս կեամ մարմնով , հաւատովք Որդ-
ւոյն Աստուծոյ կեամ • որ սիրեաց զիս , և մատն-
21 եաց զանձն վասն իմ ։ Եւ ես ո՛չ անարգեմ զշը-
նորհսն Աստուծոյ • զի եթէ յօրինաց անտի էր ար-
դարութիւն , ապա Քրիստոս զուր մեռաւ ։

## ԳԼ . Գ

1 Ո՛ անմիտ Գաղատացիք , ո՞ նախանձ արար
զձեզ՝ (ո՛չ հնազանդել ճշմարտութեան) • որոց
զրեթէ առաջի աչաց Քրիստոս Յիսուս գրեցաւ 'ի
2 խաչ ելեալ ։ Զայս միայն կամիմ ուսանել 'ի ձէնջ •
'ի գործո՞ց օրինաց զհոգին ընկալարուք՝ եթէ 'ի
3 լըոյ հաւատոց ։ Այդչափ անմի՞տ էք • սկսեալ հոգ-
4 ւով՝ և արդ մարմնով վախճանիք ։ Եւ այնչափ
5 անցք անցին ընդ ձեզ զուր՝ եթէ իցէ զուր ։ Իսկ
արդ՝ որ բաշխեաց 'ի ձեզ զհոգին՝ և յաջողեաց 'ի
ձեզ զզօրութիւնս • 'ի գործո՞ց օրինաց է՝ եթէ 'ի
6 լըոյ հաւատոց ։ Որպէս Աբրահամ հաւատաց յԱստ-
7 ուած՝ և համարեցաւ նմա յարդարութիւն ։ Գի-
տիցէ՞ք արդեօք • զի որք 'ի հաւատոց անտի են ,

8 նոքա են որդիք Աբրահամու ։ Յառաջագոյն գիտէր
գիր, եթէ ՚ի հաւատոց անտի արդարացուցանէ
Աստուած զհեթանոս, յառաջագոյն խօսեցաւ
Աբրահամու. թէ ՚ի քեզ օրհնեսցին ամենայն
9 ազգք ։ Այսուհետեւ որք ՚ի հաւատոց անտի են՝
10 օրհնին ընդ հաւատացելոյն Աբրահամու ։ Զի որ
միանգամ ՚ի գործոց օրինացն են, ընդ անիծիւք են.
քանզի գրեալ է. թէ Անիծեալ ամենայն մարդ՝ որ
ոչ կացցէ յամենայն գրեալսն ՚ի գիրս օրինաց՝ առ-
11 նել զամենայն ։ Զի օրինօքն ոչ ոք արդարանայ
առաջի Աստուծոյ, այն յայտ իսկ է. զի Արդարն,
ասէ, ՚ի հաւատոց կեցցէ ։
12 Բայց օրէնքն չեն ՚ի հաւատոց, այլ որ արասցէ
13 զայն՝ կեցցէ ՚ի նոսին ։ Քրիստոս գնեաց զմեզ յա-
նիծից օրինացն, եղեալ վասն մեր անէծք. զի
գրեալ է, թէ Անիծեալ ամենայն, որ կախեալ
14 կայցէ զփայտէ. Զի ՚ի հեթանոսս օրհնութիւն
Աբրահամու եղիցի ՚ի Քրիստոս Յիսուս. զի մեք
15 զաւետիս Հոգւոյն Սրբոյ առցուք հաւատովք ։ Ըստ
մարդկութեան ասեմ, եղբարք. Ապաքէն զմարդ-
կան հաստատեալ կտակ ոչ ոք կարէ անարգել, և
16 ոչ այլ հրաման ՚ի վերայ այնր տալ ։ Իսկ Աբրա-
համու խոստացան աւետիքն և զաւակի նորա. և ոչ
ասէ Զաւակաց՝ իբրև զբազմաց, այլ իբրև զմիոյ,
17 թէ՝ Եւ զաւակի քում, որ է Քրիստոս ։ Բայց
զայս ասեմ, զկտակն յառաջագոյն հաստատեալ
յԱստուծոյ ՚ի Քրիստոս, օրէնքն որ յետ չորեք-
հարիւր և երեսուն ամի եղան, ոչ կարեն խափանել
18 առ ՚ի խափանելոյ զաւետիսն ։ Եթէ յօրինաց ան-

տի է ժառանգութիւնն, ապա ո՛չ ևս յաւետեացն.
բայց Աբրահամու աւետեօք շնորհեաց Աստուած ։
19 Իսկ զի՞նչ իցեն օրէնք. յանցուածոց վասն յաւե-
լան, մինչև եկեսցէ զաւակն, որում խոստացեալն
20 էր՝ կարգեալ հրեշտակօք ՚ի ձեռն միջնորդի ։ Իսկ
միջնորդ միոյ ուրուք ո՛չ է՝ բայց Աստուած մի է ։
21 Իսկ արդ՝ օրէնքն հակառա՞կ ինչ իցեն աւետեացն
Աստուծոյ. քա՛ւ լիցի. զի եթէ տուեալ էին օրէնքն՝
որ կարող էին կենդանի առնել, ապա հաստատ յօ-
22 րինաց անտի էր արդարութիւն ։ Այլ փակեցին
Գիրք զամենեսին ընդ մեղօք, զի աւետիքն ՚ի հա-
ւատոց անտի Յիսուսի Քրիստոսի տացին հաւա-
23 տացելոց ։ Մինչչև հաւատքն եկեալ էին՝ ընդ օրի-
նօքն փակեալ պահէաք ՚ի հանդերձեալ հաւատոն,
24 որ յայտնելոց էին ՚ի մեզ ։ Ապա օրէնքն դաստիա-
րակ եղեն մեզ ՚ի Քրիստոս Յիսուս, զի ՚ի հաւա-
25 տոցն արդարասցուք ։ Այլ իբրև եկին հաւատքն,
26 ո՛չ ևս ընդ դաստիարակաւ եմք ։ Քանզի ամենե-
քին որդիք Աստուծոյ էք՝ հաւատովք ՚ի Յիսուս
27 Քրիստոս ։ Որք միանգամ ՚ի Քրիստոս մկրտեցա-
28 րուք, զՔրիստոս զգեցեալ էք. չի՛ք խտիր, Ո՛չ
Հրէի և ո՛չ Հեթանոսի, ո՛չ ծառայի և ո՛չ ազա-
տի, ո՛չ արուի և ո՛չ իգի. զի ամենեքեան դուք մի
29 էք ՚ի Քրիստոս Յիսուս ։ Ապա եթէ դուք Քրի-
ստոսի էք, ուրեմն Աբրահամու զաւակ էք՝ ըստ
աւետեացն՝ ժառանգք ։

## ԳԼ. Դ

1 Զայս ասեմ. Որքան ժամանակս ժառանգն
տղայ է՝ չէ ինչ առաւել քան զծառայն, թէպէտ
2 և տէր իցէ ամենեցուն. Այլ ընդ հազարապետօք
է և ընդ գաւառապետօք, մինչև 'ի ժամանակա-
3 կէտ հօրն: Նոյնպէս և մեք մինչ տղայքն էաք՝
ընդ տարերբք աշխարհիս 'ի ծառայութեան կայաք:
4 Այլ իբրև եկն լրումն ժամանակին, առաքեաց
Աստուած զՈրդին իւր, որ եղև 'ի կնոջէ, և ե-
5 մուտ ընդ օրինօք. Զի զնոսա որ ընդ օրինօքն ի-
ցեն, գնեսցէ. զի մեք զորդեգրութիւն ընկալցուք:
6 Եւ զի էք դուք որդիք, առաքեաց Աստուած զհո-
գի Որդւոյն իւրոյ 'ի սիրտս* մեր՝ որ աղաղակէ
7 Աբբա՝ Հայր: Այսուհետև չես ծառայ, այլ որ-
8 դի. եթէ որդի՝ և ժառանգ Աստուծոյ: Այլ յայն-
ժամ մինչ ոչն գիտէիք զԱստուած՝ ծառայէիք այ-
9 նոցիկ որ ոչն էին 'ի բնէ Աստուածք: Այլ այժ-
միկ ծաներուք զԱստուած, մանաւանդ թէ ծանու-
ցայք իսկ յԱստուծոյ, զիա՞րդ դառնայք միւսան-
գամ անդրէն 'ի տարերսն՝ 'ի տկարս և յաղքատս,
որոց միւսանգամ զանձինս ծառայեցուցանել կա-
10 միք: Զաւուրս խտրէք՝ և զամիսս և զժամանակս և
11 զտարիս: Երկնչիմ 'ի ձէնջ, գուցէ թէ 'ի զուր
12 ինչ վաստակեցի 'ի ձեզ: Եղերո՛ւք իբրև զիս,
քանզի և ես իբրև զձեզ էի: Եղբարք աղաչեմ
13 զձեզ, չիք ինչ ձեր մեղուցեալ առ իս: Գիտէք
դուք՝ զի տկարութեամբ մարմնոյ աւետարանեցի

* Ի Յոյնն, ձեր

ձեզ զառաջինն . և զփորձանսն որ 'ի մարմնի իմում
14 էին , Ո՛չ անարգեցիք՝ և ո՛չ անգոսնեցիք . այլ իբ-
րև զհրեշտակ Աստուծոյ ընկալարուք զիս՝ իբրև ըզ-
15 Քրիստոս Յիսուս : Իսկ արդ՝ ո՞ւր է երանութիւնն
ձեր . վկայեմ ձեզ՝ եթէ հնար ինչ էր՝ զաչս ձեր
16 հանէիք և տայիք ինձ : Արդ՝ զի՞ թշնամի իմն եղէ
17 ձեզ , զի զստոյգն խօսեցայ : Այլ նախանձեցուցա-
նեն զձեզ ոչ 'ի բարի . և արգելուլ կամին զձեզ՝
18 զի նոցա նախանձաւորք լինիցիք : Բայց լաւ է նա-
խանձաւոր լինել 'ի բարիս յամենայն ժամ , և ոչ
միայն յորժամ 'ի ձերում միջի իցեմ :
19 Որդեակք իմ, զորս դարձեալ վերստին երկնեմ,
20 մինչև նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ : Կամէի այժմ
գալ առ ձեզ՝ և փոխել զբարբառ իմ . զի տարա-
21 կուսեալ եմ ես վասն ձեր : Ասէք ինձ՝ որ ընդ
օրինօքն կամիք լինել , չիցէ՞ ընթերցեալ ձեր զօ-
22 րէնսն : Զի գրեալ է՝ թէ Աբրահամու երկու որդիք
23 էին , մի յաղախնոյ անտի , և մի յազատէն : Այլ
որ յաղախնոյն էր՝ ըստ մարմնոյ ծնեալ էր , և որ
24 յազատէն՝ ըստ աւետեաց . Որ է առակ օրինակի :
Զի այս ինքն են երկու կտակարանք , մի 'ի լեռնէ
Սինայ 'ի ծառայութիւն ծնեալ՝ որ է Հագար :
25 Քանզի Հագարն՝ լեառն Սինայ է յԱրաբիա , հա-
ւասար է այժմ Երուսաղէմի . զի ծառայէ որդւովք
26 իւրովք հանդերձ : Այլ վերինն Երուսաղէմ ազատ է՝
27 որ է մայր մեր ամենեցուն : Զի գրեալ է . Ուրախ
լեր ամուլ՝ որ ոչ ծնանէիր , գոչեա՛ և աղաղակեա՛
որ ոչդ երկնէիր . զի բազում են որդիք մենգկեր-
28 առաւել քան զայրամբւոյն : Այլ մեք եղբարք՝ ըստ

29 Սահակայ աւետեացն որդիք եմք ։ Այլ որպէս
յայնժամ, որ ըստ մարմնոյն ծնեալ էր՝ հալածէր
30 զայն որ ըստ հոգւոյն, նոյնպէս և այժմ։ Այլ
զի՞նչ ասէ գիր ․ Ի բաց հան զաղախինդ և զորդի
դորա, զի մի ժառանգեսցէ որդի աղախնոյն ընդ
31 որդւոյն ազատի ։ Վասն որոյ եղբարք՝ չեմք որդիք
աղախնոյն, այլ ազատին ․ ազատութեամբն, որով
Քրիստոս զմեզ ազատեացոյց ։

## ԳԼ․ Ե

1 Պնդ կացէք այսուհետև, և մի՛ միւսանգամ ընդ
լծով ծառայութեան մտանէք ։
2 Ահաւասիկ՝ ես Պօղոս ասեմ ձեզ․ Զի եթէ
3 թլփատիք, Քրիստոս ինչ ձեզ ոչ օգնէ ։ Վկա-
յեմ ամենայն մարդոյ՝ որ թլփատիցի, թէ պար-
4 տական է զամենայն օրէնսն կատարել ։ Խափանեալ
էք ՚ի Քրիստոսէ՝ որ օրինօքն արդարանայք ․ և
5 անկեալ էք ՚ի շնորհաց անտի ։ Զի մեք Հոգւոյն՝
՚ի հաւատոց յուսոյն արդարութեան ակն ունիմք ։
6 Զի ՚ի Քրիստոս Յիսուս ոչ թլփատութիւն ինչ
կարող է՝ և ոչ անթլփատութիւն ․ այլ հաւատք սի-
7 րով յաջողեալք ։ Բարւոք ընթանայիք, ո՞ կասեցոյց
8 զձեզ ճշմարտութեանն չհաւանել ։ Զի այն հր-
9 րապոյրք՝ ոչ յայնմանէ են որ կոչեացն զձեզ ։ Փոքր
10 մի խմոր զամենայն զանգուածն խմորէ ։ Այլ ես
յուսացեալ եմ ՚ի ձեզ Տէրամբ՝ թէ ոչ այլազգ
ինչ խորհիցիք ․ և որ խռովեցուցանէ զձեզ՝ կրեսցէ
11 դատաստան՝ ո՛ ոք և իցէ ։ Այլ ես եղբարք՝ եթէ

թլփատութիւն քարոզէի՝ ընդէ՞ր տակաւին հալա-
ծիմ. ապա ուրեմն խափանեալ իցէ գայթագղու-
12 թիւն խաչին: Երանի՜ թէ մօտակտուր իսկ լինէին՝
13 որ զձեզն խռովեցուցանեն: Զի դուք յազատու-
թիւն կոչեցեալ էք եղբարք. միայն զի ազատու-
թիւն ձեր մի՛ լինիցի 'ի պատճառս մարմնոյ. այլ
14 սիրով ծառայեցէք միմեանց: Զի ամենայն օրէնք
'ի մի բան կատարին. 'Ի սիրեսցես զընկեր քո իբ-
15 րև զանձն քո: Ապա եթէ զմիմեանս խածատիցէք
և ուտիցէք, զգո՛յշ լերուք՝ գուցէ 'ի միմեանց սա-
տակիցիք:

16 Բայց զայս ասեմ. Հոգւով գնացէք, և զցան-
17 կութիւն մարմնոյ մի՛ կատարէք: Զի մարմին ցան-
կայ հակառակ հոգւոյ, և հոգի հակառակ մարմնոյ.
և զի սոքա միմեանց հակառակ են, մի՛ զոր կա-
18 միցիքն՝ զայն առնիցէք: Իսկ եթէ Հոգւով վարիք,
19 ապա չէ՞ք ընդ օրինօք: Զի յայտնի են գործք
մարմնոյ. այսինքն են շնութիւն, պոռնկութիւն,
20 պղծութիւն, գիճութիւն, Կռապաշտութիւն, կա-
խարդութիւն, Թշնամութիւն, հեռ, նախանձ,
բարկութիւն, հակառակութիւնք, երկպառակու-
21 թիւնք, հերձուածք, Չարակնութիւնք, սպանու-
թիւնք, արբեցութիւնք, անառակութիւնք, և որ
ինչ սոցին նման են. զոր յառաջագոյն իսկ ասեմ
ձեզ, որպէս կանխաւն ասէի, Թէ որ զայսպիսի
ինչ գործեն՝ զարքայութիւն Աստուծոյ ոչ ժառան-
22 գեն: Իսկ պտուղ Հոգւոյն այս է. սէր, խնդու-
23 թիւն, խաղաղութիւն, երկայնմտութիւն, Քաղց-
րութիւն, բարութիւն, հաւատք, հեզութիւն,

ժուժկալութիւն. զայնպիսեաց ամաց օրէնք չեն
24 հակառակ: Իսկ որ Քրիստոսեանքն են, զմարմինս
իւրեանց ՚ի խաչ հանին կրաւքն և ցանկութեամբք
25 հանդերձ: Եթէ կեամք Հոգւով՝ ընդ Հոգւոյն և
26 միաբանեսցուք: Եւ մի՛ լիցուք սնափառք՝ միմեանց
ձայն տալով, և ընդ միմեանս նախանձեալք:

## ԳԼ. Զ.

1 Եղբարք՝ եթէ յանկարծ ըմբռնեսցի ոք ՚ի ձէնջ
յինչ և իցէ յանցանս, դուք որ հոգևորքդ էք՝
հաստատեցէք զայնպիսին հոգւով հեզութեան.
զգոյշ լինիջիք անձանց՝ գուցէ մի՛ և դուք փորձիցիք:
2 Զմիմեանց բեռն բարձէք, և այնպէս կատարեցէք
3 զօրէնսն Քրիստոսի: Եթէ համարիցի ոք լինել ինչ՝
4 և չիցէ, զանձն իւր խաբէ: Զգործ իւր կշռեսցէ
իւրաքանչիւրոք, և ապա անձին իւրում միայն պար-
5 ծանս տացէ, և մի՛ առ ընկերաւն: Զի իւրաքանչ-
6 իւրոք զիւր բեռն բառնալոց է: Հաղորդութիւն ա-
րասցէ * աշակերտն վարդապետին յամենայն" բա-
7 րութիւնս: Մի՛ խաբիք, Աստուած ոչ արհամարհի:
8 Զի զոր ինչ սերմանէ մարդ՝ զնոյն և հնձեսցէ. որ
սերմանէ ՚ի մարմին իւր, ՚ի մարմնոյ անտի հնձեսցէ
զապականութիւն. և որ սերմանէ ՚ի Հոգին՝ ՚ի
9 Հոգւոյ անտի հնձեսցէ զկեանսն յաւիտենից: Այլ
զբարիս գործել մի՛ ձանձրասցուք, զի ՚ի ժամանակի

* Ի Ոմանս, աշակերտեալն ՚ի բանի՝ վարդապետին, յամենայն

10 իւրում հնձեսցուք * առանց լքանելոյ» : Այսու-
հետև մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է՝ գործեսցուք
զբարիս առ ամենեսեան, մանաւանդ առ ընտանիսն
11 հաւատոց : Տեսէք զպիսի գրով գրեցի առ ձեզ
12 իմով ձեռամբ : Ոյք որ միանգամ կամին բարե-
մարդիկ լինել մարմնով, նոքա ստիպեն զձեզ թլ-
փատել. միայն զի մի՛ զխաչին Քրիստոսի զհետ եր-
13 թայցեն : Քանզի որ թլփատեալքն իսկ են, նոքա
զօրէնսն ո՛չ պահեն. այլ կամին զի դուք թլփա-
տեսջիք, զի ձերով մարմնովդ պարծեսցին :
14 Այլ ինձ քա՛ւ լիցի պարծել՝ բայց միայն 'ի խաչն
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով ինձ աշ-
15 խարհ 'ի խաչ ելեալ է՝ և ես աշխարհի : Զի
('ի Քրիստոս Յիսուս), ո՛չ թլփատութիւն ինչ
է՝ և ո՛չ անթլփատութիւն, այլ նոր արարած :
16 Եւ որք միանգամ այսմ կանոնի միաբան լինին,
խաղաղութիւն 'ի վերայ նոցա և ողորմութիւն, և 'ի
17 վերայ Իսրայէլիս Աստուծոյ : Այսուհետև աշխատ
ոք զիս մի՛ արասցէ. զի ես զչարչարանս Քրիս-
18 տոսի 'ի մարմնի իմում կրեմ : Շնորհք Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ոգւոյդ ձերում եղ-
բարք. ամէն :

* 'Ի Յոյնն, եթէ ոչ լքանիցիմք՝

Առ Գաղատացիս՝ գրեցաւ 'ի Հռովմայ :

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ԵՓԵՍԱՑԻՍ

## ԳԼ. Ա.

1 ՊՕՂՈՍ *առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն*
*Աստուծոյ՝ սրբոց որ են յԵփեսոս, և հաւա-*
2 *տացելոց ՚ի Քրիստոս Յիսուս: Շնորհք ընդ ձեզ*
*և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ՝ և ՚ի*
3 *Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ: Օրհնեալ է Աստ-*
*ուած և Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.*
*որ օրհնեաց զմեզ ամենայն հոգևոր օրհնութեամբ*
4 *յերկնաւորս ՚ի Քրիստոս. Որպէս ընտրեաց զմեզ*
*նովաւ յառաջ քան զլինելն աշխարհի, լինել մեզ*
5 *սուրբս և անարատս առաջի նորա սիրով: Յառա-*
*ջագոյն սահմանեաց զմեզ յորդեգրութիւն ՚ի ձեռն*
*Յիսուսի Քրիստոսի ՚ի նոյն՝ ըստ հաճութեան կա-*
6 *մաց իւրոց, ՚Ի գովեստ փառաց շնորհաց իւրոց՝ ո-*
7 *րով զուարճացոյց զմեզ սիրելեաւն: Որով ունիմք*
*զփրկութիւն ՚ի ձեռն արեան նորա, զթողութիւն*
8 *մեղաց՝ ըստ մեծութեան շնորհաց իւրոց. Որ առաւե-*
*լաւ ՚ի մեզ ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ:*
9 *Եցոյց մեզ զխորհուրդս կամաց իւրոց՝ ըստ հաճու-*

10 թեան իւրում. զոր յառաջագոյն եդ նովաւ, 'Ի
տնտեսութիւն լրման ժամանակաց, բովանդակել
զամենայն 'ի Քրիստոսի, որ ինչ յերկինս և որ ինչ
11 յերկրի 'ի նոյն: Որով և վիճակեցաք յառաջագոյն
հրաւիրեալք՝ ըստ յառաջադրութեանն Աստուծոյ.
որ զամենայն յաջողէ ըստ խորհրդոց կամաց իւրոց.
12 Լինել մեզ 'ի գովեստ փառաց նորա՝ յառաջագոյն
13 յուսացելոցս 'ի Քրիստոս: Որով և դուք իբրև
լուարուք զբանն ճշմարտութեան, զաւետարանն
փրկութեան ձերոյ, որով և հաւատացեալ կնքե-
14 ցայք Հոգւոյն Սրբոյ աւետեաց. Որ է առհաւատ-
չեայ ժառանգութեան մերոյ, 'ի փրկութիւն նուա-
ճութեան, 'ի գովեստ փառաց նորա:

15 Վասն այնորիկ և ես իբրև լուայ զհաւատսն զձեր՝
որ 'ի Տէր Յիսուս, և զսէրն որ ընդ ամենայն սուր-
16 բըս, Ո՛չ դադարեմ 'ի գոհանալոյ վասն ձեր՝ յի-
17 շել զձեզ յաղօթս. Զի Աստուած Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի, Հայրն փառաց՝ տացէ ձեզ
զհոգին իմաստութեան և յայտնութեան՝ գիտու-
18 թեամբն իւրով. Լուսաւոր առնել զաչս* սրտից՝
առ 'ի գիտելոյ մեզ՝ " զինչ է յոյս կոչման նորա, և
զինչ մեծութիւն փառաց ժառանգութեան նորա 'ի
19 սուրբս. Եւ զինչ է առաւելութիւն մեծութեան
զօրութեան նորա 'ի մեզ հաւատացեալս. ըստ յա-
20 ջողութեան կարողութեան զօրութեան իւրոյ, Զոր
յաջողեաց 'ի Քրիստոս. զի յարոյց զնա 'ի մեռե-
21 լոց, և նստոյց ընդ աջմէ իւրմէ յերկնաւորս, 'Ի

* 'Ի Յոյնն, սրտի ձերոյ՝ առ 'ի գիտելոյ ձեզ

վերայ ամենայն իշխանութեան և պետութեան և
զօրութեան և տէրութեան և ամենայն անուան ան-
ուանելոյ , ոչ միայն յաշխարհիս յայսմիկ՝ այլ և
22 'ի հանդերձելումն ։ Եւ զամենայն ինչ հնազանդ
արար 'ի ներքոյ ոտից նորա ․ և զնա ետ գլուխ 'ի
23 վերայ ամենայն իրիք եկեղեցւոյ , Որ է մարմին նո-
րա , լրումն՝ որ զամենայն յամենայնի լնու ։

## ԳԼ․ Բ

1 Եւ զձեզ՝ որ մեռեալն էիք 'ի մեղս ձեր և յան-
2 ցանս , Յորս երբեմն գնայիք ըստ յաւիտենի աշ-
խարհիս այսորիկ՝ ըստ իշխանին իշխանութեան օ-
դոյս այսոյ , որ այժմ ներգործեալ է յորդիսն ապա-
3 տամբութեան ․ Յորս և մեք ամենեքեան շրջէաք
երբեմն 'ի ցանկութիւնս մարմնոյ մերոյ , և առնէաք
զկամս մարմնոյ և զմտաց , և էաք * արդարև որդիք
բարկութեան իբրև այլքն ։
4 Այլ Աստուած որ մեծն է ողորմութեամբք , վասն
5 բազում սիրոյն իւրոյ՝ զոր սիրեաց զմեզ , Մինչդեռ
մեռեալքն էաք 'ի մեղս մեր , կենդանիս արար զմեզ
6 'ի Քրիստոս ․ քանզի շնորհօք ապրեցայք ․ Ընդ նը-
մին յարոյց , և ընդ նմին նստոյց յերկնաւորս 'ի
7 Քրիստոս Յիսուս ։ Զի ցուցցէ 'ի յաւիտեանսն
որ գալոցն են՝ զառաւել մեծութիւն շնորհացն իւ-
րոց՝ քաղցրութեամբ 'ի մեզ 'ի Քրիստոս Յիսուս ։
8 Զի շնորհօք նորա էք փրկեալք 'ի ձեռն հաւատոցն ․

---

* 'ի Յոյնն , 'ի բնէ

9 և այս ոչ 'ի ձէնջ, այլ Աստուծոյ պարգև է. Ոչ
10 'ի գործոց, զի մի ոք պարծեսցի: Զի նորա
արարածք եմք՝ հաստատեալք Քրիստոսիւ Յի-
սուսիւ 'ի գործս բարութեան, յորս յառաջագոյն
պատրաստեաց Աստուած, զի 'ի նոյնս գնասցուք:
11 Վասն որոյ և դուք յիշեցէք՝ զի երբեմն հեթանոսք
էիք մարմնով. որ կոչեցեալն են անթլփատութիւն՝
յանուանեալ թլփատութենէ անտի մարմնաւոր ձե-
12 ռագործին. Զի էիք 'ի ժամանակին յայնմիկ առանց
Քրիստոսի, ( և օտարացեալք յառաքինութենէն
Իսրայէլի, ) և տարադէմք յուխտից աւետեացն,
և յոյս ինչ ոչ ունէիք՝ և անաստուածք էիք յաշ-
13 խարհի: Իսկ այժմիկ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,
դուք որ երբեմն հեռաւորքն էիք՝ մերձաւորք եղե-
14 րուք արեամբն Քրիստոսի: Զի նա է խաղաղու-
թիւն մեր՝ որ արար զերկոսեան մի. և զմիջնորմն
ցանկոյն քակեաց՝ զթշնամութիւն 'ի մարմնի իւրում.
15 Եւ զօրէնս պատուիրանացն հրամանօքն խափանեաց.
զի զերկոսին հաստատեսցէ ինքեամբ 'ի մի նոր մարդ,
16 և արասցէ խաղաղութիւն. Եւ հաշտեցուսցէ զեր-
կոսին միով մարմնով ընդ Աստուծոյ՝ խաչիւն իւրով.
17 քանզի սպան զթշնամութիւն յանձին իւրում: Եւ
եկն աւետարանեաց խաղաղութիւն ձեզ հեռաւորաց,
18 և խաղաղութիւն մերձաւորաց. Զի նովաւ ունիմք
զնուաճութիւն երկոքին՝ միով Հոգւով առ Հայր:
19 Ապա այսուհետև ոչ էք օտարք և պանդուխտք,
այլ քաղաքակիցք սրբոց և ընտանիք Աստուծոյ.
20 Շինեալք 'ի վերայ հիման առաքելոց և մարգա-
րէից, որոյ է գլուխ անկեանն Քրիստոս Յի-

21 սուր․ Յորում ամենայն շինուածն յօդեալ և պատ-
22 շաճեալ՝ աճէ ՚ի տաճար սուրբ Տէրամբ։ Յորում
և դուք ընդ նմին շինիք ՚ի բնակութիւն Աստուծոյ
Հոգւովն։

## ԳԼ. Գ

1 Վասն այսորիկ ես Պօղոս կապեալ Յիսուսի
2 Քրիստոսի վասն ձեր հեթանոսաց։ Եթէ լու-
եալ իցէ ձեր զտնտեսութիւն շնորհացն Աստուծոյ,
3 որ տուեալ են ինձ ՚ի ձեզ։ Զի ըստ յայտնու-
թեանն ցուցաւ ինձ խորհուրդն․ որպէս յառաջա-
4 գոյն գրեցի առ ձեզ սակաւուք․ Առ ՚ի կարօղ լի-
նելոյ ընթեռնուլ՝ և ՚ի միտ առնուլ զիմաստութիւնն
5 զիմ ՚ի խորհրդեանն Քրիստոսի։ Զի այլոց ազ-
գաց ոչ ցուցաւ որդւոց մարդկան․ որպէս այժմ
յայտնեցաւ սրբոց իւրոց՝ առաքելոց և մարգարէից՝
6 Հոգւովն․ Լինել հեթանոսաց ժառանգակիցս՝ և
մարմնակիցս, և հաղորդս աւետեացն ՚ի Քրիստոս
7 Յիսուս՝ աւետարանաւն, Որոյ եղէ ես սպասաւոր,
ըստ պարգևաց շնորհացն Աստուծոյ՝ որ տուան ինձ
8 ըստ յաջողութեան զօրութեան նորա։ Ինձ, որ
տրուպս եմ ամենայն սրբոց՝ տուան շնորհքս այս,
՚ի հեթանոսս աւետարանել զանքննին մեծութիւնն
9 Քրիստոսի․ Եւ լուսաւոր առնել զամենեսին, թէ
զինչ է տնտեսութիւն խորհրդոյն, որ ծածկեալ էր
յամենայն յաւիտենից՝ առ Աստուծոյ՝ որ զամենայն
10 ինչ արար․ Զի յայտնեսցի արդ իշխանութեանց և
պետութեանց՝ որ յերկինս են, ՚ի ձեռն եկեղեցւոյ՝

11 բազմապատիկ իմաստութիւնն Աստուծոյ . Ըստ յա-
ռաջադրութեան յաւիտենիցն՝ զոր արար 'ի ձեռն
12 Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Որով ունիմք
զհամարձակութիւն և զնուաճութիւն յուսով 'ի ձեռն
13 հաւատոց Նորա ։ Վասն որոյ աղաչեմ մի՛ ձանձրա-
նալ 'ի նեղութեանս մերում, որ՝ վասն ձեր է . որ
14 է փառք ձեր ։ Վասն այսորիկ դնեմ ծունր առ
15 Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . Ուստի
ամենայն նահապետութիւն յերկինս և յերկրի ա-
16 նուանի . Զի տացէ ձեզ ըստ մեծութեան փառաց
իւրոց, հաստատել զօրութեամբ 'ի ձեռն Հոգւոյն
17 իւրոյ 'ի ներքին մարդն . Բնակել Քրիստոսի հա-
ւատովք 'ի սիրտս ձեր . սիրով արմատացեալք և
18 հաստատեալք . Զի կարող լինիջիք հասանել ընդ
ամենայն սուրբս, զի՛նչ է լայնութիւն և երկայնու-
19 թիւն և բարձրութիւն և խորութիւն . *Ճանաչել
զառաւելութիւն գիտութեան սիրոյն Քրիստոսի”;
20 զի լցջիք ամենայն լրութեամբն Աստուծոյ ։ Այլ
այնմ որ կարողն է առաւել քան զամենայն ինչ
առնել յաճախութեամբ՝ քան զոր խնդրեմքն և ի-
մանամք, ըստ զօրութեանն որ յաջողեալն է 'ի մեզ ։
21 Նմա փառք յեկեղեցւոջ, և 'ի Քրիստոս Յի-
սուս, յամենայն ազգս յաւիտենից յաւիտեանս . ա-
մէն ։

---

* 'Ի Յոյնն, Ճանաչել զսէրն Քրիստոսի՝ զառա-
ւելն քան զգիտութիւն

աճեցուսցուք ՚ի նա զամենայն, որ է գլուխ Քրի-
16 ստոս. Ուստի ամենայն մարմինն յօդեալ և պատ-
շաճեալ ամենայն խաղալեօք տարբերութեան՝ ըստ
ազդեցութեան չափով ըստ իւրաքանչիւր մասին՝
զաճումն մարմնոյ գործէ՝ ՚ի շինած անձին իւրոյ սի-
17 րով: Զայս ասեմ և ուխտեմ ՚ի Տէր. մի՛ ևս
ձեզ գնոյն օրինակ գնալ՝ որպէս և այլ հեթանոսք
18 գնան՝ ունայնութեամբ մտաց իւրեանց. Որոց խա-
ւարեալ են միտք իւրեանց, և օտարացեալ են ՚ի կե-
նաց անտի Աստուծոյ՝ վասն տգիտութեանն՝ որ է
՚ի նոսա, վասն կուրութեան սրտից իւրեանց:
19 Որք զանձանց իւրեանց զյոյսն հատին, և մատ-
նեցին զանձինս գիջութեան, ՚ի գործս ամենայն
20 պղծութեան ագահութեամբ: Այլ դուք ո՛չ այս-
21 պէս ուսարուք զՔրիստոս. Եթէ պէտ և լուարուք
զնմանէ, և նովաւ ուսայք՝ որպէս է ճշմարտու-
22 թիւնն Յիսուսի. ՚Ի բաց մերկանալ ՚ի ձէնջ ըստ
առաջին գնացիցն զմարդն հին՝ զապականեալն ցան-
23 կութեամբք խաբէութեանն: Եւ նորոգել հոգ-
24 ւով մտաց ձերոց, Եւ զգենուլ զնոր մարդն՝ որ
ըստ Աստուծոյն հաստատեալ է՝ արդարութեամբ
25 և սրբութեամբ ճշմարտութեանն: Վասն որոյ
՚ի բա՛ց ընկեցէք զստութիւն. խօսեցարո՛ւք զճշ-
մարտութիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում.
26 զի եմք միմեանց անդամք: Բարկանա՛յք՝ և մի՛
մեղանչէք. արեգակն ՚ի վերայ բարկութեան ձե-
27 րոյ մի՛ մտցէ: Եւ մի՛ տայք տեղի Սատանայի:
28 Որ գողանայրն՝ մի՛ ևս գողասցի, այլ մանաւանդ
վաստակեսցէ գործել ձեռօք իւրովք զբարիս. զի

29 բաւական իցէ տալ՝ ում պիտոյ իցէ ։ Ամենայն բան
տգեղ 'ի բերանոյ ձերմէ մի՛ ելցէ . այլ որ ինչ բա-
րին է 'ի շինած պիտոյից , զի տացէ շնորհս այնո-
30 ցիկ , որ լսենն ։ Եւ մի՛ տրտմեցուցանիցէք զ՟ոգին
Սուրբ Աստուծոյ , որով կնքեցարուք յաւուրն փըր-
31 կութեան ։ Ամենայն դառնութիւն և բարկութիւն՝
և սրտմտութիւն և աղաղակ՝ և հայհոյութիւն բարձ-
32 ցի՛ 'ի ձէնջ ամենայն չարութեամբն հանդերձ ։ Լե-
րո՛ւք ընդ միմեանս քաղցունք՝ գթածք . շնորհել
միմեանց , որպէս և Աստուած Քրիստոսիւ շնորհ-
եաց մեզ ։

## ԳԼ. Ե

1 Եղերո՛ւք նմանօղք Աստուծոյ , իբրև որդիք սի-
2 րելիք . Եւ գնացէ՛ք սիրով՝ որպէս և Քրիստոս
սիրեաց զմեզ , և մատնեաց զանձն իւր վասն մեր՝
պատարագ և զենումն Աստուծոյ 'ի հոտ անուշից ։
3 Այլ պոռնկութիւն և ամենայն պղծութիւն , կամ
ագահութիւն՝ և անուանեսցի մի՛ 'ի միջի ձերում ,
4 որպէս և վայել է սրբոց . Եւ զազրութիւն , կամ
խօսք յիմարութեան , կամ խեղկատակութիւն՝ որ
5 ո՛չ վայել է . այլ մանաւանդ գոհութիւն ։ Զայս
տեղեկացեալ գիտասջի՛ք . թէ ամենայն պոռնիկ , կամ
պիղծ , կամ ագահ , որ է կռապաշտ՝ ո՛չ ունի ժա-
ռանգութիւն յարքայութեանն Քրիստոսի և Աս-
6 տուծոյ ։ Մի՛ ոք զձեզ խաբեսցէ բանիւք սնոտեօք .
զի վասն այսորիկ իսկ գայ բարկութիւն Աստուծոյ
7 'ի վերայ որդւոցն անհաւանութեան ։ Մի՛ այսու-

8 Հետև լինիք բաժանորդք նոցա: Զի թէպէտ և
երբեմն էիք խաւար, արդ լոյս էք 'ի Տէր. իբրև
9 զորդիս լուսոյ գնացէք. Զի պտուղ լուսոյ ամե-
նայն բարութեամբ է՝ և արդարութեամբ և ճշ-
10 մարտութեամբ: փորձեցէք զինչ է հաճոյ Տեառն.
11 Եւ մի կցորդ լինիք անպտղութեան գործոցն խա-
12 ւարի. այլ մանաւանդ յանդիմանեցէք: Զի որ
'ի ծածուկ ինչ գործի 'ի նոցա՝ զայն և խօսել աղ-
13 տեղի է: Այլ ամենայն ինչ յանդիմանեալ 'ի լու-
սոյ՝ յայտնի լինի. զի ամենայն ինչ որ յայտնի է՝
14 լոյս է: Վասն որոյ և ասէ. Արի՛ որ ննջեսդ, և
կանգնեա՛ց 'ի մեռելոց, և լուսատու լիցի քեզ Քրի-
ստոս:
15 Տեսջի՛ք՝ որպէս ճշմարտիւ գնայցէք. մի իբրև
16 անիմաստք, Այլ իբրև իմաստունք. գնեցէ՛ք զժա-
17 մանակս, զի աւուրքս չարութեան են: Վասն այ-
նորիկ մի լինիք անմիտք՝ այլ իմացարո՛ւք զինչ կամք
18 են Տեառն: Եւ մի արբենայք գինւով, յորում
զեղխութիւն է. այլ մանաւանդ լցարո՛ւք Հոգւով,
19 Խօսել* 'ի սիրտս ձեր՝ սաղմոսիւք, և օրհնու-
թեամբք և երգովք հոգևորօք. երգել և սաղմոս ա-
20 սել 'ի սիրտս ձեր Տեառն: Գոհացարո՛ւք յամենայն
ժամ 'ի վերայ ամենայնի, յանուն Տեառն մերոյ Յի-
21 սուսի Քրիստոսի՝ Հօրն և Աստուծոյ: Հնազանդ
22 լերուք միմեանց երկիւղիւն Քրիստոսի: Կանայք
23 իւրեանց արանց հնազանդ լիցին իբրև Տեառն. Զի
այր է գլուխ կնոջ՝ որպէս և Քրիստոս գլուխ է եկե-

* Ի Յոյնն, ընդ միմեանս.

24 ղեցւոյ. եւ ինքն է փրկիչ մարմնոյ։ Այլ որպէս ե-
կեղեցին հնազանդ լինի Քրիստոսի, նոյնպէս եւ կա-
25 նայք իւրեանց արանց յամենայնի։ Արք՝ սիրեցէք
զկանայս ձեր. որպէս եւ Քրիստոս սիրեաց զեկեղեցի,
26 եւ զանձն իւր մատնեաց վասն նորա. Զի զնա սրբես-
27 ցէ սրբութեամբ աւազանին բանիւ. Զի կացուսցէ
ինքն իւր յանդիմանն փառաւոր զեկեղեցի, զի մի՛
ունիցի ինչ արատ՝ կամ աղտեղութիւն, կամ այլ
ինչ յայնպիսեաց. այլ զի իցէ սուրբ եւ անարատ։
28 Նոյնպէս պարտին արք սիրել զիւրեանց կանայս՝
իբրեւ զիւրեանց մարմինս. որ սիրէ զկին իւր, զանձն
29 իւր սիրէ։ Զի ոչ ոք երբէք ատեաց զանձն իւր, այլ
սնուցանէ եւ դարմանէ զնա, որպէս եւ Քրիստոս զե-
30 կեղեցի. Զի անդամք եմք մարմնոյ նորա, ՚ի մարմ-
31 նոյ նորա եւ յոսկերաց նորա։ Վասն այսորիկ թողցէ
այր զհայր եւ զմայր իւր, եւ երթիցէ զհետ կնոջ իւ-
32 րոյ, եւ եղիցին երկոքին ՚ի մարմին մի։ Խորհուրդս
այս մեծ է՝ բայց ես ասեմ ՚ի Քրիստոս եւ յեկե-
33 ղեցի։ Այլ եւ դուք նոյնպէս մի ըստ միոջէ. զի իւ-
րաքանչիւրոք զիւր կին այնպէս սիրեսցէ՝ իբրեւ զիւր
անձն. եւ կին երկնչիցի յառնէ իւրմէ։

## ԳԼ. Զ.

1 Որդիք՝ հնազանդ լերուք ծնողաց ձերոց ՚ի Տէր.
2 զի այն է արժանն։ Պատուեա՛ զհայր քո եւ զմայր.
3 որ է առաջին պատուիրան յաւետեաւ. Զի քեզ
բարի եղիցի, եւ երկայնակեաց լինիցիս ՚ի վերայ
4 երկրի։ Հարք՝ մի՛ զայրացուցանէք զորդիս ձեր,

այլ սնուցանիջիք զնոսա խրատու և ուսմամբ Տեա-
5 ռն ։ Ծառայք՝ հնազանդ լերուք տերանց ձերոց
մարմնաւորաց , ահիւ և դողութեամբ և միամտու-
6 թեամբ սրտից ձերոց՝ որպէս և Քրիստոսի ։ Մի՛
առ ականէ ծառայել իբրև մարդահաճոյք . այլ իբ-
րև ծառայք Քրիստոսի առնել զկամս Աստուծոյ ։
7 Սրտի մտօք ծառայել՝ իբրև Տեառն , և մի՛ իբրև
8 մարդկան ։ Գիտասջի՛ք՝ թէ իւրաքանչիւրոք որ զինչ
առնէ զբարիս , զնոյն ընդունի և 'ի Տեառնէ՝ եթէ
9 ծառայ և եթէ ազատ ։ Եւ դուք տեա՛րք՝ զնոյն
առնիջի՛ք առ նոսա . ներելով առնել զպատուհասն .
գիտասջի՛ք թէ և նոցա և ձեր Տէր գոյ յերկինս . և
10 ակնառութիւն ո՛չ գոյ առաջի նորա ։ Այսուհետև
զօրացարո՛ւք Տերամբ , և կարողութեամբ զօրու-
11 թեան նորա ։ Եւ զգեցարո՛ւք զսպառազինութիւնն
Աստուծոյ . զի կարող լինիջիք կալ ընդդէմ հնարից
12 Սատանայի ։ Զի ո՛չ է մեզ պատերազմ ընդ մարմ-
նոյ և ընդ արեան . այլ ընդ իշխանութիւնս , և ընդ
պետութիւնս , և ընդ աշխարհակալս խաւարիս այ-
սորիկ՝ ընդ այսս չարութեան՝ որ 'ի ներքոյ երկնից ։
13 Վասն այսորիկ առէ՛ք զսպառազինութիւնն Աս-
տուծոյ , զի կարող լինիջիք 'ի դիմի հարկանել չա-
14 րին յաւուրն չարութեան ։ Եւ իբրև զամենայն ինչ
կատարիցէք , հաստատո՛ւն կացէք , զտեղի՛ կալջիք ,
պնդեալ զմէջս ձեր ճշմարտութեամբ , և զգեցեալ
15 զզրահս արդարութեան , Եւ ագուցեալ զոտս
պատրաստութեամբ աւետարանին խաղաղութեան ։
16 Եւ 'ի վերայ ամենայնի առէ՛ք զվահանն հաւատոց .
որով կարող լինիջիք զամենայն նետս մուխս չարին

17 շիջուցանել։ Եւ առէք զսաղաւարտն փրկութեան,
18 և զսուսեր Հոգւոյն, որ է բանն Աստուծոյ. Ամե-
նայն աղօթիւք և խնդրուածովք՝ աղօթս առնել
յամենայն ժամանակի Հոգւով. Եւ 'ի նոյն տքնիջիք
ամենայն ժուժկալութեամբ և խնդրուածովք՝ վասն
19 ամենայն սրբոց, Եւ վասն իմ. զի ինձ տացի բան
'ի բանալ բերանոյ իմոյ, համարձակութեամբ ցու-
20 ցանել զխորհուրդ աւետարանին. Վասն որոյ պատ-
գամաւորիմ կապանօքս, զի նովին համարձակեցայց,
21 որպէս և պարտ իցէ ինձ խօսել։ Բայց զի գիտի-
ցէք և դուք զինէն՝ զինչ գործիցեմ, զամենայն ինչ
ցուսցէ ձեզ Տիւքիկոս սիրելի եղբայր՝ և հաւատա-
22 րիմ պաշտօնեայ 'ի Տէր. Զոր առաքեցի առ ձեզ
դմին իրի, զի գիտասջիք դուք զմէնջ, և մխիթա-
23 րեսցէ զսիրտս ձեր։ Խաղաղութիւն ընդ եղբարս,
և սէր հաւատովքն հանդերձ յԱստուծոյ 'ի Հօրէ՝
24 և 'ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։ Շնորհք ընդ
ամենեսին որք սիրեն զՏէր մեր Յիսուս Քրիստոս
անեղծութեամբ. ամէն։

Առ Եփեսացիս՝ գրեցաւ 'ի Հռոմէ 'ի ձեռն Տիւքի-
կոսի։

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ՓԻԼԻՊԵՑԻՍՆ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ եւ Տիմոթէոս, ծառայք Յիսուսի Քրիս-
տոսի՝ ամենայն սրբոց ՚ի Քրիստոս Յիսուս,
որ են ՚ի կողմանս փիլիպեցւոց, եպիսկոպոսակցօք
2 եւ սարկաւագօք: Շնորհք ընդ ձեզ եւ խաղաղու-
թիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ՝ եւ ՚ի Տեառնէ Յի-
3 սուսէ Քրիստոսէ: Գոհանամ զԱստուծոյ իմոյ ՚ի
4 վերայ ամենայն յիշատակաց ձերոց, Յամենայն
ժամ յամենայն խնդրուածս իմ՝ վասն ձեր ամե-
5 նեցուն առնել աղօթս խնդութեամբ. Վասն հա-
ղորդութեան ձերոյ ընդ աւետարանին, յօրէ յա-
6 ռաջնմէ մինչեւ ցայժմ: Վստահ եմ յայդ, թէ որ
սկսաւ ՚ի ձեզ զգործս բարեաց՝ կատարեսցէ մինչեւ
7 յօրն Յիսուսի Քրիստոսի. Որպէս իրաւ իսկ թուի
ինձ խորհել զայս վասն ձեր ամենեցուն. վասն ու-
նելոյ ինձ զձեզ ՚ի սրտի ՚ի կապանս իմում, եւ ՚ի
պատասխանատուութեան իմում, եւ ՚ի հաստատու-
թեան աւետարանին, կցորդս ինձ շնորհաց զձեզ
8 ամենեսին լինել: Վկայ է ինձ Աստուած, որպէս

անձկացեալ եմ առ ձեզ ամենեսին գթովքն Քրիս-
9 տոսի Յիսուսի ։ Եւ զայն աղօթս առնեմ, զի
սէրն ձեր ևս քան զևս առաւել լիցի ՚ի գիտութեան
10 և յամենայն իմաստութեան, Ընտրել ձեզ զլաւն՝
զի իցէք հաստատունք և առանց գայթագղութեան
11 ՚ի յաւուրն Քրիստոսի․ Լցեալ պտղովք արդա-
րութեան ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ՚ի փառս և
՚ի գովեստ Աստուծոյ ։
12 Կամիմ թէ գիտիցէք եղբարք, զի որ ինչ վասն
իմ էր, ևս քան զևս ՚ի յառաջադիմութիւն աւե-
13 տարանին եկն․ Մինչև կապանաց իմոց յայտնի լի-
նել ՚ի Քրիստոս յամենայն հրապարակիս, և առ
14 այլս ամենեսին․ Եւ առ բազում եղբարս ՚ի Տէր,
որ վստահ են կապանօքս իմովք՝ առաւել ևս հա-
մարձակել՝ առանց երկիւղի զբանն Աստուծոյ խօսել։
15 Ոմանք առ նախանձու և հակառակութեան, և ո-
մանք մտադիւրութեամբ իսկ զՔրիստոս քարոզեն․
16 Եւ ոմանք ՚ի սիրոյ․ քանզի գիտեն՝ եթէ ՚ի պա-
17 տասխանատուութիւն աւետարանին կամ․ Եւ ո-
մանք առ հեստութեան զՔրիստոս պատմեն, այլ
ոչ սրբութեամբ․ քանզի համարին նեղութիւնս
18 յարուցանել ՚ի վերայ կապանաց իմոց ։ Բայց այս
զինչ է․ որով օրինակաւ և իցէ, եթէ պատճա-
ռանօք՝ և եթէ ճշմարտութեամբ՝ Քրիստոս պատ-
մի․ և ընդ այս խնդամ՝ այլ և ուրախ ևս եղէց ։
19 Զի գիտեմ, եթէ այս պահի ինձ ՚ի փրկութիւն ՚ի
ձերոց խնդրուածոց՝ և ՚ի պարգևաց Հոգւոյն Յի-
20 սուսի Քրիստոսի, Ըստ ակնկալութեան և յուսոյ
իմոյ․ զի մի իւիք յամօթ եղէց, այլ ամենայն հա-

մարձակութեամբ՝ որպէս և յամենայն ժամ, և այժմ
մեծասցի Քրիստոս 'ի մարմնի իմում, եթէ կենօք՝
21 և եթէ մահու ։ Զի ինձ կեանք Քրիստոս է, և
22 մեռանել շահ ։ Ապա եթէ կեանքս մարմնոյ՝ այս
ինձ պտուղ գործոյ է. և զինչ ընտրեցից՝ զայն ոչ
23 գիտեմ ։ Նեղեալ եմ յերկոցունց. ցանկալն ելանել
և ընդ Քրիստոսի լինել՝ առաւել լաւ համարիմ.
24 Եւ կալ մնալ աստէն 'ի մարմնի, կարեւոր ևս վասն
25 ձեր ։ Եւ զայս յուսացեալ գիտեմ, եթէ կացից՝ և
մնացից ամենեցուն ձեզ, 'ի ձեր զարգանալ և խրախ
26 լինել 'ի հաւատս. Զի պարծանք ձեր առաւել
լիցին 'ի Քրիստոս Յիսուս ինև 'ի միւսանգամ
գալստեան իմում առ ձեզ ։

27 Միայն թէ արժանի աւետարանին Քրիստոսի
գնայցէք. զի եթէ գայցեմ, և տեսանիցեմ զձեզ.
և եթէ հեռի իցեմ, և լսիցեմ զձէնջ. զի հաս-
տատուն կայցէք 'ի մի հոգի, և միով շնչով նա-
28 հատակիցէք 'ի հաւատս աւետարանին. Եւ մի՛
զանգիտիցէք՝ և մի՛ իւիք 'ի հակառակորդաց ան-
տի. որ է նոցա հանդէս կորստեան, և ձերոյ փըր-
29 կութեան ։ Եւ այդ յԱստուծոյ է՝ որ ձեզ շնորհե-
ցաւ վասն Քրիստոսի. ոչ միայն 'ի նա հաւատալ՝
30 այլ և վասն նորա չարչարիլ. Զնոյն պատերազմ
ունել՝ զոր յիս տեսէք և այժմ լսէք յինէն ։

## ԳԼ. Բ

1 Արդ՝ եթէ մխիթարութիւն ինչ իցէ 'ի Քրիս-
տոս, եթէ սփոփութիւն սիրոյ՝ եթէ հաղորդու-

թիւն Հոգւոյ, եթէ գթութիւն և ողորմութիւն.
2 Լցէք զխնդութիւնս իմ. զնոյն խորհեսջիք, զնոյն
սէր յանձին ունիջիք, համաշունչք, միախորհուրդք.
3 Մի ինչ ըստ գրգռութեան, և մի ինչ ըստ սնա-
պարծութեան. այլ խոնարհութեամբ զմիմեանս
4 լաւ համարեսջիք առաւել քան զանձինս. Մի զան-
ձանց ևեթ դիտել՝ այլ իւրաքանչիւրոք զընկերին:
5 Զայն խորհեսջիք իւրաքանչիւրոք ի ձեզ, որ և ի
6 Քրիստոս Յիսուս. Որ ի կերպարանս Աստուծոյ
է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն
7 հաւասար Աստուծոյ. Այլ զանձն ունայնացոյց՝
զկերպարանս ծառայի առեալ, ի նմանութիւն
մարդկան եղեալ՝ և կերպարանօք գտեալ իբրև
8 զմարդ: Խոնարհեցոյց զանձն, լեալ հնազանդ մա-
9 հու չափ՝ և մահու խաչի: Վասն որոյ և Աստուած
զնա առաւել բարձրացոյց. և շնորհեաց նմա անուն
10 որ ի վեր է քան զամենայն անուն: Զի յանուն
Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի՝ երկ-
նաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց.
11 Եւ ամենայն լեզու խոստովան լիցի, թէ Տէր է
Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր:
12 Այսուհետև սիրելիք իմ, որպէս յամենայնի
հնազանդեցարուք, մի միայն ի գալստեան իմում,
այլ առաւել ևս այժմ՝ յորժամ հեռի եմ ի ձէնջ,
ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործե-
13 ցէք: Զի Աստուած է՝ որ յաջողէ ի ձեզ զկամելն
14 և զառնելն վասն հաճութեան: Զամենայն ինչ
15 գործեցէք առանց տրտնջելոյ և քրթմնջելոյ. Զի
եղիջիք անբիծք և անարատք՝ որդիք Աստուծոյ, ան-

մեղք 'ի մէջ կամակոր և խեղաթիւր ազգին. յորոց
16 միջի երևիցիք իբրև լուսաւորք յաշխարհի. Զբանն
կենաց ունել յանձինս՝ 'ի պարծանս ինձ յաւուրն
Քրիստոսի. զի ոչ ընդունայն ինչ ընթացայ՝ և
17 ոչ ընդունայն վաստակեցի։ Այլ թէպէտև նուի-
րիմ 'ի վերայ պատարագի և պաշտաման հաւատոց
ձերոց, խնդամ և ուրախակից եմ ամենեցուն ձեր։
18 Նոյնպէս և դուք խնդացէ՛ք՝ և ուրախակի՛ց եղերուք
19 ինձ։ Բայց յուսամ 'ի Տէր Յիսուս զՏիմոթէոս
վաղվաղակի արձակել առ ձեզ. զի և ինձ սրտի
20 դիւր լինիցի, յորժամ գիտիցեմ ինչ զձէնջ։ Զի
ոչ զոք ունիմ համաշունչ՝ եթէ ընտանեբար հո-
21 գայցէ վասն՝ ձեր։ Զի ամենեքին զանձանց խնդ-
22 րեն, և ոչ զՅիսուսի Քրիստոսի։ Բայց զփորձ
նորա գիտէք և դուք, զի իբրև որդի հօր ծառայ-
23 եաց ընդ իս յաւետարանին։ Արդ՝ զսա ակն ունիմ
արձակել՝ որպէս նոյնհետայն զանձնէ տուեցից։
24 Այլ յուսացեալ եմ 'ի Տէր՝ թէ և ես իսկ ընդ
25 հուպ եկից։ Բայց լաւ համարեցայ զԵպափրոդի-
տոս զեղբայր՝ և զգործակից և զինուորակից իմ,
'ի ձեր առաքեալ, և զպաշտօնեայ իմոց պիտոյից՝ ա-
26 ռաքել առ ձեզ։ Քանզի և ինքն իսկ յոյժ անձ-
կացեալ է տեսանել զամենեսին զձեզ. և հոգայր՝
27 զի ձեր լուեալ էր թէ խօթացաւ։ Եւ արդարև
խօթացաւ մերձ 'ի մահ. այլ Աստուած ողորմեցաւ
նմա. ոչ նմա միայն, այլ և ինձ՝ զի մի՛ տրտմու-
28 թիւն 'ի վերայ տրտմութեան կրիցեմ։ Արդ՝ փու-
թապէս յղեցի զնա, զի տեսեալ զնա միւսանգամ
ուրախ լինիցիք, և ես սակաւ տրտմութեան եղէց։

29 Ընկալջի՛ք զնա 'ի Տէր ամենայն խնդութեամբ, և
30 զայնպիսիսն առ պատուականս ունիջի՛ք. Զի վասն
գործոյ Տեառն մինչև 'ի մահ մերձեցաւ, դուն
գործեալ ոգւովք չափ, զի լցցէ զձեր պակասու-
թիւն իմոյ սպասաւորութեան:

## ԳԼ. Գ

1 Այսուհետև եղբա՛րք իմ, ուրա՛խ լերուք 'ի
Տէր. զնոյն գրել առ ձեզ՝ ինձ ոչի՛նչ դանդաղելի
2 է, և ձեզ կարի զգուշալի: Զգո՛յշ եղերուք 'ի
շանց անտի. զգո՛յշ եղերուք 'ի չար մշակաց ան-
3 տի. զգո՛յշ եղերուք 'ի կրճատութենէ անտի: Զի
թլփատութիւն մեք եմք, որ հոգւովն Աստուծոյ
պաշտեմք, և պարծիմք 'ի Քրիստոս Յիսուս, և
4 ո՛չ 'ի մարմին պանծացեալ եմք: Թէպէտ և ես իսկ
զնոյն վստահութիւն ունիմ 'ի մարմնի, եթէ ոք
համարիցի այլազգ վստահ լինել 'ի մարմին, առա-
5 ւել ևս ես. Թլփատութեամբ ութօրեայ, յազգէ
Իսրայէլի, 'ի ցեղէ Բենիամինի. Եբրայեցի յԵբ-
6 րայեցւոյ, ըստ օրինացն փարիսեցի. Ըստ նախան-
ձայոյզն լինելոյ՝ հալածէի զեկեղեցին. ըստ արդա-
7 րութեան օրինացն լեալ անարատ: Այլ որ ինչ
ինձ շահն էր՝ զայն վնաս համարիմ վասն Քրիս-
8 տոսի: Այլ և համարիմ իսկ զամենայն վնաս՝ վասն
առաւել գիտութեանն Յիսուսի Քրիստոսի Տեառն
մերոյ. վասն որոյ յամենայնէ զրկեցայ՝ և համարիմ
9 կղկղանս, զի զՔրիստոս շահեցայց, Եւ գտայց
'ի նմա. իբրև ո՛չ եթէ զիմ ինչ արդարութիւն՝ որ

յօրինաց անտի է՝ ունիցիմ, այլ զհաւատոցն Քրի–
10 ստոսի, որ յԱստուծոյ արդարութիւնն է. Հա–
ւատովք ճանաչել զնա՝ և զզօրութիւն յարութեան
նորա՝ և զհաղորդութիւն չարչարանաց նորա, կեր–
11 պարանակից լինել մահու նորա. Թէ որպէս հա–
12 սից 'ի մեռելոցն յարութիւն: Իբր ոչ եթէ արդէն
առեալ իցեմ, կամ արդէն կատարեալ իցեմ. զհետ
մտեալ եմ թէ հասից, *մանաւանդ թէ ըմբռ–
13 նեալ իսկ իցեմ" 'ի Քրիստոսէ Յիսուսէ: Եղ–
բարք՝ ես ոչ համարիմ զանձն իմ թէ հասեալ
իցեմ. բայց մի ինչ է՝ զի զառ 'ի յետոյսն մոռաց–
14 եալ եմ, և 'ի յառաջադէմսն նկրտեալ եմ. Ուշ
եդեալ՝ ընթանամ 'ի կէտ կոչմանն Աստուծոյ 'ի
15 Քրիստոս Յիսուս: Այսուհետև՝ որ միանգամ կա–
տարեալքդ էք՝ զայս խորհեսցարուք. և եթէ այլ–
ազգ ինչ խորհիցիք՝ սակայն և զայն Աստուած ձեզ
16 յայտնեսցէ: Բայց յոր ժամանեցաքս՝ զնոյն խոր–
17 հել՝ և սմին կանոնի միաբան լինել: Նմանողք ինձ
եղիջիք եղբարք՝ և դիտասջիք զայնոսիկ, որ
այնպէսն գնայցեն, որպէս ունիքդ զմեզ ձեզ օրի–
18 նակ: Զի բազումք գնան՝ զորոց բազում անգամ
ասէի ձեզ. բայց արդ և լալով իսկ ասեմ, զթշ–
19 նամեաց խաչին Քրիստոսի. Որոց կատարածն կո–
րուստ է. որոց Աստուած որովայնն իւրեանց է, և
փառք ամօթն իւրեանց, որք զերկրաւորս և եթ
20 խորհին: Այլ մեր առաքինութիւն յերկինս է,
ուստի և փրկչին ակն ունիմք՝ Տեառն Յիսուսի

* 'Ի Յոյնն, որոյ վասն ըմբռնեալ եմ

21 Քրիստոսի ․ Որ նորոգեսցէ զմարմին խոնարհու-
թեան մերոյ՝ կերպարանակից լինել մարմնոյ փա-
ռաց իւրոց , ըստ զօրութեանն՝ առ ՚ի կարօղ լի-
նելոյ հնազանդեցուցանել ընդ իւրև զամենայն ։

## ԳԼ․ Դ

1 Այսուհետև եղբարք իմ սիրելիք և անձկալիք ,
ուրախութիւն իմ և պսակ ․ այսպէս հաստատուն
2 կացէք ՚ի Տէր՝ սիրելիք ․ զԵւոդիա աղաչեմ և ըզ-
3 Սիւնտիք աղաչեմ, զնոյն խորհել ՚ի Տէր ։ Այո՛
աղաչեմ և զքեզ՝ մտերիմ իմ և լծակից , և դու
օգնական * լինիջիր նոցա՝ որք յաւետարանին նա-
հատակեցան ընդ իս Կղեմաւ հանդերձ՝ և այլովք
գործակցօք իմովք ․ որոց անուանքն են ՚ի դպրու-
4 թեան կենաց ։ Ուրախ լերուք ՚ի Տէր յամենայն
5 ժամ ․ դարձեալ ասեմ՝ ուրախ լերուք ։ Հեզու-
թիւն ձեր յայտնի լիցի ամենայն մարդկան ․ Տէր
6 մերձ է ։ Մի՛ ինչ հոգայք ․ այլ † ամենայն աղօ-
թիւք և խնդրուածովք , գոհութեամբ խնդրուածք
7 ձեր յայտնի լիցին առ Աստուած ։ Եւ խաղաղու-
թիւնն Աստուծոյ որ ՚ի վեր է քան զամենայն միտս ,
պահեսցէ զսիրտս ձեր և զմիտս ՚ի Քրիստոս Յի-
սուս ։

8 Այսուհետև եղբարք՝ որ ինչ ճշմարտութեամբ է ,
որ ինչ պարկեշտութեամբ , որ ինչ արդարու-

* Ի Յոյնն, լինիջիր կանանցն այնոցիկ
† Ի Յոյնն, յամենայնի

թեամբ՝ որ ինչ սրբութեամբ, որ ինչ սիրով, որ
ինչ համբաւ բարեաց, որ ինչ քաջութեամբ, որ ինչ
9 գովութեամբ, զայն խորհեցիք: Զոր ուսարուքն
և ընկալարուք և լուայք և տեսէք յիս, զայն ա-
րարէք. և Աստուած խաղաղութեան եղիցի ընդ
10 ձեզ: Ուրախ եղէ ես 'ի Տէր յոյժ. զի և դուք
զմտաւ ածիք հոգալ ինչ վասն իմ, որպէս և հո-
11 գայիքն. բայց բարբարէիք իմն է: Իբր ոչ առ
կարօտութեան ինչ ասեմ. զի ես ուսայ՝ որովք կա-
12 րեմ բաւական լինել: Գիտեմ նուաղել, գիտեմ
առաւելուլ. յամենայնի ամենեւին խելամուտ եմ,
և յագել և քաղցենալ. և առաւելուլ և նուաղել:
13 Յամենայնի կարօղ եմ այնու՝ որ զօրացոյցն զիս:
14 Բայց բարւոք արարէք՝ զի կցորդ եղերուք ինձ 'ի
15 նեղութեանս: Գիտէք և դուք փիլիպեցիք, զի 'ի
սկզբան աւետարանին իբրև ելի ես 'ի Մակեդովնիա,
և ոչ մի եկեղեցի հաղորդեաց ինձ յաղագս տալոյ
16 և առնլոյ, բայց միայն դուք. Զի և 'ի Թեսա-
ղոնիկէ միանգամ և երկիցս զպէտս իմ ետուք բե-
17 րել: Իբր ոչ եթէ խնդրեմ զտուրսն, այլ խնդրեմ
18 զպտուղն, որ յաճախէ 'ի բան ձեր: Այլ իմ առ-
եալ զամենայն, և առաւելեալ եմ. ընկալայ՝ և
լի եմ 'ի ձեռն Եպափրոդիտեայ, որ 'ի ձէնջ հոտ
անուշից՝ պատարագ ընդունելի՝ հաճոյ Աստուծոյ:
19 Եւ Աստուած իմ լի արասցէ զամենայն պէտս ձեր
ըստ իւրում մեծութեանն՝ փառօք 'ի Քրիստոս
20 Յիսուս: Այլ Աստուծոյ և Հօր մերում փառք
21 յաւիտեանս յաւիտենից. ամէն: Ողջոյն տայջիք ա-
22 մենայն սրբոց 'ի Քրիստոս Յիսուս: Ողջոյն տան

23 ձեզ՝ որ ընդ իս են եղբարք ։ Ողջոյն տան ձեզ՝ ա-
մենայն սուրբք . մանաւանդ որ 'ի տանէ Կայսերն են ։
24 Շնորհք Տեառն Յիսուսի Քրիստոսի ընդ հոգւոյդ
ձերում . ամէն ։

Առ Փիլիպեցիս՝ գրեցաւ 'ի Հռոմէ 'ի ձեռն Եպաֆ-
րոդիտեայ ։

---

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն
2 Աստուծոյ, և Տիմոթէոս եղբայր. Առ Կողո-
սացիս սուրբս և հաւատացեալս եղբարս ՚ի Քրիս-
3 տոս: Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱս-
տուծոյ Հօրէ մերմէ՝ (և ՚ի Տեառնէ Յիսուսէ Քը-
րիստոսէ): Գոհանամ զԱստուծոյ և զՀօրէ Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի, յամենայն ժամ վասն
4 ձեր աղօթս առնեմ: Իբրև լուաք զհաւատսն ձեր՝
որ ՚ի Քրիստոս Յիսուս Տէր մեր, և զսէրն որ ընդ
5 ամենայն սուրբս ունիք. Վասն յուսոյն՝ որ պահի
ձեզ յերկինս. զորմէ լուարուք բանիւն ճշմարտու-
6 թեան աւետարանին, Որ եհաս առ ձեզ. որպէս
ընդ ամենայն աշխարհ աճէ՝ և պտղաբերէ. որպէս
և ՚ի ձերում միջի. յօրէ յորմէ լուարուք և ծան-
7 եայք զշնորհսն Աստուծոյ ճշմարտութեամբ. Որ-
պէս և ուսարուք յԵպափրեայ սիրելւոյ ծառայակ-
ցէ մերմէ, որ է հաւատարիմ վասն ձեր՝ պաշտօն-
8 եայ Յիսուսի. Որ և պատմեաց մեզ զձեր սէրն

9 Հոգւով։ Վասն այնորիկ և մեք յօրէ յորմէ լուաք՝
ոչ դադարեմք վասն ձեր աղօթս առնել՝ և խնդ-
րուածս մատուցանել. զի լնուցուք զգիտութիւն
կամացն նորա, ամենայն իմաստութեամբ և հոգևոր
10 հանճարով. Գնալ ձեզ արժանի Տեառն յամե-
նայն հաճութեան, յամենայն գործս բարութեան
պտղաբերք, և աճեցուցք գիտութեամբն Աստուծոյ.
11 Ամենայն զօրութեամբ զօրացեալք ըստ զօրութեան
փառաց նորա. յամենայն համբերութիւն և եր-
կայնմտութիւն։
12 Ուրախութեամբ գոհանալ զԱստուծոյ Հօրէ՝ որ
13 կոչեացն զձեզ ՚ի մասն վիճակի սրբոցն ՚ի լոյս. Որ
փրկեացն զմեզ յիշխանութենէ խաւարի, և փոխեաց
14 զմեզ յարքայութիւն Որդւոյն իւրոյ սիրելւոյ. Ա-
րով ունիմք զփրկութիւն արեամբն նորա, և զթո-
15 ղութիւն մեղաց՝ մարմնովն նորա. Որ է պատկեր
աներևութին Աստուծոյ, անդրանիկ ամենայն արա-
16 րածոց։ Զի նովաւ հաստատեցաւ ամենայն, որ
ինչ յերկինս՝ և որ ինչ յերկրի, որ երևին՝ և որ
ոչն երևին. եթէ աթոռք, եթէ տէրութիւնք, ե-
թէ պետութիւնք, եթէ իշխանութիւնք. ամենայն
17 ինչ նովաւ՝ և ՚ի նոյն հաստատեցաւ։ Եւ նա է
յառաջ քան զամենայն, և ամենայն ինչ նովաւ ե-
18 կաց բովանդակ։ Եւ նա է գլուխ մարմնոյ եկեղեց-
ւոյ. որ է սկիզբն, անդրանիկ ՚ի մեռելոց. զի ե-
19 ղիցի ինքն յամենայնի յառաջացեալ։ Զի ՚ի նմա
հաճեցաւ ամենայն լրումն Աստուածութեանն բնա-
20 կել. Եւ նովաւ հաշտեցուցանել զամենայն ՚ի նոյն.
արար խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ, որ

21 ինչ յերկրի՝ և որ ինչ յերկինս ։ Եւ զձեզ՝ որ եր-
բեմն օտարացեալն էիք , և թշնամիք խորհրդովք
22 'ի գործսն չարութեան · Այժմ աւադիկ հաշտեցոյց
անդամովք մարմնոյ իւրոյ 'ի ձեռն մահուն իւրոյ ,
յանդիման կացուցանել զձեզ սուրբս և անբիծս և
23 անարատս առաջի Նորա · Եթէ կայցէք 'ի հաւատսն
արմատացեալք և հաստատեալք , և անշարժք 'ի յու-
սոյ աւետարանին՝ զոր լուարուք , քարոզելոյ ընդ
ամենայն արարածս 'ի Ներքոյ երկնից · որոյ եղէ ես
Պօղոս պաշտօնեայ ։
24 Եւ արդ՝ ուրախ եմ 'ի չարչարանս իմ վասն ձեր ·
և լնում զպակասութիւն Նեղութեանցն Քրիստոսի
'ի մարմնի իմում վասն մարմնոյ Նորա՝ որ է եկե-
25 ղեցի · Որոյ եղէ ես Պօղոս պաշտօնեայ՝ ըստ տըն-
տեսութեանն Աստուծոյ , որ տուեալ է ինձ 'ի ձեզ
26 կատարել զբանն Աստուծոյ · Զխորհուրդն՝ որ
ծածկեալն էր 'ի յաւիտեանցն և յազգաց · որ այժմ
27 յայտնեցաւ սրբոց իւրոց ։ Որոց կամեցաւ Աստուած
ցուցանել , թէ զի՛նչ է մեծութիւն փառաց խորհըր-
դոյ Նորա 'ի հեթանոսս , որ է Քրիստոս 'ի ձեզ՝
28 յոյսն փառաց , Զոր մեք քարոզեմք · և խրատեմք
զամենայն մարդ , և ուսուցանեմք զամենայն մարդ ա-
մենայն հոգևոր իմաստութեամբ · զի կացուսցուք
զամենայն մարդ կատարեալ 'ի Քրիստոս Յիսուս ·
29 Յոր և աշխատիմ պատերազմեալ ըստ յաջողու-
թեան Նորա՝ որ յաջողեալ է յիս զօրութեամբ ։

## ԳԼ. Բ

1 Կամիմ զի գիտասջիք դուք՝ որպիսի ճգնութիւն
ունիմ յաղագս ձեր՝ եւ վասն Լաւոդիկեցւոց,
2 եւ որոց չիցէ տեսեալ զերեսս իմ մարմնով։ Զի
մխիթարեսցին սիրտք նոցա միաբանեալք սիրով. եւ
յամենայն մեծութիւն լրութեան իմաստութեան՝ ի
գիտութիւն խորհրդոյն Աստուծոյ Հօր ի Քրի-
3 ստոս Յիսուս. Յորում ամենայն գանձք իմաս-
4 տութեան եւ գիտութեան ծածկեալ կան։ Այլ
զայս ասեմ, զի մի՛ ոք զձեզ պատրանեցեցուցէ պաճաճիր
5 բանիւք։ Զի թէպէտ եւ մարմնով հեռի եմ, այլ
հոգւով ընդ ձեզ եմ. խնդամ՝ իբրեւ տեսանեմ
զկարգն ձեր՝ եւ զհաստատութիւն հաւատոցն ձերոց
6 որ ի Քրիստոս Յիսուս։ Արդ՝ որպէս ընկալարուք
7 զՔրիստոս Յիսուս զՏէր, նովին գնասջիք. Ար-
մատացեալք եւ շինեալք ի նա, եւ հաստատեալք ի
հաւատս, որպէս ուսարուքն՝ առաւելեալք ի նմին
գոհութեամբ։

8 Զգոյշ լերուք մի՛ ոք իցէ՝ որ զձեզ կողոպտիցէ
ճարտարամտութեամբ՝ եւ սնոտի խաբէութեամբ, որք
ըստ մարդկան աւանդութեան՝ եւ ըստ տարերց աշ-
9 խարհի՝ եւ ոչ ըստ Յիսուսի Քրիստոսի. Զի ի
նմա բնակէ ամենայն լրումն Աստուածութեանն
10 մարմնապէս։ Եւ էք դուք նովաւ լցեալք, որ է գլ-
11 ուխ ամենայն իշխանութեան եւ պետութեան. Որով
թլփատեցարուք, հաւատովք զանձեռագործ թլփա-
տութիւնն՝ ի մերկանալ զանդամս մարմնոյ թլփա-
12 տութեամբն Քրիստոսի։ Թաղեալք ընդ մմին ի

մկրտութեանն , որով և ընդ նմին յարեայք հա-
ւատովք Աստուծոյ ազդեցութեանն , որ յարոյց զնա
13 'ի մեռելոց ։ Եւ զձեզ՝ որ երբեմն մեռեալն էիք 'ի
մեղս և յանթլփատութեան մարմնոյ ձերոյ , կեն-
դանացոյց յանձին իւրում ․ շնորհեաց մեզ զամե-
14 նայն յանցանս մեր՝ Եւ ջնջեաց զձեռագիր մերոյ
հակառակութեանն հրամանօքն իւրովք ․ որ կայր
մեզ հակառակ՝ եբարձ զայն 'ի միջոյ՝ և բեւեռեաց
15 ընդ խաչափայտին ։ Մերկեաց զիշխանութիւնս և
զպետութիւնս ․ յայտ յանդիման խայտառակեաց
նշաւակեալ զնոսա յանձին իւրում 'ի յաղթութեան
16 իւրում ։ Մի՛ ոք այսուհետև զձեզ դատեսցի՝ ուտե-
լով կամ ըմպելով , կամ մասամբք տօնից , կամ՝
17 ամսամտից , կամ շաբաթուց ․ Որ են ստուերք
18 հանդերձելոցն ․ այլ մարմին Քրիստոս է ։ Մի՛ ոք
զձեզ խաբեսցէ , որ կամիցի խոնարհութեամբ և
կրօնիւք հրեշտակաց , զոր չիցէ տեսեալ զրահես
վարել՝ տարապարտ հպարտացեալ 'ի մտաց մարմնոյ
19 իւրոյ ․ Եւ ոչ ունիցի զգլուխն Քրիստոս , ուստի
ամենայն մարմինն յօդիւք և խաղալեօք տարաբեր-
20 եալ և խառնեալ՝ աճէ զաճումն Աստուծոյ ։ Եթէ
մեռարուք ընդ Քրիստոսի 'ի տարերց աշխարհիս՝
զի՞ ևս իբրև զկենդանիս աստէն յաշխարհի կրօնա-
21 ւորիք ։ Մի՛ մերձենար , մի՛ ճաշակեր , մի՛ հուպ
22 լինիր ․ Որ է ամենայն ինչ 'ի պէտս ապականու-
թեան , ըստ պատուիրանաց և վարդապետութեան
23 մարդկան ․ Որ յիմաստութիւն ինչ համարէ , ինքնա-
կամ կրօնիւք և խոնարհութեամբ՝ և անխնայութեամբ
մարմնոյ ․ և ոչ 'ի պատիւ ինչ լրութեան մարմնոյ ։

## ԳԼ. Գ

1 Եթէ յարերուք ընդ Քրիստոսի, ապա զվերինն
խնդրեցէ՛ք, ուր Քրիստոսն նստի ընդ աջմէ Աստուա-
2 ծոյ. Զվերինն խորհեցարո՛ւք, մի՛ զայս՝ որ յերկրի
3 աստ է: Քանզի մեռարուք՝ և կեանքն ձեր ծած-
4 կեալ են ընդ Քրիստոսի յԱստուած: Իսկ յոր-
ժամ Քրիստոս յայտնեսցի՝ կեանքն ձեր, յայն-
5 ժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք: Սպա-
նէ՛ք այսուհետև զանդամս ձեր զերկրաւորս. ՚ի բա՛ց
ընկեցէք զպոռնկութիւն, զպղծութիւն, զբիծ, ըզ-
ցանկութիւն չարեաց, և զագահութիւն՝ որ է կռ-
6 ռապաշտութիւն. Վասն որոյ գայ բարկութիւն
7 Աստուծոյ ՚ի վերայ որդւոցն անհաւանութեան, Ո-
րովք և դուք երբեմն գնայիք՝ մինչ կենդանիք էիք
8 ՚ի նոսա: Արդ՝ ՚ի բա՛ց թօթափեցէք և դուք զայն
ամենայն, զբարկութիւն, զսրտմտութիւն, զչարու-
թիւն, զհայհոյութիւն, զխեղկատակութիւն ՚ի
9 բերանոց ձերոց: Մի՛ ստէք միմեանց. մերկացարո՛ւք
10 զհին մարդն գործովքն իւրովք. Եւ զգեցարո՛ւք
զնորն նորոգեալ ՚ի գիտութիւն ըստ պատկերի Ա-
11 րարչին իւրոյ. Ուր ո՛չ է Հրեայ և ո՛չ Հեթանոս,
թլփատութիւն և անթլփատութիւն, խուժ՝ դուժ՝
Սկիւթացի՝ ծառայ՝ ազատ. այլ ամենայն և յամե-
12 նայնի Քրիստոս: Զգեցարո՛ւք այսուհետև իբրև
ընտրեալք Աստուծոյ՝ սուրբք և սիրեցեալք՝ զգութ,
զողորմութիւն, զքաղցրութիւն, զխոնարհութիւն,
13 զհեզութիւն, զերկայնմտութիւն, Ներել միմեանց,
շնորհել իրերաց. եթէ ուրուք զումեքէ տրտունջ

ինչ իցէ · որպէս Աստուած Քրիստոսիւ շնորհեաց
14 ձեզ՝ նոյնպէս և դուք ։ Եւ 'ի վերայ այսր ամենայ-
15 նի զսէրն , որ է զօդ կատարմանն · Եւ խաղաղու-
թիւնն Քրիստոսի հաստատեսցի 'ի սիրտս ձեր , յոր
և կոչեցարուքն միով մարմնով ։
16 Եւ գոհացօղք լինիջիք · Զի բանն Քրիստոսի բը-
նակեսցէ 'ի ձեզ առատապէս · ամենայն իմաստու-
թեամբ ուսուցանել և խրատել զմիմեանս · սաղ-
մոսիւք և օրհնութեամբք և երգովք հոգևորօք՝ և
17 շնորհօք օրհնել 'ի սիրտս ձեր զԱստուած ։ Եւ
զամենայն զոր և առնիցէք բանիւք և արդեամբք ,
զամենայն յանուն Տեառն Յիսուսի արասջիք · գո-
18 հացօղք լինիջիք զԱստուծոյ և զՀօրէ նովաւ ։ Կա՛-
նայք՝ հնազանդ լերուք արանց ձերոց , որպէս և
19 վայել է 'ի Տէր ։ Արք՝ սիրեցէք զկանայս ձեր · և
20 մի՛ դառնացուցանէք զնոսա ։ Որդիք՝ հնազանդ լե-
րուք ծնողաց ձերոց յամենայնի՝ զի այն է հաճոյ
21 առաջի Տեառն ։ Հա՛րք՝ մի՛ զայրացուցանէք զորդիս
22 ձեր , զի մի՛ տրտմեսցին ։ Ծառայք՝ հնազանդ լե-
րուք տերանց ձերոց յամենայնի · մի՛ առ ականէ
ծառայութեամբ՝ իբրև մարդահաճոյք · այլ միամը-
23 տութեամբ սրտի երկնչել 'ի Տեառնէ ։ Զոր ինչ
առնիցէք՝ սրտի մտօք գործեսջիք իբրև Տեառն , և
24 ոչ իբրև մարդկան ։ Գիտասջիք՝ զի 'ի Տեառնէ
առնուցուք զհատուցումն ժառանգութեան ձերոյ ·
25 քանզի Տեառն Քրիստոսի ծառայէք ։ Իսկ ապիրատն
ընկալցի ըստ իւրում ապիրատութեանն · զի չիք
ակնառութիւն առաջի Աստուծոյ ։

## ԳԼ. Դ

1 Տեա՛րք՝ զիրաւունս և զհաւասարութիւն ծառայից
ձերոց շնորհեցէ՛ք. գիտասջի՛ք՝ զի և ձեր Տէր գոյ
2 յերկինս։ Աղօթից սաէ՛պ կացէք. տքնել 'ի նմին
3 գոհութեամբ։ Աղօ՛թս արարէք միանգամայն և վասն
մեր. զի Աստուած բացցէ մեզ դուռն բանին, խօ-
սել զխորհուրդն Քրիստոսի, վասն որոյ և կապ-
4 եալս կամ. Զի յայտնի արարից զնա որպէս ար-
ժան իցէ ինձ խօսել։

5 Իմաստութեամբ գնասջի՛ք առ արտաքինսն, գնոյ
6 առեալ զժամանակս։ Եւ բանն ձեր յամենայն ժամ
լի շնորհօք Տեառն՝ իբրև աղիւ համեմեալ լիցի,
գիտել որպէս արժան իցէ ձեզ իւրաքանչիւր ումեք
7 տալ պատասխանի։ Այլ որ ինչ զինէն իցէ՝ ցուցցէ
ձեզ զամենայն Տիւքիկոս սիրելի եղբայր՝ և հաւա-
8 տարիմ պաշտօնեայ՝ և ծառայակից 'ի Տէր. Զոր
առաքեցի առ ձեզ դմին իրի, զի գիտասջի՛ք վասն
9 մեր. և մխիթարեսցէ զսիրտս ձեր, Ոնեսիմաւ հան-
դերձ եղբարբ հաւատարմաւ և սիրելեաւ՝ որ է 'ի
ձէնջ. զամենայն ինչ ցուցցեն ձեզ՝ որ ինչ աստ է։
10 Ողջոյն տայ ձեզ Արիստարքոս գերեկից իմ, և
Մարկոս եղբօրորդի Բառնաբայ. վասն որոյ առէք
պատուէր՝ եթէ եկեսցէ առ ձեզ՝ ընկալջի՛ք զնա.
11 Եւ Յիսուս՝ որ անուանեալն է Յուստոս, որք են 'ի
թլփատութենէ անտի. զի դոքա միայն գործակից
եղեն ինձ յարքայութեանն Աստուծոյ, որք և եղեն
12 իսկ ինձ մխիթարութիւն։ Ողջոյն տայ ձեզ Եպափ-
րաս, որ 'ի ձէնջ ծառայ Քրիստոսի Յիսուսի է.

յամենայն ժամ պատերազմեալ վասն ձեր յաղօթս ,
զի կայցէք կատարեալք և լցեալք յամենայն կամս
13 Աստուծոյ : Վկայեմ նմա , զի բազում աշխատու-
թիւն ունի վասն ձեր , և վասն Լաւոդիկեցւոց ,
14 և վասն այնոցիկ՝ որ Յերապօլիսն են : Ողջոյն տայ
15 ձեզ Ղուկաս բժիշկ և սիրելի , և Դեմաս : Ողջո՛յն
տաջիք եղբարց՝ որ են ՚ի Լաւոդիկեայ և Նիմփիայ ,
16 և որ առտնին եկեղեցին է նորա : Եւ յորժամ ըն-
թեռնուցու առ ձեզ թուղթդ՝ արասջի՛ք զի և ՚ի
Լաւոդիկեցւոց եկեղեցւոջն ընթերցցի . և զառ ՚ի
17 Լաւոդիկեցւոցն՝ զի և դուք ընթեռնուցուք : Եւ
ասասջի՛ք ցԱրքիպպոս . Զգո՛յշ լեր սպասաւորու-
թեանդ՝ զոր ընկալար ՚ի Տէր , զի զայդ կատարես-
18 ցես : Ողջոյնդ ձեռին իմոյ Պօղոսի է : յո՛ւշ լիցին
ձեզ կապանքս իմ : Շնորհք ընդ ձեզ . ամէն :

Առ Կողոսացիս գրեցաւ ՚ի Հռովմէ ՚ի ձեռն Տիւքիկոսի
և Ոնեսիմեայ :

---

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԱՌԱՋԻՆ

### ԳԼ. Ա

1 Պօղոս և Սիղուանոս և Տիմոթէոս՝ եկեղեցւոյդ
Թեսաղոնիկեցւոց՝ յԱստուած Հայր մեր
2 և ՚ի Տէր Յիսուս Քրիստոս: Շնորհք ընդ ձեզ
և խաղաղութիւն: Գոհանամք զԱստուծոյ յամե-
նայն ժամ վասն ձեր ամենեցուն՝ յիշատակ առնել
3 յաղօթս մեր անդադար. Յիշել զձեր գործն հաւա-
տոց՝ և զվաստակ սիրոյ՝ և զհամբերութիւն յուսոյ
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ առաջի Աստու-
4 ծոյ և Հօր մերոյ: *Գիտէք եղբա՛րք սիրեցեալք
5 յԱստուծոյ՝ զընտրութիւնն ձեր. Զի աւետարանն
մեր ոչ եղև առ ձեզ միայն բանիւ, այլ և զօրու-
թեամբ՝ և Հոգւովն Սրբով՝ և լրութեամբ բազմաւ.
որպէս և գիտէք իսկ՝ թէ որպիսիք եղեաք ՚ի միջի
6 ձերում վասն ձեր: Եւ դուք նմանեալք մեզ՝ և
Տեառն, ընկալեալք զբանն ՚ի բազում նեղութեան՝
7 խնդութեամբ Հոգւոյն Սրբոյ. Լինել ձեզ օրինակ

* ՚Ի Յօյնն, Գիտելով

ամենայն՝ հաւատացելոց, որ են 'ի Մակեդովնիա և
8 յԱքայիա: Զի 'ի ձէնջ հնչեաց բանն Աստուծոյ.
ոչ միայն 'ի Մակեդովնիա և յԱքայիա, այլ յա-
մենայն տեղիս հաւատքն ձեր՝ որ առ Աստուած են,
սփռեցան. զի այսուհետև ոչինչ է պիտոյ մեզ և
9 խօսել ինչ: Զի նոքին իսկ պատմեն վասն մեր,
թէ որպէս եղև մեզ մուտ առ ձեզ. և որպէս դար-
ձայք առ Աստուած 'ի կռոց անտի, ծառայել Աս-
10 տուծոյ կենդանւոյ և ճշմարտի. Եւ ակն ունել
Որդւոյ նորա յերկնից՝ զոր յարոյց 'ի մեռելոց, զՅի-
սուս՝ որ փրկելոց է զմեզ 'ի բարկութենէ անտի
որ գալոց է:

## ԳԼ. Բ

1 Դուք ինքնին գիտէք եղբարք զմուտն մեր առ
2 ձեզ. զի ոչ ընդունայն ինչ եղև. Այլ յառաջա-
գոյն չարչարեալք՝ և թշնամանեալք, որպէս և
դուք իսկ գիտէք, 'ի մէջ Փիլիպեցւոց համարձա-
կեցաք Աստուծով՝ մերով պատմել ձեզ զաւետա-
3 րանն Աստուծոյ մեծաւ պատերազմաւ: Զի մխի-
թարութիւնն մեր ոչ 'ի մոլորութենէ է՝ և ոչ 'ի
4 պղծութենէ՝ և ոչ նենգութեամբ. Այլ որպէս
ընտրեցաք յԱստուծոյ հաւատարիմ լինել աւետա-
րանին, նոյնպէս և խօսիմք. ոչ իբրև մարդկան
հաճոյ լինել՝ այլ Աստուծոյ որ քննէն զսիրտս մեր:
5 Զի ոչ երբէք բանիւք ողոքանաց եղեաք առ ձեզ,
որպէս և դուք իսկ գիտէք. և ոչ 'ի պատճառս ա-
6 գահութեան, որպէս և Աստուած վկայ է. Եւ ոչ

խնդրեցաք փառս 'ի մարդկանէ, ոչ 'ի ձէնջ՝ և ոչ
7 յայլոց: Կարօղ էաք իբրև Քրիստոսի առաքեալք
ծանրանալ, այլ եղեաք հեզք 'ի միջի ձերում. որ-
8 պէս դայեակ մի՝ որ սնուցանիցէ մանկունս. Նոյն-
պէս և մեք գթայաք 'ի ձեզ. հաճոյ թուէր մեզ
տալ ձեզ ոչ միայն զաւետարանն Աստուծոյ, այլ
և զանձինս մեր. քանզի սիրելիք մեր եղերուք:
9 Յիշէք եղբարք՝ զվաստակն մեր և զջան. զի զցայգ
և զցերեկ գործէաք վասն չծանրանալոյ ումեք 'ի
ձէնջ, և քարոզէաք ձեզ զաւետարանն Աստուծոյ:
10 Դուք ինքնին վկայէք՝ և Աստուած, որպէս սրբու-
թեամբ և արդարութեամբ և անբծութեամբ՝ ձեզ
11 հաւատացելոցդ եղեաք. Որպէս և գիտէք իսկ. զի
12 զիւրաքանչիւրոք 'ի ձէնջ՝ իբրև հայր զորդիս՝ Մխի-
թարէաք և սփոփէաք և դնէաք վկայութիւն գնալ
ձեզ արժանապէս Աստուծոյ, որ կոչեաց զձեզ
յիւր արքայութիւնն և 'ի փառս:
13 Վասն այնորիկ և մեք գոհանամք զԱստուծոյ
անպակաս՝ զի առեալ զլուր բանին Աստուծոյ առ
'ի մէնջ՝ ընկալարուք, ոչ իբրև զբան մարդկան,
այլ որպէս ճշմարտիւ՝ զբան Աստուծոյ. որ և յաջող-
14 եալ իսկ է 'ի ձեզ հաւատացելոց: Զի դուք նը-
մանօղք եղերուք եղբարք՝ եկեղեցեացն Աստուծոյ՝ որ
են 'ի Հրէաստանի 'ի Քրիստոս Յիսուս. զի զնոյն
չարչարանս չարչարեցայք և դուք 'ի ձերոց ազգա-
15 կանաց. որպէս և նոքայն 'ի Հրէից. Որք և զՏէրն
Յիսուս սպանին՝ և զմարգարէսն, և զմեզ հալածե-
ցին, և Աստուծոյ յաչաց ելին. և ամենայն մարդ-
16 կան հակառակ եղեն. Եւ արգելուին զմեզ խօսել

հեթանոսաց՝ զի ապրեսցին. զի կատարեսցեն զմեղս
իւրեանց յամենայն ժամ. քանզի հասեալ է ՚ի վե-
րայ նոցա բարկութիւն մինչև իսպառ:
17 Եւ մեք եղբարք՝ թէպէտ և որբ մնացաք ՚ի
ձէնջ առ ժամանակ մի, երեսօք՝ և ոչ սրտիւք.
առաւել ևս փութացաք տեսանել զերեսս ձեր մե-
18 ծաւ ցանկութեամբ: Վասն այսորիկ կամեցայ գալ
առ ձեզ ես Պօղոս՝ միանգամ և երկիցս, և խա-
19 փանեաց զմեզ Սատանայ: Քանզի ո՞վ է մեր յոյս՝
կամ խնդութիւն կամ պսակ պարծանաց մերոց, ե-
թէ ոչ դուք ՚ի Տէր՝ առաջի Տեառն մերոյ Յի-
20 սուսի Քրիստոսի ՚ի նորա գալստեանն: Զի դուք
էք փառք մեր և խնդութիւն:

## ԳԼ. Գ.

1 Վասն որոյ ոչ ևս ունիմք ժոյժ, զի բարւոք
2 թուեցաւ մեզ միայն մնալ յԱթէնս: Եւ առաքե-
ցաք զՏիմոթէոս զեղբայր* մեր և զգործակից աւե-
տարանին Աստուծոյ և Ո՟րն Քրիստոսի", հաս-
տատել զձեզ՝ և մխիթարել վասն հաւատոցն ձերոց:
3 Զի մի՛ տագնապեսջիք ՚ի նեղութիւնս յայսոսիկ.
քանզի դուք ինքնին իսկ գիտէք, զի ՚ի սոյն կամք:
4 Քանզի մինչ առ ձեզն իսկ էաք՝ յառաջագոյն ա-
սէաք ձեզ, թէ նեղութիւնք հասանելոց են ՚ի վե-

* Յոմանս սակաւաւորս օրինակս, մեր, և զպաշտօնեայ
Աստուծոյ, և զգործակից մեր յաւետարանին
Քրիստոսի

5 րայ մեր. որպէս և եղև իսկ և գիտացիք: Վասն
այնորիկ և ես զի ոչ ևս ունէի ժոյժ՝ առաքեցի գի-
տել զհաւատսն ձեր. գուցէ արդեօք փորձեաց և
զձեզ փորձիչն, և ընդունայն լինիցի ջանն մեր:
6 Բայց արդ՝ իբրև եկն Տիմոթէոս 'ի ձէնջ առ մեզ,
և ետ մեզ զաւետիս հաւատոցն ձերոց և զսիրոյ, զի
ունիք 'ի մտի զյիշատակս մեր բարեաց յամենայն
ժամ. ցանկացեալ էք տեսանել զմեզ՝ որպէս և մեք
7 զձեզ. Վասն այնորիկ մխիթարեցաք 'ի ձեզ եղ-
բարք՝ 'ի վերայ ամենայն վշտաց և նեղութեանց *ձե-
8 րոց՝ 'ի ձեռն հաւատոցն ձերոց. Զի այժմ կեն-
դանի եմք՝ եթէ դուք հաստատուն կայցէք 'ի Տէր:
9 Զի՞նչ կարեմք գոհութիւն մատուցանել Աստու-
ծոյ վասն ձեր, 'ի վերայ ամենայն խնդութեանն,
զոր խնդամք վասն ձեր առաջի Աստուծոյ մերոյ.
10 Զցայգ և զցերեկ առաւել ևս աղաչեմք՝ տեսանել
զերեսս ձեր, և հաստատել զպակասութիւն հաւա-
11 տոցն ձերոց: Այլ ինքն Աստուած և Հայր մեր՝
և Տէր մեր Յիսուս Քրիստոս՝ ուղղեսցէ զճանա-
12 պարհս մեր առ ձեզ: Եւ զձեզ ինքն Տէր բազմա-
պատիկս և առաւելս արասցէ սիրով ընդ միմեանս
13 և առ ամենեսին՝ որպէս և մեք 'ի ձեզ. Հաստա-
տել զսիրտս ձեր անարատս 'ի սրբութիւն առաջի
Աստուծոյ և Հօր մերոյ՝ 'ի գալստեանն Տեառն մե-
րոյ Յիսուսի Քրիստոսի՝ հանդերձ ամենայն սրբովք
իւրովք:

---

* 'Ի Յոյնն, մերոց

## ԳԼ. Դ

1 Այսուհետեւ եղբարք՝ աղաչեմք զձեզ եւ մխիթա-
րեմք ՚ի Քրիստոս Յիսուս. զի որպէս ընկալարուք
՚ի մէնջ, թէ որպէս պարտ իցէ ձեզ գնալ՝ եւ հա-
ճոյ լինել Աստուծոյ. որպէս եւ գնայքդ իսկ, զի եւս
2 քան զեւս յաւելուցուք ՚ի նոյն: Եւ գիտէք՝ թէ
որպիսի պատուիրանս տուաք ձեզ ՚ի Տէր Յիսուս:
3 Զի այս են կամք Աստուծոյ, սրբութիւն ձեր. ՚ի
4 բա՛ց լինել ձեզ ՚ի պոռնկութենէ. Գիտել իւրա-
քանչիւր ումեք ՚ի ձէնջ զիւր աման ստանալ սրբու-
5 թեամբ եւ պատուով. Մի՛ ՚ի ցաւս ցանկութեան՝
*որպէս եւ այլ հեթանոսք" որ ոչ գիտեն զԱստուած:
6 Մի՛ զանցանել եւ զեղծել յիրիք յայսմիկ զեղբայր
իւր. քանզի վրէժխնդիր է Տէր ՚ի վերայ ամենայնի
այդպիսեաց. որպէս յառաջագոյն ասացաք ձեզ, եւ
7 եղաք վկայութիւն: Քանզի ոչ կոչեաց զմեզ Աստ-
8 ուած ՚ի պղծութիւն՝ այլ ՚ի սրբութիւն: Այսու-
հետեւ որ անարգէ, ոչ զմարդ անարգէ, այլ զԱստ-
9 ուած՝ որ եւ ետ զՀոգին Սուրբ ՚ի ձեզ: Այլ վասն
եղբայրսիրութեան՝ չէ՛ ինչ պիտոյ գրել առ ձեզ.
զի դուք ինքնին իսկ աստուածուսոյցք էք՝ առ ՚ի
10 զմիմեանս սիրելոյ: Քանզի եւ առնէք իսկ զդոյն
յամենայն եղբարս որ են յամենայն կողմանս Մա-
կեդոնացւոց: Աղաչեմք զձեզ եղբարք՝ առաւել
11 եւս առաւելուլ եւ առատանալ. Հանդարտել, Եւ
գործել զիւրաքանչիւրսն. եւ գործել ձեռօք ձերովք,

---

* Ի Յոյնն, որպէս եւ հեթանոսք

որպէս և պատուիրեցաք ձեզ, զի գնայցէք պարկեշ-
տութեամբ առ արտաքինսն՝ և մի՛ ինչ կարօտեալք
12 իցէք ։ Ո՛չ կամիմ եղբարք՝ եթէ տգէտք իցէք վասն
ննջեցելոցն. զի մի՛ տրտմիցիք որպէս և այլքն՝ որոց
13 ո՛չ գոյ յոյս ։ Եթէ հաւատամք՝ եթէ Յիսուս մե-
ռաւ և յարեաւ. նոյնպէս և Աստուած զննջեցեալսն
՚ի ձեռն Յիսուսի ածցէ ընդ նմա ։
14 Բայց զայս ասեմք Տեառն բանիւ, եթէ մեք՝ որ
կենդանիքս եմք մնացեալք՝ ՚ի գալստեանն Տեառն
15 ո՛չ ժամանեմք ննջեցելոցն ։ Զի ինքնին Տէր հր-
րամանաւ, ՚ի ձայն հրեշտակապետի և ՚ի փող Աս-
տուծոյ իջանէ յերկնից. և մեռեալք ՚ի Քրիստոս
16 յարիցեն յառաջագոյն ։ Ապա և մեք որ կենդանւոյն
մնացեալ իցեմք՝ նոքօք հանդերձ յափշտակեսցուք
ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. և այնպէս յա-
17 մենայն ժամ ընդ Տեառն լինիցիմք ։ Այսուհետև
մխիթարեցէք զմիմեանս բանիւքս այսոքիւք ։

## ԳԼ. Ե

1 Այլ վասն ժամուց և ժամանակաց եղբարք՝ չէ՛
2 ինչ պիտոյ գրել առ ձեզ ։ Զի դուք ինքնին իսկ
ստոյգ գիտէք, թէ օրն Տեառն իբրև գող գիշե-
3 րի՝ այնպէս հասանէ ։ Յորժամ ասիցեն թէ խա-
ղաղութիւն և շինութիւն է, յայնժամ յանկար-
ծակի հասցէ նոցա սատակումն՝ որպէս և երկն յղ-
4 ւոյ. և մի՛ ապրեսցին ։ Այլ դուք եղբարք՝ ո՛չ էք ՚ի
խաւարի՝ թէ օրն ձեր իբրև գող ՚ի վերայ հասա-
5 նիցէ, Զի ամենեքին դուք որդիք լուսոյ էք՝ և որ-

դիք տունջեան. չեմք գիշերոյ՝ չեմք խաւարի։
6 Ապա մի՛ զքնով անկանիցիմք՝ որպէս և այլքն.
7 այլ արթունք և զուարթունք եղիցուք։ Զի որ
ննջենն՝ գիշերի ննջեն, և որ արբենանն՝ գիշերի ար-
8 բենան։ Այլ մեք զի տունջեան եմք, արթունք ե-
ղիցուք, և զգեցցուք զզրահս հաւատոց և զսիրոյ,
9 և դիցուք զսաղաւարտն յուսոյն փրկութեան։ Զի
ոչ եդ զմեզ Աստուած 'ի բարկութիւն, այլ 'ի
փրկութիւն կենդանութեան 'ի ձեռն Տեառն մերոյ
10 Յիսուսի Քրիստոսի, Որ մեռաւն վասն մեր. զի
եթէ արթունք իցեմք՝ և եթէ ննջիցեմք, նովաւ
11 հանդերձ կեցցուք։ Վասն որոյ մխիթարեցէք զմիմ-
եանս, և շինեցէք զիրեարս՝ որպէս և առնէքդ իսկ։
12 Աղաչեմք զձեզ եղբարք՝ ճանաչել զվաստակա-
ւորս և զվերակացուս ձեր 'ի Տէր, և զխրատիչս
13 ձեր։ Եւ համարեցարուք զնոսա արժանիս առաւել
սիրոյ՝ վասն գործոյ նոցա. խաղաղութիւն արարէք
14 ընդ միմեանս։ Աղաչեմք զձեզ եղբարք՝ խրատեցէք
զստահակս, մխիթարեցէք զկարճամիտս, պատըս-
պարան լերուք տկարաց, երկայնամիտ լերուք առ
15 ամենեսեան։ Զգոյշ լերուք՝ գուցէ ոք չարի չար
հատուցանիցէ. այլ յամենայն ժամ զբարեաց զհետ
16 երթայք՝ առ միմեանս և առ ամենեսեան։ Յամենայն
17 ժամ ուրախ լերուք։ Անդադար աղօթս արարէք։
18 Յամենայնի գոհացարուք. զի այս են կամք Աս-
19 տուծոյ Քրիստոսիւ Յիսուսիւ 'ի ձեզ։ Զհոգին մի՛
20 շիջուցանէք։ Զմարգարէութիւնս մի՛ արհամար-
21 հէք։ Զամենայն ինչ փորձեցէք, զբարին ընկալա-
22 րուք։ Յամենայն իրաց չարաց 'ի բաց կացէք։

23 Եւ ինքն Աստուած խաղաղութեան սրբեսցէ
զձեզ համօրէն. և բովանդակ ձեր ոգի և շունչ և
մարմին՝ անարատ ՚ի գալստեան Տեառն մերոյ Յի-
24 սուսի Քրիստոսի պահեսցի ։ Հաւատարիմ է՝ որ
25 կոչեացն զձեզ, որ և արասցէ զնոյն ։ Եղբարք ա-
26 ղօթս արարէք և ՚ի մեր վերայ ։ Ողջոյն տաջիք եղ-
27 բարց ամենեցուն ՚ի համբոյր սրբութեան ։ Երդմնե-
ցուցանեմ զձեզ ՚ի Տէր՝ ընթեռնուլ զթուղթդ ա-
28 ռաջի ամենայն եղբարց սրբոց ։ Շնորհք Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ. ամէն ։

Առ Թեսաղոնիկեցիս առաջին Թուղթ՝ գրեցաւ յԱթէ-
նայ ։

---

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԵՐԿՐՈՐԴ

### ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ և Սիղուանոս և Տիմոթէոս՝ եկեղեցւոյդ
Թեսաղոնիկեցւոց՝ յԱստուած Հայր մեր
2 և ՚ի Տէր Յիսուս Քրիստոս ։ Շնորհք ընդ ձեզ
և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ , և ՚ի
3 Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ ։ Գոհանալ պար-
տիմք զԱստուծոյ յամենայն ժամ վասն ձեր եղ-
բարք՝ որպէս և արժան իսկ է․ զի եւս քան զեւս ա-
ճեն հաւատքն ձեր , և յաճախէ սէր իւրաքանչիւր ա-
4 մենեցուն ձեր առ միմեանս ։ Որպէս և մեզ ձեօք պար-
ծել յեկեղեցիսն Աստուծոյ՝ վասն համբերութեան
ձերոյ և հաւատոց՝ յամենայն հալածանս ձեր և ՚ի
5 նեղութիւնս , որում դուքն համբերէք․ Յօրինակ
արդար դատաստանին Աստուծոյ․ արժանի լինել
ձեզ արքայութեանն Աստուծոյ , վասն որոյ և ըղ-
6 ձգնութիւնդ կրէք․ Եթէ պարտ է առաջի Աստու-
7 ծոյ՝ հատուցանել նեղչացն ձերոց նեղութիւն․ Եւ
ձեզ նեղելոցդ հանգիստ ընդ մեզ՝ ՚ի յայտնութեանն
Տեառն մերոյ Յիսուսի , յերկնից հրեշտակօք զօ-

8 րութեան իւրոյ. 'Ի բոց հրոյ առնուլ զվրէժս յայն-
ցանէ՝ որք ոչ ճանաչեն զԱստուած, և որ ոչ հը-
նազանդին աւետարանին Տեառն մերոյ Յիսուսի
9 Քրիստոսի. Որք տայցեն վրէժս 'ի սատակումն յա-
ւիտենից՝ յերեսաց Տեառն և 'ի փառաց զօրութեան
10 նորա. Յորժամ գայցէ փառաւոր լինել 'ի մէջ
սրբոց իւրոց, և սքանչելի 'ի մէջ ամենայն հաւատա-
ցելոց. զի հաւատարիմ եղև վկայութիւնն մեր 'ի
11 վերայ ձեր յաւուր յայնմիկ։ Յոր և աղօթս առ-
նեմք վասն ձեր յամենայն ժամ, զի զձեզ արժանիս
արասցէ կոչմանն ձերում Աստուած մեր՝ մինչև լց-
ցէ զամենայն հաճութիւն բարութեան, և զգործս
12 հաւատոցն զօրութեամբ. Զի փառաւոր լիցի ա-
նուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի ձեզ՝ և
դուք 'ի նմա, ըստ շնորհացն Աստուծոյ մերոյ և
Տեառն Յիսուսի Քրիստոսի։

## ԳԼ. Բ

1 Աղաչեմ զձեզ եղբարք՝ վասն գալստեանն Տեա-
ռըն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և մերոյ ժողովե-
2 լոյն առ նա. Մի՛ վաղվաղակի խռովել ձեզ 'ի մտաց՝
և մի՛ զարհուրել, մի՛ հոգւով և մի՛ բանիւ և մի՛
թղթովք՝ իբրև թէ 'ի մէնջ. որպէս թէ եկեալ
3 հասեալ իցէ օրն Տեառն։ Մի՛ ոք զձեզ խաբեսցէ՝
և մի՛ իւիք իրօք. զի եթէ ոչ նախ եկեսցէ ապըս-
տամբութիւնն, և յայտնեսցի մարդն անօրէնու-
4 թեան՝ որդին կորստեան, Հակառակորդն հպար-
տացեալ 'ի վերայ ամենայնի, որ անուանեալ իցէ

Աստուած, կամ պաշտօն. մինչև նստել նմա ՚ի տա-
ճարին Աստուծոյ, և ցուցանել զանձն՝ թէ Աստ-
5 ուած իցէ: Ո՞չ յիշէք զի մինչ առ ձեզն իսկ էի՝
6 ասէի զայս: Եւ արդ դուք ինքնին գիտէք զայն՝ որ
7 ունիցի յայտնել նմա յիւրում ժամանակի: Զի
խորհուրդն անօրէնութեան արդէն իսկ զօրանայ.
բայց յայնժամ մինչ ՚ի միջոյ բարձցի՝ որ այժմդ
8 ունի: Եւ ապա յայտնեսցի անօրէնն. զոր Տէր
Յիսուս սատակեսցէ հոգւովն բերանոյ իւրոյ, և
խափանեսցէ յայտնութեամբ գալստեանն իւրոյ:
9 Որոյ գալուստն ըստ ազդեցութեան Սատանայի է,
ամենայն զօրութեամբ և նշանօք և արուեստիւք
10 ստովք, Եւ ամենայն պատրանօք անիրաւութեան
՚ի վերայ կորուսելոցն. փոխանակ զի զսէրն ճշմար-
տութեան ոչ ընկալան՝ զի ապրեսցին, և վասն այ-
նորիկ առաքեսցէ նոցա Աստուած ազդեցութիւն
11 մոլորութեան՝ հաւատալ նոցա ստութեանն: Զի
դատապարտեսցին ամենեքեան՝ որ ոչ հաւատացին
ճշմարտութեանն, այլ հաճեցան ընդ անօրէնու-
12 թիւնն: Այլ մեք պարտիմք գոհանալ զԱստուծոյ
յամենայն ժամ վասն ձեր եղբարք սիրեցեալք ՚ի
Տեառնէ. զի ընտրեաց *զձեզ Աստուած ՚ի սկզբանէ
՚ի փրկութիւն՝ սրբութեամբ Հոգւոյն և հաւատովքն
13 ճշմարտութեան. Յոր և կոչեաց զձեզ աւետա-
րանաւն մերով ՚ի փրկութիւն փառացն Տեառն մե-
14 րոյ Յիսուսի Քրիստոսի: Այսուհետև եղբարք
հաստատո՛ւն կացէք՝ և պինդ կալարուք զաւանդու-

* ՚Ի Յոյնն, զձեզ

թիւնն՝ զոր ուսարուք, եթէ բանիւ և եթէ թղ-
15 թով մերով։ Այլ ինքն Տէր մեր Յիսուս Քրիս-
տոս և Աստուած և Հայր մեր, որ սիրեաց զմեզ՝
և ետ մեզ մխիթարութիւն յաւիտենից՝ և յոյս
16 բարեաց շնորհօք, Մխիթարեսցէ զսիրտս ձեր՝ և
հաստատեսցէ յամենայն բանս և ՚ի գործս բարու-
թեան։

## ԳԼ. Գ.

1 Այսուհետև եղբարք՝ աղօթս արարէք ՚ի վերայ
մեր, զի բանն Տեառն ընթանայցէ. և փառաւոր
2 լինիցի յամենայն տեղիս՝ որպէս և առ ձեզ. Զի
ապրեսցուք յանօրինաց և յանզգամաց մարդոց.
3 զի ոչ ամենեցուն են հաւատք։ Այլ հաւատարիմ
է Տէր, որ և հաստատեսցէ զձեզ՝ և պահեսցէ ՚ի
4 չարէ անտի։ Վստահ եմք ՚ի ձեզ Տերամբ, թէ
զոր պատուիրեցաքն ձեզ, և առնէք՝ և առնիցէք։
5 Այլ Տէր ուղղեսցէ զսիրտս ձեր ՚ի սէրն Աստուծոյ՝
6 և ՚ի համբերութիւնն Քրիստոսի։ Պատուիրեմ ձեզ
եղբարք՝ յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստո-
սի, խորշել ձեզ յամենայն եղբօրէ՝ որ ստահակն
գնայցեն. և ոչ ըստ աւանդութեանն՝ զոր ընկա-
7 լարուք ՚ի մէնջ։ Զի դուք ինքնին գիտէք՝ թէ որ-
պէս պարտ է ձեզ նմանել մեզ. և ոչ երբէք ստա-
8 հակեցաք առ ձեզ. Եւ ոչ ձրի զուրուք հաց կե-
րաք, այլ ջանիւ և վաստակով զցայգ և զցերեկ
9 գործէաք՝ վասն չծանրանալոյ ումեք ՚ի ձէնջ։ Ո՛չ
եթէ չունէաք իշխանութիւն. այլ զի զանձինս օ-

10 րինակ առասցուք ձեզ՝ նմանօղս լինել մեզ։ Քանզի
մինչդեռ առ ձեզն իսկ էաք՝ զայս պատուիրեաք ձեզ,
11 թէ որ ոչն կամիցի գործել՝ և կերիցէ մի։ Արդ՝ լսեմք
զոմանց 'ի ձէնջ՝ թէ ստահակութեամբ գնան․ գործ
ինչ ոչ գործեն, այլ յուլացեալ հետաքրքիր շըր-
12 ջին։ Այնպիսեացն պատուէր տամք՝ և աղաչեմք
'ի Տէր Յիսուս Քրիստոս, զի հանդարտութեամբ
13 գործեսցեն՝ և զիւրեանց հաց կերիցեն։ Այլ դուք
14 եղբարք՝ մի ձանձրանայք զբարիս գործել։ Ապա
եթէ ոչ ոք հնազանդեսցի բանիս մերում թղթովդ
այդուիկ, դուք նշանակեսջիք զնա․ և մի խառնա-
15 կեսջիք ընդ նմա՝ զի պատկառեսցէ։ Բայց մի իբ-
րև զթշնամի համարիջիք՝ այլ խրատեսջիք իբրև զեղ-
16 բայր։ Եւ ինքն Տէր խաղաղութեան՝ տացէ ձեզ
17 խաղաղութիւն յամենայն ժամ յամենայն իրս։ Տէր
ընդ ամենեսին ընդ ձեզ։ Ողջոյնս իմոյ ձեռին Պօ-
ղոսի է, որ է նշանակ յամենայն թուղթս այսպէս
18 գրեմ։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի
ընդ ամենեսին ձեզ․ ամէն։

Առ Թեսաղոնիկեցիս Երկրորդ՝ գրեցաւ յԱթենայ։

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ ԱՌԱՋԻՆ

## ԳԼ. Ա

1 ՊՕՂՈՍ առաքեալ Յիսուսի Քրիստոսի՝ ըստ հրա-
մանի փրկչին մերոյ Աստուծոյ և Քրիստոսի
2 Յիսուսի յուսոյն մերոյ. Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ
հաւատովք. շնորհք, ողորմութիւն, խաղաղութիւն
յԱստուծոյ Հօրէ և ՚ի Տեառնէ մերմէ Յիսուսէ
3 Քրիստոսէ։ Որպէս աղաչեցի զքեզ կալ յԵփե-
սոս՝ մինչ երթայի ՚ի Մակեդոնիա. զի պատուէր
4 տացես ոմանց չլինել տարաւանդունս, Եւ չհայել
յառասպելս և ՚ի տոհմաթիւս անչափս. որ մանա-
ւանդ խնդիրս յուզեն, և ոչ զտնտեսութիւն Աս-
5 տուծոյ հաւատովք։ Քանզի գլուխ պատուիրանին
սէր է, ՚ի սուրբ սրտէ՝ և ՚ի մտաց բարեաց՝ և յան-
6 կեղծաւոր հաւատոյ։ Յորոց ոմանք վրիպեցան՝
7 խոտորեալք յունայնութիւն բանից։ Կամին լինել
վարդապետք օրինաց. ինքեանք ոչ իմանան զինչ
9 խօսին՝ և ոչ վասն որոց պնդեալն են։ Գիտեմք՝ ե-
թէ բարւոք են օրէնք՝ եթէ ոք զնոսա օրինօքն կը-
9 րեսցէ։ Բայց զայս գիտասցէ՝ զի ՚ի վերայ արդա-

րոց օրէնք ոչ կան, այլ ՚ի վերայ անօրինաց և ան-
հնազանդից՝ ամբարշտաց և մեղաւորաց՝ անսրբոց և
պղծոց, զհայր և զմայր անարգողաց, մարդասպա-
10 նաց, Պոռնկաց, արուագիտաց, մարդելուզաց, ստոց,
ստերդմանց. և եթէ այլ ինչ իցէ հակառակ ողջա-
11 միտ վարդապետութեանս, Որ ըստ աւետարանի
փառաց երանելւոյն Աստուծոյ է, որում եղէ ես
հաւատարիմ:
12 Շնորհ ունիմ այնմիկ, որ զօրացոյցն զիս ՚ի
Քրիստոս Յիսուս ՚ի Տէր մեր. զի հաւատարիմ հա-
13 մարեցաւ կարգել ՚ի սպասաւորութիւն. Որ յառա-
ջագոյն հայհոյիչն էի՝ և հալածիչ և թշնամանիչ.
այլ գտի ողորմութիւն, զի զայն յանգիտութեան
14 և յանհաւատութեան գործէի: Եւ առաւել եղեն
շնորհք Տեառն մերոյ հաւատովքն և սիրովն՝ որ ՚ի
15 Քրիստոս Յիսուս: Հաւատարիմ է բանս՝ և ամե-
նայն ընդունելութեան արժանի է. զի Քրիստոս
Յիսուս եկն յաշխարհ փրկել զմեղաւորս, որոց գը-
16 լուխն ես եմ: Այլ վասն այնորիկ գտի ողորմու-
թիւն, զի նախ յիս եցոյց Յիսուս Քրիստոս զամե-
նայն երկայնմտութիւնն՝ յօրինակ այնոցիկ՝ որ հա-
ւատալոցն իցեն ՚ի նա, ՚ի կեանսն յաւիտենից:
17 Այլ Թագաւորին յաւիտենից՝ անեղծի և աներև-
ութի, միոյն Աստուծոյ՝ փառք և պատիւ յա-
18 ւիտեանս յաւիտենից. ամէն: Զայս պատուիրան
աւանդեմ քեզ՝ որդեակ իմ Տիմոթէոս, ըստ կան-
խելոց ՚ի քեզ մարգարէութեանցն. զի դու զինուո-
19 րիցես նոքօք զգեղեցիկ զինուորութիւնն. Ու-
նիցիս հաւատս սրբովք մտօք, զոր ոմանց մերժ-

եալ յանձանց իւրեանց՝ նաւաբեկեցան 'ի հաւատս .
20 Յորոց սակի են Հիմենոս՝ և Աղեքսանդրոս ,
զորս մատնեցի Սատանայի , զի խրատեսցին չհայ-
հոյել :

## ԳԼ. Բ

1 Եւ արդ աղաչեմ, նախ քան զամենայն առնել
աղօթս՝ խնդրուածս՝ պաղատանս՝ գոհութիւնս վասն
2 ամենայն մարդկան . Վասն թագաւորաց
և ամենայն իշխանաց . զի խաղաղութեամբ և հան-
դարտութեամբ վարեսցուք զկեանս մեր , ամենայն
3 աստուածպաշտութեամբ և սրբութեամբ : Զի այն
է բարի և ընդունելի առաջի փրկչին մերոյ Աստու-
4 ծոյ . Որ զամենայն մարդիկ կամի զի կեցցեն՝ և 'ի
5 գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն : Զի մի է
Աստուած , և մի միջնորդ Աստուծոյ և մարդկան՝
6 մարդն Յիսուս Քրիստոս . Որ ետ զանձն փրկանս
ընդ ամենեցուն՝ վկայութիւն ժամանակաց իւրոց :
7 Յոր եդայ ես քարոզ և առաքեալ . ճշմարիտ ասեմ
'ի Քրիստոս և ոչ ստեմ, եղէ վարդապետ հեթա-
նոսաց հաւատովք և ճշմարտութեամբ :
8 Կամիմ՝ զի արք կայցեն յաղօթս յամենայն տե-
ղիս . բառնայցեն զսուրբ ձեռս 'ի վեր առանց
9 բարկութեան և երկմտութեան : Նոյնպէս և կա-
նայք 'ի զարդ խոնարհութեան՝ ակնածութեամբ
և զգաստութեամբ զարդարել զանձինս . մի 'ի հիւ-
սըս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով , կամ 'ի
10 հանդերձս պաճուճեալս . Այլ որպէս վայելէ կա-

նանց՝ զաստուածպաշտութիւն յանձն առելոց գոր-
11 ծովք բարութեան։ Կին մարդ ցածութեամբ ու-
12 սցի, ամենայն հնազանդութեամբ։ Այլ ուսուցանել
կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, և ոչ ձոխաբան լինել
13 քան զայր մարդ. այլ ՚ի լռութեան կալ։ Զի
14 Ադամ նախ ստեղծաւ՝ և ապա Եւա։ Եւ Ադամ
ոչ պատրեցաւ՝ այլ կինն պատրեցաւ և յանցեաւ.
15 Բայց կեցցէ վասն որդեծնութեանն՝ եթէ կացցեն
՚ի հաւատս և ՚ի սէր և ՚ի սրբութիւն պարկեշտու-
թեամբ։

## ԳԼ. Գ

1 Հաւատարիմ է բանս. եթէ ոք եպիսկոպոսութեան
2 ցանկայ՝ բարւոյ գործոյ ցանկայ։ Պարտ է եպիսկո-
պոսին անարատ լինել, միոյ կնոջ այր, *հեզ՝ ցած,
3 պարկեշտ, հիւրասէր, ուսուցիչ. Մի՛ †թշնամանող,
մի՛ հարկանօղ, այլ հանդարտ. մի՛ կռուօղ, մի՛ ար-
4 ծաթասէր. Զի իւրում տանն խոկ բարւոք վերա-
կացու լեալ իցէ. որդեակս ունիցի, որ ՚ի հնազան-
5 դութեան կայցեն ամենայն պարկեշտութեամբ։ Ա-
պա եթէ ոք իւրում տանն վերակացու չգիտիցէ լի-
նել, զիա՞րդ եկեղեցւոյ Աստուծոյ խնամակալ լի-
6 նիցի։ Մի՛ մատաղատունկ, զի մի՛ հպարտացեալ ՚ի
7 դատաստանս Սատանայի անկանիցի։ Այլ պարտ է
նմա վկայութիւն բարի և յարտաքնոցն ունել. զի

* ՚Ի Յոյնն, զգաստ՝ ժուժկալ՝

† ՚Ի Յոյնն, արբեցող

## ԳԼ. Դ

1 Այլ Հոգին Սուրբ յայտնապէս ասէ. թէ ՚ի
ժամանակս յետինս բակեսցին ոմանք ՚ի հաւատոցն.
և հայեսցին յայս մոլորութեան, և ՚ի վարդապետ-
2 ութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանք,
3 խարեալք իւրեանց խղճիւ մտաց. Որ արգելուցուն
յամուսնանալոյ, և մեկնիցեն ՚ի կերակրոց՝ զոր
Աստուած հաստատեաց ՚ի վայելել հաւատացելոց,
և որք հասեալ իցեն ՚ի ճշմարտութեանն վերայ։
4 Զի ամենայն արարածք Աստուծոյ՝ բարի են, և
չիք ինչ խոտան. մանաւանդ որ գոհութեամբ ըն-
5 դունիցին. Զի սրբի բանիւն Աստուծոյ՝ և աղօ-
6 թիւք։ Զայս խրատ տուեալ եղբարց՝ բարւոք պաշ-
տօնեայ լինիցիս Քրիստոսի Յիսուսի, սնանիցիս
բանիւք հաւատոց, և բարւոք վարդապետութեամբն՝
7 զորոյ զհետ խաղ եղեր։ Այլ ՚ի պիղծ բանից
և յառասպելաց պառաւանց հրաժարեսջիր։ Բայց
8 կրթեա զանձն քո յաստուածպաշտութիւն. Զի
մարմնոյ կրթութիւն առ սակաւ ինչ օգտակար է.
իսկ աստուածպաշտութիւն առ ամենայն ինչ օգ-
տակար է, և զաւետիս կենաց ունի՝ զարդիս և
9 զհանդերձելոցն։ Հաւատարիմ է բանս՝ և ամե-
10 նայն ընդունելութեան արժանի է։ Զի ՚ի սոյն
իսկ վաստակեմք՝ և նախատինս յանձն առնումք.
զի յուսացեալ եմք յԱստուած կենդանի, որ է
փրկիչ ամենայն մարդկան, մանաւանդ հաւատացե-
11 լոց։ Պատուէր տուր զայդ՝ և ուսուցանիցես.
12 Զի մի ոք զքո մանկութիւնդ արհամարհիցէ։

Այլ օրինակ լինիջիր հաւատացելոց՝ բանիւք՝ գը-
13 նացիւք՝ սիրով, հաւատովք, սրբութեամբ ։ Մի՛նչև գամ ես, միտ դիր ընթերցուածոց մխիթարու-
14 թեան՝ վարդապետութեան ։ Մի՛ անփոյթ առներ
զշնորհացդ՝ որ 'ի քեզ են, որ տուաւ քեզ մարգա-
րէութեամբ 'ի ձեռնադրութենէ երիցութեան ։
15 Զա՛յդ խորհեաց՝ և 'ի դո՛յն կանխեսջիր ․ զի քո յա-
16 ռաջադիմութիւնդ ամենեցուն յայտնի լիցի ։ Զգո՛յշ
լինիջիր անձին և վարդապետութեանդ՝ և 'ի դմին
յամեսջիր ․ զայդ եթէ առնիցես՝ և զանձն ապրե-
ցուսցես, և զայնոսիկ՝ որ քեզն լսիցեն ։

# ԳԼ․ Ե

1 Զծերն մի՛ պատուհասեսցես, այլ մխիթարեսջիր
2 իբրև զհայր, զերիտասարդս իբրև զեղբարս, Զպա-
ռաւունս իբրև զմարս, զմանկամարդս իբրև զքորս՝
3 ամենայն սրբութեամբ ։ Զայրիս պատուեա՛, որ
4 ստոյգ այրիքն իցեն ։ Ապա թէ ոք այրի՝ որդիս և
թոռունս ունիցի, ուսանիցին նախ իւրեանց տանց
բարի առնել՝ և զփոխարէնս հատուցանել ծնողացն ․
զի այն է բարի՝ և ընդունելի առաջի Աստուծոյ ։
5 Իսկ որ ճշմարտիւ այրին իցէ ․ և մենացեալ յու-
սացեալ յԱստուած, և կանխեալ յաղօթս և 'ի
6 խնդրուածս զցայգ և զցերեկ ։ Իսկ գիրգ այրին՝
7 կենդանւոյն մեռեալ է ։ Զայս պատուիրեա՝ զի ա-
8 նարատք իցեն ։ Իսկ եթէ ոք իւրոց՝ և մանաւանդ
ընտանեացն խնամ ո՛չ տանիցի, 'ի հաւատոցն ու-
9 րացեալ է՝ և չար ևս քան զանհաւատն է ։ Այրի

ընդ այրիս անուանեսցի, որ չիցէ պակաս 'ի վաթ-
10 սընամենից ; միոյ առն կին լեալ. Եւ 'ի գործս բա-
րիս վկայեալ, եթէ մանկունս սնուցեալ իցէ, ե-
թէ զհիւրս ընկալեալ իցէ, եթէ զսրբոց զոտս լու-
ացեալ իցէ, եթէ նեղելոց բաւական լեալ իցէ, ե-
թէ զամենայն գործոց բարեաց զհետ երթեալ իցէ :
11 Այլ 'ի մանկամարդաց այրեացն հրաժարեա՛, զի
յորժամ խայտան զՔրիստոսիւ՝ ամուսնանալ կա-
12 մին. Իսկ զդատաստանս ընդունին, զի զառաջին
13 հաւատսն արհամարհեցին : Միանգամայն և դատար-
կանձունք ուսանին՝ շրջօղք տանէ 'ի տուն. և ո՛չ
միայն դատարկք, այլ և փասքուսք և հետաքրքիրք.
14 և խօսին՝ որ ինչ ո՛չ է պիտոյ : Կամիմ զմանկա-
մարդացդ ամուսնանալ, որդիս ծնանել, տնարարս
լինել, և մի՛ ինչ պատճառս տալ հակառակորդին
15 'ի հայհոյութեան աղագս : Զի արդէն իսկ ոմանք
16 խոտորեցան զկնի Սատանայի : Եթէ ոք հաւա-
տացեալ՝ այրիս ունիցի՝ բաւական լիցի նոցա, և
մի ծանրասցի եկեղեցւոյն. զի ճշմարիտ այրեա՛ցն
բաւական լինիցի :
17 Որ բարւոք վերակացու լինին երիցունք՝ կրկին
պատուոյ արժանի եղիցին. մանաւանդ որ աշխա-
18 տիցին բանիւ և վարդապետութեամբ : Քանզի
ասէ գիր. Մի՛ կապեսցես զցուլ եզին կալոտւոյ,
19 և Արժանի է մշակն վարձու իւրոյ : Զերիցուէ չա-
րախօսութիւն մի՛ ընդունիցիս. բայց եթէ երկուք՝
20 և երիւք վկայիւք : Իսկ որ մեղանչենն՝ առաջի ա-
մենեցուն յանդիմանեա՛, զի և այլքն երկիցեն :
21 Վկայութիւն դնեմ առաջի Աստուծոյ և Յիսուսի

Քրիստոսի՝ և ընտրելոց հրեշտակաց, զի զայդ
պահեսցես առանց մտահաճութեան. մի՛ ինչ առ-
22 նել աչառանօք: Ձեռս վաղվաղակի յուրուք վերայ
մի՛ դնիցես, և մի՛ կցորդ լինիցիս մեղաց օտարաց.
23 զանձն քո սուրբ պահեսջիր: Այսուհետև մի՛ ջուր
և եթ ըմպիցես՝ այլ սակաւիկ մի և գինի խառնես-
24 ջիր՝ վասն ստամոքսի և ստէպ հիւանդութեանց: Են
մարդք՝ որոց մեղքն յայտնի են՝ և յառաջագոյն
հասեալ՝ ի դատաստան, և են՝ որոց զկնի երթան:
25 Նոյնպէս և բարի գործքն յայտնի են. և որ այլ-
ազգ եւս ինչ իցեն՝ թաքչել ո՛չ կարեն:

## ԳԼ. Զ.

1 Որ միանգամ ընդ լծով ծառայութեան իցեն,
զիւրաքանչիւր տեարս պատուոյ արժանի համարես-
ցին. զի մի՛ անուանն Աստուծոյ և վարդապետու-
2 թիւնն հայհոյեսցի: Իսկ որ հաւատացեալ տեարս
ունիցին՝ մի՛ արհամարհեսցեն, զի եղբարք են. այլ
առաւել ծառայեսցեն՝ զի հաւատացեալքն են և սի-
րունք. որք զբարերարութիւն յանձին ունիցին.
3 զա՛յս ուսուցանիջի՛ր՝ և մխիթարեսջի՛ր: Իսկ եթէ
ոք այլազգ ինչ ուսուցանիցէ, և ո՛չ անսայցէ ողջ-
մտութեան բանից Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի, և ըստ աստուածպաշտութեան վարդապե-
4 տութեանն. Այնպիսին հպարտացեալ է՛, և ոչինչ
ո՛չ գիտէ. այլ ախտի ՚ի խնդիրս և ՚ի բանս հակա-
ռակութեան. ուստի լինին նախանձ, հեռ, հայհո-
5 յութիւն՝ կարծիք չարեաց, Խարդախութիւնք ա-

պականելոց մտաց մարդկան՝ և օտարացելոց ՚ի ճըշ-
մարտութենէ անտի, որ շահավաճառ համարին
զաստուածպաշտութիւն. բայց դու մերժեսջիր
յայնպիսեացն ։
6 Այլ շահավաճառ մեծ աստուածպաշտութիւն է՝
7 բաւականութեամբ հանդերձ ։ Զի ոչ բերաք ինչ
8 յաշխարհս՝ և ոչ տանել ինչ կարասցուք ։ Այլ ու-
նիցիք կերակուր և հանդերձս, և այնու շատա-
9 ցուք ։ Իսկ որք կամին մեծանալ՝ անկանին ՚ի փոր-
ձութիւն և յորոգայթ, և ՚ի բազում ցանկութիւնս
անմիտս և վնասակարս. որք ընկղմեն զմարդիկ
10 ՚ի սատակումն և ՚ի կորուստ ։ Զի արմատ ամե-
նայն չարեաց արծաթսիրութիւն է. որում ոմանց
ցանկացեալ՝ մոլորեցան ՚ի հաւատոյն, և զանձինս
11 արկին ընդ բազում ցաւովք ։ Այլ դու ով մարդ
Աստուծոյ՝ փախիր յայնցանէ, և երթ զհետ ար-
դարութեան, զաստուածպաշտութեան, զհաւատոյ,
12 զսիրոյ, զհամբերութեան, զհեզութեան. Եւ մարտիր
զբարւոք մարտն հաւատոյ, և բուռն հար զկենացն
յաւիտենականաց՝ յոր կոչեցարն, և դաւանեցեր
զբարւոք դաւանութիւնն առաջի բազում վկայից ։
13 Պատուիրեմ քեզ առաջի Աստուծոյ՝ որ կենդանի
առնէ զամենայն, և Յիսուսի Քրիստոսի՝ որ վկայեաց
առաջի Պոնտացւոյ Պիղատոսի զբարւոք դաւանու-
14 թիւնն. Պահել քեզ զպատուիրանն անբիծ՝ անա-
րատ, մինչև ՚ի յայտնութիւն Տեառն մերոյ Յիսուսի
15 Քրիստոսի. Զոր յիւր ժամանակս ցուցցէ Երանե-
լին՝ և միայն Հզօր, Թագաւոր թագաւորաց և Տէր
16 տերանց. Որ միայն ունի զանմահութիւն՝ բնակեալ

՚ի լոյս անմատոյց․ զոր ոչ ոք ետես ՚ի մարդկանէ՝
և ոչ տեսանել կարող է․ որում պատիւ և զօրու-
17 թիւն յաւիտեանս․ ամէն։ Մեծատանց որ են
յայսմ աշխարհի՝ պատուէր տա՛ցես՝ մի՛ հպարտանալ
և մի՛ յուսալ ՚ի մեծութիւն մնոտի, այլ յԱստ-
ուած՝ որ տայ մեզ զամենայն առատապէս ՚ի վայե-
18 լել, Զբարիս գործել, մեծանալ գործովք բա-
րութեան, առատս, սիրունս, հաղորդս լինել․
19 Գանձել անձանց հիմն բարի ՚ի հանդերձեալն, զի
20 բուռն հարկանիցեն զճշմարիտ կենացն։ Ով Տի-
մոթէէ՝ պահեա զաւանդն՝ խոտորեալ ՚ի պղծոց և ՚ի
նորաձայն բանից և ՚ի հակառակութենէ և ՚ի մո-
21 լորանուն գիտութենէ․ Զոր ոմանց յանձն առեալ՝
վրիպեցան ՚ի հաւատոց անտի։ Շնորհք ընդ քեզ․
ամէն։

Առ Տիմոթէոս առաջին թուղթն գրեցաւ ՚ի Լաւոդիկե-
եայ, որ է մայր քաղաքաց Պակատիանացւոց։

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ ԵՐԿՐՈՐԴ

## ԳԼ. Ա.

1 ՊՕՂՈՍ *առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն*
*Աստուծոյ, ըստ աւետեաց կենացն՝ որ ՚ի Քը-*
2 *րիստոս Յիսուս. Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ՝ շնորհք,*
*ողորմութիւն և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ*
3 *և ՚ի Քրիստոսէ Յիսուսէ Տեառնէ մերմէ։ Շնորհ*
*ունիմ Աստուծոյ՝ զոր պաշտեմն ՚ի նախնեաց մտօք*
*սրբովք, իբրև զի անպակաս ունիմ զքէն յիշատակ*
4 *յաղօթս իմ. զցայգ և զցերեկ. Յանկացեալ եմ*
*տեսանել զքեզ, յիշատակեալ զարտասուսն քո՝*
5 *զի լցայց ուրախութեամբ. Զմտաւ ածեալ զան-*
*խիղճ հաւատսն որ են ՚ի քեզ. որ յառաջագոյն*
*բնակեցաւ ՚ի հանոյ քում Լաւոդեայ, և ՚ի մօր*
*քում Եւնիկեայ. հաստատեալ եմ՝ թէ և ՚ի քեզ*
6 *է։ Վասն որոյ յիշեցուցանեմ քեզ արծարծել*
*զշնորհսն Աստուծոյ՝ որ են ՚ի քեզ ՚ի ձեռնադրու-*
7 *թենէ իմմէ։ Զի ոչ ետ մեզ Աստուած հոգի վհա-*
*տութեան, այլ զօրութեան՝ և սիրոյ՝ և զգաստու-*
8 *թեան։ Մի՛ այսուհետև ամօթ համարիցիս զվկա-*

յութիւն Տեառն մերոյ՝ և մի՛ զիս զկապեալ նորա․
այլ կցո՛րդ լեր չարչարանաց աւետարանին՝ ըստ զօ-
9 րութեանն Աստուծոյ․ Որ փրկեաց զմեզ, և կոչ-
եաց ՚ի կոչումն սուրբ, ո՛չ ըստ գործոց մերոց՝ այլ
ըստ իւրում յառաջադրութեանն և շնորհաց, որ
տուաւ մեզ ՚ի Քրիստոս Յիսուս յառաջ քան
զժամանակսն յաւիտենից։
10 Բայց յայտնեցաւ այժմիկ յերևել փրկչին մերոյ
Յիսուսի Քրիստոսի․ որ խափանեաց զմահ՝ և լու-
սաւոր արար զկեանս և զանեղծութիւն ՚ի ձեռն
11 աւետարանին․ Որոյ եդայ ես քարոզ և առաքեալ՝
12 և վարդապետ հեթանոսաց։ Վասն որոյ և զայս
չարչարանս կրեմ, այլ ո՛չինչ ամօթ համարիմ․
քանզի գիտեմ՝ յո՛ հաւատացեալդ եմ, և հաւ-
տատեալ եմ, թէ կարօղ է զաւանդն իմ պահել
13 յօրն յայն։ Ունիցիս օրինակ ողջմտութեան բա-
նիցն, զորս յինէն լուար՝ հաւատովք և սիրով որ
14 ՚ի Քրիստոս Յիսուս։ Զբարւոք աւանդն պահեա-
ջի՛ր՝ ՚ի ձեռն Հոգւոյն Սրբոյ ՚ի մեզ բնակելոյ։
14 Զայս գիտասջի՛ր՝ զի մեկնեցան ՚ի մէնջ ամենեք-
եան որ էին յԱսիա, որոց աստի են Փիգեղոս
16 և Հերմոգենէս։ Տացէ Աստուած ողորմութիւն
տանն Ոնեսիփորայ․ զի բազում անգամ հանգոյց
17 զիս, և զկապանս իմ ո՛չ ամօթ համարեցաւ․ Այլ
իբրև եկն ՚ի Հռովմ, պնդագոյնս խնդրեաց զիս՝ և
18 եգիտ։ Տացէ նմա Տէր՝ ողորմութիւն գտանել ՚ի
Տեառնէ յաւուրն յայնմիկ․ և որչափ ինչ միան-
գամ յԵփեսոս սպաս կալաւ ինձ, զայն դու ինք-
նին քաջ գիտես։

## ԳԼ. Բ

1 Արդ դու որդեակ իմ, զօրացի՛ր շնորհօքն՝ որ ՚ի
2 Քրիստոս Յիսուս ։ Եւ զոր լուար յինէն բազում
վկայիւք՝ զայն աւանդեսցես հաւատարիմ մարդոց,
որք բաւական իցեն և զայլս ուսուցանել ։
3 Աշխատակից լեր իբրև զբարւոք զինուոր Քրիս-
4 տոսի Յիսուսի ։ Ոչ ոք զինուորեալ աստէն ընդ
կեանս աշխարհիս պատաղի, եթէ զօրավարին հա-
5 ճոյ լինիցի ։ Եւ եթէ մարտիկ ոք իցէ՝ ոչ պսակի՝
6 եթէ ոչ ըստ օրինին մարտիցէ ։ Եւ հողագործին
7 աշխատելոյ պարտ է նախ ՚ի պտղոյն վայելել ։ Ի-
մա՛ զինչ ասեմ. տացէ քեզ Տէր իմաստութիւն
8 յամենայնի ։ Յիշեա՛ զՔրիստոս Յիսուս յարուց-
եալ ՚ի մեռելոց՝ ՚ի զաւակէ Դաւթի, ըստ աւետա-
9 րանիս իմում. Յորում չարչարիմ կապանօք չափ՝
իբրև զչարագործ. այլ բանն Աստուծոյ ոչ եթէ
10 կապեալ իցէ ։ Վասն այնորիկ ամենայնի համբե-
րեմ վասն ընտրելոցն, զի և նոքա փրկութեանն
հասանիցեն՝ որ ՚ի Քրիստոս Յիսուս երկնաւոր
11 փառօքն հանդերձ ։ Հաւատարիմ է բանս. զի
12 եթէ ընդ նմա մեռաք՝ ընդ նմին և կեցցուք. Եւ
եթէ համբերեմք, ընդ նմին և թագաւորեսցուք.
13 և եթէ ուրանամք՝ և նա ուրանայ զմեզ. Եւ ե-
թէ չհաւատամք, նա հաւատարիմ մնայ, ուրա-
14 նալ զանձն իւր ոչ կարէ ։ Զայս յուշ արասջի՛ր՝
վկայութիւն եդեալ առաջի Աստուծոյ. մի՛ բանա-
կռիւ լինել յոչինչ պէտս ՚ի կործանումն լսողաց ։
15 Փութասջի՛ր զանձն քո ընտիր կացուցանել առա-

ջի Աստուծոյ, մշակ առանց ամօթոյ. ուղիղ հա-
16 մառօտել զբանն ճշմարտութեան : Այլ 'ի պղծոց
և 'ի սնոտի խօսից մերժեսջիր. զի առաւել յա-
17 ռաջ գայցեն յամբարշտութիւնս. Եւ բանք նոցա
իբրև զքաղցկեղ ճարակ գտանեն. որոց ասկի են
18 Հիմենոս՝ և Փիղետոս. Որք վրիպեցան 'ի ճշմար-
տութենէ, և ասեն՝ եթէ Յարութիւն մեռելոց առ-
դէն իսկ եղեալ է. և կործանեն զհաւատս ոմանց :
19 Այլ հաստատուն հիմն Աստուծոյ կայ՝ և ունի
զկնիքս զայս, եթէ ծանեաւ Տէր զայնոսիկ՝ որ
իւրն են. և 'ի բաց լիցի յանիրաւութենէ ամե-
20 նայն՝ որ անուանէ զանուն Տեառն : Այլ 'ի
տան մեծի ոչ միայն են անօթք ոսկեղէնք և արծա-
թեղէնք, այլ և փայտեղէնք և խեցեղէնք. են որ
21 'ի պատուի են, և են որ յանարգութեան : Եթէ
ոք սրբեսցէ զանձն իւր յայնպիսեաց անտի, եղիցի
անօթ պատուական՝ սրբեալ և պիտանի Տեառն իւ-
րում՝ յամենայն գործս բարութեան պատրաստ-
22 եալ : Այլ յերիտասարդական ցանկութեանց փա-
խիր. և երթ զհետ արդարութեան՝ զհաւատոց,
զսիրոյ, զխաղաղութեան, զսրբութեան, ընդ այ-
նոսիկ՝ որ կարդան զանուն Տեառն սուրբ սրտիւք :
23 Այլ 'ի յիմար և յանխրատ խնդրոց հրաժարեա.
24 գիտասջիր թէ անտի ծնանին կռիւք : Բայց ծառա-
յի Տեառն ոչ է պարտ կռուել, այլ հեզ լինել
25 առ ամենեսին՝ ուսուցիչ անոխակալ : Հանդարտու-
թեամբ խրատել զհակառակօղսն. թերևս տացէ
նոցա Աստուած ապաշխարութիւն 'ի գիտութիւն
26 ճշմարտութեան. Եւ սթափեսցին յորոգայթից
Սատանայի, որսացեալք 'ի նմանէ 'ի նորա կամս :

## ԳԼ. Գ

1 Զայս գիտասջիր՝ եթէ յաւուրս յետինս եկես-
2 ցեն ժամանակք չարք. Զի եղիցին մարդիկ անձ-
նասէրք, արծաթասէրք, հպարտք, ամբարտաւանք,
հայհոյիչք, անհաւանք ծնողաց, անշնորհք, ան-
3 սուրբք, Աննուէրք, անգութք, բանսարկուք, ան-
4 ժոյժք, վէսք, անբարեսէրք, Մատնիչք, յանդգունք,
ամբարհաւաճք, ցանկասէրք մանաւանդ՝ քան Աստ-
5 ուածասէրք. Որ ունիցին զկերպարանս աստուած-
պաշտութեան, և 'ի զօրութենէ անտի նորա ու-
6 րացեալ իցեն. և խորշեսջիր 'ի նոցանէ: Քանզի
'ի նոցանէ են՝ որ մտանեն տանէ 'ի տուն, և գե-
րեն *զկանայս շեղջակուտեալս մեղօք՝ վարեալք
7 'ի պէսպէս ցանկութիւնս. Որ յամենայն ժամ ու-
սանին, և երբէք 'ի գիտութիւն ճշմարտութեան
8 ոչ հասանեն: Այլ որպէս Յանէսն և Յամբրէս հա-
կառակ կացին Մովսեսի. նոյնպէս և սոքա հակա-
ռակ կան ճշմարտութեանն. մարդք ապականեալք
9 մտօք՝ անպիտանք 'ի հաւատս: Այլ ոչ երբէք
գայցեն յառաջ 'ի լաւ անդր. քանզի անմտութիւն
սոցա յայտնի լինիցի ամենեցուն, որպէս և նոցայն
իսկ եղև:

10 Այլ դու զհետ եկիր վարդապետութեան իմոյ՝ ա-
ռաջնորդութեան՝ յօժարութեան՝ հաւատոց՝ երկայն-
11 մտութեան՝ սիրոյ՝ համբերութեան, հալածանաց,
չարչարանաց. որպիսիք եղեն ինձ յԱնտիոք և յԻ-

---

* 'Ի Յոյնն. զտկարացեալս կանայս

կոնիոն և 'ի Լիւստրոս, որպիսի հալածանաց համ-
12 բերի. և յամենայնէ փրկեաց զիս Տէր: Եւ ամե-
նեքին՝ որ կամիցին աստուածպաշտութեամբ կեալ
13 'ի Քրիստոս Յիսուս, 'ի հալածանս կացցեն: Այլ
մարդք չարք և կախարդք յառաջ եկեսցեն 'ի չար
14 անդր. մոլորեալք՝ և մոլորեցուցանիցեն: Այլ դու
հաստատուն կաց յոր ուսարդ, և հաւատարիմ ե-
15 ղեր. գիտես ուստի ուսար. Զի 'ի մանկութենէ
զգիրս սուրբս գիտես, որ կարօղ են իմաստուն առ-
նել զքեզ 'ի փրկութիւն՝ 'ի ձեռն հաւատոցն որ
'ի Քրիստոս Յիսուս:
16 Ամենայն Գիրք Աստուածաշունչք և օգտակարք,
'ի վարդապետութիւն են և 'ի յանդիմանութիւն և
17 յուղղութիւն և 'ի խրատ արդարութեան. Զի
կատարեալ իցէ մարդն Աստուծոյ՝ յամենայն գործս
բարութեան հաստատեալ:

## ԳԼ. Դ

1 Զայս վկայութիւն դնեմ առաջի Աստուծոյ և
Յիսուսի Քրիստոսի, որ դատելոց է զկենդանիս և
զմեռեալս՝ 'ի յայտնութեան իւրում և յարքայու-
2 թեան. Եւ դու քարոզեա՛ զբանն, հա՛ս 'ի վերայ
ժամու և տարաժամու, յանդիմանեա՛ սաստեա՛
մխիթարեա՛ ամենայն երկայնմտութեամբ և վարդա-
3 պետութեամբ: Քանզի եկեսցէ ժամանակ՝ զի ողջ-
մտութեան վարդապետութեանն ո՛չ անսայցեն. այլ
ըստ իւրաքանչիւր ցանկութեանց կուտեսցեն իւր-
եանց վարդապետս՝ ըստ մարմաջելոյ լսելեաց իւր-

4 խանց. Եւ 'ի ճշմարտութենէ անտի դարձուցանի-
5 ցեն զլսելիս՝ և յառասպելս կործանեսցին ։ Այլ
դու զուարթ կաց յամենայնի, ճգնեա՛ց, զգործս
աւետարանչի գործեա՛. զպաշտօնդ քո կատարեալ
6 կա՛լ ։ Զի ես այսուհետև նուիրեալ եմ, և ժա-
7 մանակ դարձի իմոյ հասեալ կայ ։ Զբարւոք պա-
տերազմ պատերազմեցայ, զընթացսն կատարեցի,
8 զհաւատսն պահեցի ։ Այսուհետև կայ մնայ ինձ
արդարութեան պսակն, զոր հատուսցէ ինձ Տէր
յաւուր յայնմիկ արդարն դատաւոր. ո՛չ միայն ինձ,
այլ և ամենեցուն՝ որ սիրեցին զյայտնութիւն նո-
րա ։
9 Փութասջի՛ր գալ առ իս վաղվաղակի. զի Դեմաս
եթող զիս՝ և սիրեաց զաշխարհ, և գնաց 'ի Թե-
10 սաղոնիկէ. Կրեսկէս 'ի Գաղիլեա, Տիտոս 'ի Դաղ-
11 մատիա. Ղուկաս միայն է ընդ իս ։ Զմարկոս առ-
եալ՝ ընդ քեզ ածիցես՝ զի է ինձ պիտանի 'ի սպա-
12 սաւորութիւն ։ Զտիւքիկոս առաքեցի յԵփեսոս ։
13 * Զփիլոնն թողի 'ի Տրովադա առ Կարպոսի. յոր-
ժամ գայցես՝ բերջի՛ր և զգիրսն" մանաւանդ զմատ-
14 եանսն ։ Աղէքսանդրոս (դարբին) բազում չար-
չարանս եցոյց ինձ. հատուսցէ նմա Տէր ըստ գործս
15 նորա ։ Յորմէ և դու անձնապահ լինիջի՛ր. զի
16 շատ հակառակ եկաց բանից մերոց ։ Յառաջնում
ատենին ոչ ո՛ք ինձ 'ի թիկունս եկաց, այլ ամե-
17 նեքին թողին զիս. մի՛ համարեսցի նոցա այն ։ Այլ

* Ի Յոյնն, Զփիլոնն՝ զոր թողի 'ի Տրովադա առ Կարպոսի, յորժամ գայցես բերջի՛ր. և զգիրսն,

Տէր օգնեաց ինձ, և զօրացոյց զիս, զի ինև քա-
րոզութիւնն հաստատեսցի, և լուիցեն ամենայն հե-
թանոսք. և ապրեցայ ես 'ի բերանոյ առիւծուն։
18 փրկեսցէ 'զիս Տէր յամենայն գործոց չարաց, և
զերծուսցէ զիս յարքայութիւն իւր՝ որ յերկինս է,
որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։
19 Ողջոյն տաջիր Պրիսկեայ և Ակիւղեայ՝ և Ոնեսի-
20 փորայ տանն։ Երաստոս մնաց 'ի Կորնթոս. զՏրո-
21 փիմոս թողի 'ի Միլիտոս հիւանդագին։ Փութա-
ջիր յառաջ քան զձմեռն գալ։ Ողջոյն տան քեզ
Եւբուղոս և Պուդէս և Լինոս և Կղօդիա և եղ-
բարք ամենեքեան։ Տէր Յիսուս Քրիստոս ընդ
22 ոգւոյդ քում։ Շնորհք ընդ քեզ. ամէն։

Առ Տիմոթէոս երկրորդ թուղթ, որ էր Եփեսացւոց
եկեղեցւոյն եպիսկոպոս առաջին ձեռնադրեալ. գրե-
ցաւ 'ի Հռովմէ՝ յորժամ երկրորդ անգամ եկաց յատե-
նի Պօղոս առաջի Ներոնի կայսեր Հռովմայ։

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ՏԻՏՈՍ

## ԳԼ. Ա.

1 ՊՕՂՈՍ ծառայ Աստուծոյ և առաքեալ Յիսուսի
Քրիստոսի, ըստ հաւատոյ ընտրելոցն Աս-
տուծոյ, և 'ի գիտութիւն ճշմարտութեան որ ըստ
2 աստուածպաշտութեանն է. Յուսով կենացն յաւի-
տենից, զոր խոստացաւ անսուտն Աստուած յառաջ
3 քան զժամանակս յաւիտենից. Բայց յայտնեաց
իւրովք ժամանակօք զբանն իւր քարոզութեամբ,
որոյ եղէ ես հաւատարիմ ըստ հրամանի փրկչին մե-
4 րոյ Աստուծոյ։ Տիտոսի որդւոյ սիրելւոյ ըստ հա-
սարակաց հաւատոյ, շնորհք և խաղաղութիւն
յԱստուծոյ Հօրէ՝ և 'ի Տեառնէ Յիսուսէ Քրիս-
5 տոսէ փրկչէ մերմէ։ Վասն այնորիկ իսկ թողի
զքեզ 'ի Կրետէ, զի որ ինչ միանգամ պակաս
իցէ՝ ուղղեսցես, և կացուսցես ըստ քաղաքաց երի-
6 ցունս՝ որպէս և ես քեզ պատուիրեցի։ Եթէ ոք
անարատ իցէ, միոյ կնոջ այր, որդեակս ունիցի հա-
ւատացեալս՝ և ոչ յամբաստանութիւն անառակու-
7 թեան, կամ անհնազանդս։ Զի պարտ է եպիս-

* CC 2

*կողոսին անարատ լինել՝ որպէս և Աստուծոյ տնտե-*
*սի • մի՛ յանդուգն , մի՛ բարկացող , մի՛ թշնամա-*
8 *նող , մի՛ հարկանող , մի՛ զօշաքաղ • Այլ հիւրա-*
*սէր , բարեսէր , ցած , արդար , սուրբ , ժուժկալ •*
9 *Վերակացու լինել հաւատարիմ բանին վարդապե-*
*տութեան , զի կարող իցէ և մխիթարել ողջմտու-*
*թեամբ վարդապետութեանն , և զհակառակորդսն*
10 *կշտամբել ։ Քանզի բազումք են անհնազանդք՝*
*զրախօսք և մտախաբք • մանաւանդ որ 'ի թլփատու-*
11 *թենէ անտի են • Զորս պարտ է ըմբերանել • որք*
*զամենայն տունս կործանեն , և ուսուցանեն զոր չէ՛*
*արժան՝ վասն զօշաքաղութեան ։*
12 *Ասաց ոմն 'ի նոցանէ՝ իւրեանց իսկ մարգարէ ,*
*Կրետացիք հանապազասուտք՝ չարաճճիք՝ դատար-*
13 *կապորտք ։ Եւ ստոյգ է վկայութիւնս այս • վասն ո-*
*րոյ կշտամբեսցես զնոսա խստագոյնս , զի առողջա-*
14 *ցին 'ի հաւատս • Եւ մի՛ հայեսցին 'ի հրէական ա-*
*ռասպելս , և 'ի պատուէրս մարդկան զառածելոցն*
15 *'ի ճշմարտութենէ ։ Ամենայն ինչ սուրբ է սրբոց ,*
*բայց պղծոցն և անհաւատից , ոչինչ է սուրբ • այլ*
16 *պղծեալ են միտք և խորհուրդք նոցա ։ Խոստանան*
*գիտել զԱստուած , և գործովք իւրեանց ուրանան •*
*պիղծք և անհաւանք՝ և յամենայն գործս բարեաց*
*անպիտանք ։*

## ԳԼ. Բ

1 *Այլ դու խօսեա՛ց որ ինչ վայելէ ողջամիտ վար-*
2 *դապետութեանդ ։ Ծերոց զգաստս լինել , պար-*

կեշտս՝ ցածունս , ողջամիտս 'ի հաւատս , 'ի սէր , 'ի
3 համբերութեան , 'ի ժուժկալութեան : Պառաւանց
նոյնպէս 'ի զգաստութեան՝ 'ի սուրբ վայելչութեան ,
4 մի՛ բանսարկուս՝ մի՛ գինեմոլս , այլ բարեխրատս . Զի
զգաստացուցանիցեն զմանկամարդսն՝ այրասէրս լի-
5 նել՝ որդեսէրս . Ցածունս , սուրբս , տնարարս , բա-
րեգործս , հնազանդս իւրեանց արանց . զի մի՛ բանն
Աստուծոյ և վարդապետութիւնն հայհոյեսցի :
6 Զերիտասարդս նոյնպէս աղաչեսջի՛ր՝ ցածունս լի-
7 նել , Ամենեցուն զանձն օրինակ կացուցանել՝ գոր-
ծոց բարութեան , վարդապետութեամբ զանեղծու-
թիւն ունել , զսրբութիւն , զպարկեշտութիւն ,
8 Զբանն ողջմտութեան , անպարսաւ լինել . զի որ
հակառակորդն իցէ՝ յամօթ լիցի , և մի՛ ինչ ունի-
9 ցի ասել զմէնջ չարութիւն : Ծառայից՝ իւրեանց
տերանց հնազանդ լինել և հաճոյս յամենայնի . մի՛
10 հակառակօղս , Մի՛ հատուս . այլ զամենայն հաւատս
ցուցանել բարութեամբ , զի զվարդապետութիւն
փրկչին մերոյ Աստուծոյ զարդարեսցեն յամենայնի :
11 Քանզի երևեցաւ շնորհն Աստուծոյ փրկիչ ա-
12 մենայն մարդկան . Որ խրատէ զմեզ՝ զի ուրասցուք
զամբարշտութիւն և զաշխարհական ցանկութիւնս .
զգաստութեամբ և արդարութեամբ և աստուած-
13 պաշտութեամբ կեցցուք յաշխարհի , Եւ ակն կալ-
ցուք երանելի յուսոյն՝ և յայտնութեան փառաց
մեծին Աստուծոյ՝ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիս-
14 տոսի . Որ ետ զանձն վասն մեր , զի փրկեսցէ
զմեզ յամենայն անօրէնութենէ , և սրբեսցէ իւր
ժողովուրդ սեպհական՝ նախանձաւոր գործոց բա-

15 րութեան ։ Զայս խօսեաց՝ և մխիթարեա և յան-
դիմանեա ամենայն սաստիւք․ զի մի՛ ոք իցէ որ
զքեզ արհամարհիցէ ։

## ԳԼ. Գ.

1 Եւ յուշ արասջիր նոցա, իշխանութեանց և պե-
տութեանց հնազանդ լինել՝ և հպատակ կալ․ և
ամենայն գործոց բարութեան պատրաստ գտանել․
2 Մի՛ զոք հայհոյել՝ անկռիւս լինել՝ հեզս, զամենայն
3 ցածութիւն առ ամենայն մարդիկ ցուցանել ։ Զի էաք
երբեմն և մեք անմիտք, անհաւանք, մոլորեալք․
ծառայէաք ցանկութեանց և պէսպէս անառակու-
թեանց․ չարութեամբ՝ և նախանձու շրջէաք, ա-
4 տեցեալք՝ և զմիմեանս ատէաք ։ Իսկ յորժամ
քաղցրութիւն և մարդասիրութիւն փրկչին մերոյ
5 Աստուծոյ յայտնեցաւ, Ո՛չ ՚ի գործոց արդարու-
թեան՝ զոր արարաք մեք, այլ ըստ իւրում ողոր-
մութեանն՝ ապրեցոյց զմեզ ՚ի ձեռն աւազանին
միւսանգամ ծննդեանն, և նորոգութեամբ Հոգ-
6 ւոյն Սրբոյ․ Զոր եհեղ ՚ի մեզ առատութեամբ,
7 ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի փրկչին մերոյ․ Զի
արդարացեալք շնորհօքն՝ եղիցուք ժառանգաւորք
8 յուսով կենացն յաւիտենականաց ։ Հաւատարիմ
է բանս․ և ՚ի սոյն կամիմ զքեզ հաստատուն լի-
նել, զի փոյթ արասցեն գործոց բարեաց վերակա-
ցու լինել հաւատացեալքն յԱստուած, զի այն է
9 բարի և օգտակար մարդկան ։ Այլ զյիմարութեան
խնդիրս՝ և զտոհմաթիւս, և զհեռ՝ և զօրինական

կռիւսն 'ի բաց մերժեսջիր · զի անօգուտք են՝ և
10 սնոտիք ։ Յառնէ հերձուածողէ՝ յետ միանգամ և
11 երկիցս խրատելոյ՝ հրաժարեսջիր · Գիտասջիր՝ զի
թիւրեալ է այնպիսին , և մեղանչէ՝ անձամբ զանձն
12 դատապարտեալ ։ Այլ յորժամ յղեցից առ քեզ
զԱրտեմայ , կամ զՏիւքիկոս , փութասջիր գալ առ
իս 'ի Նիկոպօլիս · զի անդ եդի 'ի մտի ձմերել ։
13 Եւ զԶենոն զօրինական դպիր՝ և զԱպօղոս՝ փու-
թով արձակեսջիր , զի մի՛ ինչ պակասիցէ նոցա ։
14 Ուսցին և մերքն ևս բարեաց գործոց վերակացու
լինել 'ի պէտս կարևորս , զի մի՛ անպտուղք լինի-
15 ցին ։ Ողջոյն տան քեզ՝ որ ընդ իս են ամենեքին ։
Ողջոյն տուր սիրելեաց մերոց հաւատովք , Շնորհք
ընդ ձեզ ամենեսին · ամէն ։

Առ Տիտոս Կրետացւոց եկեղեցւոյն առաջին ձեռնա-դրեալ եպիսկոպոսի , գրեցաւ 'ի Նիկոպօլսէ Մակեդո-նացւոց ։

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ՓԻԼԻՄՈՆ

1 ՊՕՂՈՍ կապեալ Յիսուսի Քրիստոսի, եւ Տիմո-
թէոս եղբայր. Փիլիմոնի սիրելւոյ եւ գործակ-
2 ցի մերոյ, Եւ Ապփեայ քեռ, եւ Արքիպպեայ զին-
3 ուորակցի մերոյ՝ եւ առանձին եկեղեցւոյդ: Շնորհք
ընդ ձեզ եւ խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մեր-
4 մէ՝ եւ 'ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ: Գոհա-
նամ զԱստուծոյ իմոյ՝ յամենայն ժամ յիշատակ-
5 եալ յաղօթս իմ վասն քո, Իբրեւ լսեմ զքո հա-
ւատսն եւ զսէր, զոր ունիս առ Տէր Յիսուս՝ եւ առ
6 ամենայն սուրբս: Զի հաղորդութիւն հաւատոցն
քոց արդիւն լինիցի՝ գիտութեամբ ամենայն բարու-
7 թեան, որ 'ի ձեզ է 'ի Քրիստոս Յիսուս: Խնդու-
թիւն յոյժ ընկալայ՝ եւ մխիթարութիւն 'ի վերայ
սիրոյն քո. զի գութք սրբոց քեւ հանգուցեալ են
8 եղբայր: Վասն որոյ բազում համարձակութիւն
ունիմ 'ի Քրիստոս՝ հրաման տալ քեզ զարժանն
9 Վասն * սիրոյ. մանաւանդ թէ աղաչեմ իսկ այն-
պիսի լինել՝ որպէս եւ Պօղոս" ծերացեալ, արդ եւ

---

* 'Ի Յոյն. սիրոյ, մանաւանդ աղաչեմ, այնպի-
սի գոլով՝ որպէս Պօղոս

10 կապեալ ևս Յիսուսի Քրիստոսի ։ Աղաչեմ զքեզ
վասն որդւոյ իմոյ՝ զոր ծնայ 'ի կապանս իմ, զՈնե-
11 սիմոս ․ Որ երբեմն անպիտան էր քեզ ․ բայց արդ
12 քեզ և ինձ պիտանի ․ զոր յղեցի առ քեզ ։ Եւ
13 դու զդա ընկալջիր՝ այսինքն է զիմ աղիս ։ Զոր
կամէի առ իս արգելուլ, զի ընդ քո ունիցի ինձ
14 սպաս 'ի կապանս աւետարանին ։ Բայց առանց քո
կամաց ոչինչ կամեցայ առնել, զի մի բարիքդ քո
15 'ի հարկէ լինիցին՝ այլ կամաւ ։ Եւ թերևս վասն
այնորիկ մեկնեցաւ առ ժամանակ մի, զի յաւիտ-
16 եան ունիցիս զդա ․ Մի՛ ևս իբրև զծառայ՝ այլ 'ի
վեր քան զծառայ, իբրև զեղբայր սիրելի ․ եթէ
ինձ այսպէս, ո՞րչափ ևս առաւել քեզ մարմնով՝
17 և Տերամբ ։ Եթէ զիս քեզ հաղորդ համարիցիս,
18 ընկա՛լ զդա իբրև զիս ։ Եւ եթէ յանցուցեալ ինչ
19 իցէ՝ կամ պարտիցի, զայն ինձ համարեա՛ց ։ Ես
Պօղոս գրեցի իմով ձեռամբ ․ ես հատուցից, զի
մի՛ ասիցեմ քեզ՝ թէ և դու զանձն քո ինձ պար-
20 տիս ։ *Այո՛ եղբայր՝ ես քո փոխանակ եղէց" 'ի
21 Տէր ․ հանգո՛ զաղիսդ իմ 'ի Քրիստոս ։ Յուսացեալ
'ի հնազանդութիւնդ քո՝ գրեցի առ քեզ ․ քանզի
գիտեմ թէ առաւել ևս քան զոր ասեմդ՝ առնիցես ։
22 Միանգամայն և պատրաստեսջի՛ր ինձ վանս ․ քան-
զի յուսամ եթէ աղօթիւք ձերովք շնորհեցայց
23 ձեզ ։ Ողջո՛յն տայ ձեզ Եպափրաս գերեկից իմ 'ի
24 Քրիստոս Յիսուս, Եւ Մարկոս և Արիստարքոս և
25 Դեմաս և Ղուկաս՝ գործակիցք իմ ։ Շնորհք

* 'Ի Յոյնն, Այո՛ եղբայր, ես քեւ վայելեցից

*Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ոգւոյդ ձե-րում. ամէն։*

Առ Փիլիմոն և առ Ապփիա տեարս Ոնեսիմայ. և առ Արքիպպոս առաջնորդ Կողոսացւոցն եկեղեցւոյն, գրե-ցաւ ի Հռովմէ ի ձեռն Ոնեսիմայ ծառայի։



# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ

## ԳԼ. Ա.

1 ԲԱԶՄՈՒՄ մասամբք և բազում օրինակօք կանխաւ
խօսեցաւ Աստուած ընդ հարսն մեր մար-
2 գարէիւք. 'Ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ
ընդ մեզ Որդւովն՝ զոր եդ ժառանգ ամենայնի. ո-
3 րով և զյաւիտեանսն արար: Որ է լոյս փառաց՝ և
նկարագիր էութեան նորա. որ կրէ զամենայն բա-
նիւ զօրութեան իւրոյ. սրբութիւն մեղաց մերոց
արարեալ՝ նստաւ ընդ աջմէ մեծութեանն 'ի բար-
4 ձունս: Այնչափ առաւել եղեալ քան զհրեշտակս,
որչափ լաւ ևս քան զնոսա անուն ժառանգեաց:
5 Քանզի ցո՞ երբէք ասաց 'ի հրեշտակաց. Որդի իմ
ես դու՝ ես այսօր ծնայ զքեզ. և դարձեալ՝ Թէ Ես
6 եղէց նմա 'ի Հայր, և նա եղիցի ինձ յՈրդի: Այլ
յորժամ միւսանգամ մուծցէ զանդրանիկն յաշ-
խարհ, ասէ. Երկիր պագցեն նմա ամենայն հրեշ-
7 տակք Աստուծոյ: Այլ առ հրեշտակսն ասէ. Ո՛
արար զհրեշտակս իւր հոգիս, և զպաշտօնեայս իւր
8 բոց հրոյ: Իսկ ցՈրդին ասէ. Աթոռ քո Աստուած

յաւիտեանս յաւիտենից. գաւազան ուղղութեան՝
9 գաւազան արքայութեան քո: Սիրեցեր զարդարու-
թիւն և ատեցեր զանօրէնութիւն. վասն այսորիկ
օծ զքեզ Աստուած՝ Աստուած քո՝ իւղով ուրախու-
10 թեան՝ առաւել քան զընկերս քո: Եւ դու Տէր
'ի սկզբանէ զերկիր հաստատեցեր. և գործք ձեռաց
11 քոց երկինք են: Նոքա կորնչին՝ և դու կաս և մնաս.
12 ամենեքեան իբրև զձորձ մաշեսցին, Եւ իբրև
զվերարկու. գալարեսցես զնոսա իբրև զհանդերձ, և
գալարեսցին. բայց դու նոյն իսկ ես՝ և ամք քո ոչ
13 պակասեն: Ո՞ւմ երբէք ասաց 'ի հրեշտակաց. Նիստ
ընդ աջմէ իմմէ՝ մինչև եդից զթշնամիս քո պատա-
14 ուանդան ոտից քոց: Ոչ ապաքէն ամենեքեան հո-
գիք են հարկաւորք՝ որ առաքին 'ի սպասաւորութիւն
վասն այնոցիկ, որ ժառանգելոցն են զփրկութիւն:

## ԳԼ. Բ

1 Վասն այնորիկ պարտ է մեզ առաւել ևս ուն-
կընդիր լինել բանիցն ասացելոց՝ զի մի՛ երբէք նուա-
2 զեսցուք: Զի եթէ որ 'ի ձեռն հրեշտակաց խօ-
սեցաւ բանն՝ հաստատուն եղև, և ամենայն յանցա-
ւորութիւն և անհնազանդութիւն ընկալաւ զպատիժ
3 պատուհասի. Մե՞ք զիա՞րդ ապրեսցուք հեղգացեալք
յայնպիսի փրկութենէ, որ սկիզբն առ խօսելոյ 'ի
Տեառնէ. և 'ի ձեռն այնոցիկ որ լուանն՝ 'ի մեզ
4 հաստատեցաւ. Վկայեալ յԱստուծոյ նշանօք և
արուեստիւք և պէսպէս զօրութեամբք, և մասամբք
5 Հոգւոյն Սրբոյ՝ ըստ իւրոց կամաց: Զի ոչ եթէ

Հրեշտակաց հնազանդեցոյց զհանդերձեալ աշ-
6 խարհն, վասն որոյ մեք խօսիմք: Վկայեաց ոք
ուրեք՝ և ասէ. Զի՞նչ է մարդ՝ եթէ յիշեցես
զնա, կամ որդի մարդոյ՝ թէ այց արասցես նմա:
7 Փոքր մի խոնարհ արարեր զնա քան զհրեշտակս.
փառօք և պատուով պսակեցեր զնա՝ և կացուցեր
8 զնա ՚ի վերայ ձեռակերտաց քոց: Զամենայն ինչ
հնազանդ արարեր ՚ի ներքոյ ոտից նորա: Արդ ՚ի
հնազանդեցուցանելն զամենայն, ոչինչ եթող
անհնազանդ ՚ի նմանէ. բայց այժմ ոչ ևս տեսա-
9 նեմք հնազանդեալ նմա զամենայն: Այլ զփոքր մի
խոնարհեալ քան զհրեշտակս տեսանեմք զՅիսուս՝
վասն չարչարանաց մահուն, փառօք և պատուով
պսակեալ. զի շնորհօքն Աստուծոյ վասն ամենե-
10 ցուն զմահ ճաշակեսցէ: Զի վայելէր իսկ նմա,
վասն որոյ ամենայն՝ և որով ամենայն, *բազում
որդիս ՚ի փառս ածել՝ և զառաջնորդ փրկութեան
նոցա չարչարանօք կատարել:
11 Զի որ սրբէն և որ սրբին՝ ՚ի միոջէ են ամենե-
քին, վասն որոյ ոչ ամօթ համարի եղբարս ան-
12 ուանել զնոսա, և ասել: Պատմեցից զանուն քո
եղբարց իմոց. ՚ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ:
13 Եւ դարձեալ՝ թէ Ես եղէց յուսացեալ ՚ի նա. և
դարձեալ՝ Ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետ
14 ինձ Աստուած: Արդ՝ որովհետև մանկունք հաղոր-
դեցին արեան և մարմնոյ, և ինքն իսկ մերձաւո-
րութեամբ կցորդ եղև նոցունց. զի մահուն իւրով

* ՚Ի Յոյնն, յածելն ՚ի փառս զբազում որդիս

խափանեսցէ զայն, որ զիշխանութիւն մահուն ու-
15 նէր, այսինքն է՝ զՍատանայ. Եւ ապրեցուսցէ
զայնոսիկ, որ մահու երկիւղիւ հանապազ կէին
16 վարանեալք ՚ի ծառայութիւն։ Քանզի ոչ եր-
բէք զհրեշտակաց բունն հարկանէ. այլ զզաւակէն
17 Աբրահամու բունն հարկանէ։ Ուստի պարտ իսկ
էր նմա ամենայնիւ եղբարց նմանել. զի ողորմած
լինիցի, և հաւատարիմ քահանայապետ յաստ-
ուածակոյս կողմանէ անտի, առ ՚ի քաւելոյ զմեղս
18 ժողովրդեանն։ Զի որով ինքն չարչարեցաւ,
զփորձ առեալ՝ կարող է և փորձանաւորացն օգնա-
կան լինել։

## ԳԼ. Գ.

1 Ուստի եղբարք սուրբք՝ երկնաւոր կոչմանն բա-
ժանորդք, նայեցարո՛ւք ընդ Առաքեալն և ընդ Քա-
հանայապետ խոստովանութեան մերոյ ընդ Յիսուս
2 Քրիստոս. Որ հաւատարիմ է արարչին իւրոյ՝ որ-
3 պէս և Մովսէս յամենայն ՚ի տան նորա։ Զի ա-
ռաւել ևս փառաց քան զՄովսէս արժանի եղև.
որչափ առաւել պատիւ ունիցի քան զտունն՝ տանն
4 առնելի։ Զի ամենայն տուն կազմի, յումէ կազ-
5 մի. իսկ որ զամենայնն արար, Աստուած է։ Մով-
սէս հաւատարիմ է յամենայն տան նորա իբրև
զծառայ՝ առ ՚ի վկայութենէ բանիցն ասացելոց։
6 Այլ Քրիստոս իբրև որդի ՚ի վերայ տան իւրոյ.
որոյ տունն մեք իսկ եմք. միայն թէ զհամարձակու-
թիւն և զպարծանս յուսոյն մինչև ՚ի վախճան

7 հաստատուն ունիցիմք ։ Վասն որոյ այսպէս ասէ
Հոգին Սուրբ . այսօր եթէ ձայնի նորա լուիցէք ,
8 Մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր իբրեւ ՚ի դառնու-
9 թեանն՝ յաւուրն փորձութեան յանապատի . Ուր
փորձեցին զիս հարքն ձեր . քննեցին զիս՝ եւ տեսին
10 զգործս իմ զքառասուն ամ . Վասն որոյ տաղտկա-
ցայ ազգաւն այնուիկ , եւ ասացի . Մի՛շտ մոլորեալ
են սրտիւք . եւ նոքա ո՛չ ծանեան զճանապարհս
11 իմ . Որպէս երդուայ ՚ի բարկութեան իմում՝ թէ
Մտցեն ՚ի հանգիստ իմ ։
12 Տեսէք եղբարք՝ գուցէ երբէք լինիցի յումեք ՚ի
ձէնջ սիրտ չար անհաւատութեան՝ ապստամբ լի-
13 նել յԱստուծոյ կենդանւոյ ։ Այլ մխիթարեցէ՛ք
զմիմեանս զօրհանապազ՝ մինչդեռ այսօրդ առաջի
կայ . զի մի՛ ոք խստասցի ՚ի ձէնջ խաբէութեամբ
14 մեղաց ։ Քանզի բաժանորդք եղեաք Քրիստոսի .
միայն թէ զսկիզբն հաստատութեանն մինչեւ ցվախ-
15 ճան պինդ կալցուք ։ Յասելն , Այսօր եթէ ձայնի
նորա լուիցէք՝ մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր իբ-
16 րեւ ՚ի դառնութեանն ։ Քանզի ոմանք լուան եւ
դառնացուցին , այլ ո՛չ ամենեքեան՝ որ ելեալ էին
17 յԵգիպտոսէ ՚ի ձեռն Մովսեսի ։ Յումէ՞ տաղտկա-
ցաւ զքառասուն ամն . ո՛չ ապաքէն ՚ի յանցուցե-
լոցն . որոց ոսկերքն անկան՝ յանապատի անդ ։
18 Ո՞ւմ երդուաւ չմտանել ՚ի հանգիստ իւր , եթէ
19 ոչ անհաւանիցն ։ Եւ տեսանեմք՝ զի ո՛չ կարացին
մտանել վասն անհաւատութեանն ։

## ԳԼ. Դ

1 Երկիցուք այսուհետև, գուցէ ՚ի թողուլ զաւ-
ետիսն՝ ՚ի մտանելոյ ՚ի հանգիստն նորա՝ գտանիցի
2 ոք ՚ի ձէնջ նուազեալ։ Քանզի եմք աւետարանեալք
որպէս և նոքայն. այլ նոցա ոչինչ օգնեաց լուր
* բանին, չամոքելոցն ՚ի հնազանդութիւն հաւա-
3 տոց։" Այլ մեք մտանեմք ՚ի հանգիստն, որք հա-
ւատացաքս. որպէս և ասացն՝ թէ Որպէս երդուայ ՚ի
բարկութեան իմում, թէ մտցեն ՚ի հանգիստ իմ.
թէպէտ և արդիւնքն ՚ի սկզբանէ աշխարհի լեալ
4 էին։ Քանզի ասէ ուրեք վասն աւուրն եօթնե-
րորդի այսպէս. Եւ հանգեաւ Աստուած յաւուրն
5 եօթներորդի յամենայն գործոց իւրոց։ Եւ աստ
6 դարձեալ ասէ՝ Թէ մտցեն ՚ի հանգիստ իմ։ Եւ
արդ՝† քանզի արգելան ոմանք մտանել" ՚ի նա,
և որք յառաջագոյն աւետարանեալն էին՝ չմտին
7 վասն անհաւատութեանն. Դարձեալ այլ օր սահ-
մանէ՝ զայսօրն ՚ի Դաւթի, և ասէ՝ յետ այնչափ
ժամանակաց, որպէս յառաջագոյնն ասաց, Այսօր
եթէ ձայնի նորա լուիցէք՝ մի՛ խստացուցանէք զսիրտս
8 ձեր։ Զի եթէ զնոսա Յեսու հանգուցեալ
էր, ապա վասն այլոյ աւուր ոչ խօսէր յետ այնո-

---

* Ի Յոյնն, բանին՝ ոչ խառնեալ հաւատովք լսողացն

† Ի Յոյնն, քանզի կայ մնայ ոմանց մտանել

9 ըրել ։ *Արդ ուրեմն նուազեալ է շաբաթումն ժո–
10 ղովրդեանն Աստուծոյ ։" Զի որ եմուտ 'ի հան–
գիստն նորա, և նա հանգեաւ յիւրոց գործոց ան–
տի. որպէս և Աստուած յիւրայոցն ։
11 Փութասցո՛ւք այսուհետև մտանել յայն հանգիստ.
զի մի՛ ոք ըստ նովին օրինակաւ անհաւատութեանն
12 անկանիցի ։ Քանզի կենդանի է բանն Աստուծոյ՝
և ազդօղ՝ և հատու քան զամենայն սուր երկսայրի,
և անցանէ մինչև ցորոշումն շնչոյ և ոգւոյ՝ և յօդից
և ուղղոց. և քննիչ է մտաց՝ և խորհրդոց սրտից.
13 Եւ չի՛ք արարած աներևոյթ յերեսաց նորա. այլ
ամենայն ինչ մերկապարանոց կայ. առաջի աչաց նո–
14 րա՝ զորմէ մեր բանքս են ։ Ունիմք այսուհետև Քա–
հանայապետ մեծ անցեալ ընդ երկինս, զՅիսուս
զՈրդին Աստուծոյ. պինդ կալցուք զխոստովանու–
15 թիւնն ։ Քանզի ո՛չ եթէ ունիմք քահանայապետ՝
որ չիցէ կարող չարչարակից լինել տկարութեան
մերոյ. այլ փորձ է ամենայնիւ ըստ նմանութեան,
առանց մեղաց ։
16 Մատիցո՛ւք այսուհետև համարձակութեամբ ա–
ռաջի աթոռոյ շնորհացն նորա. զի ընկալցուք զո–
ղորմութիւն և գտցուք շնորհս 'ի դէպ ժամանակի
օգնականութեան ։

---

* 'Ի Յոյնն, Ուրեմն կայ մնայ ժողովրդեանն Աս–
տուծոյ շաբաթումն

## ԳԼ. Ե

1 Զի ամենայն քահանայապետ 'ի մարդկանէ առ-
եալ՝ վասն մարդկան կայ յաստուածակոյս կողմն
անդր · զի մատուսցէ պատարագս և զոհս վասն մե-
2 ղաց ։ Չափով չարչարակից կարող է լինել տգի-
տաց և մոլորելոց · քանզի և ինքն իսկ տկարու-
3 թեամբ զգածեալ է ։ Վասն այնորիկ հարկ է՝ որ-
պէս վասն ժողովրդեանն , նոյնպէս և ընդ անձին
4 մատուցանել պատարագս վասն մեղաց ։ Եւ ոչ ե-
թէ անձամբ ոք առնու պատիւ · այլ կոչեցեալն
5 յԱստուծոյ՝ որպէս և Ահարոնն ։ Նոյնպէս և
Քրիստոս ոչ եթէ անձին ինչ շուք եդ լինել քահա-
նայապետ · այլ որ խօսեցաւն առ նա՝ թէ Որդի իմ
6 ես դու՝ ես այսօր ծնայ զքեզ ։ Որպէս և 'ի միւ-
սումն ասէ · Դու ես քահանայ յաւիտեան ըստ
7 կարգին Մելքիսեդեկի ։ Որ յաւուրս մարմնոյ իւրոյ
աղօթս և պաղատանս առ այն , որ կարողն էր ապ-
րեցուցանել զնա 'ի մահուանէ , ուժգին գոչմամբ և
արտասուօք մատուցանէր · և լսելի լինէր առ լա-
8 ւութեանն ։ Թէպէտ և Որդի է՝ ուսաւ 'ի չարչա-
9 րանաց անտի զհնազանդութիւն ։ Եւ իբրև կատա-
րեցաւ՝ եղև ամենայն հնազանդելոց իւրոց պատ-
10 ճառք փրկութեանն յաւիտենից · Եւ անուանեցաւ
յԱստուծոյ քահանայապետ յաւիտենից ըստ կար-
գին Մելքիսեդեկի ։

11 Վասն որոյ բազումք են մեզ բանք , և դժուա-
րապատում 'ի մեկնել · քանզի խօթամիտք եղե-
12 րուք լսելեօք ։ Փոխանակ զի պարտ էր ձեզ լինել

վարդապետս վասն ժամանակին . դարձեալ պիտոյ
է ձեզ ուսանել՝ թէ զի՛նչ են նշանագիրք սկըզ-
բան բանից Աստուծոյ . և եղերուք կարօտք կաթին՝
13 և ոչ հաստատուն կերակրոյ ։ Զի ամենայն որ
կաթնկեր է՝ տգէտ է բանին արդարութեան , քան-
14 զի տղայ է ։ Այլ կատարելոց է հաստատուն կե-
րակուր . որոց վասն 'ի չափն հասանելոյ , ճաշա-
կելիքն կիրթ են ընտրութեան բարւոյ և չարի ։

## ԳԼ. Զ.

1 Վասն որոյ թողեալ զբանն սկզբանն Քրիստո-
սի , 'ի կատարումն եկեսցո՛ւք . մի՛ միւսանգամ ար-
կանել հիմն ապաշխարութեան՝ 'ի մեռելոտի գոր-
2 ծոց անտի , և հաւատոցն որ յԱստուած , Եւ
մկրտութեանցն վարդապետութեան , և ձեռնա-
դրութեան ձեռաց , և յարութեան մեռելոց , և դա-
3 տաստանին յաւիտենից ։ Եւ արդ՝ արասցո՛ւք զայն ,
4 եթէ Աստուած հրամայեսցէ ։ Քանզի անհնար է
միանգամ * մկրտելոցն , որ ճաշակեցին յերկնաւոր
պարգևացն , և հաղորդք եղեն Հոգւոյն Սրբոյ ,
5 Եւ զգեղեցիկ բանին Աստուծոյ ճաշակս ճաշակե-
6 ցին , և զզօրութիւնս հանդերձելոյ աշխարհին , Եւ
կործանեսցին , միւսանգամ նորոգել յապաշխարու-
թիւն . և վերստին † 'ի խաչ հանել անձանց զՈր-
7 դին Աստուծոյ , և դարձեալ խայտառակել ։" Քան-

* 'Ի Յոյնն , լուսաւորելոցն

† 'Ի Յոյնն , 'ի խաչ հանեալ անձանց զՈրդին Աստուծոյ , և դարձեալ խայտառակեալ

Զի երկիր՝ որ ըմպիցէ զանձրեւ բազում անգամ եկ-
եալ ՚ի վերայ նորա , եւ ծնանիցի արդիւնս շահե-
կանս նոցա՝ վասն որոյ գործեսցին , ընդունի զօրհ-
8 նութիւն յԱստուծոյ ։ Իսկ որ բերէ զփուշ եւ զտա-
տասկ , անպիտան է եւ մերձ յանէծս , եւ վախճան
նորա յայրումն ։

9 Բայց հաստատեալ եմ վասն ձեր սիրելիք՝ ՚ի լաւ-
անդր , եւ որ լին է փրկութեամբ · զի թէպէտ եւ
10 այսպէս խօսիմք , Ո՛չ եթէ անիրաւ ինչ է Աստ-
ուած՝ մոռանալ զգործս ձեր եւ զսէրն՝ զոր ցուցէք
յանուն նորա · զի պաշտեցիք զսուրբս՝ եւ պաշ-
11 տէք ։ Եւ մեք ըղձանամք՝ զի իւրաքանչիւրոք ՚ի
ձէնջ զնոյն փոյթ ցուցանիցէ ՚ի հաստատութիւն
12 յուսոյն՝ մինչեւ ցվախճան · Զի մի՛ հեղգամիտք
լինիցիք ։ Նմանօղք եղերուք այնոցիկ որ հաւա-
տովքն եւ երկայնմտութեամբ ժառանգեսցեն զաւե-
13 տիսն ։ Զի Աբրահամու խոստացեալ զաւետիսն
Աստուծոյ , քանզի յայլ ոք ՚ի մեծ ո՛չ գոյր երդ-
14 նուլ՝ Յանձն իւր երդուաւ , եւ ասէ · Այո՛ , օրհ-
նելով օրհնեցից զքեզ , եւ բազմացուցանելով բազ-
15 մացուցից զքեզ ։ Եւ այնպէս երկայնամիտ եղեալ՝
16 եհաս աւետեացն ։ Ապաքէն մարդիկ՝ որ ինչ ՚ի վեր
է քան զինքեանս՝ յայն երդնուն · եւ ամենայն հա-
կառակութեան նոցա վճիռ առ ՚ի հաստատութիւն ,
17 երդումն է ։ Որով առաւել եւս կամեցեալ Աստու-
ծոյ՝ ցուցանել ժառանգաւորաց աւետեացն զհաս-
տատութիւն խորհրդոյն իւրոյ , միջնորդեաց երդ-
18 մամբ ։ Զի երկու անփոփոխելի իրօքն՝ որովք
անհնարին իցէ ստել Աստուծոյ , հաստատուն մխի-

թարութիւն ունիցիմք · որք ապաստան եղեաք
19 բուռն հարկանել զհանդերձեալ յուսոյն · Զոր իբ-
րեւ զխարիսխ հաստատուն եւ անշարժ ունիցիմք ան-
ձանց մերոց , որ եւ մտանիցէ 'ի ներքին կողմն վա-
20 րագուրին ·· Ուր կարապետն մեր Յիսուս եմուտ
վասն մեր , ըստ կարգին Մելքիսեդեկի՝ եղեւ քա-
հանայապետ յաւիտենից ։

## ԳԼ. Է.

1 Քանզի այս Մելքիսեդեկ՝ թագաւոր էր Սաղե-
մայ · քահանայ Աստուծոյ բարձրելոյ · որ ել ընդ-
առաջ Աբրահամու , յորժամ դարձեալ գայր 'ի
2 կոտորածէ թագաւորացն՝ եւ օրհնեաց զնա · Որում
եւ տասանորդս յամենայնէ ետ Աբրահամ · նախ
թարգմանի թագաւոր արդարութեան , ապա թա-
գաւոր Սաղեմայ՝ որ է թագաւոր խաղաղութեան ·
3 Անհայր՝ անմայր՝ չհամարեալ յազգս , որոյ ոչ
սկիզբն աւուրց եւ ոչ կատարած կենաց , նմանեալ
Որդւոյն Աստուծոյ՝ կայ մնայ քահանայ մշտնջենա-
4 ւոր ։ Արդ տեսէք որպիսի ոք էր սա , որում եւ
Աբրահամ տասանորդս ետ յաւարէ անտի՝ նահա-
5 պետն ։ Եւ որք յորդւոցն Ղեւեայ զքահանայու-
թիւնն առնուն , պատուէր ունին տասանորդել
զժողովուրդն ըստ օրինացն · այսինքն է՝ զեղբարս
իւրեանց · թէպէտ եւ ելեալ իցեն յերանացն Աբ-
6 րահամու ։ Իսկ չհամարեալն յազգս 'ի նոցանէ՝
տասանորդեաց զԱբրահամ՝ եւ զնա որոյ զաւետիսն
7 ընկալեալ էր , օրհնեաց ։ Զի առանց ամենայն

հակառակութեան, նուազն ՚ի լաւէ անտի օրհ-
8 նեսցի։ Եւ աստ մարդք մահկանացուք տասանորդս
առնուն. բայց անդ վկայեցաւ՝ թէ կենդանի է. և
9 որպէս բանից կարգ է ասել. Թէ Աբրահամաւ
և Ղևի իսկ՝ որ զտասանորդսն առնոյր, տասանոր-
10 դեցաւ։ Զի դեռ ևս յերանս հօր իւրոյ էր՝ յոր-
ժամ ընդ առաջ եղև նմա Մելքիսեդեկ։
11 Իսկ արդ՝ եթէ կատարումն ՚ի ձեռն Ղևտացւոց
քահանայութեանն էր, քանզի ժողովուրդն յայն
օրէնս դրեցաւ. զի՞նչ պիտոյ է ըստ կարգին Մել-
քիսեդեկի այլում քահանայի յառնել, և ոչ ա-
12 սել՝ թէ ըստ կարգին Ահարոնի։ Այլ ՚ի փո-
փոխել քահանայութեանն, հարկ էր և օրի-
13 նացն փոփոխումն լինել։ Զի զորմէ այսպէսն ա-
սի՝ յայլմէ ազգէ կալաւ հաղորդութիւն, յորմէ ոչ
14 ո՛ք երբէք եղև հաղորդ սեղանոյն։ Արդ՝ յայտ իսկ
է, թէ յազգէ Յուդայ ծագեաց Տէր մեր. յորմէ
ազգէ վասն քահանայից Մովսէս ինչ ո՛չ ճառեաց։
15 Եւ ևս առաւել յայտ է՝ թէ ըստ նմանութեան
16 Մելքիսեդեկի յառնելոց է այլ քահանայ, Որ ո՛չ
ըստ մարմնաւոր պատուիրանին եղև, այլ ըստ զօ-
17 րութեան կենացն անվախճանից։ Քանզի վկայե-
ցաւ, թէ Դու ես քահանայ յաւիտեան ըստ կար-
18 գին Մելքիսեդեկի։ Արհամարհութիւն լինէր առա-
ջին պատուիրանին՝ վասն նորին տկարութեան և ան-
19 շահութեան. Քանզի ոչինչ կատարումն գործեցին
օրէնքն, *և մուտ ազնուական յուսոյն՝ որով մեր-

* Ի Յոյնն, այլ

20 *ձեռնամբ առ Աստուած ։ Եւ այնչափ, զի ոչ առանց*
*երդման ․ զի են ոմանք՝ որ առանց երդման են կաց-*
21 *եալ քահանայք ։ Բայց սա երդմամբ 'ի ձեռն այ-*
*նորիկ՝ որ ասացն 'ի նա ․ Երդուաւ Տէր՝ և ոչ ես*
22 *զղջասցի, դու ես քահանայ յաւիտեան ։ Եւ այն-*
*չափ լաւագոյն ուխտի եղև երաշխաւոր Յիսուս ։*
23 *Եւ բազում են կացեալ քահանայք՝ վասն մահու*
24 *արգել լինելոյ 'ի մշտնջենաւորել ։ Իսկ սա վասն*
*յաւիտեան կալոյ՝ առանց անցանելոյ ունի զքահա-*
25 *նայութիւնն ։ Ուստի և կենդանի առնել համօրէն*
*կարող է զմատուցեալսն նովաւ առ Աստուած ․ քան-*
*զի միշտ կենդանի է՝ լինել բարեխօս վասն նոցա ։*
26 *Զի այսպիսի իսկ և վայել էր մեզ քահանայա-*
*պետ, սուրբ՝ անմեղ՝ անարատ՝ զատեալ 'ի մեղա-*
27 *ւորաց, և բարձրացեալ քան զերկինս ․ Որում ոչ*
*հանապազ հարկ է որպէս այլոց քահանայապետիցն,*
*նախ վասն իւրեանց մեղացն պատարագս մա-*
*տուցանել՝ և ապա վասն ժողովրդեանն ․ իսկ սա*
*զայն միանգամայն կատարեաց, զի զանձն իւր մա-*
28 *տոյց պատարագ ։ Օրէնքն զմարդիկ կացուցանեն*
*քահանայապետս զգամեալս տկարութեամբ ․ իսկ*
*բանն երդման յետ օրինացն՝ զՈրդի, որ յաւիտեան*
*կատարեալ է ։*

## ԳԼ․ Ը

1 *Եւ բանից գլուխ խօսիցս՝ այնպիսի ունիմք քա-*
*հանայապետ, որ նստաւ ընդ աջմէ մեծութեան ա-*
2 *թոռոյն յերկինս, Սրբութեանցն պաշտօնեայ՝ և*

խորանին ճշմարտութեան, զոր Տէրն կանգնեաց՝ և
3 ոչ մարդ։ Զի ամենայն քահանայապետ վասն մա-
տուցանելոյ զզոհս և զպատարագս կայ. ուստի հարկ
4 է և նմա ունել ինչ՝ զոր մատուցանիցէ։ Զի ե-
թէ էր *յերկրէ, թերևս չէր իսկ քահանայ. զի
գոյին՝ որ մատուցանէին ըստ օրինացն պատարագ.
5 Որք առակաւ և օրինակաւ պաշտէին երկնաւորացն.
որպէս և հրամայեցաւ Մովսէսի՝ յորժամ գործե-
լոց էր † զվրան ժամուն՝ " Տեսջիր՝ ասէ, արասցես
զամենայն ըստ օրինակին՝ որ ցուցաւ քեզ ՚ի լերինն։
6 Բայց արդ՝ առաւադոյն ևս պաշտաման եհաս
Յիսուս, որչափ լաւագոյն ևս ուխտի է միջնորդ՝ որ
7 յառաւել աւետիսն օրինադրեցաւ։ Զի եթէ առա-
ջինն անարատ էր, ապա երկրորդին տեղի ոչ խնդ-
8 րէր։ "Նա աւասիկ բամբասէ զնոսա և ասէ. Ահա-
ւասիկ աւուրք եկեսցեն՝ ասէ Տէր, և կատարեցից
՚ի վերայ տանն Իսրայէլի և ՚ի վերայ տանն Յու-
9 դայ՝ ուխտ նոր. Ո՛չ ըստ ուխտին՝ զոր եդի ընդ
հարս նոցա յաւուրն յորում առի ՚ի ձեռն՝ հանել
զնոսա յերկրէն Եգիպտացւոց. և զի նոքա ոչ կա-
ցին յուխտին իմում, և ես անփոյթ արարի զնո-
10 ցանէ, ասէ Տէր ամենակալ։ Այլ այս է ուխտն՝
զոր եդից տանն Իսրայէլի յետ աւուրցն այնոցիկ՝
ասէ Տէր. տաց զօրէնս իմ ՚ի միտս նոցա՝ և ՚ի
սիրտս նոցա գրեցից զնոսա. և եղէց նոցա Աստ-
11 ուած, և նոքա եղիցին ինձ ՚ի ժողովուրդ։ Եւ ոչ

---

* ՚Ի Յոյնն, յերկրի

† ՚Ի Յոյնն, զվրանն

Եւ ուսուցանիցեն իւրաքանչիւր զքաղաքակից իւր ,
և իւրաքանչիւր զեղբայր իւր , և ասիցեն թէ Ծանիր
զՏէր · զի ամենեքին ծանիցեն զիս 'ի փոքրկանց
12 մինչև 'ի մեծամեծս նոցա ։ Զի քաւիչ եղէց անի-
րաւութեանց նոցա՝ և զմեղս նոցա և զանօրէնու-
13 թիւնս այլ ոչ ևս յիշեցից ։ Արդ՝ ասելովն նոր ,
հնացոյց զառաջինն · և որ հնանայն և ծերանայ՝
մերձ է յապականութիւն ։

## ԳԼ. Թ.

1 Ունէր ուրեմն և առաջինն իրաւունս պաշտաման
2 յանժամ զաշխարհական սրբութիւնն ։ Զի խո-
րանն առաջին հանդերձեցաւ այսպէս · յորում աշ-
տանակն և սեղանն և հացն նուիրաց՝ որ Սրբու-
3 թիւնն կոչէր ։ Եւ յետ երկրորդ վարագուրին խո-
4 րանն՝ որ կոչէր Սրբութիւն սրբութեանց · Յորում
կայր բուրվառն ոսկի , և արկղն կտակարանաց
պատեալ ներքոյ և արտաքոյ ոսկւով · յորում սա-
փորն ոսկի լի մանանայիւ , և գաւազանն Ահարով-
նի՝ որ ծաղկեցաւ · և տախտակք կտակարանացն ·
5 Եւ 'ի վերայ նորա քերովբէքն փառաց՝ որ հովանի
ունէին 'ի վերայ քաւութեանն · վասն որոյ ոչ է
6 այժմ ասել մի ըստ միոջէ ։ Եւ այն ամենայն իբրև
այնպէս հանդերձեալ կայր , յառաջին խորանն յա-
մենայն ժամ մտանէին քահանայք զպաշտամունսն
7 կատարել · Բայց յերկրորդն միանգամ 'ի տարւոջն
քահանայապետն · և զայն ոչ առանց արեան ,
զոր մատուցանէր վասն իւր՝ և վասն ժողովրդեանն

8 անգիտութեան: Զայս ցուցեալ Հոգւոյն Սրբոյ՝
մինչև յայտնեալ էր ճանապարհի սրբութեանցն.
քանզի դեռ առաջին խորանն ունէր զհաստատու-
9 թիւն. Որ է առակ ժամանակին, որ առաջի կայր.
յորում պատարագքն և զոհքն մատչէին, որք ոչ
կարէին ըստ միտս կատարել զպաշտամունսն. բայց
10 միայն կերակրովք և ըմպելեօք, Եւ պէսպէս մկրտու-
թեամբք՝ մարմնոյ արդարութիւնքն. որ մինչև
11 'ի ժամանակս ուղղութեանն 'ի վերայ կային: Այլ
Քրիստոս եկեալ Քահանայապետ հանդերձելոցն
բարեաց՝ մեծաւն և կատարելովն՝ և անձեռագործ
խորանաւ, այսինքն է՝ որ ոչ յայսց արարածոց,
12 Եւ ոչ արեամբ նոխազաց և զուարակաց. այլ իւ-
րով արեամբն եմուտ միանգամ 'ի սրբութիւնսն՝
13 յաւիտենական գտեալ զփրկութիւն: Զի եթէ
արիւն ցլուց և նոխազաց՝ և մոխիր երնջոցն ցան-
եալ՝ զպղծեալսն սրբէր առ 'ի մարմնոյ սրբութենէ,
14 Որչափ ևս առաւել արիւնն Քրիստոսի, որ 'ի ձեռն
Հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անա-
րատ պատարագ Աստուծոյ, սրբեսցէ զխիղճ մտաց
ձերոց 'ի մեռելոտի գործոց անտի՝ պաշտել զԱստ-
15 ուած կենդանի: Եւ վասն այնորիկ նորոյ ուխտի
է միջնորդ. զի յորժամ մահ լինիցի՝ 'ի փրկու-
թիւն վասն առաջին ուխտին յանցանաց, զաւետիս
առցեն հրաւիրեալքն 'ի ժառանգութիւն յաւիտե-
16 նից: Քանզի ուր կտակ է, հարկ է զմահ 'ի մէջ
17 բերել զկտակագրին: Զի կտակ յետ մահու
հաստատուն է. ապա թէ ոչ՝ զիա՞րդ իցէ հաստա-
18 տուն, մինչ կտակագիրն կենդանի է: Ուստի և

19 ոչ առաջինն առանց արեան նորոգէր ։ Քանզի
իբրեւ պատմեցաւ ամենայն պատուիրանք օրինացն
'ի Մովսիսէ ժողովրդեանն, առեալ զարիւն ցլուցն
եւ նոխազացն, ջրով եւ բրդով՝ կարմրով եւ զոպա-
յիւ, զկտակարանօքն իսկ եւ զամենայն ժողովրդ-
20 եամբն սրսկեաց, Եւ ասէ. Այս է արիւն կտակին՝
21 զոր պատուիրեաց ձեզ Աստուած ։ Եւ զխորանն
եւ զամենայն կահիւ սպասուն նոյնպէս սրսկեաց
22 զարիւնն ։ Եւ գրեթէ ամենայն ինչ արեամբն սըր-
բէր ըստ օրինացն. եւ առանց հեղման արեան չլի-
23 նէր թողութիւն ։ Արդ հարկ էր *օրինաւորացն
այնպիսեօքն սրբել. եւ բուն իսկ երկնաւորացն՝ ա-
24 ռաւել եւս պատարագօք քան զնոյնս ։ Զի ոչ ե-
թէ 'ի ձեռագործ սրբութիւնն եմուտ Քրիստոս
յօրինակս ճշմարտութեանն. այլ 'ի բուն իսկ յեր-
կինս, †յանդիման լինել երեսացն Աստուծոյ վասն
25 մեր ։ Ոչ զի բազում անգամ մատուցանիցէ զանձն
պատարագ՝ որպէս քահանայապետն որ մտանէր 'ի
սրբութիւն սրբութեանցն ամի ամի արեամբն օտա-
26 րաւ. Ապա թէ ոչ՝ պարտ էր նմա բազում ան-
գամ չարչարել իսկզբանէ աշխարհի. բայց արդ՝
աւասիկ միանգամ 'ի կատարած յաւիտեանց՝ յա-
նարգութիւն մեղաց իւրով պատարագաւն յայտ-
27 նեալ է ։ Եւ զոր օրինակ կայ մնայ մարդկան մի-
անգամ մեռանել՝ եւ յետ այնորիկ դատաստան.
28 Նոյնպէս եւ Քրիստոս միանգամ մատուցեալ պա-

---

* 'Ի Յոյնն, օրինակաց երկնաւորացն

† 'Ի Յոյնն, այժմ

տարագ ա ՚ի բառնալոյ զմեղս բազմաց . իսկ յերկ-
րորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ , որ
ակն ունիցին նմա հաւատովք ՚ի փրկութիւն :

## ԳԼ. Ժ

1 Քանզի զստուեր հանդերձելոց բարեացն ունէին
օրէնքն , և ոչ զնոյն կերպարանս իրացն . ամի ամի
զնոյն պատարագս մատուցանեն ցանգ , որք ոչ են
2 կարող զմատուցեալսն կատարել . Ապա թէ ոչ՞ դա-
դարէին ՚ի մատուցանելոյ , վասն և ոչ մի ինչ այ-
նուհետև խիղճ մնաց ունելոյ պաշտօնէիցն միան-
3 գամ սրբեցելոցն . Այլ անդէն ՚ի նմին ՚ի յիշա-
4 տակս մեղացն կային ամի ամի : Քանզի ոչ կարէր
5 արիւն նոխազացն և ցլուց բառնալ զմեղս : Վասն
որոյ ՚ի մտանել իւրում յաշխարհ՝ ասէ . Զոհս և
զպատարագս ոչ կամեցար , բայց մարմին հաստա-
6 տեցեր ինձ . Ընդ ողջակէզս և ընդ վասն մեղացն
7 ոչ հաճեցար : Յայնժամ ասացի թէ Ահաւասիկ
եկի . ՚ի ճառս գրոց գրեալ է վասն իմ , առնել
8 զկամս քո Աստուած : Վերագոյնն ասէ , թէ Ընդ
զոհս և ընդ պատարագս և ընդ ողջակէզս՝ և ընդ
վասն մեղացն ոչ հաճեցար , և ոչ կամեցար՝ որք
9 ըստ օրինացն մատչէին : Ապա ասէ՝ Ահաւասիկ
գամ առնել զկամս քո Աստուած . մերժէ զառա-
10 ջինն՝ զի զերկրորդն հաստատեսցէ : Որով կամօք
և մեք սրբեցաք՝ ՚ի ձեռն պատարագի մարմնոյն Յի-
11 սուսի Քրիստոսի միանգամ : Եւ ամենայն քահա-
նայապետ կայ հանապազորդ ՚ի պաշտաման . և

զնոյն պատարագս մատուցանէ բազում անգամ ,
12 որք ո՛չ երբէք կարօղ են բառնալ զմեղս ։ Իսկ սա
զմի՛ն վասն մեղաց մատոյց պատարագ . և մշտնջենա-
13 ւոր նստաւ ընդ աջմէ Աստուծոյ ։ Եւ այսուհետև
ակն ունի՝ մինչև դիցին թշնամիք իւր 'ի ներքոյ ո-
14 տից իւրոց ։ Զի միով պատարագաւ կատարեաց
15 զսրբեալսն 'ի մշտնջենաւորս ։ Վկայէ մեզ և
16 Հոգին Սուրբ յետ ասելոյն յառաջագոյն . Եթէ
Այս է ուխտն՝ զոր եդից *ընդ հարս նոցա" յետ
աւուրցն այնոցիկ , ասէ Տէր . տաց զօրէնս իմ 'ի
սիրտս նոցա , և 'ի խորհուրդս նոցա գրեցից զնոսա ։
17 Ապա ասէ՝ թէ Զմեղս նոցա և զանօրէնութիւնս
18 նոցա այլ ո՛չ ևս յիշեցից ։ Իսկ ուր թողութիւն
է , ո՛չ ևս պիտոյ է վասն մեղաց պատարագ ։
19 Ունիմք այսուհետև եղբարք՝ համարձակութիւն
20 'ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի . Զոր
նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի 'ի
21 ձեռն վարագուրին , այսինքն է՝ մարմնոյ իւրոյ . Եւ
22 քահանայ մեծ 'ի վերայ տանն Աստուծոյ . Մատի-
ցո՛ւք ճշմարիտ սրտիւք՝ լրութեամբ հաւատոց , լու-
ացեալ զսիրտս 'ի խղճէ չարեաց՝ և մկրտեալ զմար-
23 մին 'ի ջուրն սրբութեան ։ Պինդ կալցուք զխոստո-
վանութիւն անշարժ յուսոյն , զի հաւատարիմ է որ
24 խոստացաւն ։ Եւ զգուշասցո՛ւք միմեանց յորդոր-
25 մամբք սիրոյ և գործոց բարեաց . Եւ մի՛ թողցուք
զժողովս միմեանց , որպէս և սովոր են ոմանք . այլ
մխիթարեսցուք , և այնչափ ևս առաւել՝ որչափ

* Ի Յոյնն չէ ։

26 տեսանիցէք զօրն մերձեալ։ Զի կամակար մտօք
եթէ յանցանիցեմք յետ ընդունելութեան գիտու-
թեան ճշմարտութեանն՝ այնուհետեւ ոչ եւս պիտոյ
27 է վասն մեղաց պատարագ. Այլ ահեղ ակնկալու-
թիւն դատաստանին, եւ նախանձ հրոյն՝ որ ուտիցէ
28 զհակառակորդսն։ Արհամարհեալ ուրուք զօրէնսն
Մովսիսի, առանց ողորմութեանց՝ առ երկուք կամ
29 երիւք վկայիւք մեռանէր։ Իսկ ո՞րչափ սաստիկ
պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին
Աստուծոյ առ ոտն եհար. եւ զարիւն Նորոյ ուխտին
խառնակ համարեցաւ որով եւ սրբեցաւն. եւ զշնո-
30 գին շնորհաց թշնամանեաց։ Այլ գիտեմք զայն՝ որ
ասացն. Իմ են վրէժխնդրութիւնք, եւ ես հատու-
ցից՝ ասէ Տէր. եւ դարձեալ՝ թէ Դատի Տէր զժո-
31 ղովուրդ իւր։ Ահ մեծ է անկանել ՚ի ձեռս Աստու-
ծոյ կենդանւոյ։
32 Արդ՝ յիշեցէ՛ք զաւուրսն զառաջինս. յորս լու-
սաւորեալք բազում ճգանց եւ չարչարանաց համբե-
33 րէք. Մերթ՝ ՚ի նախատինս եւ ՚ի նեղութիւնս խայ-
տառակեալք, մերթ կցորդք այնպիսեաց վաստա-
34 կաւորացն լինել։ Քանզի եւ ընդ կապեալս չարչա-
րեցարուք, եւ զյափշտակութիւն ընչից ձերոց խըն-
դութեամբ ընկալարուք. քանզի գիտէիք թէ լա-
ւագոյն եւս ստացուածս ունիք անձանց յերկինս՝ ուր
35 կան եւ մնան։ Արդ մի՛ մերժէք ՚ի ձէնջ զհամար-
ձակութիւնն ձեր, յորում կայ մեծաց վարձուց հա-
36 տուցումն։ Պիտոյ է ձեզ համբերութիւն. զի զկամս
37 Աստուծոյ արարեալ՝ հասջիք աւետեացն։ Զի
փոքր մի եւս քան որչափ՝ որ գալոցն իցէ՝ եկեսցէ,

38 Եւ ոչ յամեսցէ ։ Զի արդարն *իմ 'ի հաւատոց
կեցցէ · եւ եթէ յերկմիտս ոք իցէ , ոչ հաճեսցի
39 ընդ նա անձն իմ ։ Բայց մեք ոչ եթէ երկմտու-
թեամբ եմք 'ի կորուստ , այլ հաւատովք 'ի փրկու-
թիւն հոգւոց ։

## ԳԼ. ԺԱ.

1 Զի՞նչ են հաւատք , եթէ ոչ՝ յուսացելոց ի-
րաց հաստատութիւն , եւ յանդիմանութիւն՝ որոց
2 ոչն երեւին ։ Զի նովաւ վկայեցան առաջինքն ։
3 Հաւատովք իմանամք հաստատեալ զյաւիտեանսն
բանիւ Աստուծոյ , յաներեւութից զերեւելիսս եղ-
4 եալ ։ Հաւատովք լաւ պատարագս Աբէլ քան
զԿայէն մատուցանէր Աստուծոյ , որով վկայեցաւ
իսկ արդար լինել · զի 'ի վերայ պատարագացն ե-
ղեւ նմա վկայութիւն յԱստուծոյ · զի թէպէտ եւ
5 մեռաւ 'ի նմին , սակայն տակաւին խօսի ։ Հաւա-
տովք Ենովք փոխեցաւ՝ զի մի՛ զմահ ճաշակեսցէ ·
եւ ոչ ուրեք գտանէր , քանզի փոխեաց զնա Աստ-
ուած · եւ յառաջ քան զփոխելն նորա՝ վկայեցաւ
6 հաճոյ լինել Աստուծոյ ։ Բայց առանց հաւատոց
անհնար է հաճոյ լինել · այլ հաւատալ արժան է
այնմ որ մերձենայ առ Աստուած՝ թէ է Աստուած ·
7 եւ որ խնդրեն զնա՝ լինի պարգեւատու ։ Հաւատովք
առեալ հրաման Նոյի՝ վասն չեւ եւս երեւելեացն
զահի հարեալ կազմէր զտապանն 'ի փրկութիւն

---

* Ի Յոյնն չէ ։

տան իւրոյ, որով դատեցաւ զաշխարհ. և հաւա-
8 տոցն արդարութեան եղև ժառանգաւոր։ Հաւա-
տովք՝ որ Աբրահամն կոչեցաւ՝ ունկնդիր եղև ելա-
նել ՚ի տեղին, զոր առնլոց էր ՚ի ժառանգութիւն.
9 ել գնաց՝ և ոչ գիտէր յով երթիցէ։ Հաւատովք
պանդխտեցաւ յերկրին աւետեաց իբրև յօտարու-
թեան. խորանօք բնակեաց Սահակաւ և Յակովբաւ
10 հանդերձ՝ ժառանգակցօք նոցին աւետեաց։ Քան-
զի ակն ունէր հիմամբք հաստատելոյ քաղաքին, ո-
11 րոյ ճարտարապետ և արարիչ Աստուած է։ Հա-
ւատովք և ինքն Սառա՝ որ ամուլն էր, զօրութիւն
առնլոյ զսերմն որդեծնութեան՝ ընդունէր, և ՚ի
տարաժամ հասակի ծնանէր. քանզի հաւատարիմ
12 համարեցաւ զայն՝ որ խոստացաւն։ Վասն որոյ և
՚ի միոջէ ծնանէին, և այն՝ ՚ի յանցեալ ժամանա-
կի, իբրև զաստեղս երկնից բազմութեամբ, և իբ-
13 րև զաւազ առ ափն ծովու անանց թուոյ։ Ըստ
հաւատոց մեռան ամենեքին սոքա, և չև և՛ս ընկալ-
եալ զաւետիսն. այլ ՚ի հեռուստ տեսին զնոսա՝ և
ցնծացան, և խոստովան եղեն՝ եթէ օտարք և
14 պանդուխտք են յերկրի։ Զի որք զայնպիսիսն խօ-
15 սին, յայտ առնեն՝ եթէ զաւառ իմն խնդրեն։ Զի
եթէ զայն յիշէին ուստի ելինն, գոյր ժամանակ
16 դառնալոյ անդրէն։ Բայց աւանիկ ազնուականի իմն
ցանկացեալ են, այսինքն է՝ երկնաւորին. վասն
որոյ ոչ ամօթ համարի Աստուած՝ կոչել նոցա
Աստուած. քանզի պատրաստեաց նոցա քաղաք։
17 Հաւատովք մատոյց Աբրահամ ՚ի փորձութեան
իւրում զԻսահակ պատարագ. և զմիամօրին մա-

18 տուցանէր, որոյ զաւետիսն ընկալեալ էր: Որում
ասացաւն, թէ Սահակաւ կոչեսցի քեզ զաւակ.
19 Եդ ՚ի մտի իւրում, թէ և ՚ի մեռելոց կարող է
յարուցանել Աստուած. ուստի և յառակս ընկա-
20 լաւ զնա: Հաւատովք՝ վասն հանդերձելոց իրաց
21 օրհնեաց Իսահակ զՅակովբ և զԵսաւ: Հաւատովք
Յակովբ ՚ի մեռանել իւրում՝ զիւրաքանչիւրոք յորդ-
ւոցն Յովսեփու օրհնեաց, և երկիր եպագ ՚ի ծագ
22 գաւազանի իւրոյ: Հաւատովք Յովսէփ ՚ի վախ-
ճանել իւրում յիշեաց զելս որդւոցն Իսրայէլի, և
23 վասն ոսկերաց իւրոց պատուիրեաց: Հաւատովք՝
Մովսէս իբրև ծնաւ, թաքուցաւ ամիսս երիս ՚ի
հարց իւրոց, քանզի տեսին կայտառ զմանուկն, և
24 ոչ զանգիտեցին ՚ի հրամանէ թագաւորին: Հա-
ւատովք Մովսէս իբրև աճեաց՝ ուրացաւ կոչել որ-
25 դի դստերն փարաւոնի. Լաւ համարեցաւ չարչա-
րել ընդ ժողովրդեանն Աստուծոյ, քան առ ժա-
26 մանակ մի վայելել ՚ի մեղս: Կարևոր համարեցաւ
զնախատինսն Քրիստոսի, քան զմեծութիւն գան-
ձուցն Եգիպտացւոց. զի հայեցեալ ակն ունէր
27 վարձուցն հատուցման: Հաւատովք թողոյր զեր-
կիրն Եգիպտացւոց, և ոչ երկնչէր ՚ի ցասմանէ
թագաւորին. զի զաներևոյթն իբրև զտեսեալ
28 համբերութեամբ համարեցաւ: Հաւատովք արար
զզատիկն և զհեղումն արեանն. զի մի սատակիչ
29 անդրանկացն մերձեսցի ՚ի նոսա: Հաւատովք
անցին ընդ ծովն Կարմիր՝ իբրև ընդ ցամաք երկիր.
զորոյ զփորձ առեալ Եգիպտացւոցն՝ ընկղմեցան:
30 Հաւատովք պարիսպքն Երիքովի անկան, շուրջ

31 եկեալ զնոքօք զեօթն օր ։ Հաւատովք Ռախաբ
պոռնիկ ոչ կորեաւ ընդ անհաւատսն , որոյ ընկալ-
32 եալ էր զլրտեսսն խաղաղութեամբ ։ Եւ արդ՝ զի՞նչ
ևս ասացից ․ զի չէ՛ բաւական ժամանակս պատմելոյ ,
վասն Գեդեոնի , Բարակայ , Սամփսոնի , Յեփ-
թայեայ՝ Դաւթի և Սամուէլի և այլոց մարգարէիցն ․
33 Որք հաւատովք պարտեցին զթագաւորութիւնս ․
գործեցին զարդարութիւն ․ հասին աւետեաց ․ խցին
34 զբերանս առիւծուց ․ Շիջուցին զզօրութիւն հրոյ ․
ապրեցան 'ի բերանոյ սրոյ ․ զօրացան 'ի տկարու-
թենէ ․ եղեն զօրաւորք 'ի պատերազմի ․ առին
35 զբանակս օտարաց ։ Ընկալան կանայք 'ի յարու-
թենէ զմեռեալս իւրեանց ․ կէսք կոշկոճեցան՝ և
չև ևս ընկալեալ զփրկութիւն , զի լաւագոյն՝ յարու-
36 թեանն հասանիցեն ։ Եւ կէսք զտանջանաց և զծա-
37 նից զփորձ առին , զկապանաց և զբանտից ։ Քար-
կոծեցան , սղոցեցան , փորձեցան ․ սպանմամբ սրոյ
մեռան ․ շրջեցան ( լեաշկամաշկօք ) և մորթովք
այծեննօք ․ կարօտեալք , նեղեալք , չարչարեալք ․
38 Զորս ոչ արժէ աշխարհս ․ յանապատի մոլորեալք՝
39 և 'ի լերինս՝ և յայրս՝ և 'ի փապարս երկրի ։ Եւ
սոքա ամենեքին վկայեալք 'ի հաւատոցն , չև ևս
40 ընկալան զաւետիսն ։ Աստուծոյ վասն մեր լաւագոյն
համարեալ ․ զի մի՛ առանց մեր կատարեսցին ։

## ԳԼ․ ԺԲ

1 Այսուհետեւ եւ մեք՝ որ այսչափ շուրջ զմեօք մած֊
եալ ունիմք զբազմութիւն վկայից, * զհպարտու֊
թիւն զամենայն 'ի բաց ընկեսցուք՝ եւ զմեղս կա֊
րեորս․ համբերութեամբ ընթասցուք 'ի պատերազմ՝
2 որ առաջի կայ մեզ․ Հայեսցուք 'ի զօրագլուխն
հաւատոց՝ եւ 'ի կատարիչն Յիսուս․ որ փոխանակ
ուրախութեանն՝ որ նմա առաջի կայր, յանձն առ
զխաչն, արհամարհեաց զամօթ, նստաւ ընդ աջմէ
3 աթոռոյն Աստուծոյ։ Ադէ՝ ածէք զմտաւ, որ զայս֊
պիսի համբերութիւն 'ի մեղաւորաց հակառակու֊
թենէ անտի կրեաց․ զի մի՛ աշխատ լինիցիք ան֊
4 ձամբք ձերովք՝ եւ լքանիցիք։ Զի չեւ եւս արեամբ
չափ պատերազմեալք՝ հակառակ կացէք մեղացն․
5 Եւ մոռացարուք զմխիթարութիւնն, որ ընդ ձեզ
իբրեւ ընդ որդեակս խօսի։
Որդեա՛կ իմ՝ մի՛ լքանիր 'ի խրատու Տեառն, եւ
6 մի՛ վհատիցիս՝ յանդիմանեալ 'ի նմանէ։ Զի զոր
սիրէ Տէր՝ խրատէ, տանջէ զամենայն որդի՝ զոր
7 ընդունի։ 'Ի խրատու համբերութեան կայք, իբ֊
րեւ յորդիս մատուցեալ է 'ի ձեզ Աստուած․ ո՞ր
8 որդի է՝ զոր ո՛չ խրատիցէ հայր։ Զի եթէ առանց
խրատու լինիցիք, որով ամենեքին բաժանորդք ե֊
9 ղեն, ապա խորթք իցէք եւ ո՛չ որդիք։ Զի եթէ
'ի մարմնաւոր հարցն մերոց՝ զոր ունիմք խրատիչս՝
պատկառեմք, ո՞րչափ եւս առաւել հնազանդեսցուք

---

* 'Ի Յոյն․, զծանրութիւն

10 Հօրն հոգւոց՝ և կեցցուք։ Զի սոքա առ սակաւ
ժամանակս ըստ կամաց իւրեանց խրատեն. իսկ նա
վասն օգտի, առ ՚ի ընդունելոյ զսրբութիւն նորա։
11 Ամենայն խրատ առ ժամանակին ոչ ուրախութեան
թուի՝ այլ տրտմութեան. բայց յետոյ պտուղ խա-
ղաղութեան՝ նովաւ կրթելոցն հատուցանէ արդա-
12 րութիւն։ Վասն որոյ զձեռս լքեալս՝ և զծունկս
13 կթոտս հաստատեցէք. Եւ զշաւիղս ուղիղս արա-
րէք ոտից ձերոց, զի մի՛ որ կաղն իցէ՝ գլորիցի, այլ
14 մանաւանդ բժշկեսցի։ Զխաղաղութեան զհետ եր-
թայք ընդ ամենեսին՝ և զսրբութեան. առանց ո-
15 րոյ ոչ ոք տեսանիցէ զՏէր։ Զգոյշ լերուք՝ գուցէ
ոք յետնեալ գտանիցի ՚ի շնորհացն Աստուծոյ։
Մի՛ ոք արմատ դառնութեան ՚ի վեր երևեալ
16 նեղիցէ, և նովաւ բազումք պղծիցին։ Մի՛ ոք
պոռնիկ և պիղծ իբրև զԵսաւ. որ ընդ միոյ կե-
17 րակրոյ զանդրանկութիւնն վաճառեաց։ Գիտէք՝
զի թէպէտ և յետոյ կամեցաւ ժառանգել զօրհնու-
թիւնն, խոտան գտաւ. զի ապաշխարութեան տեղի
ոչ եգիտ, թէպէտ և արտասուօք խնդրեաց զնա։
18 Զի ոչ էք մատուցեալ առ լեառն շօշափելի՝ որ
հրովն վառեալ էր՝ և միգով և մառախղով և խա-
19 ւարաւ և մրրկաւ. Ուր փողն հնչէր և բարբառ պատ-
գամացն. ուստի որք լուանն՝ հրաժարեցին, զի
20 մի՛ կրկնեսցի առ նոսա բանն։ Քանզի ոչ հանդար-
տէին հրամանին. թէպէտ և գազան մերձենայր ՚ի
21 լեառն՝ քարկոծ լինէր։ Եւ այնպէս ահագին էր
տեսիլն, զի և Մովսէս ասէր, եթէ Զահի հար-
22 եալ եմ և դողամ։ Այլ մատուցեալ էք ՚ի Սիովն

լերան՝ և 'ի քաղաք Աստուծոյ կենդանւոյ՝ յԵրու-
սաղէմ յերկինս, և 'ի բիւրաւոր բանակս հրեշտա-
23 կաց, Եւ յեկեղեցիս անդրանկաց գրելոց յերկինս,
և առ դատաւորն ամենեցուն Աստուած, և յոգիս
24 արդարոց կատարելոց. Եւ 'ի Նորոց կտակարանաց
միջնորդն Յիսուս, և 'ի հեղումն արեան Նորա՝ որ
առաւել խօսի քան զԱբելին ։
25 Զգոյշ լերուք՝ գուցէ հրաժարիցէք յայնմանէ՝
որ խօսեցաւն. զի եթէ նոքա ո՛չ կարացին զերծա-
նել, հրաժարեալք յայնմանէ՝ որ յերկրին հրաման
տայր, ո՞րչափ ևս առաւել մեք, եթէ յերկնաւորէն
26 թիկունս դարձուցանիցեմք ։ Որոյ ձայնն զերկիր
շարժեաց յայնժամ, և այժմ խոստացեալ է՝ և
ասէ. Մ՝իւսանգամ շարժեցից ո՛չ միայն զերկիր՝
27 այլ և զերկինս ։ Այլ միւսանգամն յայտ առնէ
զշարժելոցն՝ իբրև զեղելոց փոփոխումն, զի հաստա-
28 տուն կացցեն անշարժքն ։ Վասն որոյ թագաւորու-
թիւն անշարժ ընկալեալ, պինդ կալցուք զշնորհսն,
որով պաշտեմք զԱստուած հաճութեամբ՝ ահիւ և
29 դողութեամբ. Քանզի Աստուած մեր հուր ծախիչ է ։

## ԳԼ. ԺԳ

1 Եղբայրսիրութիւն հաստատեսցի առ ձեզ ։
2 Զօտարսիրութիւն մի՛ մոռանայք. զի այնու ոմանք
3 յանգէտս ընկալան զհրեշտակս ։ Յո՛ւշ լիցին ձեզ
կապեալքն՝ որպէս թէ դուք ընդ նոսա կապեալ ի-
ցէք. և չարչարեալքն, որպէս և դուք իսկ մարմ-
4 նաւոր էք ։ Պատուական է ամուսնութիւն ամենևին՝

և սուրբ անկողինք . բայց զշունս և զպոռնիկս դա-
5 տի Աստուած ։ Բարք անարծաթասէրք լինիցին ,
բաւական համարել որչափ ինչ ՚ի ձեռս իցէ . քան-
զի ինքն իսկ ասաց . Ո՛չ թողից զքեզ՝ և ո՛չ ընդ
6 վայր հարից . Որպէս համարձակ լիցուք ասել .
Տէր է իմ օգնական , և ես ո՛չ երկեայց , զի՞ արաս-
7 ցէ ինձ մարդ ։ Յիշեցէ՛ք զառաջնորդս ձեր որ խօ-
սեցան ձեզ զբանն Աստուծոյ . հայեցեալք յելս
8 գնացից նոցա՝ նմանօղք եղերուք հաւատոցն ։ Յի-
սուս Քրիստոս երէկ և այսօր , նոյն և յաւիտեանս ։
9 Յուսմունս պէսպէսս և յօտարաձայնս մի՛ դանդա-
չէք . զի լաւ է շնորհօք հաստատել զսիրտս՝ և ո՛չ
կերակրովք . որովք ոչինչ օգտեցան՝ որ այնպէսն
գնացին ։
10 Ունիմք մեք սեղան , ուստի ո՛չ ունին իշխանու-
թիւն ճաշակել որք պաշտեն զպաշտօն խորանին ։
11 Զի որոց անասնոց մատչէր արիւնն ՚ի սրբութիւնս
վասն մեղաց ՚ի ձեռն քահանայապետին , նոցուն
12 մարմինքն այրէին արտաքոյ բանակին ։ Վասն որոյ
և Յիսուս՝ զի սրբեսցէ իւրով արեամբն զժողո-
13 վուրդն , արտաքոյ դրանն չարչարեցաւ ։ Արդ՝ ե-
կա՛յք ելցուք առ նա արտաքոյ բանակին , առեալ
14 յանձն զնախատինս նորա ։ Քանզի ո՛չ եթէ ու-
նիմք քաղաք՝ որ աստէն մնալոց իցէ , այլ զհան-
15 դերձեալն խնդրեմք ։ Արդ՝ ՚ի ձեռն նորա մատուս-
ցո՛ւք պատարագ օրհնութեան յամենայն ժամ Աս-
տուծոյ . այսինքն է՝ զպտուղ շրթանց խոստովանելոց
16 յանուն նորա ։ Զբարերարութիւն և զհաղորդու-
թիւն մի՛ մոռանայք , զի ընդ այնպիսի պատարագս

17 Հաճի Աստուած ։ Ունկնդիր լերուք առաջնորդաց
ձերոց, և հպատակ կացէք նոցա. զի նոքա տքնին
վասն ոգւոց ձերոց՝ որպէս թէ համարս տալոց իցեն
ընդ ձեր. զի խնդութեամբ արասցեն զայն՝ և մի
յոգւոց հանելով. զի այն ոչ յօգուտ ձեր է ։
18 Աղօթս արարէք վասն մեր. զի հաստատեալ գի-
տեմք եթէ բարւոք միտս ունիմք. յամենայնի կա-
19 միմք բարւոք գնացս ցուցանել ։ Եւ առաւել աղա-
չեմ՝ զի զայն առնիցէք, զի վաղագոյն պատսպա-
20 րեցայց ձեզ ։ Եւ Աստուած խաղաղութեան՝ որ ե-
հան ՚ի մեռելոց զհովիւն հօտից զմեծն արեամբ յա-
21 ւիտենական ուխտին զՏէր մեր Յիսուս, հաստա-
տեսցէ զձեզ ՚ի գործս բարութեան՝ առնել զկամս
նորա. և արասցէ * ՚ի մեզ զհաճոյսն առաջի իւր՝
՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի. որում փառք յա-
22 ւիտեանս. ամէն ։ Աղաչեմ զձեզ եղբարք՝ անսալ
բանիս մխիթարութեան. քանզի սակաւուք գրեցի
23 ձեզ ։ Եւ ճանաչէք † զեղբայրն մեր զՏիմոթէոս
զարձակեալն առ ձեզ". ընդ որում, եթէ վաղա-
24 գոյն գայցէ՝ տեսից զձեզ ։ Ողջոյն տաջիք ամենայն
առաջնորդաց ձերոց, և ամենայն սրբոց ։ Ողջոյն
25 տան ձեզ՝ որ ՚ի կողմանս Իտալիացւոց են ։ Շնորհք
ընդ ամենեսին ձեզ. ամէն ։

Առ Եբրայեցիս՝ գրեցաւ յԻտալիոյ ՚ի ձեռն Տիմոթէոսի ։

---

* ՚Ի Յոյնն, ՚ի ձեզ

† ՚Ի Յոյնն, զեղբայրն Տիմոթէոս՝ զարձակեալն

# ԹՈՒՂԹ

# ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅ

## ՅԱԿՈՎԲԱՅ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԳԼ. Ա.

1 ՅԱԿՈՎԲՈՍ Աստուծոյ եւ Տեառն Յիսուսի Քրիս-
տոսի ծառայ. երկոտասան ազգացդ որ ՚ի
2 սփիւռս էք՝ ողջոյն։ Ամենայն ուրախութեան ար-
ժանի համարիջիք եղբարք, յորժամ ՚ի պէսպէս
3 փորձութեանց ՚ի մէջ անկանիջիք։ Գիտասջի՛ք զի
հանդէս ձերոց հաւատոցն յօրինեալ գործէ զհամ-
4 բերութիւն։ Իսկ համբերութիւնն գործ կատարեալ
ունիցի, զի իցէք ողջանդամք եւ կատարեալք, եւ
5 ոչ իւիք նուազեալք։ Ապա թէ ոք ՚ի ձէնջ իցէ
նուազեալ յիմաստութենէ, խնդրեսցէ յԱստուծոյ,
որ տայն ամենայնի առատապէս՝ եւ ոչ նախատէ. եւ
6 տացի նմա։ Բայց խնդրեսցէ հաւատովք՝ եւ մի երկ-
մտեսցէ. զի որ երկմիտն է՝ նման է հողմակոծեալ եւ
7 տատանեալ ալեաց ծովու։ Մի՛ ակնկալցի մարդն այն
8 առնուլ ինչ յԱստուծոյ. Զի այր երկմիտ՝ առանց
հաստատութեան է յամենայն ճանապարհս իւր։
9 Պարծեսցի եղբայր խոնարհ ՚ի բարձրութիւն իւր,
10 Եւ որ մեծատունն իցէ ՚ի խոնարհութիւն իւր. քան-

11 զի իբրև զծաղիկ խոտոյ անցցէ ։ Զի ծագեաց արև
հանդերձ խորշակաւ՝ և ցամաքեցոյց զխոտն, և թօ-
թափեցաւ ծաղիկն նորա, և կորեաւ վայելչութիւն
երեսաց նորա ։ Նոյնպէս և մեծատունն հանդերձ
12 շահիւքն իւրովք թարշամեսցի ։ Երանեալ է այր
որ համբերիցէ փորձանաց ։ զի եթէ ընտիր եւ
գտանիցի, առցէ զպսակն կենաց՝ զոր խոստացաւն
սիրելեաց իւրոց ։
13 Մի՛ ոք որ 'ի փորձութեան իցէ, ասիցէ՝ թէ
յԱստուծոյ փորձիմ ։ զի Աստուած անփորձ է չար-
14 եաց ։ փորձէ նա և ո՛չ զոք ։ Իւրաքանչիւրոք փոր-
ձի՝ առ յիւրոցն ցանկութեանց ձգեալ և պատրեալ ։
15 Ապա այնուհետև ցանկութիւնն յղացեալ՝ զմեղս
16 ծնանի ։ և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանին ։ Մի՛
17 խաբիք եղբա՛րք իմ սիրելիք ։ Զի ամենայն տուրք
բարիք՝ և ամենայն պարգևք կատարեալք 'ի վե-
րուստ են իջեալ առ 'ի Հօրէն լուսոյ ։ յորում
18 չի՛ք փոփոխումն՝ և կամ շրջելոյ ստուեր ։ Կամեց-
եալ ծնաւ զմեզ բանիւ ճշմարտութեանն, լինել
19 մեզ պտուղ ինչ ստացուածոց նորա ։ Գիտասջի՛ք
եղբարք իմ սիրելիք ։ եղիցի ամենայն մարդ արագ առ
'ի լսել, և ծանր առ 'ի խօսել, և ծանր առ 'ի բար-
20 կանալ ։ Զի բարկութիւն մարդոյ զարդարութիւն
21 Աստուծոյ ո՛չ գործէ ։ Որով 'ի բա՛ց թօթափեալ
զամենայն աղտեղութիւնս և զյաւելուածս չարեաց,
հեզութեամբ ընդունի՛ջի՛ք զբանն ընդաբոյս ։ որ կա-
22 րօղն է կեցուցանել զոգիս ձեր ։ Լինիջի՛ք առնելիք
բանին, և մի՛ լսելիք միայն համարեսջի՛ք զանձինս ։
23 Զի թէ ոք լսօղ միայն իցէ բանին՝ և ոչ առնելի,

Նման է նա մարդոյ, որ պշուցեալ հայիցի ընդ ե-
24 րեսս իւր՝ որ ծնանիցին 'ի հայելւոջ. Զի հայեցեալ
ետես զինքն, և զանց արար, և անդէն մոռացաւ թէ
25 որպիսի ոք էր: Իսկ որ յառեալ 'ի կատարեալ օ-
րէնս ազատութեանն հայիցի, և 'ի նմին կացցէ, ո՛չ
եղև նա լսօղ մոռացութեան՝ այլ առնելի գործոյն.
26 Նա՝ յառնելն իւրում լիցի երանելի: Եթէ ոք կա-
միցի կրօնաւոր լինել՝ և ո՛չ սանձահարիցէ զլեզու
իւր՝ այլ զբաղեցուցանիցէ զսիրտն իւր, այնպիսւոյն
27 վայրապար է կրօնաւորութիւնն: Կրօնաւորութիւն
սուրբ և անարատ՝ առ 'ի յԱստուծոյ և 'ի Հօրէ՝
այս է, այցելու լինել որբոց և այրեաց 'ի նեղու-
թեան իւրեանց, անարատ պահել զանձն յաշ-
խարհէ:

## ԳԼ. Բ

1 Եղբա՛րք իմ, մի՛ աչառութեամբ ունիցիք զհա-
ւատոն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ Տէրն
2 է փառաց: Եթէ մտանիցէ 'ի ժողովուրդ ձեր այր՝
որ ունիցի մատանի ոսկի և հանդերձս պայծառս,
մտանիցէ անդր և աղքատ ոք 'ի հանդերձս աղտե-
3 ղիս, Հայիցիք ընդ այն՝ որ ունիցի զհանդերձն
պայծառս. և ասիցէք եթէ Դու նի՛ստ աստ պատ-
ուով. և ցաղքատն ասիցէք՝ եթէ Յո՛տն կաց դու
այտի. կամ թէ՝ Ե՛կ նիստ առ պատուանդանիս ի-
4 մում: Ո՞չ խղճիցէք յանձինս՝ և լինիցիք դատաւորք
5 չարեաց խորհրդոց: Լուարո՛ւք ինձ եղբա՛րք իմ
սիրելիք, ո՞չ ապաքէն Աստուած ընտրեաց զաղքատս

աշխարհիս , որ են մեծատունք հաւատովք , և ժա-
ռանգաւորք արքայութեանն՝ զոր խոստացաւ սիրե-
6 լեաց իւրոց ։ Եւ դուք անարգեք զաղքատս ։ Ո՞չ
մեծատունքն յաղթահարեն զձեզ՝ և նոքա քարշեն
7 զձեզ 'ի դատաստան ։ Ո՞չ նոքա հայհոյեն զբարւոք
8 անունն՝ որ կոչեցեալ է 'ի վերայ ձեր ։ Ապա թէ
զօրէնսն կատարիցէք զարքունականս ըստ գրոց , Ե-
թէ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո , բար-
9 ւոք առնէք ։ Իսկ եթէ աչառիցէք , մեղս գործէք՝
10 յանդիմանեալք յօրինացն իբրև օրինազանցք ։ Որ
ոք զամենայն օրէնսն պահիցէ , և միով իւիք ինչ
11 գթիցէ , եղև ամենայն օրինացն պարտապան ։ Զի
որ ասացն՝ թէ Մի՛ սպանանիցես , ասաց թէ Եւ մի՛
շնայցես ։ զի եթէ սպանանիցես ոչ՝ բայց շնայցես ,
12 եղեր յանցաւոր օրինացն ։ Այնպէս խօսեցարո՛ւք և
այնպէս արարէ՛ք , որպէս զի ազատութեան օրինօքն
13 իցէք դատելոց ։ Զի անողորմ դատաստան լինե-
լոց է այնմ , որ ոչ առնիցէ զողորմութիւն . քան-
զի բարձրագլուխ պարծի ողորմութիւն առ դատաս-
տանաւն ։

14 Զի՞նչ օգուտ իցէ եղբա՛րք իմ , եթէ ասիցէ ոք
հաւատս ունել՝ և գործս ոչ ունիցի . միթէ կարի-
15 ցե՞ն հաւատքն ապրեցուցանել զնա ։ Եթէ եղ-
բայր ոք կամ քոյր՝ իցեն մերկ կամ կարօտեալ ա-
16 ւուրն կերակրոյ , Ասիցէ ոք 'ի ձէնջ ցնոսա . Եր-
թա՛յք խաղաղութեամբ , ջեռարո՛ւք և յագեցարո՛ւք .
և տայցէք ոչ նոցա զպէտս մարմնոյն , զի՞նչ օգուտ
17 իցէ ։ Այնպէս և հաւատք՝ եթէ գործս ոչ ունիցին ,
18 մեռեալ են առանձինն ։ Այլ թերևս ասիցէ ոք .

Եթէ դու հաւատս ունիս՝ և ես գործս ունիմ. ցոյց
ինձ զհաւատոն քո առանց գործոց, և ես ցուցից
19 քեզ 'ի գործոց իմոց զհաւատս: Դու հաւատաս՝
զի մի է Աստուած, բարւոք առնես. և դևք հաւա-
20 տան՝ և սարսեն: Կամիս գիտել՝ ով մարդ ունայն,
21 զի հաւատք առանց գործոց դատարկ են: Աբրա-
համ հայր մեր ոչ ապաքէն 'ի գործոց արդարա-
ցաւ՝ հանեալ 'ի սեղան զորդին իւր զԻսահակ պա-
22 տարագ: Տեսանես՝ զի հաւատքն եղեն գործակից
գործոց նորա, և 'ի գործոց անտի հաւատքն կա-
23 տարեցան: Եւ կատարեցաւ գիրն՝ որ ասէ. Հաւա-
տաց Աբրահամ յԱստուած, և համարեցաւ նմա
յարդարութիւն, և կոչեցաւ բարեկամ Աստուծոյ:
24 Տեսանէք՝ զի 'ի գործոց արդարանայ մարդ՝ և ոչ
25 'ի հաւատոց միայն: Այնպէս և Ռախաբ պոռնիկ՝
ոչ ապաքէն 'ի գործոց արդարացաւ, ընկալեալ
26 զլրտեսսն՝ և ընդ այլ ճանապարհ արձակեաց: Զոր
օրինակ մարմին առանց հոգւոյ մեռեալ է, նոյնպէս
և հաւատք առանց գործոց մեռեալ են:

## ԳԼ. Գ

1 Մի՛ բազում վարդապետք լինել եղբարք իմ,
գիտասջի՛ք՝ զի մեծ դատաստան ընդունելոց եմք.
2 Զանզի բազում ինչ յանցանեմք ամենեքեան:
Եթէ ոք բանիւ ոչ յանցանիցէ՝ նա է մարդ կատար-
եալ, որ կարօղն է սանձահարել զամենայն մարմին
3 իւր: Տես զի ձիոց սանձս 'ի բերան դնեմք՝ առ 'ի հնա-
զանդ լինել նոցա մեզ, և զամենայն մարմինս նոցա նուաճեմք:

4 Ահաւասիկ և նաւք՝ ո՛րպիսի ինչ են, և 'ի սաստիկ
հողմոց վարին․ և փոքր թեւովն շրջին՝ յոր կոյս և
5 միտք ուղղչին կամիցին ։ Այնպէս և լեզու փոքր
ինչ անդամ է՝ և մեծամեծս բարբառի ․ ահա և
6 սակաւ ինչ հուր զո՛րպիսի անտառս հրդեհէ ։ Եւ
լեզու հուր՝ զարդ անիրաւութեան, լեզու հաստատ-
եալ է յանդամս մեր, որ զամենայն մարմինն ապա-
կանէ, և վառէ հրով զանիւ ծննդեան, և բորբոք-
7 եալ տոչորի 'ի գեհենի ։ Ամենայն բնութիւն գա-
զանաց՝ և թռչնոց և սողնոց և որ 'ի ծովու են,
հնազանդեալ է՝ և հնազանդի մարդկեղէն բնու-
8 թեան ։ Բայց զլեզու մարդկան ոչ ո՛ք կարէ հնա-
զանդել՝ զչարն և զանկարգ՝ և զլի թունոք մահա-
9 բերին ։ Նովաւ օրհնեմք զՏէրն և զՀայր․ և նովաւ
անիծանեմք զմարդիկ՝ որ ըստ նմանութեան Աս-
10 տուծոյ արարան ։ 'Ի նմին բերանոյ ելանեն օրհնու-
թիւնք և անէծք ․ ո՛չ է պարտ եղբարք իմ այսմ
11 այսպէս լինել ։ Միթէ աղբիւր անդստին 'ի միոյ ա-
12 կանէն բղխիցէ՞ քաղցր և դառն ։ Միթէ մարթ ինչ
իցէ եղբա՛րք իմ՝ թզենւոյ ձէթ բերել, կամ որթոյ
թուզ, և ո՛չ աղտաղտին տեղւոյ ջուր քաղցր առ-
նել ։

13 Ո՞վ իցէ իմաստուն և հանճարեղ 'ի ձեզ, ցուց-
ցէ 'ի բարւոք գնացից զգործս իւր հեզութեամբ ի-
14 մաստութեանն ։ Ապա եթէ նախանձ՝ և դառնու-
թիւն և հակառակութիւն ունիցիք 'ի սիրտս ձեր,
15 մի՛ պարծիք սուտ առնել զճշմարտութիւնն ։ Ո՛չ է
իմաստութիւնս այս իջեալ 'ի վերուստ ․ այլ երկ-
16 րաւոր՝ շնչաւոր՝ և դիւական ։ Զի ուր հեռ և նա-

խառնակ, անդ է անկարգութիւն և ամենայն իրք
17 չարք: Իսկ վերին իմաստութիւնն, նախ զի սուրբ
է՝ ապա խաղաղարար, հեզ՝ դիւրահաւան՝ լի ողոր-
մութեամբ և պտղովք բարեաց, անխիղճ, առանց
18 կեղծաւորութեան: Պտուղ արդարութեան խաղա-
ղութեամբ սերմանի այնոցիկ՝ որ առնեն զխաղա-
ղութիւն:

## ԳԼ. Դ.

1 Ուստի՞ պատերազմունք՝ և ուստի՞ կռիւք ՚ի ձեզ.
ո՞չ յայսպիսի ցանկութեանց ձերոց՝ որ զօրացեալ
2 են յանդամս ձեր: Ցանկանայք, և ո՛չ ունիք.
սպանանէք և նախանձիք՝ և ո՛չ կարէք հասանել.
պատերազմիք կռուիք՝ և ո՛չ ունիք, վասն զի ո՛չ
3 խնդրէք: Խնդրէք՝ և ո՛չ առնուք, վասն զի չարա-
չար խնդրէք. զի անդէն ՚ի ցանկութիւնս ձեր մա-
4 շեսջիք: Շնացօղք՝ ո՞չ գիտէք՝ զի սէր աշխարհիս
այսորիկ թշնամութիւն է առ Աստուած. զի որ ոք
կամիցի սիրել զաշխարհ՝ թշնամի առնէ զանձն իւր
5 Աստուծոյ: Կամ թէ վայրապա՞ր համարիցիք՝ զոր
ասէ Գիրն. Առ նախանձ ինչ՝ որում փափագէ հո-
6 գին՝ որ բնակեաց ՚ի մեզ, Տալ զառաւել շնորհսն.
վասն որոյ ասէ. Տէր ամբարտաւանից հակառակ
կայ, տայ շնորհս խոնարհաց:
7 Հնազանդեցարո՛ւք այսուհետև Աստուծոյ, և կա-
ցէք հակառակ չարախօսին, և լիցի փախստական
8 առ ՚ի ձէնջ: Մերձեցարո՛ւք առ Աստուած, և մեր-
ձեսցի առ ձեզ: Սրբեցէք զձեռս մեղաւորք, և ու-

9 ղեղ արարէք զսիրտս՝ երկմիտք ։ Տառապեցարուք՝
սգացարուք՝ և լացէք ․ ծաղր ձեր 'ի սուգ դարձցի ,
10 և ուրախութիւն ձեր 'ի տրտմութիւն ։ Խոնարհե-
ցարուք առաջի Տեառն՝ և բարձրացուսցէ զձեզ ։
11 Մ՛ի բամբասէք զմիմեանս եղբարք ․ որ բամբասէ
զեղբայր՝ կամ դատի զեղբայր իւր , զօրէնսն բամ-
բասէ՝ և զօրէնսն դատի ․ իսկ եթէ զօրէնսն դատի-
12 ցիս՝ ո՛չ առնելի օրինացն ես՝ այլ դատաւոր ։ Մ՛ի
է օրէնսդիր և դատաւոր՝ որ կարօղն է փրկել և կո-
13 րուսանել ․ Դու ո՞ ես՝ որ դատիս զընկերն ։ Ահա-
ւասիկ են , որ ասեն ․ Այսօր և վաղիւ երթիցուք
յայս անուն քաղաք , եղիցուք անդ տարի մի , վա-
14 ճառեսցուք և շահեսցուք ․ Որք ո՛չ գիտէք զվաղիւն ,
15 Որպիսի ինչ են կեանք ձեր ․ զի իբրև զմրրիկ էք ,
որ առ սակաւ մի երևեալ՝ և ապա ապականեալ ․
փոխանակ զի ասէիք՝ Եթէ Տէր կամեսցի՝ և կեցցուք ,
16 արասցուք զայս ինչ՝ կամ զայն ։ Եւ արդ՝ պարծի՛ք
յամբարտաւանութեան ձերում ․ ամենայն ինչ այս-
17 պիսի պարծանք չարութեան են ։ Որ ոք գիտիցէ
զբարին՝ և ո՛չ առնիցէ , մեղք են նմա ։

## ԳԼ․ Ե

1 Արդ՝ այսուհետև մեծատունք՝ լացէք և ողբա-
ցէք 'ի վերայ թշուառութեանցն ; որ գալոց են 'ի
2 վերայ ձեր ։ Զի մեծութիւնդ ձեր յոչինչ է , և
3 հանդերձք ձեր կերակուր ցեցոյ ։ Արծաթ ձեր և
ոսկի ժանդահար , և ժանդ նոցա լիցի ձեզ 'ի վկա-
յութիւն , և կերիցէ զմարմինս ձեր ․ իբրև զհուր

4 զանձեցէք աւուրցն յետնոց ։ Ահաւասիկ վարձք
մշակաց՝ որ գործեն զանդս ձեր՝ առ ձեզ են ․ զրկեալն
՚ի ձէնջ աղաղակէ , և բողոք հնձողացն եհաս յա֊
5 կանջս Տեառն զօրութեանց ։ Փափկացայք ՚ի վե֊
րայ երկրի՝ և զգօսայք ․ սնուցէք զսիրտս ձեր իբրև
6 աւուր սպանման ։ Զրկեցիք սպանիք զարդարն , որ
7 ո՛չ կայր ձեզ հակառակ ։ Երկայնամիտ լերուք եղ֊
բա՛րք իմ մինչև ՚ի գալուստ Տեառն ․ ահա մշակ
երկայնամտեալ սպասէ պատուական պտղոյն երկրի ,
8 մինչև առցէ * զկանուխ և զանագան ։ Երկայնա֊
մտեցէք և դուք , և հաստատեցէք զսիրտս ձեր ․
9 զի գալուստ Տեառն մերձեալ է ։ Մի՛ տրտմեցու֊
ցանէք զմիմեանս եղբարք , զի մի՛ դատիցիք ․ ահա֊
10 ւասիկ դատաւորն առ դուրս կայ ։ Օրինակ առէք
եղբարք՝ չարչարանաց և երկայնմտութեան զմար֊
11 գարէսն , որ խօսեցան յանուն Տեառն ։ Ահա֊
սիկ երանեմք համբերողաց ․ զհամբերութիւն Յով֊
բայ լուարուք՝ և զկատարումն Տեառն տեսէք ․ զի
բազմագութ է Տէր՝ և ողորմած ։

12 Յառաջ քան զամենայն ինչ եղբա՛րք իմ , մի՛
երդնուցուք , մի՛ յերկինս՝ մի՛ յերկիր՝ մի՛ յայլ ինչ
երդումն , այլ եղիցի ձեր այոն՝ այո՛ , և ոչն՝ ո՛չ ․ զի
13 մի՛ ՚ի կեղծաւորութիւն ինչ անկանիցիք ։ Վշտա֊
նայցէ ոք ՚ի ձէնջ , յաղօթս կացցէ ․ բերկրեսցի
14 ոք , սաղմոս ասասցէ ։ Հիւանդանայցէ ոք ՚ի ձէնջ՝
կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյն՝ և արասցեն ՚ի վե֊
րայ նորա աղօթս , օծցեն իւղով յանուն Տեառն ․

---

* ՚Ի Յոյնն , զանձրև զկանուխ

15 Եւ աղօթքն հաւատովք փրկեսցեն զաշխատեալն,
և յարուսցէ զնա Տէր. և եթէ մեղս ինչ իցէ
16 գործեալ՝ թողցի նմա։ Խոստովան եղերուք միմ-
եանց զմեղս, և աղօթս արարէք 'ի վերայ միմեանց՝
որպէս զի բժշկեսջիք. քանզի յոյժ զօրաւոր են
17 աղօթք արդարոց յօգնականութիւն։ Եղիա մարդ
էր իբրև զմեզ չարչարելի. և յաղօթս եկաց և ոչ
18 տեղաց յերկիր զերիս ամս և զվեց ամիս։ Եւ
դարձեալ եկաց յաղօթս՝ և եսուն երկինք զանձրև՝
19 և բուսոյց երկիր զպտուղ իւր։ Եղբա՛րք իմ, եթէ
ոք 'ի ձէնջ մոլորիցի 'ի ճշմարտութեան ճանապար-
20 հէն՝ և դարձուսցէ ոք զնա. Գիտասցէ՛ զի որ
դարձուսցէ զմեղաւորն 'ի մոլորութեան ճանապար-
հէն իւրմէ, փրկեսցէ զոգի իւր 'ի մահուանէ՝ և
ծածկեսցէ զբազմութիւն մեղաց։

# ԹՈՒՂԹ

# ԿԱԹՈՂԻԿԵԱՅ

## ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌԱՋԻՆ

### ԳԼ. Ա

1 ՊԵՏՐՈՍ առաքեալ Յիսուսի Քրիստոսի, ընտ-
րելոցդ նժդեհից, որ 'ի սփիւռս Պոնտացւոց Գա-
ղատացւոց և Կապադովկեցւոց և Ասիացւոց և Բիւ-
2 թանացւոց, Ըստ կանուխ գիտութեանն Աստուծոյ
Հօր, սրբութեամբ Հոգւոյն, 'ի հնազանդութիւն
և 'ի հեղումն արեանն Յիսուսի Քրիստոսի. շնորհք
3 ընդ ձեզ և խաղաղութիւն բազմասցի: Օրհնեալ
է Աստուած և Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի, որ ըստ բազում ողորմութեան իւրում ծնաւ
զմեզ վերստին 'ի յոյսն կենդանի, 'ի ձեռն յա-
4 րութեանն Յիսուսի Քրիստոսի 'ի մեռելոց, Յա-
նեղծ և յանարատ և յանթառամ ժառանգու-
5 թիւնն որ պահեալ է յերկինս 'ի ձեզ. Որ զօրու-
թեամբն Աստուծոյ պահեալ էիք հաւատովք 'ի
պատրաստեալ փրկութիւնն, յայտնեալ 'ի յետին
6 ժամանակս: Որով ուրախ լինիջիք՝ որք այժմ սակա-
ւիկ ինչ ըստ պատշաճի իրացդ տրտմեալ էք 'ի պէս-
7 պէս փորձութիւնս: Զի հանդէս ձերոց հաւատոցն

առաւել քան զոսկի կորստական պատուական է ․
որ հրով փորձեալ՝ գտաւ ՚ի գովութիւն և ՚ի փառս ,
և ՚ի պատիւ ՚ի յայտնութեանն Յիսուսի Քրիս-
8 տոսի ։ Զոր ոչն տեսէք՝ և սիրեցէք ․ ընդ որ այժմ
ոչ հայեցեալք՝ բայց հաւատացէք , և ուրախ էք
9 անճառ և փառաւորեալ խնդութեամբն ․ Ընկալ-
եալ զկատարումն հաւատոյն ձերոյ զոգւոյն փրկու-
10 թիւն ։ Վասն որոյ փրկութեան խնդրեցին և քննե-
ցին մարգարէքն ․ որք վասն որոյ ՚ի ձեզ լինելոց
11 էին շնորհքն՝ մարգարէանային ․ Քննէին յորում
և յորպիսի ժամանակի գուշակէր ՚ի նոսա Հոգին
Քրիստոսի ․ որ նախ զչարչարանացն Քրիստոսի
12 վկայէր՝ և յետ այնորիկ՝ զփառացն ։ Որոց և յայտ-
նեցաւ իսկ ․ զի ոչ եթէ անձանց , այլ մեզ մատա-
կարարք լինէին նոցին , որք այժմ պատմեցան այ-
նոքիւք , որ աւետարանեցինն ձեզ Հոգւովն Սրբով ,
որ առաքէրն յերկնից ․ զոր ցանկային տեսանել
գոնեայ ընդ աղօտ հրեշտակք ։
13 Որով պնդեալ զմէջս մտաց ձերոց՝ զուարթաց-
եալք բովանդակ սպասեցէք հասելոցն ձեզ շնոր-
14 հաց ՚ի յայտնութեանն Յիսուսի Քրիստոսի , Իբ-
րև զորդիս հնազանդութեան ․ մի կերպարանեալք
առաջին ձերովք անգիտութեանն ցանկութեամբք ․
15 Այլ ըստ Սրբոյն որ կոչեաց զձեզ՝ և դուք սուրբք
16 յամենայն գնացս ձեր լինիջիք ։ Վասն որոյ գրեալ
17 է , եթէ Եղերուք սուրբ զի ես սուրբ եմ ։ Եւ ե-
թէ Հայր կոչիցէք զայն , որ առանց ակնառութեան
դատի ըստ իւրաքանչիւր գործոց , ապա երկիւղիւ
զձերոցն պանդխտութեան ժամանակս գնասջիք ։

18 Գիտասջի՛ք, զի ո՛չ ապականացու արծաթեղինօք
և ոսկեղինօքն փրկեցարուք ՚ի ձերոց ունայնութեան
19 հայրենատուր գնացիցն. Այլ պատուական յար-
եամբն Քրիստոսի, իբրև անբիծ և անարատ գա-
20 ռին: Որ յառաջագծանօթ էր՝ նախ քան զիսկզբա-
նէ աշխարհի, և երևեցաւ ՚ի վախճան ժամանա-
21 կաց վասն ձեր. Որք նովաւ հաւատացիք յԱստ-
ուած՝ որ յարոյց զնա ՚ի մեռելոց, և ետ նմա փառս.
22 զի հաւատքն ձեր և յոյս լիցին յԱստուած: Զան-
ձինս ձեր սրբել հնազանդութեամբ ճշմարտու-
թեանն, յեղբայրսիրութեան առանց կեղծաւորու-
թեան, ՚ի սուրբ սրտէ սիրել սերտիւ զմիմեանս:
23 Ծնեալք վերստին ո՛չ յապականութեան սեր-
մանէն, այլ յանապականացուէն, կենդանի և մշ-
24 տնջենական բանիւն Աստուծոյ: Քանզի ամե-
նայն մարմին իբրև զխոտ է. և ամենայն փառք
մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. խոտն ցամաքեցաւ՝
25 և ծաղիկն թօթափեցաւ: Եւ բան Տեառն մնայ
յաւիտեան. այսինքն է բանն, որ ՚ի ձեզ աւետա-
րանեցաւ:

## ԳԼ. Բ

1 Ի բաց թօթափել այսուհետև զամենայն չարու-
թիւն՝ և զամենայն նենգութիւն և զկեղծաւորու-
թիւնս և զնախանձ, և զամենայն չարախօսութիւն.
2 Իբրև զարդի ծնեալ մանկունս խօսունս, և ան-
խարդախ կաթինն փափաքիցէք. զի նովաւ աճիցէք
3 ՚ի փրկութիւն: Եթէ ճաշակիցէք՝ զի քաղցր է

4 Տէր ։ Առ որ մատուցեալ 'ի վէմն կենդանի, որ
թէպէտ 'ի մարդկանէ անարգեալ՝ այլ առ 'ի յԱս-
5 տուծոյ ընտրեալ և պատուական է ․ Եւ դուք իբ-
րև զվէմս կենդանիս շինիք տաճար հոգևոր, յա-
նարատ քահանայութիւն, մատուցանել զհոգևորն
պատարագս հաճոյս Աստուծոյ, 'ի ձեռն Յիսուսի
6 Քրիստոսի ։ Քանզի կայ իսկ 'ի գրի ․ եթէ Ահա-
ւասիկ դնեմ 'ի Սիովն վէմ ընտիր՝ գլուխ անկեան
պատուական, և որ 'ի նա հաւատասցէ՝ մի՛ ամա-
7 չեսցէ ։ Ձեզ այսուհետև հաւատացելոց է վէմ
պատուական ․ իսկ անհաւատիցն, վէմ զոր անար-
8 գեցին շինօղքն, նա եղև գլուխ անկեան ․ Եւ վէմ
գլորման և վէմ գայթագղութեան, որ գայթագ-
9 ղին ապստամբեալք 'ի բանէն՝ յոր և եդանն ։ Այլ
դուք ազգ էք ընտիր, թագաւորութիւն, քահանա-
յութիւն, ազգ սուրբ, ժողովուրդ սեպհական ․ որ-
պէս *զի զձեր առաքինութիւնս նուիրիցէք այնմ,"
որ զձեզ 'ի խաւարէն կոչեաց յիւր սքանչելի լոյսն ։
10 Որք երբեմն չժողովուրդ՝ բայց արդ ժողովուրդ Աս-
տուծոյ ․ որք չողորմեալք՝ այժմ ողորմութիւն
11 գտիք ։ Սիրելիք՝ աղաչեմ, իբրև զպանդուխտս և
զնժդեհս 'ի բաց մերժել 'ի մարմնաւոր ցանկու-
12 թեանցն, որ զինուորին ընդդէմ ոգւոց ․ Զվարս ձեր
'ի մէջ հեթանոսաց պարկեշտս ցուցանել ․ զի որով
բամբասիցեն զձեզ իբրև զչարագործս, 'ի բարւոք
գործոցն ձերոց դիտեալ՝ փառաւոր առնիցեն զԱստ-
ուած յաւուրն այցելութեան ։

* 'Ի Յոյն․, զի զնորին առաքինութիւնս ցուցա-
նիցէք



*E E 3

13 Հնազանդ լերուք ամենայն մարդկեղէն ստեղծ-
ուածոյ վասն Տեառն. եթէ թագաւորի՝ իբրեւ ա-
14 ռաւել ումեք, Եթէ դատաւորաց՝ իբրեւ 'ի Նմանէ
առաքելոց 'ի վրէժխնդրութիւն չարագործաց՝ եւ 'ի
15 գովութիւն բարեգործաց: Զի այսպէս են կամք
Աստուծոյ. բարեգործացն պապանձեցուցանել զան-
16 գգամ մարդոց զանգիտութիւն: Իբրեւ զազատս
լինել՝ եւ մի՛ իբրեւ պատրուակ չարութեան ունել
զազատութիւնն. այլ իբրեւ Աստուծոյ ծառայք:
17 Զամենեսեան պատուեցէք. զեղբայրսիրութիւն սի-
րեցէք. յԱստուծոյ երկերուք. զթագաւորս պատ-
18 ուեցէք: Ծառայք հնազանդ լինել յամենայնի եր-
կիւղիւ տերանց, ո՛չ միայն բարերարացն եւ հեզոց՝
19 այլ եւ կամակորացն: Զի այս շնորհք յԱստուծոյ
են, եթէ բարւոք խնչ մտօք տանիցի ոք վշտաց
20 յանիրաւի: Քանզի զի՞նչ երախտիք իցեն, եթէ
յորժամ մեղանչիցէք՝ տանջիցիք, եւ համբերիցէք.
այլ թէ բարիս գործիցէք՝ չարչարիցիք, եւ համբերի-
21 ցէք, այն շնորհք յԱստուծոյ են: Քանզի 'ի դոյն
իսկ կոչեցարուք. զի եւ Քրիստոս վասն ձեր մե-
ռաւ, եւ ձեզ եթող օրինակ՝ զի զհետ երթայցէք
22 հետոց Նորա. Որ ո՛չն արար մեղս, եւ ո՛չ գտաւ նեն-
23 գութիւն 'ի բերան Նորա. Որ բամբասեալ՝ եւ ո՛չ
փոխարէն բամբասէր. չարչարեալ՝ եւ ո՛չ պահէր
սպառնալիս. բայց իրաւամբք մատնէր դատաւորին.
24 Որ զմեր մեղս իւրով մարմնովն վերացոյց 'ի խաչա-
փայտն. զի լիցուք զերծեալք 'ի մեղաց անտի, եւ
իցեմք արդարութեանն կենակիցք. որոյ վիրօքն
25 բժշկեցայք: Քանզի էիք իբրեւ զոչխարս մոլորեալս.

այլ այժմ դարձարուք առ Հովիւն և Տեսուչ ոգւոց ձերոց ։

## ԳԼ. Գ

1 Այնպէս և կանայք հնազանդ լինել արանց իւր-
եանց. զի եթէ իցեն նոքա ապստամբք ՚ի բանէ
անտի, յաղագս կանանց գնացից, և առանց բանին
2 իսկ շահեսցին, Դիտել երկիւղիւ զձեր պարկեշտ
3 գնացս ։ Որոց լինիցի ոչ արտաքուստ հիւսիւք և
ոսկեհուռ ծամակալօք՝ կամ պաճուճեալ զգեստուք
4 զարդ. Այլ ծածուկ սրտին մարդն. անեղծու-
թեամբ հեզութեան՝ և հանդարտութեան հոգւոյն,
5 որ է առաջի Աստուծոյ բազմապատիկ ։ Քանզի
այսպէս երբեմն և *կանայք՝ որ յուսացեալ էին
յԱստուած՝ զարդարէին զանձինս հնազանդել իւր-
6 եանց արանց ։ Որպէս և Սառայ՝ զի հնազանդ էր
Աբրահամու. և տէր իւր կոչէր զնա. որոյ եղերուք
դուք որդիք. բարեգործք էին, և ոչ կասկածէին՝
7 և ոչ ՚ի միոջէ ինչ երկիւղէ ։ Այնպէս և արք ի-
մաստութեամբ բնակեսցեն ընդ նոսա. իբրև ընդ տկար
անօթոյ առնիցեն պատիւ կանանց՝ իբրև ժառան-
գակցաց շնորհացն կենաց. զի մի խափան լինիցին
8 աղօթիցն ձերոց ։ Եւ գլուխ ամենայնի, զի համա-
միտք իցէք՝ համակարիք՝ եղբայրասէրք՝ ագնուա-
9 գութք՝ խոնարհք ։ Մի՛ չար փոխանակ չարի հա-
տուցանել, կամ բամբասանս ընդ բամբասանաց.

---

* ՚Ի Յոյնն, սուրբ կանայք

այլ զսորին հակառակն՝ օրհնել, զի յայս իսկ կո-
չեցարուք՝ զի զօրհնութիւն ժառանգիցէք։
10 Զի որ կամիցի զկեանս սիրել՝ և տեսանել զա-
ւուրս բարութեան, լռեցուսցէ զլեզու իւր ՚ի չա-
րութենէ, և զշրթունս իւր ՚ի չխօսելոյ զնենգու-
11 թիւն։ Խոտորեսցի ՚ի չարէ, և արասցէ զբարի.
խնդրեսցէ զխաղաղութիւն, և երթիցէ զհետ նո-
12 րա։ Զի աչք Տեառն ՚ի վերայ արդարոց, և ա-
կանջք նորա յաղօթս նոցա. երեսք Տեառն ՚ի վե-
13 րայ չարագործաց։ Եւ ո՞ իցէ որ չարչարիցէ զձեզ,
14 եթէ դուք բարւոյն նախանձաւորք լինիցիք։ Այլ
թէ և չարչարիցիք ևս յաղագս արդարութեան, ե-
րանելի էք. բայց յերկիւղէ նոցա մի՛ երկնչիցիք և
15 մի՛ խռովեսջիք։ Այլ զՏէր զնոյն զՔրիստոս՝ սուրբ
առնիջիք ՚ի սիրտս ձեր։ Պատրաստ իցէք տալ պա-
տասխանի ամենայնի որ խնդրիցէ զբանն, որ է վասն
16 յուսոյն ձերոյ։ Այլ հեզութեամբ և երկիւղիւ ու-
նիցի՛ք բարս քաղցունս. զի որով չարախօսիցեն
զձէնջ՝ յամօթ՝ լիցին՝ որք բամբասեն զձեր բարւոք
17 գնացս ՚ի Քրիստոս։ Զի լաւ է բարեգործաց, ե-
թէ կամիցին *ըստ Աստուծոյ կամացն" չարչարիլ՝
18 քան չարագործացն. Զի և Քրիստոս միանգամ
վասն մեղաց ՚ի վերայ ձեր մեռաւ, արդարն ՚ի վե-
րայ անարդարոց. զի զձեզ մերձեցուսցէ առ Աստ-
ուած. թէպէտ և մեռաւ մարմնով, այլ կենդանի
19 է հոգւով։ Որով † և ոգւոցն՝ որ էին ՚ի բանտին",

---

* ՚Ի Յօրինն, կամքն Աստուծոյ

† ՚Ի Յօրինն, և ոգւոցն որ ՚ի բանտին

20 երթեալ քարոզեաց՝ Երբեմն ապստամբելոցն, յոր-
ժամ ներէր նոցա Աստուծոյ՝ երկայնմտութիւնն յա-
ւուրս Նոյի՝ յորս տապանն կազմէր. յոր նաւա-
զունք՝ այսինքն ոգիք իբրև ութ ապրեցան ՚ի ջրոցն ։
21 Որ և. * զձեզ ըստ նմին օրինակի կեցուցէ մկրտու-
թիւնն. ոչ զմարմնոյ աղտն ՚ի բաց ընկենլով՝ այլ
զբարուոք մտացն հանդէս առ Աստուած, ՚ի ձեռն
22 յարութեանն Յիսուսի Քրիստոսի. Որ է ընդ աջ-
մէ Աստուծոյ՝ երթեալ յերկինս, ՚ի հնազանդել
նմա հրեշտակաց և իշխանութեանց և զօրութեանց ։

## ԳԼ. Դ.

1 Քրիստոսի չարչարելն մարմնով վասն մեր, և
դուք ՚ի նոյն միտս վառեցարուք. զի որ չարչարի
2 մարմնով՝ դադարէ ՚ի մեղաց. Զի մի՛ ևս ըստ մարդ-
կան ցանկութեանց՝ այլ ըստ կամացն Աստուծոյ
3 կեցցէ զայլ ևս ժամանակն ։ Քանզի բաւական է
անցեալ ժամանակն լինելոյ կամացն հեթանոսաց,
որք գնայիք գիջութեամբք՝ ցանկութեամբք՝ գինեհա-
րութեամբք՝ անառակութեամբք՝ արբեցութեամբ՝
4 անօրէն կռապաշտութեամբք ։ Որով օտարացեալք՝
† ոչ ընդ ձեզ վարիք, ՚ի նոյն անկարգութեան զեղ-
5 խութիւն, և հայհոյեն" ։ Որ տայցեն պատասխա-
նի այնմ, որ ՚ի պատրաստին ունի դատել զկենդա-

* ՚Ի Յոյնն, զմեզ
† ՚Ի Յոյնն, ոչ վարելումն ձեր ընդ նոսա ՚ի նոյն անկարգութեան զեղխութիւն, հայհոյեն

6 նիս և զմեռեալս ։ Զի ՚ի սոյն իսկ և մեռելոց լսու–
տացեալ է , զի դատեսցին ըստ մարդկան մարմնով՝
7 և կենդանի լիցին ըստ Աստուծոյ Հոգւով ։ Ամենե–
ցուն՝ վախճան մերձեալ է ․ զգաստացարո՛ւք այսու–
8 հետև՝ և լերո՛ւք զուարթունք յաղօթս ։ Նախ քան
զամենայն սէր սերտ ունել ընդ միմեանս ․ զի սէր
9 ծածկէ զբազմութիւն մեղաց ։ Օտարասէրք լինել
10 ընդ միմեանս առանց տրտնջելոյ ։ Իւրաքանչիւրոք
որպէս և ընկալաւ շնորհս ինչ՝ ՚ի միմեանս զնոյն
մատակարարել , իբրև զբարւոք հազարապետս
11 պէսպէս շնորհացն Աստուծոյ ։ Եթէ ոք խօսեսցի՝
իբրև զԱստուծոյ պատգամս ․ եթէ ոք մատակարա–
րիցէ՝ իբրև ՚ի զօրութենէ զոր շնորհէ Աստուած ․
զի յամենայնի փառաւորեսցի Աստուած ՚ի ձեռն
Յիսուսի Քրիստոսի , որում փառք և զօրութիւն
յաւիտեանս ամէն ։
12 Սիրելիք՝ մի՛ օտարոտի համարել զեռանդն ինչ՝
որ ՚ի փորձութիւն ձեզ լինիցի , որպէս թէ օտար
13 ինչ իրք ձեզ դիպիցին ․ Այլ իբրև հաղորդեալք
Քրիստոսի չարչարանացն՝ ուրա՛խ լինիջիք , զի և
՚ի յայտնութեան փառաց նորա ցնծացեալք բերկ–
14 րեսջիք ։ Իսկ եթէ նախատիցիք ևս վասն անուանն
Քրիստոսի , երանելի էք ․ զի փառացն՝ և զօրու–
թեան անուն է , և Աստուծոյ Հոգին ՚ի վերայ ձեր
15 հանգուցեալ է ։ Մի՛ ոք ՚ի ձէնջ չարչարեսցի իբրև
զսպանող , կամ իբրև զգող , կամ իբրև զչարա–
16 գործ , կամ իբրև զօտարատեսուչ ։ Ապա եթէ իբրև
զքրիստոնեայ՝ մի՛ ինչ ամաչեսցէ ․ այլ փառաւոր
17 արասցէ զԱստուած անուամբս այսուիկ ։ Զի ժա–

ժամանակ է սկիզբն լինելոյ դատաստանին 'ի տանէն
Աստուծոյ. զի եթէ նախ 'ի մէնջ, իսկ զի՞նչ
կատարած այնոցիկ իցէ՝ որ ոչ հաւանեցան Աս-
18 տուծոյ աւետարանին: Եւ եթէ արդարն հազիւ
կեցցէ, իսկ ամբարիշտն և մեղաւորն ո՞ւր գտանիցի:
19 Որպէս զի որ չարչարին ըստ Աստուծոյ կամացն,
հաւատարիմ Հաստչին աւանդեսցեն զիւրեանց ոգիս
բարերարութեամբք:

## ԳԼ. Ե

1 Զերիցունս այսուհետև աղաչեմ՝ իբրև զերիցա-
կից՝ և վկայ չարչարանացն Քրիստոսի, որ և հան-
2 դերձեալ փառացն յայտնելոց հաղորդ. Արածեցէք
որ 'ի ձեզ հօտդ է Աստուծոյ. վերակացու լինել՝
մի՛ իբրև ակամայ՝ այլ կամաւ ըստ Աստուծոյ. մի՛
3 զօշաքաղութեամբ, այլ յօժարութեամբ. Մի՛ իբ-
րև տիրելով վիճակացն, այլ լինել օրինակ հօտին:
4 Զի յերևել Հովուապետին՝ ընդունիջիք զանթա-
5 ռամ փառացն պսակ: Այնպէս և երիտասարդք՝
հնազանդ լերուք ծերոց: Ամենեքեան ընդ միմեանս
զխոնարհութիւն ունիցի՛ք. զի Աստուած ամբարտա-
ւանից հակառակ կայ, տայ շնորհս խոնարհաց:
6 Խոնարհեցարո՛ւք ընդ հզօր ձեռամբն Աստուծոյ.
7 զի զձեզ բարձրացուսցէ 'ի ժամանակի: Զամե-
նայն հոգս ձեր ընկեցէ՛ք 'ի նա, զի նա է՝ որ հո-
գայ վասն ձեր:
8 Արթո՛ւն լերուք՝ հսկեցէ՛ք, զի ոսոխն ձեր Սա-
տանայ իբրև զառիւծ գոչէ, շրջի և խնդրէ՝ թէ զո՛

9 կլանիցէ ։ Որում 'ի դիմի հարկանիցիք հաստատ-
եալք հաւատովք · գիտասջի՛ք զնոյն անցս չարչա-
րանաց եղբայրութեան ձերոյ յաշխարհի յանձինս
10 կատարել ։ Եւ Աստուած ամենայն շնորհաց՝ որ
կոչեաց զձեզ յիւր 'ի յաւիտենական փառսն Քր-
իստոսիւ Յիսուսիւ , *որում փոքր մի եղերուք
չարչարակիցք" , նա կազդուրեցուսցէ , կարողացուս-
11 ցէ , հաստահիմն արասցէ ։ Նմա իշխանութիւն և
12 փառք յաւիտեանս ամէն ։ 'Ի ձեռն Սիղուիանոսի
հաւատարիմ եղբօր , որպէս կարծեմ՝ փոքր 'ի շա-
տէ գրեցի առ ձեզ՝ մխիթարել , և 'ի վերայ սորին
վկայել · զի և այս ճշմարիտ շնորհք Աստուծոյ են՝
13 յոր հաստատեալ կայցէք ։ Ողջո՛յն տայ ձեզ որ 'ի
Բաբելոն ընտրելակից եկեղեցին է , և Մարկոս որ-
14 դի իմ ։ Ողջո՛յն տաջիք միմեանց 'ի համբոյր սըր-
բութեան ։ Խաղաղութիւն ընդ ձեզ ամենեսին , որ
էք 'ի Քրիստոս Յիսուս · ամէն ։

---

* 'Ի Յոյնն , յետ փոքր մի չարչարեալ գոլոյ

# ԹՈՒՂԹ

# ԿԱԹՈՂԻԿԵԱՅ

## ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԵՐԿՐՈՐԴ

~~~~~~~~~~~

## ԳԼ. Ա.

1 ՇՄԱՒՈՎՆ Պետրոս ծառայ և առաքեալ Յի-
սուսի Քրիստոսի, որոց հանգիտապատիւ մեզ
հասէքդ հաւատոց յարդարութիւն Աստուծոյ մերոյ
2 և փրկչին Յիսուսի Քրիստոսի: Շնորհք ընդ ձեզ՝
և խաղաղութիւն բազմասցի գիտութեամբն Աստու-
3 ծոյ՝ և Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ: Որպէս
ամենայն ինչ մեզ՝ իւրոյ աստուածեղէն զօրութեանն
առ ’ի կեանս և յաստուածպաշտութիւն շնորհեալ.
’ի ձեռն գիտութեան այնորիկ, որ կոչեաց զմեզ
4 յիւր ’ի փառս և ’ի վայելչութիւն: Որով մեծա-
մեծքն և պատուական աւետիք պարգևեալ են զմ.
զի նոքիմբք աստուածեղէն բնութեան լինիցիմք հա-
ղորդակիցք, փախուցեալք ’ի ցանկութեանց աշ-
5 խարհիս և յապականութեանց: Եւ սմին այսմիկ
զամենայն փոյթ ’ի մէջ առեալ՝ ձերովք հաւատովքն
մատակարարեսջիք զառաքինութիւն, և առաքինու-
6 թեամբն զգիտութիւն, Եւ գիտութեամբն զժուժ-
կալութիւն, և ժուժկալութեամբն զհամբերութիւն,
~~~~~~~~~~~

7 և համբերութեամբն զաստուածպաշտութիւն, Եւ
աստուածպաշտութեամբն զեղբայրսիրութիւն, և
8 եղբայրսիրութեամբն զսէր: Զայսոսիկ ձեր յան֊
ձին կալեալ՝ և 'ի սոյն յաճախեալ, ո՛չ դատարկս
և անպտուղս զձեզ հաստատիցեն 'ի Տեառն մերոյ
9 Յիսուսի Քրիստոսի գիտութիւնն: Իսկ յոր ոչն
իցեն սոքա մերձ, կոյր է և զաչացու. 'ի մոռացօնս
դարձուցեալ զսրբութիւն առաջնոց իւրոցն յանցա֊
10 նաց: Վասն որոյ եղբարք՝ առաւել փութասջիք՝
զի բարեացն գործովք հաստատուն զձեր կոչումնն
և զընտրութիւն պահիցէք: Զայս արարեալ՝ ո՛չ
11 երբէք յանցանիցէք. Զի այսպէս առատապէս շնոր֊
հեսցի ձեզ մուտ 'ի յաւիտենական արքայութիւն
Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի:
12 Որով պատրաստեցեմ միշտ ձեզ յիշեցուցանել
վասն սոցին, առաւել ևս գիտակացն և հաստատե֊
13 լոցն՝ եկեալ հասեալ ճշմարտութեանն: Քանզի
իրաւունս համարիմ մինչդեռ եմ 'ի մարմնի աստ՝
14 զարթուցանել զձեզ յիշատակօք: Գիտեմ թէ
վաղվաղակի է լինելոց մերկանալ յինէն մարմնոյս.
որպէս և Տէր մեր Յիսուս Քրիստոս եցոյց ինձ:
15 Եւ փութամ ճեպիմ միշտ զձեզ յորդորել. զի և
յետ իմոյ ելանելոյ յաշխարհէս՝ առնիցէք զյիշա֊
16 տակս այսոցիկ: Քանզի ո՛չ եթէ պաճուճեալ ինչ
առասպելաց զհետ երթեալ ցուցաք ձեզ զՏեառն մե֊
րոյ Յիսուսի Քրիստոսի զզօրութիւնն և զգալուստն.
այլ մեզէն եղեալ ականատեսք նորա մեծութեանն:
17 Քանզի առեալ յԱստուծոյ և 'ի Հօրէ զփառս և
զպատիւ. յեկեալ յայնպիսի բարբառոյ՝ 'ի մեծ վա֊

յելչութեան փառաց անտի . եթէ Դա՛ է որդի իմ
18 սիրելի՝ ընդ որ ես հաճեցայ : Եւ զայս բարբառ
մեք իսկ լուաք եկեալ յերկնից՝ որ ընդ նմա իսկ
19 էաք 'ի սուրբ լերինն : Եւ ունիմք հաստատագոյն
զբանն մարգարէական . որում եթէ անսայցէք՝
բարւո՛ք առնէք . իբրև ճրագի՝ որ տայցէ լոյս 'ի
խաւարչտին տեղւոջ , մինչև տիւն լուսաւորեսցէ , և
արուսեակն ծագեսցէ 'ի սիրտս ձեր :
20 Բայց նախ այսմ գիտակ լինիջիք՝ զի ամենայն
մարգարէութիւն իւրոց գրոց լուծումն ո՛չ ունի :
21 Քանզի ո՛չ եթէ ըստ կամաց մարդկան տուաւ
մարգարէութիւն երբէք , այլ 'ի Հոգւոյն Սրբոյ
կրեալք՝ խօսեցան մարդիկ յԱստուծոյ :

## ԳԼ. Բ

1 Եղեն և սուտ մարգարէք 'ի ժողովրդեանն՝ որ-
պէս և այժմ 'ի ձեզ լինիցին սուտ վարդապետք .
որք սպրդեալ մուծանեն հերձուածս կորստեան , և
զոր Տէր գնեաց զնոսա ուրացեալ՝ ածեն 'ի վե-
2 րայ անձանց զարագահաս կորուստ : Եւ բազումք
անկեալ երթիցեն զհետ նոցա անառակութեանցն .
վասն որոյ ճշմարտութեանն ճանապարհ հայհոյի-
3 ցի : Եւ ագահութեամբ մտացածին *բանիւք առ-
նիցեն զձեզ վտարանդի՝ . որոց դատաստանն 'ի
բնէ ո՛չ դատարկանայ , և կորուստն նոցա ո՛չ նիր-
4 հեսցէ : Զի եթէ 'ի հրեշտակսն յանցուցեալս

† 'Ի Յոյնն , բանիւք 'ի վաճառ արկցեն զձեզ

Աստուած ոչ խնայեաց , այլ խաւարին կապանօք
արկեալ 'ի տարտարոսն ետ պահել 'ի դատաստան :
5 Նա և ոչ 'ի սկզբանն աշխարհի խնայեաց . բայց
զութերորդն զՆոյ' զարդարութեանն քարոզ' պահ-
եաց 'ի ջրհեղեղէ աշխարհի' ամբարշտելոցն ած-
6 եալ : Եւ զքաղաքս Սոդոմայեցւոցն և Գոմորայեցւոց
դարձուցեալ յաճիւն' դատեցաւ , օրինակ առ յա-
7 պայ ամբարշտելոցն կացուցանէր : Եւ զարդարն
զՂովտ ձանձրացեալ յանկարգ գիջութեան գնացից'
8 փրկեաց . Քանզի ականատես և ականջալուր ար-
դարն բնակեալ 'ի մէջ նոցա , որ ըստ օրէ զեւր
սուրբ ոգին' նոցա անօրէն գնացիւքն տանջէր :
9 Գիտէ Տէր զաստուածապաշտս փրկել 'ի փորձու-
թենէ , և զանիրաւս պահել 'ի տանջանս աւուրն
10 դատաստանի . Մանաւանդ' որ զհետ մարմնոյ պղծա-
լից ցանկութեանց իցեն երթեալ . արհամարհօղք տէ-
րութեանն' ժպիրհք' յանդգունք' չզանգիտեն զփառսն
11 հայհոյել : Ուր հրեշտակք զօրութեամբ և * կարո-
ղութեամբ քան զնոսա մեծամեծք' չածեն զնոքօք 'ի
12 Տեառնէ զհայհոյութեանն դատաստան" : Այլ սո-
քա իբրև զանխօս անասունս ըստ բնածին բարուցն
յեղծումն և յապականութիւն' որոց չենն գիտակ ,
հայհոյեն յապականութեան իւրեանց , և ապակա-
13 նեսցին' Տանջեալք 'ի վարձուց անիրաւութեան . որ
ցանկութիւն զաւուրն փափկութիւն համարին .

* 'Ի Յոյնն , կարողութեամբ մեծամեծք' չածեն զնոցանէ զհայհոյութեան դատաստան առաջի Աստուծոյ

բծկանք՝ արատաւորք՝ փափկացեալք 'ի պատիրս
14 իւրեանց • լեալ ձեզ խրախճանակիցք ։ Աչս ունին
հանդոյնս պոռնկաց՝ անդադարս 'ի մեղաց , պատ-
րեն զանձինս յողդյողդաց • որ ունին սիրտ հարեալ
15 զագահութեան , մանկունք անիծից ։ Թողեալ զու-
ղղորդ ճանապարհն՝ մոլորեցան • զհետ երթեալ
ճանապարհին Բաղաամայ Բէովրեան՝ զվարձս ա-
16 նիրաւութեան սիրեցին • Որ կշտամբանս իւրոյ ա-
նօրէնութեանն ստացաւ զէշն անխօսուն • մարդկե-
ղէն բարբառովն բարբառեալ՝ արգել զմարգարէին
17 զանօրէնութիւն ։ Այսպիսիքն են աղբիւրք անջր-
դիք՝ և մէգք վարեալք 'ի մրրկէ • որոց աղջամուղջք
18 խաւարին յաւիտեան պահեալ կան ։ Քանզի մե-
ծաբանս սնոտեաց բարբառեալ պատրեն գիջու-
թեամբք ցանկութեամբք մարմնոյ զայնոսիկ՝ որ ըս-
տոյգն փախչիցին յայնցանէ՝ որ 'ի մոլորութեանն
19 շրջիցին • Նոցա ազատութիւն խոստանան , և ինք-
եանք ապականութեանն ծառայք են • զի որով ի-
20 ւիք յաղթիցի ոք , նորին և ծառայ է ։ Զի եթէ
փախուցեալք 'ի պղծութեանց աշխարհի գիտու-
թեամբ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստո-
սի , և դարձեալ ընդ նոյնս շաղեալք պատիցին՝ ե-
21 ղև նոցա վախճանն չա՛ր քան զառաջինն ։ Զի լաւ
էր նոցա եթէ բնաւ իսկ չէ՛ր ծանուցեալ զարդա-
րութեանն ճանապարհ • քան՝ զի ծանեան և յետս
կացին 'ի սուրբ պատուիրանէն որ նոցա աւանդե-
22 ցաւ ։ Եկեալ 'ի դէպ նոցա ճշմարիտ առակին զգօ-
նութեան , եթէ Շուն դառնայ անդրէն 'ի փսխած
իւր , և խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ ։

## ԳԼ. Գ.

1 Զայս ձեզ սիրելիք՝ երկրորդ թուղթ գրեմ. ու-
րով զարթուցից ՚ի յիշատակ զհաստատուն միտս
2 ձեր. Յիշել զյառաջագոյն ասացեալ պատգամս ՚ի
սրբոց մարգարէից և յառաքելոցն ձերոց, զպատ-
3 ուէրս Տեառն և փրկչին: Բայց զայս նախ գիտաս-
ջիք, զի յաւուրս յետինս եկեսցեն արհամարհօղք՝
այպանօղք, որ ըստ իւրեանց ցանկութեանց գնայ-
4 ցեն. Եւ ասիցեն՝ Ո՞ւր են աւետիք գալստեան նո-
րա. զի յորմէ հետէ հարքն ննջեցին՝ ամենայն ինչ
5 նոյնպէս կայ մնայ ՚ի սկզբանէ արարածոց: Եւ
զայն մոռացեալ իցէ նոցա՝ որ զայսն կամին. եթէ
երկինք եղեն ՚ի սկզբանէ՝ և երկիր ՚ի ջրոց, և
6 ջուրք հաստատեալ բանիւն Աստուծոյ. Վասն ո-
րոյ երբեմն աշխարհ ջրհեղեղաւ ապականեալ կոր-
7 եաւ: Եւ այժմ երկինք և երկիր նովին բանիւ
գանձեալ են, հրոյ պահեալք յօրն դատաստանի՝
8 և կորստեան ամբարիշտ մարդկան: Եւ այս ևս մի՛
լիցի ՚ի ձէնջ ծածկեալ սիրելիք, զի մի օր Տեառն
իբրև զհազար ամ է, և հազար ամ իբրև զմի օր:
9 Ո՛չ յամեցուցէ Տէր զաւետիսն՝ որպէս ոմանք
յամր համարին, այլ երկայնամիտ լինի առ ձեզ.
քանզի ո՛չ կամի՝ եթէ ոք կորիցէ, այլ զամենեցուն
հասանել յապաշխարութիւն:

10 Այլ եկեսցէ օր Տեառն իբրև զգող. յորում
երկինք տագնապաւ անցցեն, և բնութիւնք հրով
կիզեալ լուծցին, և երկիր՝ և որ ՚ի նմա գործք
11 գտանիցին: Եւ ՚ի լուծանել այսպէս այսր ամե-

Նայնի, որպիսի՞ ինչ պարտ իցէ ձեզ գտանել. այլ
12 սուրբ և աստուածապաշտ կարգաւ ակն ունել, Եւ
փութալ հասանել գալստեան աւուրն Տեառն. յո-
րում երկինք հրայրեացք լուծանիցին, և բնութիւնք
13 հրդեհեալ հալիցին: Նորոյ երկնից՝ և նորոյ երկ-
րի ըստ աւետեացն հայեցեալ սպասիցեմք, յորս
14 արդարութիւնն՝ բնակէ: Վասն որոյ սիրելիք՝ այ-
սոցիկ սպասեալ, փոյթ յանձին ունիջիք՝ անբիծք
15 և անարատք գտանել նմա ՚ի խաղաղութիւն. Եւ
զՏեառն երկայնմտութիւնն՝ փրկութիւն համարի-
ջիք: Զոր օրինակ և սիրելի եղբայրն մեր Պօղոս՝
ըստ շնորհելոյ իմաստութեանն նմա յԱստուծոյ՝
16 գրեաց ձեզ. Որպէս և յամենայն իսկ թղթին
խօսի վասն այսոցիկ. յորս գտանի ինչ ինչ դժ-
ուարիմաց, զոր անուսմունքն և յողդողդքն կամա-
կորեն. որպէս և զամենայն իսկ գիրս առ իւրեանց
17 անձանցն կորուստ: Դուք այսուհետև սիրելիք՝ իբ-
րև զկանխագէտս զգուշասջիք, զի մի՛ անառակ մո-
լորութեամբն զգածեալք՝ անկանիջիք յաստեաց
18 հաստատութեանն: Աճեցէք շնորհօք և գիտու-
թեամբն Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիս-
տոսի: Նմա փառք՝ և այժմ, և յօրն յաւիտենից.
Ամէն:

---

# ԹՈՒՂԹ
# ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ
## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌԱՋԻՆ

## ԳԼ. Ա.

1 Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքն՝ որում ակա-
նատեսն իսկ եղեաք. ընդ որ հայեցաքն, և
ձեռք մեր շօշափեցին 'ի վերայ բանին կենաց։
2 Եւ կեանքն յայտնեցան, և տեսաք՝ և վկայեմք և
պատմեմք ձեզ զյաւիտենական կենացն, որ էր առ
3 Հօր՝ և երևեցաւ մեզ։ Զոր տեսաքն և լուաք՝
պատմեմք և ձեզ, զի և դուք հաղորդութիւն ու-
նիցիք ընդ մեզ. և մեր հաղորդութիւնն իցէ ընդ
Հօր՝ և ընդ Որդւոյ իւրում Յիսուսի Քրիստոսի։
4 Եւ զայս գրեմք ձեզ, զի ձեր ուրախութիւնն կա-
5 տարեալ լիցի։ Եւ այս են աւետիքն՝ զոր լուաք
առ 'ի նմանէ՝ և պատմեմք ձեզ. զի Աստուած լոյս
6 է, և խաւար 'ի նմա չիք և ոչ մի։ Եթէ ասիցեմք՝
եթէ հաղորդութիւն ունիմք ընդ նմա՝ և 'ի խաւա-
րի շրջիցիմք, ստեմք՝ և ոչ առնեմք զճշմարտու-
7 թիւնն։ Իսկ եթէ ընդ լոյս գնայցեմք՝ որպէս և նա
'ի լոյս է, հաղորդութիւն ունիմք ընդ միմեանս. և
արիւնն Յիսուսի Որդւոյ նորա սրբէ զմեզ յամենայն

8 մեղաց ։ Եթէ ասիցեմք՝ եթէ Մեղս ինչ մեք ոչ
ունիմք , զանձինս խաբեմք . և ճշմարտութիւն 'ի
9 մեզ ոչ գոյ ։ Ապա եթէ խոստովան լինիցիմք զմեղս
մեր , հաւատարիմ է նա և արդար առ 'ի թողուլ
զմեղս մեր , և սրբել զմեզ յամենայն անիրաւութե-
10 նէ ։ Եւ եթէ ասիցեմք՝ եթէ Ոչինչ մեղաք , սուտ
առնեմք զնա , և բան նորա ոչ է 'ի մեզ ։

## ԳԼ. Բ

1 Որդեակք իմ , զայս գրեմ ձեզ՝ զի մի՛ մեղիջէք ,
և եթէ մեղիցէ ոք , ունիմք բարեխօս առ Աստուած
2 զՅիսուս Քրիստոս՝ զարդարն՝ և զանարատ ։ Եւ նա
է քաւութիւն մեղաց մերոց . և ոչ եթէ մերոցն միայն՝
3 այլ և ամենայն աշխարհի ։ Եւ յայսմիկ գիտեմք՝ ե-
թէ ծանեաք զնա , եթէ զպատուիրանս նորա պահի-
4 ցեմք ։ Որ ասիցէ՝ եթէ Ծանեայ զնա , և զպատուիրանս
նորա ոչ պահիցէ , սուտ է՝ և ճշմարտութիւն 'ի նմա
5 ոչ գոյ ։ Իսկ որ պահիցէ զբան նորա , արդարև 'ի
նմա կատարեալ է սէրն Աստուծոյ . այսուիկ ճա-
6 նաչեմք՝ եթէ 'ի նմա եմք ։ Որ ասիցէ 'ի նմա բնա-
կել , այնպէս պարտի գնալ՝ որպէս և նայն գնաց ։
7 Սիրելիք՝ ոչ եթէ նոր ինչ պատուիրան գրեմ
ձեզ , այլ զհին պատուիրանն՝ զոր 'ի սկզբանէ ու-
նէիք . և հին պատուիրան՝ բանն է զոր լուարուք ։
8 Դարձեալ նոր պատուիրան գրեմ ձեզ՝ որ է ճշմար-
տիւ 'ի նմա և 'ի ձեզ . զի խաւարն անցանէ ։ և
9 լոյսն ճշմարիտ արդէն իսկ երևի ։ Որ ասէ եթէ 'ի
լոյսն իցէ՝ և զեղբայր իւր ատիցէ , սուտ է՝ և 'ի

10 խաւարի է տակաւին։ Որ սիրէ զեղբայր իւր, ՚ի
11 լոյս բնակէ՝ և գայթագղութիւն ՚ի նմա չիք։ Իսկ
որ ատեայ զեղբայր իւր՝ ՚ի խաւարի է, և ընդ
խաւար շրջի. և ո՛չ գիտէ յո՛ երթայ, զի խա-
12 ւարն կուրացոյց զաչս նորա։ Գրեմ ձեզ որդ-
եակք՝ զի թողեալ են ձեզ մեղքն ձեր վասն ան-
13 ուան նորա։ Գրեմ ձեզ Հարք՝ զի ծանեայք դուք
զայն՝ որ ՚ի սկզբանէն է։ Գրեմ ձեզ երիտասարդք՝
14 զի յաղթեցիք դուք չարին։ Գրեցի ձեզ ման-
կունք՝ զի ծանեայք դուք զՀայրն։ Գրեցի ձեզ
Հարք՝ զի ծանեայք դուք զայն որ ՚ի սկզբանէն է։
Գրեցի ձեզ երիտասարդք՝ զի էք դուք Հզօրաց-
եալք՝ և բանն Աստուծոյ ՚ի ձեզ բնակէ, և յաղ-
15 թեցիք դուք չարին։ Մի՛ սիրէք զաշխարհ՝ և մի՛ որ
16 ինչ յաշխարհի է։ Եթէ ոք սիրէ զաշխարհ, ո՛չ
է ՚ի նմա սէր Հօր. զի ամենայն որ ինչ յաշխար-
հի է՝ ցանկութիւն է մարմնոյ, և ցանկութիւն է
աչաց, և ամբարտաւանութիւն աստի կենացս.
17 որ ո՛չ է առ ՚ի Հօրէ, այլ յաշխարհէ աստի է։ Եւ
աշխարհս անցանէ՝ և ցանկութիւնն նորա. իսկ որ
առնէ զկամս Աստուծոյ՝ մնայ յաւիտեան։
18 Որդեակք յետին ժամանակ է, և որպէս լուա-
րուք՝ եթէ նեռն գալոց է, և արդէն իսկ նեռինք
բազումք եկեալ են, որով մարթեմք իմանալ՝ եթէ
19 յետին ժամանակ է։ Առ ՚ի մէնջ ելին, այլ ո՛չ
էին ՚ի մէնջ. զի եթէ ՚ի մէնջ էին՝ ապա առ մեզ
մնային. այլ զի յայտնի լինիցին՝ եթէ ո՛չ էին ա-
20 մենեքին նոքա ՚ի մէնջ։ Եւ դուք օծութիւն ունիք
21 առ ՚ի Սրբոյն, և գիտէք ամենեքին։ Ո՛չ գրեցի

*ձեզ՝ եթէ ոչ գիտէք զճշմարտութիւնն , այլ թէ*
*գիտէք զնա . և թէ՝ զի ամենայն ստութիւն ոչ է 'ի*
22 *ճշմարտութենէ անտի : Իսկ ո՞ իցէ սուտ , եթէ ոչ՝*
*որ ուրանայ եթէ Յիսուս չէ Քրիստոսն . նա իսկ*
23 *է նեռն , որ ուրանայ զՀայր և զՈրդի : Ամենայն*
*որ ուրանայ զՈրդի , և ոչ զՀայր ընդունի . իսկ որ*
24 *խոստովանի զՈրդի , նա և զՀայր ընդունի : Դուք*
*զոր լուարուքն 'ի սկզբանէ՝ 'ի ձեզ բնակեսցէ . զի*
*եթէ 'ի ձեզ բնակեսցէ՝ զոր 'ի սկզբանէն լուարուք ,*
25 *և դուք յՈրդի և 'ի Հայր բնակեսջիք : Եւ այս*
*են աւետիքն՝ զոր աւետարանեաց նա մեզ՝ զկեանսն*
*յաւիտենականս :*
26 *Զայս գրեցի ձեզ , զի մի՛ ոք զձեզ մոլորեցու-*
27 *ցանիցէ : Եւ դուք օծութիւնն՝ զոր ընկալարուք 'ի*
*նմանէ՝ բնակեսցէ 'ի ձեզ . և չէ՛ ինչ պիտոյ՝ թէ*
*ոք զձեզ ուսուսցէ , այլ որպէս զի նորա օծութիւնն*
*ուսուցանիցէ զձեզ վասն ամենայնի . և ճշմարիտ է՝*
*և չէ՛ սուտ . և որպէս ուսոյցն զձեզ , կայք 'ի*
28 *նմա : Եւ այժմ որդեակք՝ կացէ՛ք 'ի նմին . զի ե-*
*թէ յայտնեսցի , ունիցիմք համարձակութիւն , և*
29 *մի՛ ամաչեսցուք 'ի նմանէ 'ի գալստեանն նորա : Զի*
*եթէ գիտիցէք՝ եթէ արդար է նա , իմասջիք՝ եթէ*
*ամենայն որ առնէ զարդարութիւն՝ առ 'ի նմանէ է*
*ծնեալ :*

## ԳԼ. Գ

1 *Տեսէք որպիսի սէր շնորհեաց մեզ Հայր . զի*
*որդիք Աստուծոյ կոչեսցուք և եմք . վասն այսորիկ*

աշխարհ ոչ ճանաչէ զմեզ՝ քանզի ոչ ծանեաւ զնա ։
2 Սիրելիք՝ այժմ որդիք Աստուծոյ եմք, և չև ևս
է յայտ՝ եթէ զի՛նչ լինելոց իցեմք ․ գիտեմք՝ զի
յորժամ նա յայտնեսցի՝ նման նմա լինելոց եմք, զի
3 տեսանելոց եմք] զնա՝ որպէս և էն ։ Եւ ամենայն
որ ունի զայս յոյս յանձին՝ սրբէ զանձն իւր՝ որ-
4 պէս և նայն սուրբ է ։ Ամենայն որ զմեղս գործէ,
նա և զանօրէնութիւն առնէ, և ինքն իսկ մեղքն
5 անօրէնութիւն է ։ Եւ գիտեմք՝ զի նա յայն սակս
յայտնեցաւ՝ զի զմեղս բարձցէ, և 'ի նմա մեղք ոչ
6 են ։ Ամենայն որ 'ի նմա է հաստատեալ՝ ոչ մեղան-
չէ ․ և ամենայն որ մեղանչէ, ոչ եսես զնա՝ և ոչ
7 ծանեաւ զնա ։ Մանկունք՝ մի՛ ոք զձեզ խաբեսցէ ․
որ առնէ զարդարութիւն, արդար է՝ որպէս և նայն
8 արդար է ։ Եւ որ առնէ զմեղս՝ 'ի Սատանայէ է,
զի 'ի սկզբանէ Սատանայ մեղանչէ ․ վասն այսորիկ
յայտնեցաւ Որդին Աստուծոյ՝ զի լուծցէ զգործս
9 Սատանայի ։ Ամենայն որ յԱստուծոյ է ծնեալ՝
մեղս ոչ առնէ, զի սերմն նորա 'ի նմա մնայ ․ և
10 ոչ կարէ մեղանչել, զի յԱստուծոյ է ծնեալ ։ Այս-
ուիկ յայտնի են 'ի միմեանց որդիք Աստուծոյ՝ և
որդիք Սատանայի ։

Ամենայն որ ոչ առնէ զարդարութիւն՝ չէ նա
11 յԱստուծոյ, և որ ոչ սիրէ զեղբայր իւր ․ Զի այս
է պատուիրանն՝ զոր լուարուք 'ի սկզբանէ՝ զի սի-
12 րեսցուք զմիմեանս ։ Ո՛չ որպէս Կայէնն 'ի չարէ ան-
տի էր՝ և սպան զեղբայրն իւր ․ և յո՞ր սակս սպան
զնա ․ զի իւր գործքն չար էին, և եղբօրն բարիք ։
13 Եւ մի՛ ինչ զարմանայք եղբարք, եթէ աշխարհ

14 զմեզ առեալ ։ Մե՛ք գիտեմք՝ զի փոխեցաք ՚ի մահ-
ուանէ ՚ի կեանս, քանզի սիրեմք զեղբարս ․ իսկ որ
15 ոչն սիրէ, անդէն ՚ի մահու մնայ ։ Ամենայն որ ատ-
եայ զեղբայր իւր՝ մարդասպան է ․ և գիտէք՝ զի
ամենայն մարդասպան ո՛չ ունի կեանս յաւիտենա-
16 կանս յանձին հաստատեալ ։ Այսուիկ գիտացաք
զսէրն (Աստուծոյ) ․ զի նա զանձն իւր եդ վասն
մեր ․ և մեք վասն եղբարց մերոց պարտիմք դնել
17 զանձինս ։ Որ ունիցի զկեանս ինչ զաշխարհիս՝ և
տեսանիցէ զեղբայր իւր կարօտեալ իւիք՝ և փակի-
ցէ զգութս իւր առ ՚ի նմանէ, զիա՞րդ սէրն Աս-
տուծոյ ՚ի նմա իցէ բնակեալ ։
18 Որդեակք՝ մի՛ բանիւք և լեզուօք սիրեսցուք, այլ
19 արդեամբք և ճշմարտութեամբ ։ Եւ այսուիկ լի-
ցուք ծանուցեալք՝ եթէ ՚ի ճշմարտութենէ անտի
իցեմք ․ և առաջի նորա արասցուք հանդէս սրտից
20 մերոց ։ Եթէ ստգտանիցեն զմեզ սիրտք մեր՝ այլ
Աստուած մեծ է քան զսիրտս մեր՝ և գիտէ զամե-
21 նայն ։ Սիրելիք՝ եթէ սիրտք մեր զմեզ ո՛չ ստգտա-
նիցեն, համարձակութիւն ունիմք առ Աստուած ․
22 Եւ զոր ինչ հայցեմք, առնումք ՚ի նմանէ ․ զի
զպատուիրանս նորա պահեմք, և զհաճոյս առաջի
23 նորա առնեմք ։ Եւ այս է պատուիրան նորա, զի
հաւատասցուք յանուն Որդւոյ նորա Յիսուսի Քրի-
ստոսի, և սիրեսցուք զմիմեանս, որպէս և ետ
24 մեզ պատուէր ։ Եւ որ պահէ զպատուիրանս նո-
րա, ՚ի նմա է հաստատեալ՝ և նա ՚ի սմա ․ և յայս-
մանէ գիտեմք եթէ բնակէ ՚ի մեզ ՚ի Հոգւոյ անտի՝
զոր ետ մեզ ։

## ԳԼ. Դ

1 Սիրելիք՝ մի՛ ամենայն հոգւոյ հաւատայք. այլ
ընտրեցէ՛ք զհոգիսն՝ եթէ յԱստուծոյ իցեն. զի բա-
2 զում սուտ մարգարէք ելեալ են յաշխարհ։ Եւ
մեք այսուիկ ճանաչեմք զհոգին Աստուծոյ։ Ամե-
նայն հոգի՝ որ խոստովանի զՅիսուս Քրիստոս
3 մարմնով եկեալ, յԱստուծոյ է նա. Եւ ամենայն
հոգի որ ո՛չ խոստովանի զՅիսուս մարմնով եկեալ,
չէ՛ նա յԱստուծոյ. և այս Նեռինն է, զորմէ լուա-
րուք՝ եթէ գալոց է, և արդէն իսկ յաշխարհի
4 է։ Դուք յԱստուծոյ էք որդեակք, և յաղթեցիք
նոցա. զի մեծ է որ ՚ի ձեզդ է՝ քան զայն որ յաշ-
5 խարհին է։ Նոքա յաշխարհէ են, վասն այնորիկ
6 յաշխարհէ խօսին, և աշխարհ լսէ նոցա։ Մե՛ք
յԱստուծոյ եմք. որ զԱստուած ճանաչէ՝ լսէ մեզ, և
որ չէ՛ յԱստուծոյ՝ ո՛չ լսէ մեզ. այսուիկ ճանաչեմք
զհոգին ճշմարտութեան և զհոգին խաբէութեան։
7 Սիրելիք՝ սիրեսցո՛ւք զմիմեանս, զի սէր յԱստու-
ծոյ է. և ամենայն որ սիրէ՝ յԱստուծոյ է ծնեալ՝
8 և ճանաչէ զԱստուած։ Եւ որ ո՛չն սիրէ՝ ո՛չ ճանա-
9 չէ զԱստուած, զի Աստուած սէր է։ Եւ զի յայսմ
երևեցաւ սէրն Աստուծոյ ՚ի մեզ, զի զՈրդին իւր
միածին առաքեաց յաշխարհ, զի եղիցուք նովաւ
10 կենդանիք։ Յայսմ է սէրն. ո՛չ զի մեք սիրեցաք
զԱստուած՝ այլ զի նա սիրեաց զմեզ, և առաք-
եաց զՈրդին իւր ՚ի քաւութիւն մեղաց մերոց։
11 Սիրելիք՝ եթէ Աստուած այնպէս սիրեաց զմեզ,
ապա և մեք պարտիմք զմիմեանս սիրել։

12 ԶԱստուած ուրուք երբէք չէ ոք տեսեալ. եթէ սի-
րեսցուք զմիմեանս՝ Աստուած ՚ի մեզ բնակէ, և սէր
13 նորա ՚ի մեզ կատարեալ է։ Այսուիկ գիտեմք, եթէ
մեք ՚ի նմա բնակեալ եմք՝ և նա ՚ի մեզ, զի ՚ի
14 Հոգւոյն իւրմէ ետ մեզ։ Եւ մեք տեսաք՝ և վկայեմք,
զի Հայր առաքեաց զՈրդին իւր փրկիչ աշխարհի։
15 Որ ոք խոստովանեսցի՝ եթէ Յիսուս է Որդի Աս-
տուծոյ, Աստուած ՚ի նմա բնակէ՝ և նա յԱստ-
16 ուած։ Եւ մեք հաւատացաք՝ և ծանեաք զսէրն
Աստուծոյ՝ զոր ունի առ մեզ։ Աստուած սէր է, և
որ կայ ՚ի սէրն՝ բնակեալ է յԱստուած, և Աստ-
17 ուած ՚ի նմա բնակէ։ Յայսմիկ կատարեալ է սէրն
նորա ՚ի մեզ. զի համարձակութիւն ունիցիմք յա-
ւուրն դատաստանի. զի որպէս և նայն է՝ նոյնպէս
18 և մեք եմք յաշխարհիս յայսմիկ։ Երկիւղ ո՛չ գոյ
՚ի սէր, այլ սէրն կատարեալ ՚ի բաց մերժէ զեր-
կիւղն. զի երկիւղ ընդ տանջանօք է. իսկ որ եր-
19 կնչին, չէ՛ կատարեալ ՚ի սէրն։ Մե՛ք սիրեսցո՛ւք
20 զԱստուած, վասն զի նա նախ սիրեաց զմեզ։ Ե-
թէ ոք ասիցէ՝ եթէ Սիրեմ զԱստուած, և զեղ-
բայր իւր ատիցէ, սուտ է. որ ո՛չ սիրէ զեղբայր
իւր՝ զոր տեսանէ, զԱստուած զոր ո՛չն ետես՝ զի-
21 ա՞րդ կարիցէ սիրել։ Եւ զայս պատուէր ունիմք
առ ՚ի նմանէ, զի որ սիրէ զԱստուած՝ սիրէ նա և
զեղբայր իւր։

## ԳԼ. Ե

1 Ամենայն որ հաւատայ՝ եթէ Յիսուս է Քրիս-
տոս, յԱստուծոյ ծնեալ է. և ամենայն որ սիրէ

2 զծնօղն, սիրէ և զծնեալն 'ի նմանէ: Այսուիկ
ճանաչեմք՝ եթէ սիրեմք զՈրդին Աստուծոյ, յոր-
ժամ զԱստուած սիրեսցուք՝ և զպատուիրանս նորա
3 արասցուք: Զի այս է սէրն Աստուծոյ, եթէ
զպատուիրանս նորա պահեսցուք. և պատուիրանք նո-
4 րա չեն ինչ ծանունք: Զի ամենայն որ յԱստուծոյ
ծնեալ է, յաղթէ աշխարհի. և այս է յաղթութիւնն՝
5 որ յաղթէ աշխարհի, հաւատքն մեր: Եւ ո՞ իցէ՝ որ
յաղթիցէ աշխարհի. եթէ ոչ՝ որ հաւատայցէ՝ եթէ
6 Յիսուս է Որդի Աստուծոյ: Սա՛ է՝ որ եկն ջրով և
հոգւով և արեամբ, Յիսուս Քրիստոս. ո՛չ ջրով
միայն, այլ և արեամբ և ջրով. և Հոգին է՝ որ
7 վկայէ, զի Հոգին իսկ է ճշմարտութիւն: (Զի
երեք են որ վկայեն յերկինս. Հայր, Բանն, և Հո-
8 գին Սուրբ. և երեքինս մի են: Եւ երեք են որ
վկայեն յերկրի. հոգի, ջուր, և արիւն. և երե-
9 քինն * մի են":) Եթէ զմարդկան ինչ վկա-
յութիւն ունիցիմք, ապաքէն Աստուծոյ վկայու-
թիւնն մեծ իցէ: Այս է վկայութիւնն Աստուծոյ,
10 զի վկայեաց 'ի վերայ Որդւոյն իւրոյ: Որ հաւա-
տայ յՈրդին Աստուծոյ, ունի յանձին զվկայու-
թիւնս զայս. որ ո՛չ հաւատայ Որդւոյ Աստուծոյ,
սուտ առնէ զնա. քանզի ո՛չ հաւատայ վկայու-
թեանն՝ զոր վկայեաց Աստուած 'ի վերայ Որդւոյն
11 իւրոյ: Եւ այս իսկ է վկայութիւնն, զի կեանս
յաւիտենականս ետ մեզ Աստուած. և այս են
12 կեանքն՝ որ յՈրդին նորա են: Որ ընդունի զՈրդին,

---

* 'Ի Յոյնն, 'ի միում են

ընդունի և զկեանս · և որ ոչ ընդունի զՈրդին Աս-
տուծոյ , և ոչ զկեանս ընդունի ։
13 Զայս գրեցի ձեզ՝ զի գիտասջիք եթէ կեանս յա-
ւիտենականս ունիք · և զի հաւատայցէք յանուն
14 Որդւոյն Աստուծոյ ։ Եւ այս է համարձակութիւնն
զոր ունիմք մեք առ նա , զի զոր ինչ հայցեսցուք
15 ըստ կամաց նորա , լսէ մեզ ։ Զի եթէ գիտիցեմք՝
եթէ լսէ հայցուածոցն մերոց , ապա գիտեմք՝ եթէ
առնումք զհայցուածսն՝ զոր հայցեմք առ 'ի նմանէ ։
16 Եթէ ոք տեսցէ զեղբայր իւր մեղուցեալ մեղս՝ որ
ոչ առ 'ի մահ , խնդրեսցէ՝ և տացէ նմա կեանս՝
մեղուցելոյն ոչ առ 'ի մահ · են մեղք՝ որ մահու-
չափ են , ոչ վասն այնորիկ ասեմ եթէ խնդրես-
17 ցես ։ Ամենայն անիրաւութիւն՝ մեղք են · և են մեղք՝
18 որ մահուչափ * են ։ Գիտեմք եթէ ամենայն որ յԱս-
տուծոյ է ծնեալ՝ ոչ մեղանչէ · այլ որ յԱստուծոյն է
ծնեալ՝ պահէ զանձն , և չարն առ նա ոչ մերձենայ ։
19 Գիտեմք եթէ յԱստուծոյ եմք , և աշխարհ ամե-
20 նայն 'ի չարի կայ ։ Եւ գիտեմք՝ եթէ Որդին Աս-
տուծոյ եկն , և ետ մեզ միտս · զի ծանիցուք
զճշմարիտն · և եմք 'ի ճշմարտին Որդւոյ նորա Յի-
սուսի Քրիստոսի · զի նա է ճշմարիտ Աստուած՝
21 և կեանք յաւիտենական ։ Որդեակք՝ պահեցէք
զանձինս 'ի կռապաշտութենէ ։

---

* Ի Յոյնն , չեն

---

# ԹՈՒՂԹ

# ԿԱԹՈՂԻԿԵԱՅ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ ԵՐԿՐՈՐԴ

1 Յերիցուէ առ ընտրեալ Կիւրիա, եւ առ որ-
դեակս իւր, զոր ես սիրեմ ճշմարտութեամբ,
եւ ոչ եթէ ես միայն, այլ եւ ամենեքեան, որք
2 գիտակ են ճշմարտութեանն. Վասն որոյ *ճշ-
մարտութեանն՝ որ 'ի մեզ հաստատեալ է, զի եւ
ընդ ձեզ իցէ. եւ դուք յաւիտենից ընդ մեզ ի-
3 ցէք": Շնորհք՝ ողորմութիւն՝ խաղաղութիւն
յԱստուծոյ 'ի Հօրէ, եւ 'ի Տեառնէ Յիսուսէ
Քրիստոսէ Որդւոյն Հօր, ճշմարտութեամբ եւ սի-
4 րով եղիցին ընդ ձեզ: Ուրախ եղէ յոյժ, զի գտի
յորդեկաց քոց՝ որ գնան ճշմարտութեամբ, ըստ
5 պատուիրանին զոր առաք 'ի Հօրէ: Եւ այժմ ա-
ղաչեմ զքեզ Կիւրիա. իբրեւ ոչ եթէ նոր ինչ
պատուիրան գրեմ քեզ, այլ զոր 'ի սկզբանէն ու-
6 նէաք, զի սիրեսցուք զմիմեանս: Եւ այս է սէրն,
զի գնասցուք ըստ պատուիրանաց նորա. եւ այս է
պատուիրանն, զի որպէս լուարուքն 'ի սկզբանէ՝

* 'Ի Յոյնն, ճշմարտութեանն որ 'ի մեզ հաստատ-
եալ է. եւ ընդ մեզ եղիցի յաւիտեան

7 ըստ նմին գնասջի՛ք ։ Զի բազում մոլորեցուցիչք
ելին յաշխարհ․ որ ոք ոչ խոստովանին զՅիսուս
Քրիստոս եկեալ մարմնով, նա մոլորեցուցիչ է և
նեռն ։
8 Զգոյշ լինիջիք անձանց՝ զի մի՛ կորուսանիցէք՝
զոր վաստակեցէքն, այլ զի առնուցուք բովանդակ
9 զվարձս ։ Ամենայն որ յանցանէ՝ և ոչ կայ ՚ի վար-
դապետութեանն Քրիստոսի, զԱստուած ոչ ճա-
նաչէ․ որ կայ ՚ի վարդապետութեանն, նա՝ և զՈր-
10 դի և զՀայր ընդունի ։ Եթէ ոք գայցէ առ ձեզ՝
և զվարդապետութիւնս զայս ոչ ունիցի, մի՛ ըն-
դունիցիք զնա ՚ի տուն, և մի՛ ողջոյն տայցէք նմա ։
11 Որ ասասցէ նմա Ողջոյն՝ կցորդ լիցի չարաց
12 գործոց նորա ։ Բազում ինչ ունէի գրել առ ձեզ՝
այլ ոչ կամեցայ քարտիսիւ և դեղով գրել․ զի
ակն ունիմ ինձէն իսկ գալ առ ձեզ, և բերան ՚ի
բերան խօսել․ զի ուրախութիւնն մեր լիցէ կատար-
13 եալ ։ Ողջոյն տան քեզ որդիք քեռ քո ընտրելոյ ։
Շնորհք ընդ ձեզ ։

# ԹՈՒՂԹ

# ԿԱԹՈՂԻԿԵԱՅ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ ԵՐՐՈՐԴ

1 ՅԵՐԻՑՈՒԷ առ Գայիոս սիրելի. զոր ես սիրեմ
2 ճշմարտութեամբ: Սիրելի՛ վասն ամենայն
իրաց քոց յաջողութեան և առողջութեան՝ աղօթս
առնեմ. որպէս է իսկ յաջողութիւն անձինդ քո:
3 Յոյժ ուրախ եղէ 'ի գալ եղբարց՝ և լինել վկայ
քոյոյ ճշմարտութեանդ, որպէս գնաս դու ճշմար-
4 տութեամբ: Մեծ ևս ինչ ուրախութիւն քան
զայս ոչ ունիմ, զի լսեմ եթէ իմ որդեակքն ճշ-
5 մարտութեամբ գնան: Սիրելի՛ հաւատարիմ գոր-
ծես զայդ, զոր եթէ առնիցես առ եղբարս՝ զդոյն
6 և առ օտարս. Որք վկայեցին զքո սիրոյդ առաջի
եկեղեցւոյ. որոց բարիս արարեալ յուղարկես ար-
7 ժանիս Աստուծոյ: Զի վասն անուանն ելին, և
8 ոչինչ յումեքէ առնուն զհեթանոսականացն: Մեք
այսուհետև պարտիմք ընդունել զայնպիսիսն, զի
գործակիցք լինիցուք ճշմարտութեանն:
9 Գրեցի ինչ եկեղեցւոյն. այլ որ յառաջադէմն
'ի նոցանէ է՝ Դիոտրեփէս, ոչ ընդունի զմեզ:
10 Վասն այսորիկ եթէ եկից՝ յիշեցուցից զգործս նո-
րա՝ զոր առնէ, բանիւք չարեօք շատախօսութեան

առնէ զմեզ աշխատ. և ոչ այսոքիւք շատացեալ,
ոչ ինքն ընդունի զեղբարս, և զայնոսիկ որ ընդու-
11 նին, արգելու. նաև յեկեղեցւոյ ևս հանէ: Սի-
րելի՛ մի՛ լինիցիս նմանօղ չարի՛ այլ բարւոյ. զի որ
զբարիս առնէ՝ յԱստուծոյ է. և որ զչարիս գործէ՝
12 նա ոչ ետես երբէք զԱստուած: Զդեմետրեայ վը-
կայեալ է յամենեցունց, և յեկեղեցւոյն՝ և 'ի
ճշմարտութենէ, և մեք վկայեմք. և դու գիտես՝
13 զի ճշմարիտ է մեր վկայութիւնն: Բազում ինչ
ունէի գրել քեզ. այլ ոչ կամիմ քարտիւ և
14 դեղով գրել: Զի ակն ունիմ 'ի մօտոյ իսկ տե-
15 սանել զքեզ, և բերան 'ի բերան խօսել: Խաղա-
ղութիւն ընդ քեզ: Ողջոյն տան քեզ սիրելիք: Ող-
ջոյն տացիր սիրելեաց մերոց իւրաքանչիւր յան-
ուանէ:

# ԹՈՒՂԹ
# ԿԱԹՈՂԻԿԵԱՅ
## ՅՈՒԴԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅ

1 ՅՈՒԴԱ Յիսուսի Քրիստոսի ծառայ, և եղբայր
Յակովբայ. * Հեթանոսաց՝ որ յԱստուծոյ
Հօրէ էք սիրեցեալք". և Յիսուսի Քրիստոսի
2 պահեալք և ընտրեալք: Ողորմութիւն ձեզ՝ և խա-
3 ղաղութիւն և սէր բազմասցի: Սիրելիք՝ զամենայն
փոյթ յանձին կալեալ գրել ձեզ վասն մերոյ հա-
սարակաց փրկութեան, հարկ յանձին կալայ գրել
ձեզ, և աղաչել՝ զի ճգնիցիք 'ի վերայ հաւատոցն,
4 որ միանգամ աւանդեցաւն սրբոց: Քանզի սպրդե-
ցին մտին ոմանք, որ յառաջագոյն իսկ կատար-
եալ էին 'ի սոյն դատաստան. ամբարիշտք, որ
զԱստուծոյ մերոյ շնորհսն դարձուցին յանկարգու-
թիւն. և զմի միայն Իշխանն՝ և զՏէր մեր Յիսուս
5 Քրիստոս ուրացեալք: Յիշեցուցանել ձեզ այ-
սուհետև կամ է ինձ՝ որ գիտէքդ զամենայն. զի
Աստուած միանգամ զժողովուրդն փրկեաց յԵ-
գիպտոսէ. երկրորդ անգամ զանհաւատսն կորոյս:
6 Եւ զհրեշտակս՝ որ ոչ պահեցին զիւրեանց իշխա-

---

* Ի Յոյնն, որոց յԱստուծոյ Հօրէ էք սրբեցեալք

*նութիւնն , այլ թողին զիւրեանց բնակութիւնն , 'ի
դատաստանս մեծի աւուրն՝ մշտնջենաւոր կապանօք
7 պահեաց 'ի խաւարի ։ Որպէս Սոդոմ և Գոմոր , և
որ շուրջ զնոքօք քաղաքքն , որ ըստ նմին օրինա-
կի պոռնկեցան զհետ ընկերացն մարմնոց , կան ա-
ռաջի օրինակ՝ զյաւիտենական հրոյն ընկալեալ զդա-
8 տաստան ։ Ըստ նմին օրինակի և սոքա իբրև քնով
դանդաչեալք՝ զմարմին պղծեն , զտէրութիւնս քա-
9 մահեն՝ զփառս հայհոյեն ։ Ուր Միքայէլ հրեշտա-
կապետ՝ յորժամ բանսարկու Սատանայի վիճեալ
տայր պատասխանի վասն Մովսիսեան մարմնոյն ,
ոչ ժպրհեցաւ հայհոյութեան դատաստանին հան-
10 դուրժել . այլ ասէ , Սաստեսցէ 'ի քեզ Տէր ։ Իսկ
սոքա զոր ինչ ոչն իմանան՝ հայհոյեն . և զայլն ևս՝
զոր բնութեամբ իբրև զանխօս անասունս գիտեն ,
11 'ի նոսին ապականեսցին ։ Վա՜յ է նոցա , զի ըստ
ճանապարհին Կայենի գնացին , և ըստ մոլորութեանն
Բաղաամայ զեղխեցան զհետ վարձուց , և ըստ
հակառակութեանն Կորխայ կորեան ։
12 Սոքա են առեցեալք շոգմոգք՝ երթեալ զհետ
ցանկութեանց իւրեանց . 'ի սէրս իւրեանց խարդա-
խութեամբ , լինին ընդ ձեզ ուրախակիցք . աներկիւղ
զանձինս ճարակեն . ամպք անջրդիք հողմակոծեալք ,
ծառք պտղակորոյսք անպտուղք կրկնամեռք՝ խլեալք
13 արմատաքի . Ալեաստ ալիք ծովու , որ միշտ փրփրեն
զիւրեանց զանձանց զամօթ . աստեղք մոլարք , ո-
14 րոց վիհ խաւարին յաւիտենից պահեալ է ։ Մար-
գարէացաւ վասն նոցա և եօթներորդն յԱդամայ
Ենովք՝ և ասէ . Ահաւասիկ եկն Տէր բիւրովք*

15 *սրբովք հրեշտակօք, Առնել դատաստան ընդ ա-*
*մենայնի, և յանդիմանել զամենայն ամբարիշտս*
*վասն գործոց իւրեանց՝ զոր ամբարշտեցին. և վասն*
*ամենայն խիստ բանից՝ զոր խօսեցան զնմանէ մեղա-*
16 *ւորք և ամբարիշտք: Սոքա են տրտնջօղք և շոգ-*
*մոգք, երթեալք ըստ իւրեանց անձանց ցանկու-*
*թեանց. և բերանք նոցա զամբարտաւանս բարբա-*
*ռին. առնուն ակն երեսաց վասն օգտի:*
17 *Բայց դուք սիրելիք՝ յիշեցէք զկանխասաց բանս*
*զառաքելոցն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.*
18 *Զի ասէին ձեզ, եթէ ՚ի յետին ժամանակս եղի-*
*ցին մարդք արհամարհօղք, երթեալք ըստ իւր-*
19 *եանց ամբարշտութեանցն ցանկութեանց: Սոքա*
*են նշաւակեալք շնչաւորք, որ զհոգին ոչ ունիցին:*
20 **Այլ մեք սիրելիք՝ եղիցուք շինել զանձինս սրբու-*
*թեամբն հաւատոց ՚ի Հոգին Սուրբ. կացցուք յա-*
21 *ղօթս", Պահել զանձինս սիրովն Աստուծոյ. ակն*
*ունել ողորմութեանն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-*
22 *տոսի ՚ի կեանսն յաւիտենականս: † Եւ ոմանց զա-*
23 *տապարտելոց լինիջիք կշտամբիչք, Եւ զոմանս ապ-*

---

* ՚Ի Յոյնն, *Այլ դուք սիրելիք՝ լինիջիք շինել զանձինս սրբութեամբ հաւատոցն, ՚ի Հոգին Սուրբ կալով յաղօթս*

† Երկոքին համարքս այսպէս կան ՚ի Յոյնն,
(22) *Եւ ոմանց ողորմեսջիք ընտրութիւնս առնելով.*
(23) *Եւ զոմանս ապրեցուցանիջիք երկիւղիւ՝ յափշտակեալ ՚ի հրոյ. ատելով և զպատմուճանն որ ՚ի մարմնոյն իցէ աղտեղեալ*

րեցուցանիջիք՝ յափշտակեալ ՚ի հրոյ. և ոմանց
ողորմեսջիք երկիւղիւ դատել, և զպատմուճանն որ
24 ՚ի մարմնոյն իցէ աղտեղեալ" ։ Եւ այնմ, որ կարօղն
է պահել զձեզ անարատս և անբիծս, հաստատել
առաջի իւրոց փառացն աներկեան ցնծութեամբ.
25 Միոյն Աստուծոյ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստո-
սի Տեառն մերոյ՝ փառք՝ մեծութիւն՝ զօրութիւն և
իշխանութիւն յառաջ քան զամենայն յաւիտեանս,
և այժմ և յամենայն յաւիտեանս. Ամէն ։

# ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԵՒ

## ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՉԻ

## ԳԼ. Ա

1 ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ Յիսուսի Քրիստոսի, 'ի ձեռն
որոյ ետ Աստուած ցուցանել ծառայից իւրոց՝
որ ինչ լինելոց է վաղվաղակի. և նշանակեաց առաքելով 'ի ձեռն հրեշտակի իւրոյ, առ ծառայ իւր
2 Յովհաննէս: Որ վկայեաց զվկայութիւն բանին
Աստուծոյ, և զվկայութիւն Յիսուսի Քրիստոսի՝*
զոր ետես. և որ էր՝ և որ լինելոցն էր յետ այնո
3 րիկ": Երանի որ կարդասցէ կամ լուիցէ զբանս
մարգարէութեանս, և պահեսցէ զոր 'ի սմա գրեալ
է. զի ժամանակս մերձեալ է:
4 'Ի Յովհաննէ առ եօթն եկեղեցիս՝ որ են յԱսիայ,
շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ՝
յԷէն՝ և որ էն՝ և որ գալոցն է, և յեօթն զօրու
5 թեանց Հոգւոյն՝ որ է առաջի աթոռոյն իւրոյ. Եւ

---

* 'Ի Յոյնն, և զոր ինչ ետես. Եւ պակասէ, և որ էր՝ և որ լինելոցն էր յետ այնորիկ

'ի Յիսուսէ Քրիստոսէ հաւատարիմ վկայէն, որ
է անդրանիկ 'ի մեռելոց, և իշխան թագաւորու-
թեանց երկրի. որ սիրեաց զմեզ, և եղոյծ զկապանս
6 մեղաց մերոց արեամբն իւրով. Եւ արար զմեզ թա-
գաւորս և քահանայս Աստուծոյ և Հօր իւրոյ. ո-
րում փառք և զօրութիւն՝ այժմ և միշտ և յա-
7 ւիտեանս յաւիտենից. ամէն: Ահաւասիկ գալոց
է ընդ ամպս. և տեսցեն զնա ամենայն աչք,
և տեսցեն զնա ծագք երկրի, և որք խոցե-
ցին զնա՝ ամենեքեան յերկրի, և կոծեսցին 'ի վե-
8 րայ նորա. այո՛ ամէն: Ես եմ Այբ, և ես եմ
Քէ, ասէ Տէր Աստուած, որ էն՝ և որ է՝ և որ
9 գալոցն է՝ Ամենակալ: Ես Յովհաննէս եղբայր
ձեր և հաւասարակից նեղութեան և արքայու-
թեան և համբերութեան որ 'ի Քրիստոս Յիսուս.
եղէ ես 'ի կղզւոջն որ անուանեալ կոչի Պատմոս՝
վասն բանին և վասն վկայութեանն Յիսուսի Քրիս-
10 տոսի: Եւ եղև յիս Հոգի 'ի կիւրակէի աւուր, և
լուայ զձայն զհետ իմ զմեծ իբրև զձայն փողոյ, որ
ասէր ցիս. Ես եմ Ալփա և Ով. առաջին և վեր-
11 ջին. Զոր տեսանես՝ գրեա՛ 'ի գիրս, և տո՛ւր տա-
նել յեօթն եկեղեցիս՝ որ յԵփեսոս և 'ի Զմիւռ-
նիա՝ 'ի Պերգամոն և 'ի Թիւատիրա, և 'ի Սար-
12 դիկէ, 'ի Փիղադեղփիա, և 'ի Լաւոդիկեա: Եւ
դարձայ տեսանել զձայնն՝ որ խօսէր ցիս. և 'ի
13 դառնալն իմում տեսի եօթն ճրագարան ոսկի: Եւ
'ի մէջ եօթն ճրագարանացն նման Որդւոյ մարդոյ,
զգեցեալ պատմուճան պճղնաւոր. և գօտևորեալ
14 առ ստեամբքն գօտի ոսկեղէն. Եւ գլուխ նորա և

հերքն իբրեւ զասր սպիտակ՝ եւ որպէս զձիւն. եւ
15 աչք նորա որպէս բոց հրոյ. Եւ ոտք նորա նման-
եալ պղնձոյ ձուլելոյ ՚ի մէջ հնոցի հրաշէկ. եւ ձայն
16 նորա իբրեւ զձայն ջուրց բազմաց: Եւ ունէր յա-
ջոյ ձեռինն իւրում աստեղս եօթն, եւ ՚ի բերանոյ
նորա ելանէր սուր երկբերանեան. եւ երեսք նորա
17 իբրեւ զարեգակն ճառագայթեալ երեւէին: Եւ իբրեւ
տեսի զնա՝ անկայ առ ոտս նորա իբրեւ զմեռեալ. եւ
եդ ՚ի վերայ իմ զաջ իւր՝ եւ ասէ ցիս. Մի՛ երկնչիր,
18 ես եմ առաջին, եւ ես եմ յետին. Եւ ես եմ
կեանք՝ եւ ես նոյն որ մեռայ, եւ եմ կենդանի,
այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն.
19 եւ ունիմ զփականս մահու եւ դժոխոց: Գրեա՛ զոր
տեսանես՝ որ են, եւ որ յապա՝ եւ որ հանդերձեալ
20 է լինել այս. Զխորհուրդ եօթն աստեղացդ՝ զոր
տեսերդ յաջս իմ, եւ զեօթն ճրագարանս ոսկիս.
եօթն աստեղքն՝ հրեշտակք եօթն եկեղեցեացն են,
եւ ճրագարանքն եօթն՝ եօթն եկեղեցիքն են:

## ԳԼ. Բ

1 Առ հրեշտակ Եփեսացւոց եկեղեցւոյն գրեա՛.
Այսպէս ասէ կարօղն՝ որ ունի զաստեղս եօթն յա-
ջու ձեռին իւրում, եւ շրջի ՚ի մէջ եօթն աշտանա-
2 կի ոսկւոյ: Գիտեմ զգործս քո եւ զվաստակս քո
եւ զհամբերութիւն քո. եւ զի ո՛չ բառնաս զչարս,
եւ փորձեցեր՝ որ ասեն զինքեանս առաքեալս՝ եւ ո՛չ
3 են, եւ Հեբրայեցիս՝ եւ ստեն: Եւ համբերեցեր եւ
վշտացար վասն անուան իմոյ՝ եւ աշխատեցար:

4 Այլ *ունիմ առ քեզ, զի զսէրն քո զառաջին թո-
5 ղեր. Յիշեա այժմ ուստի անկարն՝ և ապաշաւեա՛,
և զառաջին գործսն քո արա՛. ապա թէ ո՛չ՝ գամ
ես վաղվաղակի, և շարժեցից զաշտանակս քո 'ի
6 տեղւոջէ իւրմէ՝ եթէ ո՛չ ապաշխարեսցես: Այդ-
զայս † արա՝ զի ատեսցես՝ զգործսն Նիկողայոսի,
7 զոր ես ատեամ: Որ ունի ականջս լսելոյ, լուիցէ
զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս. Որ յաղթէն, տաց
նմա ուտել 'ի փայտէն կենաց՝ որ է 'ի մէջ դրախ-
8 տին Աստուծոյ: Եւ առ հրեշտակ Զմիւռնացւոց
եկեղեցւոյն գրեա. Այսպէս ասէ Անսկիզբնն և
անվախճանն, որ եղև մեռեալ՝ և կենդանացաւ:
9 Տեսի զգործս քո՝ և զնեղութիւն և զաղքատութիւն,
այլ աղքատութիւն քո մեծութիւն եղիցի. և զհայ-
հոյութիւնն՝ որ ասէին զինքեանս Հրէայս գոլ՝ և
10 չէին ինչ, այլ ժողով Սատանայի: Մի՛ երկնչիր՝
վասն որոյ կամիս չարչարիլ. ահա հանդերձէ Բան-
սարկուն արկանել 'ի ձէնջ 'ի բանտ, զի փորձիցիք,
և ունիք նեղութիւն աւուրս տասն. լե՛ր հաւատա-
րիմ մինչև 'ի մահ, և տաց քեզ զպսակն կենաց:
11 Որ ունի ականջս լսելոյ՝ լուիցէ՛ զինչ Հոգին Սուրբ
ասէ առ եկեղեցիս. Որ յաղթէ, ո՛չ անիրաւի յերկ-
12 րորդ մահուանէն: Եւ առ հրեշտակն՝ որ 'ի Պեր-
գամոյ եկեղեցին, գրեա. Այսպէս ասէ՝ որ ունի
13 զսուրն երկսայրի սրեալ: Տեսի զգործս քո՝ և զի
բնակեալ ես ուր աթոռն է Սատանայի, և ունիս

* 'Ի Յոյնն, ունիմ
† 'Ի Յոյնն, ունիս զի ատես

զանուն իմ, և ո՛չ ուրացար զհաւատս իմ յաւուր
յորում Անթիպաս վկայն իմ հաւատարիմ եղև. զի
վկայ է իմ * հաւատարիմ ամենայն հաւատացելոց՝
որ սպանաւ ՚ի ձէնջ, որ կայք ուր" Սատանայ է
14 բնակեալ: Այլ ունիմ առ քեզ սակաւ. զի կայ
առ քեզ վարդապետութիւնն Բաղաամու՝ որ ու-
սոյց զԲաղակ դնել գայթագղութիւն առաջի որդ-
ւոցն Իսրայէլի, ուտել նոցա զոհեալ՝ և պոռնը-
15 կել: Այսպէս և դու ունիս զվարդապետութիւնն
16 Նիկողայեցւոց՝ զոր ես ատեամ: Արդ ապաշխար-
եա՛, ապա թէ ոչ՝ գամ վաղվաղակի. և պատե-
17 րազմեցայց ընդ նոսա սրով բերանոյ իմոյ: Որ ու-
նիցի ականջս լսելոյ՝ լուիցէ զինչ Հոգին ասէ առ
եկեղեցիս. Որ յաղթէ՝ տաց նմա ուտել ՚ի մանա-
նայէն թաքուցելոյ, և տաց նմա զգիրն սրբութեան.
և գրեալ անուն նոր ՚ի գիրն, զոր ոչ ո՛ք գիտէ՝
18 բայց միայն որ առնուն: Եւ առ հրեշտակն որ ՚ի
Թիւատրոյ եկեղեցին՝ գրեա՛. Այսպէս ասէ Որդին
Աստուծոյ, որոյ աչք իւր են իբրև զբոց հրոյ, և
19 ոտք նորա նման պղնձի ծխելոյ: Տեսի զգործս քո՝
և զսէր և զհաւատ՝ և զպաշտօն քո համբերու-
թեամբ. զի բազում է վաստակ քո վերջինն քան
20 զառաջինն: Այլ †ասեմ առ քեզ բազում. զի թո-
ղեր զկինն զՅեզաբէլ. որ ասէր զինքն մարգարէ,
և ուսուցանէր մոլորութիւն զծառայս իմ՝ պոռնկել
21 և ուտել զզոհեալ: Եւ ետու նոցա ժամանակ ա-

* ՚Ի Յոյնն, հաւատարիմ՝ որ սպանաւ առ ձեզ, ուր
† ՚Ի Յոյնն, ունիմ

պաշխարել զպոռնկութիւնն իւրեանց՝ և ո՛չ ապաշ-
22 խարեցին : Ահաւասիկ ես արկանեմ զնա 'ի հնոց ,
և զգործակիցս իւր ընդ որս շնացաւ՝ 'ի նեղութիւնս
մեծամեծս . եթէ ոչ ապաշխարեսցեն 'ի գործոց
23 իւրեանց : Եւ զորդիս նոցա սպանից մահուամբ .
և ծանիցեն ամենայն եկեղեցիք՝ թէ ես եմ որ յան-
դիմանեմ զերիկամունս և զսիրտս . և տամ ձեզ
24 իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց : Այլ ձեզ ա-
սեմ որք 'ի Թիւատիր էք , և ո՛չ ունիք զվարդա-
պետութիւնս զայս . որ ո՛չ ծանեայք զխորս Սա-
տանայի՝ զոր խօսին . Ո՛չ արկից զձեզ ծանրու-
25 թիւն : Այլ զոր ունիք , պահեցէք՝ մինչև ես գամ :
26 Եւ որ յաղթէ և պահէ զգործս իմ մինչև ցվախ-
ճան , տաց նմա իշխանութիւն 'ի վերայ ազգաց :
27 Եւ հովուեսցէ զնոսա գաւազանաւ երկաթեաւ . և
28 իբրև զանօթ բրտի փշրեսցէ զնոսա : Որպէս և ես
ընկալայ 'ի Հօրէ իմմէ , և տաց նոցա զաստղն ա-
29 ռաւօտուն : Որ ունի ականջս լսելոյ՝ լուիցէ զինչ
Հոգին ասէ առ եկեղեցիս :

## ԳԼ. Գ

1 Եւ առ հրեշտակ Սարդիացւոց եկեղեցւոյն գրեա՛ .
Այսպէս ասէ՝ որ ունի զեօթն Հոգին Աստուծոյ՝ և
զեօթն աստեղս . Տեսի զգործս քո՝ զի անուն կեն-
2 դանւոյ ունիս և մեռեալ ես : Լե՛ր արթուն՝ և
հաստատեա՛ այսուհետև՝ զի հանդերձեալ ես մեռա-
նել . Քանզի ո՛չ գտի զգործս քո կատարեալ ա-
3 ռաջի Աստուծոյ : Արդևօք յիշեա՛ թէ որպէս լու-

արն, և պահեա՛ և ապաշխարեա՛. ապա թէ ո՛չ
զուարթանաս՝ գամ որպէս գող. և ոչ ո՛ք խմա-
4 նայ զգալուստ իմ առ քեզ: Ունիս սակաւ մի զա-
նուն Սարդիացւոցն, որք ո՛չ աղտեղացուցին զհան-
դերձս իւրեանց. և շրջին 'ի սպիտակս՝ որում ար-
5 ժանի եղեն: Որ յաղթէ՝ այսպէս զգեցցի սպիտակս.
և ո՛չ ջնջեսցի անուն նորա 'ի դպրութենէն կենաց.
և խոստովանեցայց զանուն նորա առաջի Հօր իմոյ
6 և առաջի հրեշտակաց: Որ ունի ականջս լսելոյ՝ լուիցէ
7 զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս: Եւ առ հրեշտակն
Փիղադեղփեաց եկեղեցւոյն գրեա՛. Այսպէս ասէ
Սուրբն Ճշմարիտն, որ ունի զփականս Դաւթի.
բանայ՝ և ոչ ո՛ք է որ փակէ, և փակէ՝ և ոչ ո՛ք է որ
8 բանայ: Տեսի զգործս քո. ահա ետու առաջի քո
դուռն բացեալ, զոր ոչ ո՛ք կարէ փակել. զի սա-
կաւիկ ունիս զօրութիւն, և պահեցեր զբանս իմ,
9 և ո՛չ ուրացար զանուն իմ: Ահաւասիկ ես* տամ
քեզ զժողովն Սատանայի, որք ասեն զինքեանս
Հրէայս գոլ՝ և ո՛չ են, այլ ստեն. արարից˝ զնոսա՝
զի եկեսցեն՝ և երկիր պագցեն առաջի ոտից քոց, և
10 ծանիցեն զի ես սիրեցի զքեզ: Զի պահեցեր զբան
համբերութեան իմոյ, և ես պահեցից զքեզ 'ի
ժամ փորձութեան քո. որ հանդերձեալ է գալ
յամենայն տիեզերս փորձել զամենայն բնակեալս
11 յերեսս երկրի: Ահա գամ վաղվաղակի, կա՛լ զոր
12 ունիսդ՝ զի մի՛ ոք առցէ զպսակ քո: Որ յաղթէ՝

---

* Ի Յոյնն, տամ զժողովն Սատանայի, որք . . .
ահաւասիկ արարից

արարից զնա սիւն տաճարի Աստուծոյ իմոյ, և ար-
տաքս այլ մի՛ ևս ելցէ. և գրեցից 'ի վերայ նորա
զանուն Աստուծոյ իմոյ, և զանուն քաղաքի Աս-
տուծոյ իմոյ՝ զնորն Երուսաղէմի, որ իջանելոց է
յերկնից Աստուծոյ իմոյ. և անուն նորա նոր:
13 Որ ունի ականջս՝ լուիցէ զի՛նչ ասէ Հոգին առ ե-
14 կեղեցիս: Եւ առ Հրեշտակն Լաւոդիկեայ եկեղեց-
ւոյն գրեա՛. Այսպէս ասէ Ամէնն՝ Վկայն Հաւա-
տարիմ և ճշմարիտ, Սկիզբն սկզբան արարածոց
15 Աստուծոյ: Գիտեմ զգործս քո՝ զի ո՛չ ցուրտ ես՝
և ո՛չ ջերմ. պարտ էր քեզ ցուրտ լինել՝ և կամ
16 ջերմ: Այլ դու գաղջ ես՝ և ո՛չ ջերմ և ո՛չ ցուրտ,
17 Հանդերձեալ ես փսխել 'ի բերանոյ իմմէ: Զի ա-
սես. Մեծատուն եմ՝ և մեծացայ, և ո՛չ ինչ կա-
րօտ եմ. և ո՛չ գիտես՝ եթէ դու ես ողորմելի և
18 Հեղգ և աղքատ՝ մերկ և կոյր: Արդ՝ ես խորհր-
դակից եղէց քեզ, ա՛ռ գնեա՛ յինէն ոսկի փորձեալ
'ի Հրոյ՝ զի մեծասցիս, և Հանդերձս սպիտակս՝ զի
զգեցցիս, զի մի՛ երևեսցի անվայելչութիւն մերկու-
19 թեան քո. և դի՛ր դեղ յաչս քո՝ զի տեսցես: Ես՝
զոր սիրեմ, յանդիմանեմ և խրատեմ. Նախանձ-
20 եա՛ այժմ, և ապաշխարեա՛: Ահաւասիկ կամ ես
առ դուրս և բախեմ. եթէ ոք լուիցէ ձայնի իմում՝
և բանայցէ զդրունս, մտից առ նա՝ և ընթրիս ա-
21 րարից առ նա, և նա ընդ իս: Որ յաղթէ՝ տաց
նմա նստել ընդ իս յաթոռ իմ, որպէս և ես
22 յաղթեցի՝ և նստայ յաթոռ Հօր իմոյ: Որ ունիցի
ականջս՝ լուիցէ զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս:

## ԳԼ. Դ

1 Եւ յետ այսր ամենայնի տեսի՝ և ահա դրունք
երկնից բացեալ էին, և ձայն փողոյն առաջնոյ
զոր լուայ՝ խօսէր ընդ իս և ասէր. Ել այսր՝ և
ցուցից քեզ՝ զինչ լինելոց է յապա ժամանակս։
2 Եւ ժամանեալ յիս Հոգի, և տեսի աթոռ մի զի
3 կայր յերկինս։ Եւ 'ի վերայ աթոռոյն նստէր նման
4 տեսլեան ականց յասպւոյ և սարդիոնի։ *Եւ քա-
հանայք շուրջ զաթոռովն նմանք տեսլեան զմրըխ-
տի". և շուրջ զաթոռովն աթոռք քսան և չորք,
և 'ի վերայ աթոռոցն նստէին քսան և չորք երի-
ցունք՝ զգեցեալ հանդերձս սպիտակս, և 'ի գլուխս
5 իւրեանց պսակս ոսկիս։ Եւ յաթոռոյ անտի ելա-
նէին փայլատակմունք և ձայնք և որոտմունք. և
եօթն ղամբարք հրոյ բորբոքելոյ առաջի աթոռոյն,
6 որ են եօթն Հոգիքն Աստուծոյ։ Եւ էր առաջի ա-
թոռոյն ծով ապակեղէն՝ նման սպիտակութեան
սառին, և 'ի մէջ †աթոռոյն չորք" կենդանիք՝ և
7 լի էին աչօք առաջոյ և յետոյ։ Եւ էր կենդանին
առաջին նման առիւծու, և երկրորդ կենդանին
նման զուարակի, և երրորդ կենդանին ունէր երեսս
մարդոյ, և չորրորդ կենդանին նման արծուոյ թռու-
8 ցելոյ։ Եւ չորից կենդանեացն էին միոյ միոյ 'ի
նոցանէ վեց թևք, շուրջանակի և 'ի ներքոյ լի է-
ին աչօք, ո՛չ հանգչէին՝ ո՛չ զտիւ և ո՛չ զգիշեր՝

---

* 'Ի Յոյնն չէ։

† 'Ի Յոյնն, աթոռոյն՝ և շուրջ զաթոռովն չորք

ասելով. Սուրբ՝ Սուրբ՝ Սուրբ՝ Տէր Աստուած Ամե-
9 նակալ՝ որ էն և ես, և որ գալոց ես։ Եւ յորժամ
տային կենդանիքն փառս և պատիւ և գոհութիւն
նստելոյն 'ի վերայ աթոռոյն՝ կենդանւոյն յաւիտ-
10 եանս յաւիտենից, (Անկանէին քսան և չորք ե-
րիցունքն առաջի նստելոյն յաթոռն, և երկիր պա-
գանէին կենդանւոյն յաւիտեանս յաւիտենից.) և
դնէին զպսակս իւրեանց առաջի աթոռոյն ասելով,
11 Արժանի ես Տէր Աստուած մեր սուրբ՝ առնուլ
փառս և պատիւ և զօրութիւն, զի դու ստեղծեր
զամենայն. և 'ի կամելն քո ստեղծան՝ և կան
հաստատուն։

## ԳԼ. Ե

1 Եւ տեսի 'ի ձեռս աջոյ՝ որ նստէր 'ի վերայ ա-
թոռոյն՝ գիրք գրեալ ներքոյ և արտաքոյ, և կնքեալ
2 եօթն կնքով։ Եւ տեսի հրեշտակ մի զօրա-
ւոր՝ զի քարոզէր 'ի ձայն մեծ. Ո՞ է արժանի բա-
3 նալ զգիրքս՝ և լուծանել զկնիք նորա։ Եւ ոչ ո՛ք
կարէր՝ ո՛չ 'ի յերկինս և ո՛չ յերկիր և ո՛չ 'ի ներքոյ
4 երկրի բանալ զգիրքն, * զի ո՛չ տեսին զնա"։ Եւ
ես լայի ուժգին՝ զի ոչ ո՛ք գտաւ արժանի բանալ
5 զգիրքն և հայել 'ի նա։ Եւ մի յերիցանցն ասէ
ցիս. Մի՛ լար, ահաւասիկ յաղթեաց Առիւծն
յազգէն Յուդայ յարմատոյն Դաւթի՝ բանալ
6 զգիրքն և լուծանել զեօթն կնիքսն նորա։ Եւ տեսի

* 'Ի Յոյնն, և ո՛չ հայել 'ի նա

՚ի մէջ աթոռոյն եւ ՚ի մէջ չորից կենդանեացն՝ եւ
՚ի մէջ երիցանցն Գառն կայր զենեալ, որ ունէր
եօթն եղջիւրս՝ եւ աչս եօթն, որ են եօթն Հոգիք
Աստուծոյ, որ են առաքեալ ընդ ամենայն երկիր։
7 Եւ եկն ընկալաւ յաջոյ ձեռանէ Նորա՝ որ նստէր
8 ՚ի վերայ աթոռոյն։ Եւ յորժամ առ զգիրն, չորք
կենդանիքն եւ քսան եւ չորք երիցունքն անկանէին
առաջի Գառինն. եւ ունէին իւրաքանչիւր քնար՝ եւ
9 բուրվառ ոսկի լի խնկով, որ է աղօթք սրբոց։ Եւ
օրհնէին երգս նորս եւ ասէին. Արժանի ես առնուլ
զգիրքն եւ բանալ զկնիք դորա, զի զենար՝ եւ գնեցեր
զմեզ Աստուծոյ արեամբք քով՝ յամենայն ազգաց եւ
10 ՚ի լեզուաց եւ ՚ի ժողովոց հեթանոսաց։ Եւ արարեր
զսոսա Աստուծոյ մերոյ թագաւորս եւ քահանայս՝
11 թագաւորել ՚ի վերայ երկրի։ Եւ տեսի, եւ լուայ
զձայն հրեշտակաց բազմաց՝ որք կային շուրջ զա-
թոռովն եւ զչորիւք կենդանեօքն եւ զքահանայիւքն.
եւ էր թիւն նոցա բիւրք բիւրուց՝ եւ հազարք հա-
12 զարաց։ Ասէին ձայնիւ մեծաւ. Արժան է Գառնդ
զենեալ առնուլ զմեծութիւն եւ զիմաստութիւն եւ
զզօրութիւն եւ զպատիւ եւ զփառս եւ զօրհնութիւն։
13 Եւ ամենայն արարածք՝ որ են յերկինս եւ յերկրի
եւ ՚ի ծովու եւ որ ՚ի նոսա՝ լուայ զի ասէին. Որ
նստի յաթոռն՝ եւ Գառնն օրհնեալ բարձրացեալ
14 եւ փառաւորեալ յաւիտեանս յաւիտենից։ Եւ չորք
կենդանիքն ասէին, Ամէն. եւ երիցունքն անկանէ-
ին առաջի նորա եւ երկիր պագանէին։

## ԳԼ. Զ.

1 Եւ տեսի զի եբաց զմին 'ի կնքոցն, և լուայ 'ի
միոյ 'ի չորից կենդանեացն իբրև զձայն որոտման՝
2 զի ասէր՝ Թէ Գաս։ Եւ տեսի՝ և ահա ձի սպի-
տակ, և որ հեծեալն էր 'ի նմա՝ ունէր աղեղն. և
տուաւ նմա պսակ, և ելն յաղթօղն՝ զի յաղթես-
3 ցէ։ Եւ յորժամ եբաց զկնիքն երկրորդ, լուայ
4 յերկրորդ կենդանւոյն՝ զի ասէր, Գաս։ Եւ ել
այլ ձի կարմիր. և որ հեծեալն էր 'ի վերայ նորա՝
տուաւ նմա առնուլ զխաղաղութիւն յերկրէ, զի
զմիմեանս զենցեն. և տուաւ նմա սուր մի մեծ։
5 Եւ յորժամ եբաց զկնիքն երրորդ՝ լուայ յերրորդ
կենդանւոյն՝ զի ասէր՝ Թէ Գաս. և տեսի՝ և ահա
ձի սեաւ, և որ նստեալն էր 'ի վերայ նորա՝ ունէր
6 կշիռս 'ի ձեռին իւրում։ Եւ լուայ ձայն 'ի միջոյ
չորից կենդանեացն. Կապիճ մի ցորեան՝ դենարի
միոջ, և երեք կապիճ գարի՝ դենարի միոջ. և ձէթ
7 և գինի մի՛ վնասեսցես։ Եւ յորժամ եբաց զկնիքն
չորրորդ, լուայ ձայն 'ի չորրորդ կենդանւոյն՝ զի
8 ասէր՝ Թէ Գաս։ Եւ տեսի՝ և ահա ձի շլոռոս, և
որ նստէրն 'ի վերայ նորա՝ ունէր զմահ, և Դժոխք
երթայրն զհետ նորա. և տուաւ նմա իշխանութիւն
չորրորդ մասին աշխարհի՝ սատակել սրով և սո-
9 վով և մահուամբ՝ և գազանօք երկրի։ Եւ յոր-
ժամ եբաց զկնիքն հինգերորդ՝ տեսի 'ի ներքոյ
սեղանոյն զհոգիս ամենայն մարդկան զենելոց վասն
բանին Աստուծոյ՝ և վասն վկայութեան նորա զոր
10 ունէին։ Որք ասէին 'ի ձայն մեծ. Մինչև յե՞րբ

Տէր սուրբ և ճշմարիտ՝ ոչ դատիս, և խնդրես
11 զվրէժ արեան մերոյ 'ի բնակչաց երկրի ։ Եւ տու-
աւ նոցա արկանելիս սպիտակս, և ասացաւ նոցա
զի հանգիցեն փոքր մի ժամանակ, մինչև լցցին
ծառայակիցք նոցա և եղբարք նոցա՝ որք հանդերձ-
12 եալ են կոտորիլ իբրև զնոսա ։ Եւ տեսի յորժամ
եբաց զկնիքն վեցերորդ՝ եղև շարժումն մեծ, և
արեգակն եղև սեաւ իբրև զկապերտ այծեայ, և
13 լուսինն բոլորովին եղև արիւն ։ Եւ աստեղք երկ-
նից թօթափեցան 'ի յերկիր, որպէս տերև թզեն-
14 ւոյ զի ուժգին շարժիցի 'ի հողմոյ ։ Եւ երկին իբ-
րև զմագաղաթեայ գիրս գալարէր ․ և ամենայն լե-
15 րինք և կղզիք 'ի տեղւոյ իւրեանց շարժեցան ։ Եւ
թագաւորք երկրի և իշխանք՝ հազարապետք և մե-
ծամեծք և զօրաւորք՝ և ամենայն ծառայք և ամե-
նայն ազատք թագուցին զինքեանս յայրս և 'ի
16 ծերպս վիմաց ։ Եւ ասէին *լերանց՝ թէ Անկերուք
17 'ի վերայ մեր, և ցբլուրս թէ ծածկեցէք զմեզ" ։ Զի
եկն օր մեծ բարկութեան նորա ․ և ով կարէ կալ
առաջի նորա ։

## ԳԼ. Է

1 Եւ յետ այնորիկ տեսի չորս հրեշտակս՝ զի կային

---

* 'Ի Յօյն, լերանց և բլրոց, թէ Անկերուք 'ի վերայ մեր և ծածկեցէք զմեզ յերեսաց այնորիկ՝ որ նստի 'ի վերայ աթոռոյն, և 'ի բարկութենէ Գառինն

'ի չորս անկիւնս երկրի. և ունէին զչորս հողմս երկ-
րի՝ զի մի՛ շնչեսցէ հողմ 'ի վերայ երկրի, և մի՛ 'ի
2 ծովու՝ և մի՛ 'ի ծառս: Եւ տեսի այլ հրեշտակ՝ զի
ել յարևելից, և ունէր զկնիք Աստուծոյ կենդան-
ւոյ, և աղաղակեաց ձայնիւ մեծաւ առ չորս հրեշ-
տակսն՝ որոց առեալ էր իշխանութիւն ապականել
3 զերկիր և զծով: Եւ ասէր. Մի՛ վնասէք երկրի՝ մի՛
ծովու՝ մի՛ ծառոց, դադարեցէք մինչև կնքեցից
4 զծառայս Աստուծոյ իմոյ 'ի ճակատս նոցա: Եւ
լուայ զթիւ կնքելոցն՝ հարիւր քառասուն և չորք
5 հազար կնքեալք յազգէ որդւոցն Իսրայէլի: Յազ-
գէն Յուդայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Ռուբենի՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
6 գէն Գադայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Ասերայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազգէն
Նեփթաղիմայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
7 գէն Մանասէի՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Շմաւոնի՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Ղևեայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Իսաքարայ՝ երկոտասան հազար կնքեալ: Յազ-
գէն Զաբուղոնի՝ երկոտասան հազար կնքեալ:
Յազգէն Յովսեփայ՝ երկոտասան հազար կնք-
եալ: Յազգէն Բենիամինի՝ երկոտասան հա-
9 զար կնքեալ: Եւ յետ այսորիկ տեսի՝ և ահա
ժողովուրդ բազում որոց ո՛չ գոյր թիւ, յամենայն
հեթանոսաց և յամենայն ազգաց և յամենայն լեզ-
ուաց և յամենայն ժողովրդոց, որք կային առաջի
աթոռոյն և առաջի Գառինն՝ արկեալ զիւրեամբք
հանդերձս սպիտակս և արմաւենիս 'ի ձեռս իւր-

10 եանց ։ Աղաղակէին 'ի ձայն մեծ՝ և ասէին ․ փրր-
կութիւն Աստուծոյ մերոյ՝ որ նստի 'ի վերայ աթո-
11 ռոյն , և Գառինն ։ Եւ ամենայն Հրեշտակք կային
շուրջ զաթոռովն և զերիցամբքն և զչորիւք կեն-
դանեօքն , և անկանէին յերեսս առաջի աթոռոյն՝
12 և երկիր պագանէին Աստուծոյ , Ասելով ․ Ամէն ․
օրհնութիւն և փառք և իմաստութիւն և գոհու-
թիւն և պատիւ և զօրութիւն և շնորհք Տեառն
Աստուծոյ մերոյ յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։
13 Եւ ասէ ցիս մի յերիցանց անտի ․ Սոքա որ զգեց-
եալս են զհանդերձս սպիտակս՝ ո՞յք են՝ և կամ
14 ուստի՞ գան ։ Եւ ասացի ցնա ․ Տէր՝ դու գիտես ․
և ասէ ցիս ․ Սոքա են՝ որ գան 'ի վշտաց մեծաց ,
և լուացին զարկանելիս իւրեանց՝ և սպիտակացու-
15 ցին արեամբ Գառինն ։ Վասն այնորիկ են առա-
ջի աթոռոյն Աստուծոյ՝ և պաշտեն զնա զտիւ և
զգիշեր 'ի տաճարի նորա ․ և որ նստի 'ի վերայ ա-
16 թոռոյն՝ բնակեալ է 'ի նոսա ։ Ո՛չ քաղցիցեն և
ո՛չ ծարաւիցեն , և ո՛չ ոք մեղիցէ նոցա՝ ո՛չ արե-
17 գակն և ո՛չ տօթ ։ Եւ Գառնն 'ի միջոյ աթոռոյն
իւրոյ հովուեսցէ զնոսա , և առաջնորդեսցէ նոցա
'ի կենաց աղբիւր ջրոյ կենդանւոյ ․ քանզի եհաս
Աստուած զամենայն արտօսր յերեսաց նոցա ։

## ԳԼ․ Ը

1 Եւ յորժամ եբաց զկնիքն եօթներորդ՝ եղև լռ-
2 ութիւն յերկինս՝ որպէս կէս ժամու ։ Եւ տեսի
Հրեշտակս եօթն , որ առաջի Աստուծոյ կային ․ և

3 տուաւ նոցա եօթն փողս ։ Եւ այլ հրեշտակ եկն եկաց
առ սեղանն , և ունէր խնկանոց ոսկի . և տուաւ նմա
խունկ բազում, զի մատուսցէ *զաղօթս ամենայն
սրբոց 'ի վերայ ոսկեղէն սեղանոյ առաջի աթո-
4 ռոյն ։ Եւ ել ծուխ խնկոցն՝ *աղօթք սրբոցն 'ի
5 ձեռաց հրեշտակացն առաջի Աստուծոյ ։ Եւ ելից
հրեշտակն զխնկանոցն 'ի հրոյ սեղանոյն՝ և արկ
զնա յերկիր . և եղև որոտումն և ձայնք և փայ-
6 լատակումն և շարժումն մեծ ։ Եւ եօթն հրեշտակքն
որ ունէին եօթն փողս՝ պատրաստեցին զինքեանս
7 առ 'ի հարկանել ։ Եւ առաջին հրեշտակն եհար
զփողն , և եղև կարկուտ և հուր և արիւն խառ-
նեալ՝ և անկաւ յերկիր , և զերրորդ մասն երկրի
այրեաց , և զերրորդ մասն ծառոց այրեաց , և զա-
8 մենայն դալար խոտոյ այրեաց ։ Եւ երկրորդ հրեշ-
տակն փողեաց , և իբրև զլեառն մի մեծ հրդեհեալ
անկաւ 'ի ծով , և եղև երրորդ մասն ծովաւ արիւն .
9 Եւ սատակեցաւ երրորդ մասն լուղակաց , և որ ու-
նէր շունչ կենդանի՝ ապականեցաւ . (և երրորդ
10 մասն նաւուց ընկղմեցաւ ։) Եւ երրորդ հրեշտակն
փողեաց , և անկաւ յերկնից աստղ մի մեծ՝ բոր-
բոքեալ իբրև զլամբար , և անկաւ յերրորդ մասն
11 գետոց և աղբերաց . Եւ էր անուն աստեղն Դառ-
նութիւն . և բազումք մեռան 'ի դառնութենէ
12 ջուրցն ։ Եւ չորրորդ հրեշտակն փողեաց , և վի-
րաւորէր երրորդ մասն արեգական՝ և երրորդ
մասն լուսնի՝ և երրորդ մասն աստեղաց . և խաւարէր

---

* 'Ի Յոյնն , ընդ աղօթս

*երրորդ մասն նոցա, և երրորդ մասն * գիշերոյ նոյն-*
13 *պէս՚՚ ։ Եւ տեսի՝ և լուայ ձայն հրեշտակի թռուցելոյ*
*’ի մէջ երկնից՝ զի ասէր ’ի ձայն մեծ, Վա՛յ վա՛յ*
*վա՛յ՝ որ բնակեալ են յերկրի. յորժամ լինիցի*
*ձայն երից ևս փողոց զոր կամիցին հրեշտակքն*
*հարկանել ։*

## ԳԼ. Թ

1 *Եւ հինգերորդ հրեշտակն փողէր. և տեսի զի*
*աստղ մի անկաւ յերկնից, և տուաւ նմա բանա-*
2 *լի գբոյն անդնդոց. Եւ † ելանէր ծուխ ’ի գբոյն*
*որպէս զծուխ հնոցի մեծի. և խաւարեցաւ արեգակն*
3 *և ‡ օդք ։ Եւ ’ի գբոյն ելանէր մարախ ’ի յերկրի.*
*և տուաւ նոցա իշխանութիւն իբրև զխայթոցս կար-*
4 *ճի. Եւ ասացաւ նոցա՝ զի մի՛ մեղիցեն խոտոյ երկրի*
*և մի՛ ամենայն ծառոց, բայց միայն մարդոյ երկրայ-*
*նոյ, որ ո՛չ ունիցին զկնիք ’ի վերայ ճակատու իւր-*
5 *եանց ։ Եւ տուաւ նոցա հրաման՝ զի մի՛ սպանանի-*
*ցեն զնոսա, այլ չարչարեսցեն զնոսա ամիսս հինգ.*
*և չարչարանք նոցա իբրև զխայթոցս կարճի որ*
6 *հարկանիցէ զմարդ ։ Եւ յաւուրսն յայնոսիկ խնդ-*
*րեսցեն մարդիկ զմահ՝ և մի՛ գտցեն. և ցանկան*
7 *մեռանել՝ և փախիցէ ’ի նոցանէ մահ ։ Եւ նմանու-*

---

* ’Ի Յոյնն, աւուր ոչ ծագէր, և գիշերոյն նոյն-
*պէս*

† ’Ի Յոյնն յաւելու, եբաց զգուբն անդնդոց և

‡ ’Ի Յոյնն, օդ ’ի ծխոյն անդնդոց

թիւն մարախոյն՝ նմանութիւն ձիոյ պատրաստե-
լոյ 'ի պատերազմ. և 'ի վերայ գլխոց նոցա իբրև
զպսակ՝ նմանեալ ոսկւոյ. և երեսք նոցա իբրև զե-
8 րեսս մարդոյ. Եւ հերք նոցա իբրև զհերս կնոջ.
9 և ատամունք նոցա իբրև զառիւծու: Եւ ունէին
զրահս իբրև զզրահս երկաթի. և ձայն թևոց նո-
ցա իբրև 'զձայն կառավար ձիոց բազմաց՝ որ արշա-
10 ւեն 'ի պատերազմ: Եւ ունին ագիս ըստ նմանու-
թեան կարճի. և խայթոց յագիս նոցա. և ունէ-
ին իշխանութիւն չարչարել զմարդիկ ամիսս հինգ:
11 Եւ ունին թագաւոր 'ի վերայ իւրեանց զհրեշտակն
դժոխոց. և անուն նորա Եբրայեցերէն Աղբադոն,
12 որ կոչի * 'ի Հայ բարբառ Կորուստ": Ահաւասիկ
13 վայ մի էանց, և վայք երկու գալոց են: Եւ վե-
ցերորդ հրեշտակն հարկանէր զփողն. և լուայ ձայն
'ի չորից կենդանեացն՝ որ էին առաջի սեղանոյն
14 Աստուծոյ. Զի ասէր ցհրեշտակն վեցերորդ՝ որ
ունէր զփողն. Լոյծ զչորս հրեշտակսն զկապեալս 'ի
15 վերայ գետոյն Եփրատայ: Եւ լուծան չորս հրեշ-
տակքն՝ պատրաստեալք 'ի ժամ և յօր և յամիս
և 'ի տարի, զի սպանցեն զերրորդ մասն մարդկան:
16 Եւ համարք հեծելոց զօրաց նոցա՝ բիւրք բիւրուց՝
17 և հազարք հազարաց՝ լուայ զթիւ նոցա: Եւ տե-
սի ձիս 'ի տեսլեանն, և հեծեալս 'ի նոսա՝ որք ու-
նէին զրահս հրեղէնս, և յակինթս հրդեհեալս
ծծմբով. և գլուխք ձիոցն իբրև զգլուխս առիւ-
ծուց. և 'ի բերանոյ նոցա հուր ելանէր և ծուխ և

* 'Ի Յոյնն, 'ի Յոյն բարբառ Աբողիոն

18 ծծումբ ։ Եւ ՚ի հարուածոցս յայսցանէ մեռաւ երրորդ-
մասն մարդկան՝ ՚ի հրոյն և ՚ի ծխոյն և ՚ի ծծմբոյն
19 որ ելանէր ՚ի բերանոյ նոցա ։ Զի իշխանութիւն
՚ի բերանս է նոցա՝ և յագիս նոցա, և ագիք նո-
ցա նմանութիւն օձի. և ունէին գլուխս՝ որով սա-
20 տակէին զանիրաւս ։ Եւ այլք ՚ի մարդկանէ որ ոչ
մեռան ՚ի հարուածոցս յայսցանէ, ոչ ապաշխա-
րեցին և ոչ դարձան ՚ի գործոց ձեռաց իւրեանց,
յերկրպագութենէ դիւաց և կռոց յոսկեղինաց և
յարծաթեղինաց՝ և ՚ի պղնձոյ և ՚ի քարէ և ՚ի
փայտէ, որք ոչ տեսանել կարեն՝ և ոչ լսել և ոչ
21 գնալ. Եւ ոչ ապաշխարեցին ՚ի մարդասպանու-
թենէ՝ և ՚ի դեղատուութենէ, և ՚ի պոռնկութենէ
և ՚ի գողութենէ իւրեանց ։

## ԳԼ. Ժ

1 Եւ տեսի այլ հրեշտակ զօրաւոր՝ զի իջանէր
յերկնից, և զգեցեալ էր ամպ՝ և ծիածան ՚ի գլուխ
նորա. և երեսք նորա իբրև զարեգակն, և ոտք
2 նորա որպէս սիւն հրոյ ։ Եւ ունէր ՚ի ձեռին իւ-
րում գրքոյկ մի բացեալ. և եդ զոտն իւր զաջ
3 ՚ի վերայ ծովու. և զձախն ՚ի վերայ երկրի ։ Եւ
աղաղակեաց ՚ի ձայն մեծ՝ գոչեաց իբրև զառիւծ.
և յորժամ աղաղակեաց՝ խօսեցան եօթն որոտ-
4 մունք յիւրեանց ձայնս ։ Եւ յորժամ խօսեցան
եօթն որոտմունքն՝ կամէի գրել. և լուայ ձայն
յերկնից՝ զի ասէր, Կնքեա զոր խօսեցան եօթն ո-
5 րոտմունքն՝ և մի՛ գրեր ։ Եւ հրեշտակն զոր տեսի,

որ եդ զոտն իւր 'ի վերայ ծովու և զձախն 'ի ցա-
6 մաքի, Համբարձ զձեռն իւր զաջ յերկինս. Եւ
երդուաւ 'ի Կենդանին յաւիտենից՝ որ Հաստատեաց
զերկինս և որ 'ի նմա. զի ոչ ևս կայ այլ ժամա-
7 նակ. Այլ յաւուրս ձայնի եօթներորդ հրեշտակին՝
յորժամ հարցէ զփողն, կատարեսցի խորհուրդն
Աստուծոյ՝ որ աւետարանեցաւ 'ի ձեռն ծառայից
8 իւրոց մարգարէիցն ։ Եւ ձայնն՝ զոր լուայ յերկ-
նից դարձեալ խօսեցաւ ընդ իս՝ և ասէ. Ե՛րթ առ
զգրքոյկն՝ զոր ունի հրեշտակն բացեալ 'ի ձեռին իւ-
9 րում, և կայ 'ի վերայ ծովու և ցամաքի ։ Եւ ես
երթեալ առ հրեշտակն՝ խնդրեցի 'ի նմանէ. և
ասէ ցիս, Ա՛ռ զդա՝ և կե՛ր զդոյն, և դառնասցի
յորովայն քո. այլ 'ի բերան քո է քաղցր իբրև
10 զմեղր ։ Եւ առի զգրքոյկն բացեալ 'ի հրեշտակէն
և կլայ զնա. և էր 'ի բերան իմ որպէս մեղր. և
11 յորժամ կերայ, դառնացաւ որովայն իմ ։ Եւ ա-
սէ ցիս. Պարտ է քեզ դարձեալ մարգարէանալ
'ի ժողովուրդս՝ և 'ի հեթանոսս և 'ի լեզուս և 'ի
թագաւորս երկրի ։

## ԳԼ. ԺԱ.

1 Եւ տուաւ ինձ եղէգն նման գաւազանի. և կայր
հրեշտակն և ասէր ցիս. Արի և չափեա՛ զտաճարն
Աստուծոյ և զսեղանն՝ և զերկրպագուսն որ 'ի նմա ։
2 Եւ զգաւիթն որ արտաքոյ տաճարին՝ թո՛ղ զնա՝ և
մի՛ չափեր. զի տուեալ է զնա հեթանոսաց. և
զքաղաքն սուրբ կոխեսցեն ամիսս քառասուն և եր-

3 կուս ։ Եւ տաց երկուց վկայից իմոց՝ և մարգարէ-
ասցին աւուրս հազար երկերիւր և վաթսուն զգեց-
4 եալ քուրձ ։ Սոքա են երկու ձիթենիքն՝ և երկու
5 ճրագք, որ կան առաջի Տեառն երկրի ։ Եւ
որք կամիցին վնասել նոցա, հուր ելցէ 'ի բերանոյ
նոցա՝ և կերիցէ զթշնամիս նոցա. և որք կամիցին
6 մեղանչել նոցա՝ այսպէս սատակեսցին ։ Սոքա
ունին իշխանութիւն փակել զերկինս՝ զի մի տե-
ղասցէ զաւուրս մարգարէութեան նոցա. և ունին
իշխանութիւն 'ի վերայ ջուրց՝ դարձուցանել զնոսա
յարիւն, և հարկանել զերկիր յամենայն հարուածս՝
7 քանիցս անգամ և կամիցին ։ Եւ յորժամ կատա-
րեսցեն զամենայն աւուրս վկայութեան իւրեանց,
յայնժամ գազանն որ ելանէ յանդնդոց՝ տացէ ընդ
նոսա պատերազմ, և յաղթեսցէ նոցա և սպանցէ
8 զնոսա ։ Եւ դի նոցա անկեալ կայցէ 'ի մէջ հրա-
պարակաց քաղաքին նոցա մեծի, որ անուանեալ
կոչի ըստ հոգւոյն Սոդոմ և Եգիպտոս. ուր և
9 Տէրն նոցա խաչեցաւ ։ Եւ տեսցեն զնոսա ամենայն
ցեղք և ժողովուրդք՝ և ամենայն լեզուք և հեթա-
նոսք, զի դի նոցա անկեալ կայցէ զերիս աւուրս և
կէս. և ոչ տայցեն թաղել 'ի գերեզմանս զոսկերս
10 նոցա ։ Եւ որ բնակեալ են յերկրի՝ ուրախ լիցին
և խնդան 'ի վերայ նոցա, մինչև ընծայս և պատա-
րագս տանել միմեանց. վասն զի սոքա երկոքին
11 մարգարէքս չարչարեսցեն զբնակիչս երկրի ։ Եւ
յետ երից աւուրց և կիսոյ՝ հոգի կենդանի յԱ՟ս-
տուծոյ մտցէ 'ի նոսա. և յարիցեն կացցեն 'ի վե-
րայ ոտից իւրեանց, և ահ և երկիւղ մեծ անկաւ

12 'ի վերայ ամենեցուն՝ որ սպանինն զնոսա ։ Եւ լու-
այ զձայն մեծ՝ որ ասէր ցնոսա . Վերացի՛ք ելէ՛ք
աստ . և վերացան ելին յերկինս ամպովք . և տե-
13 սին զնոսա թշնամիք իւրեանց ։ Եւ 'ի ժամուն
յայնմիկ շարժումն մեծ եղև , և տասներորդ մասն
քաղաքին ընկղմեցաւ , և մեռան 'ի շարժմանէն արք
եօթն հազար . և յետ այնորիկ ահ մեծ եղև յա-
մենեսեան , և փառս տային Աստուծոյ երկնաւորի ։
14 Ահաւասիկ վայն երկրորդ էանց , և վայն երրորդ
15 գալոց է վաղվաղակի ։ Եւ յորժամ եօթներորդ
հրեշտակն հարկաներ զփողն , եղև ձայն յերկինս՝
և ասէ . Եղև թագաւորութիւն ամենայն տիեզերաց
Տեառն մերոյ՝ և Յիսուսի Քրիստոսի իւրոյ . և
թագաւորեսցէ 'ի վերայ ամենայնի յաւիտեանս
16 յաւիտենից ։ Եւ քսան և չորս երիցունքն՝ որ նըս-
տէին յաթոռս իւրեանց առաջի Աստուծոյ , անկա-
նէին 'ի վերայ երեսաց իւրեանց՝ և երկիր պագա-
17 նէին Տեառն Աստուծոյ և ասէին . Գոհանամք
զքէն Տէր Աստուած Ամենակալ , որ էն և ես՝ և
18 առեր զզօրութիւն քո մեծ , և թագաւորեցեր ։ Եւ
հեթանոսք բարկացան , և եկն բարկութիւն քո , և
ժամանակ մեռելոց՝ զի դատեսցին . և տաս վարձս
ծառայից քոց մարգարէից և սրբոց երկիւղածաց
անուան քոյ՝ փոքունց և մեծամեծաց , և ապակա-
19 նես զապականիչս երկրի ։ Եւ բացաւ տաճարն Աս-
տուծոյ որ յերկինս , և երևեցաւ տապանակն Աս-
տուծոյ 'ի տաճարն իւր , և եղեն փայլատակմունք
և ձայնք և որոտմունք և շարժումն , և կարկուտ
մեծամեծ ։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ նշան մեծ երեւեցաւ յերկինս․ կին մի արկ-
եալ զիւրեւ զարեգակն, եւ լուսին ՚ի ներքոյ ոտից
նորա․ եւ ՚ի վերայ գլխոյ նորա պսակ աստեղաց
2 յերկոտասանից ։ Եւ էր յղի, եւ ճչէր յերկնելն,
3 եւ բազում վշտօք մերձ էր ՚ի ծնանել ։ Եւ երեւեցաւ
այլ նշան յերկինս՝ եւ ահաւասիկ վիշապ մի մեծ
հրեղէն, որոյ էին գլուխք եօթն եւ եղջիւրք տասն․
4 եւ ՚ի վերայ գլխոյ նորա եօթն խոյրք ։ Եւ տուտն
նորա քարշէր զերրորդ մասն աստեղաց երկնից, եւ
արկ զնոսա յերկիր․ եւ վիշապն կայր առաջի կնոջն
որ հանդերձեալ էր ծնանել, զի յորժամ ծնցի կինն
5 զորդի իւր՝ կլցէ զնա վիշապն ։ Եւ ծնաւ կինն ա-
րու՝ որ հանդերձեալ է հովուել զամենայն հեթա-
նոսս գաւազանաւ երկաթեաւ․ եւ յափշտակեցաւ
6 որդի նորա առ Աստուած, եւ առ աթոռ նորա ։ Եւ
կինն փախեաւ յանապատ՝ ուր էր անդ նմա պատ-
րաստեալ յԱստուծոյ, զի կերակրեսցի անդ ա-
7 ւուրս հազար երկերիւր եւ վաթսուն ։ Եւ եղեւ պա-
տերազմ յերկինս, Միքայէլ եւ հրեշտակք իւր
կռուէին ընդ վիշապին․ եւ վիշապն պատերազմէր
8 զօրօք իւրովք ։ Եւ ոչ կարացին կալ ընդդէմ, եւ
9 տեղի ոչ գտաւ նոցա յերկինս ։ Եւ անկաւ վիշապն
մեծ՝ օձն առաջին, որ անուանեալ կոչի Բէեղզե-
բուղ եւ Սատանայ, որ մոլորեցոյց զամենայն տիե-
զերս երկրի․ եւ հրեշտակք նորա ընդ նմա անկան ։
10 Եւ լուայ ձայն մեծ յերկնից՝ որ ասէր․ Արդ եղեւ
զօրութիւն եւ փրկութիւն եւ արքայութիւն Աստու-

ծոյ մերոյ՝ և իշխանութիւն Օծելոյ Նորա. զի ան-
կաւ չարախօսն եղբարց մերոց, որ չարախօսէր
11 զնոցանէ առաջի Աստուծոյ զտիւ և զգիշեր: Եւ նո-
քա յաղթեցին նմա արեամբ Գառինն, և բանիւ
վկայութեան *Նորա. և ոչ հաճեցան ընդ վիշապն"
12 մինչև 'ի մահ: Վասն այսորիկ ուրախ լիցին եր-
կինք՝ և ամենայն որ բնակեալ են 'ի նմա: Վայ
երկրի և ծովու՝ զի անկաւ Բանսարկուն առ ձեզ,
որ ունի զցասումն բազում. և կայցէ առ սակաւ մի
13 ժամանակս: Եւ յորժամ ետես վիշապն թէ ան-
կաւ յերկիր, զհետ եղև կնոջն՝ որ ծնաւ զմանուկն
14 արու: Եւ տուաւ կնոջն երկու թևք արծուոյ մե-
ծի՝ զի թռիցէ յանապատ 'ի տեղի իւր. ուր կե-
րակրէր անդ ժամանակ և ժամանակս և կէս ժամա-
15 նակի՝ յերեսաց օձին: Եւ եհեղ օձն 'ի բերանոյ
16 իւրմէ զհետ կնոջն ջուր՝ զի ընկղմեսցէ զնա: Եւ
օգնեաց երկիր կնոջն, և եբաց երկիր զբերան իւր
և եկուլ զջուրն՝ զոր եհեղ վիշապն 'ի բերանոյ իւր-
17 մէ: Եւ ցասեաւ վիշապն ընդ կնոջն, և գնաց պա-
տերազմել ընդ այլ զաւակս նորա՝ որք պահէին
զպատուիրանս Աստուծոյ, և ունէին զվկայութիւնն
18 Յիսուսի: Եւ կաց 'ի վերայ աւազոյ ծովու:

## ԳԼ. ԺԳ

1 Եւ տեսի զի ելանէր 'ի ծովէն գազան, և ունէր

* 'Ի Յոյնն, իւրեանց. և ոչ սիրեցին զկեանս իւրեանց

*գլուխս եօթն և եղջիւրս տասն, և 'ի վերայ եղջե-
րաց նորա տասն խոյր, և 'ի վերայ գլխոյ նորա ա-
2 նուն հայհոյութեան ։ Եւ գազանն զոր տեսի՝ նման
ընձու, և ոտք նորա իբրև զարջու, և բերան նո-
րա որպէս զառիւծու ․ և ետ նմա վիշապն զզօրու-
թիւն իւր՝ և զաթոռ իւր և զիշխանութիւն
3 մեծ ։ Եւ մի 'ի գլխոց նորա վիրաւորեալ էր
'ի մահ ․ և վէր մահուան նորա ողջանայր ։ Եւ
զարմացաւ ամենայն երկիր ընդ գազանն, զի ետ
4 նմա վիշապն զթագաւորութիւն իւր ։ Եւ երկիր
պագին վիշապին՝ որ ետ զիշխանութիւնն* գա-
զանին, և ասէին ․ Ո՞վ իցէ նման գազանիս ․ կամ
5 ո՞վ կարիցէ պատերազմել ընդ դա ։ Եւ տուաւ նմա
բերան խօսել զմեծամեծս, և զհայհոյութիւն ․ և
տուաւ նմա իշխանութիւն զամիսս քառասուն և եր-
6 կու ։ Եւ եբաց զբերան իւր հայհոյութեամբ առ
Աստուած, և հայհոյեաց զանուն նորա և զխորանն
7 նորա, և զերկնայինն խորանն ։ (Եւ տուաւ նմա
իշխանութիւն առնել պատերազմ ընդ սուրբս՝ և
յաղթել նոցա ․) և տուաւ նմա իշխանութիւն 'ի
վերայ ամենայն ազգաց և լեզուաց և ժողովրդոց ։
8 Զի երկրպագեսցեն նմա ամենայն որ բնակեալ են
ընդ երեսս երկրի ․ որոց ո՛չ են գրեալ անուանք
նոցա 'ի դպրութիւն կենաց Գառինն զենլոյ իսկզբ-
9 բանէ աշխարհի ։ Ոյք ունին ականջս լսելոյ՝ լուի-*

* 'Ի Յոյնն, *և երկիր պագին*

10 ցեն ։ * Զի են ոմանք՝ որք ՚ի գերութեան վարեա-
ցին, և են ոմանք՝ որ սրով մեռցին, և են ոմանք՝ որ
անձամբ զանձինս սպանանեն"․ աստ է Համբերու-
11 թիւն և Հաւատ սրբոց ։ Եւ տեսի այլ գազան՝ զի
ելանէր յերկրէ, և ունէր եղջիւրս երկու նման
12 գառին․ և խօսէր իբրև զվիշապն ։ Եւ զիշխանու-
թիւն զամենայն զառաջնոյ գազանին գործէր առա-
ջի նորա․ և առնէր զերկիր և զամենայն բնակիչս
նորա՝ զի երկիր պագանիցեն գազանին առաջնոյ
13 † մինչև ողջացի վէր մահու նորա"։ Եւ առնէր նշ-
շանս բազումս, և տայր Հրոյ իջանել յերկնից յեր-
14 կիր առաջի մարդկան ։ Եւ մոլորեցուցանէր զորս
բնակեալ են յերկիր՝ նշանօքն որ տուեալ են ՚ի
ձեռս նորա՝ առնել առաջի գազանին․ ‡ ասեն ցնա
բնակիչք երկրի․ Արա՛" զպատկեր գազանին, որ ՚ի
15 վիրաց սրոյն եկեաց ։ Եւ տուաւ նմա իշխանու-
թիւն, զի տացէ Հոգի պատկերի գազանին, և զի
խօսեսցի պատկերն․ և երկիր պագցեն նմա ամե-
նայն բնակիչք երկրի․ և որ ո՛չ պագցէ երկիր
16 պատկերի գազանին, սպանցէ զնա ։ Եւ արասցէ
զամենայն՝ փոքունս և զմեծամեծս՝ և զմեծատունս և
զաղքատս՝ և զազատս և զծառայս, զի տացէ նոցա
դրոշմ յաջու ձեռին՝ և ՚ի վերայ ճակատու նոցա ։

---

* ՚Ի Յոյնն. Եթէ ոք ՚ի գերութիւն վարեաց՝ ՚ի գերութեան վարեսցի․ եթէ ոք սրով սպան՝ սրով մեռցի

† ՚Ի Յոյնն, որոյ վէր մահուն ողջացեալ էր

‡ ՚Ի Յոյնն, ասելով ցբնակիչս երկրի, առնել

17 Եւ ոչ ոք կարասցէ գնել և վաճառել՝ եթէ ոչ ու-
նիցի զդրոշմ դրոյն՝ և զանուն գազանին և զթիւ
18 անուան նորա ։ Այս է իմաստութիւն . որ ունի
միտս՝ համարեսցի զթիւ գազանին . թիւ եղեալն
մարդոյ , և թիւ անուան նորա է այս . վեց հարիւր
վաթսուն և վեց ։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ տեսի՝ և ահա Գառն կայր 'ի վերայ լերինն
Սիովնի . և ընդ նմա հարիւր քառասուն և չորս
հազարք , որ ունէին զանուն նորա՝ և անուն Հօր
2 նորա գրեալ 'ի վերայ ճակատուց նոցա ։ Եւ լուայ
ձայն յերկնից՝ որպէս զձայն ջուրց բազմաց՝ և ձայն
որոտման մեծի . և լուայ իբրև զձայն քնարահա-
3 րաց , զի հարկանէին զքնարս իւրեանց ։ Եւ եր-
գէին զերգս նորս առաջի աթոռոյն՝ և առաջի չո-
րից կենդանեացն՝ և առաջի երիցանցն . և ոչ ոք
կարէ գիտել զերգս նոցա՝ բայց միայն հարիւր քա-
ռասուն և չորս հազարքն , որք ազատեալ են յերկ-
4 րէ ։ Սոքա են՝ որք ընդ կանայս ոչ խառնակեցան ,
և են կուսանք . սոքա զկնի երթան Գառինն՝ ուր
և երթիցէ . սոքա ընտրեցան 'ի մարդկանէ առաջի
5 Աստուծոյ և Գառինն ։ Եւ 'ի բերան նոցա ոչ
6 գտաւ սուտ՝ զի ամբիծք են ։ Եւ տեսի այլ հրեշ-
տակ թռուցեալ 'ի մէջ երկնից . և ունէր աւետիս
յաւիտենական՝ աւետարանել ամենայն ազգաց և
7 լեզուաց՝ որ բնակեալ են յերկրի ։ Եւ ասէր 'ի
ձայն մեծ . երկերուք յԱստուծոյ՝ և տուք փառս

նմա, զի եկն ժամ դատաստանի նորա. եւ երկիր
պագէք արարչին երկնի եւ երկրի եւ ծովու եւ աղ-
8 բերաց ջուրց: Եւ այլ հրեշտակ երկրորդ գայր
զհետ նորա եւ ասէր. Անկաւ անկաւ Բաբելոն մեծն՝
'ի գինւոյ արբեցութենէ՝ 'ի ցասմանէ՝ 'ի պոռնկու-
թենէ իւրմէ՝ որ արբեցոյց զամենայն հեթանոս:
9 Եւ այլ հրեշտակ երրորդ գայր զհետ նոցա՝ եւ 'ի
ձայն մեծ ասէր. Ով որ երկրպագեաց գազանին եւ
պատկերի նորա՝ եւ կամ զդրոշմ նշանի նորա առ
'ի ճակատ իւր՝ եւ կամ 'ի վերայ աջոյ ձեռին իւրոյ,
10 Նոյնպիսին արբցէ 'ի բաժակէ ցասմանն Աստուծոյ՝
արկելոյ յանապակէ բարկութեան բաժակին. եւ
տանջեսցի հրով եւ ծծմբով առաջի Աստուծոյ եւ
11 Գառինն: Եւ ծուխ նոցա ելցէ յաւիտեանս յաւի-
տենից. եւ ոչ ունին հանգիստ՝ որք երկիր պագին
գազանին 'ի տուէ եւ 'ի գիշերի. եւ որք երկիր պա-
գին պատկերին, եւ առին զդրոշմ եւ զանուն նո-
12 րա: Եւ համբերութիւն սրբոցն աստ է. այս՝ որք
պահեն զպատուիրանս Աստուծոյ, եւ զհաւատս
13 Յիսուսի: Եւ լուայ ձայն յերկնից՝ որ ասէր ցիս.
Գրեա, Երանի մեռելոցն՝ որք 'ի Տէր ննջեցին
այժմիկ վաղվաղակի. զայս ասէ Հոգին, քանզի
հանգեան յաշխատութենէ իւրեանց. բայց միայն
14 գործք իւրեանց չոգան զհետ նոցա: Եւ տեսի եւ
ահա ամպ սպիտակ, եւ 'ի վերայ ամպոյն նստէր
նման Որդւոյ մարդոյ, եւ 'ի գլուխ իւր պսակ ոսկի,
15 եւ 'ի ձեռին իւրում ունէր գերանդի սրեալ: Եւ
այլ հրեշտակ ելանէր յերկնից, աղաղակէր 'ի ձայն
մեծ՝ եւ ասէր. Որ նստիդ 'ի վերայ ամպոյդ՝ ա-

առաքեա՛ զգերանդիդ քո՝ և հնձեա՛, զի եկն ժամա-
16 նակ հնձոց, և հասեալ են հունձք երկրի։ (Եւ
արկ որ նստէր 'ի վերայ ամպոյն՝ զգերանդին իւր
17 յերկիր, և հնձէր զամենայն բնակիչս երկրի։) Եւ
այլ հրեշտակ ելանէր 'ի տաճարէն՝ որ յերկինս, և
18 ունէր և սա գերանդի սրեալ։ Եւ այլ հրեշտակ
ելանէր 'ի սեղանոյն՝ որ ունէր իշխանութիւն 'ի վե-
րայ հրոյ, և աղաղակեաց 'ի ձայն մեծ առ հրեշ-
տակն՝ որ ունէր զգերանդին սրեալ՝ և ասէր. Կթեա՛
զողկոյզս յայգւոյ երկրէ, զի հասեալ է խաղողդ
19 'ի դմա։ Եւ արկ հրեշտակն զգերանդի իւր յեր-
կիր, և կթէր զխաղող նորա, և արկանէր 'ի հըն-
20 ձանն Աստուծոյ 'ի մեծ։ Եւ կոխեցաւ հնձանն ար-
տաքոյ քաղաքին, և ելանէր 'ի հնձանէն արիւն
մինչև 'ի սանձս ձիոյն. և երկայնութիւն նորա
հազար և վեց հարիւր ասպարէզ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ տեսի այլ նշան (յերկինս) մեծ և սքանչե-
լի. հրեշտակս եօթն՝ որք ունէին եօթն վէրս զկնի.
2 զի նոքօք կատարէր բարկութիւն Աստուծոյ։ Եւ
տեսի որպէս ծով ապակեղէն խառնեալ հրով. և
որք յաղթեցին գազանին՝ և թուոյ անուան նորա՝
և պատկերի նորա՝ և դրոշմի նորա, նոքա կային 'ի
վերայ ծովուն ապակեղինի. և ունէին զքնարս
3 Աստուծոյ։ Եւ երգէին զերգս Մովսէսի առաջի
Աստուծոյ, և զերգս Գառինն՝ ասելով. Թէ Մե-
ծամեծ և սքանչելի են գործք քո՝ Տէր Աստուած

Ամենակալ, արդար՝ և ճշմարիտ են ճանապարհք
4 քո, Թագաւոր ամենայն հեթանոսաց։ Եւ ո՞վ ոք
ոչ երկիցէ և փառաւորեսցէ զսուրբ անուն քո. զի
դու միայն սուրբ, և արժանի երկրպագելոյ, զի
ամենայն հեթանոսք եկեսցեն և երկիր պագցեն ա-
ռաջի քո Տէր՝ *յորժամ արդարութիւն քո յայտ-
5 նեսցի"։ Եւ յետ այսորիկ տեսի՝ և բացաւ տաճարն
6 խորանին վկայութեան՝ որ էր 'ի յերկինս։ Եւ ե-
լանէին եօթն հրեշտակք՝ որք ունէին եօթն հար-
ուածս, և զգեցեալ էին 'ի տաճարին կտաւս մա-
քուրս և պայծառս. և գօտևորեալ էին առ բստ-
7 ամբք իւրեանց գօտիս ոսկեղէնս։ Եւ 'ի չորից
կենդանեացն տուաւ եօթն հրեշտակացն՝ եօթն սկա-
ւառակս լի ցասմամբն Աստուծոյ կենդանւոյն յա-
8 ւիտեանս յաւիտենից։ Եւ լցաւ տաճարն ծխով
փառացն Աստուծոյ և զօրութեան նորա. և ոչ ոք
կարէ մտանել 'ի տաճարն՝ մինչև կատարեսցին եօթն
հարուածքն յեօթն հրեշտակացն։

## ԳԼ. ԺԶ.

1 Եւ լուայ ձայն մեծ 'ի տաճարէն՝ զի ասէր ցեօթն
հրեշտակսն, Երթայք հեղէք զեօթն սկաւառակսդ
2 ցասմանն Աստուծոյ յերկիր։ Եւ գնաց առաջինն
հրեշտակն՝ և եհեղ զսկաւառակ իւր յերկիր. և
եղև հարուածք չարաչար 'ի վերայ մարդկան, որ
ունէին զդրոշմ գազանին, և երկիր պագին պատ-

* 'Ի Յոյնն, զի արդարութիւն քո յայտնեցաւ

3 կերի նորա ։ Եւ երկրորդ հրեշտակն եհեղ զսկա-
ւառակ իւր 'ի ծով, և դարձան ջուրքն յարիւն
մեռելոյ. և ամենայն շունչ կենդանի որ էր 'ի ծո-
4 վու՝ սատակեցաւ ։ Եւ երրորդ հրեշտակն եհեղ
զսկաւառակ իւր 'ի գետս՝ և յաղբերս ջուրց, և
5 եղև արիւն ։ Եւ լուայ 'ի հրեշտակէն՝ զի ասէր.
Արդար է՝ որ էնն և է, և սուրբ 'ի գործս իւր՝ զի
6 այսպէս դատեցաւ. Վասն զի զարիւն սրբոց և
զարիւն մարգարէիցն հեղին ամպարիշտք. վասն
այնորիկ արիւն ետ ըմպել նոցա ըստ արժանւոյն ։
7 Եւ լուայ 'ի սեղանոյ անտի զի ասէր. Այո՛ Տէր
Աստուած Ամենակալ, արդար և ճշմարիտ են դա-
8 տաստանք քո ։ Եւ չորրորդ հրեշտակն եհեղ 'ի
9 սկաւառակէ իւրմէ 'ի վերայ արեգական ։ Եւ տու-
աւ նմա խորշակահար առնել զմարդիկ հրով. և
տապացան մարդիկ 'ի տապ մեծ, և հայհոյեցին
զԱստուած՝ որ ունի իշխանութիւն 'ի վերայ հար-
ուածոցս այսոցիկ. և ոչ ապաշխարեցին 'ի փառս
10 Աստուծոյ ։ Եւ հինգերորդ հրեշտակն եհեղ 'ի
սկաւառակէ իւրմէ 'ի վերայ աթոռոյ գազանին, և
եղև թագաւորութիւն նորա խաւարեալ. և ծամէին
11 զլեզուս իւրեանց յախտէ ցաւոցն, Եւ հայհոյե-
ցին զԱստուած երկնից 'ի ցաւոց իւրեանց՝ և յախ-
տէ դառնութեանն, և ոչ ապաշխարեցին 'ի գոր-
12 ծոց իւրեանց ։ Եւ վեցերորդ հրեշտակն եհեղ 'ի
սկաւառակէ իւրմէ 'ի վերայ գետոյն մեծի Եփրա-
տայ, և ցամաքեցան ջուրք նորա՝ զի պատրաստես-
13 ցի ճանապարհ թագաւորի ելիցն արևու ։ Եւ տե-
սի՝ զի ելանէր 'ի բերանոյ վիշապին՝ և 'ի բերանոյ

գազանին՝ և 'ի բերանոյ սուտ մարգարէին ոգիք ե-
14 րեք անսուրբք իբրև զգորտ ։ Քանզի նոքա էին ո-
գիք դիւականք, որք առնէին նշանս և երթային
առ թագաւորս ամենայն երկրի՝ ժողովել զնոսա 'ի
պատերազմ, յօրն մեծ Տեառն Ամենակալի. քանզի
15 այսպէս ասաց Տէր. Ահա գամ իբրև զգող, ե-
րանի որ հսկեն արթունք, և պահեսցեն զհանդերձս
իւրեանց. զի մի՛ մերկ շրջեսցին, և երևեսցին ամօ-
16 թանք իւրեանց ։ Եւ ժողովեսցից զնոսա 'ի տեղի մի,
17 որ կոչի Եբրայեցերէն՝ Արմաքեդոն ։ Եւ եօթնե-
րորդ հրեշտակն եհեղ 'ի սկաւառակէ իւրմէ 'ի
վերայ օդոյ. և ել ձայն մեծ յերկնից՝ և յա-
18 թոռոյն՝ ասելով. Եղև ։ Եւ եղեն փայլատակմունք
և ձայնք և որոտմունք. և եղև շարժումն մեծ՝ որ-
պիսի չէր եղեալ իսկզբանէ՝ յորմէ հետէ եղև մարդ
19 'ի վերայ երկրի՝ այնպիսի շարժումն մեծ ։ Եւ ե-
ղև քաղաքն մեծ յերիս մասն, և քաղաքք ազգացն
անկան. և Բաբելոն մեծ յիշեցաւ առաջի Աստու-
ծոյ, տալ նմա զբաժակն գինւոյ ցասման բարկու-
20 թեան նորա ։ Եւ ամենայն կղզիք փախեան, և
21 լերինք 'ի միջոյ բարձան ։ Եւ կարկուտ մեծ իբրև
կշիռ տաղանդոյ միոյ իջանէր յերկնից 'ի վերայ
մարդկան. և հայհոյեցին մարդիկ զԱստուած յեր-
կինս՝ վասն հարուածոյ կարկտին, զի մեծ էր հար-
ուածն և սաստիկ ։

## ԳԼ. ԺԷ.

1 Եւ եկն մի ոմն յեօթն հրեշտակացն՝ որք ունէին
զեօթն սկաւառակսն. խօսեցաւ ընդ իս՝ և ասէ.

Ե՛կ այսր եւ ցուցից քեզ զդատաստանս մեծ պոռն-
2 կին՝ որ նստի 'ի վերայ ջուրց բազմաց: Ընդ որում
պոռնկեցան թագաւորք երկրի՝ եւ արբեցան բնակիչք
երկրի 'ի գինւոյ արբեցութեան պոռնկութեան նո-
3 րա: Եւ առ տարաւ զիս յանապատ Հոգւովն. եւ
տեսի կին մի՝ զի նստէր 'ի վերայ կարմիր գազանի,
եւ լի էր անուամբք հայհոյութեան. եւ գազանն զոր
4 տեսի՝ ունէր գլուխս եօթն եւ եղջիւրս տասն: Եւ
կինն զգեցեալ էր ծիրանիս եւ կարմիրս, եւ զար-
դարեալ ոսկւով եւ մարգարտով եւ ակամբք պատ-
ուականօք, ունելով բաժակ ոսկի 'ի ձեռին իւ-
րում, եւ լի էր գարշելի եւ անմաքուր պոռնկու-
5 թեամբ: Եւ 'ի ճակատն նորա գրեալ * անուն՝
խորհրդով." Մեծն Բաբելոն՝ մայր պոռնկաց եւ
6 գարշելեաց երկրի: Եւ տեսի զկինն արբեցեալ
յարենէ սրբոց եւ յարենէ ամենայն վկայիցն. եւ
7 զարմացայ՝ տեսեալ զնա՝ զարմացումն մեծ: Եւ ա-
սէ ցիս Հրեշտակն. Ընդէ՞ր զարմացար, ես աս-
ցից քեզ զխորհուրդս կնոջն, եւ զգազանին որ
բարձեալ ունի զնա. որ ունի զեօթն գլուխն՝ եւ
8 զտասն եղջիւր: Եւ գազանդ զոր տեսեր՝ որ էր,
եւ † չէր, եւ հանդերձեալ է ելանել 'ի դժոխոց՝ եւ 'ի
կորուստ երթալ. եւ զարմասցին ամենեքեան՝ որ
բնակեալ են 'ի վերայ երկրի. որոց ո՛չ էր գրեալ
անուանք նոցա 'ի գիր կենաց 'ի սկզբանէ աշխարհի.
‡ զոր տեսանէիր" զգազանն, զի էր՝ եւ չէ. եւ մերձ է:

---

* 'Ի Յոյնն, անուն խորհուրդ. † 'Ի Յոյնն, չէ

‡ 'Ի Յոյնն, տեսանելով

9 Աստ է իմաստութիւն՝ որ ունի միտս. և եօթն գը-
լուխն՝ եօթն լերինք են, ուր կինն նստեալ էր 'ի
վերայ նոցա. և նոքին թագաւորք են եօթն. և
10 թագաւորք եօթն գոլով, հինգն անկան, և մին
եկաց, և մինն ոչ է եկեալ. և յորժամ գայ՝ սա-
11 կաւիկ մի ժամանակ ունի: Եւ գազանն՝ որ էր՝ և
չէ, և նա ութերորդ է. և է յեօթանց անտի,
12 և 'ի կորուստ երթալոց է: Եւ տասն եղջիւրն՝ զոր
տեսեր՝ տասն թագաւորք են, որոց չև ևս է առեալ
զթագաւորութիւն, այլ առնուն՝ և կան իշխանք
'ի մի ժամ. և առնուն նոքա զիշխանութիւն ընդ
13 գազանին: Սոքա մի կամս ունին, և զզօրութիւն և
14 զիշխանութիւն գազանին տան: Եւ ընդ Գառինն
պատերազմին. և Գառնն յաղթէ նոցա. զի Տէր է
* նոցա, և Թագաւոր թագաւորաց. և որք ընդ
նմա կոչեցեալք են, ընտրեալք և հաւատացեալք:
15 Եւ ասաց ցիս. Եւ զջուրն զոր տեսեր՝ ուր նստէր
պոռնիկն, ժողովուրդք են, և բազմութիւնք և ազգք
16 և լեզուք: Եւ տասն եղջիւրքն՝ զոր տեսեր գազանին,
նոքա տեսցեն զպոռնիկն՝ և աւերեսցեն զնա, և զմարմին
17 նորա կերիցեն՝ և այրեսցեն զնա հրով: Քանզի
Աստուած ետ 'ի սիրտս նոցա առ 'ի լինել նոցա մի
կամս, և տալ զթագաւորութիւն գազանին մինչև
18 կատարեսցի բանն Աստուծոյ: Եւ կինն զոր տեսեր՝
է քաղաքն մեծ, որ ունի զթագաւորութիւն 'ի վե-
րայ թագաւորութեանց երկրի:

* Ի Յոյնն, տերանց

## ԳԼ. ԺԸ.

1 Եւ յետ այսորիկ տեսի այլ հրեշտակ իջեալ
յերկնից՝ որ ունէր իշխանութիւն մեծ, և երկիր
2 լուսաւորեցաւ 'ի փառաց նորա ։ Եւ աղաղակեաց 'ի
ձայն մեծ՝ ասելով. Անկաւ Բաբելոն մեծն, որ եղ-
եալ էր բնակութիւն դիւաց՝ և արգել ամենայն
այսոց պղծոց, և բանտ պահպանութեան ամենայն
3 ոգւոց անսրբից և ատեցելոց ։ Վասն զի 'ի բար-
կութենէ գինւոյ պոռնկութեան նորա արբին ամե-
նայն ազգք և թագաւորք երկրի՝ որ ընդ նմա պոռն-
կեցան. և վաճառականք երկրի 'ի նորա զօրութեանն
4 յօրանալոյ մեծացան ։ Եւ լուայ ձայն յերկնից՝ զի
ասէր. Ելէք 'ի միջոյ դորա ժողովուրդ իմ, զի մի
հաղորդ լինիցիք մեղաց դորա, և մի զհարուածս դորա
5 ընդունիցիք. Զի հասին կցեցան մեղք դոցա մինչև
յերկինս. և յիշեաց Աստուած զամբարշտութիւնս
6 դորա ։ Եւ հատուցանէ դմա՝ որպէս և հատոյցն
մեզ, և առցէ դա երկպատիկ ըստ գործոց իւրոց.
և զբաժակին որով խառնեացն՝ խառնեցէք դմա կըր-
7 կին ։ Եւ որչափ փառաւորեաց զինքն և խայտաց,
այնչափ հատուցէք դմա սուգ. զի 'ի սրտի իւրում
ասէր՝ թէ Յամենայն ժամ նստայց ես թագուհի՝
8 և այրի ոչ եւս եղէց ։ Վասն այնորիկ 'ի միում ա-
ւուր եկեսցեն 'ի վերայ դորա հարուածք՝ մահ և
սուգ և սով, և 'ի հուր այրեսցի. զի հզօր է Տէր
9 Աստուած՝ որ դատեցաւ զդա ։ Եւ լայցեն և կո-
ծեսցին 'ի վերայ դորա թագաւորք երկրի, որք
ընդ դմա պոռնկեցան և խաղացին. և հեծեսցեն՝

յորժամ տեսցեն զծուխ կիզման տանջանաց դորա ։
10 'Ի հեռաստանէ կայցեն վասն երկիւղի տանջանաց
դորա՝ և ասասցեն . Վա՜յ քաղաքին մեծի Բաբե-
լոնի . քաղաք հզօր , զի 'ի միում ժամու եկին հա-
11 սին դատաստանք քո ։ Եւ վաճառականք երկրի
ողբասցեն և սգասցեն 'ի վերայ քո , զի բեռն նոցա
12 ոչ ոք գնէ ։ Եւ շահք որ 'ի քէն՝ ո՛չ ևս իցէ , ոսկ-
ւոյ և արծաթոյ և ականց պատուականաց՝ և մար-
գարտոյ և բեհեզոյ և ծիրանւոյ և ոսկեթելի և որ-
դան , և ամենայն փայտ խնկոյ՝ և ամենայն անօթ
փղոսկրեայ և ամենայն անօթ 'ի փայտէ պատուա-
13 կանէ և 'ի պղնձոյ և յերկաթոյ և 'ի կճոյ , Եւ
կինամոմոն և ամենայն խունկ և իւղ և կնդրուկ և
գինի և ձէթ և նաշիհ և ցորեան , և ստացուածք
ամենայն , արջառ և ոչխար . և երիվարաց և կա-
ռաց՝* որ վայել է մարմնոց" և ոգւոց մարդկան ։
14 Եւ ամենայն ցանկութիւն անձին քո գնաց 'ի քէն ,
և ամենայն լուսափայլ վայելչութիւնն , պարարտն
և գէրն և սպիտակն գնաց 'ի քէն , և ո՛չ ևս գըտ-
15 ցես զայդ ։ Եւ ամենայն շահավաճառք այսոքիւք
մեծացեալք՝ 'ի քէն 'ի բաց կացցեն վասն երկիւղի
16 տանջանաց քոց՝ լալով և սուգ առնելով ։ Եւ ասաս-
ցեն . Վա՜յ վա՜յ քաղաք մեծ , որ զգեցեալ էիր
բեհեզս և ծիրանիս և որդան , և ոսկեզօծ՝ և . քա-
17 րինս պատուականս և մարգարիտս . Զի 'ի միում
ժամու պակասեցաւ այսչափ մեծութիւն քո . և ա-
մենայն նաւավար և ամենայն որ 'ի տեղիս տեղիս

---

* 'Ի Յօյնն , և մարմնոց

նաւեն, և նաւաղք և որք միանգամ ուղկանաւ-
18 գործեն՝ ՚ի հեռաստանէ կայցեն լալով, Եւ աղա-
ղակեսցեն՝ տեսանելով զծուխ կիզման նորա, ասե-
19 լով. Ո՞ նման է քաղաքիս այսմիկ մեծի։ Եւ արկ-
ցեն հող ՚ի վերայ գլխոց իւրեանց՝ և գուժալով
ձայնիւ մեծաւ՝ լալով և ողբալով ասասցեն. Վա՜յ
վա՜յ քաղաք մեծ. որով ամենեքեան մեծանայաք՝
որք ունէաք զնաւս ՚ի ծովս՝ վասն պատուականու-
թեան քո. զի ՚ի միում ժամու ապականեալ կոր-
20 ծանեցար։ Ուրա՛խ լերուք ՚ի վերայ նորա երկինք՝
և սուրբ առաքեալք և մարգարէք. զի դատեցաւ
21 Աստուած զդատաստան ձեր ՚ի դմանէ։ Եւ առ
հրեշտակն հզօր՝ քար մի իբրև զերկան մեծ, և ըն-
կէց ՚ի ծով՝ ասելով. Այսպէս յարձակմամբ անկցի
22 Բաբելովն քաղաք մեծ, և այլ ո՛չ ևս գտցի։ Եւ
ձայն քնարերգաց և երաժշտականաց՝ արուեստա-
կանաց և փողահարաց՝ և թմբկի, այլ ո՛չ ևս լուի-
23 ցի ՚ի քեզ։ Եւ լոյս ճրագի և ձայն երկանի՝ այլ
ո՛չ ևս երևեսցի ՚ի քեզ, և ձայն փեսայի և ձայն
հարսին այլ ո՛չ ևս լուիցի ՚ի քեզ. և ո՛չ վաճա-
ռականք քո՝ փառաւորք և մեծամեծք երկրի, որ
զուարճացեալ էին ՚ի քեզ, վասն զի կախարդու-
թեամբ դեղատուութեան քո մոլորեցան ամենայն
24 ազգք։ Եւ ՚ի քեզ ամենայն արիւն մարգարէից և
սրբոց գտաւ, և ամենայն զենլոց յերկրին կենդան-
եաց։

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ յետ այնորիկ լուայ ձայն մեծ բազմութեան
յերկինս ասելով. Ալէլուիա, փրկութիւն և փառք

2 և պատիւ և զօրութիւն Աստուծոյ մերում. Զի
ճշմարիտ և արդար են դատաստանք նորա. զի
դատեաց զպոռնիկն մեծ 'ի պոռնկութեան իւրում,
և խնդրեաց զվրէժ արեան ծառայից իւրոց 'ի ձե-
3 ռաց նորա: Եւ կրկին անգամ օրհնեցին և աս-
ցին, Ալէլուիա. և ծուխ նորա ելանէր յաւիտեանս
4 յաւիտենից: Եւ անկան քսան և չորք երիցունքն
և չորք կենդանիքն, և երկիր պագին Աստուծոյ՝ որ
նստէրն յաթոռ փառաց, ասելով. Ամէն՝ Ալէլուիա:
5 Եւ ձայն յաթոռոյն ելանէր՝ ասելով. Օրհնեցէք
զԱստուած մեր ամենայն ծառայք նորա, և որք
6 երկնչիք 'ի նմանէ՝ փոքունք և մեծամեծք: Եւ լուայ
ձայն բազմութեան մեծի՝ իբրև զձայն ջուրց բազ-
մաց, և իբրև զձայն հզօր որոտման, ասելով
դարձեալ. Ալէլուիա, վասն զի թագաւորեաց Տէր
7 Աստուած մեր Ամենակալ: Խնդամք՝ ( և ցնծամք )
և տամք փառս նմա, զի եկն հարսանիք Գառինն,
8 և կինն հարսն նորա պատրաստեաց զինքն: Եւ
տուաւ նմա զգենուլ բեհեզս սպիտակս սուրբս և
լուսափայլս. որ է բեհեզն արդարութիւն սրբոցն:
9 Եւ մի յերիցանցն ասէր ցիս. Գրեա զայդ, Երա-
նելիք են ամենեքեան՝ որ կոչեցեալ են յընթրիս
10 հարսանեաց Գառինն: Եւ ես անկեալ առաջի
ոտից նորա, երկիր պագի նմա: Եւ ասէ ցիս. Ան-
սա՝ մի՛ անկանիր առաջի իմ, քանզի և ես ծառա-
յակից քո եմ, և եղբարց քոց՝ որք ունին զվկա-
յութիւնն Յիսուսի Քրիստոսի. Տեառն Աստուծոյ
միայն երկրպագեա. քանզի հաստատութեամբ Յի-
սուսի է տեսիլդ, և հոգի մարգարէութեանդ. զի

վկայութիւն Յիսուսի է Հոգւոյն Սրբով, որ 'ի
11 մարգարէսն էր։ Եւ տեսի զերկինս բացեալ, և ա-
հա ձի սպիտակ. և որ հեծեալն էր 'ի նմա՝ հա-
ւատարիմ և Ճշմարիտ, և արդարութեամբ դա-
12 տի՝ և պատերազմի։ Եւ աչք նորա բոց հրոյ, և
'ի վերայ գլխոյ նորա պսակս բազումս. և ունէր ա-
նուն գրեալ, զոր ոչ ոք գիտէ՝ բայց միայն ինքն։
13 Եւ արկեալ զիւրեաւ հանդերձ ներկեալ արեամբ.
14 և կոչէր անուն նորա՝ Բան Աստուծոյ։ Եւ զօրա-
վարք երկնից՝ և զօրք երկնից զհետ երթային նորա
ձիովք (սպիտակօք), զգեցեալ բեհեզս սուրբս և
15 սպիտակս։ Եւ 'ի բերանոյ նորա ելանէր սուր
սրեալ. զի նովաւ հարցէ զազգս. և նա հովուես-
ցէ զնոսա գաւազանաւ երկաթեաւ, և նա կոխես-
ցէ զհնձան գինւոյ՝ ցասման բարկութեան Աստու-
16 ծոյ Ամենակալի։ Եւ ունէր 'ի վերայ պատմուճա-
նի իւրոյ, և 'ի վերայ անդամոց իւրոց գիր գրեալ.
ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈՐԱՑ, ԵՒ ՏԷՐ
17 ՏԵՐԱՆՑ։ Եւ տեսի այլ հրեշտակ՝ որ կայր
'ի վերայ արեգական, զի աղաղակեաց 'ի ձայն մեծ
ամենայն հաւուց թռուցելոց ընդ մէջ երկնից՝ աս-
լով. Եկա՛յք ժողովեցարո՛ւք յընթրիս մեծին Աս-
18 տուծոյ. Եւ կերիջիք զմարմինս թագաւորաց, (և
զմարմինս հզօրաց,) և զմարմինս երիվարաց՝ և ա-
մենայն հեծելոց 'ի նոսա, և զմարմինս ազատաց և
19 ծառայից՝ մեծի և փոքու։ Եւ տեսի զգազանն՝ և
զթագաւորս երկրի՝ և զզօրս նոցա ժողովեալս տա-
նել պատերազմ ընդ այնմ, որ հեծեալն էր 'ի ձին
20 սպիտակ՝ և ընդ զօրս նորա։ Եւ ըմբռնեցաւ գա-

զանն, և որ ընդ նմա սուտ մարգարէն՝ որ առնէր
զնշանսն առաջի նորա, և զորս մոլորեցոյց. և եա
առնուլ զդրոշմ գազանին՝ և զերկրպագուս պատ-
կերի նորա. և կենդանւոյն արկին զնոսա ՚ի լիճ հր-
21 րոյ այրեցելոյ ծծմբով: Եւ այլքն մեռան ՚ի սրոյ
հեծելոյն ՚ի վերայ ձիոյն, յորոյ բերանոյ ելանէր
սուրն. և ամենայն թռչունք յագեցան ՚ի մարմնոց
նոցա:

## ԳԼ. Ի

1 Եւ տեսի այլ հրեշտակ՝ զի իջանէր յերկնից, և
ունէր զփականս դժոխոց, և շղթայս մեծ ՚ի ձեռին
2 իւրում. Եւ ըմբռնեաց զվիշապն՝ (զօձն) զառաջին,
որ է Բանսարկուն և Սատանայ, և կապեաց զնա
3 հազար ամ. Եւ արկ զնա յանդունդս դժոխոց, և
փակեաց և կնքեաց զնա՝ զի այլ մի՛ ևս մոլորեցու-
ցէ զազգս, մինչև կատարեսցի հազար ամն. և
յետ այնորիկ պարտ է լուծանել նմա սակաւ մի
4 ժամանակ: Եւ տեսի աթոռս. և նստան ՚ի վերայ
նոցա. և դատաւորութիւն տուաւ նոցա, ընտրել
զհոգիս չարչարելոցն վասն վկայութեանն Յիսուսի՝
և վասն բանին Աստուծոյ. և զորս ո՛չ երկրպագին
գազանին, և ո՛չ առին զդրոշմ նորա ՚ի ճակատս
իւրեանց՝ և ո՛չ ՚ի վերայ աջոյ ձեռին իւրեանց. և
կեցին՝ և թագաւորեցին ընդ Քրիստոսի հազար
5 ամ: Եւ* յետ այսորիկ" ՚ի մեռելոց ոչ ոք եկաց,
մինչև ՚ի կատարել հազար ամին. այս է յարու-

---

* ՚Ի Յոյնն, յայլոց անտի

6 Թիւն առաջին ։* Երանի սրբոցն , որք ունին բա-
ժին 'ի յարութեանն առաջնում . 'ի վերայ սոցա
երկրորդ մահն ոչ ունի իշխանութիւն . այլ եղիցին
քահանայք Աստուծոյ՝ և Տեառն Յիսուսի Քրիս-
տոսի . և թագաւորեսցեն ընդ նմա հազար ամ ։
7 Եւ յետ հազար ամին լուծցէ զՍատանայ՝ և հանցէ
'ի բանտէ անտի . ելցէ և մոլորեցուսցէ զազգս ա-
մենայն ընդ չորս կողմանս երկրի . և զԳոգ և զՄա-
գոգ ածցէ 'ի ձեռս՝ ժողովել նոքօք զամենայն զօրս
'ի պատերազմ . որոց թիւ նոցա իբրև զաւազ ծո-
8 վու ։ Եւ ելցեն 'ի լայնութիւն երկրի , և պատե-
ցեն շուրջ զբանակս սրբոցն , և զքաղաքն սիրե-
9 լոյ ։ Եւ իջցէ հուր յերկնից առ 'ի յԱստուծոյ՝ և
կերիցէ զնոսա և զզօրագլուխն նոցա զՍատանայ՝ որ
մոլորեցոյց զնոսա . և արկցէ զնոսա 'ի ծովն հրոյ
10 և ծծմբոյ , ուր էր գազանն՝ Եւ սուտ մարգարէն .
11 և չարչարեսցին զտիւ և զգիշեր ։ Եւ տեսի աթոռ
սպիտակ մեծ . և 'ի վերայ նորա նստեալ՝ յորոյ ե-
րեսացն երկնչէին և փախչէին երկինք և երկիր , և
12 տեղի ոչ գտաւ նոցա ։ Եւ տեսի զմեռեալս մեծա-
մեծս և զփոքունս , որ կային առաջի աթոռոյն . և
գրեանք բանային . և այլ գիրք բացաւ կենաց , և
դատեցան մեռեալք 'ի գրելոցն՝ ըստ գործոց իւ-
13 րեանց ։ Եւ ետ ծով զմեռեալս իւր , և մահ և դը-
ժոխք զիւրեանց մեռեալս . և դատեցան իւրաքանչ-
14 իւր ըստ գործոց իւրեանց ։ Մահ և դժոխք մատ-
նեցան 'ի լիճ հրոյն . ( այս է մահն երկրորդ ։ )

* 'Ի Յոյնն , Երանելի և սուրբ է , որ ունի

15 Եւ որ ոչ ոք գտաւ 'ի գիրն կենաց գրեալ՝ արկաւ
'ի լիճ հրոյն :

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ տեսի երկին նոր՝ և երկիր նոր . քանզի ա-
ռաջինն երկինք և երկիր էանց . և ծով ոչ գոյր :
2 Եւ զքաղաքն սուրբ զնորն Երուսաղէմ տեսի՝ զի
իջանէր յԱստուծոյ՝ և յերկնից , զարդարեալ և
3 պատրաստեալ որպէս հարսն առն իւրոյ : Եւ
լուայ ձայն յերկնից՝ որ ասէր . Ահաւասիկ խորանն
Աստուծոյ 'ի մէջ մարդկան , և բնակեսցէ ընդ նո-
սա . և նոքա ժողովուրդ նմա . և սա Աստուած նո-
4 ցա : Եւ ջնջեսցէ զամենայն արտօսր յաչաց նոցա . և
մահ ոչ ևս գոյ , ոչ սուգ՝ և ոչ աղաղակ , ոչ ցաւք՝
և ոչ աշխատանք ոչ ևս գոյ , զի առաջինն էանց :
5 Եւ ասաց ցիս՝ որ նստէր 'ի վերայ աթոռոյն . Ահա-
ւասիկ առնեմ զամենայն նոր . և ասէ ցիս , Գրեա՛ .
6 այս բանք ճշմարիտ և հաւատարիմք : Եւ ասէ ցիս .
Եղէ՝ ես Ալփա և Ով , սկիզբն և կատարած . ես
7 ծարաւելոցն տաց յաղբերէ ջրոյ կենաց ձրի : Որ
յաղթէ , ժառանգեսցէ զայս ամենայն . և ես եղէց
8 նոցա Աստուած , և նոքա եղիցին ինձ որդիք : Եւ
ծուլացն և անհաւատից՝ սպանողաց և պոռնկաց՝ և
կախարդաց և կռապաշտից՝ և դեղատուաց , և ա-
մենայն ստոց՝ ամպարշտաց , որոց բաժինն իւրեանց
'ի լճին այրեցելոյ հրով և ծծմբով . որ է մահն
9 երկրորդ : Եւ եկն առ իս մի յեօթն հրեշտակացն ,
որք ունէին զեօթն սկաւառակսն լցեալս եօթն վախ-

ճանաւ կատարածովք, խօսեցաւ ընդ իս և ասէ.
10 Եկ՝ ցուցից քեզ զհարսն և զկին Գառինն: Եւ
առ տարաւ զիս 'ի լեառն մի բարձր և մեծ՝ հոգ-
ւովն. և եցոյց ինձ զքաղաքն մեծ և սուրբ՝ Երու-
սաղէմ. զի իջեալ էր յերկնից առ 'ի յԱստուծոյ,
11 Եւ ունէր զփառս Աստուծոյ. և էր 'ի նմա լուսա-
ւորութիւն, նմանեալ ականց պատուականաց՝ քար
12 յասպիս սառնատեսակ և կենդանի: Եւ էին պա-
րիսպք նորա մեծ և բարձր, և ունէր դրունս եր-
կոտասան. և յերկոտասան դրունսն երկոտասան
հրեշտակս, և անուանք իւրաքանչիւրոցն 'ի վերայ
դրանցն գրեալ էին՝ ըստ երկոտասան ցեղիցն Իս-
13 րայելի: Յարևելից կողմանէ դրունք երեք, և 'ի
հիւսիսոյ կողմանէ դրունք երեք, և 'ի հարաւոյ
կողմանէ դրունք երեք, և յարևմտից կողմանէ դը-
14 րունք երեք: Եւ պարիսպ քաղաքին ունէր հիմունս
երկոտասան, և 'ի նոսա երկոտասան անուանք եր-
15 կոտասան առաքելոց Գառինն: Եւ որ խօսէրն ընդ
իս, ունէր եղէգն ոսկի 'ի ձեռին իւրում, զի չա-
փեսցէ զքաղաքն՝ և զդրունս նորա՝ և զպարիսպս
16 նորա: Եւ էր քաղաքն քառակուսի. և որչափ եր-
կայնութիւն նորա՝ նոյնչափ և լայնութիւն և բարձ-
րութիւն՝ հաւասար. և էր չափ երկայնութեան նո-
րա երկոտասան հազար ասպարէզս. և լայնութիւն
17 նորա և բարձրութիւն միաչափ՝ կիմօս: Եւ չափեաց
զպարիսպն նորա՝ հարիւր և քառասուն և չորս աս-
18 պարէզս. չափ մարդոյ՝ որ է հրեշտակի: Եւ էր
շինուած պարսպաց քաղաքին յասպիս. և քաղաքն
էր ոսկի մաքուր՝ նման սուրբ և սպիտակ ապակւոյ:

19 Եւ հիմունք քաղաքին յամենայն ականց պատուա-
կանաց. հիմն առաջին պարսպին յասպիս, երկ-
րորդն շափիղա, երրորդն պղնձագոյն, չորրորդն
20 զմրուխտ, հինգերորդն եղեգնաքար, վեցերորդն
սարդիոն, եօթներորդն ոսկեքար, ութերորդն
բիւրեղ, իններորդն տպազիոն, տասներորդն քրի-
սոպրասոս, մետասանն յակինթ, երկոտասանն ա-
21 մեթուխ: Եւ էին երկոտասան դրունք յերկոտա-
սան մարգարտաց՝ միաձև. և իւրաքանչիւրոցն դը-
րունքն էին մի մի դուռն՝ 'ի միոյ միոյ մարգարտէ.
և ընդարձակութիւն քաղաքին ոսկի մաքուր՝ որպէս
22 զապակի պայծառ: Եւ տաճար ոչ տեսի 'ի նմա,
քանզի Տէր Աստուած Ամենակալ տաճար էր 'ի
23 նմա՝ և Գառնն: Եւ քաղաքին չէին պէտք արե-
գական և լուսնի, զի լուսաւորեսցեն զնա. քան-
զի փառքն Աստուծոյ լուսաւորէին զնա յամենայն
24 ժամ, և ճրագ 'ի նմա Գառնն: Եւ գնային
հեթանոսք 'ի լոյս նորա. և թագաւորք երկրի լու-
25 սաւորեաց լինէին 'ի փառաց նորա: Եւ դրունք նորա
ոչ փակէին 'ի տուէ և 'ի գիշերի, այլ բաց կային
26 հանապազորդ. և գիշեր ոչ ևս լինէր 'ի նմա. Այլ
27 փառք և պատիւ ազգաց: Եւ ոչ մտցէ անդ
ամենայն չարակամ՝ և պիղծ և ստութիւն, բայց
միայն որ գրեալ են 'ի դպրութիւն կենաց Գառ-
ինն:

## ԳԼ. ԻԲ

1 Եւ եցոյց ինձ մաքուր գետ կենդանի ջրոյ՝ սառ-
նատեսակ, որ ելանէր յաթոռոյն Աստուծոյ և Գառ-
2 ինն: Եւ գնայր 'ի մէջ հրապարակաց քաղաքին.
և զեզերբ գետոյն աստի և անտի ծառ կենաց՝ որ
բերէր պտուղս երկոտասան. ըստ միոյ միոյ ամսոյ
տային զպտուղս իւրեանց. և տերև ծառոյն էր
3 բժշկութիւն հեթանոսաց: Եւ նզովք անդ ոչ ևս
էին. և աթոռն Աստուծոյ և Գառին նորա էր 'ի
4 նմա. և ծառայք նորա պաշտէին զնա. Եւ տեսա-
նէին զերեսս նորա. և անուն նորա գրեալ էր 'ի
5 ճակատս նոցա: Եւ գիշեր ոչ անդ՝ և չէր ինչ անդ
պէտք ճրագի և լուսոյ արեգական. վասն զի Տէր
Աստուած լուսաւորէր զնոսա. և թագաւորեսցեն
6 յաւիտեանս յաւիտենից: Եւ ասէ ցիս. Այս
բանք հաւատարիմ են և ճշմարիտ. և Տէր Աստուած
մարգարէից սրբոց՝ առաքեաց զհրեշտակ իւր՝ ծա-
ռայից իւրում ցուցանել՝ զոր լինելոց է վաղվաղա-
7 կի: (Ահա գամ վաղվաղակի.) երանի որ պա-
8 հէ զբանս մարգարէութեանս զայս: Եւ ես Յովհան-
նէս լուայ՝ և տեսի զայս ամենայն. և յորժամ
լուայ և տեսի, անկայ և երկիր պագի հրեշտակին՝
9 որ ցուցանէր ինձ զայս ամենայն: Եւ ասէ ցիս.
Մի՛ անկանիր առաջի իմ և երկիրպագաներ. քանզի
և ես ծառայակից քո եմ և եղբարց քոց՝ որ պա-
հեսցեն զբանս մարգարէութեան գրոյս այսորիկ.
10 Աստուծոյ երկի՛ր պագ: Եւ ասէ ցիս դարձեալ.
Մի՛ կնքեր զբանս մարգարէական գրոցս այսմիկ.

11 քանզի ժամանակս մերձ է։ Որ ամպարշտելոցն է՝
ամպարշտեսցի, և որ աղտեղանալոցն է՝ աղտեղաս-
ցի, և որ արդարանալոցն է՝ արդարասցի, և որ
12 սրբելոցն է՝ սրբեսցի։ Ահա գամ վաղվաղակի՝ և
վարձք իմ ընդ իս, հատուցանել իւրաքանչիւր ըստ
13 գործս իւրեանց։ Ես եմ Ալփայ և Ով, սկիզբն և
14 կատարած, առաջին և վերջին։ Երանելիք են՝ որ
պահեն զպատուիրանս նորա. նոքա ունին իշխա-
նութիւն ուտել 'ի փայտէն կենաց՝ և մտանել ընդ
15 դրունս քաղաքին։ Այլ ելցեն արտաքս շունք և
դեղատուք և պոռնողք և կռապաշտք, և ամենեք-
16 եան որ սիրեն զստութիւն։ Ես Յիսուս առաքեցի
զհրեշտակ իմ վկայել զայս ձեզ եկեղեցեացդ. ես
արմատ և սեռ 'ի Դաւթայ, և աստղ պայծառ
17 առաւօտին։ * Եւ Հոգի, և փեսայն՝ որ գալոցն
եմ. և որ լսէ՝ ասելով թէ Եկ, և որ ծարաւի ի-
ցէ՝ եկեսցէ, և որ ոք կամի առնուլ զջուրն կենաց
18 ձրի"։ Վկայեմ և ես ամենայնի որ լսէ զբանս մար-
գարէութեան գրոցս այսմիկ. թէ ոք յաւելցէ 'ի
սա, յաւելցէ Աստուած 'ի վերայ նորա † զհօթն
19 հարուածսն՝ գրեալս 'ի գիրս յայս։ Եւ եթէ ոք
պակասեցուսցէ 'ի բանից մարգարէութեան գրոցս
այսմիկ՝ պակասեցուսցէ և հատցէ Աստուած զբա-
ժին նորա 'ի ծառոյն կենաց և 'ի քաղաքէն ‡ սրբոց՝

---

* 'Ի Օրին., Եւ Հոգի և հարսն ասեն՝ Եկ. և որ լսէ՝ ասասցէ, Եկ, և որ ծարաւի իցէ՝ եկեսցէ, և որ ոք կամի՝ առցէ զջուրն կենաց ձրի

† 'Ի Օրին. չէ։

‡ 'Ի Օրին., սրբոյ

20 որ գրեալ է 'ի գիրս յայս։ Ասաց՝ որ վկայ-
եացն զայս. Գամ ես վաղվաղակի. Ամէն։ Եկ
21 Տէր Յիսուս Քրիստոս։ Շնորհք Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի 'ի վերայ ամենայն սրբոց.
Ամէն։

## ՎԱԽՃԱՆ

## ՆՈՐՈՑ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

